# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՑ

Որք կան 'ի Հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց.

Յօրինեալ վաղեմեան բանից ճառընտրաց մերոց և այլոց աղբերաց, հանդերձ ծանօթութեամբք։

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան։

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց Աբբայի և Արքեպիսկոպոսի։

Արդեամբք ծախուէր Մանուկ Աղայի Կարնեցւոյ մահտեսի Աշտուրեան։

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ.

Յորում կան Տօնք սրբոց՝ որ զկնի Յայտնութեան մինչև ցառաջաւորի բարեկենդանն.



1810 'Ի ՎԵՆԵՏԻԿ ամ.թ.

'Ի Վանս Սրբոյն Ղազարու.

# ՆԱԽԵՐԳԱՆՔ

## ՀԱՆՐԱԿԱՆ:

Առ ուղիղ համառօտել զբան ճշմարտութե̄, որ յաղագս ազգի ազգի և բազմամասնեայ տեղեկութե̄ց պատուաջեկայս Գործոց, (զի հարազատ վարք ս̄բց՝ Գործք անուանին, որպէս և պրակք առաքելոց, յունարէն՝ Բրա՛քսիս,) երկոսին ևեթ 'ի կարևորագունից անտի յայտ առնեմք որքանէր վերծանողաց՝ 'ի սկզբան նախկին կարծեցեալ հատորոյս, որ է և չէ. զի գործս մեծ է, և բազմահատոր ըստ այսգոյն միջակ դրից, նոյն և ուրոյն յայլ մեծագոյն դիրս վերածեալ. Թո՛ղ զի մեծ ևս է ըստ ներքին յարգի, մինչև 'ի վեր խոստովանեմք լինել քան զմերս կար, և մ̄զ ևեթ յաջողելով՝ բարեխօսութե̄ ա̄մ ս̄բց եւրոց:

Նախ՝ զայն, թէ զիարդ էին արդեօք ըստ օրինաւոր կարգի Բանասիրութե̄՝ յառաջաբանական ենն նախընծայել հատոր. յորում առաջի դիցեն խնդրելեաց՝ պատճառք տօնից ս̄բց առհասարակ, կարգաւորութե̄ք նոցին տօնելի աւուրց ըստ հին և ըստ նոր տօնացուցից մերոց՝ առ համեմատութե̄ այլոց եկեղեցեաց քրիստոնէից, վաւերական հիմունք և աղբիւրք լիակատար վարուց և վկայաբանութե̄ց նոցա, այսինքն են



հնու-



# ՑԻՇԱՏԱԿ ԱՐԴԱՐՈՑ
## ՕՐՀՆՈՒԹԵԱՄԲ։



Առաջին՝ վերջին, վախճան անվախճան,
Աստուած եղական՝ Բանն անեղական։
Բահահորդք նորին՝ մեծ վկայութեան,
որք Անմէղ Աստուծոյ՝ գառինք հովուէն։
Սաղդեղն անուանի՝ քաջ հանդիսական,
որք Խոստովանող՝ Աստուած սիրական։
Արթուն և 'ի քուն՝ վկայք յարութեան,
անմահք 'ի մահու՝ Աստուածային Եդեսեան։
Նահատակք արդարք՝ 'ի զինուորութեան,
արիք արամեանց՝ Աստուածային Սեբաստեան։
Որովք Ակրոտէ՝ Աստուծոյ շաքարեան,
էին տեսանողք՝ օգնեալ Հոռոմեան.
Յիսուսել ընդպսակ՝ ընծայորեալ Աստուծոյն,
Աստուծոյ աղայեն՝ մեր աւետարանչեան։
Սարապետ եղոյ՝ արդեամբք գոյութեան,
ընթացից Վարուց՝ Արբոց լրութեան։
Աուլթ, կենդանի՝ արձանագրութեան,
անցելոց 'ի գիր՝ վերին դպրութեան։
Պամպարամբ լուսոյ՝ լուցիչ բազմութեան,
ըզբազմաջահեան՝ ճաճանչ սրբութեան։
Ահա օրինակ՝ պայծառ պերճութեան,

գործ

գործ կենցաղօգուտ՝ ազգի, զարմի, տան ։
Կարեւոր սատար՝ հոգեւոր դարման ,
անմոռաց յերկրի՝ յիշատակ յելման ։
Ն.յոգոյն պարհեսցի՝ գանձ անապական ,
գանձեալ ՚ի յերկինս՝ վարձ տրունական ։
Ռամից բոլորից՝ Սրբոց բիւրական ,
սատէն բարեկամ՝ ընդունելութեան ։
Նոքիմբք զօրանալ՝ յառաքինութեան ,
նովիմբք վերանալ՝ ՚ի հօրն օթեւան ։
Նրանե՛ տայի՝ ձեզ , որդի՛ք մարդկան ,
թէ զայս գիտէի՝ յոլովից պատկան ։
Ցա՛ւ է ինձ՝ յոգունց՝ խորհուրդ նանրութե՜ ,
որք ընդ անցաւորս՝ անցանեն ունայն ։
Իմաստուն լերուք՝ ՚ի շահ հոգեկան ,
ըստ Ն.Ճապուհ՝ դրօշմաւեալ Ս՝անկան ։



* Գանձեցէ՛ք ձեզ գանձս յեր֊կինս... զի ուր գանձք ձեր են, անդ և սիրտք ձեր եղիցին »։

Մատթ. Զ. 20։



Յաղթանակ փառաց՝ փառաց արքայի,
ամենայն Սրբովք՝ յերգ ովսաննայի·



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ
## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՐԱՊԵՏԻՆ
### Որ և Մկրտիչ որդւոյն Զքրյ:

'Ի ծագմանէ անտի իւրմէ մինչև 'ի պաշտօն մկրտութե՞ան:

Հ. տս յայսմաւուրք Հայոց. յունվար. 14: Եւ յուլ. 11: Յ. տս յայսմաւ" Յունաց. յունվար. 7. Եւ յունիս 24: Լ. տս յայսմաւ" Լատինացւոց. յունիս 24: Ճառընտիրք. Եւ ներբողեանք Հայոց: Բոլլանդեանք. 'Ի Ժ հատոր յունիսի. երես. 687 = 806:



ՄԵԾԻ 'Ի ԾՆՈՒՆԴՍ կանանց՝ ըստ անսուտ և անզուգական գովութեան Ածեղէն բերանոյն Քի, Կարապետ նորին և Մկրտիչ սբ Յովհաննէս, գեղեցիկ խորհրդով զառաջին տեղին ունի 'ի կարգի Սրբոց Տօնացուցի Հայաստանեայց եկեղեցւոյ: Նախ՝ զի ոչ յելս անդ տարւոյ յառաջքան զծնունդ և զյայտնութին փրկչին մերոյ Հանդիսանեան աւագ տօնք Ածամերձ սբց իբրև

գլխաւ

գլխաւոր վկայից տէրունական տնօրէնութե ,
նոյնպէս և իբրու նմին խորհրդով կատարի
նախկին և մեծ տօն սբյ կարապետիս իբրև
մկրտչի որդւոյն ոյ , 'ի սկիզբն տարւոյն՝
յետ ութօրէից յայտնութե և մկրտութե , որ է
սկիզբն տօնացուցին մերոյ ։ Զայս և եկե-
ղեցի յունաց ունի հաստատութ ը հռումն
կարգի 'ի սկզբանն հենոյ . զի զկնի կատա-
րելոյ 'ի վեցերորդ աւուր յունվարի զմկր-
տութի տն , զոր և ածայայտնութի կոչեն , 'ի
յաջորդ աւուր անդ՝ խմբ՝ յեօթներորդն յուն-
վարի կատարէ զտօնախմբութի սբյն յովհան-
նու մկրտչի , անուանեալ սինաքսիս՝ որպէս
թէ համահաւաքումն եկեղեցւոյ վս տօնի
պատուականին և փառաւոր մարգարէին , կարապետին
և մկրտչին յովհաննու ։ (1)

Երկրորդ՝ զի սա Ձմանաչի պարագլուխ տմ
դասուց սբց՝ հնոց և նորոց , լրումն գոլով
հայրենաւանդ և մովսիսական օրինաց , և
նախասկիզբն քմադիր օրինաց շնորհաց ։

Երրորդ՝ որ մեծ ևս է , զի հայելի գտանի
անարատ՝ յանձին երևեցուցիչ զամ սբց զա-
ռաքինութե զհանդէս . նախահայր մեծա-
հաւատ՝ ընդ նահապետս առաջին ծանու-
ցեալ , և մարգարէ անհնման՝ 'ի դասս տե-
սանողաց . առաքեալ նորօրինակ՝ ը առա-
քեալս , և քարոզ բանին գերագոյն՝ ընդ
վարդապետս . հեղինակ ձգնաւորաց՝ խրա-
տակրօն միայնակեցութե յանապատի (2) ,
և օրինակ բարեձևութե կուսակրօնից ըզ-
գաստից . մարտիրոս պանծալի՝ արեամբ

վկայ

վկայեալ ճշմարտութե, և հողանիւթեայ հրեշտակ՝ անմարմին քաղաքավարութք՝ 'ի մարմնի ։ Որով քանի՛ ասել ․ ամ արդարոց և առաքինեացն դասուց երկնայնոց ընթացից յառաջաշաւիղ առաջնորդ՝ հրաշալի վարուք սրբութե, խոնարհութե, աղքատութե, յԱծ մեռելութե, խաղաղ համբերութե, և կատարեալ սիրոյ առ ած և առ ընկերն ․ որ է գլուխ պատուիրանին, և զօդ կատարման ։

Իսկ յառաջընթացութի նր խորհրդական՝ իբրև կարապետ Բանին այ, իբրև փեսաւէր և բարեկամ երկնաւոր փեսային եկեղեցւոյ, և իբրև որդի քահանայի՝ ձեռնադրող և մկրտիչ որդւոյն այ՝ ճշմարիտ քահանայապետին մերոյ, և օրինադրի շնորհաբուղխ խորհրդոց, սեպհական է պատուի՛ անհամեմատ մեծութե նորա, և պսակ պարծանաց փառաւորութե նր ․ ոչ և յարգանդէ սրբութին՝ եկաւորութք յայց նր սրբութե սբց ․ որով և ծնունդ նր սքանչելի՝ աւանձին տօնելի եղև ․ որ ոչ այլում ումեք՝ բայց 'ի տեառնէ և 'ի տիրամօրէն ։ Եւ զի 'ի զանազան աւուրս կատարին այլևայլ տօնք մեծի մկրտչին, ըստ նախնին և մեզ լինիցի ճառել յիւրաքանչիւր տեղիս զպատճառաց տօնի նորա, սկիզբն եդեալ 'ի գլուխ մատենիս և տարեալս 'ի ծագմանէ կարապետին մինչև 'ի մկրտելն նր զքս ։

✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕✕

Արդ՝

Որդ՝ այն ինչ արեգական արդարութեան՝ լոյսն անստուեր 'ի հօրէն լուսոյ՝ հանդերձեալ էր մարմնացուցանել տնօրէնութք՝ յերկնից յերկիր ծագել, 'ի փարատել զխաւար մեղաց, և լուսաւոր առնել զմմ մարդ՝ որ գայ յԹ, ընտրեաց իւր յառաջագուշակ արուսեակ առաւօտեան՝ զլուսատիպ և զանաղօտափայլ Յովհաննէս, զկարապետն յովհաննէս, 'ինչանակ մօտաւոր գալստեան իւրոյ • զորօրինակ եթերական աստղն լուսաբեր՝ է առաւօտս ծագեալ և արուսեակ անուանեալ, նախընթաց ծագմամբ նշանակ է և կարապետ ելիցն արևու ։ Ու քզի մեծ էր խորհուրդն՝ զոր ցուցանէր, մեծամեծ նշանօք և սքանչելի ծագմամբ երևեցաւ • մինչև արդեամբք հաւատարմացուցանել՝ եթէ մեծագունի խորհրդոյ է գուշակ, այս է ամենաթագաւորին եկաւորութե ։ Ու նախ յանակնկալ ժամանակի 'ի լոյս ընծայէր, յորժամ Յ ամ իբրև 'ի տխրագին գիշերի տառապիւր՝ անամծութե և անձնապաշտութե խաւարաւ մածեալ, յաւուրս ասկաղոնացւոյն հերովդի արքայի հրեաստանի՝ որդւոյ անթիպատրեայ (3) • յորում ժամանակի է տիեզերս համօրէն հեթանոսութին էր ծաւալեալ, և ամծածանօթ ժողովուրդն իէլեան՝ երկրաքարշ վարուք ընդ երկիր կապեալ։ Սակաւս էր տեսանել Յբշմարիտ ամծապաշտս և երկիւղածս յմյ • և 'ի սակաւուց անտի ընտրելագոյնքն ընտրե-

ցան

ցան լինել ծնօղ մեծ կարապետին, որ. քահանայն զաքարիաս 'ի դասակարգէ աբիայ (4), և կին նորա երջանիկն եղիսաբէթ 'ի դստերաց ահարոնի (5). զորոց զարժանաւոր գովութ̃ յար և նման նկարէ աւետարանագիրն ղուկաս՝ յասել անդ իւրում. * Եւ էին արդարք երկոքին առաջի ա̃յ. գնային յամենայն պատուիրանս և յիրաւունս տ̃ն անարատք || ։

Ի սոցանէ ծնանէր մեծն 'ի ծնունդս կանանց. և այն գեր 'ի վեր քան զհասարակաց բնութ̃ի, յամուլ մօրէ և յալևորեալ հօրէ. մինչև անհաւատալի լինել և նմին իսկ ծընողին, և չհանդարտել հրեշտակին աւետարանութ̃ե. որով և անբարբառ մնայր՝ համրացեալ լեզուաւ, մի դանդաղելոյ 'ի հաւատալ ծագման ձայնի բարբառոյն՝ նոր մարգարէի 'ի հնոց անտի գուշակեցելոյ ։ Այլ գործն 'ի գլուխ ելանէր՝ ըստ ճշգրիտ բանից գաբրիելի յա̃ծակոյս կողմանէ, լինել նշ̃ զաւակ ա̃ծապարգև՝ յովհաննէս անուն, յուրախութ̃ ծնողացն, և 'ի խնդութ̃ բազմաց. երկրորդ եղիայ՝ առաջնոյն նմանօղ, և կ̃ս առաւելեալ հօգւով ք̃ զնա, անդստին յորովայնէ մօրն լցեալ հօգւոմն սրբով ։ Եւ այս են՝ նորահրաշ օրինակաւ, զի ինքն իսկ արեգակն արդարութ̃ե 'ի կուսական արգանդի բազմեալ իբրև 'ի հրեղէն կառս արևու՝ յայց ելանէր ճեպով իւրումն կարապետի՝ առ 'ի ճեպել զնա յընթացս, և զարփիափայլ ծագումն իւր աւետարանել. ո-

րով

զաւառին երկնից մայր, և ըստ բարեօք ըղ-
մեզ ձոխացուցեր. և արդ արի՛ երթ խա-
ղաղութեամբ 'ի տեղի քո տաճարդ ա̃յ. զի ոչ
է պարտ արքայի՝ սպասահարկու երևիլ ծա-
ռայի, և ոչ արքայուհւոյ՝ աղախնոյն սպաս
տանել. ա՛ռ և գնա՛ զարեգակնդ արդարու-
թեան, և տու՛ր ժամ վառման ճրագիս չափա-
ւոր նշողիւք՝ զոր ծախէ որ 'ի քեզդ կրի ա̃ծ
մեր հուր ծախիչ. զի թէ դասք բոցեղինաց
չկարեն տանել լուսոյ դորա, քանի՛ ևս ան-
կար է այդ հողեղինիս:

Դարձ արար այնուհետև կոյսն լուսածին
անդրէն 'ի Նազարէթ՝ հանդերձ ա̃ծորդ-
ւովն, զոր կրէր յարգանդի. և Եղիսաբէթ
փութապէս զերջանիկ մանուկն իւր 'ի լերս
ընծայեցոյց իբրև արուսեակ նորատեսիլ,
զաւակ աւետեաց, և աւետաւոր գուշակ
մեծաց բարեաց ա̃մ Տ̃ի. յորոյ 'ի դէմս իւրն-
դակից լինէին նմ ա̃մ ազգատոհմն իւր՝ զա-
նա եղեալ բարիսն ևեթ գիտելով. զի մեծ
արար տ̃ր զողորմութի̃ իւր ընդ նմ, պտուղ
պարգևելով ամուլ արգանդի, և գովելի
ծնողաց՝ ամենագով զաւակ. զորոյ զյարգն
օրքան զօր առաւել իմանային յելից իւրացն:
Քանզի յութօրեայ թլփատութեն պահու՝
անուն ընտրէին դնել նմ զաքարիա 'ի յի-
շատակ հօրն, զոր 'ի մեռելոց համարէին ու-
նէին վն անբարբառ մնալոյն ցայն վայր ա-
ւելի քան զամիս ինն: Բայց Եղիսաբէթ՝
հոգւոյն ազդեցութե̃ պնդէր, թէ ոչ, այլ՝
կոչեսցի Յովհաննէս. զնոյն հաստատեաց և

զաքարիա՝ 'ի տաճարակի դրոշմեալ զանունն
զայն, ուր չև էր լուծեալ կապանք լեզուին
նր̃։ Եւ ահա սքանչելիք կրկին 'ի տեղւոջն,
որ 'ի զարմացումն եած զամենեսին. զի եր-
կոքին ծնօղքն զնոր անուն միով հոգւով
սահմանէին որդւոյ իւրեանց. և ը̃ գրել
զաքարիայ զանունս յովհաննէս՝ որ լինե-
լոցն էր ձայն բարբառոյ յանապատի՝ քարոզ
բանին այ̃, առ նմին և լեզուն արձակէր, և
թերևս զոյգ ը̃ գրոյն ասէր, յովհաննէս է
անուն դորա. և այնուհետև համարձա-
կաձայն բարբառով օրհնէր զա̃ծ վն̃ եղե-
լոցն ամենայնի, և մարգարէական հոգւով
լցեալ՝ զխորին խորհուրդս մեկնն քարոզէր,
եթէ հասեալ է ժամանակ լրման ուխտին
առ հարսն եղելոյ՝ գալստեամբ բանին յի̃,
և թէ մարգարէ նորա յառաջընթաց՝ մա-
նուկն յովհաննէս լինիցի անշուշտ. որպէս
և եղև իսկ՝ յաճել և 'ի զարգանալ ման-
կանն, ը̃ որում էր ձեռն տն̃ ամենակալի՝
հոգւոյն իւրով բնակելով 'ի նմա։
Եւ այս ա̃մ՝ որ եանց ը̃ նա՝ սքանչելիք մե-
ծամեծ, ահ մեծ էարկ 'ի վր̃ ա̃մ մերձաւո-
րաց և հեռաւորաց. և զարմացեալ ասէին,
զի՞նչ լինիցի մանուկս այս։ Հնչեաց անուն
նր̃ առ ժամն. այլ պահեալ էր նմա ժամա-
նակ՝ հնչեցուցանել ձայն բարբառոյ յանա-
պատէ 'ի լսելիս ա̃մ ծագաց երկրի, զի պատ-
րաստ լինիցին ը̃ունել զեկեղ հասեղ թա-
գաւորն երկնի և երկրի։ Այ̃ և խորհրդով
լինէր նմա առ ժամանակ մի մեկուսանալ
յա-

յանապատ անդաստին 'ի տղայ տիոց. մինչև
մերձեցին աւուրք յայտնելոյ փրկչին Տի
զանձն իւր Տի. և կարապետն լիցի գալըս-
տեան նորա աւետարանիչ ։

Քանզի սր նախնեացն աւանդութե, 'ի կռ-
տորել հերովդի զմանկունսն բեթղեհեմի՝
ընդ նոսին կորուսանել կամելով զփրկիչն
տիեզերաց, խնդրեաց և զյովհաննէս սպա-
նանել՝ ուր և գտանիցի նա 'ի լեռնակող-
մանս. զի հռչակեալ էր անուն նր ընդ ամ
հրէաստան վս սքանչելի ծննդեան նորա ։
Յայնժամ աճապարեաց (ասեն) եղիսա-
բեթ, և առեալ զմանուկն՝ փախեաւ 'ի
լեառն (6). այլ 'ի պնդիլ արքունի խընդ-
րակաց զհետ նր, աղաղակեաց եղիսաբեթ
առ ած. և նոյնժամայն պատառեցաւ վէմն՝
որ անդ կայր, և առընկալաւ 'ի ներքս ըզ-
մայրն և զմանուկն ։ Իսկ ապա հրեշտակ ան
եհան զնս 'ի վիմէն. և ասաց եղիսաբեթի
գնալ 'ի տուն իւր, և զմանուկն թողուլ յա-
նապատի. զի մեք աստ՝ սպասաւորեմք ման-
կանդ հրամանաւն այ ։

Իսկ եղիսաբեթի՝ եգիտ զզաքարիա վախ-
ճանեալ, մանաւանդ թէ նահատակեալ վս
ճշմարտութե. քանզի ըստ հաւանելի կար-
ծեաց բազմաց՝ սպանին զնա 'ի տաճարի հը-
րէայք հերովդիանոսք, (որք մեսիայ ան-
դնէին զհերովդէս,) վս քարոզելոյ նորա
զգալուստ ճշմարիտն մեսիայի, յս քի, և
թաքուցանելոյ զորդի իւր ։ Իսկ մանուկն
յովհաննէս մնաց յանապատի անդ՝ անտես

'ի մարդկանէ , սպառաւորեալ 'ի հրեշտա֊
կաց , մինչև 'ի լնուլ երեսուն ամացն ։
Եւ ապա 'ի հնգետասաներորդ ամի տիբե֊
րեայ կայսեր՝ եղև բանն ա̃յ 'ի վ̃ր ն̃ր յանա֊
պատի անդ , գալ 'ի կողմանս յորդանան
գետոյ , և քարոզել զի մկրտութի̃ ապաշ֊
խարութե̃ 'ի թողութի̃ մեղաց ։ Յայնժամ ըս֊
կիզբն առնէր ն̃ք կարապետն իւրումն պաշ֊
տաման՝ յոր ընտրեցաւ , լինել աւետաւոր
և յառաջընթաց հրեշտակ տ̃ն ամենակալի՝
հորդելով ճանապարհ առաջի նորա նորա֊
հրաշ ձևով և ձայնիւ̂ բարբառոյ յանապա֊
տէ ․ քանզի լինէր քարոզ բանին մարմնա֊
ցելոյ՝ ոչ ճարտարութե̃ բանից , այլ՝ ճըշ֊
մարտութե̃ն նախանձաւորութե̃ ը̃ս եղիայի ․
ոչ երևելի շքով , այլ՝ անշուք և անընդել
տարազու , հանդերձ զգեցեալ 'ի ստևոյ ուղ֊
տու՝ իբրև խարազնազգեաց ճգնաւոր , և
գօտի մաշկեղէն ը̃ մէջ ածեալ ․ նոյն և ը̃ կե֊
րակրոյն առանց հանդերձանաց պատրաս֊
տութե̃ , մարախ և մեղր վայրենի՝ չափով
կերակրեալ (7) ․ առաւել գործով քան բա֊
նիւ̂ հաւատարիմ առնել կամեցեալ զքարո֊
զուն ապաշխարութե̃ ․ յոր մարզեցաւն կան֊
խաւ երեմնամեայ խստամբերութե̃ 'ի միայ֊
նութե̃ , և զնոյն պահէր կարգ և յընթացս
քարոզութե̃ ։

Զարմացեալ էր ա̃մ ժողովուրդն ը̃ գործ
կարապետին ․ զի տեսանէին զայր անապա֊
տական՝ տկարացեալ 'ի պահոց , և այլագու֊
նեալ 'ի տապոյ և 'ի ցրտոյ , ճգնաւոր վա֊

րուք

րուք և համեստ գնացիւք՝ իբրև երկնաւորք զուարթուն՝ լի հոգւով եկեալ 'ի նոր քարոզութի, որ անլուր էր առ նմա ։ Բայց իբրև լսէին զազդու բանս՝ զոր ծաւալէր 'ի հոգեբուղխ շրթանց իւրոց, երագ աշակերտէին հլութբ վարդապետութե նր . խոստովան լինէին զմեղս իւրեանց, և դառնային յուղղութի վարուց՝ մկրտեալք 'ի նմանէ ջրով 'ի նշանակ թողութե մեղաց՝ օրինօք ապաշխարութե . որով և շինութի և մխիթարութի մեծ լինէր ամ բարեսիրաց . որպէս վկայէ և յարտաքնոցն յովսեպոս եբրայեցի . զորոյ զբանս գտցես 'ի կարգի յետագայ ծանօթութեց (8) . և այնպէս իրագէտ լինէին ամ ունկնդիրք ճշմարտութե՝ եթէ այր այ է նա, և տիրապէս մարգարէ . որ զճանապարհն՝ որ առ ած տանի, ցուցանէ նց, և զակնկալեալ փրկութին քի աւետարանէ . մինչև 'ի կարծիս լինել բազմաց, եթէ ինքն իսկ մեսիայն իցէ ։

Իսկ երանելին 'ի բաց տարեալ յանձնէ զայնպիսի անուն փառաց՝ խոստովան եղև յայտնապէս, թէ չեմ ես քն, այլ՝ առաքեալ առաջի նր իբրև կարապետ նորուն և փեսաւէր . ուր չէի իսկ արժանի և ծառայաբար զխրացս կօշկաց նր լուծանել ։ 'Ի միջի ձերում կայ՝ զոր դուքն ոչ գիտէք . զարուեակն տեսիք, և արեգակն համարիք՝ կարօտեալքդ լուսոյ . այլ պատրաստեցէք ըզսիրտս ձեր, զի ծագեսցէ 'ի ձեզ 'ի մօտոյ նա ինքն աղբիւրն լուսոյ՝ արդարութե ա-

րեգական. ես մկրտեմ զձեզ ջրով յապաշխարութիւն. այլ որ զկնի իմ գայ՝ որ և յառաջ իսկ է քան զիս անսահման յաւիտենիւն, անսկզբնական ծնունդ հօր՝ ը̃ ժամանակաւ մտեալ ըստ մարմնոյ ծննդեամբ 'ի կուսէն, նա մկրտեսցէ զձեզ 'ի հոգի սբ̃ և 'ի հուր. որ նա ինքն է սրբիչ աշխի յարատոյ մեղաց, և լուսատու տիեզերաց, որպէս և զիս գլխովին յարգանդի սրբեաց և լուսաւորեաց. զի է սրբութիւն սբ̃ց, և լոյս 'ի լուսոյ. կեանք 'ի կենաց, և կենդանարար ամենայնի. թագաւոր թագաւորաց, և դատաւոր կենդանեաց և մեռելոց. որ եկն այժմ իբրև հովիւ հեզութբ̃ գառին՝ 'ի ժողովել զորդիսն ա̃յ զցրուեալսն 'ի մի, և բարի առնել ամենեցուն. և միւսանգամ եկեսցէ փառօք՝ 'ի մեկնել զընտրեալս 'ի խոտան եղելոց, և հատուցանել իւրաքանչիւր ըստ գործս իւր։

Օայս և առաւել քան զսոյն աւետարանէր ժողովրդեան. մխիթարէր և խրատէր, յանդիմանէր և յանձանձէր։ Նւ գրլուխ ա̃մի՝ զնա ինքն զառաջնորդն փրկուե̃ մատամբ ցուցանէր նոցա՝ ասելով. ահաւասիկ գառն ա̃յ՝ որ բառնայ զմեղս աշխի, 'ի մի բան խորհմաց բովանդակել զանձառ տնօրէնութե̃ զխորհուրդ (ակնարկելով 'ի բանս մարգարէիցն. եսայ. ծգ̃. և երեմ. ժա̃. և եզեկ. ժը̃։) Արդ՝ որ այսմ ա̃մի հասու եղև հոգւով քարոզ յայտապատում մեծ կարապետն, սոսկացեալ պակեաւ ը̃ խոնարհութ̃

ան

տն իւրոյ եկեղեցւոյ յընդունելութիւն մկրտութեան ՚ի ծոցէն · վասնորոյ իսկ և իսկ հրաժարէր , և չառնոյր յանձն զայն գործ անհնարին · ինձ պիտոյ է ասէ ՚ի քէն մկրտիլ , և դու առ իս գաս ։ Բայց հարկեցաւ հնազանդութեան օրինօք լսօղ լինել փրկչին , որ ասէր · թո՛յլ տուր այժմ, զի այսպէս վայել է մեզ լնուլ զամենայն արդարութիւն ։ Եւ այսուիկ՝ որ կարապետն էր , եղև և մկրտիչ որդւոյն Այ , ըդ-քահանայական գոգցես պաշտօն ՚ի կիր արկել՝ ՚ի վերայ քահանայապետին ճշմարտի ըստ կարգին մելքիսեդեկի · վասնորոյ կոչի և ձեռնադրօղ որդւոյն Այ · եւս առաւել՝ զի զկնի մկրտութեան ետես և զիջումն հոգւոյն սրբոյ աղաւնակերպ ՚ի վերայ էակցին , ՚ի խորհուրդ օծութեան մերոյ , որոց առաջի կայր յանուն օծելոյն Քի՝ քրիստոնեայս անուանիլ ։ Եւ արդ՝ ո՞ր բան բաւական իցէ յայտնել զմեծութիւն պատուոյն , որ տուաւ մեծ կարապետին այսպիսի ահաւոր խորհրդակատարութեան , լինել ոչ միայն հրեշտակ Տեառն ամենակալի , այլև ձեռնադրօղ և մկրտիչ որդւոյն Այ · մինչ զի և Տէրն ՚ի նոյն անուն հրատարակէր զանհամեմատ բարձրութիւն իւրումն կարապետի գեր ՚ի վեր քան զդաս ամենայն ընտրելոց, անհրաժեշտ բանիւն․ Ամէն ասեմ ձեզ , չէ յարուցեալ ՚ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս Մկրտիչ ։ Վասն որոյ և արժանապէս կարգի ՚ի գըլուխս ամենայն մաղթանաց եկեղեցւոյ հայաստանեայց՝ առընթեր Աստուածամօր կուսի անուն

՚նք կարապետին , իբրեւ երկդ յետ նր բարե-
խօս տիեզերաց . և մր յարգանօք պաշտա-
մանն փառաւորի ը մր եկեղեցիս՝ բազմա-
պատիկ տօնախմբութբ ամ ըն ամէ , ը ծնըն-
դեանն , և ը կատարմանն գլխատմանն .
որպ և ը գիւտի և փոխադրութե նշխարաց
յայլ և այլ տեղիս : Մ`ինչև ընուլ ՚ի նմ և
արդեանց կոչմանն նր ձայն բարբառոյ . զի
ընդ մր երկիր ել բարբառ նր , և մինչև ՚ի
ծագս ծի են խօսք նր : Ո՞ր ազգ իցէ քրիս-
տոնէից , որ ոչ պատուեսցէ զմեծ կարա-
պետն՝ սեպհական տօնակատարութբք . ո՞ր
քաղաք է՝ յոր ոչ իցէ կանգնեալ տաճար կմ
խորան ՚ի յիշատակ անուան մեծի մկրտչին .
որպ և ուրեք ուրեք հոյակապ վանք , յորս
հանգիստացեալ է ուխտ սբյ կարապետին ՚ի
մուշ տարօնոյ . և ո՞ ոք կայցէ ՚ի մէջ հաւա-
տացելոց ՚ի փոքրկանց մինչև ՚ի մեծամեծս
նց , որ ոչ կարդայցէ զանուն նր . կմ ընդ
կարդալն՝ ոչ առնուցու զոր խնդրեացն հա-
ւատով : Նա որ և մեք կանխեսցուք՝ սոյնպ
երկրորդելով զոր ըղձաձայնէ եկեղեցի ՚ի
շարականոցի . * Փութացիր մեզ յօգնութի
առ ՚ի վերուստ նք յովհաննէս, առաքեալ և
մարգարէ , և կարապետ և մկրտիչ որդւոյն
այ (9) . առ քն բարեխօսեա վն անձանց մե-
րոց || :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Մեծ ժամագիրք յունաց՝ որ կոչի մն, ց ամիս, է վերնագրովդ, (զոր յիշեցաք, սինաքսիս, եւն)՝ի յուն-վարի 7. այսպէս սկսանի խօսել. * ՚Ի վաղիւն անդր ՝ք
,, ածայայտնութեանցն՝ սինաքսին (այ զտօնախմբութիւն) ա-
,, մենասբ մարգարէին, կարապետին եւ մկրտչին, որպէս
,, խորհրդոյ ածային մկրտութեան պաշտօնեայ եղելոյ, ըն-
,, կալաք ՚ի սկզբանէ եւ անդստին՝ տօնել, համագա-
,, սեալ ընդ այլ նորին գովասանութիւնս||. եւ որ ՚ի կար-գին: Ապ եւ բասիլեան յայսմաւուրք նոցա՝ մինօլոգիոն ցյ ամսախօսութիւն կոչեցեալ, ՚ի նմին աւուր՝ է նովին խո-րագրով. * Սինաքսիս (տօնախմբութիւն) սբ եւ փառա-
,, ւոր մարգարէին եւ մկրտչին յովհաննու||. ՚ի մէջ բե-րեալ զգովութիւնս նր յաւետարանէ, ՚ի վր ածէ. * Վս
,, այսորիկ մեծարեալ զմկրտիչն եկեղեցին այ՝ կատարէ
,, ըստ ժամանակին տօն. եւ անուանէ զայն սինաքսին. վս
,, զի համահաւաքի ժողովուրդն ՚ի նմին, փառաւորել
զած, եւ զնորուն կարապետն||:

Իսկ տօնացոյցք հայոց՝ հին եւ նոր՝ է հանրապէս ունին այսպէս. * Յետ ութօրէիցն (յայտնութեան) առաջին (տօն) ծննդեան յովհաննու կարապետին||. կմ * Նախ եւ առաջին (կմ առաջ) յովհաննու ծննդեան||: ՚Ի քանի մի միջին եւ նոր օրինակս գրի սոսկ. * Տօն է յովհաննու մկրտչին||: Իսկ ՚ի հնագոյնս կայ եւ այսպէս. * Նաւասարդի ա. (յոմանս՝ նաւասարդի ՚ի ա.) յովհաննու ծննդեանն. զոր կարգել է սբ գրիգոր հայոց լուսաւորիչն||: Եկեսցուք եւ ՚ի Ճաշոցս. յորս ըստ հին օրինակաց սովորաբար յետ ութօրէից յայտնութեան գրի եւ կարգ տնընդառաջին. եւ ապա սկսանին տօնք սբց այսպէս. * ՚Ի նաւասարդի. ա. տօն է ծննդեան յովհաննու մկրտչի||. կմ * ՚Ի նաւասարդի. ա. յովհաննու մկրտչի||. կմ * Զկնի ութօրէիցն՝ առաջին՝ յովհաննու մկրտչի տօն է||: կմ * Կարապետին յովհաննու ծննդեան||. կմ * Նաւա". ա. Յովհաննու||:

Արդ թողեալ առ այժմ զզանազանութիւն օրինակացս՝ զորմէ այլուր լիցի բան ՚ի խօսելն զառաջին, զմիջին, եւ զվերջին կարգաւորութեան տօնացուցին մերոյ, Ճաշոցին

չոցին, և յայսմաւուրաց, այս ինչ յայտնի է՝ զի սովորութիւն ազգիս հայոց անդստին 'ի սկզբանէ միացոյց զտօն ծննդեան մկրտչին ը. նախայիշատակեալ տօնախմբութեան նր մեծի՝ անընդմիջապէս զկնի յայտնութե. ուր յոյնք ուրոյն ևս տօնեն զծնունդ նր յայլում վայրի. իսկ լատինք չունին զայս տօնախմբութիւն առաջին, այլ զծնունդ նր մեծահանդէս կատարեն: Այլ թէ քանիցս 'ի տարւոջ առնեն այս երեք ազգք այլ և այլ տօն յիշատակի սորա, և յոր օր ամսոյ, թէպէտև յընթացս գործոյս հետ զհետէ ունիս իմանալ, բայց աստ ցուցից քեզ զցանկն 'ի յայսմաւուրաց և 'ի տօնացուցից նոցա:

Ըստ յունաց, 'ի յունվարի. 7. տօնախմբութիւն յովհաննու մկրտչի՝ հանրական: 'ի սեպտ. 23. յղութիւն նորա: 'ի յունիսի. 24. ծնունդն: 'ի 29. օգոստ. գլխատումն: 'ի փետր. 24. առաջին և երկրորդ գիւտ պատուական գլխոյն: յաւելու ժամագիրքն նց 'ի 25. մայիսի. զերրորդ գիւտն գլխոյն. և 'ի 24. յունվարի զյիշատակ առ դերեզմանին:

Ըստ լատինացւոց, 'ի յունիսի. 24. ծնունդ մկրտչին: 'ի 29. օգոստ. գլխատումն: և 'ի փետր. 24. առաջին գիւտ գլխոյ նր յեմ: ևս և ըստ հին օրինակաց՝ 'ի սեպտ. 24. յղութիւն նր:

Ըստ հայոց՝ զկնի ութօրէից յայտնութե առաջին տօն՝ ծննդեան յովհ. մկրտչին. որ դնի հանդերձ յիշատակաւ ծնողաց նր (նախ) 'ի յայսմաւուրս. Հ. յունվարի. 14: Գլխատումն նր՝ 'ի ա. շաբաթու զկնի յարութե. Հ. օգոստ. 29: Փոխադրութիւն նշխարաց նր՝ ը. աթանագինեայ՝ 'ի լուսաւորչէ, զկնի տօնի հռիփսիմեանց. Հ. օգոստ. 11. կմ՞ նաւասարդի. ա: Տօն ը. մարգարէից՝ զկնի զաքարիայի հօր իւրոյ, 'ի միջոցի երրորդ կիրակէի վերափոխման. որոյ չիք որոշ տեղի 'ի յայսմաւուրս. Հ. ոչ կայ անդ. 'ի փետր. 24. գիւտ գլխոյ նր. ևս և հոկտ. 10. յղութն նր. (որոց չիք տեղի 'ի տօնացուցի.) և ըստ նմին համեմատութե կայ անդ (դարձեալ). 'ի յուլիսի. 11. ծնունդ մկրտչին. (որ չիք կրկնեալ 'ի տօնացուցի):

Արդ յայտնի է, թէ յայսմաւուրք Հ. յերկուս տեղիս դնելով զծնունդ մկրտչին, այս 'ի յունվարի. 14. և 'ի յուլիսի 11. տայ իմանալ՝ թէ մին է բուն օր ծննդեան ըստ հաշուի ազգին. այս յուլիսի. 11. (որ կապեալ է ը. տօնի ծննդեանն քի՝ կանխելով քան զայն վեց ամ-

սօք

սզք․) Իսկ միւսն է յիշատակ մկրտչին և ծնողաց նորա՝ Իբրև վկայ ծննդեան և մկրտութեն տն, կմ որ նոյն է տօնախմբութին մկրտչին նոյն է՟ սինաքսիս յունաց․ այն է եղեալն 'ի յունուարի․ 14 ։ Վնյ և որ լինել (ժամանակակից վանական վարդապետի), որ է զգուշաւոր յամ ընթացս յայսմաւուրաց իւրոց, 'ի յունուարի․ 7․ (համգէտ յունաց) դնէ լոկ, * Յիշատակ է յովհաննու մկրտչին․ (յաւելու և ը՟ հաշուէի հայոց) և ստեփաննոսի նախավկային||։ Իսկ 'ի յուլիսի ժա՟․ պարզապէս դնէ (ը՟ հաշուէի հյ․) * Ծնունդ է յովհաննու մկրտչի||։ Բայց քանզի չէրև 'ի նախնեաց անուն սովորութ ազգիս կատարել ըստ ծնունդն նր, նմին իրի 'ի տօնացոյցս և 'ի Ճաշոցս 'ի նախնի ժամանակաց հետէ՝ տօն ծննդեան նր միայարութբ նշանակեցաւ յաւուր մեծի տօնախմբութեն նր զկնի ութօրէից մկրտութեն տն։

Եւ այսմ պատճառ յորդորիչ և հարկեցուցիչ այն եղև, զի սբ լուսաւորիչ մեր զմի՝ եւեթ գլխաւոր տօն կարգեալ էր մկրտչին՝ յաւուր փոխադրութե նշխարաց նր, առանց որոշելոյ՝ թէ տօնելի իցէ կմ ոչ ծնունդ նր, և գլխատումն և գիւտ գլխոյն․ ևն, և օրն էր տօնի մկրտչին առ լուսաւորչիւ 'ի նաւասարդի․ ա․ որ յայնժամ անկանէր 'ի սեպտեմբեր ամսին հռովմայեցւոց․ (յորում է ըստ յունաց տարեգլուխ եկեղեցական)։ Այսմ ոչ ուշ եղեալ յետոյ, և կմ խորհրդով այլազգ կարգաւորեալ, տեսանելով՝ եթէ յոյնք 'ի տարեգլխի հռովմայեցւոց՝ ոյ 'ի մէջ յունուարի առնեն ըղմեծ տօնախմբութի մկրտչին, զտօն լուսաւորչադիր վերածին 'ի նոյն վայր, ոյ 'ի յունուար․ միայն թէ՝ զոր յոյնք կատարեն յերկրորդ աւուր մկրտութե 'ի 7․ յունուարի, ինքեանք հաստատեցին յետ ութօրէից մկրտութե, ոյ 'ի յունուարի․ 14 ։ Բայց տեսեալ թէ յաւուրս սբց թարգմանչաց՝ նաւասարդի ա, պատահանէ 11․ աւուր օգոստոսի, (ըստ որոյ յարմարեցաւ անշարժ հաշիւն յայսմաւուրաց,) նաև յայնմ աւուր պահեցին զտօնն կարգեալ 'ի լուսաւորչէ յանուն փոխադրութե նշխարաց մկրտչին․ և աստի հարկ եղև վերջին յարմարողի յայսմաւուրաց՝ յերկուս տեղիս ևս նշանակել զծնունդ մկրտչին, կարծելով՝ թէ լուսաւորիչն վս տօնի ծննդեան նր սահմանեալ իցէ զայն օր․ որ է սուտ․ զի յաւուրս լուսաւորչին նաև յոյնք և հռովմայեցիք չունէին զտօն ծննդեան մկրտչին․ ուստի յայտ առնեն բոլլանդեանք և այլք 'ի հնախօսից․ զորոց ըղ֊

բանս

քանս այլուր յառաջ բերցուք ։ Այլ քանզի յետ սրբոյն ամբրոսիոսի (որ էր 'ի Ե դարու), և մանաւանդ յաւուրս մեծին գրիգորի հռովմայ հայրապետին (որ էր 'ի Զ դարու՝ 'ի սկզբան Թուականութեան հայոց,) եմուտ առ լատինս տօն ծննդեան մկրտչին, ոչ և առ յոյնս 'ի նոյն ժամանակս՝ ըստ կարգաւորութեան սրբոյն սաբայի աբբայի (որ էր 'ի Ե և Զ դարու,) յայտնի երևի մեզ՝ թէ մովսէս կաթուղիկոս ժամանակակից սոցա 'ի նորոգելն զտոմար հայոց հանդերձ նոր թուականաւ, որոշակի եդեալ իցէ 'ի տօնացուցի և 'ի ճաշոցի զայն բան. * Նաւասարդի, Ա. տօն է ծննդեան յովհաննու մկրտչի ||. Եւն. և զայս այնչափ աւելի իրաւամբք կարէր և հարկաւորիւր առնել մովսէս կաթուղիկոս, որչափ անտարակոյս է ըստ տումարագիտաց՝ թէ յամի տեառն 552. որ է առաջին ամ թուականութեան հայոց, նաւասարդի Ա. հանդիպեցաւ լինել 'ի յուլիսի. 11 ։ Ըստ որում գրեալ կայ յայտնապէս և 'ի հին տումարն ազգիս. * 'ի դնել մեծ թուականին հայոց, նաւասարդն՝ ըստ հռովմայեցւոց ամսոց 'ի յուլիսի. ԺԱ ||: Առ այժմ վասն սոցին այսքան ։

(2) Եթէ ոմանք զմարգարէն եղիա առաջնորդ միայնակեցաց անուանեցին՝ վասն կալոյ նորա առ ժամանակ մի յառանձնութեան քառասնօրեայ պահօք, քանի՛ ևս այլք իրաւամբք զնոյն պատիւ ընծայեն յովհաննու մկրտչի՝ որ զամս երեսուն անապատաւոր ճգնութեամբ եկաց, հանդերձ ձևով կատարեալ միայնակեցի. ըստ որոյ ասի 'ի շար. * Նախաշաւիղ հետևողացն անձուկ ճանապարհին նոր օրինացս ընդ առաքելոցն ||. Եւն, մինչև ցայն, թէ * 'ի յօրինակ մեռելութեան գօտի մաշկեղէն ընդ մէջ ածեալ քո երևեցար ||:

(3) Հերովդէսս այս առաջին՝ որ կոչի մեծ, և ասկաղոնացի, էր որդի անթիպատրոսի իշխանին ասկաղոնայ, ծնեալ 'ի նմին ասկաղոն քաղաքի, որ էր յեզր միջերկրական ծովուն մեծի յարևելից կողմանէ, մի յերևելի քաղաքաց հինգ նախարարութեանն այլազգեաց, 'ի սահմանակցութեան հրէաստանի՝ իբր 520 ասպարիզաւ հեռի յԵրուսաղեմէ ։ Եւ զի անթիպատրոս էր որդի անթիպատայ իշխանի երկրին եդովմայեցւոց, վասն այսորիկ կոչի նա՝ ոչ և հերովդէս իսկ՝ եդովմայեցի. և ազգ նորա ևս ըստ հասարակ կարծեաց նախնեաց՝ էր այլազգի, այլ թերևս խառն ազգակցութեամբ ընդ հրէայս. որոյ վասն վէճ է զազգէն հերովդի առ նոր քննիչս. մինչև ոմանց կար-

կարծել զնա սերել 'ի յունաց աթենացւոց ։ Այս ինչ յայտնի է և ճունելի ամենեցուն, զի հերովդէս էր օտարազգի ոք, և ոչ ժառանգ թագաւորութե հրէաստանի, այլ 'ի հռովմայեցւոց առացել զայն իշխանութի՝ զօրացաւ յոյժ ․ և ճարտարութբ իւրով և արտաքին շինութբ ձգեաց զսիրտ հրէից զկնի իւր ․ այլ 'ի վերջին ժամանակս իւր եղև կարի դժնեայ և անագորոյն բռնաւոր ․ և յետ կոտորելոյ զմանկունս բեթղեհեմի՝ արագ արագ ընկալաւ զչարաչար կատարած ։ Սորին մանկակոտոր հերովդի որդի է անթիպաս հերովդէս՝ չորրորդապետ Յին գալիլեացւոց, գլխատիչ յովհաննու մկրտչի, և արհամարհօղ փրկչին՝ արկեալ զնովաւ հանդերձ սպիտակ ։ Եւ նր յաջորդ եղև որդի եղբօր իւրոյ արիստաբուղեայ՝ ագրիպպաս հերովդէս, սպանօղ յակոբայ եղբօրն յովհաննու, և բանտարկօղ պետրոսի, հարեալ 'ի վախճանի 'ի հրեշտակէ տն, և որդնալից սատակեալ ։ Եւ սորա յաջորդ նստաւ որդին իւր՝ միւս ագրիպպաս հերովդէս՝ փոքր կոչեցեալ ․ յորոյ աւուրս կացուցաւ սբն պօղոս առ փեստոս դատաւորաւ ։

(4) Ընդէ՞ր արդեօք ասի զաքարիա քահանայ՝ լինել 'ի դասակարգէ աբիայ, այսպէս իմանան մեկնիչք՝ հայելով 'ի բանս Նբ գրոց ․ Ա ․ մնաց ԻԴ ․ 10 ․ իբր զի յորժամ կամեցաւ արքայ դաւիթ կարգ դնել պաշտօնէից տն՝ որք էին 'ի ղեւտացւոց անտի յորդւոցն ահարոնի, ետես եթէ բազմաթիւ են յոյժ՝ մինչև անմարթ էր ամենեցուն միանգամայն կալ 'ի սպասու խորանին, կարգեաց զնս 'ի քսան և չորս դասակարգութիս՝ ըստ քսան և չորից արանց գլխաւորաց՝ առաջնորդաց նց ․ յորոց վեշտասանքն էին 'ի տանէն եղիազարու որդւոյ ահարոնի, և ութ 'ի տանէն իթամարայ միւս որդւոյ ահարոնի ։ Եւ զի մի լիցի վէճ և խնդիր վս առաւելանի իւրաքանչիւր դասակարգութեց, որոշեաց զնս վիճակաւ 'ի կարգս կարգս՝ յառաջին և յերկր և յերրդ ևն ․ որք զի յաջորդաբար իւրաքանչիւրն 'ի դասակարգութեց զեօթնեակ մի ծառայեսցեն 'ի տան տն ․ և յայսմ կարգի՝ ութերորդ դասակարգութին անկաւ վիճակաւ այնմ, որոյ անուն կոչէր աբիա ․ և ահա յայնմ կարգէ էր և զաքարիա հայրն յովհաննու մկրտչի ։

Այլ թէ արդեօք լոկ քահանայ էր զաքարիա, եթէ քահանայապետ, երկպառակութե է կարծեաց 'ի սկզբանէ և այսր ․ բզմք 'ի նախնեաց և սակաւք 'ի յետնոց՝ ա-

սեն

սեն լինել քահանայապետ, և ընդ հակառակն յոլովք 'ի վերջնոց և ոմանք յառաջնոց՝ ասեն քահանայ լինել այնդեն: Պատճառ առաջին կարծեաց առեալ լինի 'ի ձևոյ բանից աւետարանչին, ուր կարծի խօսել զբացարձակ քահանայէ գլխաւորէ տաճարին և զերևելւոյ առաջի ամ ժողովրդեան: Իսկ պատճառ երկրորդին առեալ լինի 'ի պատմութենէ քահանայապետաց Հրէից՝ առ յովսեպոսի. ուր ճառէ՝ թէ քահանայապետ այնր ժամանակի էր սիմոն անուն ոմն՝ որ զքսան և չորս ամ վարեաց զայն իշխանութի մինչև մօտ 'ի վախճան հերովդեի. և ոչ յիշի ոք 'ի քահանայապետաց ժամանակին զաքարիա անուամբ: Եւ թէպէտ մարթ էր ասել, թէ գուցէ յովսեպոս այլով անուամբ 'ի մէջ բերէ զնա, որպէս թէ նոյնն կոչիցի միանգամայն սիմոն և զաքարիա, բայց ընդդէմ ելանէ այն՝ զի սիմոնն այն էր աներ հերովդի, տալով նմա զդուստր իւր. իսկ զաքարիա՝ որպէս յայտ է յաւետարանէ, չունէր զայլ զաւակ՝ բաց 'ի յովհաննէ, զոր 'ի ծերութեան ծնաւ: Այլ 'ի վերայ այսր ամի՝ 'ի դէպ է ասել ըստ ոմանց՝ (որպէս և իգնատիոսին բանք զնոյն ցուցանեն), թէ թէպէտև օրինաւոր քահանայապետն էր միայն զաքարիա, բայց կային և այլք՝ որք ձեռամբ հերովդի վարէին զայն իշխանութիւն. և զայնոսիկ ևեթ թերևս յիշէ յովսեպոս՝ իբրև առաւել ճոխացեալս արտաքին իշխանութեամբ:

Որպէս և իցէ՝ յայսմ դժուարին խնդրոյ ծագեցաւ և այլ խնդիր դժուարին վասն ժամանակի ծննդեան մկրտչին. զի որք զզաքարիա քահանայապետ համարեցան, եդին՝ թէ որովհետև միանգամ միայն 'ի տարւոջն լինէր նմա մտանել 'ի ներքին խորանն, որ է 'ի տասներորդ աւուր եօթներորդ ամսոյն, որ է թշրին. յայնմ աւուր իցէ լեալ երևումն հրեշտակին. և ապա յետ այսչափ ինչ աւուրց պաշտամանն 'ի դառնալն 'ի տուն՝ յայն ինչ աւուր որոշակի լեալ իցէ յղութի յովհաննու մկրտչի յեղիսաբեթէ: Իսկ որք ոչ դնեն քահանայապետ, ամենևին ինչ ոչ կամին որոշել, մանաւանդ թէ և չկարեն: Մարթ էր որոշել ինչ՝ հայելով 'ի վեցերորդ ամիսն, որ կանխէ քան զծնունդ Քի, բայց և զայն չէ մարթ ստոյգ գուշակել. զի (որպէս բազմօք գրեն բոլլանդեանք) ոչ միայն վէճ էր 'ի նախնեաց հետէ վասն աւուր ծննդեանն Քի, այլև անգիտելի է՝ թէ արդեօք վեց ամիսքն՝ որք անցին 'ի ծննդենէ մկրտչին մինչև 'ի ծնունդ Քի, ամբողջ իցեն տիրապէս, եթէ դոյզն ինչ աւելի

կամ

կմ յաւէտ պակաս, փաղատութբ՞ աւուրց՝ եթէ բա-ցառութբ, են: Յայսոսիկ հայեցեալ՝ ասեն նախ Բոլ-լանդեանք. * Վայրապար գուշակեցին ոմանք յաւուրս
„ յուլիսի պապին, որք համարէին՝ թէ կարօղ լիցին ա-
„ պացուցանել զօրն յղութն յովհաննու, բստ նմին և
„ ծննդեան նր՝ և քնի, հայելով յօրն՝ յորում քահանայա-
„ պետն մեծ 'ի տարւոջն միանգամ մտանէր 'ի սրբութ
„ սրց||: Եւ դարձեալ ասեն. * Քանզի ը մէջ 24. ա-
„ ւուր սեպտեմբերի, յորում կեղակարծ դնի յղութ
„ մկրտչին, մինչև 'ի 25. մարտի՝ յորում տօն մարդեղութ
„ բանին կատարի (առ բզմս), վեց ամիսք ամբողջ գտա-
„ նին, նմին իբր համարակօրէն մեկնիչք զամիսն վեցե-
„ րորդ իմանան լրացեալ կմ իբր լրացեալ. Թէպէտ և
„ բան աւետարանին յաւէտ զսկզբնաւորեալն երևի ցու-
„ ցանել||: Զայսոսիկ նշանակեցաք 'ի ծանուցանել զդժ-ուարութ այսպիսի պատմական և ժամանակագրական խնդրոց. զի մի անգէտք վճռաբար և անխորհրդաբար խօսեսցին զանյայտ իրաց իբրև զյայտնեաց:

(5) Թէ զիարդ կոչի եղիսաբեթ ազգական սբյ կու-սին, որով և ազգակցութ ծագի ը մկրտիչն՝ և ը փր-կիչն մեր, ունիս իմանալ՝ յորոց ունիմք ասել 'ի տօնի յովակիմայ և աննայի: Աստանօր դիցուք զհաւանա-կան դրութի բարեպրոքի բոլլանդեան, որ ասէ՝ թէ անդէն բառս ազգական նշանակէ մօրաքոյր, ոպ դնի և 'ի պարսկական թարգմանութն իմիք. զնոյն հաս-տատէ և սբն հիպողիտոս՝ առ նիկեփորայ. ը. 3. յա-սելն՝ թէ մատթանայ քահանայի եղեն դստերք երեք՝ 'ի մարեմայ կնոջէ իւրմէ. որոց անուանք կոչեցան՝ մա-րիամ, սոբէ, և աննա. մարիամ կանխագոյն ամուս-նացեալ 'ի բեթղեհէմ՝ ծնաւ զսողոմէ. նոյնպս և սոբէ անդ 'ի բեթղեհէմ ծնաւ զեղիսաբեթ. և աննա յերկ-րին գալիլեացւոց ծնաւ զանարատ խկուհին մարիամ ածածին. որով սողոմէ և եղիսաբեթ և տիրամայրն՝ երից քերց դստերք գտանին, կամ մօրաքեռորդիք մի-մեանց. ըս նմին և մկրտիչն յովհաննէս և տրն մեր յս քս՝ մօրաքեռորդւոյ որդիք:

(6) Փախուստն եղիսաբեթի յանապատ հանդերձ յով-հաննու՝ ըս գրելոյս համաձայն Հ. աւանդութի է հին՝ զոր 'ի մէջ բերէ սբն պետրոս աղեքսանդրացի փայ-լեալ յամի տն իբր. 300. զնոյն երկդէ և հաւանեցու-ցանէ բարոնիոս կարդինալ՝ 'ի մուտս տարեգրութ. հա-ճար. ծդ: Զնոյն իմն և վն կատարման զաքարիայ: Եւ

թէ-

Թէպէտ ոմանք 'ի յետնոց անհաւան գտանին ը՟ իրսդ, այլ առանց բանաւոր և զօրաւոր փաստից՝ բաց 'ի սո֊վորական պատճառանաց յիրս դժուարահաւատալիս · մինչ զի պապեբրոք բոլլանդեան՝ համարձակախօսն 'ի կրիտիս, յփ գտտիչ, անուանեալ խուզարկու հնութե՟, ոչ հանդարտեալ հին աւանդիցս՝ իշխէ հնարել ը՟ մտի նոր կարծիս · զի ասէ · 'ի յունիսի · 24 · Երես · 689 · * Ունիմ ասել, թէ ոչ յառաջ քան զեօթնամեայ կա՟ ութամեայ, եւ և զտասնամեայ հասակ՝ մեկնեալ իցէ նա 'ի տանէ հօր իւրոյ ||: Եւ մեք բազում ինչ ունիմք ասել առ այսպիսիս · և զինչ են ասութիք ըստ կամի : Իսկ մեծ ընդդիմութիւն իւր այս է, զի ասէ՝ թէ սահմանք բեթղեհեմի ոչ ձգէին մինչև 'ի լեռնակողմն, ուր էր տունն զաքարիայ · որ զի մարթասցի և յովհաննէս լի֊նել 'ի վտանգի մանկակոտոր հարուածոյն : Բայց չէ՛ ինչ ընդդիմութիւն, զի թէպէտև հերովդէս ուղղակի 'ի բեթղեհեմի մանկունս եհեղ զսպանումն իւր, բայց յայտ է թէ ալեկոծ էին միտք նր՟՝ մի՛ արդեօք այլուր փա֊խուցեալ իցեն զնորածին մեսիայն · ոպ՟ և յիրաւի փա֊խուցին · նմին իրի յետ ցուցանելոյ զդաղանութիւն իւր յամ՟ սահմանս բեթղեհեմի՝ տակաւին 'ի խնդիր էր և յայլ տեղիս դուշակօք ունել · և զի պատմեցաւ նմ՟ թէ սքանչելի մանուկ ոք կայ 'ի լեռնակողման, որոյ անունն հնչէ առ ամենեսին, անտարակոյս երևի՝ թէ և անդ խնդրակս իցէ արձակել · այն զի և կասկած իւր առաւել էր քան զհաւատալն (անհաւատ առն) բա֊նից այլոց, որք ստուգեցին նմ՟ գրովք թէ 'ի բեթղե֊հէմ պարտի ծնանիլ մեսիայն : Թող զի ոչ գտանէ պա֊պեբրոք, և ոչ ունի գտանել՝ թէ առ ի՛նչ 'ի տղայութե՟ թողին ծնօղք յովհաննու զնա յանապատ : Բան սր՟յն պետրոսի աղեքսանդրացւոյ 'ի հատ · Դ · Մատենադարանի հարց · Երես · 105 · 'ի կանոնն · ԺԳ · ունի այսպէս · * Ամ՟
,, մանկունք՝ որ 'ի բեթղեհէմ և 'ի սահմանս նորա · · ·
,, բարձան 'ի կենաց 'ի մարդախոշոշ հերովդէ՝ առ 'ի կա֊
,, րօղ լինելոյ կորուսանել զմին զայն խնդրելին իւր
,, մանուկ · · · Ընդ որս և զոր յառաջ քան զնա ծնեալ
,, զմանուկ այլ խնդրելով սպանանել, և ոչ գտանե֊
,, լով, զհայր նր՟ զզաքարիա սպան ը՟ մէջ տաճարին և
,, սեղանոյն, 'ի փախչել անդ մանկանն ը՟ մօր իւրում
,, եղիսաբեթի ||: Զնոյն բանս երկրորդեն 'ի մեկնութե՟ կանոնաց նորին սր՟յ երկոքին յոյն մատենագիրք՝ թէո֊դորոս բաղսամոն, և յովհաննէս զոնարաս :

Ուր 'ի միտ առ ինձ և զայն, զի որովհետև կանոնք նոր հայրապետաց են առ հասարակ վասն ապաշխարողաց, խորհրդով գրէ և 'ի կանոնն · Է · էջէ·· 94· 'ի վր բանին· * Մանուկ ծնաւ մեզ, որդի և տուաւ մեզ··· հրեշտակ մեծի խորհրդոյ||, ասելով· * Ով որդիս գիտէք,
„ յամենայնի վեցերորդի յղութե այլոյ մանկան՝ որ
„ հանդերձեալ էր քարոզել առաջի երեսաց մեծին նր
„ ապաշխարութի 'ի թողութի մեղաց, յղացեալ եղև
„ և ինքն 'ի քարոզել զապաշխարութի · քանզի և եր-
„ կաքանչիւրումն լսեմք զառաջինն քարոզել ոչ միայն
„ վն ապաշխարութե, այլև վն արքայութե երկնից||:

Յորմէ ունիմք իմանալ, թէ ոմն տրն անդստին 'ի մանկութէ հալածանօք եկեաց, և զկնի ցամ երեսներորդ յառաջնութե՝ թէպէտև 'ի տան, զապաշխարողի ըզկեանս վն մեր վարեաց· և յետ այնորիկ սկսաւ՝ զոր արարն՝ ուսուցանել· նոյնպէս և հրեշտակ նր յովհաննէս նոյնօրինակ յառաջընթաց եղև նր՝ հալածանօք և ապաշխարողական կարգօք· և սկիզբն եդ քարոզութե՝ իբրև ձայն քնի, զայն՝ զոր յետոյ և ինքնին տրն ձայնէր զառաջինն յելս 'ի քարոզութի · * ապաշխարեցէք, զի մերձեալ է արքայութի երկնից|| · որ և պարտի ըննել գլխաւոր առած ամ քարոզչաց բանին այ, յուսադրական զոյգ ընդ խստութե, և յայտարար միջոցի զոյգ է վախճանի · այլ որ մեծն է, նախ առնել և ապա ուսուցանել, զի յայնժամ ազդէ բանն քարոզչին · վն որոյ և խորհրդով եդաւ 'ի տապանագրի երջանիկ բաբունապետին մերոյ մեծին Մխիթարայ՝ որդեգրի կուսին և ապաշխարութե վարդապետի · * Ծաղիկ վարուց՝ քարոզ անշուշտ||:

(7) Վասն մարախոյն՝ որ էր կերակուր մկրտչին, բազումք բզմ ինչ ասացին՝ անհաւատալի համարելով ըզմարախն թռչական կերակուր լինել երբէք մարդոյ: Եւ նախ՝ ոմանք զյունական բառդ ակրիդէս, որ է մարախք, սխալագիր համարեցան · քանզի եբիոնեան հին աղանդաւորք կամեցան ընթեռնուլ էնկրիդէս, որ է ասեն խիւս ինչ 'ի մեղրէ և յիւղոյ զանգեալ · և ոմանք 'ի նորաղանդից՝ աքառիտէս, կմ խառիտէս, որ են ծառային ժժմակք · և ոմանք եւ աքռատէս, այն է վայրի սանձ: Իսկ այլք յարժանահաւատ անձանց անփոփոխ պահել զձայնդ մարախ՝ յերկուս կարծիս տրոհեցան · ոմանք ասացին՝ թէ սովաւ նշանակի նաև բողբոջն կմ ծայրն բանջարոց · և ըստ այսմ եդեալ է ևթէովպացի

թարգմանն ։ Այսմ կարծեաց նպաստէ և այն, զի 'ի տեղիս տեղիս Ծին հայոց մինչև ցարդ զմատուռակ քաղցրահիւթ բոյսն կոչեն անուամբս մարախ կմ մո_րեխ ։ և աւանդութն իմն 'ի վր բերեն արտաքուստ, թէ այն իսկ էր՝ զորոյ զարմատն ծծէր Յհ կարապետն ։ Եւ սակայն բազումք ևս աներկբայ եդին լինել զուն կենդանին մարախ ։ որոյ պէսպէս են տեսակք ։ և զայս հաստատէ ասելն հերոնիմոսի 'ի բ̅ գիրս ընդդէմ յովի_նիանոսի ։ * Սովորութն է արևելեայց և ժողովրդեանն
,, Լիբիոյ կերակրել զմարախս, ուր ը̅ անապատն և ը̅
,, տօթային ը̅արձակութն անցէն վայրաց իբրև թանձ_
,, րախիտ ամպ իջանեն ||։ զոր և 'ի ժամանակի սովու 'ի հայաստան հանդիպել տեսն պատմագիրք մեր ։ Յաւե_լու ալափիտէ, թէ նախնիք զմարախս ուտէին խորո_վեալս և մանր աղացեալս ։ մանաւանդ թէ ասէ՝ յարևու չորացուցել, և կմ աղիւ և ծխով յօրինեալ՝ պահէին զամն ողջոյն 'ի պարէնս ։ Իսկ մեղրն վայրենի յայտնի է որոց շրջել իցեն 'ի վայրաբնակ տեղիս ։ զի վայրի մե_ղուք 'ի ճեղքուածս ծառոց կմ 'ի ծերպս վիմաց կազ_մեն զխեղս, ոչ այնչափ ախորժելի ։ զի 'ի խաժային և յանպիտան բուսոց անապատի հաւաքեն զհիւթս ։ Զայսն հաստատեն վր կերակրոյ մկրտչին՝ ոսկեբերան, թէոփիլակտոս, եւթիմիոս, իսիդորոս, և այլք ընդ նոսա ։

(8) Յովսեպոս՝ Ճարտար հրեայ, այսպէս գովէ զգու_շութբ զՅհ մկրտչին. 'Ի ԺԸ. Գիրս Նախնեաց. Գլ. 5. որ ըստ այլոց. 7. համար. 2. * Ամանց 'ի հրէից անտի թուէր
,, սատակեալ զօրն զօրուն հերովդի առ յՈհ ։ և այն ար_
,, դարապէս զվրէժս լուծանելով յովհաննու մկրտ_
,, չելոյ մկրտչի ։ քանզի սպանանէ զնա հերովդէս ըզ_
,, բարի այր, որ և հրամայէր հրէից յառաքինութիւն
,, նկրտիլ, և առ միմեանս արդարութբ և առ այ բա_
,, րեպաշտութբ վարեալս՝ մկրտութն անսալ ։ քանզի
,, այսպէս և մկրտութն ընդունելի նմա երևիլ (ա_
,, սէր), ոչ առ մեղաց ինչ քաւութն վարելով, այլ առ
,, մաքրութն մարմնոյն, ուր և հոգին արդարութբ իցէ
,, նախասրբեալ ։ Եւ 'ի դառնալ այլոց միահամուռ,
,, քանզի և ամբարձան առաւելապէս 'ի լսել բանիցն,
,, երկեաւ հերովդէս ը̅ այնչափ հաւատարմութն նր
,, առ մարդիկն, մի արդեօք յապստամբութն ինչ բե_
,, րիցեն ։ զի զամ ինչ երևէին խորհրդով նր գործել ։
,, կարի լաւ համարեցաւ՝ մինչև նորագոյն ինչ լեալ
'ի

" 'ի նմանէ, կանխել բառնալ զնա ('ի կենաց), քան
" թէ յետ փոփոխութեան եղելոյ՝ 'ի վտանգ անկեալ՝ ա-
" պաշաւել ։ Եւ նա այսպիսի կասկածանօք հերովդի
" կալեալ առաքի 'ի մաքերունտա՝ 'ի նախասացեալ
" բանտն, և 'ի նմին սպանանի ։ Եւ հրէից (այս եղև)
" կարծիք, եթէ 'ի վրէժ նորա եղև խորտակումն այն 'ի
" զօրուն, զոր չարաչար ինչ կամելով 'ի վերայ հերովդէի ॥ ։

Այսպէս է բառ առ բառ 'ի յունական բնագրին յովսեպոսի ․ զոր և գտանես փոքր ինչ տարբերութ. թարգմանութե առ եւսեբի ․ պատմ․ եկեղ․ գրք․ II ։

(9) Խորհուրդ անուանցս յայտնի ․ զի․ Յովհաննէս՝ որ թարգմանի շնորհ, յատուկ անուն պանծալի ․ զի ոչ ոք էր յազգի նորա մերձաւոր համանուն՝ առ 'ի նորոգել զվիճակաւ նախնեաց ․ այլ ինքն եղև սկիզբն Ծաքարող տոհմի արդարոց 'ի նոր օրէնս՝ անուանմբս այսուհիկ, քան զոր յաճախեալ անուն սոյն դժուարագիւտ կամ անգիւտ ․ որ և սկսեալ 'ի մեծէն 'ի ծնունդս կանանց՝ մեծամեծ սրբոց տուաւ օրինակ ․ զորօրինակ են յովհաննէս աւետարանիչ ․ յովհաննէս մարկոս ․ յովհան ոսկեբերան ․ և որ այլ ևս յովհաննէս անուն սրբ հայրապետք ․ ևն ։

ա․ Կարապետ, զի յառաջընթաց մարմնով գալստեան բանին յԾ ․ վս որոյ նոյնանուն գտանի և կոչումն արուսեակ նախընթաց արեգականն արդարութե ․ նոր հեղման՝ լցեալ հոգւով եղիայի ․ ևն ։

գ․ Մկրտիչ, յարդեանց մեծագոյն պաշտաման լուրոյ՝ որով եղև կնքատու և ձեռնադրող որդւոյն այ ։ 'ի նոյն միտս ասի և է քահանայ՝ որդի քահանայապետի հնոյն և անցաւորի, պաշտօնեայ կամ սարկաւագ քահանայապետին մշտնջենաւորի և հեղինակի նոր օրինաց ։

դ․ Մարգարէ ․ զի որում մեծն 'ի մարգարէս, և ուրապէս տեսանող, զի աչօք ևս ետես զբանն կենդանի ․ և յառաջ և զկնի գուշակեաց՝ ոչ գրով, այլ՝ հոգւով․ ոչ լոկ ձայնիւ, այլ ինքն գլխովին ձայն գոլով որդւոյն այ ․ յոր միտ և ասի Ձայն բարբառոյ յանապատի, և քարոզ ազդարարող տիեզերաց ․ հրեշտակ տն առաջի նր, պատրաստաւոր և հրաւիրակ՝ 'ի խօսել վս հարսին եկեղեցւոյ, փեսաւէր և բարեկամ փեսայացեալ բանին ․ ևն ։

ե․ Առաքեալ ․ զի որում 'ի հօրէ առաքեալ հոգւով 'ի քարոզել զորդի զառաքեալն 'ի փրկութն տիեզերաց ․ վս որոյ կարապետն՝ նովին մարգարէ, որով և առա-



քեալ

քեալ. և նովին առաքեալ՝ որով և մարգարէ. որ է հրաշափառագոյն ։

Ը. Մարտիրոս. զի վկայեաց առաջին և վերջին ճշմարտութեան, և հեղմամբ արեան կատարեցաւ վն քարոզութեան ճշմարտութեան և ուղղութեան և արդարութեան ։

Թ. Անապատական և ճգնաւոր, կամ միայնակեաց և կրօնաւոր. մինչ զի և նախասկիզբն անուանեալ ամ միանձանց ոք հայրն մեր անտոնիոս՝ ասի և է համանմանեալ եղիայի 'ի հնումն, և յովհաննու մկրտչի՝ որ 'ի կատարած հնոյն և 'ի գլուխ նորոյս օրինաց ։

Ընդ եօթնեակ յորջորջանօքս անկանին և այլ ամ ստորոգելիք նորին սրբոյ. յորս նախակարգեալ հնգեկին անուանքն՝ են իբր յատուկ և յատկացեալ. ող և դնի 'ի մեզ անուն մարդոյ՝ 'ի պատիւ սրբոյս, յովհաննէս, կարապետ, մկրտիչ, մարգար, առաքեալ. զորօրինակ և մարտիրոս՝ զոյգ ընդ անուան համօրէն վկայից, առաքելոց, մարգարէից, և ամ դասուց արդարոց. ընդ որում և նահապետն՝ 'ի յիշատակ ամ նախահարց սրբց, և հայրապետն յանուն ամ ոք եկեղեաց ։ Այլ իցէ՞ թէ քրիստոնեայքս՝ քնեան անուանեալքս ոք մկրտութբ, և յանուն միոյ միոյ 'ի սրբց կարգացեալքս յաւազանէ, կացցուք 'ի սահմանի անզուգական պատուոյ քրիստոնէական շնորհաց, և մի եղիցուք՝ մի և մի լիցուք արտաքոյ՝ ոչ անուանց սրբց (օտար անուանադրութբք), և ոչ նմանութեան համանուն սրբց (օտարոտի քաղաքավարութբ.) զի այս իսկ է առաջին պտուղ բովանդակ երկասիրութեանս՝ նմանօղ լինել քնի և սրբց նր ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

սրբոյն Պետրոսի աղեքսանդրու հայրապետի (1), և Աբիսողոմայ սարկաւագին (2) ։

Հ. յունուարի. 15 ։ Տր Եէլ. նոյեմբերի. 25 ։ Յ. նոյեմբ. 25 ։ Լ. նոյեմբ. 26 ։ Ասորէ. Է. 32. Ի. 6 ։ և յղ. Վէ ։ Մնացեալ. պատասխանատուութե. Է. ԵՌ ։ Մնացորդ գրագետ 'ի ճարը պետր ։ Սուրբ հայր. Է ։ Բարթենոս. յամի 310. ԵՌ ։ Կոմբեֆիզ ։ Պոր. ժամգիրքն 'ի Բուղլի եար. և այլք ։

ՍՈՒՐԲՆ ԵՒ ԱՌԱՔԻՆ-աշնորհ՝ մեծ հայրապետն պետրոս աղեքսանդրացի՝ աւարտ մարտիրոսաց կոչեցեալ, նստաւ յաթոռ պատրիարգութեան աղեքսանդրիոյ եգիպտացւոց յամի տն իբր 300. և էր վրդպ ճշմարտութե քննական հաւատոյ՝ հանապազորդեալ 'ի քարոզութի աւետարանին, ծաղկեալ ուղղափառ հաւատով, և պտղաբերեալ բարի գործով, սիրելի և պատկառելի յաչս ամ ժողովրդեան ։

Սա եղև յետ վարելոյ նր զպաշտօն հովուութե յանդորրու զամս երիս՝ բորբոքեցաւ հուր դառնութե ը ամ տիեզերս յերեւաց քննամարտ արքային դիոկղետիանոսի. քանզի փե-

սայ նոր Մաքսիմիանոս երկրորդ՝ արմենտարիոս կեսար կոչեցեալ, խրատեալ 'ի մօրէ իւրմէ՝ որ էր կին չարասէր՝ մոլեալ զհետ կռոց և յանհնարինս ատեցող քրիստոնէից, զրգռեաց զաներ իւր՝ հանել հրովարտակ արքունի ը̄ ա̄մ տեղիս՝ 'ի հալածումն կրօնի քրիստոնէութեան. որ և եղև իսկ. զի յամի տն̄՝ 303. որ է սկիզբն Թո՛ւականի Մարտիրոսաց, եւ հրաման սաստիկ, զի ո՛ ոք և գտցի քրիստոնեայ անուամբ՝ 'ի փոքուէ մինչև ցմեծամեծս, դարձցի 'ի պաշտօն դիւցն. և որ ոչն առնուն յանձն, սրով և հրով, սովու և աքսորանօք՝ պատուհաս մահու ընկալցին և բարձցին 'ի միջոյ. (Թո՛ղ զառաջին հալածանս դիոկղետիանոսի՝ առաւել ընդդէմ քրիստոնեայ զօրականին:)

Զայս պատուէր առեալ Տակալ իշխանաց և դատաւորաց 'ի կողմանս կողմանս՝ 'ի գործ դնել սկսան զանօրէն հրամանն: Եւ ո՞ կարէ թուել զբազմութի քաջ նահատակացն, որք արիաբար մատնեցին զանձինս 'ի մահ վն̄ սիրոյն քն̄ի՝ ազգի ազգի և զանազան տանջանօք, արք և կանայք, ծերք և տղայք, իշխանք և քահանայք. էր՝ որ առանձինն, և էր՝ որ խմբովին: Այլ աւա՛ղ, զի և ոչ սակաւք ուրանային զքն̄, և զկորուստն յաւիտենական շահէին:

Այս հրդեհ հալածանաց սկսեալ յաւուրց դիոկղետիանոսի և գահակցին նր̄ Մաքսիմիանոսի հերակլեայ՝ տևեաց նաև յառանձին կայսերութեան միւս Մաքսիմիանոսի երկրորդի՝

որ

որ կոչիւր արմենտարիոս գաղերիոս . այլ առաւել սաստկացաւ 'ի կողմանս արեւելից 'ի ժ̃մկս Մաքսիմինոսի , որ եւ Մաքսիմիանոս երրորդ՝ դաժ կոչեցեալ , քեռորդի նախընթացին (3) . որ եղեւ կեսար յամի տն̃ . 305 . եւ ունէր ը̃ իւրեւ զկողմն̃ արեւելից եւ զտ̃ն եգիպտացւոց . եւ յետ սակաւուց էառ եւ զանուն կայսերութե̃ ։

Արդ՝ յայսմ եւ 'ի սոյն ժմկի սբ̃ն պետրոս եպ̃կոսապետ աղեքսանդրու փայլէր պայծառաքարոզութ̃բ յՁ̃ին եգիպտացւոց՝ ուսուցանէր միշտ զհաւատացեալսն՝ հաստատուն կալ 'ի հաւատս քս̃ի ի̃յ, եւ կամակար մտօք մեռանիլ վ̃ն անուանն տն̃ ։ Իսկ մելիտիոս ոմն եպ̃կս լիկոպօլսոյ , այն է գայլաքաղաք՝ 'ի սահմանս թեբայիդոյ եգիպտացւոց , ըմբռնեալ 'ի հրապուրս չարին՝ եւ զարհուրեալ յերեսաց տանջանաց՝ անկաւ 'ի հաւատոց , եւ զոհեաց կռոց . եւ առ դառնութե̃ սրտին յաւել գործել ապիրատութի̃ բզ̃մ 'ի մէջ հաւատացելոց ։ Այլ իբրեւ 'ի վերին երեսս դարձ ցուցանէր անապաշխար՝ առ 'ի կարօղ լինելոյ ժառանգել զաթոռ եպ̃կոսութե̃ իւրոյ , սբ̃ հայրապետն պետրոս գտեալ զժանտաժուտն անղեղջ 'ի չարիս՝ ընկէց զնա ժողովական հանդիսիւ յա̃մ պատուոյ երիցութե̃ . զի թերեւս յապաշխարութի̃ եկեսցէ ։

Այլ նր̃ ինչ ոչ հոգացեալ՝ արհամարհեաց զհայրապետն՝ ոչ եւս լինել ը̃ ձեռամբ նր̃ , այլ՝ ինքնիշխան վարել ազատօրէն . եւ որսացեալ զբզ̃մս 'ի կողմն̃ իւր՝ հերձուած էարկ

'ի մէջ հաւատացելոց․ յորմէ և արբանեակք նր մելետիանոսք կոչեցան ։

Նա սա յարեցաւ և արիոս աղեքսանդրացի հերեսիովտապետ՝ մինչև էր 'ի վեր հանել զաղանդ իւր, այլ էր 'ի կարգի պաշտօնէից եկեղեցւոյ․ որոյ վն և մերժեցաւ 'ի պետրոսէ հայրապետէ, և արտաքսեցաւ յեկեղեցւոյ ։ Այլ զկնի սորջացեալ՝ ընկալաւ դիւրաւ զթողութի․ զի էր այր ճարտար լեզուաւ, և յանկուցիչ սրտի՝ ը որս խօսէր․ մինչև ձեռնադրիլ սարկաւագ 'ի նմին իսկ 'ի սբյ հայրապետէն ։ Այլ յետ ոչ բազմաց անդրէն 'ի բաց սարտուցեալ 'ի նմէ՝ միւսանգամ յարեցաւ 'ի մելիտիոս․ և զօրացոյց զհերձուածն․ նմին իրի և նզովիւք արտաքսեաց զնա սբն պետրոս, և արար ը բանին ։ Իսկ մելիտիոս օրքան զօր գրգռեալ ըդէմ պետրոսի հայրապետին՝ բզմ չարիս խօսէր զնմէ առ ամենին, մնւնդ առ հեթանոսս․ մինչև ամբաստան լինել և առ մաքսիմիանոս՝ ցուցանելով զնա խռովեցուցիչ ժողովրդեան (4) ։ Եւ զի տարածեալ էր անուն նր առաջի թգրաց, թէ նա է՝ որ հաստատուն ունի զքրիստոնեայս Տին եգիպտացւոց 'ի կրօնս իւրեանց, առաքեցին արս՝ ունել զնա և զգործակիցս նր ։ Յայնժամ ըմբռնեցան բազումք յեպսկպաց և 'ի քահանայից և 'ի պաշտօնէից եկեղեցւոյ՝ իբր վեցհարիւր և վաթսուն ոգիք․ և 'ի զանազան տեղիս աքսորանօք և ազգի ազգի տանջանօք ընկալան զնահատակութի ։

Իսկ

Իսկ զսուրբն պետրոս ոչ կարացին ունել. զի ամբոխն աղեքսանդրացւոց առ հարկ 'ի վեր յարուցեալ արքունի սպասաւորաց՝ զդէմ կալան քաղաքին : Յայնժամ երկուցեալ սրբոյ հայրապետին, զի մի՛ 'ի պատճառս իւր ամբոխ կոտորածի լինիցի 'ի ժողովրդեան, ընդ յորդորելոյ արանց բարեպաշտից մեկնեցաւ զանխուլ 'ի քաղաքէն (5). և շրջեցաւ հալածական զբազում ժամանակս 'ի կողմանս պաղեստինոյ և միջագետաց՝ (6) նեղութիւնս ծանունս կրելով յօտարութեան և յերեւաց հալածչաց յայլ եւ յայլ տեղիս. զի բոց հալածանաց ունէր զամենայն երկիր: Այլ ուր և գտանէր սուրբ հայրապետն, առեալ գիր յորդորանաց և քաջալերութեան յղէր առ իւրսն, և առ ըմբռնեալսն վասն հաւատոյ : Նա յայսմ ամի ընթացակից էր սրբոյն՝ երանելի սարկաւագն իւր աբխողոմ անուն, այր ծերունի և զգաստ՝ լի հոգւով սրբով. որ ընդ նմա ժուժկալեաց 'ի հալածանս զայնչափ ամս : Նա եղև իբրև լուաւ սուրբն պետրոս, եթէ գործակիցք իւր 'ի քաղաքին՝ կատարեցան նահատակութեամբ, և հօտն իւր զրկեալ 'ի հովուէն՝ կրէ զտագնապ վտանգի, դարձաւ եկն յաթոռ իւր յաղեքսանդրիա. և աբխողոմ ընդ նմա. և մխիթարեալ սրտապնդէր զամենեսին, և համարձակապէս քարոզէր զքրիստոս աստուած, և յանդիմանէր զմոլորութիւն հեթանոսաց :

Իբրև լու եղև այս առ մաքսիմիանոս, թութանակի առաքեաց հազարապետս զոմն արքունի հանդերձ երևելի զօրականօք յաղեքսանդ-

անդրիա՝ սպանանել զեպիսկոպոսն զպետ-
րոս ։ Նա 'ի գալ զօրականացն՝ եղև խռովութիւն
մեծ և աղմուկ 'ի ժողովրդս քաղաքին ․ քանզի
ասէին՝ թէ լաւ է ամենայն մեզ մեռանել, և
ապա հայրապետիս մերոյ ։ Նա յայնմանէ
երկեան զօրագլուխքն ձեռն արկանել 'ի նա
և սպանանել, այլ արկին զնա 'ի բանտ ։
Ի նոյն աւուրս իջեալ էր յանապատէն 'ի
քաղաք անդր աղեքսանդրիոյ՝ աշխարհաքա-
րոզ այրն այ՝ մեծ աբբայն անտոնիոս, այց
առնել կապելոցն վն՟ վկայութեան քի, և թէ
հնար ինչ իցէ՝ չարչարակից լինել սբ՟ցն հան-
դերձ նահատակութ՟ ։ Որոյ հանդիպեալ և
սրբոյն պետրոսի հայրապետին՝ մինչդեռ 'ի
կալանս էր, կարեկից լինէր վշտաց նորա և
մխիթարակից ․ և ամենիմաստ բանիւք քաջա-
լերութ՟ զուարթացուցանէր զերանելին
մինչև յոր վախճանի նր՟ ․ և ապա յետ կա-
տարման նր՟ դարձաւ յանապատն իւր ։
Այլ միով աւուրբ յառաջ ք՟ զկատարումն
պետրոսի հայրապետի՝ գուն գործեաց նենգա-
ւորն արիոս, որ ե՟ բանիւ արարեալ էր
'ի սբ՟յ հայրապետէն, արձակիլ 'ի կապա-
նաց բանադրանացն (7) ․ Քզի զահի հարեալ,
թէ 'ի նահատակիլ սբ՟յն յետ ք՟ զարձակումն
իւր՝ խորշելի լիցի ինքն ամենեցուն, առաքեաց բա-
րեխօսս 'ի բանտն՝ քահանայս և տանու-
տեարս առ պատուականս առ հայրապետն,
զի օրհնեսցէ զարիոս՝ և արձակեսցէ 'ի կա-
պանաց որոշմանէն, խոստանալով ամենայ-
նիւ յետ կալ 'ի մելիտիոսէ՝ և ապաշաւել,
և

և բառնալ 'ի միջոյ զպառակտումն եկեղեց-ւոյ. մանաւանդ զի ակնունէր ժամուն արիոս աւագութե̃ հասանել զկնի մահու նո̃յն , և Հայրապետութե̃ իսկ գլխովին։ Եւ էին գլխա-ւորք աղաչաւորաց 'ի դիմաց արիոսի՝ աքիւ-ղաս և աղեքսանդրոս երիցունք Հայրապե-տանոցին ։

Իսկ սբ̃ն պետրոս՝ որ վերին յայտնութե̃ տեղեկացեալ գիտէր զնա մեծագոյն չարիսն , զոր հանդերձեալ էր յարուցանել արիոս 'ի մէջ եկեղեցւոյ , ոչ ետ տեղի բանից նո̃ց . և 'ի թախանձել նոցա յոյժ՝ եհան զիշխանա-ւորսն արտաքս , կոչեաց առանձինն զաքիւ-ղաս և զաղեքսանդրոս , և ասէ ցնո̃ տխրա-գին և զայրագին բանիւք . վ̃ արիոսի՞ աղա-չէք զիս . արիոս յայսմ շ̃ի և 'ի հանդեր-ձեալն նզովեալ է և որոշեալ 'ի փառաց որդ-ւոյն ա̃յ ։ Եւ արդ՝ զայս իմ ասելով , մի կար-ծէք զիս անգութ և անխիղճ , այլ՝ ունկն դիք բանից իմոց , և 'ի միտ առէք զգաղտնա-ծածուկ պատրանս արիոսի՝ որ յոյժ չարիս անյագ ընթանայ . զի ոչ եթէ յինէն հա-ստատեմ զորոշումն նորա 'ի սբ̃ եկեղեցւոյ , այլ՝ տ̃ն բանիւ ։ Ի յայսմ գիշերի յետ աղօ-թիցն իմոց՝ եղէ 'ի զարմացման , և տեսի մանուկ մի՝ որպէս թէ ամաց երկոտասանից՝ լուսազարդ դիմօք ո̃պ զարեգակն , զգեցեալ պատմուճան սպիտակ . և էր այն պատառ-եալ 'ի վերուստ 'ի պարանոցէն մինչև 'ի ստորոտն . և ունէր ամփոփեալ 'ի վե̃ սրտին երկու ձեռօքն պինդ՝ առ 'ի ծածկե-

լոյ զմերկութիւն ։ Եւ իմ թմրեալ յապշութենէ զարմացման ոսկերք իմ, և կցեցաւ լեզու իմ ՚ի քիմս իմ · այլ իբրև տուաւ ինձ զօրութիւն բարբառելոյ, աղաղակեցի և ասացի · Տէր ո՞վ պատառեաց զքո պատմուճանդ ։ Եւ նա ասաց · արիոս պատառեաց զիս (8) · այլ դու տես և զգո՛յշ լեր, զի բարեխօսս կամի նա յղել առ քեզ · մի՛ հաւատար նմա, և մի՛ ընդունիր զնա ՚ի հաղորդութիւն սրբոյ եկեղեցւոյ ։ Պատուիրեաց և աքիւղայի և աղեքսանդրու որ յետ քո նստելոց են յաթոռ քո, զի և ո՛չ նոքա ընդունիցին զնա ՚ի հաղորդութիւն ։ Եւ ընդ սմին սակի գուշակեաց սուրբ հայրապետն արժանաժառանգս աթոռոյն իւրոյ լինել զաքիւղաս և զաղեքսանդրոս` ընդ որս խօսէր (9) ։ Եւ սկսաւ պատմել նոցա, թէ ո՛րքան հալածեցաւ վասն քրիստոսի ՚ի պաղեստինէ, ՚ի փիւնիկէ, ՚ի միջագետս և յասորիս և ՚ի կղզիս · եցոյց նոցա և զմերձենալ նահատակութեան իւրոյ` որ յայտնեցաւ նմա ՚ի տեառնէ · և մխիթարեալ յուղարկեաց զնոսա ։

Իսկ զօրականքն արքունի փութային ՚ի գըլուխ տանել զհրաման մաքսիմիանոսի` ցուցանելով զոր ՚ի նմէ հրովարտակ` սպանանել զհայրապետն · բայց չէին ձեռնհաս · քանզի բազմութիւն ժողովրդեանն ՚ի վերայ հասեալ` կային զինուք առ դրունն բանտին վասն հայրապետին իւրեանց · ընդ նոսին և բազումք ՚ի միայնակեցաց, որք իջեալ էին յանապատէ ընդ սրբոյն անտոնի մեծի` խնամ ունել բանտարկելոցն վասն հաւատոյ ։ Եւ այն ինչ խոր-

հէին

հէին զօրականքն սրով վանել զամբոխն , և կորզել զհայրապետն առ 'ի սպանանել, զմտաւ ածեալ սրբոյն՝ զի մի՛ արդեօք կռիւ մեծ լինիցի ընդ քաղաքացիս և ընդ զօրականս՝ 'ի մահ և 'ի կոտորած բազմաց , և կամ խափանեսցի մարտիրոսութիւն նորա , յղեաց զաղտ առ զօրագլուխսն զերանելին սարկաւագն իւր զաբիսողոմ, և աղաչեաց չարկանել ձեռն 'ի ժողովրդս . այլ քանզի զանձն իմ խնդրեն ասէ , 'ի գիշերի եկեալ 'ի հարաւակողմն թանտին , և ծակեալ զորմն՝ հանցեն և տարցին ուր կամին ։ Նա զայս արարեալ 'ի գիշերի՝ հանին զնա 'ի թանտէն զաղտ 'ի ժողովրդենէն . զի որ առ դրանն կային , 'ի քուն մտեալ էր նոցա . և 'ի սաստկութենէ հողմոյն՝ ոչ իմացան զհատուածն որմոյն 'ի միւս կողմանէն . զի և չունէին ինչ կարծիս այնպիսի ։ Նա իբրև առին գնացին զերանելին հայրապետն՝ հնդեքին զօրականք , տարեալ հասուցին 'ի տեղի կատարմանն , այն է վայրն կոչեցեալ 'ի բնակչաց՝ երնջոց դաշտ . ուր և լեալ էր նահատակութիւն սրբոյն մարկոսի աւետարանչի , և վկայարան յանուն նորա շինեալ առ տեղեաւն , և դերեզմանք հայրապետացն աղեքսանդրիոյ ։ Յայնժամ խնդրեաց սուրբ հայրապետն 'ի զօրականացն, և գնաց 'ի տապան աւետարանչին մարկոսի . և զգեցեալ զհանդերձ եպիսկոպոսութեան , և գիրկս արկեալ տապանին՝ աղօթեաց յերկար վասն հօտին իւրոյ և խաղաղութեան եկեղեցւոյ , և յաջողութեան իւրումն առաջիկայ հանդիսին նահատակութեան .

և

և ողջունեաց զայլ և ս սբ՟ց տապանսն՝ որ անդ էին, զհնգետասան հայրապետացն եղելոց յառաջ քան զինքն :

Եւ իբրև լուսանայր առաւօտն, ետես սբ՟ն՝ զի ահա գային այր մի ծեր՝ բարձեալ չոր մորթս, և կին մի կոյս և պառաւ՝ որ ունէր կտաւս, և տանէին ՚ի քաղաքն ՚ի վաճառել : Կոչեաց զնո՟ սբ՟ հայրապետն, և հարցանէր · քրիստոնեա՞յք էք : Եւ նոքա ասեն · թէ աստուած կամի : Ասէ ցնոսա · ո՞ւր երթայք : Նոքա ասեն · ՚ի վաճառել զգործս մեր : Ասէ սբ՟ն · աստուա՛ծ առաքեաց զձեզ որդեա՛ք լուսոյ : Եւ ծանեան՝ եթէ եպ՟իսկոպոսն էր · վ՟ն զի ո՟պ զլոյս փայլէր այնուհետև : Ասէ ցնո՟ սբ՟ն · մնացէ՛ք առ իս : Եւ նք՟ ասեն · հրամայեցէ՛ր տ՟ր : Եւ ապա ձայն ետ զօրականացն, և ասէ · մի՛ կայք այսուհետև, լո՛յս է այժմ · կատարեցէ՛ք զհրամանս թագաւորին ձերոյ : Եւ նք՟ առեալ ածին զնա ՚ի հարաւակողմն վկայարանի սբ՟յն Մարկոսի : Յայնժամ ասէ սբ՟ն ցծերն · տարածեա՛ զմորթդ, և սփռեա՛ զկտաւդ ՚ի վ՟ր երկրի : Եւ ՚ի տարածելն նր՟՝ եկաց ՚ի վ՟ր կտաւի մորթոյն · և յարևելս հայելով՝ երեք անգամ կրկնեաց ծունր, և կնքեաց զինքն նշանաւ սբ՟յ խաչին · թողացոյց զնափորտն յինքենէ, և մերկացոյց զպատուական պարեգօտն իւր · և խոնարհեցոյց ք՟նի զուլն, կարկառեաց զգլուխն, և ասէ ցզօրականսն · կատարեցէ՛ք զհրամայեալսն ձեզ · և ինքն աղօթէր առ ա՟ծ տարածեալ ձեռօք : Եւ

ահա

ահա եկն ձայն յերկնից՝ որ ասէր • պետրոս գլուխ առաքելոցն , և պետրոս գրաւ մարտիրոսաց , եկ և հանգիր 'ի տեղիս լուսոյ՝ որ պատրաստեցաւ քեզ յոյ(10): Իսկ զօրականքն պատկառելով 'ի սքանչելի հանդետուէ և 'ի հրեշտակային կերպարանաց սբյն՝ ոչ համարձակէին սպանանել զհայրապետն • յայնժամ եղին 'ի մէջ իւրեանց դահեկանս այր իւրաքանչիւր , զի առցէ զայն՝ որ հատանէ զգլուխ սբյն(11) • զոր և արար իսկ մին 'ի նցէ , 'ի մի հարուած սրոյ 'ի բաց հատեր զգլուխ սբյն : Եւ նոյնժամայն Թողեալ զմարմինն 'ի տեղւոջ անդ՝ խոյս ետուն զօրականքն • զի երկնչէին 'ի ժողովրդենէն : Եւ եղեն սքանչելիք 'ի տեղւոջն • զի գլխատեալ մարմինն՝ որ տարածեալ կայր 'ի վր երկրի, յեցաւ ճերբև կենդանի 'ի վր ծնգաց, և յարուցեալ եկաց կանգուն 'ի վր ոտից իւրոց : Ո որ տեսեալ նախատացեալ ծերոյն և կուսի՝ եկին և պատմեցին 'ի քաղաքն : Ազդ եղև ժողովրդոյն՝ որք պահէին զդուռն բանտին • եկին հասին բազմուք 'ի տեղի անդր , և արարին կոծ մեծ 'ի վր նր : Ոմանք զսբ գլուխ նր 'ի ձեռս առեալ համբուրէին արտասուօք • կէսք զսբ մարմինն գրկեալ ողջագուրէին • և այլք զպատուական արիւնն յերկրէ անուր ժողովէին :

Եւ եղև հակառակութի վս հանգստարանի սբյն • զի ոմանք ասէին Թաղել առ տեղեաւն 'ի մերձակայ դամբարանս սբյն մարկոսի ը այլ հովիւս աղեքսանդրացւոց • իսկ այլք

ասէին

սանէին տանել 'ի շիրիմն նահատակաց, զոր շինեալ էր ինքն իսկ սբ. հայրապետն վն մարտիրոսաց Ճիլկին. և յաղթեաց սոցայս խնգ. և բան: Ապա եդին փութանակի զնո. մարմինն 'ի նաւ, զի յափն կոյս էր տեղի նահատակութեն, և յետս կոյս նաւեալ 'ի փառոն կղզինեղոսի՝ եկին յարևմտակողմն. և նախ առեալ տարան յեկեղեցին իւր 'ի հայրապետական աթոռն. և զգեցուցեալ զնա եպիսկոպոսկն զարդուք՝ նստուցին յաթոռն սբյն մարկոսի: Օ ի ցորչափ ամս հովիւ եկաց սբ. հայրապետն, երբէք յաթոռն իւր ոչ նստաւ. վն զի տեսանէր լոյս փայլեալ 'ի վր աթոռոյն, և ոչ կարէր նստիլ անդ. այլ յորժամ կամէր վդպել ժղվրդեանն իւրոյ, ելանէր յաստիճանն, և նստէր առպատուհանդանի աթոռոյն: Իսկ ժղվրդեանն զժուժարեալ է այն՝ և տրտունջ բարձեալ աղաղակէին, թէ նիստ յաթոռն քո սբդ. ոչ: Իսկ նա հազիւ հաւանեցուցանէր զժղվրդն, և ոչ նստէր յաթոռն: Բայց առանձինն յողջունարանի ասաց երիցանց իւրոց աքիղայայ և աղէքսանդրու և որոց է նո ժառանգաւորաց եկեղեցւոյ, թէ յորժամ մերձենամ յաթոռն, տեսանեմ զտր լուսաւորեալ իմն նստեալ 'ի վր աթոռոյն, և ոչ իշխեմ մօտիլ առ նա. այլ՝ սարսեալ դողամ, և զարհուրեալ սասանիմ ոպ խուիճ 'ի հրոյ: Միանգամայն և լի եղեալ խնդութ, ոչ ունիմ հնար՝ եթէ զինչ արարից վն ժողովրդեանս, զի մի գայթակղիցին: Նստիմ առ պատուհանդա-

նին , ո՞վ տեսանէքդ , բազում անգամ . այլ և
զայն ևս յանդգնութեա̃ գործեմ վասն ժողովր-
դեանն չինութեան : Ապաւինեալ յորժամ ժողո-
վուրդն զիս ընտրեալ , դուք աղաչելով
լսեցուցէք . և մի և դուք ը̃ ժողովրդեանդ
վտանգէք զիս : Այլ ահա մի̃ այս պատճա-
ռաւ ժողովուրդն ա̃մ փափաքէր տեսանել
զո̃րն նստեալ յաթոռ , և ոչ տեսին . մի̃
այսորիկ յետ կատարմանն տարեալ եդին
կարօտիւ զմարմին սր̃յն յաթոռն արժանա-
ւոր , յարմարեալ զհատեալ գլուխն 'ի վ̃ր
պարանոցին : Այլ նա թէպէտ և գլխատեալ՝
տարածեաց սքանչելեօք զշնորհաբաշխ աջն
իւր , և խաչակնքեալ զժ̃ղ վրդն՝ ասէր 'ի
լուր ամ̃ցն . ո̃ր ը̃ ձեզ լիցի :

Այլ ապա բարձեալ քահանայից զսր̃ մար-
մինն 'ի վ̃ր ուսոց՝ համդերձ երգօք օրհնութեան,
խնկօք և մոմեղինօք՝ և ոստովք արմաւեն-
եաց՝ առեալ տարան 'ի հանգստարանն,
զոր ինքն շինեալ էր . և եդին անդ 'ի տա-
պանի մեծաւ պատուով պատեալ ազգի
ազգի խնկօք անուշիւք : Այլ յետ նր̃ նստաւ
յաթոռն 'ի տեղի նր̃ աքիւղաս աւագերէցն
իւր . և ապա յետ աքիւղասայ աղեքսանդ-
րոս , ը̃ կանխասաց բանի սր̃յն :

Իսկ յաւուրս աքիւղասայ արիոս աղուէ-
սաբարոյն նենգանօք սպրդեալ եմուտ յե-
կեղեցի , և ձեռնադրեցաւ 'ի նմանէ քահանայ .
և ապա յաւուրս աղեքսանդրի 'ի դուրս ե-
բեր զմթերեալն 'ի սրտի անհնարին մոլո-
րութիւն ը̃դէմ բանին ա̃յ , և պատուութեն մեծ

եարկ 'ի մէջ եկեղեցւոյ՝ ըստ տեսլեան սրբոյն պետրոսի․ որոյ մեծ և ընկալաւ զդատապարտութիւն 'ի սբ ժողովն նիկիոյ՝ յամի տն . 325 . յորում յաղթող սպառազէն եղև սբն աթանաս սարկաւագ աղեքսանդրի՝ ընդ այլ սրբոց հայրապետաց . որ և զկնի կալաւ զաթոռ հայրապետութե՝ հանդերձ բազմադիմի հալածանօք յերեսաց արիանոսաց ։ Նոյն նահատակութի սրբյն պետրոսի հայրապետին և մեծայաղթ մկային՝ եղև իբր հնգետասան ամօք յառաջ քան զնիկիոյ ժողովն , յամի տն 310 . կամ 311 . յիններորդ ամի հալածանաց իւրոց . 'ի 29 . ամսոյն աթիրայ ըստ աղեքսանդրացւոց . այն է 'ի նոյեմբերի . 25 . (12) ։ Իսկ ամք հայրապետութե սրբյն պետրոսի՝ եղեն ընդ ամն ժբ . զի զամս երիս 'ի խաղաղութե կալաւ զաթոռն՝ լուսափայլ վարուք իւրով , և զինն ամ 'ի հալածանս մեծ քնի՝ յաթոռն և արտաքոյ (13) . մինչև վճարեաց զկեանս իւր փառաւոր նահատակութբ , և փոխեցաւ յերկրայնոցս 'ի յերկինս ։

Գրեաց սբ հայրապետն պետրոս ոչ սակաւ բանս 'ի շինութի եկեղեցւոյ . յորոց զկանոնսն և ցարդ հնգետասան կանոնք նր մն ապաշխարողաց՝ լի իմաստութբ . ոնց և հատուած 'ի գրոցն՝ որ յաղագս աստուածութե քնի . բան վասն զատկաց . թուղթ առ աղեքսանդրացիս . և այլն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Վկայաբանութիւն սրբոյն պետրոսի աղեքսանդրացւոյ հաւաքեցաք 'ի տեղեաց անտի նշանակելոց 'ի սկզբան · առաւելապէս 'ի հին վկայաբանութենէ՝ զոր թարգմանեալ է անաստաս գրապետ 'ի Թ դարու 'ի յունականէն 'ի լատին, զոր և քաղելով 'ի մէջ բերէ բարոնիոս · և ամբողջ՝ կոմբեփիզիոս · յորմէ կայ հատուած և առ բոլլանդեանս 'ի վարս մարկոսի աւետարանչի 'ի 25 · ապր : Ոչ և բազմօք 'ի ձեռագիր յայսմաւուրաց հայոց, առաւել ըստ օրինակին որ իՆէլի · զորոյ ոչ միայն զբանսն, այլև զոճ գրութեան կալաք հաստատուն · զի ամենայն անխոտոր զուգընթանայ ընդ նախայիշեալ հին վըկայաբանութեան · թող զթեթև ինչ տարբերութիւնս՝ զորս ունիմք նշանակել 'ի կարգիս : Ինչ ինչ առաք և յեւսեբիոսէ, որ ժամանակակից գոլով՝ մեծաւ գովութեամբ յիշէ զնահատակութիւն սրբոյն՝ յեկեղեցական պատմութեան իւրում : Ինչ ինչ և 'ի սրբոյն աթանասէ՝ ըստ վերաբերելոցն առ հերձուածն մելիտիոսի : Որով և ունիս իմանալ՝ թէ ողջոյն իսկ վկայաբանութեան սրբոյս հաստատուն հեղինակութեամբ աւանդեալ իջանէ 'ի սկզբանէ մինչև ցարդ :

(2) Իսկ ըստ արխոդոմեայ սարկաւագի չգտաք ինչ որոշակի առ այլս · այլ միայն 'ի յայսմաւուրս մեր յիշի ըստ եղելոցս՝ լինել աշակերտակից սրբոյն 'ի հալածանս, եւն · սրբոյ և 'ի հին վկայաբանութեան անդ յունաց հարևանցի ինչ նշանակի համաձայն հայումս · այլ յերկոսին եւս առանց յիշելոյ զվախճան նորա : Այլ կամ իբրև խոստովանող կատարի յիշատակ նորա առ մեզ, և կամ ոչ երևի՝ նահատակեալ իցէ ընդ այլս բազումս, որք յառաջ և յետոյ քան զկատարումն պետրոսի՝ կատարեցան 'ի սահմանս եգիպտոսի · զորոց երկար են բանք առ եւսեբիոսի և առ վկայաբանութիւնս ամենայն ազգաց :

(3) Այլ թէ ո՛ 'ի կայսերաց եղև հալածիչ և նահատակող սրբոյն պետրոսի, գիտելի է · զի 'ի վկայաբանութիւնս յունաց՝ ոչ և 'ի բասիլեան օրինակն և առ այլս բազումս 'ի յետնոց, յիշի անունս մաքսիմիանոս · նոյնպէս գնի և 'ի բանս սրբոյն աթանասի, և 'ի թուղթն նորին սրբոյն պետրոսի՝ զոր 'ի մէջ բերէ բարոնիոս : Բայց քանզի երեք կայսերք եղեն 'ի նոյն ժամանակս սովին անուամբ, վըկայագիրքն հռովմէական իբր որոշելոյ ըստ գնէ՝ գաղե-

րիոս մաքսիմիանոս. բայց սովին եւս ոչ լուծանի տարակոյսն. զի գաղերիոս անունն իսկ հասարակ էր երկուց 'ի կայսերաց անտի մաքսիմիանոս կոչեցելոց: Ապա որոշագոյն թուի եղեալն 'ի յայսմաւուրս հայոց, մաքսիմիանոս փեսայ դիոկղետիանոսի. զի փեսայ դիոկղետիանոսի եղեւ միայն միջինն մաքսիմիանոս՝ արմենտարիոս կոչեցեալն. որ այն իսկ է գրգռիչն հալածանաց. վ̄զ սա էր եւ առաջին հալածօղ սրբոյն պետրոսի: Այլ այսու ամ̃ե յետ ժամանակաց նահատակօղ սրբոյն համարի երրորդն մաքսիմիանոս՝ դաժ եւ արամազդ կոչեցեալ՝ քեռորդի երկրորդին. զի սա տիրէր 'ի վ̄ր կողմանցն եգիպտացւոց, եւ առաւել ք̄ զայլս եղեւ թշնամի քրիստոնէից. վ̄զ եւ բարոնիոս որոշակի զսա դնէ լինել նահատակօղ պետրոսի. եւ առ որոշելոյ զսա յայլոց՝ կոչէ ը̄ ոմանց մաքսիմինոս. այլ մեք զգործածականն եդաք, որ է մաքսիմիանոս: Ծանիր եւ զայս, զի յայսմաւուրս հայոց՝ 'ի վերջին գործս նահատակութ̃ե սրբոյն պետրոսի դնի դիոկղետիանոս. այլ զայս այնպէս իմա, իբր թէ առ ժամանակօք հալածանաց դիոկղետիանոսի լեալ իցէ. զի եւ գործք գահակցաց եւ յաջորդաց նր̄՝ յանուն դիոկղետիանոսեան հալածանաց յիշին 'ի բ̄զմ գիրս: Զայսցանէ այլուր առանձինն ունիմք տալ տեղեկութիւն. մարթ է տեսանել եւ առ բարոնիոսի յամ̃. 310. 311. եւն:

(4) Զպարախօսելն մելիտիոսի ընդդէմ պետրոսի հայրապետի առ մաքսիմիանոս՝ յիշատակէ նա ինքն ս̄բ հայրապետն 'ի թուղթս իւր առ եպիսկոպոսունս. զնոյն հաստատէ եւ ս̄բն աթանաս 'ի բ̄ պատասխանատուութ̃ե, 'ի մէջ բերելով զչարիսն մելիտիոսի: Բայց ծանիր, զի որովհետեւ բ̄զմք կային ջատագովք նր̄՝ մելիտիանոս ասացեալքն, 'ի ս̄ց գրուածոց բ̄զմ գովութիւք սերմանեցան զնմանէ 'ի ժողովրդեան. եւ ահա յայսպիսի համբաւոյ առեալ եւ ս̄բն եպիփան՝ մեղմով խօսի զմելիտիոսէ, ('ի հերձ. կը̄.) որպ̄ թէ իրաւացի օրինօք թեթեւ ինչ հերձուած իցէ յարուցեալ. որ ամ̃ե ը̄դէմ ելանէ ստոյգ պատմութ̃եցն աւանդելոց 'ի ս̄բյն աթանասէ, որ քաջ գիտակ էր գործոց ծ̄ին իւրոյ՝ եւ էր ժամանակակից: Զայսմանէ երկար խօսի բարոնիոս յամ̃. 306. եւն:

(5) 'Ի Հ. ժ̄ 'ի յայսմաւուրս հայոց՝ ասի, թէ կայսերք հալածական արարին զպետրոս հայրապետ յաթոռոյ: Այլ այս ոչ հակառակի այնմ, զոր եդաք ը̄ հին վկայաբանութ̃ե, թէ ինքնակամ խոյս ետ ս̄բն յաթոռոյ. զի

պատ-

պատճառ այսմ եղև հալածումն բռնաւորաց յարու-
ցեալ ընդդէմ նորա:

(6) 'Ի Հ. բացայայտ գնի՝ թէ ինն ամ կրեաց հալածանս յօտարութեան՝ վտարեալ յաթոռոյն. իսկ ոմանք ցուցանեն՝ թէ թէպէտ իննամեայ ժամանակաւ կրեաց զհալածումն, բայց յաթոռն իւր կալով. և յիններորդ ամի վտարեցաւ, և ըմբռնեցաւ. այսպէս երևի գնել և Լեքէն հատ. բ. երես. 397:

(7) Բազումք համարեցան՝ թէ արիոս բանադրեալ էր յերիցութեան իւրում՝ վասն բանի աղանդոյ իւրոյ ընդդէմ ծնութեան բանին. այսպէս գնեն և յոլովք 'ի վկայաբանութեանց և 'ի հեղինակաց. զնոյն ցուցանէ և յայսմաւուրքն հայոց: Բայց սակայն ըստ հնագոյն պատմութեանց և բուն վկայաբանութեան՝ որպէս պնդէ բարոնիոս, յայնժամ չև էր յայտնեալ աղանդ նորա, և չև էր քահանայ. այլ միայն վասն յարելոյն 'ի մելիտիոս և զայրացուցանելոյ զհերձուածն՝ էր բանադրեալ: Իսկ ընդունել սրբոյն զնա 'ի հաղորդութիւն նաև 'ի վերջին պահու՝ էր յաստուածային յայտնութենէ. որով գիտաց ոչ զոր էրն յայնժամ, այլ յաւէտ զոր լինելոց էր. և տեսիլն իսկ ոչ այնչափ զեղեալն, որչափ զլինելոցն գուշակէր, թէպէտև յանցեալ ժամանակի խօսելով յասելն, պատառեաց: Եւ այսմ չիք տարակոյս. զի արիոս տակաւին յայնժամ էր սարկաւագ. որ և յետոյ ասրգեալ՝ եղև քահանայ յաքիղասայ. որպէս վկայէ և սոզոմենոս. գիրք. ա. գլ. 14. և յետ ժամանակաց յաւուրս աղեքսանդրի յայտնեաց ըզչարութիւն իւր. մինչև դատապարտեցաւ 'ի սբ. հարցն նիկիոյ:

(8) Ասելն՝ աստանօր պատառեաց զխս, նոյն է ըստ ասուէս, պատառեաց զպատմուճանն իմ խորհրդաւոր: Այլ ծանիր, զի թէ 'ի յայսմաւուրս հայոց՝ և թէ 'ի բասիլեանն յունաց, որպէս և առ մր իէլի, ոչ գնի խնդիր բայի. այլ՝ լոկ բայս պատառեաց. որով իմանի նախայեղեալ պատմուճանն՝ զորմէ հարցանէր պետրոս: Իսկ 'ի հին վկայաբանութեան գնի, պատառեաց ինչ. որ և նոյնանայ ըստ իմաստից: Բայց մեզ ընտրելագոյն թուեցաւ գնել զխս. զի նախ այսպէս գրի 'ի Հ=Ց. (որ 'ի հնագոյն օրինակի յայսմաւուրաց հայոց՝ որ ըստ կարգի յունաց շարադասեալ՝ սկսանելով 'ի սեպտեմբեր ամսոյ.) * Տէր՝ ամ՞ պատառեաց զխս: և նա ասէ, արիոս ||: Եւ երկրորդ՝ զի նաև սբն ներսէս լամբրոնացի, յայտ է թէ հնագոյն օրինակաց հետևելով՝ 'ի մէջ բերէ զայս

այսպէս 'ի Թուղթն առ Ոսկան միայնակեաց, գեղեցիկ
խորհրդածութեամբ կշտամբելով զբաժանօղս եկեղեցւոյ,
յասելն․ * Համբարտաւանութեն բարձրուէ զիրեարս
„ նեռահարեք անգոսնելով, և զքո՛ մարմին 'ի պար_
„ զամիտս և յախմարս խոցոտեալ պատառէք․ Թ որում
„ ասացն առ պետրոս․ արիս պատառեալ զի․ ոչ վն դա_
„ ւանութեն միայն, այլ՝ զեկեղեցւոյն պատառումն՝ ի՞ւր
„ համարեցաւ, և ծանր համարեցաւ քան զհերձուածոյն
„ դաժանութիւն ։ Իսկ դուք աչաւորիկ 'ի նմանի իրս
„ զեկեղեցւոյ պատառումն առ ոչինչ համարիք, և ոչ
„ յանդուգանելումն 'ի ձեզ հաւանեցուցանէք, այլ՝ մեր_
„ ցելումն պատերազմակիցս յարուցանէք ||։ Իսկ 'ի բա_
նիլեան վկայաբանութեան գնի բացատրութիւն այսպիսի․
* Պատառեալ պատմուճանն նշանակէր զբաժանումն
„ մեծեալ հայհոյութեն արիոսի 'ի մէ երրորդութենն ||։
և այս ևս փակի 'ի բանս անդ լամբրոնացւոյն, յասելն՝
* ոչ վն դաւանութենն միայն ||։ Ցորոց ունիս 'ի միտ
առնուլ, զի տեսիլն այն նշանակէր զկրկին պատառումն
մեծեալ յարիոսէ․ մի՝ Թ հերձուածոյ պառակտմանն ե_
կեղեցւոյ՝ որ է մարմին քի․ զոր և արար արիոս յա_
ռաջ և յետոյ քան զայն տեսիլ․ և միւս ևս՝ Թ ժանտ հե_
րետիկոսութեն, որով բաժանէր զնոյն իսկ զանձն բա_
նին այ, ուրանալով զմեծութեն նր՝ և զմշտնջենաւորու_
թիւն՝ և զհամագոյութիւն ընդ հօր․ և զայս յայտնի արար
զենին տեսլեանն եղելոյ ։

(9) 'Ի հին վկայաբանութե յունաց գրի և այս՝ թէ տաս_
ցեալ իցէ քն առ պետրոս․ * Պատռեցին նաև աքի_
„ ղասայ և աղեքսանդրոսի երիցանց, որք զինի քո ունէին
„ հովանեալ զեկեղեցի իմ, զի մի իւիք երօք ընկալցին զնա
(քո զարիոս) ||։ Զնոյն երկրորդէ և տր իէլ՝ վարդա_
պետ հայոց, որոյ բանիւէ եդաք և մեք ։ ոտ և օրինակն
Հ = Յ ։ Զայս թուէի խորհրդով զանց արարեալ Հ․ 'ի
յետին օրինակս․ որովհետև աքիղաս ընկալաւ զա_
րիոս 'ի հաղորդութեն․ նոյնպէս և աղեքսանդր՝ առ ժա_
մանակ մի ։ Բայց 'ի զուր․ զի ուր նաև Հ․ ցուցանէ,
թէ գուշակեաց պետրոս զյաջորդելն աքիղասայ և ա_
ղեքսանդրի․ և յա․ա արար նց զնենգ արիոսի, նովին իսկ
յայտ է թէ 'ի տեսլենէ անտի գիտելով զգուշացու_
ցեալ էր զնո պետրոս ։ Իսկ թէ զխարդ եղև նոցա ան_
զգուշ կալ զնի, չէ ինչ զարմանք, թէպէտև էին արք
առաքինիք և քաջ հովիւք․ զի աղուէսաբարոյն արիոս
այնպէս ձևացոյց զինքն պատրաստ յապաշխարել, մին_
չև

չև անմարթ երևեցաւ ինձ մերժել զապաշխարողն․ վնյ և ականմց կամօք ընկալան զնա ։ Այլ զխորամանկութին արիոսի լռով ունիս իմանալ 'ի պատմութենց ժողովոյն նիկիոյ ։

(10) 'Ի հին յունարէնն ասի․ թէ զայս ձայն՝ պետրոս գլուխ առաքելոց ; և պետրոս վերջ մարտիրոսաց, լուեալ իցէ կոյս ումն հեռաւոր՝ որ ոչ գիտէր զաղօթելն պետրոսի․ և ծանուցեալ այլոց․ այլ թուի թէ նոյն իսկ պատուական էր այն՝ որ տանէր զկատուն 'ի վախճանել․ և էր ականատես եղելոցն ։ Որպէս և իցէ՝ մեք եգաք ի հայերէնին, ուր ասի իշխանութ, թէ եկն ձայն յերկնից ։ Իսկ թէ յինչ միտս կոչեցաւ պետրոս հայրապետ՝ վերջ մարտիրոսաց, առաջի դնէ բարոնիոս՝ առեալ 'ի յունականէն․ * քանզի ( ասէ ) վերջինն 'ի մէջ նոր հայրապետաց մարտիրոսացելոց, որք կրեցին հալածանս 'ի հեթանոսաց, պետրոս եղև ǁ․ և այս յաւէտ հայելով յաթոռն աղեքսանդրիոյ ։ Մանաւանդ զի յետ կատարման նորին պետրոսի առ սակաւ սակաւ շիջաւ ծառայած հալածանքն սկսեալ յաւուրց անտի դիոկղետիանոսի, 'ի փայլել բարեպաշտ արքային կոստանդիանոսի ։

(11) 'Ի Ց․ առանց յիշելոյ զթիւ զօրականաց՝ որք էին 'ի նահատակել զսբն, ասի՝ թէ հինգ ոսկի դահեկան էառ սպանողն սբյն՝ յընկերաց իւրոց ։ Իսկ 'ի Հ․ դնի՝ թէ հինգ զօրականք էին․ և սպանողն էառ քսան դահեկան ( կմ դեկան )․ զի իւրաքանչիւրն 'ի մնացելոց չորեցունց ընկերաց՝ հինգ հինգ դահեկան եդեալ էին 'ի մէջ ։ Այլ այսպիսի տարբերութիւնք ոչ ինչ վնասեն, այլ՝ յաւէտ հաստատեն զճշմարտութիւն իրացն, որ է դոյացութեն միօրինակ գտանի նաև 'ի մանրապատում գործողութիւնս,

(12) Ժամանակ նահատակութեն սբյն՝ բարոնիոս դնէ յամի տն․ 310․ նոյնպէս և պետաւիոս՝ և այլք ոչ սակաւք ։ Իսկ պագիոս ընդդէմ լինել յամի՝ 311․ նոյնպս և լեքէն՝ և այլք բզմ ։ Երկուքին ևս հիմնել են 'ի հաստատուն ժամանակագրութեն եւսեբեայ․ որ 'ի պտմ․ եկղ․ է․ 32․ զնահատակութեն սորա դնէ յիններորդ ամի հալածանաց․ արդ՝ սկիզբն հալածանաց առեալ լինի յամի տն․ 302․ կամ 303․ և է այնմ միով ամաւ տարբերին բանք քննչաց ։ Թող զի ամանք լռացեալ ամօք չափեալ՝ եդին զնահատակութիւն յամի․ 312 ։

Իսկ օր ամսեանն, է Հ․ և Ց․ միօրինակ դնի 'ի 25․ նոյեմբ․ այսպէս դնէ և լեքէն՝ համեմատութբ ամացն

ուին կացեալ սրբ հայրապետն՝ և երբեք յաթոռն իւր ոչ նստաւ||. և դարձեալ առի 'ի վերջն. * և սրբ հայրապետն պետրոս ի նն ամ յաթոռին եկաց, թող զհալածանսն. և ի նն օր 'ի բանտին, ԺԲ ամն մերոյ յոհի քնի՝ ի նն ամս յորովայն կուսին||: Բայց այսմ ՃԶ եմ ելանէ՝ որ գրի անդ 'ի սկզբան. * Եւ այսպէս ի նն ամ հալածական եղեալ՝ (և դարձեալ) եկն յաթոռն իւր յաղեքսանդրիա||: Յորմէ յայտ է՝ թէ սխալանք ինչ գրչաց մտեալ է 'ի միւս բանսն. փոխանակ զի պարտ էր գնել. երեք ամ եկաց յաթոռն խաղաղութ. թող զինն ամս հալածանաց և բանտարգելութ. որով ԺԲ ամ լինի՝ երկոտասան ամ: Այլ և զոր առի դարձեալ 'ի Հ. մն առիսողոմայ՝ թէ ԺԲ նմա ժուժկալեալ էր ամս ԺԵ. 'ի հալածանս անօրինացն, պարտ է ընթեռնուլ՝ ամս, ԺԲ:



# Վ.Ա.Ր.Դ.

## Սրբոյն անտոնի անապատականին՝ մեծի աբբայի, հարանց հօր:

Հ. Յ. Լ. յունվար. 17: Ճառընտիր՝ բանից սրբյն աթանասի: Մարկ հարանց: Պալադիոս. Հռուֆինոս. Սոկրատ. և այլք բզմ. Նիկեփոր յոհաննէս 'ի Է. հատ. յնվ. երես. 107=163: (1)



ՆԱԽԱՀԱՅՐ ԱՆԱպատաւորաց՝ սրբ հայրն մեր Անտոնիոս, երանաշնորհ առաջնորդ միայնակեցաց՝ և պարագլուխ ճգնաւորաց, զարդն անապատի՝ և հայելի կրօնաւորութեան, էր ազգաւ եգիպտացի՝

այն

այն է ղփտի, 'ի զարմէ առագաց՝ մեծատուն
և բարեպաշտ ծնողաց զաւակ, ծնեալ յամի
Տեառն 250, 'ի կոմայ աւանէ նախարարութեան
հերակլիտայ՝ որ 'ի սահմանս եգիպտոսի,
մօտ 'ի քաղաքն՝ փոքր հերակլիա անուանեալ:
Եւ եղև անտոն 'ի մանկութենէ՝ առանձնասէր
և աղօթասէր, այր ընդդատուն և առանց պա-
ճուճանաց. յաճախէր յեկեղեցի ընդ աստուածասէր
ծնօղս իւր, և խորշէր 'ի մանկական զբօսա-
նաց. հեզ էր բարուք, և հլու ամենայն բանից
ծնողացն. և ոչ ի՛իք նեղէր զնոսա 'ի սնունդն
վասն կերակրոց և հանդերձից լաւութեան որպէս ժա-
ռանգ տանն: Ոչ գիտէր զուսումն դպրութեան,
այլ կարդացման սրբոց գրոց ունկն դնէր մեծաւ
փափաքմամբ, և զառ 'ի նմանէ օգուտն յինքն
ամբարէր մտավարժութեամբ և առաքինասէր
փութով: (2)

Իսկ 'ի վախճանիլ ծնողացն՝ ինքն միա՛յն
մնացեալ լինէր ութուտասան ամաց, համ-
դերձ քերբ միով կրտսերաւ. և էր հոգաբար-
ձու տան և քեռն: Եւ մինչ ամիսք վեց ան-
ցանէին մահուան ծնողացն, յերթալն իւ-
րում ըստ սովորութեան յեկեղեցին՝ խորհէր վասն
առաքելոցն սրբոց, թէ որպէս թողեալ զամենայն զհետ
գնացին Քրիստոսի. և վասն այլոց բազմաց՝ եթէ
զիա՛րդ վաճառէին զինչս, և բերէին զգինս
նոցա առ առաքեալսն՝ բաշխել աղքատաց, յու-
սով մեծամեծ վարձուց և երկնաւոր գան-
ձուց: Եւ մինչդեռ յայս էին խորհուրդք նորա,
լուաւ յեկեղեցւոջ զաւուր ընթերցուածն
'ի սուրբ աւետարանէ, որ ասէ. * Եթէ կամիս
կա-

կատարեալ լինել, երթ վաճառեա զամ՛ զոր ինչ ունիս, եւ տուր աղքատաց, եւ եկ զկնի իմ. եւ ունիցիս գանձս յերկինս || : Յայն-ժամ անտոն իբրեւ յայս լուեալ, համարե-ցաւ՝ թէ վն նորա է ասացեալն . եւ անդէն վաղվաղակի 'ի դուրս ելեալ 'ի տրունական տա-նէն՝ սկսաւ թօթափել յանձնէ զամ՛ստաց-ուածս իւր՝ զոր ունէր 'ի նախնեաց . զի էին նորա անդք քաջաբերք երեք հարիւր . նախ զայն շնորհէր մերձաւորաց իւրոց գեղջէից, զի մի՛ ընաւ նեղիցի 'ի նցէ . իսկ որ այլ ինչ էր շարժուն կարասի՝ վաճառեաց եւ ժողով-եաց ոսկի եւ արծաթ բզմ, եւ բաշխեաց կա-րօտելոց . միայն սակաւ ինչ քեռն թողոյր յայնմանէ : Այլ իբրեւ միւսանգամ եմուտ 'ի տրունին, եւ լուաւ յաւետարանէն՝ որ ա-սէր, * մի՛ հոգայք վն վաղուին ||, ոչ կարաց յապաղել, այլ վաղվաղակի 'ի դուրս ելեալ զայն եւս բաժանեաց աղքատաց . եւ զքոյրն յանձն արար հաւատարիմ եւ սբ կուսանաց, զի զորբութի եւ զպարկեշտութի ուսցի 'ի մա-կուէ . եւ ինքն ազատացեալ իսպառ 'ի հոգոց աշխի՝ ընտրեաց իւր բնակութի առանձին ար-տաքոյ շինին . եւ այնուհետեւ կարգօք եւ կրօ-նիւք ժուժկալութե կրթէր զանձն ճգնելով : Նա եղեւ սկիզբն եղանելոյ անտոնի յՃէ 'ի հասակի ինն եւ տասն կմ քսան ամաց՝ յամի տն 269, կմ 270 . մինչչեւ էր շինեալ վանո-րէից 'ի սահմանս եգիպտացւոց, եւ ոչ ոք գիտէր 'ի միայնակեցաց զհեռաւոր անա-պատն . այլ որ միանգամ կամէր կրօնաւորիլ
'ի

'ի Ծմկին, ոչինչ հեռի յինքեան գեղջէ միայնացեալ բնակէր ։ Յորոց մի էր և ծեր ոմն խստակրօն՝ մերձ 'ի գիւղն կոմայ միայնութ կրօնաւորեալ 'ի մանկութէ . զնա տեսեալ անտոնի՝ նախանձեցաւ զբարուք նախանձն, և արար ըստ օրինակի նր տեղի միայնութ փոքր մի հեռի 'ի գեղջէն, այց առնելով երբեք երբեք ծերոյն այնմ, և այլոց եղբարց համդարտելոց յայն տեղիս ։

Նաև եթէ զուրուք փոյթ լսէր առաւելեալ առաքինութ, 'ի խնդիր ելանէր իբրև զիմաստուն մեղու . և ոչ դառնայր 'ի տեղի իւր, եթէ ոչ ուսանէր զկարգ նր, և հաւաքէր 'ի նմէ զծաղիկս կատարելութ . և այնպէս զամենեցուն զառ 'ի քս բարեպաշտութն յինքն համբարեալ պահէր, և զամէն յանձն ժողվէր զբարիս . և զամենեքումբք զանցեալ խոնարհութ առ յետինս զանձն ունէր, և սիրով և զուարթութ վարէր ըն ամենին . և որք տեսանէին զնա տոն, սիրէին զնա, ոմանք ոպ զորդի, և ոմանք որպէս զեղբայր . և անուն կոչէին նմա ածասէր, կմ սիրելի այյ ։

Իսկ բարիատեաց բանսարկուն ոչ կարաց համբերել այնպիսի յառաջադիմութն պատանւոյն . և սկիզբն արարեալ փորձութեցն՝ զառաջինն յուշ արկանէր զքեռ իւրոյ ըզգուլթ, և զազգատոհմն, զինչս և զփառս և զայլ ևս հանգիստ՝ զոր եթող . ըստ նմին և զդժուարութ ճգնին՝ զոր կալաւ, զխստամբերութի առաքինութէ, զտկարութ մարմնոյն, և զԾմկին զերկարութն ։ Սակայն յայս նմ պա-

պա-

պատրզմի խորհրդոց եւես զինքն Թշնամին անզօր առ անտոն , և պարտեալ՚ի նր անշարժ հաւատոցն և՚ի ստէպ ստէպ աղօթիցն ։ Ոչ մի ես մարտ յարդարէր՝ որով սովորութ է նր յարձակիլ՚ի վր նորահաստակաց ․ քղի՚ի միտս նր արկանէր խէղդս աղտեղիս , և՚ի մարմինն մարմնաջնունս ցանկուն ․ իսկ նա աղօթիւք զնետս մուխս չարին շիջուցանէր , և պահօք զմարմինն սպանանէր ․ և յամօթ առնէր զնմ հնարս դիւին ․ քանզի օգնական էր նմ տր և յաջողիչ , որ վն մեր մարմնացաւ , և մարմնով ետ յաղթող լինել ընդէմ անմարմին Թշնամւոյն ։

Յետ այսորիկ տեսեալ բանսարկուին՝ եթէ ոչ կարաց խէիք սոնանել անտոնի , յերեսս իսկ երևեցաւ նմ իբրև մանուկ դարշ և սևադէմ ․ և անկեալ առ ոտս նր՝ գանգատէր և ասէր մեղկայլին ձայնիւ ․ զբզմս խաբեցի, և զոմանս յերկիր կործանեցի ․ այլ այժմ քո ձգանօք վատթարեալ անկարացայ ։ Եւ հարց զնա անտոն ․ ով ես դու՝ որ ըն իս այսպիսի բանս բարբառիս ․ և նա ասէ ․ ես բարեկամ եմ պղծութ , և ոգի պոռնկութ կոչիմ ․ որ յոգունց յաղթեցի , և ընդ տիղմ Թաւալեցուցի ․ և ես եմ՝ որ բզմ անգամ լքեցի զքեզ , այլ ամօթով յետս վանեալ՝ եղէ փախստական առ՚ի քէն ։ Իսկ անտոն՝ գեղեցիկ օրհնութ գոհութի մատուցանէր տն , և արհամարհել զնովաւ՝ ասէր ․ ուրեմն կարի յոյժ դձուձ ես դու և արհամարհ , Թուլս տեսլեամբ , և տկար և անզօր ոչ մանուկ ․

նուկ. և իմ այսուհետև չիք ինչ հոգս վս
քո. զի տէր է իմ օգնական, և ես տեսի
զթշնամիս իմ։ Զայս իբրև լուաւ չարն,
վաղվաղակի ՚ի բաց հեռացաւ ՚ի սմ̃էն. և
ոչ իշխէր այլ ևս մերձենալ ՚ի նա։

Այս եղև առաջին նահատակութի̃ անտանի
ը̃դէմ բանսարկուին. և զի ուսեալ էր ան-
տոն ՚ի գրոց, եթէ ը̃դմ են թշնամւոյն խար-
դախուե̃ մեքենայքն, ևս ը̃ զևս փոյթ տա-
նէր արթնուե̃ մտաց, և ճ̃նչելոյ զմարմինն
՚ի հնազանդութի̃. և կամէր այնուհետև
առաւել ծանր և խիստ կրօնիւք հանդիսա-
նալ ը̃դէմ փորձողին. մինչև սքանչանալ
բազմաց ը̃ ճգնութիս նր̃. ք̃զի հսկէր յա-
ղօթս այնչափ, մինչև զգիշերն ՚ի գլուխ ան-
քուն անցուցանէր. և ոչ միանգամ, այլ բզմ̃
անգամ յերեկորէ յետս կոյս թողեալ զա-
րեգակն՝ (քանզի ընդ արևելս աղօթէր), ը̃
առաւօտն ՚ի դէմս իւր ծագեալ գտանէր։
Յաւուրն միանգամ ճաշակէր ՚ի մուտս ա-
րեւուն. և էր՝ զի յետ երկուց և երից աւուրց,
կմ̃ ՚ի շաբաթու միանգամ ուտէր. իսկ կե-
րակուր նր̃ հաց և աղ լոկ, և ջուր ըմպելի։
Եւ ՚ի քուն լոկ խոտեղինօք լինէր՝ արկեալ
՚ի ներքոյ պրտուեղէն փսիաթ, և երբեմն
Գ խորգ մազեղէն. այլ բզմ̃ անգամ ևս գետ-
նախշտի յերկիր անկանէր. ը̃ միտ ածելով
զառաքելականն բան, եթէ յորժամ տկա-
րանամ, յայնժամ զօրանամ զօրութ̃ն ք̃ի։
Եւ այն էր սքանչելի. զի ոչ գոյր չափ առա-
քինուե̃ նր̃, այլ օր ը̃ զօր ՚ի լաւ անդր ձե-
պէր.

պէր. այլև ոչ յիշէր զանցեալ ժմկին զվաստակսն, այլ հնպզ սկիզբն առնէր առաքինական փութոյ, և մեծապէս առնէր աճումն վաստակոց յառաջադէմն, զառաքելոյն զբան երկրորդելով. զառ՚ի յետոյսն մոռացեալ եմ, և յառաջիկայսն նկրտիմ։

Սովին խորհրդով նախանձաւոր լեալ ընթացից առանձնութէ մեծին եղիայի և յովհաննու մկրտչի՝ դէմ եդեալ գնաց ՚ի շիրիմս ուրեք հեռագոյն ՚ի գեղջէն, պատուիրեալ միումն ՚ի ծանօթից իւրոց՝ յետ աւուրց բազմաց տանել նմ զհացիկն. և ինքն եմուտ ՚ի մի ՚ի շիրմաց անտի, որ էր գերեզման ունայն իբրև քարանձաւ. և ՚ի գալ առ նա եղբօրն՝ որ զհացն բերէր, ետ փակել ՚ի վր իւր զմուտս շիրմին իբրև զդուրս. և մնաց ինքն ՚ի ներքս, և արար անդ ամս հնգետասան՝ անտանելի ճգնութբ և ազգի ազգի հանդիսիւք փորձանաց։

Քանզի անդէն իսկ ՚ի սկզբան զչարեցաւ բանսարկուն ընդ հեռանալ նորա ՚ի մրդկան բնակութէ, զի մի և այլք ուսցին նովաւ առանձնանալ յանապատ. վսյ եկն ՚ի վր նր ՚ի միում գիշերի հանդերձ բզմ դիւօք. և այնչափ սաստիկ գանիւք տանջեաց զնա, մինչև անբարբառ անկեալ դնէր երանելին. որ և զկնի պատմէր ինքնին, թէ ոչինչ են առ նովաւ՝ ամ առ ՚ի մրդկանէ հարուածք։

Եւ ՚ի վաղիւ անդր եկեալ ծանօթ եղբայրն՝ բերել նմ զհացիկն, իբրև եբաց զդուրսն, և ետես զնա՝ զի յերկիր անկեալ դնէր իբրև

զմեռ

զմեռեալն, 'ի վեր էառ զնա , և տարաւ 'ի գաւիթ եկեղեցւոյն՝ որ 'ի շինին ։ Յայնժամ բժիշք յազգականաց անտի նր և 'ի գեղջէիցն անցեալ շուրջ զնովաւ նստէին իբրև զմեռելով ։ Իսկ 'ի մէջ գիշերին յինքն եկեալ անտոն , տեսանէր զայլսն ննջեալ , և զծանօթն միայն արթուն ․ ակնարկէ նմա աղաչելով՝ բառնալ տանել զինքն լռելեայն անդրէն 'ի շիրիմն ։

Իսկ իբրև տարեալ եդև, առնէր ըստ սովորութեն դրնել դրօքն փակելովք 'ի ներքս միայն ․ և զի յոտն կալ ոչ կարէր վն դիւացն հարուածոց , գետնատարած աղօթէր ։ Իսկ յետ աղօթիցն ասէ մեծաձայն ․ ա՛ստ եմ ես անտոն ո՛վ չա՛ր դևք , և ոչ փախչիմ 'ի ձերում հալածանացդ հարուածոց , այլ անկեալ դնիմ յաղօթս ․ զի թէպէտ և աւելի ինչ առնիցիք , ոչինչ է՝ որ մեկնէ զմեզ 'ի սիրոյն քրի ։ Իսկ յետ այսորիկ սաղմոսէր և ասէր ․ թէ յարիցէ 'ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ ․ թէ յարիցէ 'ի վերայ իմ ճակատամարտ , սակայն և այսուհիկ 'ի տր եմ յուսացեալ ։

Իսկ չարասէր բանսարկուն դժուարեալ յոյժ էր այն , առ ինքն կոչէր զիւր համաշունչսն ․ տեսէք ասէր , զի ոչ ոգւով պոռնկութն , և ոչ հարուածովք դադարեցուցաք զսա ․ այլ ըմբոստանայ ևս ըդդէմ մեր ․ եկա՛յք մերձեցարո՛ւք 'ի սա այլով օրինակաւ ։ Յայնժամ 'ի գիշերին յայնմիկ թնդիւն առնէին դևքն այնչափ սաստիկ , մինչև կարծել զտեղին

դղրդեալ 'ի հիմանց , և զչորեսին անկիւնս
խցկանն պատառեալ . և անդէն փաղփաղա-
կի տեղին լուսոյ առ աչս տեսլեամբ չար դի-
ւաց՝ 'ի նմանութիւն առիւծուց և զուարա-
կաց , արջոց և ընձուց, գայլոց, օձից և կար-
ճաց, և այլոց սողնոց թունաւորաց . և իւրա-
քանչիւրն 'ի նմէ ըստ բուսոյ բարուցն ահա-
գին շշնջմամբ և ոխերիմ սրտմտութե՟ 'ի վե-
րայ յարձակեալ՝ կենդանւոյն կամէին կլա-
նել զնա : Իսկ Անտոն թէպէտ և անհնարին
ցաւս ըմբռնէր 'ի նմէ , սակայն ոչ զանգիտէր .
և որ անկեալ դնէր 'ի գետնի և հեծէր վ͞ս
մարմնոյն ցաւոց , ողջ էր հոգւովն և զգաստ
արթնութե՟ խորհրդոյն : Նա իբրև ծաղր առ-
նելով զթշնամիսն՝ ասէր . եթէ զօրութիւն ինչ
գոյր 'ի ձեզ , մինչ 'ի ձէնջ բաւական էր ինձ .
այլ վ͞ս զի ջղատեաց զձեզ զօրութիւն ք͞ի , վ͞սկ
'ի կերպս կերպս երևեք բազմութե՟ հնա-
րիւք ինձ ահ արկանել . և տկարութե ձերոյ
նշանակ այդ է՝ նմանել ձեզ 'ի կերպարանս
այլանդակ գազանաց . զի եթէ իշխանութի
ունիք 'ի ն͞ս և կարէք , արարէք զ͞ի օրինակի
կերպարանացդ . ապա թէ ոչ՝ զի՞ 'ի զուր
վրդովեալ էք . զի պահապան մեր ա͞յ խաչն
է , և պարիսպ ամրութե տ͞ր յ͞ս ք͞ս : Իսկ դևքն
զայրանայլին կրճտէին զատամունս իւրեանց
'ի վ͞ր ն͞ր . և ոչ ևս իշխեալ 'ի նա մերձիլ՝ զմի-
մեամբք խաղային խռովայոյզ շփոթմամբ :
Յայնժամ փայլի 'ի վեր հայեցեալ Անտոն , և
տեսս զձեղունն բացեալ , և զճառագայ-
թունն լուսոյ՝ զի իջանէր առ նա , և անդէն

դեքն աներևոյթ լինէին. 'ի նմին ժամու և
ցաւք մարմնոյ սորին դադարեցին. և տունն
գտաւ ողջ բովանդակ ոսկ̃ զառաջինն։ Իբրև
գիտաց անտոն զ̃ն այցելուն՝ ոգի առեալ
թեթևանայր իսպառ 'ի ցաւոցն, և ասէր.
Տ̃ր ա̃ծ իմ յ̃ս ո՞ւր էիր, և ո՞ւր էր զօրութ̃ տեա-
ռանդ յառաջագոյն, որով բուժեցեր զիս
'ի ցաւոցս. և հալածեաց զդևս խաւարայ-
ինս լոյսդ՝ որ երևեցաւ 'ի քումմէ սրբութենդ։
Եւ եղև ձայն յերկնից՝ որ ասէր. աստ էի
ես անտոնիէ, որ մերձ եմ 'ի յուսացեալս
իմ. այլ կայի մնայի տեսանել զքոնահատա-
կութիւնդ. արդ՝ վ̃ն զի համբերեցեր դու,
յաղթեցեր՝ և ոչ յաղթեցար պատրանօք.
այլ արդ եղէց քեզ միշտ օգնական. և արա-
րից զքեզ անուանի ը̃ ա̃մ երկիր։ Եւ զայս
իբրև լուէր անտոն, յոտն կացեալ՝ կայր յա-
ղօթս. և այնչափ զօրանայր 'ի վերին շնոր-
հացն, մինչ զի առաւել յաւելուած զօրութ̃
ընդունէր յանձն իւր քան զառաջինն. և էր
յայնժամ ամաց իբրև երեսուն և հնգից։
Յետ այսորիկ ըստ առաւելուլ բաղձանաց
յանձն անտոնի առ անզբաղ ծ̃յութ̃ ա̃ն յա-
ռանձնութ̃ե անապատի, չոգաւ առ նախաձա-
ռեալ ծերն, և աղաչեաց զնա՝ զի 'ի միասին
դիմեսցեն յանշէն վայրս։ Եւ 'ի պատճառել
ն̃ր զծերութ̃ իւր և զիրայն նորութ̃, ինքնին
ընթացաւ յանապատն կոյս՝ դէմ եդեալ
հասանել 'ի լեառն մի բարձր, աներկիւղ
գնալով զանկոխ ճ̃պհն։ Իսկ դևն խափանել
կարծելով զնա յառաջեդեալ խորհրդոյն՝
ընկէց

ընկեց 'ի վր̄ ճնհի սկաւառակ մի արծաթի (կշ̄ ոսկի) : Օր տեսեալ անտոնի՝ ասէր ը̄ միտս . ուստի՞ իցէ անօթ այսպիսի յայսմ անկոխ վայրի . այդ քո հնարք են չար դև . մի լինիր ինձ խոչընդակն . արծաթ քո ը̄ քեզ լիցի 'ի կորուստ : Եւ նոյնժամայն անհետ եղև սկաւառակն իբրև ծուխ յերեսաց հրոյ: Իբրև յո̄ջ ընթացաւ փոքր մի , տեսանէր այլ ինչ ձոյլ ոսկւոյ զտոյ . և 'ի զարմացումն եղեալ՝ զի ոչ առ աչօք ինչ թուէր իբրև զառաջինն , եանց ը̄ այն փութապէս՝ փախուցեալ իբրև յերեսաց հրդեհի . և հասեալ 'ի ստորոտ լերինն՝ եանց ը̄ գետն , որ գնայր առ լեռնոտամբքն . և ելեալ 'ի վեր՝ եգիտ յարկ ինչ աւերակի , կմ̄ քարայր մի 'ի բերդամայացեալ . ուր լցեալ էին զազանք վայրի և զեռունք . այլ ը̄ տեսանելն զանտոն՝ տեղի ետուն առն ա̄յ , և մեկնեցան անտի :

Յայնժմ̄ եփից երանելին քարամբք զմուտս այրին , և դադարեաց 'ի ներքս՝ ունելով ը̄ իւր հաց և ջուր չափով , մինչև բուն լինել նմ̄ զամիսս վեց : Եւ այս եղև յամի տն̄ 285 . յառաջնումն ամի կայսերութեն դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի հերակլեայ : Այս է առաջին անապատ անտոնի . ուր եկաց նա միայնացեալ զամս քսան . ոչ ինքն ել արտաքս, և ոչ զոք երբէք 'ի ներքս ընկալաւ . բայց միայն երկիցս 'ի տարւոջ լուեալ ը̄ ունէր զհաց , զոր արկանէին ը̄ երդս յարկին :

Եւ լինէր՝ յորժամ գայրին բզ̄մք և առ դուրս նր̄ ազանէին , զի թերևս երբէք մարթաս-

ցին տեսանել զնա՝, լսէին զկուսի՛ բազմութե՛
'ի ներքուստ՝ ասելով ցանտոն. Ո՞ է քեզ՝
զի բռնացեալ ես 'ի բնակութե՛ մերում. զի՞
կայ քո և անապատի, 'ի բաց գնա 'ի սահմա-
նաց մերոց. չի՛ք քեզ հնար բնակել աստ,
կա՛մ ժուժկալել ընդդէմ հնարից մերոց։ Եւ
նա ընդդիմանայր նոցա բանի՛ և հկռկէր.
մինչև կարծել որոց կային արտաքոյ, եթէ
ոմանք 'ի մրդկանէ սանդուղս եդեալ՝ մտեալ
իցեն առ նա. և կագեն ընդ նմ։ Բայց իբրև
ընդ ծերպս որմոյն հայեցեալ տեսանէին և ոչ
զոք, յայնժամ 'ի միտ առնուին՝ եթէ դևք
վիճեն ընդ սրբյն. վ՛սյ զահի հարեալ դառնայ-
ին. և կէսք առ ահի յօգնութի՛ կարդային
զանտոն։ Իսկ նորա մերձ եկեալ 'ի դուռն՝
խրատէր զնս չերկնչել 'ի սնոտի արհաւրաց
դիւաց, այլ՝ կնքել զանձինս նշանաւ սբյ
խաչին, և գնալ 'ի տեղիս իւրեանց։ Ոմանք
ևս յորժամ դային 'ի դուրս նորա, լսէին
զերգս յաղթութե՝ զոր սաղմոսէր ընդդէմ բա-
նակաց չարին. յարիցէ ած և ցրուեսցին ամ
թշնամիք նր. փախիցեն ատելիք նր յերե-
սաց նր. և թէ՝ ամ ազինք շրջեցան զինև, և
անուամբ տն վանեցի զնս։

Եւ եղև յետ քսան ամաց արգելանացն անտ-
ոնի՝ յորժամ եհաս թգրել մեծին կոստան-
դիանոսի յամի տն 306, բզմք 'ի բարեպաշ-
տից 'ի նախանձ բարի բերեալ ճգնհին անտո-
նի՝ դիմէին առ նա աշակերտիլ միակեցական
վարուց նր. թող զբազմուի ախտաժետաց
եկելոց անդր 'ի գտանել զբժշկութի աղօ-

թիւք

թիւք նր̃ : Եւ իբրեւ կարի ստիպեցին զնա եւ ոչ կարէին հաւանեցուցանել ելանել յարգելանաց անտի, քակեցին զմուտս տեղւոյն եւ բռնի հանին զնա արտաքս . եւ գտին զերանելին զուարթ եւ կայտառ ամենեւին հոգւով եւ մարմնով : Յայնժամ ազատեաց զքղ̃մն յայսոց չարաց, եւ զքղ̃մն բժշկեաց 'ի պէսպէս ախտից . եւ սկսաւ ուսուցանել զա̃մ ժողովելոյն ա̃ծուսոյց բանիւք, մխիթարել եւ սփոփել եւ կրթել 'ի փոյթ ա̃ծպաշտութե̃ . յորմէ յորդորեալ առաքինասիրաց՝ մնաղիւր տային զանձինս յառաջնորդութի̃ նր̃՝ լինել նմ̃ գլուխ եւ հայր, եւ ուսուցիչ կենաց ճշ̃հին : Մինչ զի 'ի սակաւ աւուրս բազմացան յոյժ, որք թողին զա̃շ, եւ կրօնաւորեցան ընդ ձեռամբ անտոնի . շինեցին սենեակս եւ խրճիթս իբրեւ տաղաւարս 'ի լերին անդ . եւ համբարձեալ կանխէին յօրհնութիւս ա̃յ եւ 'ի սաղմոսս, յաղօթս եւ 'ի կարդացմունս ս̃ր̃ գրոց . եւ այր զարամբ ելանէին 'ի ճգունս եւ 'ի վարս սրբութե̃ . եւ եղեւ անբնակ լեառն յանշէն անապատին՝ բանակետղ հրեշտակակրօն զինուորացն քն̃ի :

Սոցին օրինակաւ վառեալ եւ որք հրաժարական կեանս վարէին 'ի կողմանս արսենոյայ, այն է ք̃ղք կոկորդիլոսաց 'ի նախարարութե̃ն արսենոյիտայ, եկեալ աղաչէին զանտոն՝ այց առնել նմ̃, եւ հաստատել 'ի նոսա զնոյն ձեւ բարեկրօնութե̃ : Եւ սր̃բն յօժարական եհաս առ նս̃՝ աներկիւղ անցանելով ը̃ գետն որ լինէր խեցի զազանօք եւ կոկորդիլոսօք . եւ

յետ օրհնաբերելոյ զնոսա և հաստատելոյ ամենի-
մաստ խրատուք՝ դարձաւ անդրէն 'ի տեղի
իւր . և անձանձիր ուսուցանէր զնոսին բա-
նիւ և օրինակաւ իւրով 'ի մարգս կրօնաւո-
րութեան , հայր եղեալ հազարաւոց՝ մեծի և
փոքու :

Բանայր առաջի նոցա և զազգի ազգի խար-
դախութիւնս փորձողին , զորոց անձամբ ան-
ձին զփորձ առեալ էր , և զնոյն զդեղ դար-
մանոց ցուցանէր . պատմէր նոցա և զզանազան
երևոյթս դիւաց՝ որք եղեն առ նա յայնչափ
ամս առանձնութեան , և զօրինակ զգուշութեան
ուսուցանէր : Ոչ լինել խրատէր՝ միայն
ծածկել իւրոյ անախտութեան , և ոչ խնդրել զան-
ձինս իւրք իրօք . ոչ նշանագործութեանց և
տեսլեանց ակնունել , այլ ուղղութեան վարուց
պատկառել , և առաւելապէս զուարթ լի-
նել յամենայնի 'ի վաստակս առաքինութեան , և զնոյն
մնալ յոյզս խորհրդոց առ ոչինչ գրել , ան-
պակաս ունելով 'ի միտս զյիշատակն մահու , և
առաջի նորա զքաղցր քափարելով միշտ՝ ապաւինել
յամենախնամ հովանաւորութիւն նորա :

Յայնու ժամկաւ յամի իբր 310 . սաստկացաւ
հալածումն յեգիպտոս յերեսաց մաքսիմիա-
նոսի կայսեր ( որ և մաքսիմինոս դաժ ) , և
բազմք նահատակեցան յաղեքսանդրիա , և
նոքա բազմագոյնք 'ի բանտ և 'ի մետաղս ար-
գելան . յորոց մի էր և սուրբն պետրոս հայրա-
պետ աղեքսանդրու : Յայնժամ մաւ երա-
նելին անտոն ցգլխաւորս յաշակերտաց իւ-
րոց . ոն եկայք երթիցուք և մեք 'ի ցանկա-

լի

լի Հանդէս Եղբարց մերոց, ո՛չ միայն տեսողս
լինել ձգնութե՛ նց, այլև գործակից և նահա
տակակից : Նոյն այնպէս եկն էջ յաղեքսան
դրիա՝ ծարաւեալ վկայական մահուա՛ն . և
զի չէ՛ր օրէն անձամբ զանձն մատնել, մնայր
դիպող ժամու կատարման փափաքանաց
իւրոց :

Սոյն յորժամ տանէին զկապեալսն յատեան,
մերձենայր առ նոսա անտոն, և սրտապնդէր՝
մի՛ ինչ երկնչել յահէ անօրինաց, այլ՝ ան
վեհեր խոստովան լինել զքս, և ուրախութ
վկայել նոց . զի առօրեայ տանջանաց յա
ջորդէ անանց արքայութի : Նոյնպ և 'ի բանտս
յաճախէր 'ի անս երանելեացն . սպասաւո
րէր նց, և զօրաւոր բանիւ՛ քաջալերէր զմի
մի 'ի նցէ . զի շնորհք բղխէին 'ի բերանոյ
նյն, և զուարթացուցանէին զքաջ նահա
տակս : Նոյն յորժամ տանէին զնս 'ի տեղի
կատարման, ընթանայր և անտոն զհետ նց .
և ականատես լեալ նահատակութե նոցին՝
մեծապ ցնծութ լնոյր, ոպ եթէ ինքն էր՝ որ
էառ զյաղթանակն վկայութե :

Իսկ կռապաշտից զայրացեալ ընդ այսպիսի հա
մարձակութի անտոնի և որոց ընդ նմ, զեկուցին
դտաւորի . և նա հրամանն ետ ահագին սպառ
նալեօք, զի աբեղայ մի երևեսցի 'ի քղքին,
թող թէ իշխել մերձենալ 'ի տեղի ատենի :
Յայնժամ թաքեան այլ միայնակեացք . իսկ
անտոնիոս ոչինչ զանգիտեաց, այլ առեալ լը
ւաց զպարեգօտ իւր՝ զի առաւել երևելի լի
նիցի . և 'ի վաղիւ՛ անդր եկաց 'ի վր ձգհէ

է որ անցանէր դ՚ուրն. այլ իբրև զանց արարին զնովաւ, տրտմեցաւ երանելին՝ զի ոչ եհաս խնդրոյ նահատակութեան. բայց 'ի տեառնէ եղև այն. զի ոչ էր կամքն այ մարտիրոսանալ անտանի, այլ թողուլ զնա յերկրի՝ յառաջնորդութի կրօնաւորին կարգի ամ Յի :

Արդ՝ յետ կատարման սրբյն պետրոսի հայրապետի, է որում բզմ ընտանութբ խօսակից եղև երանելին 'ի վերջին աւուրս նորա, իբրև ետես՝ թէ ոչ յաջողեցաւ հեղուլ զարիւն իւր վն անուանն քի, մինչդ թէ և հեղեղ հալածանացն ցածնուլ սկսաւ, դարձաւ 'ի մենարան իւր, և յաւել 'ի ճգնութի պահօք և տքնութբ ինքնակամ մարտիրոսութի յանձին կալեալ հնպզօրեայ. 'ի ներքուստ խարազնազգեստ, և արտաքոյ մաշկահանդերձ: Եւ որչափ նա առանձնութե էր սիրող, այնչափ առաւել խուռն ընթանային առ նա բզմք 'ի պէտս բժշկութե. և նա աղօթս արարեալ առողջացուցանէր զամենեսին անուամբն քի :

Այլ ձանձրացեալ 'ի բազմութենէն՝ խորհեցաւ գնալ յայլ հեռագոյն տեղի՝ մօտ 'ի բարբարոսս. ուր ոչ ոք ճանաչիցէ զնա: Եւ առեալ հացչափով եկն նստաւ յափն գետոյ գտանել նաւ և անցանել յայնկոյս. յայնժամ եղև առ նա ձայն 'ի վերուստ. Անտոնիէ յո՞ դիմեալ երթաս. և վն ո՞յր: Եւ նա ասէ. Զի ոչ թողուն զիս հանդարտիլ աստ, 'ի վերինն թեբայիդ կամիմ գնալ: Ձայնն ասէ. եթէ 'ի թեբայիդ գնաս, առաւել ձանձրանաս.

նաւս այս եթէ հանդարտութ՟ի խնդրես, երթ
'ի տաճկաստան, և մուտ 'ի ներքսագոյն անա-
պատ : Եւ մինչդեռ խորհէր անտոն, թէ ո՞
ցուցցէ նմ զայն ճ՟պհ անկոխ, ետես զվա-
ճառականս իսմայէլացւոց՝ որք դառնային
յեգիպտոսէ յանապատն կոյս . ընթացաւ
առնոսա, և աղաչեաց տանել զինքն ը՟ն իւ-
րեանս 'ի խորին անապատն . և նք՟ մդաւի-
րութ՟բ ընկալան զնա : Երեք գնացին զերիս
տիւ և զերիս գիշերս, հասին 'ի լեառն
մի բարձր յոյժ . զորով պատէր դաշտ փոքր,
ուր կային արմաւենիք քանի մի . և առ ստո-
րոտով լերինն գնայր ջուր բարեհամ : Անդ
դադարեաց անտոն իբրև 'ի տեղի պատրաս-
տեալ նմ յԱյ՟ . և տեսեալ իսմայէլացւոց՝
եթէ հաճոյ է նմ բնակել անդ 'ի փապարս
լերին, զարմացան . և 'ի գութ շարժեալ՝
բերէին նմ ը՟ն ժմկին յանցանելն առ նովաւ՝
հաց և այլ ինչ պէտս :

Եւ այս է երկրորդ անապատ անտոնի, որ
կոչեցաւ լեառն ս՟բյն անտոնի . ուր և կրկին
լերինք կային . մին ներքսագոյն և առաւել
բարձր, որ եղև առանձին ճգնարան ս՟բյն .
և միւսն արտաքին և զնստագոյն, որ կոչիւր
վանք անտոնի կմ աշակերտաց անտոնի՝ պիս-
պիրի անապատ ասացեալ . ուր է զի 'ի հինգ-
աւուրս, և է զի 'ի տասն կմ 'ի քսան աւուրս
միանգամ յայցելանէր անտոն աշակերտաց
իւրոց . և անդ ընդունէր զհիւրս : Քանզի
իբրև գիտացին մդ՟իկն զառանձնութ՟ի ս՟բյն
յայն տեղի, ոչ դանդաղեցան գալ առ նա

և

և բերել զպէտս նորա. իսկ ծերն զի մի աշխատ արասցէ զնա, աղաչեաց զեղբարսն, և բերին առ նա բրիչ և ցորեան. և այնուհետև ինքնին գործէր զերկիր և սերմանէր, և իւրովք վաստակօք գտանէր զպակասապէտ կերակուր իւր. արար և պարտէզ բանջարոյ 'ի մխիթարութիւն եկելոցն առ նա։ Այլ 'ի ճարակել երէոց զբանջարսն, սաստեաց նոցա յանուն տեառն. և ոչ ևս յաւելին դառնալ անդր։ Ընդ որ սրտմտեալ դիւքն՝ ժողովեաց զա̃մ գազանս և զանասունս անապատի (1) 'ի բնակարան սրբոյն. այլ նր̃ գիտացեալ զհնարս չարին, ասէ ցնոսա. եթէ 'ի տ̃նէ եղև ձեզ հրաման, գիշագէշ պատառեցէք զիս. ապա եթէ 'ի դիւէն վարեցայք այսր, երթայք վաղվաղակի յիւրաքանչիւր տեղիս. զի ծառայ ք̃ի եմ ես. և զոյգ ընդ բանին իբրև 'ի սաստիկ հրամանէ ընդոստուցեալք՝ գնացին 'ի բաց 'ի նմէ։

Բայց դևն այլ ևս բազմօրինակ փորձանս յարուցանէր 'ի վր̃ սրբյն՝ ազգի ազգի առ աչօք տեսիլս ցուցանելով. և շատ ևս այն էր՝ զի գունդք դիւաց իբրև 'ի մարտ ճակատեալ՝ ահագին դղորդմամբ հասանէին 'ի վր̃ նր̃. իսկ երանելին մենամարտեալ ընդդէմ նց̃ ահաւոր անուամբն ք̃ի և նշանաւ ամենայաղթ խաչին՝ վանէր ցրուէր զնս իբրև քաջ նահատակ։

Եկին առ ծերն աշակերտք նր̃ յառաջին անապատէն, ը̃ նոսին և ծանօթք նր̃ յեգիպտոսէ. և բռնադատեալ տարան զնա՝ զի

մխի

մխիթարեցին տեսութ՟ ն՟ր և բանիւք․ իսկ 'ի ճ՟պհի իբրև ծարաւեցան յանջրդի վայրի, բղխեցոյց ջուր աղօթիւք․ և հասեալ առ եղբարսն՝ զուարթացոյց զնոսա․ գովեաց զփոյթ ն՟ց յառաքինի վարս, և յառաւելն յորդորեցոյց ։ Գնաց և 'ի տեսութ՟ի քեռն իւրոյ՝ որ էր լեալ մայր վանից բազմուե՟ կուսանաց, և անցեալ զաւուրբք․ ուրախ եղև հայրն անստամն ը՟ բարեկրօն ք՟ղք՟ավարու՟ի քեռն իւրոյ և որոց ը՟ ձեռամբ ն՟ր․ և զօրացուցեալ զն՟ բանիւք մխիթարուե՟՝ փութացաւ դառնալ յանապատ իւր։ Ընդ ածին առնա դիւահար զոմն 'ի պալատինաց, զի բժշկեսցէ․ և ծերն չառնոյր յանձն, այլ ասէ ցնա․ աստ ոչ կարես բժշկիլ, այլ արի երթ յեգիպտոս, և անդ վճ՟գկի հասցէ քեզ ողորմութի՟ն ք՟ի․ և եղև այնպ՟․ որ և յայտնեցաւ սրբ՟յն 'ի տնէ ։ Ընդ և այլ յայտնութիք լինէին հօրն անտանի․ զի եղև նա կատարեալ հոգևտես․ ետես և զհոգի սրբ՟յ հօրն ամոնի՝ որ բնակէր 'ի լերինն նիտրիոյ՝ երեքտասան աւուրբք հեռի յանապատէն անտոնի, զի ելանէր յերկինս դասուք հրեշտակաց․ և պատմեաց աշակերտաց իւրոց․ որոց նշանակեալ զօրն՝ տեղեկացան յետոյ և գտին 'ի նմին աւուր լեալ զփոխումն ամոնի ։

Յաւուր միում մինչդեռ զիններ՟րդ ժամու աղօթսն մատուցանէր անտոնիոս, յափշտակեցան միտք իւր, ո՞չ թէ լուսազգեստ ոք վերացոյց զնա յօդս․ և տեսանէր խաւարային սևադէմ մարդիկ՝ որք ը՟առաջ եկեալ ոչ թոյլ

Թոյլ տային անտանի եղանել յերկինս 'ի վեր. և լուսաւոր այրն Է՟ղիմանայր նց, և մարտնչէր ը՟ օդային դևսն, և ասէր. զի՞նչ մեղք իցեն արդարոյդ՝ զի կամիք արգելուլ զդա. իսկ նոքա խորհէին 'ի համար բերել զգործս մանկութն նր :

Իսկ լուսազգեստ այրն ասէ ցնս. ա՛ծ եթող զտղայութն մեղս անտանի՝ յեղանել նր յծէ. և 'ի միաբնցութենն մեղս ինչ ոչ արար : Իսկ 'ի կրձատել նց զատամունս 'ի վր նր, սաստեաց նց հրեշտակն բանիւ ա՛ծ. յայնժամ սեաւքն ա՛մ ամօթալից լեալ՝ անկան յերկիր. և անտոն անարգել եղ յերկինս : Իսկ ապա դարձան միւսք իւր առ ինքն. և եկաց յողջս անտուեալ զաւուրս բզմս, և ասէր. աղօթեսցուք եղբարք, զի անարգել անցցուք ը՟ իշխանութի այսոցն օդականաց :

Դարձեալ յայլում ժամու 'ի հարցանել զնա եղբարցն յղգս վրձակի հոգւոց, եղև առնա ձայն. անտոնիէ ե՛լ և տես. և նոյնժամայն ելեալ 'ի սենեկէն, հայեցեալ ետես զայր մի սևադէմ՝ երկայն և չարատեսակ. մինչ զի հասանէր գլուխն յօդս վերին. և տեսանէր թռուցեալ բզմ մղիկս թևաւորս՝ որք վերանային յերկինս. բայց ահաւոր հսկայն ձգեալ զձեռն՝ տայր ձեռօքն 'ի վայր, և յերկիր ընկենոյր զբզմս. և ուրախանայր ընդ անկումն նց. և այլք վերաթռուցք լինէին, և անարգել յերկինս մտանէին. և կրճտէր զատամունս իւր 'ի վր նց: Իսկ անդէն եղև բարբառ. իմա զոր տեսանես անտոնիէ.

և

և բացեալ իմաստք մտաց նր , և գտաց՝ զի նք էին հոգիք մղկան . և երկայն սևադէմ այրն՝ սատանայ , որ ընկղմէր զհոգիս մեղաւորացն յանդունդս . իսկ արդարքն անխափան յերկինս մտանէին :

Զայս և զոր այլ ևս տեսիլս և յայտնութիւնս ըստ ժամուն պիտոյից պատմէր եղբարցն հայրն անտոն՝ բռնադատեալ 'ի նցէ , և հոգեխրատ բանիւք քաջալերեալ յորդորէր զնս 'ի փոյթ առաքինութե : Գային 'ի տես սրբոյն և 'ի լուր բանից նր նաև եպսկպսք և քհնյք և սարկաւագունք . և նա խոնարհութբ հայցէր զօրհնութի և զաղօթս նց . և արձակէր զնս շինեալս յոյժ յիւրմէ : Եկին երբեմն և ոմանք յարիանոսացն նենգանօք խօսել ընդ նմ . իսկ ծերոյն 'ի վր հասեալ անօրէն աղանդոյ մոլորութե քսամարտիցն՝ 'ի բաց հալածեաց զնս 'ի լեռնէ իւրմէ . այլ նոցա երթեալ համբաւեցին յաղեքսանդրիա , եթէ և անտոն ընդ մեզ խորհի :

Զայն լուեալ մեծին աթանասի հայրապետի տեղւոյն՝ բանիցս պատմողի , քանզի ընտանութի յոյժ ունէր ընդ անտոն , յղեաց առ նա և աղաչեաց գալ և յամօթ առնել զչարալեզուս . զնոյն աղաչէին և այլք յուղղափառ եպսկպսացն՝ գալ օգնել նոցա : Յայնժամ փութապէս էջ ծերն յաղեքսանդրիա յամի իբր 330 . և առաջի բազմութե հրապարակախօսեալ՝ գեղեցիկ քարոզեաց զորդին այ ած ճշմարիտ յայ ճշմարտէ , ծնունդ հօր հաւասար՝ համաբնակից և մշտնջենաւորակից .

իսկ

իսկ զօրս ամէնն զնա արարած, նզովեաց,
և զայլս ապականիչս անուանեաց. զի ոչ-
ինչ ընդհատ են առ նոքա՛ ՝ի հեթանոսաց,
որք ծառայեն արարածոց, և ոչ արարչի,
որ է ած օրհնեալ յաւիտեանս:

Նա եւ ուրախութի մեծ ամ ժողովրդեանն
ուղղափառաց, և հաստատութի ՝ի մէջ ձպհին
ճշմարտութե, տեսանելով զաղանդն չար
հերքեալ յայտնապէս յերանելւոյն, որ յա-
մենեցունց սուրբ եկեղեցւոյ ձանաչիւր: Նա եւ
ոչ միայն հաւատացեալքն զեղուին ՝ի վերայ
ծերոյն՝ խնդրել զօրհնութի նր, այլ և հեթա-
նոսք՝ որք ՝ի քաղաքին, կարդային զնա այր
այ, և ջանային գտնել ՝ի հանդերձս նր մերձե-
նալ: Ներքին առ նա և հիւանդս և ախտա-
ժէտս և դիւահարս. և բ մերձենալն ՝ի ցնցո-
տի զգեստս նր՝ ընկալան զառողջութի. որով
և յոլովք ՝ի կռապաշտից եկին ՝ի սբ հաւատ:
Նայլ ՝ի նեղել բազմութե զծերն՝ իբրև կա-
մէին ոմանք յաշակերտաց նորա հեռի առ-
նել զամբոխն, առ ծերն ժպտելով. միթէ
շատ իցէ այս ամբոխ բարեսիրաց՝ քան զբա-
նակս դիւաց որք պատէին զմեօք ՝ի լերինն:
Իսկ իբրև դարձաւ անտի յանապատ իւր,
եկին առ նա միանգամ և երկիցս ոմանք յի-
մաստնոց Յի՝ ՝ի հելլենացի իմաստասիրաց
անտի հեթանոսաց, և համարէին յաղթել
նմ բանիւք ճարտարութե իբրև անուսումն
առն. բայց այրն այ ածուսոյց գիտութբ իւ-
րով պապանձեցոյց զնս. մինչև յապուշ կրե-
թիլ նոցա ընդ հանճար սբյն. միանգամայն

և

և տեսեալ զնշանսն՝ զոր առնէր, զահի հա-
րան 'ի նմէ, և դարձան յետս՝ խոստովան
լինելով, եթէ առաւել տեսաք՝ քան զոր
լուեալն էաք :

Հասեալ էր համբաւ սրբութե մեծին անտո-
նի և յՇս հեռաւորս, և առաւել 'ի դուռն
կայսերին. վ՟յ նա ինքն բարեպաշտ ինքնա-
կալն կոստանդիանոս, և որդիք նր կոստաս
և կոստանդ՝ ստէպ գրէին առ նա թուղթ. և
աղաչէին՝ զի մխիթարեսցէ զնս պատասխա-
նագրովք, և եթէ հնար իցէ՝ նաև անձամբ
գալ առ նոսա (4) : Այլ նա խորշէր ամե
յընտանութե իշխանաց Ծի. մինչև հազիւ
հաւանեցուցանէին զնա աշակերտքն՝ առ-
նել պխնի թագաւորական թղթոցն. և նրն
խոնարհեալ յաղաչանս նոցա՝ գրեաց բանս
հոգեշահ խրատուց և յորդորանաց. զոր ըն-
կալեալ կոստանդիանոսի և որդւոց նր՝ ու-
րախ լինէին, և պատուէ համարէին անձանց
կոչիլ որդիս անտոնի :

Ուրախ լինէր և երանելին անտոն՝ տեսա-
նելով զտիեզերս ծաղկեալ ածպաշտութբ
առ բարեպաշտն կոստանդիանոսիւ. այլ տր-
եցոյց նմ զոր լինելոցն էր յաւուրս որդւոց
նր՝ 'ի զօրանալ արիանոսաց, և զայլ ևս չա-
րիս առ յուլիանոսիւ ուրացողիւ, և առ վա-
ղեսիւ. զի զայս ամ գուշակէր տեսանելն
ծերոյն՝ զի ջորիք մտանէին 'ի խորանս եկե-
ղեցւոյն, և աքացանելով կործանէին զսբ սե-
ղանն, և ցրուէին զամ ինչ. և լսէր ձայն 'ի
վերուստ, թէ 'ի գարշութե եղիցի սեղանն
իմ :

իմ. Ո՛վ որ բազում ողբովք պատմեաց ծերն աշակերտաց իւրոց. այլ անդրէն քաջալերեաց ևս զնա, եթէ ոչ յերկարեսցին այնպիսի աւուրք, այլ փութով գտցէ եկեղեցի զառաջին պայծառութի իւր:

Ո՛վ օրագլխի ուրումն եկեալ յարտաքին վանս անտոնի՝ հանդերձ դատաւորաւ և այլ ևս իշխանօք, առաքեաց առ ծերն, և աղաչեաց իջանել 'ի լեռնէն և գալ առ նա. որոյ եկեալ, և խրատ տուեալ փոքր մի՝ փութայր դառնալ 'ի սենեակ իւր. և իբրև ստիպէին զնա մնալ և ևս անդր, պնդի տայր անտոն. ո՛չ կարեմ անագանել առ ձեզ. զի որպէս ձկունք անագանեալք 'ի ցամաք երկրի մեռանին, նոյնպէս և միանձունք յերկար դեգերեալք ընդ աշխարհիկս՝ լուծանին յարտաքինս, և տկարանան հոգւով. վնկ որպէս ձուկն անդրէն 'ի ջուրն փութայ, նոյնպէս պա՛րտ է մեզ 'ի լեառն փութալ. զի մի՛ երբէք անագանեալ՝ մոռասցուք որ ինչ 'ի ներքս իցէ: Ո՛վ արմացաւ զօրավարն, և ասէ. արդարև ճշմարիտ ծառայ ես այ. զի ուստի՛ գտանի մարդոյ այսչափ և այսպիսի միտք, թէ ոչ սիրեցեալ իցէ յաստուծոյ: Իսկ այլ ոմն զօրագլուխ՝ կուսակից արիոսեանց որում անուն էր բաղակիոս, խրատեալ թղթով 'ի ձեռն հօրէն անտոնէ՝ դադարել 'ի հալածելոյ զուղղափառս, և անսաստ գտեալ, չարաչար մահու կորեաւ՝ 'ի գուշակելոյ ծերոյն. Եւ որ զարմացան և զահի հարան ամենայն լսօղք. և պատկառէին 'ի բանից առն այ,

ցեալ տապանակն սբյն, և գտին անդ զմարմինն կիս զոսկերս նր մեծամեծս՝ հանդերձ պարեգօտիւ միով. և փոխադրեցին յայլ տապանակ նոր՝ շինեալ յազնիւ փայտից։ Այլ զկնի դարու միոյ՝ փոխեցին յայլ տապանակ արծաթի. և ապա հանին 'ի դուրս զաջ սբյն, և ուրոյն պահեցին պատուով 'ի համբոյր հաւատացելոց. զոր և յետոյ պատեցին ոսկւով և ականմբք պատուականօք։

Արդ՝ 'ի հանդիսանալ յարգուէ նշխարաց սբ հօրն անտոնի, առաւելան օր ըստ օր և սքանչելիք նորա յառողջութիւն հոգւոց և մարմնոց։ Այլ առաւել նշանաւոր եղև սքանչելագործութիւն սբյն 'ի վր ախտացելոց զանբուժելի ախտն՝ կոչեցեալ տապ, կմ սրածուէ հրային, և կամ հուր սրբազան. որ փայլթ ճարակի 'ի մարդ և յանասուն, և խարշատեալ զմարմինն ողջոյն՝ տոչորէ և կիզու, մինչև յածուխ դարձուցանել. որ և բազում անգամ տարածեալ յարևմուտս՝ փարատեցաւ բարեխօսութբ սբյն անտոնի։ Քանզի նախ յամի տն 1080, և 1089. տարածեցաւ այս ախտ հրատօչոր 'ի փլանդրիա և 'ի լոթարինգիա, և առ սակաւ սակաւ կալաւ զբովանդակ Ֆն գաղղիացւոց. զբզմս խանձողեալ՝ 'ի գոյն սևուէ փոխէր իբրև ածուխ, և սպանանէր. և զբազմաց անդամս կծկեալ՝ հաշմ և անպիտանս կացուցանէր, կամ անդամաթափ և ծայրատեալ թողոյր. որոց վս լինէին հանդիսական պաղատանք յեկեղեցիս և արտաքոյ՝ 'ի թափոր ելանելով։ Դէպ եղև, զի 'ի կարդալ բազմաց յօգնութիւն զսբ հայրն անտոն, դիւրութ զգացին յախտէն, և ապաքինեցան. և օր յօրէ իբրև յայտնի եղև ամենապաստ սբյն, գունդագունդ դիմէին 'ի տաճար նորա՝ որ 'ի մոդա, և առ ժամայն բժշկէին. որով և մեծացաւ անուն սբյն յոյժ յոյժ յՖին գաղղիոյ. և անուն տեղւոյն մոդայի փոխեալ՝ կոչեցաւ սբ անտոն. և եղև ուխտատեղի հռչակաւոր. զի առ յամէ զեղուին անդր ախտաժէտք և վտանգեալք ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ, և գտանէին զդեղ դարմանոյ անձանց. ուստի եղև սովորութ բազմութ եկելոց ուխտաւորաց թափոր մեծ կազմել ամ ըստ ամէ յաւուր համբարձման տն 'ի պատիւ մեծին անտոնի. ուրանօր իշխան նահանգին այնորիկ և մեծամեծք վիեննայ քաղաքին բարձեալ տանէին 'ի վր ուսոց իւրեանց զտապանակ նշխարաց սբյն. այլ զայս պաշտօն յետոյ յինքեանս գրաւեցին առ ջերմեռանդութ իշխանք մեդիոլանու,

զի

զի Խիզեանք լինիցին բարձօղք գանձուն այնորիկ կամ անձամբ, կամ ՚ի ձեռն նոցա՝ զորս կարգէին ՚ի տեղի իւրեանց ։

Եմուտ և այլ սովորութ առ քերմեանցս մերս․ զի ամի ամի ՚ի նմին աւուր հանդիսի ցօղէին անխնայ գինեաւ զպատուական ոսկերս սրբոյն, և տային զայն ըմպել հիւանդաց և ախտացելոց ՚ի պէսպէս ցաւս, և օծանէին զվիրաւորս․ որով բազմաց շնորհեցաւ բժշկութ, մանաւանդ ըմբռնելոց ՚ի հրային ժանտախտէ․ զնոյն գեղ ՚ի կիր արկին գարուց ՚ի գարս՝ ՚ի փոքունց մինչև ՚ի մեծամեծս, նաև Թագաւորք անգամ․ և գտին զառողջութ ցաւոց իւրեանց․ մինչև առել Այմարոսի փականի՝ որ գրէր յամի Տն 1530․ * ՚Ի սմին իսկ տարւոջ՝ „յորում գրեցաք զբանս զայսոսիկ, զբազում ծանեաք „ըմբռնեալս նովին չարաչար ախտիւ․ և վկայ է Տծ, „զի ՚ի կարգալ յօգնութ զպաշտպանութ սրբոյն, և ՚ի լուանալ զանգիս վիրացն՝ կամ ՚ի ցօղել գինեաւ, որով ցօ„ղեալ էին նշխարք սրբ ոսկերացն, յառաջին առողջութ „անդր դարձան ||։ Եւ յաւելու գրել նոյն մատենագիր․ * Մարթ էր ինձ առաջի առնել յայտ վայ„րի զբազմապատիկ հրաշս՝ որք իբր անհաւատալի „կարծին, Թէպէտև տիրէ ստոյգ․ այլ չէ ժամու յեր„կարել զբանս, զի և մատեանն մեծ պետէր ՚ի սոյն․ և „ոչ իսկ կարծեմ Թէ բաւական ոք լինիցի ՚ի Թիւ ար„կանել զամ սքանչելիս նորա ||։ Սոյնպէս խօսին և այլք։

Եւ զի ձեռն արկին ոմանք տարապայման քերմեանդուք զնոյն գինի ցօղման նշխարաց անտոնի ՚ի կիր արկանել ՚ի նիւԹ բաժակի սրբ պտրգին, առեալ յանձանէին լուծանել գինւով զոսկերս սրբոյն։ Զայն իմացեալ Հռովմայ հայրապետին՝ Թէպէտև ոչ մերժեաց զգործն, բայց պատուիրեաց՝ զի մի ոք այլուր ունիցի իշխանութիւն զայն ցօղեալ գինի ՚ի կիր առնուլ վս պտրգի, բայց միայն ՚ի նմին եկեղեցւոջ՝ ուր հանգուցեալ էին նշխարք սրբոյն ՚ի վանսն՝ որ կոչի անտոնի աբբայի՝ մօտ ՚ի վիէննա գաղղիոյ։

Այլ ոչ բարերար գտաւ սրբ հայրն անտոն առ քերմեանդս իւր, նոյնպէս և վրէժխնդիր առ անարգուս․ զի որպէս գրէ բարոնիոս յամի․ 1089, որք միանգամ բանս ինչ անարգանաց կամ հայհոյութ ձգեցին ընդէմ սրբոյն կամ պատկերի նորա, ըմբռնեցան յայն ժանտախտ հրատոչոր կամ յայլ ծանր պատուհաս․ * Եւ այս եր-

„կու-

,, կիւրակէին Նշան (ասէ) առ ծոմին տեւէ մինչեւ ցայսօր ,
,, մինչ զի յառաջս եղեւ ասել . ոչ ոք անպարտ մեղանչէ
,, յանգուն || . և այսմ բազում օրինակս 'ի մէջ բերէ բոլ-
լանդ .

Մեծամեծս գրէ գնշանագործութեց մեծին անտոնի և երեւելի այրն յովհաննէս դերսոն՝ առեն ագպիր փարի-զեան . յառեն ախօսութեն իւրում՝ որ 'ի կատանդեան ժողովն . և առաւել հոգւոյ քան մարմնոյ բժիշկ երա-գահայս զնա լինել քարոզէ , յասելն . * Ո՞ բաւական
,, իցէ ասել , քանի՞ սքանչելեօք առ կենդանութբ , և
,, քանի՞ երախտեօք և նպաստիւք յետ մահուան փայ-
,, լեաց անտոնիոս . առաւելագոյն յայս սեպհական ձիրս
,, իւր , զի զհրակեզ տապն փարատէ 'ի մարմնոց՝ 'ի նշա-
,, նակ այնմ , զի երբ յօգնութե ոք զնա կարդայ , փարա-
,, տէ 'ի սրտէ նր զեւ'ս չարաչարագոյն տապ ցանկու-
,, թե մարմնոյ : Գոչեսցէ՛ ըմբռնեալն յայն տապ դժո-
,, խական . ով Տր անտոն օգնեա՛ ինձ || : Իսկ դարձեալ գրէ 'ի ճառն ՟Գ . 'ի ՟ԼԸ օՏ հօրն անտոնի . * Արժանահա-
,, ւատ է ասել , թէ Տրն անտոն առեալ իցէ յՏյ զայս
,, սեպհական շնորհս առողջացուցանելոյ զախտացեալս
,, 'ի մարմնատոչոր հրոյ՝ վս յաղթող գտանելոյ իւրոյ
,, ընդդէմ հոգեմարտ հրոյ անօրէն մարմնոյ || : Իսկ վս բազմութե սքանչելեաց Տրյն այսպէս ասէ յայլում ճա-ռի . * Զի՞նչ պէտք են մի առ մի յառաջ բերել . զի ոչ
,, եթէ նոր ինչ ունիմ ասել , ուր ծոմ Տի են քաջածա-
,, նօթք || : Յայտնի է և ասելն Տրյն թովմայի ակուէի-նացւոյ , թէ պահպանիչ է հայրն անտոնիոս 'ի բուն իսկ 'ի հրոյն դժոխոց , որոց կարդան առ նա բոլորով սրտիւ .

Արդ՝ ոՏ միաբանեին ասել երեւելի խուզարկուք , յա-ղագս այսպիսի առանձնական ձրից Տրյն անտոնի՝ իբրեւ ապաստարանի յերեւելի և յաներեւոյթ հրոյ , կմ 'ի բոցա-կէզ ախտից հոգւոյ և մարմնոյ , և ընդհանրապ բարե-խօս եղելոյ վս ազատելոյ յՏմ ազգէ ժանտախտից և հրկիզութեց , այլ առաւել 'ի նախաճառեալ ախտէն՝ զոր և հուր անտոնեան կոչեն , նկարի առ նովաւ հուր վա-ռեալ կմ բոց .

Յոր յաւելցուք և զպատճառն այլոց նշանակաց Տրյն . զի՞ր՝ գաւազան նկարի առ նմա , կամ յեցեալ 'ի վր ձե-ռամբ . 'ի նշանակ լինելոյ նր առաջնորդ միայնակեցաց . ոՏ և ծոմ հովիւք և աբբայք են գաւազանաւոր : Թող զի ՟Ը գրելոյ կասիանոսի՝ նախնի միայնակեացք առ-
վոր

վոր էին ցուպ 'ի ձեռին չըշել, ոչ միայն առ ծերութե,
այլ յաւէտ վն Է լերինս և Է անապատս ընթանալոյ՝
'ի նեցուկ ամրութե ։ Եւ յայս միտ գրի վն որյն անտո_
նի՝ 'ի վերս պօղոսի անապատականի ․ * յարուցեալ ե_
ս բանելի ալեօրն առնոյր ցուպ 'ի ձեռն, և յայն յե_
ցեալ՝ յուղի անկանէր || ։
Եւ զանգակն նկարեալ՝ է նշան արթնութե և զուարթ
հսկողութե, որ է կեանք կրօնաւորի ․ բայց ոմանք ասեն
և զայլ պատճառ ․ իբր զի՝ որպէս ունիմք պատմել 'ի
սորին, շինեալ էր 'ի գաղղիա հիւանդանոց մեծ վասն աղ_
քատ հիւանդաց, ուր առնէին ողորմութիւն յանուն
որյն անտոնի, և կոչէին զտեղին՝ անտոնեան տուն ․ և
որք կարգեալ էին 'ի ժողովել զտուրս ողորմութե, առ_
վոր էին զանգակ առաջի տանել 'ի նշանակ գալստեան
իւրեանց ․ ոմ և երբեմն կախեալ լինէր զանգակ զպա_
րանոցէ խոզին պարարելոյ 'ի պէտս աղքատացն այնո_
ցիկ յլինելոց հասարակաց ։ Եւ զի ոմանք նկարեն եկե_
ղեցի ինչ հանդերձ զանգակատամբ, ասի՝ թէ այն իցէ
նշան առաջնոյ անտոնեան տան, կմ եկեղեցւոյ և վա_
նից՝ որ շինեցաւ յանուն որյն 'ի գաղղիա ․ բայց յայտ
է թէ նոյն նշան դնի և առընթեր այլոց հիմնադրաց
վանաց կմ կրօնից ։
Իսկ այն՝ զի խոզ նկարի առ ոտամբ որյն անտոնի, ո_
մանք ասեն՝ թէ բժշկեալ իցէ նր երբեմն զխոզ հիւան_
դացին ։ Իսկ այլք, թէ այս նշան եդաւ 'ի ցուցանել,
թէ բարեխօսու որյն պահպանէ ած և զանասունս
անդամ 'ի յարկածից ․ ոմ առ 'ի մաղթել զայս օգնա_
կանութի՝ 'ի միաբանութիս ինչ անուցանեն զխոզ, զոր
անուանեն սրյն անտոնի ․ կամ թէ ասեն, թերևս նախ_
նիք նկարեալ իցեն զխոզ 'ի նշանակ գիճին, զոր կոխան
առից իւրոց արար սրն ։ Թող զի բաղումք յարևմտեայց
'ի պարանոցս խոզից կախէին զզանգակ զնշանակն որյն
անտոնի, 'ի հայցել և 'ի խոստովան լինել զպահպանութե
անասնոց 'ի ժանտախտից բարեխօսութե սրյն ։ Ոմ և
իցէ՝ այսպիսի նշանակք 'ի վերջին ժմս հնարեցան ․ զի
չեք նշմարանք նոցա 'ի բանս հին մատենագրաց ․ վն 'ի
դէպ է պէսպէս մեկնաբանել, ոմ առնեն բաղումք ։
(8) Ըստ հանրապէս խօսելով՝ ամ միայնակեացք և կրօ_
նաւորք որք Է տեղեաց՝ յերրորդ և 'ի չորրորդ դարէ
և այսր, աշակերտ ճանաչին որ հօրս մերոյ անտոնի
աբբայի՝ հարանց հօր ․ զի ամ կարգք և կրօնք միայնա_
կեցաց և միաբանակեցաց 'ի նմէ առին կամ զծագումն
և

որք բնակէին 'ի Նեղոս գետոյ մինչև 'ի Ներքին լեառն Սըբյն անտոնի՝ Է տարածուԹն իբր. երեսուն մղոնաչափ վայրի : Քննիչք դժուարին որոշել՝ Թէ ո՛ ոք իցէ այս պատմուԹիւս, որ և յոմանց պատմուԹիւս գրի․ զի են՝ որ ասեն լինել զհայրն պախումէոս, և են՝ որ զհայրն ափմէն՝ որ Թարգմանի հովիւ․ մե՛զ և առ լատինս պաս-տառ ասի․ բայց զի՞նչ՝ եԹէ ո՛չ իցէ յերկոցունց : Առաջոյ այսոցիկ՝ որք աբբայուն մեծին անտոնի յաջորդ-դրին, յիշատակին իբրև գլխաւորք յաշակերտս Նորա՝ հայրն իսահակ․ որ էր Թարգման Սըբյն, և հայրն պե-ղուսիանոս, և հայրն պօղ պարզամիտ, որ և աբբայ պօղոս ասի․ Է որս և Սըբն պափնուտիոս խոստովանող․ որ յետոյ եպս լեալ վերին Թեբայեցւոց՝ առաջինկայ գտաւ 'ի ժողովն Նիկիոյ :

Վս այլոց աշակերտաց մեծին անտոնի յառաջին անա-պատի նր և յայլ կողմանս եգիպտոսի՝ չէ մարԹ յան-ուանէ նշանակել․ միայն հռուփինոս Թուէ զոմանս 'ի գլխաւորաց այսպէս․ Աշակերտք անտոնի ասէ՝ ընդ եգիպտոս, և առաւել յանապատին Նիտրիոյ լերին, էին մակար և իսիդորէ, և միւս մակար, հերակլիտէս, և պամբոյ․ զորս անուանէ վէպս անապատի, և հարս միակեցական վարուց․ և յարէ․ * արք՝ որոց քաղաքա-

„ վարուն, և ընԹացք կենաց և գործոց, ո՛չ էր Է այլս

„ 'ի մդկանէ, այլ՝ Է վերին զուարԹուԹիւն || : Այլ այն երկոքին մեծանուն հարք՝ մակար և մակարիոս անուա-նեալք, մին աղեքսանդրացի կամ քաղաքացի կոչեցեալ, որ և մակար միայնակեաց, և միւսն եգիպտացի՝ կամ մեծն մակար ասացեալ, ոչ այնչափ ասին աշակերտեալ առ ոտս Սըբյն անտոնի, որչափ կենաց կցորդ նմին լեալ և ընտանի խօսակից և հետևող առաքինուԹեց նր․ բայց քանզի պարծանս համարէին անձանց՝ աշակերտս ան-տոնի կոչել, նմին իրի և յոմանց դասեցան 'ի կարգս աշակերտաց նր․ զոր ոչ ունեն այլք : Զի Թէպէտ են որ ջանան ցուցանել՝ Թէ նոյն ինքն ընկեր ամաԹասայ իցէ մին յերկուց այսի, և ընտրեն ասել՝ Թէ իցէ ա-ղեքսանդրացին․ բայց բոլլանդ պնդէ՝ Թէ այլ է այն յերկոցունց առտի․ որպէս և բնակուԹ իսկ նց հեռի էր 'ի վանաց Սըբյն անտոնի․ զի բնակէին 'ի կողմանս սկիտայ, և 'ի սահմանս լեռնոյ և 'ի սենեակս և 'ի լեառն Նիտրիոյ․ և անդ վախճանեցան, եգիպտացին՝ յամի 391․ և աղեքսանդրացին՝ յամի 404 : Իսկ ձեռասուն աշա-կերտն անտոնի՝ 'ի Թեբայիդ եկաց ( ուստի և վն որո-





ջերմոյ կոչի 'ի բուլղարաց՝ մակար (Թերմայեցի), նախ յաղ-թաքին վանս պիսակիայ, այժմ 'ի ներքսագոյն ըստան անուանի. և յետ նորա եղև առաջնորդ Եպիսկոպոս. և անդ վախճանեցաւ յամի Տեառն 370, կամ փոքր մի յետոյ։ Թող և զայլս 'ի հարց մակար անուանք։ Յիշումք և զայլ հարս՝ որք հատահակից էին անտոնի, և բարե-կամք նր՝ քան աշակերտք. որպէս հայրն Նիստերիոն մեծն, և մեծն Եսիսիոս, և Աստերիոնոս լիբէացի, ևն։ Նաև 'ի մէջ սկիտացւոց ծաղկեալն հայրն պիտր՝ 'ի մանկութեան աշակերտեալ էր մեծին անտոնի. որպէս և այլք բազումք։

Եղեն և այլ յոլով հարք արտաքոյ սահմանացն եգիպ-տոսի՝ բնակեալ 'ի պաղեստին և յերկրին ասորւոց և յարաբիա, որք զառաջինն աշակերտեցան նոյն անտո-նի. կամ առ ժամ մի առ նմ կացեալ՝ նախանձաւոր ե-ղեն առաքինութեց նր, և զնոյն ճանապարհ կալան և խնդրեանք, և այլոց ևս ուսուցին։ 'Ի մէջ սոցա անուա-նի եղև մեծն իլարիոն կմ հիլարիոն հարանց հայր. ո-րոյ լուեալ զանուն սրբութե անտոնի՝ որ հնչէր յամ տեղիս, գնաց առ նա (յամի Տեառն. 306). և ͞Է ամա-ներն զնա՝ փոխեաց զհանդերձս իւր, և կացեալ առ նմ իբրև ամիս երկուս՝ յանձն իւր ընկալեալ զբա-զմաքանչարութի նր. և դարձ արարեալ 'ի գաւառ իւր 'ի պաղեստին հանդերձ ոմամբք 'ի միանձնեկեցաց, եմուտ 'ի պաղեստին և 'ի յանապատ զկարգ միանձնեկեցութե, և զարգարեաց վանորեիւք։ Նոյնպէս և 'ի միջամասեայ սահ-մանս զայնու ժամօք սկսաւ ծաղկիլ կրօնաւորութիւն, որ ուրեք բնաւ չգոյր, և ուրեք կարի նուազ գտանիւր։ Եւ մեծն ևս բարսեղ կեսարացի՝ առաջնորդ կրօնաւո-րական կարգաց, և կանոնադիր միակեցական վարուց 'ի պոնտոս և 'ի գամիրս և 'ի միջամասեայ տեղիս ասիացւոց. զառաջինն յեգիպտոս սկիզբն արար կրօնաւորական կե-ցութեանց առ ոսս սրբիւրիոսի արքիմանդրիտայ. և ա-պա զնոյն կարգ եմուծ յասիա՝ զարդարելով և ծոխա-ցուցանելով. և նորին գործակից նր գրիգոր աստուա-ծաբանն՝ ͞Ը եւագրի պոնտացւոյ յեգիպտոս երթեալ. և անդ կենաց կցորդ լեալ նր միայնակեցաց՝ զհետ եղև նմանիլ քաղաքավարութե նոցա։

Իսկ 'ի հռոմ՝ առէ բուլանդ. առ ժմօք նոյն անտո-նի չև էր ծանուցեալ կարգ կրօնաւորութե. Թերևս սոյդ ևս իցէ առէ՝ խափանեալ կայր և իբրև 'ի մո-ռացօնս եղեալ 'ի դարս հալածանաց. ուստի ͞Ը գրե-

Լյ

լոյ հերձուածոյն 'ի վարս նոյն մարկեղեայ՝ վն նորուն իրացն անարգ. իմն թուէր և վատահամբաւ ։ Այլ 'ի վախճան նոյն չրդ դարուն եմոյծ զայն յիտալիա ոմն եւսեբիոս եպս վերկեղայ, որ քաջ մարզեալ էր 'ի նոյն՝ 'ի ճգնի աքսորանաց իւրոց յեգիպտոս ։ Մեծն օգոստինոս այնպէս ցուցանէ՝ թէ նախ քան զդարձ իւր և ոչ իսկ զանուն կրօնաւորի լուեալ էր յարեւմուտս. բայց յետոյ առ կենդանութբ իւրով եւեւս 'ի հռովմ զմիայնակեացս ըն ձևոյ արեւելեայց. և ինքն գլխովին եղև առաջնորդ և կանոնադիր առանձին կարգի կրօնաւորաց՝ նախանձաւոր լինելով հրեշտակակրօն ընթացից նոյն անտոնի և հետեւողաց նր ։ Եւ այնպէս առ սակաւ սակաւ տարածեցաւ ը ամ եւրոպէ և յափրիկէ կրօնաւորութիւն, սկիզբն առեալ յօրինակէ մեծին անտոնի և հարազատ աշակերտաց նր, միանգամայն և 'ի վարուց նորին վերծանուէ. (տես զոր գրէ նա ինքն օգոստինոս 'ի գիրս խոստովանութե. ը. 6 = 12) ։ Վոյ առանց ը բանս ինչ ածելոյ առէ սաստիւ բոլլանդ. * Յայտ ,, ամե քաջայայտ է, թէ տիրապէս նախահայր սուր ,, որն անտոնիոս եղև միանձանց, որք ծաղկեցան ,, յարեւելս և յարեւմուտս ||:

Միայն անաչառ խօսելով՝ եթէ գիտէր բոլլանդ, թէ 'ի սկզբան անդ միայնակեցուե նոյն անտոնի՝ ծաղկեցաւ հայաստան ծ կրօնաւորական կարգօք յառաջնորդուէ երից երանեալ որ լուսաւորչին, գործակցուբ որ միայնակեցաց կեսարացւոց անտոնի և կրօնիդեայ. կարող էր յաւելուլ՝ թէ հայաստանեայք միայն 'ի նմե ուսան զկրօնաւորութի, յորմէ և զքնական հաւատս ։ Բայց և այն ճշմարիտ է, թէ 'ի նորոգել մեծին ներսէսի զկարգ միանձնութե յծխս հայոց՝ ըստ օրինակին բարսղի 'ի պոնտոս, անշուշտ ընկալեալ է զբազում օրինակ բարեկարգուէ 'ի հարց եգիպտացւոց աշակերտելոց կարգին անտոնի. ով և արդի հիմնադրուե մերումս որդեգրական կրօնի՝ թէպէտև 'ի վըն լուսաւորչադիր վանական կարգի է հաստատեալ 'ի բարեյիշատակ հօրէն մերմէ մեծէն մխիթարայ վէպօք սեբաստացւոյ, բայց 'ի սակս նորոգայարդար բարեզարդուէ զանուե կրէ սոյն անտոնի աբբայի. յորմէ և առաջնորդն մեր աբբայհայր ձայնի. և նշանակ միաբանուես սեահոկան՝ է խաչանիշ գրոշմ՝ յայտարար աշակերտուե մեծին անտոնի, եռամթե պաւազանաւն, հրով, զանգակաւ, և աւետարանաւ, հանդերձ խորհրդաւոր սա-

ռիւք, որք բացատրին՝ Ուրբէֆիր Կոռսէն, Վէգ Աղպա-խարուսէ, ըստ նպատակի պաշտաման մերոյ. զորմէ չէ տեղ-ւոյս ճառել:

Մնայ մեզ յիշել և զայլ կարգս կրօնաւորաց, որք յան-ուանէ կոչին Անտոնեան, կամ որոշագոյն դաւանին զան-ձինս աշակերտեալս մեծին Անտոնի: Նախ զառաջինն՝ յայտ է 'ի կանխասացեալ տեղեկութեց, թէ 'ի սահմանս Եգիպտոսի՝ գրեթէ համօրէն բազմութիւք միայնակեցաց և միաբանակեցաց 'ի նմին իսկ 'ի սբյն Անտոնէ ունելով զբարեձևութի կրօնաւորութե, անխտիր կարող էին կո-չիլ Անտոնեան. այլ չեղև սովորութի. զի շատանային արգեամբք պահել զխրատս և զկանոնս նր, քան զանուննս կրել. միայն բնակեալքն 'ի բուն լեառն սբյն Անտոնի, և 'ի վանս նր՝ որ 'ի պիսպիռ, հարկաւ յանուանէ տեղ-ւոյն Անտոնեան ճանաչէին և ճանաչին ցարդ ևս. զի յետ նուազելոյ իսկ առաջին երջանիկ պայծառազարդութե վանորէից Եգիպտոսի և միայնանոցաց սկիտոյ, դեռ յոտին կայ ըստ տանելոյ այժմու վիճակի ըստ տրութե օ-տարաց՝ նոյն այն վանք պիսպիռեան՝ վանք սբյն Անտո-նի, առեալ 'ի մէջ բարձր պարսպի յերկուց տապանա-կաւորաց. մինչ զի չունի և դուռն կամ այլ ինչ մուտս, այլ՝ կառանօք ելանեն և իջանեն աբեղայք վանիցն (որ են ղփտիք). նոյնպէս և զնմ պէտս իւրեանց ընուն 'ի զամբիւղս, և խաղացուցանեն լարիւ, մինչև և զանա-սունս անգամ: Թող և զայլ վանորայս 'ի կողմանսն յայ-նոսիկ, և 'ի լիբանան, որպէս և յեթեովպիա, ըստ կանո-նաւ սբյն Անտոնի կամ բարսղի.

Իսկ յարևմուտս սկիզբն եղև առանձին Անտոնեան կար-գի՝ յետ փոխադրութե մարմնոյ սբյն Անտոնի 'ի գաղ-ղիա. զի բաց 'ի բենեդիկտեան կրօնաւորաց անտի՝ առ որս պահեցաւ մարմին սբյն ըստ նախագրելոցս, յորմէ և վանքն և վանականքն առին զանուն Անտոնի, պատմի՝ թէ 'ի նմին նահանգի վիեննայու գաղղիացւոց՝ յամի տն իբր 1095. այր ոմն ազնուական և բարեպաշտ՝ գաս-տոն անուն, ըմբռնեալ յանբուժելի հիւանդութե՝ ե-գիտ զառողջութի 'ի ձեռն սբ հօրն Անտոնի. յետ այսո-րիկ հիւանդացաւ և որդի նր՝ որ կոչիւր գիրոնդոս կամ գիրիոնոս, մինչև 'ի մահ. յայնժամ գաստոն ուխտեաց սբյն Անտոնի, զի թէ բժշկեսցէ զորդի իւր, երկոքին ևս զնմ աւուրս իւրեանց պարապեսցին հոգևոր գոր-ծոյ իմիք 'ի պատիւ նորին սբյ, և զնմ ինչ իւրեանց ծախեսցեն 'ի ծառայութի նորա:

Յայն-

Յայնժամ 'ի տեսլեան գիշերոյ երեւեցաւ դատաւորին ծեր
հայրն անտոնիոս ալեւոր հասակաւ եւ ցուպ 'ի ձեռին .
եւ հայրաբար խրատելով ասէ ցնա . զի՞ է՝ զի ցանկայք
հնոյ մարմնաւոր առողջութե, քան եղանել 'ի մարմնոյ՝
եւ մատնել առ ած . այլ զի ընդունելի եղեն իմ աղօթք
քո, ահա պարգեւեաց նաեւ որդւոյ քում զառողջութի .
եւ արդ՝ 'ի միս աւելք զոյ երախտին, եւ հետեւիմ լե-
րուք 'ի ծառայութենդ : Եւ ես զուխտն՝ զոր ուխտեցեր
առ իս, ընկալայ, եւ ընդունիմ զձեզ իմձ յորդիս . այլ
կամիմ՝ զի շինեսջիք տուն ողորմութե վն աղքատ հի-
ւանդաց, եւ ժողովեսջիք անդր եւ դարմանեսջիք զան-
տերունչ ցաւոտս, եւ զմբռնեալս 'ի հրակէզ ժանտ-
տխտէ . ձեզ յանձն առնեմ զտառապեալսն, զի մի եւս
արտաքոյ ազանիցին, այլ 'ի տան իմում . եւ ձեզ աներկ-
բայ բացցի դուռն երկնից, եւ գանձեսջիք ձեզ գանձս
յերկինս :

Իսկ դատաւորն ուրախութբ ընկալաւ զպատուէր սրբոյն .
այլ վարանէր 'ի միտս՝ եթէ ուստի՞ ունիցի դարմանել
զայնչափ բազմութի հիւանդաց : Յայնժամ կարկառեալ
սրբոյն զգաւազանն՝ զոր 'ի ձեռին ունէր 'ի ձեւ թաւ նշ-
անի կամ եռաթեւ խաչի, T, ետ դատաւորին, եւ ասէ .
ա՛ռ եւ անկեա՛ զսա 'ի գետնի : Եւ իբրեւ արար զայն,
եւսա վաղվաղկի արմատացեալ եւ ոստս արձակեալ զբազում
վայրօք՝ ծաղկալից եւ պտղաւէտ յոյժ . ընդ որոյ հովա-
նեաւ հանգչէին անթիւ բազմութիւնք աղքատաց, եւ կե-
րակրէին 'ի պտղոյ նր . եւ երեւէր յերկնից 'ի վերուստ
աջ լուսաւորաչի՝ որ տայր զօրհնութի : Ապա ասէ սրբն
անտոն ցդատաւորն . ահա այսպէս բարգաւաճեսցի գործ
ողորմութե քո օրհնութբ բարձրելոյն . միայն զայս պատ-
ուէրեմ, զի ունիցիս զսէրն քն առ աղքատս, եւ 'ի սոյն
պարապեսցիս դու եւ ամ հետեւողք քո ը քեզ՝ նուէր-
եալքն իմձ յորդիութե : Եւ նոյնժամայն զարթեաւ դատ-
աւոր 'ի քնոյ . եւ եգիտ զորդին իւր զգիւրոնդու բորո-
վեն ողջացեալ :

Այնուհետեւ անյապաղ ձեռն 'ի գործ արկեալ երկո-
ցունց նոցա՝ միաբանեցան ը հոգեւորին գեսպերիոսի,
յորոյ 'ի ձեռս էր տապանակ նշխարաց մեծին անտոնի,
եւ եռան շինել զհիւանդանոց աղքատաց կմ զտուն ո-
ղորմութե անտէրունչ հիւանդաց : Յայնժամ յարեցան 'ի
նա 'ի գործակցութի եւ այլք 'ի բարեպաշտից, կրելով 'ի
հանգերձս իւրեանց զնախատացեալ նշանն եռաթեւ խաչ-
ին՝ հանդերձ տառէրագրութբ նոյն անուան : Եւ այն-

պէս կարգեցաւ միաբանութիւն ինչ ջսասէր եղբարց յաշխարհական կարգէ՝ կոչեցեալ անտոնեան. և օր քան զօր յառաջացեալ՝ եղև վանք միաբանակեցաց 'ի կարգէ սրբոյն անտոնի աբբայի՝ ընդ կանոնաւ սրբոյն օգոստինոսի, ունելով և զպաշտօն սպասաւորելոյ նշխարաց սրբոյն անտոնի. որոց գլխաւորն՝ 'ի սկզբան անդ կոչիւր վերատեսուչ. այլ յետ երկերիւր ամաց՝ յամի տն 1297. առաջնորդ նշ, որում անուն էր ստեփաննոս այմոն. եառ և զպատիւ աբբայութեան՝ կոնդակաւ վոնիփակիոսի ութերորդի հռովմայ հայրապետի, կարգեալ մեծաւոր վանաց սրբոյն անտոնի աբբայի՝ որ ցայն վայր էր 'ի ձեռս բենեդիկտեանց: Այս եղև 'ի գաղղիա. և ապա տարածեցաւ նոյն կարգ սրբոյն անտոնի աբբայի յայլ ևս կողմանս արևմտից. յորս շինեցան վանորայք նոյն միաբանութեան, որպ և 'ի մեծն հռովմ:





# ԿԵԱՆՔ

## և քաղաքավարութիւն սրբոյն Թէոդոսի կայսեր մեծի :

Ծն. յունուարի 18 : Տէր եղեւ . յունու. 19 : Թագաւորեաց 'ի հռովմայեցւոց յունուարի . 17 : Ամէն ամենեցուն յաղթանակաւն Թէոդոսի : Ամուսնաց . գերս . Է . 4լ . 2 . մեռաւ 'ի 26 : Ամուսինն . Է . 4 = 29 : Թէոդորոս . Է . 5 = 25 : Հայրապետն : Թէոդոսեանց : Աղեքսանդրոս . և այլք : Պատմագիրք հայոց : Բարսեղ յամի. 379 = 395 : Բնակաւորն . ԺԶ : Ճառընտ . Բն . նշխս . 22Է . 'ի հայերենն պատմութե : (1)



ՔՐԻՍՏՈՍԱՊԱՇՏ ԱՐքայն Թէոդոս՝ որ լսի 'ի մեզ մեծաւոր, որպէս յոյժ արժեալ 'ի շինութիւն եկեղեցւոյ և 'ի հաստատութիւն ուղղափառութեան իբրև երկրորդ կոստանդիանոս, եր ազգաւ և ծնաւ սպանիացի՝ յիտալիկայ քղքէ, որդի առն պատուականի Թէոդոս անուամբ կոչեցելոյ (2). զինուորեալ 'ի դուռն կայսեր, և յառաջադէմ գտեալ յամի. մինչև ընտրեցաւ ստրատելատ՝ այն է զօրավար, յաւուրս կայսերացն վաղեսի և վաղենտիանոսի. և արար մեծամեծ քաջութիւնս յայլևայլ տեղիս՝ նմին յաջո-



ղե-

զեղով. զի էր այր բարեպաշտ և երկիւղած յԱյ, արդարակորով, և զօրաւոր զօրուԹ: Սա յաւուրս զօրավարուԹ իւրոյ՝ Թէպէտ և երկիցս առաքեցաւ զօրօք 'ի վր Հայոց տէրն ընդդէմ արշակայ արքայի վատարանջելոյ 'ի կայսերաց, այլ խոնարհեալ յաղաչանս մեծին ներսեսի 'որ Հայրապետին մերոյ՝ մրդասիրուԹ և խաղաղուԹ վճարեաց զնոսա առանց հեղլոյ զարիւն ուրուք: Իսկ յերկրորդում նուագի՝ յորժամ էառ պատանդս 'ի Հայոց, յորդորեաց և զմեծն ներսէս գալ ընդ իւր 'ի կոստանդնուպօլիս՝ առ 'ի հաշտ առնել զերեսս վաղեսի. բայց ելք իրացն ձախողակի պատահեցին. զի վաղէս արիոսեան գոլով և Թշնամի Հայոց, աքսորասահման արար զնա

Հայրապետն, յամի Տն 378:

Բայց 'ի մեռանել վաղեսի յետ ոչ բազմաց չարաչար օրհասիւ, տիրեաց բաժանորդակ կայսերուԹ արեւմտից և արևելից որդի եղբօր նր վաղենտիանոսի բարեպաշտն գրատիանոս, դաշնակից ունելով զեղբայր իւր զփոքրն վաղենտիանոս մանուկ. և առ սոքօք՝ եւս քան զևս երևելի լինէր քաջ զօրավարն Թէոդոս Հիսպանացի գործովք յաղթութեանս և 'ի մեծամեծս պատերազմի. մինչ զի ընդ յաւագանւոյն նախանձաբեկ լինէին ընդ յաջողուԹեան նր, և խռովէին ընդ նմ. վասն որոյ եւ առաքինի զօրավարն առ ժամ մի յերկիր իւր 'ի սպանիա. զի մի ազմուկ լինիցի 'ի պատճառս իւր, կամ դաւ ինչ գործեսցի նմա:

Յաւուրսն յայնոսիկ զօրացեալ էին գունդք

ծի գոթացիք (3), և այլ բարբարոսք թշնամիք Հռովմայեցւոց 'ի կողմանս Թրակիոյ, և յոլով վնասս գործէին՝ աւերածով և կոտորածով և գերութե͞. յորոց նեղեալ Գրատիանոսի՝ խորհեցաւ զօր ընտիր արձակել 'ի վ͞ր ն͞ց. այլ չգտեալ զոք ընտիր զօրագլուխ, ասէ. այս գործ քաջին Թէոդոսի է. նա միայն կարող է նուաճել զթշնամիս. նմին իսկ կոչեաց զնա պատուով, և տուեալ 'ի ձեռս ն͞ր զիմ͞ իշխանութի͞ ը͞հանուր սպարապետութե͞՝ արձակեաց 'ի վ͞ր բարբարոսաց: Յայնժամ դիմեալ Թէոդոսի՝ եհար և խորտակեաց զիմ͞ զօրութի͞ թշնամեաց, և ահի̂ տագնապեցոյց զբանակնոցս, մինչև կոտորել զմիմեանս. և դարձ արարեալ յաղթութ͞ մեծաւ՝ փութացաւ անձամբ յողջոյն ինքնակալին քան զչու բանակին, և պատմեր նմ͞ զյաջողութ͞ պ͞տրզմին՝ որ եղև 'ի նմէ:

Իսկ մախացող բանսարկուքն սկսան ասել ցթ͞գրն. ոչ ապաքէն այդ. յանկարծ եկեալ Թէոդոսի յայտ առնէ, եթէ փախուցեալ է ն͞ր յերեսաց թշնամեաց: Իսկ Գրատիանոս թէպէտ և ոչ լինէր ունկնդիր չարախօսաց, բայց երկուանայր ընդ իրսն, եթէ զիարդ փութով մարթացաւ նա 'ի գլուխ տանել զայնպիսի յաղթութ͞: Յայնժամ Թէոդոս ետ առաքել զնոսին իսկ զչարախօսս հանդերձ հաւատարիմ արամբք՝ առնուլ զհամար թշնամեաց անկելոց 'ի պ͞տրզմի, և տեսանել զաւարն՝ զոր ժողովեալ էր արքունի զօրուն:

Եւ իբրև նոքա գնացին, 'ի նոյն աւուր տե-սանէր Թէոդոս սպարապետն 'ի տեսիլ երա-զոյ, զի երանելին Մելիտոս Անտիոքայ հայ-րապետն՝ որ տակաւին կենդանին էր, բայց անծանօթ նմին երևեալ, արկանէր զնովաւ քղամիդ արքունի, և դնէր 'ի գլուխ նորա պսակ կայսերական։ Եւ յորժամ պատմեաց զայն իւրոց ծանօթից, միաբան ասէին, աստուածային է տեսիլդ, և մնայ քեզ թագաւորել 'ի մօտոյ. բայց ինքն Թէոդոս չառնէր ինչ փոյթ թագաւորութեան, զի չէր 'ի խնդիր անցաւոր մե-ծութեան։ (4)

Եւ եղև իբրև դարձան՝ որք առաքեցանն, և պատմեցին՝ եթէ հաղթաւորք անկեալ են 'ի թշնամեաց, և ահ Թէոդոսի պաշարեալ է զամենայն ազգ բարբարոսաց, ուրախ եղև յոյժ Գրա-տիանոս։ Եւ զի ինքն անբաւական զանձն տեսա-նէր 'ի տնտեսել զընդարձակատարած իշխա-նութիւն համօրէն կայսերութեան, թագաւորեցոյց 'ի վերայ արևելից զնա ինքն զԹէոդոս սպարա-պետն՝ մինչդեռ էր 'ի կողմանս Սիրմիոյ քաղաքի Իլլիրիկեցւոց, և անուանեաց զնա կայսր 'ի տեղի Վաղեսի՝ յամի տն. 379։

Նա յայնուհետև բարեպաշտն Թէոդոս՝ փոյթ կալաւ նախ քան զամենայն հաւանութեամբ Գրատիա-նոսի յետս դարձուցանել զամենայն ուղղափառ եպիսկոպոսս աքսորեալս 'ի Վաղեսէ. որս և զմեծն Ներսէս. զոր բերեալ 'ի թագաւորական քաղաքն 'ի Կոստանդնուպօլիս՝ ունէր 'ի պատ-ուի. ընդ և առ ամենայն հովիւս եկեղեցւոյ սէր և հպատակութիւն մեծ ցուցանէր, ունելով

զնա

զնոյն առ եւտեղակալս իւր, եւ զանձն իւր ծնո֊նց ։ Բայց նեղեալ վտանգայր յայտ է պատակտումն եկեղեցեաց յերեսաց բազմագլխի հերձուածոց ծիլկին, ատտեղային յարիանոսաց. եւ խորհէր հնարս ուղղութեան եւ բարեկարգութեան ։

Այս յառաջնում ամի անդ Թէոդոսի իւրոյ յաղթութեան մեծ տարածեալ էր դէմ սկիւթացւոց՝ իբրեւ դարձ առնէր 'ի կոստանդնուպօլիս, հասեալ 'ի Թեսաղոնիկէ քղք մակեդոնիոյ՝ հիւանդացաւ անդ յամի . 380 . եւ տեսեալ զանձինս վտանգ՝ կոչեաց փութանակի զուղղափառ եպս քաղաքին, որում անուն էր աքոլիոս կամ ասքողիոս՝ այր երեւելի 'ի կեսարիոյ կապադովկացւոց եւ ծանօթ մեծին բարսղի. եւ խնդրեաց 'ի նմէ զսբ մկրտութին, զոր չեւ էր ցայնժամ ընկալեալ իւր դժպատեհ առիթուն բազմաց 'ի ծիլկին, զի 'ի վերջին աւուրս ձգէին զդեղն փրկութե ։ Այլ իբրեւ մկրտեցաւ, ոչ յետ բզմ աւուրց առայցաւ զկատարեալ առողջութի. եւ գրեաց անդէն հրովարտակ ընդ ամ տրութի իւր, զի նիկիական հաւատք քարոզեսցի յամ տեղիս, եւ նք միայն ուղղափառ կոչեսցին՝ որք զնոյն ունին հաւս. իսկ օտարացեալքն 'ի նմէ՝ հերետիկոս ձայնեսցին, եւ մի անուանեսցին եկեղեցի ։

Յետ այսորիկ դարձ արար 'ի Թգրեալ քաղաքն. ուր էր առաջ ելեալ արտաքոյ քղքին՝ ընկալաւ զնա փառօք սբն գրիգոր ածաբան, որ այն ինչ ընտրեալ էր յաթոռ պատրիար֊

գութե

ղովն կոստանդնուպօլսոյ 'ի մի ուղղափա-
ռաց դաւան. և նմանօրէն Թգրն մեծապէս
պատիւ ցուցեալ սրբոյ հայրապետին՝ խորհր-
դով նորին ձեռն եարկ մաքրել զեկեղեցիս յարիա-
նոսաց, վերստին հրամանս հանեալ, զի որք
բնակեալ կային 'ի Թգրեալ քաղաքի, զնիկիայն
կալցին հաւատս. ապա թէ ոչ՝ 'ի բաց մերժես-
ցին. յայնժամ ելեալ գնացին բոլորք՝ հան-
դերձ եպիսկոպոսք, որոց կալեալ էր զեկեղեցիս
'ի քառասուն ամաց հետէ արիոսի աղանդով.
և 'ի տեղի նոցա կարգեցան ուղղափառք: Նաև
մն ամի այսորիկ բոլոր փառօք կոչեցին յա-
րինանաց Թէոդոս Թգրն և Գրիգոր ածա-
բանն. և սահմանեցին մնացին ևս 'ի քաղաքին
բազմք 'ի հոգեմարտից համախոհիցն մակե-
դոնի. նոյնպէս և եւնոմեանք և ապողինա-
րիք. վասնզի խորհեցաւ բարեպաշտ կայսրն
ժողով մեծ առնել եպսաց, և ձգել զմո-
լորեալս 'ի ճշմարտութեան ճնհ. միանգա-
մայն ցանկայր 'ի ձեռն ժողովոյ դադարեցու-
ցանել զվէճս, որ 'ի մէջ հոգւոց վն Թե-
միջ և աշխարհականաց. ԵՒս առաւել վն աթո-
ռոյն կոստանդնուպօլսոյ, ուր մեծել էր
ոմանց զմաքսիմոս ոմն անարժան՝ 'ի տեղի
ածաբանին:

Սոյն այսմ ամի եղև սբ ժողովն կոստանդնու-
պօլսոյ 'ի հարիւր և յիսուն հայրապետաց՝
յամի տն 381. յորս երևելի էր սբն մելե-
տիոս հայրապետն անտիոքայ: Նա 'ի սկզբան-
անդ՝ 'ի ժողովիլ եպսաց, և 'ի դալ զատա-
ջինն 'ի պալատն արքունի յողջոյն լինէր

կա

կալի, պատուհիրեաց արքայ՝ զի մի ոք յայտա-
նեացէ նմա, թէ ո՞ է 'ի նմ մելիտոս անուն
պատրիարգ անտիոքայ. զի եւ ինքնին թե-
րեւս ծանեայց ասէ զնա. վ՜ն զի հնիդ յու-
շի ունէր՝ զոր ետեսն 'ի տեսլեան յռ՜ջ քան
զԹ՜դրել իւր ։ Իսկ իբրեւ հայեցաւ շուրջ զա-
մենեքումբք, իսկ եւ իսկ ծանեաւ զերանե-
լին զմելիտոս 'ի կերպարանաց անտի ն՜ր՝ յար
եւ նմանն տեսլեանն. եւ նոյնժամայն ընթա-
ցեալ ը՜ռաջ՝ անկաւ զպարանոցաւ հայրա-
պետին, եւ համբուրէր անյագ փափաքմամբ
զաջ ն՜ր ս՜ր, եւ զլանջս եւ զաչս. եւ պատմէր
նմ, եթէ ո՞րպ ետես զնա յառաջագոյն տես-
լեամբ; եւ պսակեցաւ 'ի ձեռաց նորա ։ Իսկ
իբրեւ սկիզբն եղեւ ժողովոյն, հի՜անդացաւ
երանելին մելիտոս՝ որ էր այր ծեր, եւ փո-
խեցաւ առ ա՜ծ. զոր եւ արձանական ճառի՜
ներբողեցին յատենի անդ ոմանք 'ի հարց ։
Արդ՝ յայս ժողովն հաստատեցաւ նիկիական
հաւատք, եւ հերքեցաւ մոլորութի՜ մակեդո-
նեանց հոգեմարտից. մերժեցաւ յաթոռոյն
կոստանդնուպօլսոյ մաքսիմոս աղեքսանդ-
րացի՝ հետեւօղ շնական ասացեալ աղանդոյ
փիլիսոփայից. եւ 'ի հրաժարել յայնմ պատ-
ուոյ նաեւ ա՜ծաբանին գրիգորի վ՜ն յաշաղ-
կոտաց ոմանց, կարգեցաւ պատրիարգ տեղ-
ւոյն նեքտարիոս կոստանդնուպօլսեցի. եւ
ուրախ եղեւ մեծն Թէոդոս ընդ կատարումն
կարեւոր ժողովոյն, եւ արձակեաց պատուով
զհայրս յիւրաքանչիւր տեղիս, ընդ որս եւ
զմ՜ն ներսէս 'ի հայս ։

Յետ

Զհետ այսորիկ դարձեալ ոչ դադարէր բարե-
պաշտ արքայն 'ի ձեռն առանձին ժողովոց
հնարս հնարել մի՛ շահելոյ զեպիսկոպոսունս պա-
ռակտեալս յեկեղեցւոյ ուղղափառաց՝ տա-
լով քննել զիւրոյ միոյ զդաւանութիւն ձեռա-
գրով իւրաքանչիւրոց, եւ առեալ աղօթս ա-
ներով առ Աստուած մի՛ կարգաւորութեան եկեղեցւոյ.
որով շահեցաւ իսկ զբազումս, եւ զայլսն յամա-
ռեալս եւ 'ի բաց որոշել, զի մի՛ գտանիցին
գայլք 'ի մէջ քրիստոնէական հօտին. Ընդ որս եւ զա-
նօրէնն Եւնոմիոս հերձուածողապետ պատա-
սահմանեաց 'ի մեկուսի. որ յաքսորանսն անդ
վճարեցաւ 'ի կենաց։ Իսկ զայսմանիկ՝ որք
Ջատագովն էին ուղղափառութեան, մեծամեծ պե-
րով պատուէր, եւ զվախճանեալսն 'ի խոստո-
վանութեան հաւատոյ՝ արժանաւոր կարգօք մե-
ծարէր։ Նա մինչ 'ի նմին ժամի եւս բերել
յԱնկիւրիոյ 'ի Կոստանդնուպօլիս զմար-
մին սրբոյն Պօղոսի խոստովանողի, որ աքսո-
րեալն էր 'ի Կոկիսոն քաղաքն Հայոց, եւ նա-
հատակեալ առ Կոստանդեաւ արքայիւ յա-
րիանոսաց. զոր մեծաշուք փառօք ընկալեալ
հանգոյց 'ի վկայարանի, որ յանուն նորա
կոչեցաւ։

Յայնու ժամու յամի Տեառն 383, ինքնակալն
Թէոդոս ըստ օրինի թագաւորաց զահակից իւր ա-
րար զերէց որդին զԱրկադէոս, որ էր յայն-
ժամ իբր վեց ամաց. այլ կամեցեալ քաջ
մարզել զնա 'ի բարեպաշտութեան եւ յիմաս-
տութեան խնդրեաց 'ի Գրատիանոսէ Հռովմայ
արքայէն առաքել նմա իմաստուն զոք՝ դաս-

տիա-

տիարակ որդւոց իւրում. և նա 'ի ձեռն Դա-
մասոսի պապին ընտրեալ յղեաց զԱրսե-
նիոս սարկաւագ եկեղեցւոյն Հռոմայեցւոց
( այն՝ որ յառաջն էր իշխան փառաւոր, և յե-
տոյ եղև անապատական սքանչելի, կոչե-
ցեալ Հայրն Արսէն ) : Երդ՝ սմա յանձն ա-
րար Թէոդոս զորդի իւր՝ ասելով, այսուհե-
տև դու ես զօրս հայր՝ քան ես : Իսկ եղև 'ի
միում յաւուրց եկեալ Թէոդոսի 'ի տես դաս-
տիարակութեան որդւոյն, ետես՝ զի Արսէն յո-
տին կայր, և մանուկն Արկադ. զարդարեալ
արքունի սպասկաւ՝ բազմեալ էր շքով և այնպէս
դաս առնոյր : Զայրացաւ հայրն, և ասէ.
զի՞ է՝ զի աշակերտն նստի, և վարդապետն յոտին
կայ : Իսկ Արսէն առնէր պատասխանի. մի ինչ դժ-
ուարեսցի տէր իմ արքայ. զի անմարթ էր ինձ
նստել և այնպէս ուսուցանել զորդի ինքնա-
կալի՝ զաթոռակից Հօր իւրոյ : Յայնժամ
ձգեալ Թէոդոսի զձեռն՝ 'ի բաց խլեաց զպը-
սակն 'ի գլխոյ Արկադեայ, և հրամայեաց
նմա բացաւ գլխով կալ առաջի ուսուցչին. և
զԱրսէն բռնադատեալ նստոյց յաթոռ. մի
զի ասէ՝ յայնժամ արժանի լինի ինքնակա-
լութեան որդին իմ, եթէ զոյգ ընդ իմաստից գի-
տութեան կրթեսցի և 'ի վարս աստուածպաշտութեան և
յընտիր քաղաքավարութեան : Այսնօրինակ դաս-
տիարակեցաւ յետոյ և կրտսեր որդի Թէո-
դոսի Ոնորիոս, որ յայնժամ էր մանուկ դե-
ռածին :

Իսկ եղև յետ այսորիկ միանգամ յառնել
հակառակութեան 'ի Թեսաղոնիկեան քաղաքին ընդ ուղղա-
փառս

փառս և ՟Ը՟ այլափառս , որք էին յարիանո-
սաց և 'ի պէտս հերձուածոց . Քզի ոմանք
'ի սուտ եպսաց անտի նոցա պատճառանօք
դեգերեալ յայտնի և անյայտ 'ի սահմանս
բիւզանդիոյ , և առ սակաւ սակաւ վերստին
մուտ գտեալ 'ի թագաւորեալ քղքն , սկսան
ժողովս առնել , և վիճել ընդ ուղղափառս .
միանգամայն և խորհէին հաւանեցուցանել
զարքայ կեղծուպատիր հնարիւք , զի թոյլ
տացէ նց ունել առանձին եկեղեցի , և կալ
'ի խաղաղութե . վյ օր ըստ օրէ յաճախէին
եպսունք արիանոսաց բանիւ և գրով աղա-
չանս մատուցանել ինքնակալին : Իսկ բա-
րեպաշտն թէոդոս թէպէտև ոչ զիջաւ կա-
մաց նց , բայց չկամեցաւ ևս բանի փարել
կամ հալածել զնոսա՝ վն առաւել հլութե և
հնազանդութե իւրոյ , զոր ունէր եկեղեցա-
կանացն կարգաւորաց . նմին իրի խորհէր սի-
րով խօսել ընդ նս , և հրամանս տայր առան-
ձին ժողովով վճարել զիրսն :

Զայն տեսեալ ուղղափառ եպսաց և ոք ա-
բանց՝ խիթային միւսանգամ զօրանալ արիա-
նոսաց . վյ և ինքեանք ստէպ կանխէին առ
կայսրն , զի մի իւիք իրօք տացէ տեղի չարա-
փառաց : Ընդ որս յանդիման եղև կայսեր
յաւուր միում և սրն ամփիլոքիոս եպս
իկոնիոյ՝ աշակերտ բարսղի կեսարացւոյ (5) .
և յորժամ այլք յեպսաց երկիր պագին ար-
քային , և գահակցի նորա արկադեայ արքայ-
որդւոյ՝ բազմելոյ առ հօր իւրում , ամփի-
լոքիոս լոկ զարքայն ողջունեաց օրհնօք . իսկ

զորդին նր̃ ոչ նոյնպէս. մանաւանդ թէ մա-
տանեն միաբանեցեալ 'ի նա՝ նեղէր զմանուկն
իբրև ընդ խաղս։ Ծանր թուէցաւ բանն
յաչս Թէոդոսի, և ասէ ցեպ̃սն. օրհնեա՛ և
ողջունեա՛ հայր ո̃ք և զթագաւորեալ որդիս իմ։
Եւ ասէ ցնա եպ̃սն. դու բաւական ես մեզ թա-
գաւոր. զդա ոչ պատուեմք, բայց թէ ընդ
ծառայսդ արքայի։ Ընդ այս առաւել ևս
ցասուցեալ Թէոդոսի՝ ակնարկեաց հանել
զայրն յերեսաց իւրոց։ Յայնժամ ասէ ցնա
Ամփիլոքիոս. արդարացի՛ է ցասումն քո թագ-
նակա՛լդ բարեպաշտ. այլ 'ի միտ առ, զի և
հայրն երկնաւոր ը̃ռ զայնս օրինակս շարժի 'ի
բարկութի՝ անարգելով զորդի իւր միածին
անպատուեալ 'ի չարափառաց. զի թէ դու
մարդկանացուդ զանպատուութի որդւոյ քո
ոչ տանիս, և զհաւատարիմ նորա ընդ ծ̃ռյս,
իսկ անմահն ա̃ծ և բարձրեալն ամենակալ՝
զմիածնի՛ն իւրոյ զարարած ասելն տանիցի՞
երբէք։ Զայն լուեալ Թէոդոսի՝ սքանչա-
ցաւ և զարհի հարաւ ընդ բանս եպ̃սին. և
խնդրեաց 'ի նմէ զթողութի՝ այնուհետև ա-
ռաւել կալաւ զզգուշութի, և 'ի բաց վարեաց
զա̃մ արիանոսս և զհամախոհս նց̃ 'ի քաղա-
քէն և 'ի սահմանաց նորին. և ազդել սաս-
տիկ հրամանաւ, զի մի ոք վիճաբան լիցի 'ի
մ̃ջ խորհին խորհրդոց ա̃ծուե առաջի ռամ-
կին 'ի կործանումն ազգաց։
Եւ էր կին Թէոդոսի՝ մայր արկադեայ և
ոնորիոսի՝ բարեպաշտ դշխոյն փլակիլէ.
որ իւրով առաքինազարդ վարուքն՝ և ի̃զա

սիրութ՟ առ աղքատս և հիւանդս , օրինակ բարի լինէր առն իւրում . քանզի անձամբ սպասաւորէր ցաւագնոտաց՝ շրջելով ՚ի հիւանդանոցս , և հոգալով զպէտս նց . մինչև ձեռօք իւրովք ջամբել և զկերակուր և զըմպելի նց , և իբրև զմի յաղախնայց յանարգ գործս ծառայել նոցա . և այսպիսի գովելի քաղաքավարութ՟ փոխեցաւ առ Տր յամի 385 . և սուգ մեծ եղև բարեպաշտին Թէոդոսի , և որդւոց նորա ։

Իսկ իբրև ՚ի վր անցին ամք երեք , (յամի Տն , 388 ,) ըմբոստացեալ ընակչաց անտիոք քաղաքի ընդ ծանրութ՟ի արքունի հարկաց՝ որ ՚ի պէտս պտրզմաց յաճախելոց յոյժ կողմանց , յարուցին աղմուկ շփոթի , և աբարին անկարգութիս ոչ սակաւ . մանաւանդ խառնիճաղանճ ամբոխն . որք ՚ի Թըշնամանս Թգւորին՝ ՚ի վայր ընկեցին զպղնձի պատկեր փլակիղայ Թագուհւոյն զկանգնեալն յերևելի տեղւոջ , և գետնաքարշ աբարին նախատանօք ը հրապարակս ։ Իբրև լուաւ կայսրն զյանդգնութ՟ն նց , լի եղև բարկութ՟ . և սպառնացաւ ՚ի սուր սուսերի մաշել զնս . եառ և զպատիւ քաղաքին անտիոքացւոց՝ ոչ ևս կոչել նմա մայր քաղաքաց , և ետ զայն լալիկ քաղաքին՝ որ և լաւոդիկէ ։

Բայց իշխանք քաղաքին անտիոքայ կամեցեալ հաճել զմիտս կայսեր՝ կալան և սպանին զգլխաւորս ապստամբաց . և այլք ՚ի զօրականէն սուսերամերկ յարձակեալ ՚ի վր

քնեաց-

քաղաքացւոց՝ հարին զոմանս ՚ի նմանէ ։ Մինչև լուեալ էր Թէոդոսի զայս ամենայն, առաքեաց զերկուս յերևելի մագիստրոսաց իւրոց՝ որոց անուանք էին Եղիբիկոս և Կեսարիոս , ահագին սպառնալեօք ՚ի վերայ բնակչացն անտիոքայ . և եղև ՚ի մտանել նոցա ՚ի քաղաքն՝ խուժապեալ տագնապէին անտիոքացիք առհասարակ ։ Եւ էին ուրեք քաւանորդաց . յորս սքանչելին յովհաննէս՝ նորընծայ քահանայ ընտրեալ, որ յետոյ ոսկեբերան կոչեցաւ , քարոզէր զօր ամենայն յեկեղեցւոջ անտիոքացւոց , և յանդիմանէր զժողովուրդն վասն չարեացն զոր գործեցին . միանգամայն խրատէր կարդալ աղօթիւք առ Աստուած , զի ցածուցէ զբարկութիւն թագաւորին և ծառայից նորա ։

Զնոյն առնէր և փլաբիանոս պատրիարգ քաղաքին . որ և զանձն ՚ի վերայ եդեալ հօտին՝ ել գնաց յառաջ ինքնակալին Թէոդոսի , որ էր յայնժամ բանակեալ ուրեք ընդդէմ թշնամեաց , ակնունելով հաշտեցուցանել զերես նորա ։ Գործակից գտան ջանից նոցա և միայնակեացք անապատի՝ բնակեալք առ լեռնատամբն անտիոքայ . քանզի իջեալ ՚ի քաղաքն՝ աղերս արկանէին առաջի ծառայիցն Թէոդոսի խնայել ՚ի ժողովուրդն ։

Եւ էր յայնժամ ՚ի մէջ միայնակեցաց՝ ծեր ոմն ոք՝ պարզոն կամ մակեդոն անուն . սա հանդիպեալ ՚ի ճանապարհի երկոցունց մագիստրոսաց , որք գնային հեծեալք յերիվարս , կալաւ զհանդերձէ միոյն ՚ի նոցանէ , և հրամայեաց նոցա իջանել ՚ի վայր . և ՚ի դժուարել նոցա

է այն՝ ազդ արարին այլք 'ի մերձակայից, թէ այր ոյ է ծերունին այն, լուարուք բանից նորա ։ Յայնժամ իջեալ նոցա յերիվարաց՝ երկիրպագին ծերունւոյն . և նա յետ խրատելոյ զնոսա՝ երթալ և զիջուցանել զցասումն արքային, եւ գրով տանել առ թագաւորն զնոյն օրինակ բանից . Գիտացէ՛ր (ասէ) ով թագաւոր, զի մեք զօրհանապազ անարգեմք զպատկերն ոյ զհոգւոյ մեր 'ի մարմինս մեզօք, և զա̃ծ գլխովին պատուիրանազանցութբ̃ մերով . և դու ոչ ցաւիս և ոչ բարկանաս ը̃ այդ . իսկ վ̃ա անարգանաց պղնձի պատկերի թագուհւոյն՝ իբրև քոյին պատկերի՝ ցասնուս, և զպատկերս ոյ զմդիկ սպանանես . զայդ անգիտանաս, որ զպղնձի պատկեր շատ կարես առնել, այլ մդ̃ պատկեր ոյ և ոչ մի . զի և ոչ հեր մի 'ի գլխոյ կարես սպիտակ առնել կամ թուխ ։

Եւ լուեալ մեծին Թէոդոսի զբանս սբ̃յ ծերոյն, ը̃ նմին և զաղերս փիլաքիանոսի հայրապետին, պատկառեաց և ցածեաւ 'ի սրտմտութէ̃ն, և հաշտեցաւ ընդ քաղաքին . և յարձակելն զփիլաքիանոս խաղաղութբ̃ 'ի տեղի իւր՝ յղեաց յառաջոյ նորա սուրհանդակս՝ աւետաւորել ժղ̃վրդեան զհաշտութն̃ . զի մի յերկարեսցին վարանք նոցա ։ Զայս ամ̃ տեսեալ անտիոքացւոց՝ լցան ուրախութբ̃, և դարձաւ սուգ նց̃ 'ի տօն ցնծութե̃ . որոյ վ̃ա և բերանն ոսկի՝ երանելին յովհան՝ բազում գովութիս խօսեցաւ 'ի քա-

րո-

բոզի 'ի վերայ մարդասիրութեան քնասէր Թագաւորին ։

Յետ այսորիկ խաղաց պատերազմաւ Թէոդոս 'ի վերայ Մաքսիմոսի բռնաւորի բրիտանացւոյ, որոյ սպանեալ էր դաւով զինքնակալն Գրատիանոս, և բռնակալեալ Թագաւորէր ընդ նորա յարևմուտս ։ Որում պատահեալ քաջին Թէոդոսի 'ի սահմանս արևմտից՝ երկիցս և երիցս եհար վանեաց զզաւրս նորա առաջի իւր, և նկուն արար խապառ. մինչև յանհընարս մտեալ միաբանելոց ընդ ապստամբին՝ կալեալ կապեցին զՄաքսիմոս, և ետուն 'ի ձեռս Թէոդոսի. և այնմ դիւրագոյնս 'ի գլուխ տարաւ արքայ զկատարեալ յաղթութիւն, ըստ յառաջագոյն գուշակելոյ նմա սրբոյ միայնակեցին յովհաննու եգիպտացւոյ՝ առն գիտնաւորի ։ Այլ իբրև կացուցաւ Մաքսիմոս կապանօք առաջի Թէոդոսի, տեսեալ կայսերն զողորմ տեսիլ կերպարանաց նորա, հայեցաւ 'ի նա աչօք գթութեան, և սկսաւ քաղցրութեամբ խօսել ընդ նմա. յայնժամ փութացեալ արքունի զօրաց՝ 'ի բաց կորզեցին զբռնաւորն յաչաց արքային, և հարին զկառափն նորա. զի մի տացի տեղի ներողութեան ։ Ապա գնացեալ Թէոդոսի ընդ Վաղենտիանոսի կայսեր 'ի Հռոմ՝ հաստատեաց զնա յաթոռ եղբօր նորա Գրատիանոսի. և յետ հանդիսի ուրախութեան՝ կարգաւորեալ զանկարգ սովորութիւնս զաւ 'ի հեթանոսութենէ մնացեալս 'ի քաղաքի անդ, դարձաւ խաղաղութեամբ 'ի Կոստանդնուպօլիս ։

Ընդ այն ժամանակս՝ յամի տեառն 390, եղև խռովու-

տատանման արդարադատն ա̄յ . և որով ակամբ երկնեցես հայել 'ի տաճար սր̄բ իմս , և ո՞չ համբարձցես զձեռս յաղօթս՝ զմխեղճս յարիւն անմեղաց . Կ զիա՞րդ ընկալցիս պղծեալ ձեռօք զպատուական մարմինն ի̄մ , և ի՞բր մերձեցուսցես 'ի շրթունս քո զարիւն որդւոյն ա̄յ , որ զայնչափ արիւն արդար հեղեր 'ի ցասումն սրտմտութ. քո : Դարձիր յետս՝ դարձիր , և մ՛ուքեզ կապանս՝ զոր տայ քեզ ա̄մ թանիւ՜ բերանոյ իմոյ . մինչև առողջասցիս հոգւով 'ի ձեռն երկնաւոր բժշկին 'ի խղխայթեղ վիրացդ : Սարսեցաւ Թ̄րն է̄ հրաքուղխ բանս բերանոյ ա՜ն ա̄յ . և զամօթի հարաւ յոյժ . մինչև գլխակորեալ դարձաւ ընդ կրունկն զատն արտասուօք և հեծեծանօք . և ասէր . հնազանդ եմ ածանդիր հրամանաց քոց ո՛վ սր̄ հայրապետ . միայն թէ տացի ինձ տեղի ապաշխարութե : Յայնժամ աքանչացան ա̄մքն՝ որք անդն կային . և ոչ գիտէին՝ թէ է̄ որ առնել զարմացին . է̄ աներկի՞ւղ համարձակութի արդեօք սր̄յ հայրապետին , եթէ է̄ խոնարհական հպատակութի ածաւէր Թ̄րին :

Նա եղև յետ բանիցս այսոցիկ՝ երբեմն ամիսք ութ 'ի վ̄ր անցին , եհաս օր տօնի հրաշափառ ծննդեանն քի̄ . և յորժամ բազմութի հաւատացելոց խուռն ընթանային յեկեղեցի ա̄յ , արքայն Թէոդոս նստեալ 'ի պալատան՝ լայր դառնապէս յառանձին սենեկի : Նա 'ի մտանել առնա ռուփինոսի մագիստրոսի՝ տեսեալ զԹ̄րն յողբս արտասուաց ,

փառս և ՟Ը այլափառս , որք էին յարխանո-սաց և ՚ի պէսպէս հերձուածոց ․ Քզի ոմանք ՚ի սուտ եպսաց անտի նոցա պատճառանօք դեգերեալ յայտնի և անյայտ ՚ի սահմանս բիւզանդիոյ , և առ սակաւ սակաւ մերստին մուտ գտեալ ՚ի Թագաւորեալ քղքն , սկսան ժողովս առնել , և վիճել ընդ ուղղափառս ․ միանգամայն և խորհէին հաւանեցուցանել զարքայ կեղծաւորապատիր հնարիւք , զի Թոյլ տացէ նց առնել առանձին եկեղեցի , և կալ ՚ի խաղաղութե ․ վսյ որ ՟Ե օրէ յաճախէին եպսունք արխանոսաց բանիւ և գրով աղաչանս մատուցանել Ինքնակալին ։ Իսկ բարեպաշտն Թէոդոս Թէպէտև ոչ գիտաւ կամաց նց , բայց չկամեցաւ ևս բանի վարել կամ հալածել զնոսա՝ վս առաւել հլուե և հնազանդութե իւրոյ , զոր ունէր եկեղեցականացն կարգաւորաց ․ նմին իրի խորհէր սիրով խօսել ՟Ը նս , և հրամանս տայր առանձին ժողովով վճարել զիրսն ։

Զայն տեսեալ ուղղափառ եպսաց և ՟որք արանց՝ խիթային միաբանգամ զօրանալ արխանոսաց ․ վսյ և Ինքեանք սաէպ կանխէին առ կայսրն , զի մի՛ իւիք իրօք տացէ տեղի չարափառաց ։ Ընդ որս յանդիմանե եղև կայսեր յաւուր միում և ՟որն ամփիլոքիոս եպս իկոնիոյ՝ աշակերտ բարսղի կեսարացւոյ (5) ․ և յորժամ այլք յեպսաց երկիր պագին արքայի , և գահակցի նորա արկադեայ արքայորդւոյ՝ բազմելոյ առ հօր իւրում , ամփիլոքիոս լոկ զարքայն ողջունեաց օրէնօք ․ իսկ

զորդին իւր ոչ նոյնպէս ․ մանաւանդ թէ մա-
տամբն մերձեցեալ ՚ի նա՝ ներքէր զմանուկն
իբրև ընդ խաղս ։ Այնր թուեցաւ բանն
յաչս Թէոդոսի , և ասէ ցեպսն ․ օրհնեա՛ և
ողջունեա՛ հայր ՚ոք և զթիւրեալ որդիս իմ ։
Ասէ ցնա եպսն ․ դու բաւական ես մեզ թա-
գաւոր ․ զզա ոչ պատուեմք , բայց թէ ընդ
ծառայութ. արքայի ։ Ընդ այս առաւել ևս
ցասուցեալ Թէոդոսի՝ ակնարկեաց հանել
զայրն յերեսաց իւրոց ։ Յայնժամ ասէ ցնա
ամփիլոքիոս ․ արդարացի՛ է ցասումն քո ինք-
նակա՛լդ բարեպաշտ ․ այլ ՚ի մի՛տ առ , զի և
հայրն երկնաւոր ՚ըն զայն օրինակի շարժի ՚ի
բարկութի՝ տեսանելով զորդի իւր միածին
անպատուեալ ՚ի չարափառաց ․ զի թէ դու
մարդկանացուդ զանպատուութի որդւոյ քո
ոչ տանիս , և զհաւատարիմ նորա ընդ ծ՟յս ,
իսկ ամենահզն ա՟ծ և բարձրեալն ամենակալ՝
զմիածնին իւրոյ զարարած ասելն տանիցի
երբէք ։ Զայն լուեալ Թէոդոսի՝ սքանչա-
ցաւ և զահի հարաւ ընդ բանս եպսին ․ և
խնդրեալ ՚ի նմէ զթողութի՝ այնուհետև ա-
ռաւել կալաւ զգուշութի , և ՚ի բաց վարեաց
զա՟մ արիանոսս և զհամախոհս նց ՚ի քաղա-
քէն և ՚ի սահմանաց նորին ․ և եդեալ սաս-
տիկ հրամանաւ , զի մի՛ ոք յարձակման լիցի ՚ի
վ՟ր խորին խորհրդոց ա՟ծուն առաջի ամ-
կին ՚ի կործանումն ազգաց ։

Եւ էր կին Թէոդոսի՝ մայր արկադեայ և
ոնորիոսի՝ բարեպաշտ դշխոյն փլակիղէ ․
որ իւրով առաքինազարդ վարուքն՝ և մեծա

սիրուք̄ առ աղքատս և հիւանդս , օրինակ
բարի լինէր ամն իւրում․ քանզի անձամբ
սպասաւորէր ցաւագնոտաց՝ շրջելով 'ի հի-
ւանդանոցս , և հոգալով զպէտս նց̄․ մինչև
ձեռօք իւրովք ջամբել և զկերակուր և զըմ-
պելի նց̄ , և իբրև զմի յաղախնայց յանարգ-
գործս ծառայէր նոցա․ և այսպիսի գովելի
քաղաքավարուք̄ փոխեցաւ առ տր̄ յամի 385․
և սուգ մեծ եղև բարեպաշտին Թէոդոսի ,
և որդւոց նորա :

Իսկ իբրև 'ի վր̄ անցին ամք երեք , (յամի
տն̄ , 388 ,) ըմբոստացեալ ընակչաց անտիոք
քաղաքի ընդ ծանրութի արքունի հարկաց՝
որ 'ի վէրս պտրզմաց յաճախելոց յամ
կողմանց , յարուցին աղմուկ շփոթի , և ա-
րարին անկարգութիս ոչ սակաւ․ մանա-
ւանդ խառնիճաղանճ ամբոխն․ որք 'ի թըշ-
նամանս թգ̄ւորին՝ 'ի վայր ընկեցին զպղն-
ձի պատկեր փլակիլայ թագուհւոյն զկանգ-
նեալն յերևելի տեղւոջ , և գետնաքարշ ա-
րարին նախատանօք ը̄ հրապարակս : Իբրև
լուաւ կայսրն զյանդգնութի նց̄ , լի եղև
բարկուք̄․ և սպառնացաւ 'ի սուր սուսերի
մաշել զնս̄․ եառ և զպատիւ քաղաքին ան-
տիոքացւոց՝ ոչ ևս կոչել նմա մայր քաղա-
քաց , և ետ զայն լաւդիկ քաղաքին՝ որ և լա-
ւոդիկէ :

Բայց իշխանք քաղաքին անտիոքայ կամե-
ցեալ հաճել զմիտս կայսեր՝ կալան և սպա-
նին զգլխաւորս ապստամբաց․ և այլք՝ 'ի
զօրականէն սուսերամերկ յարձակեալ 'ի վր̄

քղքաց-

քղքացւոց՝ հարկին զոմանս 'ի նցանէ ։ Մինչև լուեալ էր Թէոդոսի զայս ամ , առաքեաց զերկուս յերևելի մագիստրոսաց իւրոց՝ որոց անուանք էին Ելլեբիկոս և Կեսարիոս , ահագին սպառնալեօք 'ի վր բնակչացն անտիոքայ ․ և եղև 'ի մտանել նոցա 'ի քղքն՝ խուճապեալ տագնապէին անտիոքացիք առհասարակ ։ Եւ էին աւուրք քառասնորդաց ․ յորս սքանչելին յովհաննէս՝ նորընծայ քահանայ ընտրեալ , որ յետոյ ոսկեբերան կոչեցաւ , քարոզէր զօր ամ յեկեղեցւոջ անտիոքացւոց , և յանդիմանէր զժղվրդն վս չարեացն զոր գործեցին ․ միանգամայն խրատէր կարդալ աղօթիւք առ ած , զի ցածուցէ զբարկութիւն թգւորին և ծառայից նորա ։

Զնոյն առնէր և փլաբիանոս պատրիարգ քղքին ․ որ և զանձն 'ի վր եդեալ հօտին՝ էլ գնաց յոտս ինքնակալին Թէոդոսի , որ էր յայնժամ բնակեալ ուրեք ըդէմ թշնամեաց , ակնունելով հաշտեցուցանել զերեսս նորա ։ Գործակից գտան ջանից նց և միայնակեացք անապատի՝ բնակեալք առ լեռնատամբն անտիոքայ ․ քանզի իջեալ 'ի քաղաքն՝ աղերս արկանէին առաջի ծառայիցն Թէոդոսի խնայել 'ի ժղվրդն ։

Եւ էր յայնժամ 'ի մէջ միայնակեցաց՝ ծեր ոմն ոք՝ ապաղոն կամ մակեդոն անուն ․ սա հանդիպել 'ի ճնհի երկոցունց մագիստրոսաց , որք գնային հեծեալք յերիվարս , կալաւ զհանդերձէ միոյն 'ի նցանէ , և հրամայեաց նց իջանել 'ի վայր ․ և 'ի դժուարել նց

է՟ այն՝ ազգ արարին այլք 'ի մերձակայից ։ թէ այր այ՟ է ծերունին այն , լուարուք բանից նորա ։ Յայնժամ իջեալ նոցա յերիվարաց՝ երկիրպագին ծերունւոյն . և նա յետ խրատելոյ զնոսա՝ երթալ և զիջուցանել զգաստութե՟ արքային , եւ գրով տանել առ թագաւորն զնոյն օրինակ բանից . Գիտացի՛ր ( ասէ ) ով թագաւոր , զի մեք զօրհանապազ անարգեմք զպատկերն այ՟ զհոգիս մեր 'ի մարմինս մեղօք , և զա՟ծ գլխովին պատուիրանազանցութե՟ մերով . և դու ոչ ցաւիս և ոչ բարկանաս է՟ այդ . իսկ վ՟ն անարգանաց պղնձի պատկերի թագուհւոյն՝ իբրև քոյին պատկերի՝ ցասնուս , և զպատկերս այ՟ զի՞նչ իկ սպանանես . զայդ անգիտանաս , որ զպղնձի պատկեր շատ կարես առնել , այլ միոյ պատկեր այ՟ և ոչ մի . զի և ոչ հեր մի 'ի գլխոյ կարես սպիտակ առնել կամ թուխ ։

Եւ լուեալ մեծին թէոդոսի զբանս սր՟յ ծերոյն , է՟ նմին և զաղերս փլաբիանոսի հայրապետին , պատկառեաց և ցածեաւ 'ի սրտմտութե՟ն , և հաշտեցաւ ընդ քաղաքին . և յարձակելն զփլաբիանոս խաղաղութե՟ 'ի տեղի իւր՝ յղեաց յառաջոյ նորա սուրհանդակս՝ աւետաւորել ժ՟ղ՟վրդեան զհաշտութե՟ . զի մի՛ յերկարեսցին վարանք նոցա ։ Զայս ա՟մ տեսեալ անտիոքացւոց՝ լցան ուրախութե՟ , և դարձաւ սուգ ն՟ց 'ի տօն ցնծութե՟ . որոյ վ՟ն և բերանն ոսկի՝ երանելին յովհան՝ բազում գովութիւ խօսեցաւ 'ի քա֊

րո֊

րոզն 'ի վերայ մարդասիրութե քննասէր թա-գաւորին ։

Յետ այսորիկ խաղաց պտրզմաւ Թէոդոս 'ի վերայ Մաքսիմոսի բռնաւորի բրիտանացւոյ, որոյ սպանեալ էր դաւով զինքնակալն Գրա-տիանոս, և բռնակալեալ թագաւորել ընդ նորա յարևմուտս ։ Որում պատահեալ քա-ջին Թէոդոսի 'ի սահմանս արևմտից՝ երկիցս և երիցս եհար վանեաց զգունդ նր առաջի իւր, և նկուն արար խսպառ. մինչև յանհը-նարս մտեալ միաբանելոց իւր ապստամբքն՝ կա-լեալ կապեցին զՄաքսիմոս, և ետուն 'ի ձեռս Թէոդոսի. և այնք դիւրագոյնս 'ի գլուխ տարաւ արքայ զկատարեալ յաղթութի, ըստ յորջագոյն գուշակելոյ նմ սբ միայնակեցին Յովհաննու եգիպտացւոյ՝ առն գիտնաւորի։ Այլ երբև կացուցաւ Մաքսիմոս կապանօք առաջի Թէոդոսի, տեսեալ կայսերն զողորմ տեսիլ կերպարանաց նր, հայեցաւ 'ի նա աչօք գթութե, և սկսաւ քաղցրութբ խօսել ը նմ. յայնժամ փութացեալ արքունի զօ-րաց՝ 'ի բաց կորզեցին զբռնաւորն յաչաց ար-քայի, և հարին զկառափն նր. զի մի տացի տեղի ներողութե ։ Ապա գնացեալ Թէոդո-սի ընդ Վաղենտինիանոսի կայսեր 'ի Հռովմ՝ հաստատեաց զնա յաթոռ եղբօր նր Գրա-տիանոսի. և յետ հանդիսի ուրախութե՝ կարգաւորեալ զանկարգ սովորութս զառ 'ի հեթանոսութե մնացեալս 'ի քղքի անդ, դար-ձաւ խաղաղութբ 'ի Կոստանդնուպօլիս ։

Ընդ այն ժմկս՝ յամի տն 390, եղև խռովու-

Թն մեծ 'ի Թեսաղոնիկ քղքի · ուր սպանին
քղքացիքն զբուտերիկոս իշխան զօրաց լիւրի-
կեցւոց , և զոմանս 'ի մագիստրոսաց քար-
կոծ արարին (6) : Իբրև եհաս բանն առ ինք-
նակալն Թէոդոս՝ յաւելուածով չարախօ-
սութեց 'ի քսու արանց , փութէր 'ի սրտմտութե
բարկութե արձակեաց զօրս 'ի վր Թեսա-
ղոնիկեցւոց · և նք զազանաբար 'ի վր յար-
ձակեալ մեծի և փոքու , արանց և կանանց ,
ծերոց և տղայոց , եկաց և բնակաց , առանց
խտրելոյ զյանցաւորս և զանմեղս , տապաստ
արկին ը քղքամէջսն ոչ ին իբրև եօթն հա-
զար , և զեւս բզմն՝ վիրաւորս և անպիտանս
կացուցին · վնյ ոմանք դնեն զթիւ կոտորե-
լոց՝ հնգետասան հազար · և նստաւ 'ի սուգ
քաղաքն ամ :

Իսկ եղև զկնի սակաւուց գնալ Թէոդոսի 'ի
միդուլէ քղք իտալիոյ ( որ և մեդիոլան , կմ
միլան ) · և կամէր ը սովորութե մտանել յե-
կեղեցի · յայնժամ ել ըդէմ նր քաջ հո-
վիւն և այրն այ Ամբրոսիոս , որ եպկս էր
քղքին · և բուռն հարեալ զծիրանեացն ար-
քային՝ կասեցոյց զնա արտաքոյ սրահի տաճա-
րին , և ոչ թողացոյց կոխել զյատակ տանն
այ , ասելով · Ո՞ դիմել զաս այր արեան-
արբու · ո՞չ ամաչես արեամբ շաղախեալդ
մտանել 'ի տաճար տն , և կոխել զգաւիթս
սբ եկեղեցւոյ · եթէ ոչ գիտես զանօրէնու-
թիւն զոր գործեցեր , կմ թէ արքունի շուքդ
կուրացոյց զաչս հոգւոյ քո՝ չհայել յեր-
կինս 'ի վեր , և չտեսանել զ'ի վերուստ դա-

տաւ-

դատաստանս արդարադատդ Տր. եւ որո՞վ կակմբ իշխեցես հայել 'ի տաճար սբ քո, եւ ո՞պ համբարձցես զձեռս յաղօթս՝ զմխեղճս յարբուն անմեղաց. Կ զիա՞րդ ընկալցիս պղծել ձեռօք զպատուական մարմինն քո, եւ ի՞բր մերձեցուցես 'ի շրթունս քո զարիւն որդւոյն քո, որ զայնչափ արիւն արդար հեղեր 'ի ցասումն սրտմտութ. քո : Դարձի՛ր յետս՝ դարձի՛ր, եւ արկ քեզ կապանս՝ զոր առ յքեղ քո բանիւ բերանոյ իմոյ. մինչեւ առողջասցիս հոգւով 'ի ձեռն երկնաւոր բժշկին 'ի խղխոյթեղ միրացդ : Սարսեցաւ թգ՞րն ի հրաբուղխ բանս բերանոյ տն տր. եւ զամօթի հարաւ յոյժ. մինչեւ գլխակորել զարձաւ ընդ կրունկն զառն արտասուօք եւ հեծեծանօք. եւ ասէր. հնազանդ եմ ամենադիր հրամանաց քոց ով սբ հայրապետ. միայն թէ տացի ինձ տեղի ապաշխարութ : Յայնժամ սքանչացան ամենքն՝ որք անդն կային. եւ ոչ գիտէին՝ թէ զի ո՞ր առնել զարմասցին. զի աներկիւղ համարձակութ արգեօք սբյ հայրապետին, եւ թէ զի խոնարհական հպատակութ ամենայն թգրին :

Իսկ եղեւ յետ բանիցս այսոցիկ՝ իբրեւ ամիսք ութ 'ի վր անցին, եհաս օր տօնի հրաշափառ ծննդեանն քի. եւ յորժամ բազմութ հաւատացելոց խուռն ընթանային յեկեղեցի տն, արքայն թէոդոս նստեալ 'ի պալատան՝ լայր դառնապէս յառանձին սենեկի : Իսկ 'ի մտանել առնա ռուփինոսի մագիստրոսի՝ տեսեալ զթգրն յողբս արտասուաց,

ասէ ցնա • ընդէ՞ր լաս տէր իմ արքայ ։

Մինչ եւ թագաւորն հառաչելով ՚ի խորոց սրտին եւ հեկեկալով • զի՞ հարցանես զպատահեցելոցիս՝ իբրև անգիտակ անբերելի ցաւոցս , զի ահա ծովք իմ եւ մուրացիկք երկրի ազատք են եւ արձակք յիմ տեղիս • եւ ես թագաւոր կապեալ կամ յերկինս եւ յերկրի • քզի քաջ գիտեմ զտէրունական հրամանն , թէ զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս • վայ եւ զդրունս երկնից փակեալ ինձ գտանեմ , ում եւ յերկրի զդրունս տանն իմ • այսօր տեսանեմ զիմ ոք մտեալ ՚ի տուն իմ , որք վայելեն յերկնաւոր պարգևաց տանիս , եւ զիս միայն զրկեալ ՚ի շնորհացն իմ ։ Ասէ ռուփինոս • ընթացայց արքայ փութանակի առ հայրապետն , եւ երթեալ աղաչեմ զնա վ՜ քո , զի լուծցէ ՚ի կապանացդ • ոչ ապաքէն այս ութերորդ ամիս է ապաշխարութենդ ։ Ասէ թագաւորն • ես ոչ մնամ ՚ի նմէ թէ լուէ քեզ , կմ աչառէ երեսաց քոց եւ արհամարհէ զօրէնս իմ իւրոյ , եթէ չեւ իցէ լցեալ ապաշխարութեանց ժմկ • վ՜ զի ամբոխիս ոչ ակնածէ ՚ի ծիրանեաց երկրաւոր արքայի , այլ՝ երկնաւոր թագաւորին է ծոյ հաւատարիմ ։ Նայց ռուփինոսի վստահացեալ համձել զհայրապետն՝ յարուցեալ չոգաւ առնա վ՜ վղկի • եւ թագաւորն ինքնին յաղի անկա զկնի նորա , զի թերևս սատրգեացին բանք ռուփինոսի ։

Իսկ եպիսկ իբրև եւտես զռուփինոս , և խնացաւ զպատճառս գալստեանն նր , ասէ • յոր-

դո

զոր ինչ չարեաց և խրատատուք անօրէնութե՞
յո՞ դիմել գայք 'ի բարեխօսել , ուր և դուք
գլխովին կցորդ էք մեղաց նր : Յայնժամ
անկաւ ռուփինոս լալագին յոտս եպսին ,
և ասէ . ահա թգրն գայ յոտս քո՝ բարեխօս
առնել զխնդ. մօնխս : Իսկ սքանչելին ամբ֊
րոսիոս վառեալ ածային նախանձու՝ ետ
պխնի , և ասէ . ասեմ քեզ ռուփինէ , ո՛չ
իւիք առնում յանձն ըունել զնա ը յար֊
կաւ տանն այ , այլ՝ 'ի բաց վարեմ 'ի դա֊
թաց տաճարիս , մինչև տեսից զնշանակ կա֊
տարեալ ապաշխարողի . ապա եթէ զինքնա֊
կալութն 'ի բռնկալութ փոխելով՝ բռնանալ
կամիցի և սպանանել զիս իբր զայլսն , պատ֊
րաստ եմ յօժարութ 'ի մահ . այլ զարեան֊
արքունս յեկեղեցիս ոչ թողից : Յայնժամ
ռուփինոս արձակեաց փութապէս արս ընդ֊
առաջ արքայի՝ ասել . մի 'ի զուր աշխատ
լինիր գալ այդր , հանդարտեաց 'ի պալա֊
տանդ . զի ոչ լսէ քեզ եպսն : Իբրև լուաւ
զայս թէոդոս զճպհայն , ասէ . ո՛չ այդպէս,
ես ինքնին երթայց առ հովիւն իմ և տե֊
սուչ հովուոյ իմոյ . ես գնամ առ նա , և առ֊
նում 'ի նմէ զարժանի զնախատինս յանդգա֊
նացս իմոց :

Եւ հասեալ 'ի սրահս եկեղեցւոյն՝ ոչ ե֊
մուտ 'ի ներքս թգրն , այլ կայր արտաքոյ
դրանն , և գոռայր բարձր ձայնիւ՝ խնդրե֊
լով զարձակումն 'ի կապանաց : Իսկ սրբ հայ֊
րապետն՝ որ նստեալ էր յատենի եկեղեց֊
ւոյն , ել արտաքս 'ի ձայն թգրին , և ասէ

ցնա .

ցնա․ ամբարտաւանիս յանդգնիս, և իշ-
խես բռնի մտանել յեկեղեցի այ, և առ-
նուն կոխել զօրէնս նն ։ Ասէ Թէդրն․ ոչ
հայր մեր, առանց քո կամացդ ոչինչ առնեմ․
միայն արձակեա զիս 'ի կապանաց մեղաց ի-
մոց՝ աղաչեմ, և մի փակեր ինձ զդէմ ըղ-
ձաւոր տաճարիդ, զոր եբաց ած ամբարշ-
տարաց ։ Ասէ ամբարտաւան․ և դու զո՞ր ա-
պաշխարութի ցուցեր, զի տաց քեզ տեսանել
զեկեղեցի այ․ և զո՞ր դեղ ընկալար 'ի բը-
ժշկութի կարեւէր խոցուածոցդ ։ Ասէ Թէդրն․
քո է ցուցանել զդեղն, և կարգել զպատեհա-
նիս վիրացն․ և ինձ անկ է անդիմադարձ
կամօք զնոյն ունել․ զպահս և զաղօթս
և զողորմութի՝ զոր պատուիրեցեր հայր, կա-
տարեցի զամ, այս ութ ամիս է․ և զոր այլ
ինչ հրամայէ սրբութիդ, ահաւասիկ կամ առա-
ջի քո ։

Յայնժամ ասէ ցնա սբ հայրապետն․ բար-
կացիր եւս և խնա առ յանցուցեալսն, և դի-
բակործան 'ի բանս զրպարտողաց՝ միաբա-
խօսաց և քսողաց, և զիրաւունս զանմանի՝
Թեկաղբուէ ցասմանն ներքոյ արկանես․ ո-
րով ոչ բանին, այլ՝ բարկութին լինի վճռատու․
և արդ՝ գրեա քո ձեռամբդ նոմոս արքունի՝
քննել զերկուս աւուրս զչարախօսութի ամբաս-
տանողաց, որք դատախազեն առաջի քո․
և զկայսրնի մահապարտսն անգամ պահել
զաւուրս երեսուն կմ քառասուն (7), մինչև
հարցափորձ լինիցի ամէ, և սիրտ քո պա-
ղատեսցի և հանդարտեսցի․ և յետ այն-

չափ

չափ աւուրց անցանելոյ՝ եթէ այլազգ 'ի մէջ հասեր, մի՛ ծանր թուեսցի ունայնացուցանել զառաջին հրամանն կամ զզաստակնիք մահուն՝ զոր գրեցեր. և զայս օրէնս պահեսցեն հաստատութեամբ ամենայն գաւառաւորք և իշխանք՝ որք են ձեռամբ քո լիցին։ Զայս ամենայն իբրեւ լուաւ արքայն Թէոդոս, զարմացաւ ընդ իմաստուն խրատս սրբոյ եպիսկոպոսին, և առժամայն 'ի գործ եդեալ մտադիւրութեամբ զպատուէրս նորա՝ ետ գրել հրովարտակս, և հաստատեալ ձեռամբ իւրով՝ յղեաց առ ամենայն դքսս : Եւ ապա արձակեաց եպիսկոպոսն 'ի կապանաց զթագաւորն, և ետ հրաման մտանելոյ յեկեղեցին :

Յայնժամ եմուտ արքայ 'ի ներքս ահիւ և դողութեամբ, և անկեալ 'ի մէջ երեսաց իւրոց՝ թանայր արտասուօք զյատակս տաճարին. և յաղօթս կացեալ՝ զգութին արձակէր բարբառ. մերձեցաւ անձն իմ 'ի հող, տէր կեցո զիս ըստ բանի քում։ Զայս ասէր, և բաղխէր զկուրծս իւր, զձանկատ հարկանէր, և զհերս ձգէր, խնդրելով յայ զթողութի։ Զորս տեսեալ բազմութե ժողովրդեանն՝ ձայնակից լինէին զորովանօք, և կական բարձեալ լային դառնապէս ընդ թագաւորին :

Եհաս ժամ ընծայաբերութե, յորում օրէն էր հաւատացելոց մատուցանել ընծայս 'ի սեղանն. յարուցեալ գնաց և Թէոդոս արքայ մօտ 'ի բեմն, և մատուցեալ զնուէրս իւր՝ զկայ էառ 'ի ներքսակողմն վանդակին 'ի դասի ; ուր օրէնք էին թագաւորաց 'ի թագաւորեալն Կոստանդնուպօլիս : Իսկ անդէն միաբան-

դամ

գամ 'ի խոնարհութի նուաճեցոյց զնա երա-
նելին ամբրոսիոս , յայտ արարեալ՝ թէ ոչ
ըստ կանոնաց էր այն սովորութի ունելոյ թգրին
նստարան ներքսագոյն ք զվանդակն . նմին
իրի իբրև յանդգնս հարցանէր զնա , զի՞նչ
կամիս դու ասա : Եւ յասել արքայի , թէ
մնամ մինչև ընդունել զմծային խնդն , հրա-
մայեաց հայրապետն սարկաւագի իւրում՝
առել նմա . ներքսակողմն՝ քահանայից է
սեպհական ոչ թգր . իսկ ժողովրդականաց՝
մեծի և փոքու անհպելի կայ մնայ . վէյ լաւ
է քեզ հաւասարել ը ժղվրդեան ցածութ .
քղի ծիրանիդ արքունական՝ արքայ զքեզ
կացուցանէ , և ոչ քահանայ . թող զի պարտ
էր քեզ յետոյ ք զամ ժղվրդն կալ խոնար-
հագոյն , մինչև խոսպար սրբեսցես . յիշեա՛
թէ որքան մարս անողորմս արարեր , և որ-
չափ հարս անզաւակ . որքան եղբարս՝ անեղ-
բայր , և քորս՝ անհարազատ :

Եւ յայսմ եւս՝ սիրով խոնարհեցաւ հեզն
թէոդոս , յօժարութ ընկալեալ զհրաման
եպսին . միայն զեկոյց նմ 'ի ձեռն սարկա-
ւագին , թէ ոչ յանդգնութ ինչ փքացեալ
իշխեցի կալ 'ի ներքսակողմն վանդակին ,
այլ զոր գիտէի օրէնս 'ի կոստանդնուպօլիս՝
զնոյն և աստ նոյնպէս համարեցայ լինել .
բայց շնորհ ունիմ առէ որ հայրապետիդ և
յաղագս խրատուս այսմիկ :

Եւ զայս ասացեալ եւ արտաքս թգրն խո-
նարհ մտօք և զմարթ դիմօք . և չօքաւ զյե-
տին տեղին կալաւ , և կայր յօժար կամօք
ընդ

ընդ ապաշխարողսն ։ Այսպիսի էր Հաւատք և երկիւղ Թագաւորին առ ած , և սէր և Հնազանդութի առ քհնյսն ։ Իսկ զայս կարգ բարեպաշտութե զոր ուսաւ մեծն Թէոդոս 'ի մեծէն Ամբրոսիոսէ , անփոփոխ պահեաց և 'ի Թագաւորական աթոռ իւր ։ զի իբրև դարձաւ 'ի կոստանդնուպօլիս , և դէպ եղև նմ յաւուր տօնախմբութե մատուցանել ընծայս յեկեղեցւոջ , եդեալ զայն 'ի վր սեղանոյ՝ իսկ և իսկ փութացաւ ել արտաքոյ ք զվանդակս ։ Իսկ Նեքտարիոս պատրիարգ քղքին խռովեցաւ ը գործն , և անգիտացեալ զպատճառն՝ ստիպէր աղաչելով զինքնակալն՝ ունել զիւր տեղի առօրական 'ի ներքսակողմն ։ Յայնժամ Հառաչեաց երանելին Թէոդոս , և ասէ ։ Հազիւ ուրեմն ուսայ՝ զի՞նչ խտիր կայցէ ը քահանայ և ը արքայ , քզի և անազան գտի զվրդպն ճշմարտութե ։ և զխորդ զոր գեղեցիկ վրդպեաց՝ անտես արարից ։ ուր զմի ևեթ Ամբրոսիոս տեսի՝ արժանի եպիսկոպոսական անուան ։

Այսչափ օգտեաց Թէոդոսի՝ ածային նախանձ քաջ հովուին ։ ուստի և յաւակս եղև զկնի եկելոց իմաստնոց , եթէ զիւրաւ մարթ էր գտանել Թէոդոսս՝ Թէ գտանէին Ամբրոսիոսք ։ որոյ և հկռկն է ճշմարտեալ ։ զի ուր ածասէր Թգրք իցեն նմանօղք Թէոդոսի , զիւրաւ 'ի վեր երևէին և հովիւք քաջք հետևօղք Ամբրոսիոսի ։ Բայց յաւուրց անտի Թէոդոսի եղեն օրէնք առ կայսերս հոռոմոց , զի Թգրն նստէր արտաքոյ վանդա-

կի

կի դատուն՝ իբրև ը՛ մէջ ժողովրդեան և քա-
հանայից :

Խնամակալու բարեպաշտ արքային Թէոդոս և այլ բազմապատիկ բարեկարգութեց 'ի շի-նութի եկեղեցւոյ, և ծաղկեցոյց ամ ուրեք զճշմարիտ ածպաշտութի, ընաջինջ բարձեալ զմնացուածս մեհենաց և հեթանոսական պաշտամանց 'ի տեղեաց տեղեաց. ուր յա-ւուրց անտի մեծին Կոստանդիանոսի ուրեք ուրեք քանդեալ, և ուրեք լոկ փակեալ էին տունք կռոց, այլ արձանք նոցա կային ամբողջ. զորս անդրէն 'ի վեր եհան ուրա-ցօղն յուլիանոս. և որ զկնի եղեն կայսերք՝ միասանգամ եւտուն ծածկել. իսկ անօրէնն վաղէս թոյլ տուեալ էր՝ որոց կամիցին պաշ-տել զհեթանոսութի. մինչև ածասէրն Թէո-դոս իսպառ խափանեաց և անհետ արար 'ի թգրութէ իւրմէ զհեթանոսական պաշտօն :

Իսկ եւգինէոս ոմն բռնաւոր յարևմուտս, որ 'ի վերին երեսս դարձեալ էր 'ի կռապաշ-տութէ 'ի քրիստոնէութէ՝ առ ստանալոյ իշխա-նութի 'ի կայսերաց, օգնական իւր գտեալ արս ստամբակս՝ սպան դաւով զվաղենտիա-նոս կայսր մանկահասակ, և զգահն 'ի հե-թանոսաց համամիտ իւր ունելով զօրացաւ յոյժ. և կացոյց իւր զօրագլուխս 'ի հեթա-նոսաց անտի. որք տային բերել նմ պատ-գամս սուտս 'ի կռոց իւրեանց՝ ոչ թէ տի-րել նմ համօրէն ինքնակալութե : Յայնժամ աճապարեաց մեծն Թէոդոս՝ միասանգամ խաղալ 'ի կողմն արևմտից, հարցեալ խնդ-

'ի

՚ի յովհաննէ միայնակեցէ եգիպտացւոյ՝ որ ունէր զշնորհս մարգարէութեան . և ընկալաւ պինի , թէ ոչ անաշխատ յաղթող լինիցիս ընդ առաջնումն նուաճելի , այլ՝ բազում ճգամբք և վտանգօք զօրաց քոց : Եւ նա յոյժ ապաւինեալ՝ վառեցաւ պատրաստեցաւ ՚ի պատերազմ՝ առաւել պահօք և աղօթիւք՝ քան զինուք և զարդուք . և չու արար աներկիւղ : Եւ մեկնեալ ՚ի բիւզանդիոյ՝ իբր եօթն մղոնաւ , և հասեալ ՚ի վկայարան սրբոյն յովհաննու մկրտչի՝ զոր ինքն իսկ շինեալ էր , և հանգուցեալ անդ զպատուական գլուխ նորա , եկաց յաղօթս , և խնդրեաց ՚ի նմանէ բարեխօսութիւն սրբոյ կարապետին զյաջողումն առաջիկայ մարտին : (8)

Իբրև եհաս թէոդոս ՚ի սահմանս գաղղիոյ, ետ զլուր անթիւ բազմութեան թշնամեաց՝ որք հեթանոսական օրինօք պատրաստեալ էին ՚ի պատերազմ , կրելով առաջի բանակին զարձանն փահագնի դից հերակլեայ . և ինքն ամեհեր սրտիւ ճակատեցոյց զզօրս իւր ընդդէմ գնդի նոցա : Եւ իբրև ժամ եղև պատերազմի , ինքնին թէոդոս թագաւորն նախապարաւ շահատակեալ՝ մեծամեծ նախճիրս գործէր ՚ի զօրս թշնամեաց . բայց անկան և յոլովք ՚ի զօրաց իւրոց , և վտանգեցաւ բանակն արքունական . վասն ՚ի տարաժամել աւուրն՝ խրատ տային արքայի զօրագլուխք զօրուն յետս նահանջել ՚ի տեղի անքոյթ , և ձմեռել՝ մինչև այլ ևս զօրք հասանիցեն : Եւ թէոդոս ոչ ետ տեղի բանից նոցա . մեր առա

ջի ընթանայ առէ՝ որ նշանն անհնայաղթ . իսկ Թշնամիք զՀերակլեայ բարձեալ բերեն զպատկեր . և զխաչն ընկեցին մէջ նախատինս դնել անհնազօր խաչին քո :

Նա յորդորէր զիւրսն՝ առ ա՛ծ կարդալ աղօթիւք զգիշերն զայն . և ինքն Թ՛գրն մտեալ ՚ի քարայր մի՝ ուր կայր մատուռն սրբոյն յովհաննու աւետարանչի և փիլիպպոսի առաքելոյ , տարածեաց զանձն ՚ի վ՛ր գետնոյ , և ջերմեռանդն աղօթիւք և արտասուօք գոչեաց առ ա՛ծ զօգնութ ժամն գիշերին : Եւ ՚ի մերձենալ ժամու հաւախօսին զքնով անկեալ տեսանէ յանուրջս երկուս արս սպիտակազգեստս՝ հեծեալս ՚ի ձի սպիտակ . և հարցեալ տեղեկանայր ՚ի նցէ , զի էին յովհաննէս և փիլիպպոս առաքեալք քի . որք և ասացին ցնա . ահաւասիկ առաքեաց զմեզ ա՛ծ օգնել քեզ . մի զարհուրիր ՚ի բազմութէ Թշնամեաց , և այլում օգնականի մի մնար . զի վաղիւն է օր յաղթութե : Զնոյն տեսիլ տեսեալ և ոմն ՚ի զօրականէն , և զարթուցեալ պատմեաց զօրագլխաց . իսկ ն՛ց ընթացեալ առ արքայ՝ պատմէին նմ իբրև որ ինչ նշան աւետաւոր . յայնժամ ուրախ եղև յոյժ Թ՛գրն , և զուարթացոյց զամենեսին՝ ցուցեալ եթէ և նմա եղև այնպիսի յայտնութի . և այնուհետև սրտապնդեալ առհասարակ՝ կազմ կային . և ը ծագել արևուն՝ ձեռն ՚ի գործ առնէին պ՛տերազմի հանդերձ Թ՛գրաւն :

Իսկ բռնաւորն եւգինէոս ոչ եմուտ անձամբ ՚ի Ճակատ , այլ եկեալ ՚ի տեղի մի

բարձրաղիտակ՝ յոխորտս բարբառէր ը̃դէմ Թէոդոսի , և ասէր . մահ կամի նա անձին իւրում . որոյ վ՟ն համարձակ 'ի մարտ մխի տակաւ արամբք ը̃դէմ ահագին բազմութեա. և առ իւրսն խիզախէր՝ ասելով . 'ի վ՟ր հասէք , ձերբակալ արարէք զարքայդ , և ածէք կապանօք առաջի իմ : Իբրև խռնեցաւ պատ՟րազմն , բզի̃քն աստի և անտի Թաւալգլոր խաղային . և սաստկանայր յոյժ կոտորածն երկոցունց կողմանց . մինչև պարտասեալ արքունի զօրացն՝ սկսան Թիկունս դարձուցանել և 'ի փախուստ անձապարել : Զայն տեսեալ քնասէր արքային Թէոդոսի , էջ յերիվարէն , և առաջի բանակին միայնակ փոքր մի յառաջ խաղացեալ եւ եկաց 'ի վ՟ր վիմի միոյ բարձու՝ ուստի մարԹ էր երևելի լինել ամ՟ զօրուն . և 'ի բաց եղեալ յանձնէ զզէնս՝ անկաւ 'ի վ՟ր երեսաց իւրոց , և հեղոյր զանձն առաջի ա՟ն , և ասէր այսպ՟ . դու տ՟ր ամենակալ գիտես, զի յանուն քո՟ որդւոյ քո մտի 'ի հանդէս պատերազմիս ը̃դէմ հեԹանոսական գնդին՝ վրէժ խնդրել արդարուԹե՟ . և արդ՝ եԹէ արտաքոյ օրինաց իցէ գործս առաջիկայ , մի յաջողեսցի . ապա եԹէ օրինօք, կարկառեա զաջդ ամենազօր , և օգնեա ինձ . զի 'ի քեզ տ՟ր յուսացայ, և 'ի քեզ ապաւինեալ՝ եկի յայս ձիգն մարտի . մի երբէք ասասցեն 'ի հեԹանոսս , ո՞ւր է ա՟ծ նց՟ : Իսկ յաւել ասել առ տ՟ր . * ո՞ւր ես ա՟ծդ Թէոդոսի ‖ : (9) Զայս ասաց՝ ասէ ս՟ն ամբրոսիոս , * զի իբրև մօտ ը̃ մօտ և

ղելոյ քո՛ւ խօսէր․ մի՛ զի ո՛վ կարող էր ասել զայդ, եթէ ոչ գիտէր զանձն իւր մերձաւոր լինել քո՛ւ։ Սովին բանիւ՛ս զամենեսին ընդոստուցանէր, և օրինակաւ զամենեսեան սպառազինէր․ այն՝ որ հասակաւ արդարև ծերացեալն էր, այլ՝ առոյգ հաւատով ‖։

Յայնժամ՝ ի յաջողելոյ տ՟ն զօրութ՟ց՝ զօրացան սիրտք և ձեռք արքունի գնդին, և զգեցեալ նոր ոգի՝ անդրէն յարձակեցան ՚ի վ՟ր թշնամեաց․ և էր գլխաւոր ՚ի զօրականն՝ բակուր անուն այր լի հաւատով, և անպարտելի ուժով․ որոյ միջամուխ լեալ արու՟ք ՚ի բանակ հկ՟կամարտից՝ զբ՟զմս ՚ի նմ՟է սատակէր, և զևս բ՟զմս փախստեայ առաջի իւր տանէր․ նոյնպէս և այլք ՚ի զօրաց հալածական տանէին այր զախոյեան իւր հանդէպ երեսաց իւրեանց։ Այլ զի յայտնի երևեսցի՝ թէ ՚ի վերուստ անտի տուաւ յաղթութ՟ին, միւս ևս սքանչելիք ՚ի տեղւոջն ցուցեալ լինէր․ ք՟զի յանկարծակի հողմ ուժգին շնչեալ ՚ի հանդիպոյ թշնամեաց՝ զնետս նոցա ՚ի վ՟ր նոցին դարձուցանէր ՚ի սատակումն իւրեանց, և ևս առաւել զնետս արձակեալս յարքունի բանակէն՝ սաստիկ յարձակմամբ ՚ի թշնամիս անդր թափէր․ և զ՟ամ զէն և զասպարս նց՟ թօթափեալ ցիրուցան կացուցանէր, և հողմահոս փոշւով զաչս նց՟ շլացուցանէր․ և այն՟մ անհնարին տագնապ կոտորածի լինէր ՚ի զօրս բռնաւորին, մինչև առ հ՟որկ գոչել առ ինքնակալն թէոդոս՝ ձեռն տալ ՚ի նմ՟, և դա-

դատապարտեցուցանել զանողորմ զհարուածն ։ Եւ արքայ գթասիրեալ խնայեաց ՚ի նա. միայն տուք ասէ ՚ի ձեռս իմ զբռնաւորն կենդանի ։ Յայնժամ ընթացան գլխաւորքն նց ՚ի բլուրն՝ ուր նստէր Եւգինէոս. իսկ նա կարծէր՝ եթէ աւետիս բերեն նմա յաղթութե. ասէ. արդեօք ածիք և զԹէոդոս կենդանւոյն ։ Նոքա ասեն. ոչ զԹէոդոս յոտս քո ածեմք, այլ զքեզ յոտս Թէոդոսի տանել եկեալ եմք. զի այնմ յաղթեցան իւքն ՚ի նմանէ երկնից ։ Զայս ասացեալ՝ բռըն հարին զբռնաւորէն, և ձգեալ բերին կապանօք առաջի կայսեր ։ Յայնժամ անկաւ Եւգինէոս քաղաքին յոտս Թէոդոսի, և աղաչէր զանէ ՚ի կեանս իւր խնայել ։ Եւ նա ասէ ցնա. յուշ լիցին քեզ չարիքն՝ զոր գործեցեր, և այնչափ վնասուց պատճառք եղեր. և ՚ի վերայ ամի՝ առաջնորդ քեզ առեր զպատկեր դիցն Հերակլեայ, ոչ թէ յաղթել կարծելով կենդանաբար նշանի սրբոյ խաչին ։ Իսկ բռնաւորն ամօթապարտ զանձն խոստովանեալ՝ զողորմութիւն ժտէր, ապաւինեալ ՚ի հեզին քաղցրութեան ինքնակալին ։ Եւ մինչդեռ բանքն ՚ի բերանն էին, երկուցեալ զօրացն արքունի՝ զուցէ խնայեսցէ ՚ի նա արքայ, ոչինչ սպասեցին հրամանին Թէոդոսի, այլ անդէն առ ոտս նորա խողխողեցին զբռնաւորն. և այսպէս յաղթութեամբ և բազում ուրախութեամբ դարձան ՚ի պատերազմէ՝ յամի. 393 ։ Իսկ երանելին Թէոդոս Թէպէտև եղև այնուհետև միահեծան կայսր արևմտից

և արևելից , այլ 'ի բազում ճգանց պատե-
րազմի և յաշխատութեանց ճ̅պհի վտանգեալ՝
անկաւ 'ի հիւանդութիւն դժուարին՝ ախտիւ
ջրգողութեան . և եկեալ հանգարտեաց 'ի մի-
դուլէ . ուր եւ ածել 'ի կոստանդնուպօլսոյ
զերկոսին որդիս իւր . յորոց զկրտսերն զՕնո-
րիոս կացոյց կայսր արևմտեայց , ո̅պ զանդ-
րանիկն զԱրկադէոս կարգեալ էր 'ի տեղի իւր
յարևելս . և ետ նց̅ 'ի կտակ վերջին զփոյթ
ճշմարիտ ա̅ծպաշտութ̅ , հաստատուն կալ 'ի
հաւատս ուղղափառութ̅ , և 'ի վարս անպար-
տաւս , և արդարութ̅ վարել զթ̅գ̅րութիւն , զա̅ծ
ունելով յամի օգնական՝ որ մեծ է յերկիւ-
ղածս իւր . սոյնպէս և զիշխանս և զզօրա-
գլուխս յորդորեաց 'ի բարեպաշտութի : Ա-
րար կտակ՝ բաշխել և ողորմութի տալ յաղ-
քատս , ո̅պ և առնէր զա̅մ աւուրս իւր . կար-
գաւորեաց և այլ ինչ բազում յօգուտ հա-
ւատացելոց և 'ի շինուի եկեղեցւոյ՝ արժա-
նի իւրում առաքինութե . և հաղորդեալ պատ-
ուական մարմնոյ և արեան ա̅ծ՝ պատրաս-
տեցաւ 'ի մահ իբրև յառիթ կենացն ան-
վախճանից : Նա 'ի նմին իսկ աւուր՝ յորում
լինէր հանդէս կայսերութեն Օնորիոսի , մինչ-
դեռ երևէր փոքր մի դիւրութի զօրանալ ա̅ծա-
սէր թ̅գ̅րն 'ի հիւանդութենէն , յանկարծ ու-
րեմն նորոգեցան ցաւք ն̅ր , և աւանդեաց
զհոգին 'ի ձեռս ա̅յ՝ իբրև ամաց վաթսնից ,
յետ ժզ̅ ամաց թ̅գ̅րութեն յամի տ̅ն 395 , 'ի
ժէ կամ 'ի ժզ̅ կաղանդից փետրվարի , այն
է 'ի յունվարի 16 . կամ 17 . որ 'ի յայսմաւուրս
դնի

դնի 'ի յունվ. 18. իսկ 'ի Հին Ճաշոցս՝ ը̃ ո̃ր լինի, 'ի յունվ. 19։

՝Նման նմա ոչ եղև 'ի կայսերս Հռովմայեցւոց՝ զկնի մեծին կոստանդիանոսի, փայլեալ բարեպաշտութբ և առաքինութբ. ամբութի ուղղափառութե, և պարիսպ եկեղեցւոյ սբյ. հլու առաջնորդաց, և երկիւղած յոյժ. թող զանհամեմատ արուեստ քաջութե, և ըղձեղեցիկ տնտեսութի թգրութե. մինչև վկայել և արտաքնոցն, թէ թէոդոս յուրն կացոյց զինքնակալութի Հռովմայեցւոց՝ որ մերձ էր 'ի կործանումն յերեսաց թշնամեաց շուրջանակի. վս զի ած էր ը̃ նմ։ Նմէր երանելին թէոդոս և զառանձին ձգնութիս 'ի մարմնի՝ ընդ արքունական ծիրանեաւ, անյայտ 'ի մրդկանէ. և 'ի մեռելութի կրթէր զանձն 'ի բզմ իրս՝ իբրև օտար յա՟ե կացեալ յա՟ի։ Նա ինքն քնասէր թգր կրէր միշտ 'ի վր արքունական թագի զնշան խաչի, որպ և 'ի վր սաղաւարտի 'ի պտրզմունս. զնոյն աբարեն և որդիք նր, և այլք զկնի նց։ (10)

Իսկ յաւուր վախճանի մեծին թէոդոսի՝ որպ և զկնի քառասուն աւուրց սգոյ՝ երանելին ամբրոսիոս խօսեցաւ ճառ արձանական 'ի վր բարեպաշտ ինքնակալին, արժանաւոր գովութբ հռչակելով զառաքինութիս նր. զորոյ զբաղումածն տեսցես 'ի ծանօթութիս (11)։

Իսկ զմարմին թէոդոսի հրամանաւ արկադեայ և ոնորիոսի բարձեալ տարան 'ի կոստանդնուպօլիս շքով մեծաւ, և թաղեցին պատուով 'ի տաճարի սրբց առաքելոց։

xxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxx

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Զ նախագրեալ վարս մեծին Թէոդոսի՝ (բազմօք բարեացապարտ եղելոյ ազգիս մերում,) քաղեցաք 'ի նշանակէ հեղինակացդ, որոց միաբան գտանի բազում մասամբ և Հ. ուր գնի 'ի վերնագրի. * Յիշատակ (սրբոյն) Թէոդոսի Թագաւորին ||. կամ ըստ այլ ինէլի. * Տօն է Թէոդոսի Թագաւորին ||. և գրի պատմութիւն մեծին Թէոդոսի ևեթ՝ առաւել համաձայն ընթացից բանից Թէոդորետոսի: Իսկ 'ի սովորական օրինակս (որ չէք 'ի հին ձեռագիրս, այլ առ այլ ինէլի.) գնի յետոյ և յաւելուած յղփս յաջորդ կայսերաց՝ արկադեայ և Թէոդոսի փոքու. տալով և նմ չափաւոր գովութն (առանց ցուցանելոյ իմիք՝ թէ և նոցա յիշատակ լինիցի) իբրև ծննդոց ածասէր Թագաւորի. յորմէ և եղև գնել ոմանց 'ի յետին օրինակս ինչ տօնացուցից յաջնակի. * Թէոդոսից ||, իմն յիշատակ մեծին Թէոդոսի և յաջորդաց նր. Թող զմուրացածոյ ստայօդ բանս յասորւոց առեալս, և եդեալս 'ի վերջին օրինակս Հ. վա գործոց եղելոց յաւուրս փոքուն Թէոդոսի: Իսկ 'ի Ճառընտրի ասսկապէս բանք լինին վա մեծին Թէոդոսի՝ համառօտ բանիւ, և ժողովոյն կոստանդնուպօլսոյ՝ որ եղև առ նովաւ. յոր յարի և յիշատակ մանկանցն եփեսոսի. զորոց ունիմք գրել առանձինն. և ապա ուրոյն խորագրով գնի պատմութն ժողովոյն եփեսոսի առ փոքրն Թէոդոսիւ:

Իսկ առ այլ եկեղեցիս չէք որոշ յիշատակ տօնի Թէոդոսի՝ մեծի կամ փոքու. միայն Թէ բոլլանդ 'ի 17. յունուարի. հատ. Բ. երես. 72. այսչափ ինչ նշանակէ, որ շատ իսկ է մեզ. * Թէոդոսի մեծի կայսեր վախճանն „'ի սմին աւուր նշանակի 'ի յայսմաւուրս գերմանացւոց „'ի մոլանոսէ և 'ի փերրարիոսէ: Այլ կոչէ (զնա) պետրոս նատալեան. Գիրք. Է. Գլ. 93. և ասէ, Թէ գրեալ կայ 'ի յունաց 'ի դասակարգի սրբց. բայց չէք „'ի յայսմաւուրս նոցա: Բազում ինչ պանծալի գրեն „զնմանէ եկեղեցական մատենագիրք. զվարս նր ուրոյն շարագրեաց բելլարմինոս. 'ի Գ. գիրս, յաղագս „պարտաւորութե քրիստոնեայ իշխանի ||:

'Ի գործս անդ բոլլանդեանց 'ի 30. յուլիսի. հատ. Է. եր.

եր. 129. գրի և այս ինչ. * Բարեպաշտ կայսեր Թէո-
„ դոսի նորոյ ( կիՏ փոքու ) անուն գտանի գրեալ 'ի
„ ձեռագիր օրինակն մեր աւրինեան Ե. 'ի քաղուածս
„ յայսմաւուրաց ամբրաւեան գրատան. որք և 'ի յա-
„ ւելուածն սրբմննգեան ։ Բայց ինքնակալս այս՝ որք
„ 'ի յուլիսի. 29. նոյնպէս և 'ի 30. որք բարեպաշտ, և
„ ոչ որք երանելի, Թող թէ Սբ. յիշատակի առ յոյնս.
„ և ոչ է այլուստեք գիտելի՝ թէ պատմեալ իցէ 'ի
„ նշնէ երբէք հանդիսական, տօնական, օրինաւոր, կիՏ
„ գոնէ բաւական յարգանօք ||։ Մինչ 'ի ժամագիրս
յունաց 'ի 29. յուլիսի կայ այսպիսի բան. * Յիշա-
„ տակ երանելւոյն յաղթանակ զօրականի, և կոստան-
„ դիանոսի պատրիարգին կոստանդնուպօլսոյ, և բա-
„ րեպաշտ Թագին Թէոդոսի նորոյ ( կիՏ փոքու ) ||։
(2) Դրէ աւրեղիոս վիկտոր՝ լաւին պատմաբան հին
ղՉ մեծին Թէոդոսի, թէ * առեն զանուն որ եդեալ
„ 'ի ծնողաց՝ ազգմանն տաւլեան երադը. զինչանակէ՝
„ յորյ տուեալ ||. իսկ անուն հօր նր էր առէ սնորիոս,
և մօրն Թերմանտիա, 'ի սերնդոց տրայիանոսի ։ Բայց
պնդէ բարոնիոս վկայութ Ձմկակից արանց՝ որյն ամբ-
րոսիոսի, որոզիոսի, ամմիանոսի ևն, թէ անուն հօր
նր ոչ էր սնորիոս, այլ Թէոդոս ։ Եւ սակայն առելի է՝
թէ ԵՐ սովորուԹ նախնեաց երկանուն էր. որք թէ միև
իցէ յատուկ անուն, և միւսն մականուն. ապա թէ ոչ՝
եթէ հայրն միանուն լինէր, թերևս ոչ զնոյն անուն կրէր
և որդին ։ Աքքին միաբանին՝ թէ էր յՏէն սպանիոյ.
այլ զՔղքն ոմանք կոչեն իտալիկա, և ոմանք կաւկա
գաղղէկիոյ ։
(3) Զարթրդ Թէոդոսի Ը դուԹս՝ եգաք ԵՐ Թէոդորե-
տոսի յառաջ քան զկայսերուԹն, ուր այլք ոմանք բաս
վկայելոյ բարոնիոսի յամն. 379, յետոյ դնեն զ զԹա-
գաւորելն. բայց մարթ է ասել, թէ բանք նորա յայլ
պՏրղմ հային, և մերս յայլ. զի որք ինքն իսկ բարոնիոս
դրէ անդանօր, * ոչ մի, այլ բազում պՏրղմու վա-
„ նեաց յառաջագոյն Թէոդոս զդոԹացիս՝ ԵՐ աւանդելոյ
„ վիկտորի և մարկեղինոսի ||։ ապաթէ ոչ՝ պարագայքն
յառաջ բերեալք 'ի Թէոդորետոսէ ոչ 'ի դէպ գան
Թէոդոսի 'ի կայսերուԷ, այլ՝ 'ի ստրատելութԷ. մինչ
զի ունիմք ասել, թէ որոշեալս որք կայսրն՝ նոյնպէս
և ստրատելեան իմէտագոու հոչիւր, ԵՐ հրամանատու,
յայսմանէ կարծեցին ոմանք՝ թէ նա կայսր էր յայն-
ժամ. և այսպիսի պատճառաւ երևին պատմաբանք

„ ծանեաւ զթողուն մեղաց իւրոց ||: Ձի ահա զնմանն
սմին գտանեմք և 'ի գիրս կեդրենոսի, որ գրէ յերես
255. կմ 323, այսպէս. * Սա ինքն Մեծն Թէոդոս ցան_
„ կացաւ երթալ յեկեղ. և արկեալ զիւրև զզգեստ իւրև
„ զմիոյ 'ի բազմաց, եկն 'ի դուռն տրյ յարուէ. և 'ի
„ բաղխելն՝ երացնմա ումն 'ի պաշտօնէից. և մինչդեռ
„ Ճիրագունք ամ չիջեալ կային, ը մտանել Թագաւորին
„ առ. ժամայն փակեցան ամն՝ ոմ յաւուրս հանգիսի.
„ իսկ դռնապանն ապուշ մնացեալ՝ առեալ տարաւ զնա
„ առ յովհաննէս հայրապետն. և նա 'ի ձեռն աղօթից
„ ծանեաւ զնա, և եբաց եւ նմ, զի այր Թագաւոր՝
„ այնպիսի ձևով եկեալ է յերկրպագութիւն ուղեաց ||:
Որում ոչ ինչ այլ ըգիմուն գտանէ բարոնիոս յամն.
393. համար. լթ. բաց միայն զպատկառական ձեռնարկ՝
յանէլն. * Այսմ բանի կեդրենեայ անդիտակ գտանին
„ նախնի հեղինակք. զոր եթէ առուգեալ տեսանէին,
„ ոչ զանց առնէին յիշէլ ||:

(5) Վս ամփիլոքիոսի՝ որ 'ի Հ. գրի անփիլիքոս, այլ ըա յունականին է ամֆիլօխիոս, իբրև զծերունի երեց_ ուէ կամ զառաջնորդէ ումեմնէ աննշան քաղաքի խօսի սոզոմենոս. է. 6. բայց զոր մեք եդաք ըա Հ. լինել մեծանունն ամփիլոքիոս եպս իկոնիոյ, պարզապէս հաս_ տատեն Թէոդորետոս. ե. 16. նիկեփորոս. ժբ. 9. և բարոնիոս յամի. 383: Դարձեալ 'ի Հ. գնի, թէ նա * ոչ ողջունեաց || իմէք զարկադ. ամին նման գրէ և Թէոդորետոս. իսկ սոզոմենոս ասէ. * մատուցեալ առ
„ նա իբրև առ ալոյ մանուկ մի, ասաց. ողջ եր որդեակ.
„ և մատամբն շարժեաց զնա ||. որք ոչ հակառակին միմեանց. զի առհասարակ յայս առնեն՝ թէ չետ զարժանա_ ւոր պատիւն:

(6) Խռովութիւն անտիոքայ գնի ըա բարոնիոսի՝ յամին 388. իսկ Թեսաղոնիկեայն երկու ամօք յետոյ 'ի 390. այսմ համաձայնի և կարգ պատմուէ Հ. ուր նախ պատ_ մի անցք անտիոքացւոց, և ապա Թեսաղոնիկեցւոց: Միայն Թէոդորետոս ը հկռկն դնէ, և այնպէս կարգէ զբանն, ոմ թէ Թէոդոսաւ կանխաւ խրատեալ 'ի յանդիմա_ նութէն ամբրոսիոսի՝ որ վս կոտորածի Թեսաղոնիկեց_ ւոց, բազում զգուշութի ցուցեալ իցէ 'ի կոտորածն անտիոքացւոց. այլ այս արտաքոյ ելանէ ուղիղ ժամա_ նակագրուէ. որպէս և ստգանեն զնա ծանօթարարք յայսմ մասին: Դարձեալ գիտելի է, զի 'ի Հ. գնի խռովուէ անտիոքայ լեալ 'ի պատճառս պատկերին * գա_

լի.

„ լինելոյ կնոջ Մեծին Թէոդոսի, որ էր դուստր գրա-
„ տիանոսի արքային հռովմայ ||. և սակայն այլք առհասարակ
կոչեն զնա փլակիլլա կին բարեպաշտ՝ առանց յիշելոյ թէ
ումն դուստր իցէ. յորմէ ծնան արկադէոս և ոնորիոս.
և վս՟ պատկերի սորա եղև այն խռովութիւն. և ապա է-
առ Թէոդոս զայլ կին՝ որում անուն էր գաղղա փլա-
կիտիա՝ դուստր վաղենտինիանոսի արքային հռովմայ. և
Թուի թէ 'ի Հ. երկոցին անուանք 'ի մի գումարեալ
իցեն: Մեծ ևս է վրիպակ կեդրենոսի՝ որ փոխէ ը̄
անցից Թեսաղոնիկէայ զանցս անտիոքայ, ուր համարի
լինել զմեծ կոտորածն. և վս՟ այնր դնէ յանդիմանել
զԹէոդոս յամբրոսիոսէ: Սխալի և սոզոմենոս (եթէ
չիցէ յետևառաջութի պատմուե.) զի զկնի մահուն եւգե-
նէոսի բռնաւորի դնելով զանցս Թեսաղոնիկէայ և զյ-
յանդիմանութի Թէոդոսի յամբրոսիոսէ. որ է արտաքոյ
ամ ժմկագրաց: Թող զի 'ի Հ. դնի մահ մաքսիմոսի
բռնաւորի յետ՟ ամի Թէոդոսի, և յետ տասն ամաց
ասի լինել մահ եւգինէոսի. ուր այլք հնգկօրէն զա-
ռաջինն դնեն 'ի տասներորդ ամի Թէոդոսի, և յետ
երից կամ հնգից ամաց զերկրորդն:

(7) Վս՟ օրինաց Թէոդոսի՝ զոր եդ ը̄ խրատու ամբրո-
սիոսի՝ չապաժամել զմահապարտս նախ Լ̄ զաւուրօրեայ
քննութի, 'ի Հ. դնին աւուրք Խ. իսկ այլ ամ պատմիչք
դնեն Լ: Եւ սակայն պնդեն քննիչք և օրինագէտք.
թէ այս օրէնք . Լ. աւուրց կայր և յառաջագոյն յաւուրս
նախընթաց կայսերաց. վս՟ կէսք համարին ասել՝ թէ
թերևս առ խափանել զօրէն՝ Թէոդոս նորոգիչ լեալ
իցէ. և այլք զայլ լուծումն հնարեն. բայց թէ գի-
տելին զԹիւն Խ աւուրց, որ 'ի Հ. թերևս ստուգա-
գոյն համարելին ասել, եթէ Թէոդոս այլ ևս աւուրս
տասն յաւելեալ իցէ յօրէնսն առաջինս:

(8) Սոզոմենոս. Է. 24. 'ի մէջ բերէ և զայլ առանձին
պատմութի 'ի հաստատել, թէ օգնականութբ նըյն յով-
հաննու մկրտչի յաղթեցաւ յաղթութեն 'ի ձեռս Թէո-
դոսի. ք̃զի ասէ. * Ասի թէ 'ի ժմկին՝ յորում մղէր
„ պատերազմն, դիւահար ոմն 'ի տաճարէ անտի [illegible], ուր ա-
„ ղօթեալ էր կայսեր յերթալն 'ի պատերազմ, յօդս յափշ-
„ տակեալ 'ի դիւէն՝ ձգէր բանս անարգանաց ը̄դէմ
„ մկրտչին յովհաննու, և զգլխատումն նր̄ 'ի Թշնամանս
„ առեալ՝ բարբանջէր, և գոչէր մեծաձայն. դու ես՝
„ որ յաղթահարես զիս, և դարանակալ լինիս զօրաց
„ իմոց ||: Եւ որք 'ի տեղւոջն կային ասէ՝ և լսէին, նշա-

նա-

նակեցին զիրսն 'ի գիր. և առաւ 'ի գաւառս կայսերա-
կան գնդի յաղթութ. 'ի պտըղմէ, քննեցին և 'ի վ՟ր հա-
սին, զի նոյն այն էր որ պտըղմն նշ և յաղթութ : Տես
և զբան շարականին՝ որ զնի :

(9) Յայսմիկ բանս ամբոխիսի, որ և յայլ աղօթսն
Թէոդոսի՝ որ 'ի վկայարանի մկրտչին, և որ 'ի մաս-
ւան աւետարանչին; եւ տուեալ 'ի հանդէս ճակատա-
մարտի՝ հայր առաջեալն 'ի շարականի. * Որ քոյին ՟ը
„ աղօթիւքդ վանեցեր զմշնամին. կոչեցեալ զառա-
„ նայ՝ ՟ը երկնայինն զաւակ||. սոյնպէս և այլ բանք
շարակնոցին ունին զնշդ առանձինն՝ հայելով 'ի բա-
զմանդակ պատմութ վարուց մեծին Թէոդոսի. բայց ոչ
այնչափ 'ի մանունս խնդրելով, որչափ ընդհանրապէս
ակնարկելով. որ զի և այլ Թղթոց սրբ յարմարեցին
ներբողական բանքն՝ 'ի նմանել զնոյն բանս 'ի տօնի
խաչաքանչիւրոց :

(10) Կեդրենոս նկարագրէ զմեծն Թէոդոս՝ օրինակ
զայս. * Թէոդոս արքայ՝ էր ազգաւ սպանիացի ( կամ
„ որ նոյն է՝ իբերացի յեւրոպիանց), աշխարհական ՟ը տոհ-
„ մի, և զգանչելի 'ի պտղմանս... բարեպաշտ և ուղ-
„ ղափառ. միջակահասակ, (՟ը Հ. հասակաւն երկայն,)
„ և անարատ յամեց մինչև 'ի գլուխ. չիկադոյն դիմօք, և
„ ունէ հեր. փոքրունչ և արծուանկն. շնորհալի բանիւք.
„ և բարեզարդ գնացիւք|| : Այս ինքն Կեդրենոս՝ որ սե-
րէ հաւաքել զհեշտալուր բանս ( Թեպէտև ոչ միշտ հա-
ւատոյս ), բերէ և զայս ինչ նորալուր, թէ Թէոդոս
'ի պատերազմին խուռն ՟ը եւգինէոսի 'ի կիր արկեալ
իցէ * զյովհաննու մեծի միայնակեցի եգիպտացւոյ ըղ-
„ զաւազանն փոկ նիզակի, և զկնգուղն 'ի տեղի սաղա-
„ ւարտի||. զոր այլուստ ախորժեսջ առուզել :
Իսկ զամս կենաց Թէոդոսի եդաք վաթսուն, ՟ը սոկ-
րատայ, սոզոմենեայ, Թէոփանեայ, կեդրենեայ, և այ-
լոց բազմաց՝ ՟ը Հ: Մինչյն յաղեքսանդրեան ժամանակա-
գրութ ծնի. կե. իսկ առ վիկտորի, ծ. որում զհետ
երթայ և բարոնիոս իբրև աղգային մատենագրի :

(11) Արձանական ճառ ՟րդյն ամբրոսիոսի 'ի մեծն Թէո-
դոս՝ յաւաջինկայութ որդւոյ ն՟ր ոնորիոսի կայսեր՝ այս-
պէս սկսանի. * Զայս մեզ սասանութիւք երկրի ահա-
„ գինք, զայս անդուլ անձրեւք սպառնային, և ըստ ոչ
„ սովորութ մառախուղ Թխապագին գուշակէր, եթէ
„ բարեգործ խիքնակալն Թէոդոս հանդերձեալ է փո-
„ խիլ 'ի յերկրէ. յոյս է թէ տարերք զկնոմին ողբա-
„ գեաց

,, դեալ լինէին ընդ մեկնիլ նր || : Եւ յընթացս բանիցն
ասէ․ * Արդ նա գնաց առնուլ իւր թագաւորութիւն,
,, զոր ոչ եդ 'ի բաց, այլ՝ փոխեաց, 'ի խորանն քնի
,, հրաւիրեալ իրաւամբք ածպաշտութեն, 'ի վերինն եէմ,
,, ուր արդ բնակեցեալ՝ ասէ․ որպէս լուաք, նոյնպս
,, և տեսաք 'ի քաղաք տն զօրութեց, 'ի քաղաք այ մերոյ․
,, որում ած հիմն եարկ յաւիտեան: Այլ սակայն զսա_
,, լոմս եթող լեք զրկեալս 'ի հայրենի խնամոց, առա_
,, ւելապէս զորդիս․ այլ չեն զուրկ սնուցեալ՝ զորս
,, ժառանգս եթող իւրոյ բարեպաշտութեն․ ոչ են թո_
,, ղեալ լքեալ՝ որոց զքխն շահեցաւ շնորհս, և զհա_
,, ւատարմութիւն զօրութն, որում յայտնի եղև՝ թէ ած
,, ձեռնտու է բարեպաշտութն, և վրէժխնդիր անիրա_
,, ւութե: Եւ արդ զայսպիսի իշխանի նախ 'ի մտոյ ըզ_
,, վախճանելոյն կարգ կատարեցաք միաձայնութբ, և
,, այժմ զքառասներորդն հաշակեմք․․․ Եւ զի են որ
,, զօրն երրորդ և զերեսներորդն, և են որ զեօթնե_
,, րորդն և զքառասներորդն սովորեցան առնել․ զի՞նչ
,, խորհուրդ իցէ ընթերցուածոյն, տեսցուք․․․ Յով_
,, սէփն գեղեցիկ զքառասներորդ հօր իւրոյ յակոբայ կա_
,, տարեաց․․․ և մեք զթէոդոսին կատարեմք զքառա_
,, սներորդ․ որ յակոբայ եղեալ նմանօղ՝ հիմն 'ի վեր առա_
,, պալեալ զբանաւորացն զանզգամութե․ որ զկուռս
,, հեթանոսաց թաքոյց․ զի հաւատք նորա զնմ պաշտա_
,, մունս դրօշելոց խափանեաց, զնմ զնապաշտութիս
,, նր հեռախաղաղ ծածկեաց: Որ և ցուէր, զի որոց
,, ներեացն մեղուցելոց առ ինքն՝ 'ի գերև եղ իւր նե_
,, րողութե, և ոչ թողաւ մարդասիրութն․ այլ ոչ ժըն_
,, տեսցեն որդիքն՝ զոր ինչ հայր նոցա շնորհեաց․․․ և
,, պատուիրեաց օրէնս առ ներողութե՝ զոր գրով ե_
,, թող․ և զի՞նչ քաջավայելուչ, ոմ օրէնք լինել կտա_
,, կի ինքնակալին․․․․ Եւ որպիսի ինքնակալի․ բա_
,, րեպաշտ ինքնակալի, ողորմած ինքնակալի, հաւա_
,, տարիմ ինքնակալի․․․․ Զի՞նչ պանծագոյն է զհա_
,, ւատս ինքնակալի, զոր ոչ փքացուցանէ իշխանութի,
,, ոչ սնքացուցանէ ամբարտաւանութի, այլ՝ խոնարհ
,, առնէ բարեպաշտութին․․․ Երախտիս ընկալեալ զանձն
,, համարէր օգոստոսիշխանականն թէոդոս, յորժամ աղա_
,, չէր ոք զնա ներել․ և յայնժամ առաւել ներողամիտ
,, գտանէր, յորժամ առաւել ծանրացաւն լինէր:
,, Նշանակ ներողութե էր 'ի նմա ցասուցեալն գոլ․ և
,, ցանկալի լինէր 'ի նմա՝ որ ինչ յոյլս երկիւղալին էր․
,, զի

„ զի բարկացի ։ Այս դեղ հնարիցէր յանցաւորաց.
„ զի որ 'ի Վ՟Ր ամենեցուն իշխանութիւն ունէր, ծնողա֊
„ բար արգահատել կամէր՝ քան դատաւորաբար պա֊
„ տուհասել… Ու երբեք ժխտէր խոստովանողի զթա֊
„ ղութիւն. այլա եթէ էր ինչ գաղտնածածուկ պատ֊
„ ուհակեալ, յած անտեմ ապաստան՝ ասէր ։ Յայսմ
„ բարբառոյ ն՟ր առաւել քան 'ի պատուհասէ դողային
„ մարդիկն. ուր ինքնակալն զայնպիսի պատկառանս
„ 'ի կիր արկանէր՝ կրօնիւ քան եթէ երկիւղիւ զմ՟դիկ
„ յինքն յանկուցանել կամեցեալ… Թէոդոս լի եր֊
„ կիւղիւն ա՟յ, լի ողորմութ՟բ, ակն ունիմք՝ եթէ զաւա֊
„ կաց իւրոց խնամարկու է առ ք՟ի … Հարցանէին
„ հրշտիկք և հրշտիկապետք. զի՞նչ գործեցեր յերկրի.
„ զի ծածկագէտ ա՟ծ միայն ։ Ասէր. սիրեցի. այս է
„ ասել, զօրէնսն կատարեցի, զաւետարանաւ ոչ ան֊
„ ցի ։ այս է ասել, մահու զանձն իմ պատարագեցի.
„ և զօրհանապազ համարեցայ ո՟մ ոչխար 'ի զենումն…
„ Եւ ք՟զի խոնարհ զանձն ընծայեցոյց ինքնակալն Թէո֊
„ դոս, և ուր մեղք սպրդեցին, Թողութիւն խնդրեաց,
„ է՝ որ արդարոցն ա՟յ, և ժխտի անարժանից….
„ Ցնծայ Թէոդոս ընդ ապատանեալ իւր 'ի խայթոցաց
„ հոգոց Եիս… Յայն հանդիստ փութացաւ մտանել
„ Թէոդոս, և 'ի քաղաք անդր եՃմ, զորմէ ասացաւն.
„ և Թագաւորք երկրի լուսաղդեաց լինէին 'ի փառաց
„ ն՟ր…. Եւ արդ զերծ յերկրայելի մարտէն՝ վայելէ
„ այժմ օգոստափառն Թէոդոս 'ի լոյս մշտնջենաւոր,
„ 'ի յաւերժական անդորր. և փնկ որոց գործեացն 'ի
„ մարմնի՝ եծեալէն փոխարինացն արդասեօք շնորհաւո֊
„ րի ։ Այպա ուրեմն՝ քանզի սիրեացօգոստոս Թէոդոս
„ զա՟ր ա՟ծ իւր, արժանի եղև ո՟րգն դասակցութ՟ ։ Եւ
„ եա՝ 'ի կնքել վերջարանութ՟ զիմ ճառ, սիրեցի զայրն՝
„ ողորմած, և խոնարհ 'ի մեծութ՟ ինքնակալութ՟, մա֊
„ քուր սրտիւ, և հեզ հոգւով, զոր ա՟ւն բնաւորեալ
„ է սիրել յաւէրն. յո՞ հանգեայց, եթէ ոչ 'ի խոնարհն
„ և 'ի հեզն ։ Սիրեցի զայրն՝ որ առաւել զյանդիման
„ մանիչն՝ քան զմարդելոյզն սիրէր ։ Յերկիր տարա֊
„ ծեաց՝ զա՟մ զոր ունէր նշանակ արքունի, ելաց յե֊
„ կեղեցւոջ հրապարակաւ զմեղս իւր՝ որ այլոցն խաբ֊
„ դաւանօք 'ինա սպրդեցաւ. հեծութ՟ և արտասուօք
„ խնդրեաց զԹողութ՟ ։ Յորմէ ատակաւնք ամաչէն, ոչ
„ ամօԹ համարեցաւ կայսրն, հանդիսապէս առնել ա֊

„ ապաշ֊

,, պաշխարութեն․ և ոչ եղև որ այնուհետև՝ յորում ոչ
,, ցաւեր ընդ սխալանսն ։ Զի՞նչ ասել․ զի թեպէտև
,, յաղթուեն մեծ ժառանգեաց, բայց քանզի թշնամիքն
,, սատակաւ անկան 'ի Ճակատու, հրաժարեաց 'ի հա_
,, զորդելոյ խորհրդոց, մինչև գալստեանն որդւոցն 'ի
,, միա եառ զմն շնորհս առ ինքն ։ Սիրեցի զայրն, որ
,, զես 'ի վերջին աւուրս վերջին ոգւով խնդրեր ։ Սի_
,, րեցի զայրն, որ 'ի լուծանիլ անդ 'ի մարմնոյ՝ առա_
,, ւել զվիճակէ եկեղեցւոյ հոգայր՝ քան զանձին վը_
,, տանգէն․․․․ Իւ արդ 'ի լոյս բնակէ Թէոդոս, և
,, 'ի պարս սրբոց փառաւորի․ անդ փարի այժմ զգրատիա_
,, նոսին․․․․ որպէս Յակաւոսն՝ մաքսիմոս և եւգե_
,, նէոս 'ի գժոխս՝ գիշեր գիշերի գոգցես ցուցանեն
,, զգիտուն աւայելի, որինակաւ ուսուցանելով՝ թէ
,, քանի խիստ է զէն վերացուցանել Տէրեմ տրանց իւ_
,, րեանց․․․․ Այժմ գիտէ զանձն Թագաւորել օգոս_
,, տոս Թէոդոս, յորժամ 'ի մն յնի քնի արքայուեն է,
,, և հայի 'ի տաճար անդր նորա ։ Այժմ է ռիրապէս
,, Թագաւոր․․․ յորժամ 'ի կոստանդիանոս յարի․․․ 'ի
,, նախնի հաւատացեալ Թագաւոր․․․ և 'ի որքայնա_
,, տակ մայր նի հեղինէ ||․ և այլն ։



ՆՆՋՈՒՄՆ

# ՆՆՋՈՒՄՆ

### և Յարութիւն եօթն խոստովանողաց՝ որ Մանկանցն Եփեսոսի։

Հ. հոկտեմբ. 24։ Յ. հոկտ. 23. կամ 22. առ և օգոստ. 4։ Լ. յուլ. 27։ Ասոր. մարտ. 7։ Արաբ. հոկտ. 22. կամ սեպտ. 1։ Ճառընտ. Ի. երես. ՀԼԷ։ Բոլլանդեանն կայեր. 'ի Է հատ. յուլ. եր. 375 = 397։ Յակոբ սրճեցի։ Գրիգոր տուրոնեցի։ Եւտիքէոս աղեքսանդրացի։ Փոտ 'ի մատենադարանի. մատ. ՄԾԳ։ Սուրիոս 'ի ճառընտրաբանէ։ Ասեման. մատենագր. արևել. Ա. 336. և այլք։ (1)

ԵՕԹՆ ՆՇԹԻԻ ԼՈՒսաւոր ճրագունք որ եկեղեցւոյ՝ եօթն ննջօղքն քնով անմահութե՛ 'ի հաւատս յարութե՛ համօրէն ննջեցելոց, էին 'ի ժամանակս թագաւորութե՛ դեկոսի կռապաշտ կայսեր հռոմայեցւոց՝ որ նստաւ յամի տն 249, պատանիք և երիտասարդք ծաղկահասակք՝ բարետեսիլք և վայելուչք, յեփեսոս քաղաքէ ասիացւոց, որդիք փառաւոր իշխանաց հեթանոսաց. և անուանք նց՝ առաջին, աքիլլէոս, դեմետրիոս, դիոմեդէս, եւգինէոս, պրո-

պրոքատիոս, ՝ շամբատ, և կորիկոս (որ ըստ այլոց՝ կիւրակոս):

Եւ եղև ՝ի խաղալ դեկոսի արքայի ՝ի կողմանս արևելից, և ՝ի շրջիլ զերևելի երևելի քաղաքօք ՝ի սահմանս տէրութեան իւրոյ, եկն եհաս և յեփեսոս քաղաք մեծ. ուր բնակէին հեթանոսք և քրիստոնեայք ոչ սակաւ. և ցորչափ եղև անդ կայսրն, հանապազ առաջակայք էին նմա եօթանեքին այն մանկունք աւագաց՝ իշխանք և հարք իւրեանց, արկեալք զմիջով զկամար ոսկի և զզարդ զինուորութեան: Իսկ դեկոս կռամոլ արքայ, և դաժան հալածիչ քրիստոնէից՝ յաւուր միում արար ՝ի քաղաքի անդ հրապարակաւ հանդէս պաշտաման սուտ աստուածոց իւրոց, իբրև տօն խրախուութեան ՝ի պատիւ արամազդայ, ապողոնի, և արտեմեայ դիցն: Հրաման ետ թագաւորն, և ժողովեցան ՝ի տեղի անդր մեծամեծք և փոքունք, և մատուցին զոհս և խունկս անշունչ տարերաց ձեռագործաց, և ուրախ լինէին ՝ի յիմարութեան պաշտամանն իւրեանց: Ստիպեցին և զքրիստոնեայս յայն գործ դառնութեան. և որ վատասիրտքն էին, զոհեցին կռոց. իսկ քաջասիրտքն և հաստատունքն ՝ի հաւատս՝ մատնեցան ՝ի ծանր տուգանս և ՝ի պէսպէս տանջանս, և բազումք ՝ի նոցանէ խնդութեամբ ընկալան զմահ վասն անուանն քրիստոսի:

Զայսպիսի համբերութիւն երանելի նահատակացն տեսեալ եօթանեցունց մանկանցն, կարեկից լինէին նոցա սրտացաւութեամբ. զի ըն-

տանիք եւն քրիստոնէից , և հաճեալք ընդ գնացս նոցա և ը̃ կրօնս պարկեշտութե̃ . որով և ձեռպեալք տիրապէս հասու լինել ճշմարտութե̃ քն̃ական հաւատոց՝ հաւատացին 'ի քս̃ եօթանեքին միանգամայն , և մկրտեցան 'ի ծածուկ . և փոխեալ զանուանս իւրեանց՝ զոր 'ի ծնողացն ունէին , կոչեցան՝ մաքսիմիանոս ( կամ մաքսիմոս ) , մարտիանոս ( կամ մարտինիոս ) , ամղիքոս , դիոնեսիոս , կոստանդիանոս , անտոնինոս , և յովհաննէս (2) . և այնուհետև հանպ̃զորդէին 'ի պահս և յաղօթս : Եւ յաւուր՝ յորում միւսանգամ կատարէին հեթանոսք զտօն գարշելի կռոց իւրեանց , խոյս տուեալ նո̃ց յամբոխէ՝ մտին յեկեղեցի . և քրձազգած եղեալ՝ տարածեցին զանձինս 'ի վե̃ր գետնոյ , և արկեալ մոխիր 'ի վե̃ր գլխոց իւրեանց՝ հեղուին արտասուս առաջի այ̃ն . և խնդրէին զդարձումն մոլորելոցն :

Ազդ եղև բանս այս յականջս դեկոսի . բարկացաւ յոյժ , և ետ ածել զնո̃ կապանօք առաջի իւր՝ իբրև զգառինս ձգեալ 'ի գայլոց : Խօսել սկսաւ ը̃ նո̃ թշ̃րն ահագին սպառնալեօք , և նեղէր զնո̃՝ 'ի բաց կալ 'ի քս̃է , և զոհել կռոց : Իսկ նոքա համարձակ ընդ մի բերան խոստովան լինէին՝ ասելով . պատրաստ եմք մինչ 'ի մահ վկայ լինել ճշմարտութե̃ քսի̃ այ̃ մերոյ և տն̃ , և ոչ ոք կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյ նո̃ր : Դարձեալ որոքանօք խօսէր ընդ նոսա դեկոս՝ մեծամեծ խոստմամբք հանդերձ , եթէ հաւանեսցին

նմ՟. բայց ոչինչ կարաց յաղթել նոցա . վ՟ն հրաման ետ կտրել զգօտի նց՟ , և մերկացուցանել զնս՟ ՚ի պատուոյն , հարկանել զծնոտս նոցա , և գանել գաւազանօք իբրև զատահակս . և այնպէս արձակեաց զնս՟ առ ծնղս մի՝ գնալ ՚ի տունս ՚ի պատուի՟ երեսաց ծնողաց նոցա , ժամ եղեալ աւուրս քանի մի . զի թերևս զղջասցին աստ , և յուղղութի՟ եկեսցեն . կմ՟ թէ հարք նց՟ հաւանեցուսցեն զնս՟ . քանզի ինքն թգ՟րն հանդերձեալ էր գնալ ՚ի գործ ինչ կարևոր արտաքոյ քաղաքին , և դառնալ :

Իսկ նք՟ ելեալ յերեսաց թագաւորին՝ խորհեցան գտանել տեղի թաքստի , զի մի՛ վտանգ ինչ հասանիցէ նց՟ ՚ի պատճառս ծնողացն . եկա՛յք ասեն մեկնեցուք ՚ի քաղաքէ աստի , մինչչև է դարձեալ այսրէն ոսոխն հոգւոց մերոց : Նախ ժողովեալ զոսկին և զարծաթն՝ զոր ունէին ՚ի ծնողաց և ՚ի զինուորութե՟ , ցրուեցին ՚ի տնանկս . և ապա սակաւ ինչ առեալ ՚ի պէտս իւրեանց , ելին գնացին լռելեայն ՚ի մերձակայ լեառն՝ ոքղոս կամ ողքոս կոչեցեալ , (որ ըստ ոմանց աւե երկու մղոնաւ հեռի լինել ՚ի քաղաքէն , և յոմանց կարծի լինել ոլիմպոս մին ՚ի լերանց՝ որք կոչին այժմ քեշիշ տաղը . ) և մտեալ ՚ի քարայր մի մեծ՝ դադարեցին ՚ի ներքին խորշս նորա . և կացեալ յաղօթս՝ խնդրէին յայ՟ արտասուօք ցուցանել նց՟ զճ՟պհ կենաց , և ապրեցուցանել ՚ի կորստենէ հոգւոյ քան մարմնոյ : Եւ կացեալ անդ զժմկ՟ ինչ՝ օր զաւուր

ւուր առաքելին 'ի քաղաքն զամղիքոս, ( որ ը̅ այլոց՝ յամբղիքոս ասի, և ը̅ ոմանց մաղքոս, ) որ էր կրտսերագոյն 'ի նս̅, այլ՝ իմաստուն, և յոյժ 'ի գործս ժիր և ճարտար՝ և ոտիւքն արագ, գնել հաց, և տեղեկանալ մտ̅ անցիցն հալածանաց ։ Եւ նա ծպտեալ 'ի կերպարանս մուրացիկ աղքատի՝ երթեւեկէր զգուշութբ̅ ։

Եւ յաւուր միում գնացեալ ամղիքոսի յանծանօթս՝ լուաւ, եթէ անդրէն եկեալ է դեկոս 'ի քաղաք անդր եփեսացւոց. և ետես իսկ՝ զի բանիւ նր̅ խստագոյնս տանջէին զհաւատացեալսն 'ի ք̅ս սրով և հրով, կապանօք և բանտիւք. ետես և զայլս 'ի կախաղանս և 'ի քերանս. և զի զորս սպանանէին՝ զգլուխսն 'ի ձող ցցեալ՝ կանգնէին արտաքոյ 'ի դրունս ք̅ղ̅քին ։ Լուաւ և զայն, զի արքունի խնդրակք զհետ մտեալ էին գտանելոյ զեօթն պատանիս զորդիս իշխանաց, և խնդրէին զնս̅ 'ի հարց իւրեանց ։ Յայնժամ ահաբեկեալ ամղիքոսի, և հազիւ հազ առեալ սակաւիկ մի հաց՝ փախեաւ գաղտաբար 'ի ք̅ղ̅քէն, և ելեալ 'ի լեառն՝ պատմեաց ընկերացն զոր ետեսն և զոր լուաւ ։ Եւ եդեալ առաջի զսակաւ հացիկն՝ կերան և գոհացան զա̅յ. և յարուցեալ կացին յաղօթս մտ̅ հալածանացն դադարելոյ ։ Եւ ապա ասեն ցամղիքոս . ը̅ առաւօտն կանուխ երթիցես 'ի քաղաքն, և դարձեալ տեղեկասցիս անցիցն ամի. և փութով առցես յոլով հաց՝ որ բաւական լիցի մեզ աւուրս քա-

նի մի․ մանաւանդ զի այժմ քաղցեալ մնա-
ցաք ։

Եւ զայս ասացեալ՝ յանձն արարին զանձինս 'ի ձեռս ամենախնամ տեսչութեն̃ն ա̃յ, և 'ի քուն մտին․ և ը̃ մարմնական քնոյն աւանդեցին զհոգիս իւրեանց առ ա̃ծ, մնալով իբրև կենդանի ննջեալ, և պահեալ անփտաս և անապական՝ խնամօք ամենակալին ։

Իսկ Թ̃րն իբրև խնդրեաց զնո սաստիկ բազումս, և ոչ եգիտ, նեղէր զծնօղս ն̃ց յայտնի առնել զտեղի թաքստեան որդւոց իւրեանց․ և ն̃ք քանզի տեղեկացեալ գիտէին՝ թէ 'ի լերինն ոքղոսի զօղեալ կան յայրին, յակամայ կամս պատմեցին Թ̃րին ։ Յայնժամ հրամանն ետ դեկոս փակել զդուռն այրին մեծամեծ վիմօք․ զի անդէն շնչարգել և սովամահ կորիցեն ։ Եւ 'ի խնուլ անդ զմուտս այրին, Թէոդորոս և Ռուփինոս իշխանքն՝ որ վերակացու էին գործոյն, ք̃զի 'ի ծածուկ քրիստոնեայ էին, գրեցին 'ի տախտակ մի կապարեայ զանուանս եօթնեցունց պատանեկացն, և զժ̃մկս իւրացն, և թէ զիա̃րդ վ̃ն որ 'ի ք̃ս հաւատոց հալածանօք կատարեցան աստ 'ի յայրիս՝ սովալլուկ եղեալ ։ Եւ եդեալ զտախտակն 'ի մէջ վիմաց շինուածոյն 'ի ներքոյ կողմանէ՝ փակեցին արտաքոյ․ զի թերևս եկեսցէ ժ̃մկ, և գտցին ոսկերք ս̃ցն․ և յայտնի լիցի՝ թէ ո̃յք իցեն ։ Զայս արարեալ՝ դարձան առ Թ̃րն, և այնուհետև լռութի̃ եղև զն̃ցէ ։ (3)

Ննջեցին աւուրք իշխանութե̃ կռապաշտ կայսերաց,

րայ, և զօրացաւ թշնամութիւն քրիստոնէից յետ
մեծին կոստանդիանոսի . և զկնի առ փոքր
մի կրկին վրդովելոյ հաւատացելոց 'ի հա-
լածանս յուլիանոսի ուրացողի, և վաղեսի
արիանոսի, եհաս ժամ մեծին թէոդոսի կայ-
սեր (4) . առ որով իսպառ զիջաւ հեթանո-
սութ̅ն, և լցաւ ա̅մ երկիր քրիստոնէութ̅բ, և
խաղաղութ̅ն էր եկեղեցւոյ յերեսաց օտա-
րաց ։ Բայց կային ազգք ազգք հերձուածո-
ղաց և աղանդաւորաց 'ի մէջ հաւատացելոց .
զորս օր ը̅ զօր նուաճել և յուղղութ̅ն ածել
փութային արթուն հովիւք ընդ ա̅ծասէր
թագաւորին ։ Յայնպիսում ժմկի յարեան
և արք ոմանք չարազանդ հերձուածողք ոչ
միայն յԱռիանոսաց և յաննշանից, այլև 'ի
քահանայից և 'ի նշանաւորաց, յորս էին թէո-
դորոս և դայիոս երիցունք կի̅ եպիսկոպոսունք պա-
ղեստինացիք, որք ասէին թէ չիք յարութ̅ն
այս հողացեղ մարմնոյ (5) ։ Իսկ թէոդոս ար-
քայ և ա̅մ անձինք բարեպաշտից յոյժ հո-
գային, և աշխատէին զայն յետին մոլորութ̅ն
արդուկեցւոց, խնթալով զի մի ճարակեսցի
'ի ժողովրդեանն ա̅յ ։ Նաև մարդասէր տ̅րն
ողորմեցաւ եկեղեցեաց ուղղափառաց, և
նորահրաշ սքանչելեօք հաստատեաց զնոսին
'ի հաւատս յարութ̅ն հասարակաց ։
Քանզի էարկ 'ի սիրտ իշխանի միոյ եփեսաց-
ւոյ՝ որում անուն էր դալիոս կա̅ ադողէ, զի
մերձ 'ի յայրն՝ յոր փակեալ էին մանկունքն,
կամեցաւ նա փարախ շինել խաշանց իւ-
րոց և հօտից . և 'ի շինելն ծառայք իշխանին

թաւալեցուցին քարինս 'ի դրանց քարայրին առ 'ի պէտս շինուածոյ իւրեանց ։ և զի ծերպք ևս բացեալ էին յերեսաց ժայռին , յայնժամ բացաւ և այրն ։ այլ ն՟ք ոչ մտին 'ի ներքս , այլ յայն օր դարձան ը՟ երեկս 'ի տունս իւրեանց ։

Եւ յայնմ աւուր յարոյց ա՟ծ զեօթանեսին ո՟ք մանկունսն իբրև 'ի խոր քնոյ՝ տալով ն՟ց կենդանութի՟ իբրև զառաջինն ։ մինչ զարթուցեալ նոցա պայծառ տեսլեամբ , և 'ի միտս եկեալ կարծէին , թէ յերեկային ննջեցին , և ը՟ վաղորդային զարթեան (6) ։ ք՟զի և հանդերձք ն՟ց և ա՟մ ինչ անփուտ և անեղծ կային , և ահն և երկիւղն դեկոսի տակաւին էր 'ի սիրտսն՝ Սմին իրի փութապէս առաքեցին զամղիքոս 'ի ք՟ղքն գնել հաց բաւական՝ ը՟ստ առաջին բանի իւրեանց ։ միանգամայն և տեղեկանալ ևս՝ թէ զինչ խորհի վ՟ս ն՟ց թ՟գրն դեկոս ։ եթէ ստիպով խնդրեսցէ աստէն զմեզ 'ի ձեռաց ծնողաց մերոց , պատրաստ եմք մտանել զանձինս 'ի մահ վ՟ս ք՟ի , զի մի 'ի պատճառս մեր այլք վտանգեսցին ։

Ելեալ ամղիքոսի ը՟ դուրս այրին՝ իբրև ետես զքարինսն կուտեալ 'ի տեղւոջն , զահի հարաւ ։ զի չէր ինչ իմացեալ ն՟ց զխնուլն այրին քարամբք , և զվերստին բացումն , յերեսաց մ՟ծ աւուր քնոյն՝ զոր ննջեցին ։ վ՟ս համարեցաւ դաւ ինչ լինել 'ի հեթանոսաց ։ ծածկեաց փակեղամբն զերեսն , և այնպ՟ դնայր զճ՟նպհ իւր զգուշութ՟բ , զի մի ոք 'ի կռա-

պաշ-

պաշտից ձանձրացեալ զնա։ Եւ իբրև մերձ ե-
ղև 'ի քղքն՝ շուրջ հայեր տեսանել, թէ
կայցէ՞ ոք յարքունի սպասաւորաց. և ոչ ե-
տես զոք յորոց կասկածէր. և հասեալ 'ի
դուռն քղքին՝ ետես զշինուածսն այլափո-
խեալ յոյժ. մինչև յերկբայս լինել նմա, ե-
թէ եփեսոս իցէ այն. ետես և զնշան սբ.
խաչին քրի 'ի դրունս և 'ի պարիսպս քղքին,
և երկրպագեալ ահիւ և դողութ՝ այլ յայլմէ
լինէր և զարմանայր ընդ նոր տեսիլն, զոր տե-
սանէր։ Լուաւ և զձայն ժամահարին. և ե-
տես զի մդիկն խաչակնքէին զերեսս իւ-
րեանց, և ողջոյն տային միմեանց ըստ օրինի
քրիստոնէութե, և երդնուին առ միմեանս
յանուն յսի քի. ետես և զեկեղեցականս
անձինս ոչ սակաւ, որք համարձակ շրջէին։
Եւ հիացեալ ասէր յինքեան. յերէկ այս
նշանս գաղտնի էր, և այսօր յայտնի զիարդ
եղև. և շուրջ եկեալ ընդ քաղաքն՝ զնոյն տե-
սանէր և լսէր, և յաւելոյր 'ի զարմացումն
մեծ, և խռովէին ոգիք նր. զի իբրև երազ
համարէր տեսանել, և ոչ կարէր համօրէն
կալ 'ի մտի իրացն փոփոխութե. երէկ աստ
էր էին հրապարակք բազմութբ անհաւատից,
որք խոշտանգէին զհաւատացեալս քսի. և
այսօր համարձակ քս պաշտի, և անհաւա-
տից նշան ինչ ոչ երևի։ Եւ կալեալ այր մի՝ ե-
հարց, թէ քաղաքս այս եփեսոս է. նմա ա-
սաց. այո որդեակ։ Իսկ Ամղիքոս շուարեալ
'ի կարծիս անկանէր. մի՞ արդեօք հնարք ի-
ցեն այն՝ հեթանոսաց, առ որսալոյ զթա-

քուցեալսն 'ի քրիստոնէից . կամ թէ ասէ՝ դարձոյց արդեօք ա̃ծ զսիրտ արքային , և թոյլ ետ պաշտել աներկիւղ զքրիստոնէութի . սակայն և այնմ ոչ ունէր կալ 'ի մ̃ի խորհրդոցն՝ յերևաց այլ ը̃ այլոյ փոփոխմանն ն̃մի , զոր տեսանէր : Իսկ ասէ այրն ցամղիքոս . և դու ուստի՞ իցես՝ որ ոչ գիտես զ̃քղքս եփեսացւոց : Իսկ նա ոչինչ ասաց առ այշուէն . այլ գնացեալ ետ զդրամն 'ի հացավաճառն , թէ հա՛ց տուր : Իսկ նորա տեսեալ զդրամն հին և անսովոր՝ ոչ կարաց ճանաչել . ցուցանէր և այլոց եղելոց 'ի շուկայն . և ոչ նոքա ծանեան : Իսկ ասեն ցամղիքոս . ա՛յր դու ուստի՞ է քեզ այս . միթէ գա՞նձ գտեր 'ի հնոց : Իսկ նորա ևս քան զևս վարանեալ 'ի խ̃րդս իւր , և չև ևս հանդարտեալ յահէ հեթանոսաց՝ աղաչէր ստիպելով , և ասէր . փութամ գնալ յիմ գործ . խնդրեմ՝ տո՛ւք ինձ հաց 'ի գին դրամոյս , և կամ զդրամն դարձուցէ՛ք յիս , և թողէ՛ք երթալ . բայց նք̃ հարկեցուցանէին ասել , թէ ուստի՞ 'ի ձեռս բերեալ իցէ նր̃ զայն դրամս :

Իսկ 'ի տարածիլ համբաւոյն 'ի մէջ ամբոխին՝ զեղան զնովաւ բազմութի՛ւն մարդկանն , և առեալ տարան զամղիքոս առ բդեշխ քաղաքին՝ որ կոչիւր անտիպատրոս : Հարցանէր զնա բազմօք բդեշխն . և նա ո՛չ գիտէր՝ թէ զի՛նչ ասիցէ . զի զարհուրեալ էր և 'ի զարմացման եղեւ : Յայնժամ արկին զփակեղն 'ի պարանոց նր̃ , և առեալ տարան զնա առ եպ̃ս քղ̃քին , որում անուն էր մարինոս (7) .

եկն

եկն անդր և բդեշխն իւրովքն հանդերձ ․ և ասէին՝ թէ այրս այս վաղեմի գանձ է գտեալ ։ Իբրև ետես եպսկն զդրամն, և ընթերցաւ զանունն դեկոսի՝ որ գրեալ կայր 'ի նմին, ասէ ցամղիքոս ․ ուստի՞ է քեզ այս, և ո՞ւր գտեր զսա օրդեակ ։ Պատասխանի ետ ամղիքոս հեզաբար ․ ո՛չ ուստեք իբրև նոր ինչ գտի զդրամս, այլ զոր յերէկն և յեռանդն վարէր քաղաքս ողջոյն ․ զի և ես ինքն յայսմ քաղաքի ծնեալ եմ և սնեալ ։ Նայլ իբրև ետես՝ թէ ոչ հաւատան նմ̃, և ոչ է ոք՝ որ ճանաչէ զինքն, համարձակեցաւ յայտնել զանձն, և ասել զանուն հօրն և զպատուհն̃ ․ որդի եմ ես ասէ հաւփոսի կոմ̃սի, որ մի է յաւագաց քղ̃քիս և 'ի մագիստրոսաց դեկոսի արքայի ։ Եւ որք լուանն՝ ծաղր առնէին զնա իբրև թափեալ 'ի խելաց ․ և այլք համարէին խօսել բանս խաբէութ̃ ։

Իսկ բդեաշխն երկեւուցանէր զնա և ասէր․ եթէ ոչ ասես՝ թէ ուստի՞ իցէ դրամս այս, քղ̃մ տանջանօք փորձեմ զքեզ ։ Յայնժամ ասէ ամղիքոս ․ աղաչեմ զձեզ տեա՛րք իմ, ասացէ՛ք ինձ զոր ինչ հարցանեմս ․ քաղաքս այս եփեսո՞ս է ․ և դեկոս թ̃րն 'ի քաղաքի՞ս է՝ թէ ոչ ։ Օ այս ասաց, և անդրէն շուրջ հայէր՝ տեսանել, թէ գտանիցէ զոք 'ի բազմութե̃ անդ 'ի ծանօթից իւրոց ։ Եւ նք̃ ասեն ․ քղ̃քս եփեսոս է ․ այլ չի՛ք թ̃ր 'ի վր̃ երկրի՝ որոյ անուն նր̃ դեկոս կոչի ․ թող թէ 'ի քղ̃քիս, ուր նստի իշխան 'ի գիմաց

քնն̃

քննանէր արքայն Թէոդոսի։ Ասէ Ամբղիքոս. ապշութիւն ունի զմիտս իմ, և ոչ գիտեմ՝ զի՞նչ ասացից. ես յերէկ ՚ի քաղաքի աստ յայսմիկ տեսի զԴեկոս. և իշխանք նորա և ծառայք տէրունին քաղաքիս։ Յայնժամ ասէ եպիսկոպոսն. ո՜վ այր դու, կամ դու յիմար ես, և կա՛մ զմեզ խաբել կամիս. ո՞ւր է Դեկոս, զոր հարցանես ցմեզ. ՚ի վաղեմի և ՚ի կռապաշտ թագաւորաց էր նա։ Երկնեաց անդրէն Ամբղիքոս, յերէկ Դեկոս ՚ի քաղաքս էր, և չարչարէր զքրիստոնեայս. և մեք փախեաք ՚ի նմանէ, զի և մեք քրիստոնեայք եմք. և թէ ոչ հաւատայք ինձ, եկա՛յք զհետ իմ, և ցուցից ձեզ զընկերսն իմ՝ որ կան ՚ի թաքստի յողքոս լերին. և թէ զանձ կարծէք գտեալ ՚ի մէնջ, ոչ վրիպիք ՚ի յուսոյդ։

Յայնժամ ասէ եպիսկոպոսն ցբդեշխն և ցմեծամեծսն. ո՜վ եղբարք՝ տեսիլ հինն է բանս այս, և ցոյցք ամենայն երկրի։ Եւ յարուցեալ գնացին միաբան զհետ Ամբղիքոսի. և յորժամ հասին ՚ի դուռն այրին՝ եգիտ եպիսկոպոսն զկապարեայ տախտակն, և ընթերցեալ՝ տեղեկացաւ և ցուցանէր ամենեցուն ապշութիւն։ Իսկ որք ՚ի ներքս մտէին երանելի մանկունքն, լուեալ զոտնաձայն բազմութեան ամբոխին, համարեցան՝ եթէ յըմբռնել զինքեանս գան սպասաւորք Դեկոսի. բայց Ամբղիքոս յառաջեաց եմուտ առ ընկերս իւր, և պատմեաց նոցա զնորահրաշ փոփոխումն իրացն, և քաջալերեաց զնոսա բանիւք խնդութեան. զի մեծ արար Տէր ասէ զողորմութիւն իւր ընդ մեզ, և յայտնի արար զմե-

ծուխթի սքանչելեաց լուրոց : Յետ այսորիկ մտին և այլք 'ի գլխաւորաց եկեղեց 'ի յայրն . և տեսին զոր մանկունսն նստեալ զուարթ և լուսափայլ դիմօք . և երկրպագեալ ողջոյն ետուն և համբուրեցին զկենդանի նահա-տակս քն : Յայնժամ սկսան նք պատմել մի ըստ միոջէ որ ինչ անցք անցին ընդ նոսա , և զամ եղեալ գործսն յաւուրս խուրեանց :

Եւ վաղվաղակի փութացաւ գրեաց եպսն առ Թէոդոս Թգւրն զսքանչելիսն՝ որ եղեն 'ի սքանչելի յարութեն մանկանցն եօթանե-ցունց : Եւ նա իբրև լուաւ , էր եղև անսպա-ռուրախութ . յարեաւ ձեպով ձիով ա-րար 'ի բիւզանդիոյ և եկն յեփեսոս , և բա-զում ժողովուրդք ընդ նմ . զի որք լսէինն՝ զհետ ընթանային : Եւ 'ի մերձենալ առ-քայրն՝ ելին եպսքն ընդառաջ նր . և տեսեալ Թէոդոսի զերանելի մանկունսն , զի փայլէին երեսք նոցա անսպառմամբ գեղով իբրև զկեր-պարանս զգեցեալ հանդերձեալ ծին , սքան-չացաւ յոյժ . և իջեալ յերիվարէն՝ ողջու-նեաց զնս . և անկեալ զիւրաքանչիւր պա-րանոցաւ՝ համբուրէր զնոսա ջերմ արտա-սուօք :

Յետ այսորիկ մտեալ 'ի յայրն՝ նստան 'ի տեղւոջն , ուր քուննեալ էին երանելիքն . խօ-սեցան ընդ Թգւրն , և ասեն . խաղաղութ կաց-ցէ Թգւրութի քո . և արդ՝ գիտեա , զի վն տրտմութե սրտի քո և ամ բարեպաշտից՝ յա-րոյց զմեզ այժ իբրև 'ի մեռելոց . զի սովա 'ի միտ առնուցուն ամքին զզօրութիւ արար-չին ,

չին, և ծանիցեն մարդիկ՝ եթէ գոյ յարութիւն հաղացեալ մարմնոց մեռելոց. զի նոյն Տէր է՝ որ յարոյց զմեզ 'ի մահահանգոյն ննջմանէս յետ այսչափ ժամանակաց, և ունի յարուցանել զամենեսին՝ որք ննջեն 'ի գերեզմանս : Եւ զայս ասացեալ՝ խնդրեցին օրհնութիւն յեպիսկոպոսէն, և խոնարհեցուցեալ զգլուխս իւրեանց առ Աստուած յանդիման թագաւորին՝ աւանդեցին զհոգիս 'ի ձեռն հրեշտակաց Աստուծոյ :

Իսկ թագաւորն և եպիսկոպոսն հանդերձ ամենայն բազմութեամբ 'ի հիացման եղեալ՝ փառաւոր առնէին զԱստուած: Յայնժամ հրամայեաց թագաւորն՝ առնել մի մի տապանակս ըստ թուոյ եօթանց սրբոց, և զարդարել ոսկւով և արծաթով, և դնել 'ի նոսա զմարմինս սրբոցն Աստուծոյ : Եւ մինչդեռ կազմէին զայն, 'ի գիշերին յայնմիկ երևեցան սրբքն թագաւորին, և ասեն. զմեզ Աստուած 'ի հողոյ յարոյց, և ոչ յոսկւոյ կամ յարծաթոյ. վասն յերկրի անդ՝ ուր յարեաք, ամփոփեա՛ զմեզ. զի և 'ի միւսանգամ գալստեան փրկչին՝ 'ի հողոյ անտի յարիցուք : Նայա 'ի վաղիւն անդր հրամանաւ արքայի փորեցին զտեղին, և անդեդին զսրբսն. և արարին զայրն եկեղեցի, և զարդարեցին ոսկեզօծ ապակւով. և կատարեցին անդ ամենաժողով տօն սրբոցն. և ապա դարձաւ թագաւորն 'ի կոստանդնուպօլիս ուրախութեամբ մեծաւ գոհանալով զԱստուծոյ : Եւ որք լուանն, հաստատեցան 'ի հաւատս յարութեան. և եղև անպատմելի խնդութիւն ուղղափառաց : (8)

Գործեցաւ այս ամենայն՝ ըստ Չրգրին ժամանա-

կա

կայսրութե̃ , յամի Տն̃ 389 , որ էր մետասա-
նեորդ ամ̃ թգ̃րութե̃ մեծին Թէոդոսի , Ճ̃ն
ամօք յետոյ քան զաւուրս Դեկոսի · որպէս
մեկնեն զնի 'ի յայսմաւուրս մեր · և վ̃նկ իսկ
խորհրդով կատարի 'ի մեզ տօն ս̃ր մանկանցս
Եփեսոսի՝ զոյգ ը̃ տօնախմբութե̃ ս̃րյն Թէո-
դոսի Թ̃գրի , բայց յուրոյն յիշատակէ նոցին
եօթն ննջողաց յայլում նու̂ագի · ոչ̃ եթէ
այն իցէ յիշատակ ննջմանն նց̃ · և այս յիշա-
տակ յարութե̃ նց̃ ։

Նոյնպէս գտանեմք և 'ի տօնացոյցս յու-
նաց և մոսկովաց եկեղեցս 'ի տարւոջ զյիշա-
տակ սոցա · յօգոստոսի 4 · և 'ի հոկտեմբե-
րի 22 · Թէպէտ և 'ի բասիլեան յայսմա-
ւուրս յունաց՝ 'ի միում վայրի եւեթ գրի
պատմութի նոցա · 'ի հոկտ · 23 · ոմ̃ և յայս-
մաւուրքն մեր զնէ լոկ 'ի հոկտ · 24 ։ Եր-
կիցս յիշատակեն զսոսա և եթէոպացիք և
ղփտիք՝ 'ի զանազան աւուրս · իսկ առ հռով-
մայեցիս Թէպէտ և 'ի 27 · յուլիսի զնի յի-
շատակ ն̃ց , բայց առ այլևայլ վկայաբանս
նոցին գտանի և 'ի 27 · յունիսի · կմ̃ յօգոստ ·
28 · և կամ 11 ։ և չիք ազգ քրիստոնէից՝ որ
ոչ առնիցէ զյիշատակ ս̃ցս զ̃նե միանգամ
'ի տարւոջ ։

Բայց որպէս սքանչելի եղև ննջումն և յա-
րութի ս̃ց մանկանցս , նոյնպէս և երևելի
սքանչելիք պատմին զն̃ցէ յետ միանգամ
վախճանի նց̃ · յորս մեծ է այն , զի և 'ի յե-
տագայ դարս ասի՝ Թէ անապական պահեա-
իցեն մարմինք նց̃ 'ի նմին այրի , և տեսեալ

'ի

՚ի թաղմանց՝ ոչ միայն յարևելեայց, այլ յարևմտեայց ևս։ Քանզի վկայէ և գրիգոր տուրոնեցի՝ որ ծաղկեցաւ սրբութեամբ ՚ի վախճանն վեցերորդ դարուն, թէ յաւուրս իւր կային անդ յայրն ողջոյն մօտ յեփեսոս մարմինք սրբոցս՝ իւրեանց զգեստուք ծածկեալք։ Նոյն ՚ի վարս սրբոյն վիլլիբալդոսի գրի ՚ի ը դարու, թէ ցուցանէին զմարմինս նոցա ուխտաւորաց եկելոց անդր՝ տակաւին իբրև կենդանիս։

Նոյնպէս կային և ՚ի ժա դարու. որպէս յայտ է ՚ի վարուց սրբոյն եդուարդայ արքային անգղիացւոց, զոր գրեաց եղբերդոս աբբայ ՚ի յաջորդ դարուն. ուր պատմի և այսպիսի ինչ հրաշալի. զի յաւուր սրբոյ զատկին յետ հաղորդելոյ սբ. խորհրդոյն՝ եկն արքայ եդուարդ յապարանս, թագմիլ ՚ի սեղան ընդ մեծամեծս իւր. բայց մտօք նորա ոչ զկերակրովք և զըմպելեօք յածէին, այլ՝ զերկնային խորհրդովք և զնծային յայտնութեամբք. մինչ զի սակաւ սակաւ զանձն ժողովէր յուտելն՝ որպէս պատկառելով յումեքէ, և յեղակարծ փոփոխմունս ՚ի դէմսն ցուցանէր՝ զուարթութեան և տխրութեան։ Այլ իբրև առանձինն եղև ընդ ոմանս ՚ի մտերիմ սիրելեաց իւրոց՝ յառաջիկայութեան եպիսկոպոսի միոյ, և աբբայի միոյ, թախանձէին զարքայ՝ ասել զպատճառս այնպիսի շարժմանց այլայլութեան։

Յայնժամ յոգւոց եհան բարեպաշտ արքայն, և ասէ. մինչդեռ բազմեալ կայի ՚ի սեղանի, յափշտակեալ հոգւով՝ տեսանէի

զեօ-

զեօթանեսին սրբ մանկունսն եփեսոսի 'ի լե-
րինն ոչքոսի՝ ընկողմանեալս յայրի անդ իւ-
րեանց ․ և յանկարծել իմաստ խնդամիտ կա-
րոտանօք 'ի կերպարանս զիմաց ն̃ց և զխօսա-
կի և զգեստուց , տեսի և աչաց յանդիման
աչաց իմոց շրջեցին զանձինս կողմանէ 'ի
կողմն իբրև յանկողնի ․ զի որք ցայժմ հանգ-
չէին 'ի վ̃ր աջոյ կողման , դարձուցին զան-
ձինս յահեկակողմն ։ Եւ այս է սակս նշան
մեծի փոփոխումն , որ հանդերձեալ է լինել
'ի վ̃ր երկրի վ̃ս մեղաց մ̃րդկան , յառնել ազ-
գի 'ի վ̃ր ազգի , և լինել ահագին արկածից՝
ցամս եօթանասուն ․ զի զայնչափ ամս կաց-
ցեն սրբ մանկունքն 'ի վ̃ր ձախոյ ուսոյ իւր-
եանց ։ Իսկ որք լուանն զառաջեալն 'ի թա-
գաւորէն՝ զարմանային ․ զի և չէին իսկ տե-
ղեակ վ̃ս բանի մանկանցն այնոցիկ ․ և թա-
գաւորն սկսաւ պատմել ն̃ց մի ը̃ս միոջէ զխօսս
և զչարչարանս ն̃ց , և զօրինակ ննջմանն և
յարուեն՝ տալով և զանուանս իւրաքանչիւր ։
Յայնժամ խորհեցան եպ̃սունք և մեծամեծք
անդ զխացւոց առաքել դեսպանս առ կայսրն
յունաց 'ի կոստանդնուպօլիս՝ վ̃ս ստուգու-
թե̃ բանիցս այսոցիկ ․ և հրամանաւ կայսեր
գնացին ամենք յեպ̃սաց և յերիցանց յունաց
յեփեսոս՝ հանդերձ դեսպանօք արևմտ-
եայց ․ և մտեալ 'ի յայրն եօթն ննջողաց խըն-
կօք և մոմեղինօք՝ տեսին զն̃ս տարածեալս
'ի վ̃ր ձախոյ կողման իւրեանց ․ և դարձան
հիացմամբ 'ի տեղիս իւրեանց ։

Օ այսպիսի յո̃ջ բերեն բոլլանդեանք խու-

զարկուք հինն վկայաբանութեց՝ առանց ընդ-
բանս ինչ ածելոյ, առեալ 'ի գրոց եկեղեցա-
սի աբբայի հաւաքալեցւոյ՝ որ էր 'ի Ժ̅Է դա-
րու՝ մերձաւոր ժամու․ զնոյն վկայէ ասեն
և ժամակից նր̅ Գուլիելմոս Մալմեսբուրացի,
և հաստատէ զկատարումն գուշակութեն յա-
ւուրս իւր լինել ։ Այլ մեք յայտնի տեսա-
նեմք զայս նշան գուշակութե սրբեամբք
գլխաւորեալ 'ի նմին ժմ̅ դարու՝ դրեթէ 'ի
վերայ համօրէն տիեզերաց․ զի յետ մահու
Նախասացեալ երանելւոյն Եդուարդայ ար-
քայի եղև փոփոխումն մեծ 'ի վ̅ր Ծ̅ի՝ 'ի զօ-
րանալ թուրքաց յարևելս․ որ է ժմկ բարձ-
ման թ̅գրուե ազգիս մերոյ 'ի տանէ Բագ-
րատունեաց, և աւերածոյ Ծ̅ին հայոց և ա-
սորւոց և այլ բ̅զմ՝ տեղեաց յերևաց Տու-
ղրիլայ և Ալփասլանայ․ յորում ժմկի սուր
հարին և զԵփեսոս աւերացուց․ թող և զազ-
գի ազգի խռովութիս՝ որք կային զայնու
ժամաւ 'ի տրուն յունաց և արևմտեայց ։
Վասնէ և հանեներս միայնակեաց Ժ̅Է դա-
րու 'ի լեռդեան վանս սբ̅յն Լաւրենտիոսի՝
զայլ առանձին նշան բժշկուե եղեալ 'ի վ̅ր
անձին իւրոյ բարեխօսութբ̅ եօթանց ն̅ր ման-
կանց ննջողաց։ Քանզի անկեալ իմ առէ 'ի
հիւանդութի ծանր՝ հիւծել էի խաղաւ 'ի ցա-
ւոց, և ոչ կարէի շարժել անձամբ զանձն․
և մինչդեռ եւ յոգիս ապառատն կայի՝ ակն
ունելով մահու, եկն առ իս ոմն յեղբարց,
և խոստեաւ կարդալ յօգնութի զեօթն ննջող
մանկունս, ասելով թէ նոքա երագահաս

օգնական են հիւանդաց, և տան նմա քաղցր նինջ ։ Նա և ես լուայ նմ, և արարի ըստ բանի նր. և վղջկի եղև առ իս ձայն 'ի ներքուստ զի ասէր. հաւատք քո կեցուցին զքեզ. և 'ի զարմացման եղէ՟ տեսանէի հոգւով զգաստ երանելեաց՝ որ յերկինս, և 'ի մէջ նց զեօթանեսին նք մանկունսն պայծառացեալ փառօք ։ Նա իբրև դարձան միտք իմ յիս, գտի զանձն իմ ամբիծ առողջ, և զօրացեալ յարեայ յանկողնոյ, և կատարեալ առողջութ չոգայ ընդ եղբօրն ընդ այնմիկ 'ի մատուռն մօտակայ, և գոհացայ զՠյ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Պատմութիւն սրբ մանկանցս եփեսոսի՝ որ առ դերահրաշ ննջեցելեացն ննջման և յարութե նց յապուշ կրթէ զամ լսելիս, և ծածանէ զխնդս թերահաւատից, ոչ միայն քրիստոնեայք ըստ ամ աշխարհ սփռեալք՝ 'ի սկզբանէ և այսր ունին հաստատութ (ոպ հաստատէ և փոտ՝ որ էր 'ի Թ դարու), այլև այլազգիք անգամ անդրատին 'ի ծագմանէ դենին իւրեանց 'ի Է դարու. ըստ որում նախկին առաջնորդն նց՝ ոպ զայլ ինչ ինչ, նոյնպէս և զայս հրաշալուր անցս առեալ 'ի քրիստոնէից՝ այլովք հանգամանօք անցոյց 'ի գիրս իւր. զոր և յետինք նր իբրև Թարգմանք բանից նորին առաւել ևս ծանրացուցին տարապայման յաւելուածովք ։ Զայս ամ հաստատէ Ռենաւտոգիոս 'ի պատմութե պատրիարգացն աղեքսանդրիոյ՝ 'ի մէջ բերելով զանուանս հագարացի և պարսիկ հեղինակաց ։

Բայց զայդ Թողեալ՝ և ակնարկեալ մեր 'ի վկայաբանութիւնս իւրաքանչիւր ազգաց քրիստոնէից, միօրինակ գտանեմք յամենայն զճշմարտութի պատմութեանս՝ ըստ գլխաւոր պարագայից, որք միայն են խնդրելի. և եթէ անաչառ կամք իցեն՝ ոպ մեզ ասել, նոյնպէս և այ

լոց լսել, Ճշգագոյն և ընտրելագոյն տեսանի առաջիկայս պատմութե 'ի յայսմաւուրս հայոց՝ իբրև 'ի հնագոյն օրինակէ և յանապակ աղբերէ առեալ, քան առ այլս. վասն և մեք առաւել զմերս կալցուք անփոփոխ, և առկաւ ինչ կարօտացաք առնուլ և յայլոց: Դիտե՝ զի այլք բազում մասամբ՝ պէսպէս խորհրդածութեց զհետ երթեալ, և հռետորական ճարտարութեանց կամ պատճառաբանութեց (զի յայս ձգէ զմիտ ընթացք հրաշական անցից), չունին այնչափ զգուշաւոր հնութե նշանակ. ոչ հայումս: Երկրորդ՝ զի ոչ գտանի ինչ 'ի հայումս, որ ոչ գտցի յայսմ կամ յայնմ հին վկայաբանութե յունաց, լատինացւոց, ասորւոց, արաբացւոց, եգիպտացւոց, եթէովպացւոց են. իսկ յայլս իւրաքանչիւր գտանի ինչ ինչ՝ որ չմիաբանի և ոչ ըստ միումն յայնչափ լեզուաց կամ 'ի մատենագրաց. ոչ տեսանէ՝ որ միանգամ մանր կրկսէ: Երրորդ՝ որ մեծն է քան զամ, ստոյգ ժմկագրութեն յամենեսին տկարանայ. իսկ 'ի հայումս ամենևին անվրէպ ընթանայ:

Եւ պարզաբար ասել. հայերէն օրինակն մեր պիտէր բովանդակեանց՝ 'ի ցրել զիւրաւ զպէսպէս առարկուածս յեանոց: Տեսանեմք՝ զի բարոնիոս հանէ քանի մի ընդդիմութիւնս 'ի վերայ պատմութե եօթն մանկանցս եփեսոսի. բայց քաջ լուծանէ զընդդիմութիւնս նոյն ասեմանն ասորի, ոչ և մատթէոս հռադերոս յունեան. և յիւրաւէ՝ զի դուզնաքեայ մտածութիք են, և սովորական գիւտք կրիտիկաց, ըստ դատողաց՝ 'ի դժուարահաւատալի իրս. մինչ զի աւելորդ է մեզ երկրորդել աստանօր: Ուր և բովանդակեանն գուլիելմոս կոպեր՝ թէպէտև չկամելով յաղթող ցուցանել զասեմանն ընդ զբարոնիոս, անտարբեր կամի պահել զանձն ընդ մէջ նոցա. բայց արդեամբք 'ի կողմն ճշմարտասիրութե ձգի. և ըմբերանէ զայնոսիկ՝ որք վայրապար առարկոյս հանեն 'ի վերայ ճշմարիտ պատմութեց. մանաւանդ յորժամ չիցէ նոցա ակնարկել և յարևելեան մատենագիրս, այլ յարևմտեայս ևեթ յածեալ: Եւ արդ՝ եթէ ասեմանն արևելեան իրաց գիտակ իւրով մասամբ (ըստ տեղեկութե ասորի և արաբացի գրոց) ըստ բաւականին լուծիչ գտաւ առարկութեցն արևմտեայց, քանի՛ն առաւել յաջողակի յառաջ խաղայր 'ի բանս իւր, եթէ և հայերէն վկայաբանութեն լինէր հասու:

Այս զի գլխաւոր վարանք ամ խուզարկուաց և երկուանք վիճողաց յայսմ պատմութե՝ հաստատեալ է 'ի մի և 'ի

՚ի նոյն անհաստատ հիմն, յոր յանգէտս միաբանին. այն է՝ թէ ՚ի յառնել եօթն ննջողաց՝ կայր հոռոմոց կցե փոքրն Թէոդոս. և ի նմին չափեն զմիջոց ննջման մանկանցն՝ յաւուրց անտի դեկոսի: Բայց սակայն պարտ էր գտնել ըստ հայումն՝ յաւուրս մեծին Թէոդոսի. ոպ Ճառընտիրն մեր ՚ի բուն իսկ ՚ի պատմութեն վարուց նց խօսի զանցից եօթն մանկանցն՝ իբրև զգործոց Ժմկի նր. զնոյն է ուսանել և ՚ի հայերէն թարգմանութեն սոկրատայ. և յայսմաւուրքն մեր ոչ միայն յիշէ զանուն * Թէոդոսի մեծին, և բարեպաշտ ուղղափառ Թգրին ||. այլև գնէ զմիջոց ննջման նց ամս ՃԽ. որ անկանի անվրէպ յաւուրս մեծին Թէոդոսի. զի դեկոս նստաւ յամի տն 249. յոր յաւելեալ զամս 140, լինի ամ տն 389. այն է ժամերորդ ամ Թգրութե Թէոդոսի մեծի: Համաձայնի այսմ (ըստ տարբերութե երից ևեթ ամաց) և եւտիքիոս պատրիարգ աղեքսանդրիոյ ՚ի տարեգրութե սրբաբացւոց՝ յասելն. * Յութերորդ ամի կայսերութե Թէոդոսի մեծի յայտնեցան մանկունքն՝ որք յաւուրս դեկոսի արքայի թաքուցեալ էին յայրն եփեսոսի ||. ոպ և ՚ի գիմաց եփեսացւոց երկրորդէ ասելով. * որ այժմու Թգրէ՝ Թէոդոս մեծն է ||: Այսուհետև պարտ է խնանալ և զոչ սակաւս ՚ի մատենագրաց և ՚ի վկայաբանից, որք պարզամտ ասեն՝ Թէոդոս Թգր կմ կայսր, առանց գնելոյ մեծ կմ փոքր: Իսկ այլք առ հասարակ եթէ հինք և եթէ նորք, զնեն Թէոդոս փոքր, կմ Թէոդոս որդի արկադեայ. որ է յայտնի վրիպակ՝ և քար գայթակղութե գաղտաղաց. զորս միայն գրութե մեր ունի ամփոփել: Նախ՝ զի ՚ի գտնել փոքուն Թէոդոսի՝ պնդէ բարոնիոս, թէ չգոյր յայնժամ այլ հերձուած յեկեղեցւոջ բաց ՚ի նեստորականաց և յեւտիքականաց. և չէր բան առ ումեք՝ թէ յարուցեալ իցեն յայնժամ ժխտօղք յարութե մեռելոց. այլ ՚ի գտնել ի մեզ Թէոդոս մեծ՝ չունի աւել զայդ, այլ ը հկռկն. զի ի ամ մատենագրաց Ժմկ էր այն՝ ամ հերձուածոց և աղանդոց. զորս և բազմօք թուէ Ժմկակիցն գրիգոր ածաբան յառանաւոր վարս իւր, և ը նա ՚ի համար արկանէ և զուրացօղս յարութե մարմնոյ: Երկրորդ՝ առաւել զօրէ առարկութն ՚ի պակասական ձեռնարկութէ առ Թէոդոսիւ փոքու, քան առ մեծաւն. զի յաւուրս փոքուն էն ծաղկեալ եկեղեցական պատմիչք գլխաւորք՝ սոկրատ, սոզոմենոս, Թէոգորետոս, և այլք. որք ՚ի պատմելն զերևելի անցս Ժմկի իւրեանց՝ համանականաբար ունէին յիշել և զպատմութե

Լ 2 եօթն

Եօթն Ննջողաց, եթէ յաւուրս իւրեանց լինէր յարու-
թիւն նոցա. և սակայն չէ ինչ՝ եթէ չգրեցին զեղելոյն
յառաջագոյն առ Մեծն Թէոդոսիւ. առ որով և չկայ ինչ
երևելի պատմիչ եկեղեցական, ոչ կան արտաքին պատ-
միչք հեթանոսք. որք յայտ է թէ և կամակար լռեին
զայնպիսի պանծալի վկայութենէ քրիստոնէից հաւատոց ։
Երրորդ՝ անլուծանելի միայ առարկուածն այն, թէ առ
Փոքրն Թէոդոսիւ չգոյր եղեալ յԵփեսոս Մարկինոս ան-
ուամբ, որ յիշի 'ի պատմութեան Եօթն Ննջողացս իբ հին
վկայաբանութեանց հանգոյն հայումս. մինչև յանհնարս
մնել յետնոց բազմաց՝ անհաւանութբ փոխեցին զայն ա-
նուն, և եդին՝ ոմանք Մաքիմոս, և ոմանք Ստեփանոս.
զի նոքա էին եպիսկոպոսունք Եփեսացւոց յաւուրս Թէոդոսի
փոքու ։ Եւ սակայն 'ի պահել զժմկ Մեծին Թէոդոսի՝
բնաւ ինչ լինի այդ դժուարութի. զի ոչ յայտ է 'ի պատ-
մութէ Սոկրատայ, Ե. 23. և Սոզոմենոսի, Է. 17. յաւուրս
Մեծին Թէոդոսի՝ Մարկինոս ոմն, որ երբեմն եղեալ էր
արիանոսաց 'ի Կոստանդնուպօլիս, անկեալ յայնմ ա-
թոռոյ՝ գնաց եղև եպիսկոպոս Եփեսոսի, ուր իւր իսկ
եղեալ էր զայլ ոմն Ագապիոս անուն 'ի համախոհից
իւրոց. զի ցայնժամ արիանոսեպիսկոպոսունք զօրացեալ էին
յերևելի քղքս. զորս առ սակաւ սակաւ փոխեաց բա-
րեպաշտն Թէոդոս՝ կամ յաթոռոյ, և կամ յաղանդոյ ։
Չորրորդ՝ զի բաց 'ի յայսմաւուրաց մերոց, ուր անվրէպ
դնի ժամանակագրութիւն յաւուրց Դեկոսի մինչև ցյառնել
մանկանց առ Թէոդոսիւ Մեծաւ՝ յետ 140 ամաց, այլք
առհասարակ՝ որք առ Թէոդոսիւ փոքու դնեն զյարութի
նց, զանհեթեթ վրիպակ ժամանակական բարձեալ բե-
րեն. զի 'ի գիրս Յակոբայ Սրճեցւոյ դնի, թէ Եօթն Ման-
կունքն ննջեցին զամս 372. զոր եթէ յաւելցես 'ի ժմկ
թագաւորութե Դեկոսի՝ որ նստաւ յամի Տն 249, յարութի
մանկանցս լինի յամի Տն 621, որ է ժբերորդ ամ Հե-
րակլի. յորում ժմկի մեռեալ էր 'ի վաղուց և ինքն Սըր-
ճեցին. մինչ զի հարկ է ասել՝ թէ հաշւէն այն 372
ամաց, պարտի լինել ոչ միջոց ննջման սրբ մանկանց.
այլ՝ ժմկ յառնելոյ նց առ Թէոդոսիւ Մեծաւ. զի առ-
դարև Թէոդոս Մեծն թագաւորեաց յամի փրկութեան 372, ըստ
հաշուի յունաց. որ պակասէ հօրի թուականին քան 379։
Բայց սակայն զնոյն անբերելի վրիպակ վարէ և սու-
րիոս իբրև 'ի Մետափրաստէ, մեկնաբանելով. * ան-
ցեալ էին 372 ամք յօրէ անտի ննջելոյ նց մինչև ցօրն
յորում յարեան ||. և կրկին նա դրէ 'ի բերանոյ զա-
սա-

տաւուրին՝ թէ դրամն այն զոր ունէր Ամղիքոս , * 'ի մակագրութեն և 'ի նշանէն ցուցանի՝ 380 ամօք յռ̄ջ ք̄ զմեզ լեալ || ։ կ̄ն ։

Զնոյն սխալանս ըստօրինակէ և Փոտ՝ յասելն , թէ մանկունքն յարեան * յետ 372 ամաց , յորժամ ընկալաւ և վարէր զկայսերութի Թէոդոս՝ մինչև յերրորդ ազգ || , որ է ասել՝ առ թոռամբ նր̄ Թէոդոսի փոքու ։ ըստ որոյ և յարէ զկնի , թէ * լէ̄ երրորդ ամ էր յայնժամ թգրութեն Թէոդոսի , յորժամ զայս մեծ նշան եցոյց ած̄ Տր || ։ Զնոյն վրիպակ պահեալ տեսանեմք և առ ծր̄ իէլի ։ Նոյն սխալ գնի և 'ի բասիլեան յայսմաւուրս յունաց , թէ եղև յարութի եօթանց ննջողաց * յանցանել ամաց երեքհարիւր և հբ̄ . յաւուրս թգրութե Թէոդոսի փոքու || ։ որ է՝ ըստ վկայելոյ նաև բոլլանդեանն կողերայ՝ * թանձր վրիպակ ժմկագրական || ։ Զնոյն դատանես և 'ի վկայաբանութե մուսկովաց՝ հանդերձ այլով անխմանալի սխալանօք ։ զի ասի ։ * ննջեցին ամս 372 ։ և մեռան յամի 377 || ։ ուր երկրորդ թըւականն առաւել դժուարութի կրէ ք̄ զառաջինն , ոպ̄ զիմրդ և իմացիս , եթէ ոչ ընթեռնուցուս այսպ ։ ննջեցին մինչև ցամ մդեղու 372 ։ և յայնժամ յարեան , և անդրէն մեռան յետ հնգից ամաց յամի 377 ։ բայց ոչ ոք գնէ զնո̄ հինգ ամ կացեալ յետ յառնելոյն , այլ 'ի նմին ամի փութով ննջեալ անդրէն (գուցէ յետ հնգից աւուրց ) ։ Նովին սխալանօք և 'ի հին օրինակս վկայաբանութեց սուրբց և առաքելոց և մարտիրոսաց առասանեմանայ՝ գնի միջոց ննջման նց̄ ամս 372 ։ կմ 309 ։ ոպ̄ և 'ի ժամերգութե սուրբց գնին ամք 350 ։ կս և 'ի գիրս այլազգեաց՝ ամք 360 ։

Զայս ամ տեսեալ բոլլանդեանն կողերայ՝ ասէ ։ * Եւ ո՞ կարէ դիւրաւ որոշել , թէ այս վրիպակ արդեօք առաջի՞ն հեղինակին իցէ ընծայելի , եթէ հին գրչի , որում զհետ չոգան և այլք կոյր զկուրայն || ։ Միայն ոմանք ոմանք 'ի զգաստ մատենագրաց 'ի վր̄ հասեալ ակնյայտնի սխալանաց՝ անձամբ անձին յօրինեցին զժմկագրութի յարմարական ։ զի Թէոփանէս եդ զմիջոց ննջման մանկանցն՝ ամս 184 ։ Կեդրենոս՝ ամս 170 ։ ոմն 175 , այլ ոմն 187 , կմ 197 ։ միւս ևս այլ ։ 152 ։ և այլք այլազգ ։ յորոց և ոչ մին ունի զվաւերականութի ։ զի հաշւելով յընդարձակ ամս թգրութեն Թէոդոսի փոքու՝ (առ որով ենթադրեն զյարութի մանկանցս ) , ը̄ մաւ գնէ ոմն յայս ամ , և ոմն յայն ամ նոյն թգրի ։ ուստի և

վայրապար ՚ի քերան մտանէ կոպէր բոլլանդեան, թէ որն ՚ի նշէ իցէ ստոյգ. * զայն (ասէ) գործ է գտանել, և սա է ամ ձիգն աշխատութե ||. ՟Ը էր արդեօք, զի և սք ասէ՝ որք զերծ են ՚ի թանձր սխալանաց առաջնոց, * մեծաւք տարաձայնին ՚ի մէջ իւրեանց՝ ՚ի նշանակել զամն, յորում եղև այն հրաշալի յարուե ||. զի ՟Ը հաշուէի Թէոփանեայ՝ լինի յամի տն 434. ՟Ը կեդրենեայ՝ 420. ՟Ը դիոնեսեայ ասորւոյ՝ որում զհետ երթայ ասսեմեան, յամի 425. ոմ և ՟Ը այլում սորի հեղինակի՝ զոր նոյնպ ՟Ը ունելի գտանի ասսեմեան, յամի 437. ըստ սիգիբերտոսի՝ յամի 447. որք առհասարակ հայլն յաւուրս թէոդոսի փոքու. իսկ ըստ մոդերխոսի՝ անկանի յամ տն 402. որ է ժմկ արկադեայ կայսեր ։ Յաւելու կոպէր, թէ * այլք անորոշակի դնեն զվերստին յառնելն վկայիցս՝ ՚ի վերջին ժմկս կայսերուե թէոդոսի. և այլք զայլ ինչ ընտրեն ասել. մինչև ճշմարտել ատանօր այնմ առակի, թէ որչափ մարդիկ՝ նոյնչափ կարծիք ||։ Բայց՝ ոմ ասացաք, բանի այս ամ տարաձայնուե և կնձիռն՝ գրուճ յայսմաւուրաց մերոց. և ոչ եթէ կարօտիք ասել ՟Ը կոպէրայ, * այլ այս վրիպակք ժմկագրուե ինչ ոչ մնասեն ճշմարտութե պատմութե ||, այլ թէ՝ այս ամ վրիպակք գեղեցիկ ուղղագրին ՚ի յայսմաւուրաց մերոց, և այնպ անստգիւտ պահի ամբիճ ճշմարտութին ։

(2) Ամենքին միաբանին՝ թէ եօթն էին թուով ննջօղմանկունքն եփեսոսի. միայն դիոնեսիոս ասորի թուէ ութ, այսպ. մաքսիմիլիանոս, ամղիքոս, մարտեղոս, դիոնեսիոս, յովհաննէս, սրապիոն, եքսուստոդիանոս, անտոնինոս. որ է վրիպակ ասել՝ ՚ի համաձայն բանից, զոր վարէ յակոբ սրճեցի. զի ՚ի խօսելն զմիոյ յընկերութենէ սրբոցն՝ մերձ դնէ զայս ձև բանից. * և եօթն ընկերք նորա ||. որ է թիւ բոլորական խմբի նոցա. կամ թէ զկրկին անուանս սրբոց՝ որ ՚ի հեթանոսուե և որ ՚ի քրիստոնէութե, չփոխեալ են ամանք, և զմին ՚ի նոցունց կրկին եդեալ. ոմ և առձիգն վկայագիրս գտանի ինչ ինչ տարբերութ ՚ի մէջ անուանց նոցա. զի ՚ի վկայաբանութե իմիք յունաց գրի մն հնգեցունց ՚ի նոցանէ, թէ * երանելիքս այս յածայլն մկրտուե զայլափոխ ընկալան փոփոխուե անուանց. զի մաքսիմիլիանոսն կոչեցաւ աքիղեաս. դեմետրեան՝ յամբղիքոս. եքսակուստոդիանոսն՝ դիոմեդէս. անտոնինոսն՝ կիւրակոս, և մարտինոսն եւգինէոս ||. իսկ ան-

ուանք

ոճանք երկուցն պակասին ։ Գրիգոր տուրոնեցի՝ որ էառ զայս պատմութիւն յասորի գրոց թարգմանութէ, դնէ՝ թէ առաջին անուանք նց էին․ աքիղեսոս, գիոմեդոս, եւգինէոս, ստեփաննոս, պռոբատիոս, սամբատոս, և կիւրակոս․ և 'ի միրտուէ կոչեցան սաէ․ մաքսիմոս․ մաղքոս, մարտինիանոս, կոստանդիոս, դիոնեսիոս, յովհաննէս, և սրապիոն ։ Իսկ այլք առանց որոշելոյ զառաջին և զվերջին կոչմունս անուանց նց՝ զեօթն անուանս եեթ թուէն (իմա յաւէտ՝ զոր 'ի միրտուէն ընկալան)․ Հ․ այսպ․ մաքսիմիանոս, մարտիանոս, ամղիքոս, դիոնեսիոս, կոստանդիանոս, անտոնինոս, և յովհաննէս ։ Յ․ մաքսիմիլիանոս, յամբղիքոս, մարտինիանոս, դիոնեսիոս, յովհաննէս, կոստանդինոս, և անտոնինոս ։ Լ․ մաքսիմիանոս, մաղքոս, մարտինիանոս, դիոնեսիոս․ յովհ՛․ սրապիոն, կոստանդին՛ ։ Վկ․ մոսկովաց․ մաքսիմիլիանոս, դիոնեսիոս, ամողիքոս, մարտինոս, անտոնինոս, յովհաննէս, և մարկեղոս ։ Յարաբացի տարեգրութիւն եւտիքիոսի աղեքսանդրացւոյ․ մաքսիմիանոս, ամլիքոս, դիանոս, մարախմոս, դիոնեսիոս, անտոնիոս, և յովհաննէս ։ Առ փոտայ, և 'ի վկայագիրս ինչ յունաց․ մաքսիմիլիանոս, եքսակոստոդիանոս, յամբղիքոս կմ ամլիքոս, մարտինիանոս կամ մարտինոս, դիոնեսիոս, յովհաննէս, և կոստանդինոս ։ Յորս դուզնաքեայ եեթ խտիր տեսանի․ իսկ մեք ընտրեցաք զմեր ընթերցուած՝ որ 'ի յայսմաւուրս, միայն 'ի փոխ առեալ յայլոց զնախկին կոչումն անուանց նց․ զոր և երևի նշանակել վկայագիրն եթէովպացւոց՝ համդերձ երևելի տարբերութ․, 'ի թուել անդ զեօթն մանկունս այսպ․ արսհալեդես, գիոմեդէս, եւգինէոս, գիմաթէոս, բռոնաթէոս, ստեփաննոս, և կիւրակոս․ զորս պարտ է վերածել 'ի համեմատութ այլոց վկայաբանից ։

Իսկ մանկմունք կոչին եօթն ննջօղքն, ոչ այնչափ վս տղայական հասակին, զի ոմանք 'ի նս պատանիք էին, և ոմանք երիտասարդք, որչափ վս զի էին պալատական պաշտօնեայք կմ զինուորեալք 'ի սպաս արքունական․ վս և փոտ կոչէ միանգամայն՝ մանկունս, և պատրիկս․ ոպ և յաւետարանի՝ ծառյ հարիւրապետին մանուկ կոչի յունական ոճով․ և 'ի գիրս թգրաց՝ ասի, յարիցեն մանկտին և խաղասցեն․ ըստ զօրականք առոյգ․ք (թերևս 'ի դասս առաւել քաջաց, կմ նորոգ ընտրելոցն)․ և 'ի պտրգամատուցի՝ զօրք առ հրկ թգրաց

(7) Զանուն եղելոյն Եփեսոսի՝ հանգոյն Հ․, մարմնոյ կոչեն ասորիքեցին և այլք յոլովք՝ մանաւանդ 'ի լատին վկայագրաց․ որ առ Փոտայ և յայլ յոյն օրինակս պակասութ̃ միոյ վանկի կոչի Մարոս, կամ Մարոն․ ոմն և առ նոր ինչլի՝ Մարխս․ զոր Եւտիքիոս կարծեալ է լինել Մարկոս ։ Իսկ Սուրիոս կամ Մետափրաստես կամակար փոխեալ է 'ի Մաքսիմիանոս, ոմն և այլք ոմանք փոխեն 'ի Մեմնոն, կամելով նշանակել զերկոս ոք ժամակից փոքուն Թէոդոսի․ որ է հիմն խախուտ․ ոմն բաղմօք ցուցեալ եղև 'ի վեր անդր ։

(8) Նորալուր ինչ յաւելուած գնի 'ի Հ․ 'ի վախճան պատմութ̃ ոճոյս՝ այսոմ․ * Ասի յոմանց՝ թէ 'ի գուռն
,, այնմ այրին՝ եղեալ է մարմին Մարխմու Մագդա_
,, ղենացւոյն ||։ կամ ոմն գրէ նոր ինչ․ * Ասեն ոմանք,
,, թէ 'ի գուռն այրին այնորիկ եղեալ կային նշխարք
,, Մարխմու Մագդաղենացւոյն ||։ Այս աւանդ՝ թէպէտև ոչ գտանի նշանակեալ առ այլս, բայց կրկին միոս ընծայեցուցանել ունի յոյն և լատինլողաց․ յոյնք՝ ոմն կարծեմ, սիրով թ̃ուներ յանձն առնուն․ զի թ̃ ն̃ջ Մարխամ Մագդաղենացին յԵփեսոս էառ զերջանիկ կատարած կենաց իւրոց․ իսկ լատինք՝ որք (մանաւանդ 'ի յետին դարս) հաստատեալ են 'ի մտի, թէ 'ի Մարսիլիա Գաղղիացւոց վախճանեցաւ նա՝ Ճգնեալ յայրի միում ևն․ ունին առել թէ այրն Մարսիլիոյ չփոթեալ է ը այրին Եփեսոսի․ միայն թէ և զհկ̃ն 'ի դէպ է է երկրորդել ։ Այսպիսի կնճռոյ գուռն բանից և այլ աւանդ արևմտեայց, զոր 'ի մէջ բերէ Ատամոր Կոպեր Բոլլանդեան 'ի վկայութ̃ այլ և այլ հեղինակաց․ որպէս թէ բաց յեօթն ննջողաց որ մանկանց Եփեսոսի լեալ իցեն այլ ևս եօթն ննջողք 'ի հիւսիսայինն Գերմանիա կամ 'ի Նորվեգիա․ և դարձեալ այլ ևս եօթն ննջողք 'ի Գաղղիա․ բայց առաջինքն 'ի ս̃է ամին առակաւելն 'ի նինջ կալ․ և յետինքն 'ի չափու հասակի իւրեանց փոխեալ առ թ̃ծ պայծառ գիմօք, և լոկ այլաբանօրէն ննջող կոչեցեալ․ որպէս օրէն է զմահ վախճանեալսն 'ի նոր ննջեցեալս կոչել ։ Սոր աստ Կոպեր, թէ են ոմանք՝ որք չփոթեն զսոսա ոչ միայն ը միմեանս, այլև ընդ եօթն մանկանցն Եփեսոսի․ բայց ինքն անաչառ խուզարկութ̃՝ յայս կնքէ զբանն․ * ստոյգ է, թէ
,, ննջողքն որ 'ի Գերմանիա, և որ 'ի Գաղղիա, որիչ են
,, յեօթն ննջողաց Եփեսոսի ||։

ՎԿԱ․



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

*սրբուհւոյն Յուղիտայի, և որդւոյ նորա՝ նը մանկանն Կիւրակոսի։*

Հ. յուլիս. 15։ Փր եէլ. մարտ. 15։ Յ. յուլիս. 15։ Լ. յունիս. 16։ Թէոդորոս եպիսկոպ Իկոնիոյ. 'ի Բ̃ղբ. առ Ռուինարդոս։ Բոլլանդեանն Պապեբրոք. 'ի Գ̃. հատ. յունիսի. երես. 15 = 37։ Հատուէնարք. երես. 419։ Բարոնիոս յամի Փ̃ն. 305. Ա̃Ռ։ (1)



ՐԱՆԵԼԻՆ ՅՈՒՂԻտա էր կին բարեպաշտօն և ազնուազատոհմ 'ի Թ̃գւորական ցեղէ, յիկոնիոն քաղաքէ՝ որ 'ի Լիկայոնիա գաւառի՝ 'ի սահմանակցութեան Իսաւրացւոց, յամս կռապաշտ արքային Դիոկղետիանոսի. և յետ մեռանելոյ առն իւրոյ այրի մնացեալ՝ հանդերձ փոքրիկ երախայիւ, որում անուն էր Կիւրակոս, անդադար պարապէր գործոց բարեպաշտութե, և ջերմեռանդն աղօթիւք կանխէր առ Ա̃ծ՝ ցուցանել նմա զճ̃պհ փրկութե. և զյիշատակ մ̃ց անխափան կատարէր։

Եւ եղև՝ իբրև սկսան դառնաշունչ հողմք հալածանաց շնչել 'ի վ̃ր քրիստոնէից յերեսաց.

սաց դիոկղետիանոսի , կարգեցաւ հրամա-
նաւ նորա դատաւոր նահանգին լիկայոնիոյ
դոմետիանոս ոմն՝ այր գազանաբարոյ , և
յոյժ կամակից արիւնհեղութեն սբց , յամի
տն՝ իբր ․ 303 ։
Յայնժամ նք կինն յուղիտա երկեաւ բնա-
կել ՚ի հայրենիս իւր , զի ծանօթ էր առ
ամենին քրիստոնէութն նր՝ հանդերձ երևելի
տամբ իւրով ․ և առեալ վն մանկանն հա-
գայր՝ զի մի կորզեսցի յանօրինաց ․ զի էր
մանուկ կայտառ և դեռաբողբոջ տիօք ե-
րից ամաց ։ Ո՛ որոյ թողեալ զամ ինչս և
զստացուածս իւր՝ թէպէտ և բզմ էին յոյժ ;
և առեալ զորդին իւր զկիւրակոս տղայն՝
հանդերձ երկու և եթ նաժշտօք , մեկնեցաւ
՚ի քաղաքէն իկոնիոյ , և գնաց ՚ի սելևկիա՝
որ և սուղիկայ , մայրաքաղաք իսաւրիոյ կմ
սուրացւոց ։ Բայց և անդ եգիտ զաղմուկ
հալածչաց հաւատոյ ․ զի աղէքսանդրոս ոմն
դատաւոր նորոգ հասեալ էր անդր արքու-
նի հրամանաւ՝ խոշտանկանօք չարչարել և
կորուսանել զորս միանգամ չառնուն յանձն
զոհել դիցն աղտեղնի ։
Զայն տեսեալ յուղիտայ , և խորհեալ որ
ինչ՝ յածային գիրս գրեալ է , եթէ տուք տե-
ղի բարկութեն , ( զի մի յանկարծակի անկցի
՚ի ձեռս անօրինաց , ) անտի ևս խոյս ետ , և
գնաց ՚ի տարսոն կիլիկեցւոց , ուր կարծէր
անծանօթ լինել երեսօք և անդորր գտանել ։
Այլ ահա յետ սակաւ աւուրց եհաս անդր
նա ինքն աղեքսանդրոս դատաւոր ․ և դառ-
նուք

նութ նեղէր և չարաչար տանջէր զքրիստո-
նեայս, որոնելով զնա 'ի ձեռն պաշտօնէից
իւրոց և մատնչաց:

Այս տեսեալ քաղաքացւոցն տարսոնի զբա-
րետոհմ կինն յուղիտա և զպարկեշտ քաղա-
քավարութիւնն, հարցփորձ արարեալ 'ի վն
հասին, զի թագաւորազն է և յերևելի տանէ:
Այլ երբև տեղեկացեալ գիտացին` զի քրիս-
տոնեայ է հաւատով, թողին և երկիւղածութ-
նր և համեստութն վարուցն վկայէին զնմէ,
կալան զնա և տարան առ դատաւորն աղեքսան-
դրոս: Նին յայնժամ առ նմա և երկուքին
նաժիշտքն. որոց տեսեալ եթէ կալան կռա-
պաշտք զտիկինն, թողին զնա և փախեան.
և կացեալ 'ի հեռաստանէ` հայէին տեսա-
նել` թէ զինչ արասցեն ընդ նմա:

Այս երբև ածաւ յուղիտա 'ի ձեռն զօրակա-
նաց առաջի դատաւորին, 'ի գիրկս ունելով զորդն
կիւրակոս` զամենակոչ վկայն` տղայ գեղեցիկ,
եհարց դատաւորն` և ասէ. ո՞ իցես դու տիկին,
և յինչ կրօնս. զինչ է բախտ քո և անունն և այլն:
Յայնժամ համարձակեալ երանելւոյն յու-
ղիտայի` զքրիստոսական անունն նախ 'ի կիր ար-
կանէր, և ասէր. ես քրիստոնեայ եմ, և վասն
քրիստոսական հաւատոյս թողեալ եմ զմե-
ծութիւն իմ, և բազում ստացուածս կայուն և
շարժուն, և զազգականս իմ և զծանօթս,
և եկեալ եմ պանդխտանալ յօտարութե
հանդերձ մանկամբս, զի թերևս պահեսցի
հաւատս քի:

Բարկացեալ դատաւորն ը անմեհեր պխինր` եա-

առ-

առնուլ զտղայն 'ի նմէ, և բերել առ ինքն: Բայց սկսաւ բզ̃մ սաստիւ սպառնալ երանելոյն Յուղիտայի, զի թողցէ զօրէնս իւր : Իսկ նա աներկիւղ դաւանէր զՔ̃ս ա̃ծ , և յանդիմանէր զանօրէն պաշտօն հեթանոսութե , յօժարական յանձն առեալ մեռանիլ վ̃ն անուանն տ̃ն : Յայնժամ հրաման ետ դատաւորն գան հարկանել զնա դալար արջառաջլօք : Իսկ մանուկն կիւրակոս կողկոծագին հայէր , զի դառն տանջանօք հարկանէին զմայրն իւր , և յորդաբուխ արտասուօք լնոյր` լաց եդեալ վ̃ն գթոյ մօրն : Իսկ երանելի մայրն մոռացեալ զիւր զկիրս տանջանաց` 'ի նա հայէր լի մ̃ծ տրտմութ̃բ և ձգնութ̃բ . և 'ի սրտէ գոչէր առ ա̃ծ` օգնել մանկանն : Իսկ նա քանզի լսէր 'ի մօրէն` որ ասէր 'ի մէջ տանջանացն , թէ քրիստոնեայ եմ , և զտ̃ր յ̃ս պաշտեմ , զնոյն և տղայն նը կիրակոս իբրև զաղաւնի քաղցր բարբառով զ'ի մօրէն ասացեալն երկրորդէր , թէ քրիստոնեայ եմ , և զտ̃ր յ̃ս պաշտեմ :

Յայնմ վայրի դահիճքն ևս ք̃ զևս հարկանէին զժնեայ և անողորմ զերանելի կինն : Իսկ նա ոչ այլ ինչ պատասխանի առնէր , այլ բազում համարձակութ̃բ երկրորդէր , ես քրիստոնեայ եմ . և իբրև զանչափ ոք ընդունէր զա̃մ զչարչարանս հարուածոց :

Զնոյն և մանուկն կիւրակոս աստէպ բարբառէր զմօրն բարբառ` լալագին հեծեծանօք : Իսկ դատաւորն առեալ զտղայն 'ի գիրկս իւր` գգուէր և ողոքէր , զի մի լացցէ . և

կա-

կամէր համբուրել զգեղեցիկ երեսս նորա ։ Այլ նա յերանելի մայրն դարձեալ հայէր խաղաղատեսլով․ և առաւել ևս կեղէր զկշ-խանն , և աքցանէր , և զերեսս 'ի բաց դարձուցանէր 'ի նմէ․ և ձեռօք իւրովք հակառակէր ընդդէմ իշխանին՝ եկանել 'ի գրկաց նր , և դիմել առ մայրն ։ Այլ յոչ թողացուցանել դատաւորին՝ եղնգամբն իւրով մագլցէր զերեսս նորա , և զձանկն 'ի մօրուսն ձգէր ։ Այլ 'ի հարցանել դատուորին՝ թէ զի՞ է քեզ , և զի՞նչ խնդրես , նա փոքրիկ մանուկն՝ իբրև ձայն տատրակի քաղցրաձայն՝ 'ի բունոյ իւրմէ ձայնի մօրն հեռուելով զատացեալն 'ի մօրէն անդրէն նուաճեր և ասէր․ Ես քրիստոնեայ եմ ո՛պ զոհիկն մայրն իմ ։ Մինչև զայրացեալ դատաւորին , և զզրգռեալս յանհնարին կատաղութի փոխեալ՝ կալաւ զոտից մանկանն և 'ի բարձրաւանդակէ ատենի թեմին , այս է 'ի բարձր գահոյից ընդաստիճանսն 'ի վայր ընկենոյր՝ զարկուցել զգետնի․ և հարեալ զքարի՝ ձեղքեցաւ գլուխ ամենայաղթ մարտիրոսին այն կիւրակոսի․ որով և ցնդեցաւ ուղեղն նր տղայիկն․ և վըտակք ու արեանն ոռոգանէին զերեսս ատենին․ և հրեշտակ տն աւանդեաց զմաքուր հոգի նր 'ի ձեռս տյ ։

**Ո այս տմ առաջի աչաց տեսեալ առաքինի մօրն՝ թէպէտև զալարէին աղիք նր 'ի գորովանաց մայրենի գթոյն , այլ խրախամիտ լինէր անպատում զուարթութե սրտի ն մարտիրոսանալ որդւոյն , և մեծաւ գոհութե**

**փառս**

փառս տայր այ̃ . Փա՛ռք քեզ ած̃ տր̃ իմ յս̃ , զի նախահրաւէր կոչմամբ ընկալար զորդեակն իմ՝ զպտուղ որովայնի իմոյ , փոխանակ վարդագոյն արեանն պսակել զնա անթառամ փառօք : Գոհանամ զքէն քս̃ , զի արժանի արարեր զորդի իմ մեռանել վս̃ անուանդ քո սր̃յ , և հասանել երկնային պսակացն :

Եւ զայս լուեալ դատաւորին՝ զարմացաւ . և առեալ ևս զայրացեալ՝ հրամայեաց զնա կախել , և ուժգնապէս քերել . և անողորմ դահիճքն երկաթի քերչօք քերեցին զմարմին նր̃ 'ի պարանոցէն մինչև ցգօտեկապսն . և թափեցաւ մարմինն , մինչև բանալ ոսկերաց . և նա կայր 'ի չարչարանս իբրև զվէմ հաստատուն , և գոհանայր զա̃յ ուրախութբ̃ : (2)

Իսկ դատաւորն տեսեալ զքանչելի արութի̃ երանելի կնոջն՝ հրամայեաց ևս սաստկացուցանել զտանջանս նր̃ : Ապ̃ ձէթ և նաւթ եռացուցեալ 'ի կաթսայս՝ արկին զմարմնով նր̃ և զտուքն . և քարոզն աղաղակէր հրամանաւ դատաւորին՝ ասելով առ սր̃ն յուղիտա . ողորմեա՛ց անձին քում , և զոհեա՛ դիցն . և զերծի՛ր 'ի տանջանացդ , զի մի՛ իբրև զորդին քո չարաչար մեռցիս :

Իսկ սր̃ աղախինն քսի̃ առնացի քաջուբ̃ և ճգնողական վկայութբ̃՝ համարձակաձայն ասէր . ես գիտա՛ց և անշունչ տարերաց ոչ զոհեմ . զի քսի̃ պաշտօնեայ եմ . և խոստավանիմ զմիածին որդին այ̃ զարարիչն իմ ա-

րա-

րարածոց, և զՏր Ած հայր ամենակալ, և զՍբ Հոգին՝ որ առաջնորդեաց մեզ յայս հանդէս նահատակութե. և ես արժանի լինել որդեկին խմոյ ոյյն կերակուրի՝ վկայութե մահու. որ և ես ընթանամ զհետ նորա. զի հանդերձ նովաւ երկնից արքայութեն եղէց ժառանգորդ ՚ի քս յս:

Երբ ետես դատաւորն զհամբերութեն երանելոյն, և զանփոփոխելի միտսն, և զհաստատութիւն՝ որ ՚ի քս, մխեաց իբրև զաւիծ բարկութե. և եհատ ՚ի վր նր վճիռ մահու: Եւ դահճացն հարեալ զայլ ՚ի բերան նր՝ առեալ տարան կապանօք ՚ի տեղի սպանմանն մահապարտաց: Նոր աղաչեաց զոր կինն զդահիճսն՝ ներել սակաւ մի յաղօթս կալ առ ածր. և խոնարհեցուցեալ զծունր ՚ի վր երեսաց իւրոց՝ այսպէս ասէր. Գոհանամ զքէն քս ած իմ, որ կոչեցեր առ քեզ զորդին իմ յառաջքան զիս, և արժանացուցեր զառժամանակեայ կեանս թողուլ վս քո սբ անուանդ, և յաւիտենական կենացն արժանաւոր լինել, և ընդ ժառանգորդ անսպառում բարեաց. և արդ ընդ սբ որդեկին իմոյ և զիս արժանաւորեա զաղախին քո մեծի պարգևիդ. զի մինչ ՚ի թիւ իմաստուն կուսանաց՝ յանապական և յանանց հարսանիսդ՝ ժառանգել զյաւիտենական ուրախութիւն. և օրհնել ընդ սիրելիս քո և ընդ սբ մօր քո և աղախնոյ՝ զհայր ամենակալ, և զորդիդ համագոյ, և զսբ հոգիդ կենդանարար:

Իսկ իբրև կատարեաց զսր̅ աղօթսն , անդէն փաղփաղակի դահճին հանեալ զսուրն՝ եհատ զգլուխ երանելոյն : Իսկ այնպէս կատարեցաւ ՚ի ք̅ս բարեյաղթ վկայուհին՝ երանելին Յուղիտա՝ զհետ երջանիկ որդւոյ իւրոյ սրբոյն կիւրակոսի ՚ի հնգետասաներորդ աւուր ամսեանն յուլիսի , յամի տն̅ 304 . կմ̅ 305 : Իսկ զպատուական մարմինն աղախնոյն ք̅ի և զորդւոյ նորին հրամայեաց դատաւորն արկանել արտաքոյ քան զքաղաքն ի̅ օրինակի դիականց դատապարտելոցն ՚ի մահ . այլ ՚ի վաղիւն անդր մինչև էր լուսացեալ աւուրն՝ եկեալ երկուց նաժշտաց ՚ի պահու լռութե̅ , առին զմարմինս սրբոցն՝ զմօրն և զորդւոյն . և տարեալ եդին գաղտաբար յայրի միում արտաքոյ տարսոն քաղաքի :

Իսկ յետ ոչ բազում ամաց՝ յաւուրս բարեպաշտ ինքնակալին կոստանդիանոսի՝ ՚ի յայտ եկին նշխարք սրբոցն (3) . զոր առեալ պատուեցին , և շինեցին ՚ի վր̅ եկեղեցի՝ յանուն սրբոյն կիւրակոսի և մօր նր̅ յուղիտայ : Յորում ժամանակի սփռեցան նշխարք ինչ նց̅ ՚ի ձեռս հաւատացելոց . այլ զկնի ժամկաց ըստ մեծի մասին կամ ամբողջ մարմինք նց̅ ասին բերեալ յարևմուտս . և մինչև ցարդ աւանդի լինել ՚ի գաղղիա և ՚ի սպանիա և յիտալիա՝ յայլ և այլ եկեղեցիս , որ շինեալ կան յանուն սրբոյն կիրակոսի . և յամենեսին բարոզի զօրութի̅ սքանչելեացն նց̅՝ բարեխօսութբ̅ սրբց : (4)

Տօն յիշատակի սրբցս կատարի առ յոյնս ՚ի

յուլիսի 15. որ է օր նահատակութեան նոցին. և ընդ նմին դնի և 'ի յայսմաւուրս մեր՝ 'ի նմին աւուր. բայց տօնն՝ է զի յայն միջոցս պատահէ, և բազում այն է՝ զի 'ի կարգս ապայիցս, ընդ որում եղեալ կայ և 'ի տօնացուցի։ Իսկ առ լատինս լինի յիշատակ սոցա 'ի յունիսի. 16.

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) 'Ի խորագրի նախ եդաք զանուն յուղիտայ, և ապա զորդւոյ նորա կիւրակոսի. զի այսպէս պահանջէր կարգ վկայաբանութեան, ընդ որում և 'ի Հ. և առ այլս եւս համառօտաբար այսպէս դնի. այլ յաւուր յիշատակի սոցա այլազգ դասաւորի, զի ասեմք, կիւրակոսի՝ և մօրն նորին յուղիտայ. որպէս տեսանես և 'ի տօնացուցի և 'ի շարակնոցին, և առ այլ լինի. բայց չէ ինչ, զի որդին մարբն՝ և մայրն որդւով միօրինակ պատուէին, ընդ գեղեցիկ նուագելոյ շարականին 'ի նաւագմանէ. * մայր որդ- ,, ւով բերկրեալ||։ Դարձեալ՝ 'ի կիր առաք զձայնս կիւրակոս, զի այսպէս տեսանի յաճախագոյնս յընտիր օրինակս. բայց մարթ է անխտիր վարել և զձայնս կիրակոս. որպէս է 'ի սովորութե։ Զայս յայն սակս յիշեցաք, զի և առ յոյնս կայ վէճ 'ի վերայ այսր ձայնի՝ հայելով առ նախայիշեալ նոր մանուկն. քանզի բազումք համառօտաբար գրեն նախընթաց իփսիլոնիւ, գիւրիգօս, որ առաւել պիտի անուանս կիւրակոս. և ստուգաբանեն տէրունի կամ տէրունական. իսկ ոմանք գրեն նախընթաց եգայիւ, գիրիգօս, որ մարթի պիտեւյաւէտ անուանս կիրակոս. և ստուգաբանենն քարոզիչ, եղեալ ստականապէս 'ի բառէս կէրիքս, որ է քարոզիչ. ընդ որում է տեսանել 'ի բանս յոյն երգաբանից 'ի պաշտաման նոցա։ Այլ թողեալ զայսոսիկ թեթև իրս՝ 'ի կարևորն մատիցուք։

Աւրդ՝ դիտել պարտ է, զի պատմութի վկայաբանութեան սոյն կիւրակոսի և մօր նորին յուղիտայ՝ անդստին 'ի հին ժամուց հետէ կրկնակի 'ի լոյս ընծայեցաւ. մին՝ հարազատ և ճիշդ, այն է՝ որ դասանի մինչև ցարդ 'ի յայսմաւ-

մանուկս հայոց և յունաց՝ մինչ համեմատ իւրեանց ։
յորոց առաք և մեք . և միւսն անհարազատ՝ և խառն
առասպելի բանիւք՝ Ճարտարք յօրինեալ . և թէպէտ ա-
սէ բարունիս, թէ այժմ չերևի 'ի միջի անհարազատ
պատմութիւն այն ամբողջ, այլ՝ ջնջեալ և բարձեալ իցէ
'ի նախնեաց հետէ, բայց բովանդակեան քաջ քննիչք՝ որ
զնոյն խորհրդ մատենագրութեանց մանր զննեցին, գտին մինչև
ցարդ մնացեալ զնոյն 'ի գիրս ոմանց լատին հեղինա-
կաց՝ փոքր ինչ ևեթ թօթափմամբ յաւելուածոց . և
պահմամբ գոյացութեան առաջի եղեալ . ես և զնման
բանս նորին առ բազումս 'ի յետնոց անգիտաբար Ճառ-
նելի լեալ՝ իբրև առոյգ ։ Իսկ թէ երբ 'ի վեր երևեցաւ
անհարազատ պատմութիւն այն, և երբ հարազատն, և
զինչ ինչ քննուեն և վէպք եղեն զայսցանէ առ յոյնս և
լատինս, ստուգուք նշանակեսցուք . զի հաստատութեան
բանից յայսմաւուրաց մերոց ինքնին յանդիման լիցի ։
'Ի հինգերորդ դարու (իբր 150 ամօք յետ նահատա-
կելոյ սրբոյն կիւրակոսի և յուղիտայ) 'ի վեր ել գրուած
ինչ անվաւերական . յորում ընդարձակ առաջի դնիւր
վկայաբանութիւն սոցա՝ հանդերձ անհեթեթ պարագայ-
իւք ըստ բանից, ըստ գործոց, և ըստ ժամանակին ։
Ըստ բանից նկարագրեալ էին Ճոխ ատենաբանութիւնք
'ի բերանոյ կիւրակոսի մանկանն, որպէս թէ ծանր բա-
նիւք կշտամբեալ իցէ զդատաւորն՝ վկայութիւնս դրոց իբրև
զմի յերևելի հայրապետաց . խրատիչ լեալ իցէ մօրն՝
խուսափողի 'ի տանջանաց . դարձուցեալ իցէ զբազմութիւն
հեթանոսաց . ևն ևն ։ Ըստ գործոց՝ նկարագրեալ էին
ոչ միայն ազգի ազգի տանջանք բազում՝ կիւրակոսի
առնեալք ընդ մօրն . որոց չէր նշմարանք 'ի հարազատ
պատմութեան, ես և 'ի միասին գլխատումն երկոցունց,
որ օտար է 'ի հարազատէն . այլև հրաշք մեծամեծք,
մանաւանդ թէ և հրէշք . զի փոխիլ կոչեաց դատաւորին 'ի
ցուլ, և ուտել զկիւրակոսի . հարիւրաւոր անձանց նա-
րոգ նահատակելոյ՝ յառնել 'ի մեռելոց բանիւ կիւրա-
կոսի . դատաւորին անձամբ զանձն տանջել մինչև զմահ՝
կարծելով զկիւրակոս չարչարել, ևն ։ Ըստ ժամանակին ե-
դեալ էր, թէ այս անց լեալ իցէ յաւուրս աղէքսանդրի
կայսեր, փոխ դնելոյ աղէքսանդրի դատաւորի . որպէս և
զի տեղւոյն՝ փոխ դնելոյ տարսոն, եղեալ էր անտիոք ։
Արդ՝ իբրև տարածեցաւ օրինակ այսր պատմութեան յա-
րևմուտս, մանաւանդ 'ի գաղղիա և 'ի սպանիա, թէ-
պէտև բազումք այն էին 'ի նոսա, որք հաւատս ընծայ-

էին իրացն. բայց բազումք ևս հայեցեալ յանկերպարան գործս և 'ի պարագայս՝ երկբայելի դատէին, և կարօտ զտելոյ. որոյ վն և 'ի լինել քննութե 'ի վր ստոյգ և անստոյգ գրուածոց 'ի հռովմ յաւուրս գելասիոսի հայրապետին՝ որ նստաւ յամի տն. 492. պապն դասեաց զայն պատմութե 'ի մէջ գրուածոց ապօքրիֆա կոչեցելոց,

որ է անյայտ կամ երկբայական:

Զնոյն կարծիս կասկածանաց ունէին և իմաստունքն 'ի մէջ յունաց. վն զոսիմոս ոմն եպս գրեաց թուղթ վր սոցին իրաց առ թէոդորոս եպս իկոնիոյ 'ի սկիզբն վեցերորդ դարուն յաւուրս յուստինիանոսի կայսեր առաջնոյ՝ կամ յուստինիանոսի մեծի, զի որովհետև սրբն կիւրակոս և յուղիտա հայրենեօք յիկոնիոյ էին, քննեացէ անդ զիրսն, և զստուգութն իրացն 'ի լոյս ածցէ. քանզի չկարեմք սուէ սանել այնմ պատմութն՝ որ ցարդ յածի 'ի ձեռս բազմաց: Յայնժամ թէոդորոս եպս հետամուտ լեալ իրացն ըստ խուզարկութե 'ի ձեռն մարկիանոսի կայսերական նօտարի՝ հայեցաւ 'ի հին յիշատակարանս, և հարցփորձ ևս արար 'ի ծերունեաց և յաւանդութեց իկոնիացւոց, յորս գտանէին և ոմանք իջեալ յազգականութէ տանն յուղիտայ. և յայնցնց հաստատութե ստուգեալ՝ թէ ո՛ ոք էր նա, և յորում ժմկի նահատակեալ հանդերձ որդւովն, յորմէ գաւառէ, յորմէ քաղաքի՝ և որպիսի ամենջանօք, հաւաքեաց զգուշութե՝ ծչգելով և համառօտելով զայն իւր, որ ստուգագոյնն էր և համաձայն հնութե. և գրեալ անդրէն թուղթ առ զոսիմոս եպս՝ առաջի եդ նմա զօրինակն այնր հարազատ պատմութե, և յորդորեաց տարածել

զնոյն և առ այլս:

Եւ ահա այն է հարազատ վկայաբանութե սրբցս՝ որ սփռեցաւ յետոյ 'ի մէջ յունաց և հայոց: Վն և տր իէլն մեր այսպիսի վաւերական յիշատակագրութե սկսանի գրել զվկայաբանութե կիւրակոսի և մօր նր յուղիտայի. * Մար-
,, կիանոս ոմն արքոն և դպիր՝ նուէրականպետ էր բա-
,, րեպաշտ թագաւորին յուստինիանոսի. և զի նոյն այր
,, եղևելի, որ էր նր աթոռակից յերկրին տիւրացւոց.
,, և այսպէս յաղագս սբյն խնդիր արարեալ, զի առհ-
,, մնկեցք էին նր և 'ի գաւառէն լիկկիացոց՝ գեղեցիկ
,, ծաղիկն սբն կիւրակոս, և յաղթող վկայն քնի յուղի-
,, տայ. որ անակնածելի վարուք վարէր, և զչքս պաշ-
,, տէր բարեպաշտութե, և զյիշատակ սբց անխափան կա-
,, տարէր: Բայց և այլ ևս տոհմակիցք նր պատուով

,, դուր

ս գործէին զայս 'ի Ճ̃Ժս ։ Եւ էր երանելին յուղիտա 'ի
Թ̃չրական ազգէ || . ԼՆ ։

Զնոյն հարազատ պատմութիւ գտանեմք 'ի բասիլեան Ճիշդ յայսմաւուրս յունաց , և 'ի ժամագիրս ն̃շ . որպէս և յայլում Ճառագրութ՝ որ սակ լինել գաւթի հաւատարի կ̃մ մետափրաստեսի , և առ այլ բազում մատենագիրս . որոց բանքն ամէն համաձայն եղանեն եգելոցն 'ի Հ . և բանք Հ . Ք̃Ֆ յայսմաւուրաց մերոց Ճշգիւ միաբանին ընդ աւանդելոյն 'ի Թէոդորոսէ եպիսկէ . մինչև մարթ է ասել՝ թէ հայք կամ 'ի թղթոյ անտի նորա են թարգմանեալ զհարազատ պատմութին , և կ̃մ յայլ հնագոյն վկայաբանութեց՝ նմին համաձայն եղելոյ . իսկ թուղթ Թէոդորոսի գտանի յունարէն մինչև ցայժմ հանդերձ լատին թարգմանութ̃բ առ կոմբեփիզայ և առ այլ հաւաքօղս հնութեց . ԶՐ̃ որում 'ի մէջ բերէ և բաբեպրոք բոլլանդեան 'ի Փ̃ . հատորն յունիսի . երես . 23 = 28 . և համեմատութ̃բ նորին 'ի յայտ բերէ զանվաւերականութի միւս անհարազատ պատմութեն գտելոյ 'ի գիրս ոմանց լատին հեղինակաց իւիք իւիք փոփոխութ̃բ ։ Ցորմէ ունիս իմաստասիրել , թէ առ հայս ոչ երբէք անցի եգիտ անհարազատ պատմութին , այլ միայն հարազատն . զի նախնի հեղինակք յայսմաւուրաց մերոց զգուշութ̃բ յուղեալ միշտ զատուգագոյն աղբիւրս հին վկայաբանութեց՝ ԶՐ̃ նմին են եդեալ . նոյնպէս և սքանչելի յօրինուած շարականի և գանձն 'ի վ̃Ր նըյն կիւրակոսի և յուղիտայ 'ի նմին մաքուր ականէ են բղխեալ ։ Իսկ 'ի յոյնս՝ թէպէտև առ Ժ̃մկ մի նաև անհարազատն անցի գտեալ էր , բայց յետոյ առաւելապ̃է հանդիսացաւ հարազատն . և ըստ նմին յօրինեցան պէսպէս տաղք 'ի բանաստեղծից նոցա . ոպ̃ է տեսանել 'ի կարգս ժամերգութ նոցա յաւուր յիշատակի նըյն կիւրակոսի և յուղիտայ . ուր կան տաղասացութիք կամ շարականք հնգեցունց երևելի երգաբանից ն̃շ ըստ այլևայլ ձայնից . Ք̃Ֆ նըյն գերմանոսի 'ի Ը̃ . դարու յօրինեալ 'ի վ̃Ր առաջին ձայնի ԶՐ̃ յունաց . և բիւզանդոսի ուրումն 'ի Թ̃ . դարու 'ի վ̃Ր երկրորդ ձայնի . և նըյն յովսեփայ երգաբանի 'ի նմին դարու . և մաւրոպեոնդի յայլում դարու . եւ և անատոլեայ պատրիարգի՝ որ էր 'ի Ե̃ . դարու ։ Ամի ս̃Շ տաղք և երգք համաձայն եղանեն հարազատ պատմութե . թէպէտև սուճերք ինչ անհարազատին նշմարին յոմանց ԶՐ̃ Ճոխաբանութ մասին . որ չէ ինչ . զի և այն անհարազատ կոչեցեալ պատմութին ոչ էր գլխո_

պատմութիւն հարազատ ևեթ ունի ։ Այլ 'ի զուր երկ-
յարևմուտս ծանր վէճ, թէ որ յերկոցունց իցէ, զոր տօնեն լատինք 'ի յունիսի. 16. արդեօք այն՝ զոր տօնեն յոյնք 'ի յուլիսի. 15. քանզի սրբուհին յուղիտա իկոնիացի նահատակեալ 'ի տարսոն հանդերձ որդւովն կիրակոսիւ, թէ միւսն այն՝ որ կարծի յանտիոք նահատակեալ հանդերձ այլովք ընկերօք ։

Արդ՝ յոլովք կամելով նոյնացուցանել՝ ասացին, թէ նոյն որք են և 'ի լատինացւոց յիշատակեալքն, բայց վրիպակ ինչ է մտեալ 'ի թիւ ամսոյն և յանուն քաղաքի. զի փոխ դնելոյ 'ի 15. յուլիսի, եդեալ իցեն նախնիք լատինացւոց 'ի 16. կաղանդից յուլիսի. որ է. 16. յունիսի. և փոխ դնելոյ՝ 'ի տարսոն նահատակեալ և անտի յանտիոք պերգամայ կամ յանտիոք տարւոց փոխագրեալ նշխարք նց, եդեալ իցեն յանտիոք նահատակեալ՝ վս՟ անտուստ բերեալ լինելոյ նշխարաց յարևմուտս ։ և կամ ըստ այլոց՝ 'ի յունիսի. 16. լեալ իցէ փոխադրութիւն ինչ նշխարաց յանտիոք՝ նոյն նահատակելոյ 'ի տարսոն. և յայն օր ընդ անուամբ անտիոք քաղաքի եդեալ իցէ յիշատակ նոցա 'ի լատինս ։ Այլ այսու ամենայն առանց կարելոյ որոշել զերկոսն՝ բազումք 'ի լատինացւոց հաստատուն համարեցան զեդեալն 'ի գիրս իւրեանց զանուն քաղաքի և զօր ամսոյն՝ քան զյունացն ։ Իսկ թ՟ այս փորձս հեղինակ ճառօրէն վկայաբանութեան՝ զհետ գնալով անհարազատ պատմութեան՝ եդ զնահատակութիւն կիւրակոսի և մօր նր՟ յուղիտայ լինել յանտիոք առ կայսերութեամբ ալեքսանդրոսի՝ 'ի յունիսի. 16 ։ Զհետ գնացին փորձոյս ուսանողք և ազգին երևելի հեղինակք վկայաբանութեանց. և նոյն կարծիք արմատացաւ յամ եւրոպիա. և թ՟ նմին տպագրեցաւ 'ի բազում գիրս ։

Իսկ յետոյ ոմանք քննութիւն արարեալ իրացն, և տեսեալ՝ թէ թ՟ հարազատ պատմութեան՝ 'ի յուլիսի 15. պարտի լինել. բայց չկամելով և զհռոմեացն փոխել՝ յաւելին կրկին անգամ դնել զյիշատակ կիւրակոսի և յուղիտայ, քանզի թէ 'ի յունիսի. 16. և թէ 'ի յուլիսի. 15. զի որոց հաճոյ թուի՝ յայս կէս յայն օր կատարեսցեն զյիշատակ նոցա. և կէս որք այլ և այլ ըստ համարին՝ կրկին յիշատակ արասցեն. և այսպիսեաւ անխտիր վարէին զանհարազատ և զհարազատ պատմութիւն՝ իբրև զանազան որոց համարելով ։ Բայց այլք աշխատեալ են իրսն՝ 'ի յաջորդ տպագրութիւս բարձին զմնացածս անհարա-

(3) 'Ի Հ. գնի՝ թէ նախ քան զյայտնել նշխարաց սրբոց մեծաման աղախնայքն. և ապա յաւուրս կոստանդիանոսի կայսեր՝ ազդմամբ հրեշտակաց նոյ ( կմ՟ ոմն ասէ՛ ուր էէլ, 'ի շնորհաց սբ՟ հոգւոյն ) յայտնեցաւ այրն, ուր ամփոփեալ էին նշխարք սրբոյն յուղիտայ և կիրակոսի ։ Իսկ յայժմու օրինակս թղթոյն թէոդորոսի գրի, թէ մին յաղախնայց նոցա կենդանի մինչև ցաւուրս կոստանդիանոսի. և 'ի ձեռն նր ծանուցաւ և բացաւ այրն ։ Այլ թէ մրգեօք 'ի հնոյ հետէ այսպէս էր գրեալ, եթէ յետոյ այլայլեալ իցեն բանք յաւնարէնին կմ՟ հաւյերէնին, չունիմք ասել. զի երկոքին ևս համաձայն թուին, և 'ի հին օրինակաց առեալ. վն և մեք ինչ ոչ որոշեցաք զերկանակ յայտնուն նշխարացն. որպէս և ոչ յօրինակն Հ = Ց. որոշի ինչ ։

(4) Իսկ թէ ուր իցեն այժմ մարմինք կմ՟ ոսկերք սրբոյն կիւրակոսի և յուղիտայ, բացայայտ վճռեն բոլլանդեանք՝ թէ չմնացին յարևելս, այլ յարևմուտս բերեալ եղեն 'ի հին ժամկաց հետէ. բայց զորոշ տեղին նշել դժուարին, որովհետև բազումք են՝ որք անդէն առ ինքեանս լինել ։ 'Ի մէջ բերէ հենքէներոս բոլլանդեան 'ի վարս սրբոյն ամատորի զձեռագիր ինչ գրուն գտեալ 'ի հռովմ, ուր պատմի՝ թէ նա ինքն սբն ամատոր, որ եղև եպիսկ աւտիսիոդորայ յամի Քն. 388. և փոխեցաւ յամի. 418. շրջեալ երբեմն յարևելս 'ի սահմանս անտիոքայ Է սաբինոսի գործակցի իւրում, գտեալ իցէ յանտիոք քաղաքի զնշխարս կիւրակոսի և յուղիտայ, և բերեալ յարևմուտս 'ի գաղղիա. և զբազում սբյ մանկանն տուեալ սաբինոսի՝ զայլսն 'ի բնակարանի իւրում իցէ հանգուցեալ ։ Յետոյ ասի փոխադրեալ նշխարք սրցս 'ի նիվերնիա. ուր առաջ եկեղեցի նոցա պաշտպան ունէր զսբն կիւրակոս անդստին յիններորդ դարէ՝ յաւուրց կարողոսի արքայի՝ կալվոս կոչեցելոյ. և պատնի հրովարտակ լուդովիկոսի բալբոսի՝ տուեալ յամի. 1377. առ աբբան եպիսկ՝ վն առանձինն ձրից տուելոց եկեղեցւոյն նիվերնիոյ՝ որ յանուն սրբոյն կիւրակոսի վկայի ։ Այլ անտի, 'ի հին ժամկաց հետէ էառ ք մասին կամ ք բոլորին հուկբալտոս աբբայ, և փոխադրեաց յիւր վանս էլնոնեան. և յայլոց յայլ և այլ տեղիս աւանդի տարեալ լինել ։ Վն մինչև ցաւուրս մեր մանաւանդ եկեղեցիք գաղղիոյ անդէն առ ինքեանս ունել զնոյն կմ՟ զնոյնանուն նշխարս երևելիս. և մանաւանդ 'ի նիվերնիա, 'ի տուլուզա, յարելատ, և 'ի հաննոնիա՝ ուր

է

կիրակոս և յուղիտա եկեալ 'ի քաղաքէ իմեքէ ասիանիոյ՝ իկոնիոն կոչեցելոյ՝ գնացեալ էին 'ի կիլիկիա, և անդ նահատակեալ յաղեքսանդրոս կուսակալէ, բազմացուցալով զենկանս. և այլք այլազգ՝ ամեքին խառնաշփոթ, հիմնեալ 'ի վր անստոյգ պատմութեց և մտացածին գուշակութեց: Ոմանք ևս ասեն՝ թէ այլ կիրակոս և յուղիտա նահատակեալ էին առ ներոնիւ, և այլ առ ալեքսանդրոսիւ. երկոքին ևս յաջէն սպանիոյ 'ի տարսոն գնացեալ պանդխտութբ: Հաւանի յետոյ իմաստունքն 'ի նմ հաստատեցին, թէ մի և եթ է կիրակոս և յուղիտայ՝ յիշատակեալն 'ի տօնացուցի հռոմայեցւոց. և թէ նոյն սբն կիւրակոս է հանգուցեալն 'ի բուրգ քաղաքի՝ յեկեղեցին շինեալ յանուն նր:

Այլ առաւել քան զամենեսին պնդեն հաւանեցիք յիսպանիա, և երևս անշուշտ հաստատեն 'ի հին աւանդութեց՝ թէ առ բերկանու 'ի ռաւեննա քաղաքի յեկեղեցւոջ սբյն յովհաննու մկրտչի 'ի նշխարաց աւագ խորանին էին մարմինք սբյն կիւրակոսի և յուղիտայ: Զայս ամ չորեքհարկ բնութ յիշատակարանաց և բանից այլ և այլ հեղինակաց առաջի դնեն բոլլանդեանք, և ոչ որոշեն զառայգն հաւաստեաւ. զի և չէ իսկ մարթ որոշել: Այս ինչ հաւաստի է՝ զի առ ամենին մեծապատուեալ մեծարկարժանաւոր և երջանիկ մր վկայքն կիւրակոս և յուղիտայ՝ վանորէիւք, եկեղեցեօք, և խորանօք բազմօք, որք կանգնեալ են յանուն նց, և ոչ սակաւ նշանք բժշկութեց եղեալ են և լինին՝ ըն հաւատոյ բարեպաշտից և ջերմեռանդից յայլ և այլ տեղիս. ըն որում է տեսանել 'ի յիշատակարանս իւրաքանչիւր եկեղեցեաց:

'Ի վախճանի արժան է գիտել, զի այլ է 'ի նախայիշեալ յուղիտայէ իկոնիացւոյ՝ միւս ևս սբ կին յուղիտա անուն կեսարացի. նահատակեալ հրով 'ի կեսարիա կապադովկացւոց. յորոյ վր պանծալի ներբող յօրինեաց մեծն բարսեղ հայրապետ կեսարիոյ. ուր է տեսանել 'ի կարգի ճառից նր. հատ. ա. ճառ. Է. զորոյ զյիշատակն կատարեն յոյնք և լատինք 'ի յուլիսի. 30: Այլ է և յուղիտա կին յուլիա վկայուհին անկիւրացի, մին յեօթն կուսանաց՝ որք կատարեցան ըն սբյն թէոդոտոսի գաղատացւոյ: զոր յոյնք և լատինք տօնեն 'ի մայիսի. 18. և հայք 'ի մայիսի. 22:

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## սրբոյն Վահանայ գողթնացւոյ :

Հ. Մարտ. 28 : Ղ՛ազարայ. ԱՀ. երես. ողա :
Պատմագիրք հայոց : (1)

Ա. ԹԱԲԻՆԻ ՆԱՀԱտակ, և արի ախոյեան ք̃նական հաւատոյ՝ գեղեցիկ անուամբ արդիւնացեալ՝ Վահանն պանծալի, էր իշխան փառաւոր 'ի կարգէ սեպհաց ազատաց՝ որդի մեծ նախարարին հայոց խոսրովու՝ գողթան տ̃ն, ծնեալ յամի տ̃ն իբր 700, և 'ի Թուին հայոց. ճխթ. յաւուրս երանելւոյն սահակայ ձորափորեցւոյ նշանագործ կաթողիկոսի : Յորում ժամկի արձակեաց մրուան ամիրապետն այլազգեաց զզօրավար իւր մոհմատ ոգբայ անուն զօրօք բազմօք 'ի հայս՝ կորուսանել զազգն, և աւերել զե̃ղ̃ն. այլ 'ի ձեռն միջնորդութե̃ն ն̃յ հայրապետին՝ որ յետ մահուն իւրև կենդանի ցուցեալ՝ գութ եարկ առաջի զօրավարին այլազգեաց, զերծաւ ա̃զս մեր 'ի վերահաս վտանգէ անտի. բայց տակաւին գոյր ահ և երկիւղ կասկածանաց 'ի վ̃ր բնակչաց աշխարհին :

իսկ

Իսկ զկնի սակաւուց՝ յամի 704. ՃԾԳ. այն է ՁԵերորդ ամ տրուԹն տաճկաց (2), իբրև նստաւ ամիրապետ աբդլմէլէք որդի մրուանայ՝ աբդլլայ ասացեալ, որ երբեմն ոստիկանն էր Հայոց Ձին, ոխս 'ի սրտի ունելով ընդդէմ նախարարաց՝ խորհեցաւ նենգանօք վրէժ առնուլ 'ի նցէ ։ Պատգամ առաքեաց առ զօրավար իւր կաշմ կմ կասմ անուն՝ որ նստէր 'ի Նախջուան, և կարգեաց զնա յոստիկանուԹ Ձին, պատուէր տուեալ նմ մարդասիրուԹ փոխել ընդ Հայս 'ի վերին երեսս, և երդումն խաղաղուԹ հաստատել 'ի միջի, և խոստմունս մեծամեծս առնել իշխանաց Հայոց. զի դիւրաւ ըմբռնեսցէ զգլխաւորս, զզօրավարս և զզօրս Հայաստանեայց, և սպառսպուռ ջնջեալ զնոսա՝ կալցի զՁն անկասկած. քզի դժուարին համարէր այլազգ յաղԹել քաջացն Հայոց ։ Սովին խորհրդով դեսպանս արձակէր արքունի հրովարտակօք և առ նախարարս Հայոց. զի ականաւորքն 'ի նա յանդիման լիցին կաշմ ոստիկանի. և ժողովեալ 'ի մի վայր իբրև 'ի դիւան արքունի՝ տացեն գրել զանուանս իւրաքանչիւր, զի ազգովին ազատ անուանեսցին, և ընկալցին ըստ կարգի աւագուն իւրեանց զիշխանուԹ և զպատիւ հանդերձ զօրօք իւրեանց ։

Յայսպիսի համբաւոյ ստուն և խաբէուԹն ոչինչ կասկածեալ իշխանաց Ձին՝ ժողովեցան 'ի քաղաքն Նախջուան, որսացեալք անմեղուԹ 'ի կորուստ դառն մահու. քանզի

առ-

առեալ այլազգեաց նենգութ՛ զգէնս զաւ-
րուց նց՝ ժողովեցին 'ի տուն մն 'ի մեծ եկե-
ղեցւոյ քաղաքին, ուր զի երդումն տացեն կալ-
հաստատուն 'ի մահմետական կրօնէն. և ան-
դէն զհրամանն 'ի վր ածեալ փակեցին, և 'ի
ներքս արգելին զնոսին. նաև աղիւսով ամ-
րացուցին. և այսպ հրով զայրեաց սանն ողջ
լուցեալ՝ այրեցին զեկեղեցին, զերեզման-
յօրինել զտուն աղօթից. ուր ամբարձումն
բոցոյն և ծխոյն՝ զբաբելոնականն հնոցին ու-
նէր զնմանութի. իսկ քաջ նահատակքն՝ նա-
խարարազունք հայոց հանդերձ ազատորդ-
ւովքն՝ զերից մանկանցն 'ի բերան առեալ
զերգս, զնոյն երգէին զօրհնութի մինչև 'ի
նուաղել ոգւոցն յանլուծանելի բանտին.
և այսպէս առ հասարակ սպառեցան քաջմնութե
իշխանաց Տին 'ի դառնաճառացն ամբար-
տից. Սա ամին օրինակի գործեցաւ աղէտք
դառնութե և 'ի խրամ քաղաք [3]. զի նոյն-
պիսի դաւաճնօք յեկեղեցի փակեալ՝ ծախե-
ցան 'ի հուր դունդք ազատացն հայոց. և
Է ամ՝ ողիք իբրև եօթն հարիւր զայնօրի-
նակ վճարեցան 'ի կենաց ։

Իսկ այլազգիքն իբրև տեսին՝ թէ ըս կամաց
իւրեանց զրաւեցաւ գործն, զգլուխն հա-
ւոյն զփախճանելոցն չնչարգել ծխով հնո-
ցին [4], և 'ի տես մեհազունին առաքեցին.
և զխանձողեալ մարմինս նց զփայտէ կախե-
ցին յահարկուն բնակչաց Տին. և իւրեանք
սփռեցան Է ՏՆ ամ՝ ժողովել զաւ և զա-
ւար սպանելոցն՝ քննելով զտունս և զգանձս
նց.

նոյ. և զընտանիս նոյ տարան 'ի Նախճուան և 'ի Դուին. և լինէր այս 'ի մեծի զատկի տօնին։ Նա զփափկասուն և զհեշտասուն 'ի գերելոց անտի յարգելանս բանտից արկանէին 'ի ջերմ յամառային ժամս, մինչև բիւրք մեռան 'ի ջերմութենէ. և զմնացեալսն առեալ իջուցին յերկիրն Ասորւոց համարով գրոյն յաշխանային ժամս. և հասեալք 'ի Դամասկոս՝ ուր աթոռն էր յայնժամ ամիրապետին, զորդիս նախարարացն և զընտանիս նոյ յարքունիս տանէին. և զմանկագոյնս 'ի նոցէ յուսումն դպրոցաց տային ։

Մի 'ի նոցանէ էր մանուկն Վահան Գողթնացի՝ ամաց իբրև չորից, բարեշնորհ երևելի և սիրեցեալ յաչս այլազգեաց. զոր առեալ թլփատեցին, և այնուհետև փոխեալ զնա ձայնէին. և կամեցեալ հաստատուն առնել զնա 'ի դենին իւրեանց 'ի տղայական հասակին՝ առաւել հոգ տանէին նմա յուսմանն իւրեանց. և զի ուշիմ էր նա մտօք և ձարտար, երևելի եղև 'ի դպրութիւն նոյ, և ամ ուսումնակցացն իւրոց վեհագոյն գտաւ. մինչև 'ի զարգանալ հասակին լինել նմ դիւանադպիր, և դպրապետ արքունի, և ամենայն խորհրդոց հմուտ, և սիրելի աւագաց. այլ զճշմն արդարութեան անգիտացեալ անդատին 'ի տղայ տիոց. միայն գիտել գիտէր՝ եթէ քրիստոնէից է զաւակ ։

Մեռաւ աբդլմելիք, և նստաւ ամիրապետ Վլիթ կամ Վելիտ, և յետ նր Սուլէյման, և ապա Օմար երկր՝ յամի տն իբր 717. և 'ի

թուիս

Թուին մերում. ճկզ. (5)։ Սա էր իշխան ար-
դարակորով և քաղցրահայեաց առ նեղեալս.
զորոյ զմարդասիրութ զչափ առեալ գերեացն
Հայոց, մատուցին աղերս՝ հրաման տալ նոցա
դառնալ յերկիր իւրեանց. և սիրտ իշխանին
դառնայր յողորմութիւն 'ի վերին խնամոցն, և
դարձուցանէր զգերեալսն յիւրաքանչիւր տե-
ղիս, փոյթ կալեալ առնել իրաւունս անցն՝
որ ընդ իւրով իշխանութ.։ Յայնժամ և վահան
կոչեցեալն վահագ՝ երթեալ աղաչէր տեառ-
նել զընիկ ան իւր, շարժեալ 'ի հոգւոյն ե-
ռայմանէ՝ գտանել զճշմարիտ հաւատան՝ որ
'ի քսն, զոր կորոյս ազգայական հաւատս. և
աղաչէր զքսն 'ի մեծամեծաց սիրելեացն,
և օժանդակս զնոսա առեալ 'ի կատարումն
խնդրոյն, հաւանեցուցանէր զամիրապետն
այսպիսի պատճառանօք. զի երթայց և ա-
ռից առ զժառանգութիւն իմ հայրենի 'ի քո
անդորր ճիլլի, և կարգեցից գործակալս,
և դարձայց 'ի քո տրուհիդ։ Նակնաթէպէտ
և աղաչուէր զայլոյն վասն պիտանութեան և
ազնուականութեան և լաւ բարուցն, սակայն
վասն իրաւանցն՝ զոր արար, և արդար դա-
տաստանին, արձակէր զվահան հրովարտա-
կաւ. զի զընիկ դաւառն գողթան առցէ, և
մի ոք ընդդիմասցի նմա. բայց պատուէր 'ի վր
դնէր՝ փութով դառնալ անդրէն. նաև մե-
ծամեծ պարգևս խոստանայր տալ՝ յորժամ
դարձցի յարքունիս. և այնպէս շքով և պա-
տուով և տրովք յղարկեալ լինէր վահան
յերկիր Հայոց. և եկեալ հասանէր 'ի Հայրե-

 նիս

Նոյն իւր 'ի գողթն գաւառ ։

Զայնժամ ժողովեցան բնակիչք երկրին, և խնդային ընդ բնիկ տեառն իշխանին իւրեանց. և յիշեցուցանէին նմա զառաջին աղէտսն՝ որ անցին ընդ ծն . և զնր 'ի տղայութենէ յետս դարձուցին յիշէին և յոգւոց հանէին ։ Այլ նր հայեցեալ 'ի կարգ և 'ի կրօնս քրիստոնէութեան՝ ընտելանայր որ ըստ օրէ յաճախութիւն, և քաջ տեղեկանայր ճշմարտին ճշմարտութեան. և այնուհետև 'ի զեղջ մեծ եկեղեցւոյ, և յարտաքս եղեալ՝ լայր դառնագին վն կորստեան անձին իւրոյ. և զնմին շարժէր յարտօսր՝ որ զնովաւն էին . և յանկարծակի յարուցեալ կայր յաղօթս՝ յիւր մնացն 'ի խորոց սրտին բանս աղօթական յարմարեալ, և ասէր . Տէր երկնաւոր՝ մեղայ յերկինս և առաջի քո, որ առաքեցեր զմիածին որդիդ քո 'ի փրկութիւն ծի, դարձուցանել զմոլորեալս 'ի գիտութիւն ճշմարտութեան, և տալ ճանաչել զմի աստուածութիւն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, և երկրպագել և օրհնել զամենասուրբ զերրորդութիւն, և մկրտիլ յանուն քո սրբոյ ։ Այլ իմ այսմ արժանաւորեալ, վերջացայ 'ի մասնէ երանութեան, զի յանօրինաց ընկղմեցայ 'ի խորս անօրէնութեան յանկատար հասակի, և հարան յիս մեղք յետսդարձութեան անգիտութեամբ, ոչ դու իսկ գիտես՝ որ 'ի միտ առնուս զամենայն գործս մարդկան ։ Այլ արդ մեղուցեալս 'ի խորոց սրտից կարդամս առ քեզ. ողորմեա ինձ Աստուած, ողորմեա ինձ Տէր, ողորմեա ինձ և ընկալ զիս գթութեամբ քո . և արա առ իս զգութ-

մարդասէր շնորհաց քոց, որով դառնան մեղաւորք յապաշխարութի մի ներելոյ քաղցրութե քո. որ տաս երկայնմտութի տարակուսելոյ, և կեանս այնոցիկ` որ մաշեալ են սրտիւք. և ոչ ցանկաս բարկանալ, և ոչ յաւիտեան պահես ոխս ըստ արժանի մեղաց, որ կարդան առ քեզ տր ած: Նմանեցայ ես անառակ որդւոյն, և մերժեցայ ես 'ի հայրենի ծոցոյ` որ լուսաւորեաց զիս վերստին ծնընդեամբ աւազանին 'ի նորոգութի հոգւոյ` կեալ ընդ նմա մինչև 'ի չափ հասակի կատարման քոյ. և այժմ դարձայ առ հայրդ գթած. յիշեա զանկատար հասակն իմ, յոր մեղայ անգիտութբ, և զմեղս տգիտութե իմոյ մի յիշեր. այլ յիշեա զիս տէր ըստ ողորմութե քում և ըստ քաղցրութե. և արա զիս իբրև զմի 'ի վարձկանաց քոց, և ազատեա զիս 'ի կերակրոց անմաքրոց խոզենեաց. լուա և սրբեա ապաշխարութե արտասուօք. զի մաքրեալ 'ի մեղաց` 'ի հաճոյս կամաց քոց կացից յայսմ հի անարատ վարուք և ուղղափառ հաւատով, անփոփոխ մտօք փառաւորելով զանփոփոխելի երրորդութիդ` զհայր և զորդի և զսբ հոգին` այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ ապա յետ այնորիկ զլուսաւոր կարգաց բուռն հարկանէր` հաստատուն հաւատովք` պահօք և աղօթիւք, տքնութբ և արտասուօք իբրև վերստին լուացմամբ. զի զարտասուսն առնէր հանապազ երկրորդ աւազան 'ի մաքրութի մեղացն` զոր անգիտութբն մեղաւ. ընդ որ հայեցեալ բազմաց` փառաւոր առնէին

զած

զնմ̃ 'ի վր̃ եղելոց ողորմութեցն ա̃յ, որ ցու-ցաւ յայլսն ։ Յայնժամ իբրև տեսին զողջա-խոհութի վահանայ, և զպնդութե հաւատոյն՝ որ 'ի ք̃ս, որ իւրքն էին, խորհեցան 'ի վերա կենցաղոյս մուծանել զնա. զի մնասցէ որ-դի նորին ժառանգորդ տ̃րութեն 'ի գողթան ։ Իսկ նա ոչ առնոյր յանձն. և բռնադատե-ցին զնա մեծաւ թախանձանօք, մինչև հա-ւանեցուցանէին կամաց իւրեանց. և այն-պէս հարկեալ եմուտ 'ի կարգ ա̃ի, և փե-սայացաւ իշխանին սիւնեաց (բաբկենի) ։ Բայց յիւր մ̃տաւէր կամացն ոչ փոխեցաւ. և խոկայր միշտ՝ զի մի խափանեսցէ զնա ա̃իս մեծութի. և մի ծածկապէս պաշտեսցէ զնմ̃ առ ահի այլազգեաց. վ̃յ և զերս հնարից ա-ղօթիւք 'ի տ̃ր աղաստան առնէր ։

Ընդ այն ժմկս եհաս վախճան ամիրապե-տին՝ որ արձակեաց զնա յիւրայլն ա̃ն, և պատուէր ետ դառնալ առ նա. և այնմ զեր-ծանէր վահան 'ի ն̃ր դաշանցն. սակայն 'ի կասկածի կայր յերեսաց այլազգեաց՝ որք ունէին զիշխանութի հայոց ա̃ին, զի մի դա-շակեսցէ ոք առ նոր ամիրապետն վ̃ն նորա դառնալոյն 'ի քրիստոնէութի. որ եղև իսկ. զի եհաս համբաւն մինչև 'ի դուռն արքու-նի ։ Զայն տեսեալ վահանայ՝ խորհեցաւ փնալ յա̃ն յունաց համդերձ ընտանեօք իւ-րովք. եթող զնմ̃ իշխանութի իւր, և առեալ զ̃ե իւր սակաւ թոշակ, և հեծեալ ձիաւորս եօթն՝ տարաժիկ կամէր լինել [c] ։ Իսկ հա-սեալք 'ի վայրցձոր՝ յոյժ թախանձեալ լի-

 նէր

ներ անդ. 'ի կնոջէն աղաչանօք՝ պատմել ուր երթալոց էր. և նա պատմեաց նմա: Իսկ տիկինն ազդ արար եղբարց իւրոց, որք էին 'ի սիւնեաց նախարարութենն. և նոքա եկեալ փութով արգելուին զնա յոյժ՝ թախանձելով ընդ ընտանեօքն իւրովք. և բանագատել 'ի նոցանէ՝ հաւանեցաւ 'ի հարկէ դադարել անդ, ուր և կամեցան. և անցոյց 'ի սիւնիս տարի մի՝ պէսպէս փորձանօք բանսարկուին. զի այլազգիքն զհետ էին զբուանս ածել զնա. և յայնպիսի վտանգի քաջ համբերացաւ հաստատուն մնաց նա 'ի քս, և ընկաւն կամացն երկեւղածը յայտնեցաւ՝ առ 'ի չորսչելոյ 'ի սիրոյն, զոր ունէր յինքեան առ ած, և առ խաչառ լքանելոյ զնի սէր և զցանկութիւն նր. մինչև յայնմհետէ ոչ լինէր նմ համբերառ և դադար ուրեք, այլ՝ զկնին թողեալ առ ընտանիս իւր՝ եւս զինքն ուղ և կամաց նր. և զոմանս առեալ ընդ իւր 'ի զինուորաց՝ այսր անդր յածէր աներևութաբար երկիւղիւն իւր, խուսափել 'ի կասկածանաց թշնամեաց՝ որք որսային զնա 'ի կորուստ:
Ո ի ստուգեցաւ ամիրապետին՝ թէ դարձաւ 'ի քրիստոնեական հաւատն, և արհամարհեաց զդենն իւրեանց. և նորին հրամանաւն յուղէին զնա: Իսկ այնոց հալածական շրջէր երանելին վն արդարութե, զի և ոչ ոք իշխէր մատուցանել զնա առ ինքն. մինչև վտանգեցան ընդ ինչք նր. և որք ը նմա էին՝ հերքեալ 'ի բաց կային 'ի նմանէ. և զնա միայն թողին: Նայց նր յանձ ապաւինեալ՝

ոչ անյոյս լինէր յապաւպայիցն , այլ գոհանայր զՏէ 'ի փորձութիւն . և այլակերպէր զինքն ձևով աղքատութե . և երթայր հանդիպէր հայրապետին ( որ էր յայնժամ Տր դաւիթ կթղկս յաջորդն յոհաննու իմաստասիրի ) 'ի վաղարշապատ քղքի . և ծանուցանէր նմ զփորձանսն՝ զոր կրէր 'ի պտրզմանէր դիւէն . և հրաման առնու երթալ յանապատ և 'ի վանորայս՝ հանդերձ գրով նր , զի ընկալցին զնա միաբանութբ . և այնպէս ամբանայր ուրեք և պաշտէր զԱծ պահօք և աղօթիւք , և Ճգնութբ անփորձ մնայ 'ի մեղաց : (7)

Եւ վահան յօժարութբ ունկնդիր եղեալ՝ չոքաւ 'ի մենաւորանոցս ուրեմն , յն 'ի վանս միանձանց Ճգնաւորաց՝ որ 'ի շիրակ գաւառի . և մտեալ Ճգնէր անդ յառանձին սենեկի առաւել ք զառաւել , և աւազան զարտասուս առնէր . և սմ պնդութբ նահատակէր 'ի վերայ առաքինութե . և անցուցանէր իբրև անխս մեծ խստակրօն ժուժկալութբ . և զարմացուցանէր զմսն : Յայնժամ դրձ յարուցանէր պտրզմ փորձիչն . զի ահ արկանէր կրօնաւորացն 'ի պատձառս նր . և նք յայտնէին զիրսն տիկնոջ գաւառին . և նա ասէ . երթիցէ 'ի բաց , զուցէ մեզ և ձեզ պատուհաս հասցէ յարքունուստ վս նր :

Զայն լուեալ Ճգնաւոր նահատակին քմի վահանայ՝ յարուցեալ գնաց անտրտունջ զուարթութբ առ այլ միայնակեացս Տին յանապատ ուրեմն անյայտ . և անդ առաւել

ք զաւաջինն ձգնէր առ մի՝ միով հանդեր-
ձիւ և բոկոտն . և զմոխիր ոպ̃ զհաց ուտէր,
և զըմպելիս արտասուօք խառնէր՝ ընդ աստ-
ցելոյ սաղմոսին, և ընդ խրատու առաքելոյն՝
թէ լաւ է շնորհօք հաստատել զսիրտս՝ քան
թէ կերակրօք. զի ոչինչ օգտեցան՝ որք այն-
պէսն գնացին : Այլ ընթերցանէր և ունկն-
դիր լինէր գրոց սրբց, և խելամտէր և քննէր
և ուսանէր զհին և զնոր կտակարանս , և
տեղեկանայր ՚ի նոցէ զհանճարն այ կամացն .
և հարց ուսուցանողաց էր հպատակ և հլու.
և խոկայր զօրէնս տն ՚ի տուէ և ՚ի գիշերի.
և ոչ միով իւիք զանց առնէր զպատուիրա-
նին պահպանութք վն փրկութ անձին իւրոյ :
Այլ այնպէս որ ք զօր վառեալ ՚ի բարբարոսաց
ածեղէն սիրոյն՝ այնուհետև զմարմնական
կարիս և զհանգիստ քամահէր , և արտա-
քոյ մարմնոյ և ձի խորհէր. և ցանկայր վկայ-
ութե և մկրտութե արեան՝ առեալ զպսակս
զայս . որպէս փափաքէ եղջերու յաղբերս
ջուրց, այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ
ած :

Այլ սովին խորհրդով ընդ առաջադրութեն այ՝
հաստատեաց դէմ եղեալ գնալ ՚ի դամաս-
կոս ՚ի դուռն արքունի, և յայտնապէս խոս-
տովան լինել զքրիստոնէութին , և յայտնել
յանդիման այլազգեաց զիւր անգիտութե
մեղսն՝ որով ՚ի նոցանէն պարտեցաւ . զի ՚ի
նոցէ մեռցի . և կմ համարձակութ առցէ ու-
նել զքրիստոնէութե զկարգն և զհաւատն ,
զոր ծանեաւ և դարձաւ : Այլ այնպէս հրա-
ժա

ժարեալ 'ի ճգնաւորացն՝ աղաչէր աղօթս առնել վն նր : Եւ հասեալ 'ի վանս մաքենոցաց՝ որ յերկրին գեղամայ , ծանուցանէ զամ հօրն ստուգութ և վն ճանապարհին և վն ցանկութն առ մարտիրոսութի . և ընդունէր 'ի նմէ յորդորական խրատս և քաջալերութիւ 'ի քն . զի և առաջնորդ ուխտին սաղոմոն անուն էր այր առաքինի և գիտնաւոր ըստ այ ( անդ էր և սողոմոն՝ որ յետոյ 'ի խոր ծերութե ընտրեցաւ կթղկս ) :

Ընդ 'ի տօնի սբ խաչին հաղորդեցաւ երանելին վահան պատուական մարմնոյ և արեան քն . և առ նմին տեսիլ ինն սքանչելի ցուցանելով 'ի տնէ . զի լոյս անճառելի երևեցաւ 'ի բարձանց , և ձայն լսելի եղև՝ որ ասէր . Քաջալերեա՛ց վահան , զի թողաւ քեզ անգիտութե մեղքն . և ցանկութի քո կատարեսցի վկայութք . և զխոստացեալ պարգևսն ընկալցիս 'ի քն : Եւ ոմանց 'ի վանականաց անտի զլոյսն տեսեալ՝ սքանչացան ընդ անպատմելի անհասութի տեսլեանն , որ ցուցաւ ըն առաքելոյ տեսուե . և ամենքն փառաւորելով զած՝ յուղարկեցին զնա մեծաւ սիրով և արտասուօք :

Եւ անտի գնաց 'ի թեղենիսն . և արարեալ նաև յայն վանս աւուրս ինչ , եկն յայլ վանս սովլի անուն . ուր առաջնորդ ուխտին յովհաննէս մեծաւ սիրով կալաւ զնա (8) . և քաջալերեալ յորդորեաց զնա 'ի բարուք ճգնհորդութե խրում , տեղեկացեալ եթէ վն այ երթայր 'ի մահ 'ի տեղին ուր անգիտացաւ

զՔն՝ զի ծանիցէ. և հայրն փինկ իւր տուաքէ զհետ նր զամանս յեղբարցն՝ տեսանել

զվախճան խորհրդոյ նորա:

Արդ՝ յուղարկեալ անտի՝ եկին հասին ՚ի սուրբ երաշխաւորան, այն է ՚ի վանսն արծկեայ՝ երաշխաւոր կոչեցեալ ՚ի բզնունեաց գաւառին. և էր անուն առաջնորդի ուխտին արտաւազդ (որ և ըն անանց երկանունն՝ տր աբրահամ կոչեցեալ). որ ըն առաջ ելեալ վահանայ եղբարբքն՝ ընդ մարդասիրութե ընկալաւ զնա (9). և հարցեալ տեղեկացաւ ՚ի նմէ զամ ինչ՝ որ պատահեցաւ նմ յանցանս տունէն, և զդարձն իւր, և զփորձանսն՝ զոր ինչ մնացեալ կրեաց ՚ի հալածանս ամս չորս. և թէ այժմ ՚ի հինգերրդ ամի հալածանացն երթայ տր ՚ի կատարումն անձին իւրոյ: Զայն լուեալ հօրն և ուխտին՝ փառաւոր առնէին զամն ՚ի վն պաշտելեացն. և երանէին զբարիոք մտածումն և զվախճանն սր՝ որ յղւս ույ էր, զոր հանդերձեալ էր կատարել. և այլովք բանիւք քաջմօք մխիթարէին զնա, և քաջալերէին յածային գրոց. և յանձն արարեալ զնա տն՝ յուղարկեցին ողջունիւ և արտասուօք և աղօթիւք. և մի ոմն յեղբարցն չոքաւ ընդ նմ, սպասաւորել նմա որչափ և կամեցի:

Եւ զբզմ օթևանօք զանց արարեալ գայ հասանէ ՚ի քաղաքն ուրհայ՝ երկիրպագանել փրկչական պատկերին քսի, որ ՚ի նը դաստառակին. և աղօթս արարեալ առ տր՝ յանձն առնէր շնորհաց հոգւոյն սրբոյ, և

գնայր

գնայր զճ՟նպ՟հն սաղմոսիւք և անդադար ա-
ղօթիւք , հանդերձ եղբարբք՝ որ ընդ նմա . մինչև եկն եհաս 'ի դէմ եղեալ տեղի կատարմանն յերկիրն դամասկոսի , ուր էր յայն ժամ ամիրապետն 'ի ռուծափ քղ՟քի՝ մօտ 'ի թերիա 'ի մէջ համայ և համսայ : Յայնժամ ասաց ցկրօնաւորսն՝ որք զհետ նր՟ էին , կալ 'ի բացեայ , զի մի ըմբռնեսցին 'ի պատճառս իւր : Իսկ ինքն առաքինի նահատակն՝ տր՟ն վահան՝ եկեալ ծանուցանէր զանձն սպասաւորաց դրան արքունի , թէ ով ոք իցէ նա . ասէր միանգամայն և զպատճառս գալստեան իւրոյ յարքունիսն :

Իսկ նք՟ լուեալ սքանչացան . և ոչ հաւատային բանից նր՟ : Բայց նա աղաչէր պատմել վասն նր՟՝ դպրապետին և մեծամեծացն . մինչև եհաս բանն առ նն՟ . և եկեալ և տեսեալ զնա ոմանց՝ զարմացեալ կային , թէ ո՞րպէս կերպարանս ունի աղքատութ՟ , յիշելով զառաջինն՝ թէ որպիսի ոք էր այրն՝ երևելի և փառաւոր յարքունիսն . համարեցան այլազգ ինչ լինել՝ վ՟ս այնպիսի հանդիպելոյ իրաց . սկսան հարցանել , թէ զի՞ այդպէս ես : Իսկ վահան զճշմարտութի՟ իրացն խոստովանէր , թէ վ՟ս ք՟սի զկամաւոր աղքատութի՟ յանձն առի , արհամարհելով զանցաւոր մեծութիւն՝ առ սէր նր՟ , որ վ՟ս իմ աղքատացաւ՝ որ տր՟ն է և ած՟ յո՟քս . և նր՟ ողորմութ՟բն սրբեցայ 'ի մեղաց . և այժմ եկի այսր՝ զի մեծացայց զանանց մեծութին արեամբ վկայութե՟ . արդ աղաչեմ զձեզ՝ ծանուցանել զայս այսպէս

ամի-

թեանդ. այժմ և յաւիտեանս . ամէն :
Եւ յետ աղօթիցն գնաց առ դահճապետն , և ծանոյց նմա զպատճառս գալստեան իւրոյ . և գրով զիրսն ստուգեալ՝ ետ ցուցանել ամիրապետին : Իբրև ընթերցաւ ամիրապետն , զարմանայր ընդ գիրսն և ընդ բանսն . ետ հրաման ածել առաջի . և հայեցեալ ՚ի նա՝ ասէ ընտանի և հեշտալի բանիւ . Տէր աղքատ կերպարանիւ մահաց՝ մերկեալ ՚ի քո փառաւոր իշխանութենէն . ուրեմն երկիրն հայոց զքեզ յայդ հասոյց : Ոնի ես վահան . իմ՛ որն զանձն ունայնացոյց վասն իմ՛ ՚ի կերպարանս աղքատութեան եկեալ . և հնազանդ եղև մահուչափ . արդ զոր նա վասն իմ կրեաց , և ես յայնմանէ ոչ վերջանամ :
Ասէ ամիրապետն . մոլեգնիս ՚ի դիմացսառնապատ լերանցն հայոց : Վահան ասէ . այն ( այս չար ) որով ՚ի ձեր ուսմանցն յանդիտութէ ըմբռնեցայ , հալածեցաւ յինէն . մի զի խաւար ՚ի լուսոյ փախչի : Ասէ ամիրապետն . ասեն ձեր իմաստունքն, թէ դիւացն ՚ի բարուցն ՚ի վայր անկեալ՝ այլոց չարք և դեւ . և ստոյգ է՝ զի ձեզ եղեն չարք յօժարս և ՚ի հանդերձեալն ուր յուսացեալն էք . արդ մի մոլորիր , և մի որոշիր ՚ի դենէս մերմէ . զի՞ է քեզ բարկատեաց այր . Տէր մոլեկանաց նմանեալ՝ ՚ի բաց թողուս ՚ի քէն զփառաւորութիւն կենացքոց : Ապա հրամայեաց բերել զանձս ոսկւոյ և արծաթոյ և հանդերձս , և ասէ . առ զայդ . և յաւելից քեզ

ծոյս

ծառայս և աղախնայս և ձիս և ջորիս · և իշ-
խանութիւն քեզ տայց՝ ուր և կամիս, եթէ
աստ, և եթէ 'ի գողթան ժառանգաւոր քո
իշխանութեան · և ած զմտաւ զպատգամա-
ւորն մեր, որ ետ մեզ յերկրի աստ զայս իշ-
խանութիւն մեծութե, և անդ դրախտին
փափկութիւն ։

Ո.ւ այս առէ երանելին համբերութք ·
յառաջագոյն լուեալ է իմ զքո բազմախումբ
ճարտարիմաց բանս և զխորամանկութիւնս,
որով զբազումս որսայեր 'ի ճշմարտութէն
'ի վիհ կորստեան՝ գեհենակից քեզ առնել ·
զոմանս ահարկու ձայնիւ, և զոմանս ողո-
քական բանիւք, զոմանս կարասեաւ և զո-
մանս իշխանութք սպառնեալ յուրացութի ·
զորոյ տալոց ես զվրէժն 'յաւիտենական գե-
հեննին այրմանն · բայց ծառայիս իմ ոչ կա-
րես յաղթել չարաչար մեքենայիւք քովք ·
զի պարապեալ եմ երկիւղիւն այ, զխոււք
ամրացեալ՝ հաւատով և յուսով հանդերձ ։
Տեղեակ և հմուտ եմ աւետարանին քոյ · և
առաւել հմուտ եմ քան զձեզ ձերում ա-
ռասպելախօսութեդ · վա՜ զի մոլար վարդա-
պետին ձերոյ՝ զոր ասէք պատգամաւոր լի-
նել, ոչ որ վկայէ 'ի մարգարէից, և ոչ յայլ
ազգաց · բայց միայն դուք · և ոչ դուք ամէն ·
բայց քսի այ մերոյ՝ ամ ազգ ։ Ա.յլ թէ խո-
նարհիլ կամիս 'ի բանս իմ, տուր ինձ հա-
մարձակութի՛ առնել զքրիստոնէութիւնս, և
նոյն կարգօք վարիլ 'ի կենցաղումս՝ մինչև
ծառայութք տրութեդ · ապա թէ ոչ՝ այդ,

զոր

զոր դու ինձ խոստանաս , կորուստ է Հայ-
ւոց . այլ եւս ոչ խնդիր ցանկացայ խոստմանց
քոց անցաւորաց . և եթէ կամք են քեզ՝ և
զպսակն իմ առցես . և ընդ արժանեաց Հա-
ւատացմունք միան 'ի Թգ̃րէն անմահէ , որոց
'ի կեանս , և որոց 'ի մահ :

Յայնժամ բարկացեալ Թգ̃րն՝ հրամայեաց
տանել զերանելին 'ի բանտ , և պնդել 'ի կա-
ձեզս . իսկ նա մեծաւ ուրախութբ̃ երթայր
'ի բանտն , և գոհութի մատուցանէր ա̃յ : Ա-
պա արձակէր Թգ̃րն պատգամ յ̃ն Հայոց
առ ոստիկանն՝ որ զիշխանութի̃ նորին ունէր ,
տեղեկանալ վ̃ս առնն , զի տուգիւ̃ զխոստա-
ցէ զծագումն նր̃ և զհայրենի պատւէ̃ն , և
զպատճառս գալստեան նր̃ 'ի դուռն : Նա
զայնչափ աւուրս՝ զորս եկաց 'ի բանտին քաջ
նահատակն քն̃ի ո̃րն վահան , ոչինչ փոյթ
առնէր վ̃ս մարմնաւոր պիտոյից , այլ զցայգ
և զցերեկ օրհնէր զա̃ծ սաղմոսիւք և խնդր-
ուածովք . և զօրանայր 'ի կապանս 'ի շնոր-
հաց հոգւոյն ս̃բյ : Իսկ դատաւորն ոչ դա-
դարեր հանապազ յղել 'ի բանտն յուրեանց
իմաստնոցն՝ խօսել ընդ նմա 'ի բաց կալ 'ի
քն̃է . և դառնային 'ի նմանէ պարտեալ և
լի ամօթով , և զարմացմամբ զպարտութի
խոստովանէին . զի ոչ կարէին զդէմ ունել
անչափ իմաստուն և կորովի առնն . զոր իւ-
րև. պատմէին ամիրապետին՝ զարմանայր , և
պատուէր տայր մի ումեք գիտել զայն : (11)

Ապա եկեալ 'ի բանտն ոմն 'ի քրիստոնէից
տեղւոյն՝ յայտնէր զանձն քահանայ լինել

սաւ

տարի , և յորդորէր զերանելին , և ասէր . Եթէ տացես զվերջին թոշակն զմարմինն և զարիւնն քո 'ի փրկութիւն քեզ . զի խնամս հանդերձեցար քահանայութե : Իսկ նա ասէ . Եթէ ոչ խորհես զճշմարիտ քահանայութիւն քոյ՝ որ յետ եկեղեցիս քրիստոնէից պաշտօն, ընկալայց սիրով՝ ոչ փախուցեմ . ապա թէ ոչ՝ իմով արեամբս մկրտեցայց , և ելից յԾէ 'ի փառս նոյ . և քննիչն զարմացեալ էր իմաստութի սրբոյն՝ հաղորդեցայց զնա ը կարգի օրինաց : (12)

Իսկ 'ի գալ ողոգմէին մեծի տօնին՝ որ է օր օրհնեալ ( իմա՛ ծաղկազարդի , և ս ասուեալ զատկի ) , օրհնէր վկայն զԱծ 'ի մէջ սքանչելեաց աւուրն խորհրդածութե (13) : Իսկ ապա ասէ ցքահանայապետն զուարթ սրտիւ . խաղաղութ թողից զքեզ յետ իմոյ ելանելոյ յԾէս , զի բարեաւ ընկալար զիս : Իսկ զարմացեալ այրն ասէ . զի՞նչ դիւրութիւն ցուցի քեզ . զի դու ասեցեր զդիւրութիւն մարմնոյ , և սիրեցեր զկռանդ՝ ոչ արդարև յուսացեալ 'ի նոր . վասն զի յոյս խակ երևէր չնորհ լուսաւոր քում անձինդ . ոչ և այժմ հրամայումն իմն ցուցանես բանն՝ զոր չէ իմ լուեալ : Իսկ սբն ասէ . հաստուցանողն երախտեաց հատուցէ քեզ . այլ ես վաղիւն փախիմ սրով առ որ անձկացեալն եմ :

Իսկ եղև ը մարդարէութե երանելւոյն . զի 'ի վաղիւ անդր եհաս հրովարտակն 'ի հեւսիսային իշխանէն ( յոստիկանէ հայոց աշխարհին ) , որ տուղէր ամիրապետին զխա-

հա-

Համայ գողթնացւոյ, թէ յիմաստնոց է և բարետոհմիկ, և ոչ օտար ոք անծին. և յաղագս այնորիկ եկն 'ի գաւառն, զի առցէ իշխանութիւն և համարձակութիւն քրիստոնէութեան յիւր բնիկ տն, և կամ՝ հատցէ նմա վը-քափ մեռանիլ։ Ընդ այս հիացեալ ամիրապետն. ապա հրամայեաց ածել զառաքելոյն զառաջեաւ, և ասէ. զի՞նչ ունիս ասել, եթէ և արդ ոչ զգաստացար 'ի յամառութեանդ։ Ասէ երանելին. Հնազանդութիւն մի է, և ոչ ունի բանս ստութեան. ես զգաստացայ յիմաստնոյն գրոց, և ծանեայ զմոլորութիւնդ ձեր, որով զիս որսայիք 'ի կորուստ յանդգնա աղայութեն։ Այլ արդ ոչ այնպէս, զի ոչ փառք և ոչ պատիւ, ոչ պարգևք և ոչ մեծութիւն, նաև ոչ տանջանք, ոչ բանտ և ոչ կապանք, ոչ հուր և ոչ սուր, և ոչ այլ ինչ աղի հնարք մեքենայից կարեն մեկնել զիս 'ի սիրոյն Քրիստոսի. որ ոչ յիշեաց զմեղս մանկութեան իմոյ, այլ յիշեաց զիս ըստ ողորմութեան իւրոյ և բազմութեան գթութեան դառնալ 'ի խաւարէ 'ի լոյս, յանգիտութենէ յիմացութիւն. և զի՞նչ հատուցից տն ըստ ամ ողորմութեան իւրոյ. այլ զբաժակ մահու ընկալայց, և զանուն տն կարդացից, և փառաւորեցից առաջի ամ ա-

մելեացնր ։

Յայնժամ բարկացեալ ամիրապետն՝ հրամայեաց արագ լուծանել զնա 'ի կենաց. և որք ընդ նմա մեծամեծք էին՝ աղաչէին անյապաղ զնա լինել. զի մի հայհոյեսցի 'ի նմանէ գենն նց. քանզի հմուտ էր, և ոչ կարէին

րելոյն զպէտ ունել զօրութե բանիցն ։ Ապա հրամայեր դահճապետին՝ տանել 'ի տեղի սպանմանն, և անդ ևս ահ արկանել, թերևս դարձցի. իսկ եթէ ոչ հաւանեսցի, մեռուցի ։ Արթայր երանելին 'ի մահ մեծաւ ուրախութբ՝ սաղմոսելով, առ քեզ տր համբարձի զաչս իմ՝ որ բնակեալդ ես 'ի յերկինս. և բազմութի ժողովրդոցն զհետ երթայլին յհմ ազգաց՝ տեսանել զնահատակութի նորա ։

Եւ իբրև եհաս 'ի տեղի կատարմանն, ըզձեռս իւր յերկինս համբարձեալ՝ ասէր. Գոհանամ զքէն տր՝ որ զհանապազորդ զաղտասուս իմ և զհառաչանս ոչ անտես արարեր, այլ՝ արժանի արարեր մեռանել վն անուանդ քո մեծի և ահաւորի. արդ՝ յիշեա զիս տր մարդասիրութբ քո, և ողորմեա ինձ, և արժանի արա զս սիրելիս քո միանալ յանվախճան կեանսդ. և արա յամօթ զբռնաւորն պերճացեալ ինքեան գործակցաւն. և զմանկունս եկեղեցւոյ քո պահեա հաստատուն և անշարժ 'ի վր վիմին հաստատունէ, ըստ երկնաւոր կոչմանդ ձգհորդել 'ի համդերձեալդ, և զս որդիս լուսոյ փառաւորել զամենասուրբ զերրորդութիդ. զս որս և ես արժանի եղէց օրհնել զքեզ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։ Իսկ դահճապետն մերկացուցեալ զսուրբն՝ ասէ ցփահան. ահա եկն եհաս քեզ օր դառնութե և մահու. և դրձ՝ կենաց, եթէ կամիս ։ Ասէ սրբն. ընտրեցի զմահ վն քնի՝ քան զկեանս անցաւորս ։ Եւ

անդէն վաղվաղակի հատին զպարանոցն : Այսպէս կատարեցաւ փառաւոր իշխանն՝ տէրն Գողթնեաց՝ սուրբն Վահան, յռուծափ քաղաքի՝ (որ է արաբացւոց՝ ռուսաֆէ) յերկրին դամասկոսի, ի շամոյ, յամի տն 738 ( կամ 737 ), և 'ի Թուականութեն Հայոց ՃՁԷ ( կամ ՃՁԶ ), որ օր լեալ էր մարգաց, այն է ըստ Ծմկին ըստ այնմիկ՝ յապրիլի 14 . յերկուշաբաթի օր զատկին (14), յիններորդ ժամու . 'ի հասակի ԼԸ ամաց, զկնի ԼԳ ամաց գերութեն : Իսկ ժողով հաւատացելոցն տեսեալ օրհնէին զԱծ . բայց ոչ ոք 'ի նոցանէ իշխէր մերձենալ 'ի նշխարս սրբոյն . Եղի քաղաքին աղաղակէր զպատանս լիս ամիրապետին : Ապա 'ի գիշերին յայնմիկ տեսիլ իմն ահաւոր զարհուրեցուցանէր զամիրապետն (15) . վասն և 'ի վաղիւն անդր քարոզէր բանիւն նր ներքինապետն, եթէ համարձակ լիցի քրիստոնէիցն առնուլ ըզմարմինն վահանայ : Իսկ անդէն վաղվաղակի ժողովեցաւ բազմութի քրիստոնէից արանց և կանանց . և հաւաքէին զկաթուածս արեանն ըստ իւրաքանչիւր կարի : Իսկ զի ոչ դոյր 'ի քաղաքին ժողովուրդ ազգային 'ի Հայոց անտի, այլ միայն հոռոմ, ասորի յակովբիկ, և նաստուրի կմ նեստորականք, անկաւ վէճ և հակառակութի 'ի մէջ նց՝ վս մարմնոյ սրբոյն . մինչև յետոյ ուրեմն խաղաղացեալ, իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ 'ի սր արեանէ և և 'ի հանդերձէ վկային առեալ մասն ինչ՝ տային օրհնութի տն . իսկ զնշխարս մարմնոյն միաբան բարձեալ դնէին 'ի պահեստի

ուրեմն, և մնային տեսչութեն այ:
Իսկ այր մին Թէոփիլոս անուն հռոմ՝ ՚ի զօրացն արքունի՝ քրիստոնեայ, գողացաւ ըզնշխարս սրբոյն ՚ի գիշերի արամբք չորիւք, և տարեալ դնէր յիւրում սենեկին: Եւ ՚ի նմին գիշերի յայտնեցաւ եպսի քղքին՝ զոր ինչ արար Թէոփիլոս. և յայտնի եղև ամէն, զի պատմեաց եպսն զտեսիլն. և ժողովեցան ամենեքին ՚ի համբաւն՝ տեսանել թէ որպ արասցեն. և միաբանեալ հաւատացելոցն՝ բերին զպատուական զանձն յեկեղեցին. և խորհեցան շինել վկայարան սրբոյն վահանայ:
Իսկ հիւանդ մին մերձ ՚ի մահ՝ աղաչէր տանել մերձեցուցանել զինքն ՚ի նշխարս սրբոյն. և իբրև մերձ եղև, առ ժամայն բժշկեցաւ ՚ի ցաւոցն. և յարուցեալ օրհնէր զած, և գնայ ինքնին ՚ի տեղի իւր. և ամէն տեսեալ փառաւոր առնէին զած. և առաւել ևս յորդորէին շինել զհանգստարան սրբոյն ամենայն

զարդ գեղեցկութբ:

Եւ այր մին ՚ի բարձրաբերձ որմոցն գթեալ՝ ՚ի վայր անկանէր յերկիր. մինչև ամէքն ձիչ բարձեալ ասէին՝ եթէ մեռաւ. իսկ նա ողջ առանց վնասու ապրեալ լինէր. և յոտն կացեալ՝ ասէր. կենդանի եմ, և ոչինչ վնասեալ. զի տեսի յայտնապէս զվկայն այ զպահան, զի ՚ի գթեն իւրում՝ բուռն հարեալ իջոյց զիս ՚ի խոնարհ: Եւ ամէն տեսեալ և լուեալ զսքանչելիս ՚ի վերայ սքանչելեաց՝ փառաւորէին զած. և շինեցին վկայարան սրբոյն, և մեծազարդ սպասուք զարդարեցին զեկեղեցին.

ցին ․ և 'ի հանգիստ փոխեցին զնշանագործ վկայն Քրիստոսի՝ ըստ օրինի փառաւորեալ նահատակաց սրբոց ․ յորում տեղւոջ և բազում հիւանդք 'ի պէսպէս ցաւոց զառողջութիւն ընդունէին, և օրհնէին զԱստուած 'ի ձեռն սրբոյ վկային վահանայ ։ (16)

---

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) եղինակ պանծալի վկայաբանութես որ 'ի Ճ․ Ա․ թ՛ 'ի Ճառընտրի մերում մեծի, ճանաչի լինել ումն 'ի ժամանակակից մատենագրաց ազգիս ․ հաւանական թուի՝ թէ իցէ մին 'ի կրօնաւորաց անտի, որք յերկուց վանաց՝ թ՛ 'ի սովեայ, և յերաշխաւորաց՝ ուղեկից եղեն սրբոյն մինչև յերկիրն գամասկոսի 'ի տեսանել զկատարումն նր ։ Ս՛ հեղինակիս պահեցաւ 'ի մեզ յոմն ընթացս պատմութես, դուն ուրեք ևեթ յառաւել պարզութի վերածելով զմթութիս ինչ ինչ բանից և բառից, կամ յաւելլով զբանի մի բառս 'ի յայսմաւուրաց՝ որ է քաղուած նորուն պարզաբանական ․ միանգամայն և զանց առնելով զյառաջաբանութի հեղինակին ․ զոր արժան է աստ արձանագրել 'ի նշանակ վսեմ ոճոյ նորա ․ զի եղեալ վերնագիր այսպիսի, * Պատմութի անցից 'ի
„ հարաւային ազգէ 'ի վր հայոց, և վկայաբանութի սրբոյն
„ վահանայ որդւոյ խաւարողի գողթան տն ||, սկիզբն
առնէ բանից իւրոց այսպէս ․

* Ահա մերկացաւ վաղակաւորն 'ի պատենից, զոր տե-
„ սանօղն յառաջագոյն գուշակեալ ողբայր՝ զբարկութի
„ տն 'ի վր իջելին այն ։ Զարթեաւ ազգն իսմայէլի
„ յանխնայ վանել զազգն հայոց՝ 'ի սով, 'ի սուր և 'ի
„ գերութի, աւերել և քանդել զԱծն հայոց, և զվայե-
„ լուչ տեղիս և զեկեղեցիս յինքեան ըմբռնել ․ զազատութի
„ և զՏէրութի նախարարացն պէսպէս աղետիւք խորհե-
„ ցան բառնալ ․ և զպայծառութի լուսաւոր կարգաց
„ եկեղեցւոյ լուսազարդեալ սպասիւք և քհնյական
„ խորհրդածութե հանդերձ պաշտօնէիւք չնջուցանէին ․

(9) 'Ի Ծ. հայր վանացն երաշխաւորաց կոչի լոկ արտա-
ւազդ. իսկ Հ. յաւելու կոչել իբր երկրորդ անուամբ
նաև աբրահամ. համեմատ յաւելուածով կարևոր բա-
նից՝ օրինակ զայս. * Եւ հայր վանացն արտաւազդ ա-
,, նուն որ աբրահամն ընկալաւ զնա սիրով, և խօսե-
,, ցաւ ը՟ նմա բանս մխիթարականս. և ասաց, թէ կաց
,, մնա առ մեզ. և աղօթեա ը՟ ժրաջան և մշտնջենաւոր
,, եղբարցդ. քանզի անխափան էր աղօթք ժամանակաց
,, որ ուխտին՝ փոխանորդութ՟ որ կրօնաւորացն: Եւ
,, ասաց հայրն աբրահամ ցնա վահան, թէ ես քեզ ե-
,, րաշխաւոր առնենի քո՟ի գաւանկից լինել սրցն ոչ:
,, Ասէ վահան. ես յօժար եմ, թէ առնիցեն զիս հայր
,, որ. քո վն մեր մեռաւ. և ես ուրախութ՟ մեռանիմ
,, վն անուան նր. զի պարտական եմ լինել զպարտաւո-
,, րին չարչարանացն քոն 'ի մարմնի իմում. ընդ թշնա-
,, մանացն՝ թշնամանս, և ը՟ անարգանացն՝ անարգանս.
,, ը՟ հալածանացն՝ հալածանս. և ընդ կապանացն կա-
,, պանս. ընդ առնենին դատապարտութի. և ը՟ սուտ
,, վկայիցն արդար վկայութի, թէ քրիստոնեայ եմ ես:
,, Ընդ կիւրեղացւոյն՝ ես բանտամ՝ զիմ փոյթն: Ընդ
,, գեղարդեանն՝ սուսերս. և ընդ մահուն՝ մահ. միայն
,, թէ արժանի գտայց աղօթութեն ոչ: Իսկ որ հայրն
,, արտաւազդ իբրև եւս զհաստատուն միտս նորա, և
,, զսէրն՝ զոր ունէր առ քն, յաղօթեաց զմանաւարհսն.
,, և եա ուղեկից նմա մանկագոյն արեղայ մի||: Զայս
ամ թէրևս առեալ է Հ. յայլմէ լուսագոյն օրինակէ, կամ
'ի յիշատակարանաց նոյն ուխտին. զի գեղեցիկ միաբա-
նին ը՟ վկայաբանութեա:

(10) Զայս բան՝ որ վն առաջնոյ գրեցաք, պակասէ՟
գտանեմք 'ի Ծ. այլ եդաք ըստ Հ. իբրև 'ի լուսագոյն օրի-
նակաց առեալ. միայն թէ որ 'ի ձեռ" Հ. գրի՟Լ գրած.
'ի առ. եդեալ է՝ գեհան մի, ոչ թէ ընթերցեալ է-
ցէ զ՟գրած:

(11) Ծ. ոչ որոշէ զթիւ աւուրց բանտարկութե. այլ
ասէ. * Եւ զայս աւուրս անփոյթ արարեալ 'ի բան-
տին վն մարմնաւոր ախտոյից||: որ 'ի Հ. պարզեալ է
այսպէս. * և մնաց այնպէս 'ի բանտին զաւուրս ը՟. ան-
առձաղ||. այլ աւելորդն պարտ է իմանալ զայլ եա աւելի
ժմկ մինչև 'ի գալուստ իշխանաց հրովարտակին, զոր
յղեաց ամիրապետն յՏն հայոց: Եթէ գտանեմք և 'ի
Ծ. զթիւ աւուրց ուրեք, գուցէ հայեր այն 'ի վեր-
ջին աւուրս սրբոյն՝ յորս ծանրակշարդի մինչև 'ի զատիկ.

զոր.

փոխել վկայարանի՝, որ շինեցաւ յօտար երկիր՝ ուր կատարեցաւ։ Այս բան ՚ի ծերունեաց աւանդուի, թէ քոյր սրբոյն իցէ նուագեալ զայն պերճալի շարական. զոր ցանկամք այլուստ ստուգել։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Աթանասի մեծի՝ աղեքսանդրու Հայրապետին։

Հ. յունուարի. 19։ Տր բէլ. յունւր. 18։ Յ. յունւր. 18. և մայիս. 2։ Լ. մայիս. 2։ Պատուրստ. ԱՂ. ԷԲ։ Ն. ՀԷ. բանից տեմարեայ աղաւթերէն ոթանասի։ Կոր. ծնաբ. ներբող ոթանասի։ Աթանաս ՚ի գործս էար։ Նոյնտակեանն բաթեայրոս. ՚ի ա հար. մայ. երես. 186 = 258։ Հերմանեա. ՚ի պարս. բ. պարբո։ Հատուածս։ Կալանդրեա։ Մոկբար։ Մոզոմենոս։ Թէոդորետոս։ Ջոր։ Մետաֆ։ Աղանատն պարտիզ. և այլք։ (1)



ՅԱՂԹԱՆԱԿԱՆ ՅԻշատակաց արժանի, և անմահական անուամբ անուանելի, մեծն ՚ի հարս՝ որ և երջանիկ հայրապետն Աթանաս (որ թարգմանի անմահ,) էր ազգաւ եգիպտացի, ծնեալ յաղեքսանդրիա քաղաքի եգիպտացւոց՝ յաւուրս դիոկղետիանոսի կայսեր, յամի տն իբր 295, ՚ի

երես-

և յորժամ կարի տարակուսեալ, ասեն. զոր առնէինն այլք յեկեղեցւոջ՝ առնէաք և մեք, առաջնորդ մեզ ունելով զաթանաս զայս (2) ։ Հայեցեալ Հայրապետին 'ի շնորհազարդ կերպարանս աթանասի՝ սիրեաց զնա. և հրամայեաց կարգել 'ի դասս ուխտի մանկանց, ծանուցեալ հոգւոյն՝ եթէ այն գործ նորա նախագուշակ էր աստիճանին, յոր ունէր հասանել ըստ ժամին. նոյնպէս և զընկերս նորա ընտրանաւ հրաման ետ յեկեղեցական կարգ դնել, և մատուցանել ընդ աթանասի 'ի հայրապետանոցի՝ կամակցութեամբ ծնողացն ։

Այնուհետև ըստ աճելոյ հասակին յառաջադէմ գտեալ աթանասի 'ի գիտութիւն արտաքին և աստուածային գրոց, և փայլեալ վարուք առաքինութեան, եղև նոտար աղեքսանդրի հայրապետին. և ապա ձեռնադրեցաւ 'ի նմին սարկաւագ. և էր իբրև աջոյ բազուկ նորա յուսուցանել և 'ի յանձանձել զժողովուրդն. զի կատարեալ էր յերիտասարդութեան իմաստութեամբ ալեօք ծաղկելոցն, առատ 'ի բանս, և շնորհաբուղխ քարոզ ճշմարտութեան, լի հոգւովն սրբով՝ և գերազանցեալ զամենեքումբք ։ Նա յայսր ամենայնի՝ 'ի քաղաքի բնակելով՝ զառանձնասէր վարէր կեանս ոչինչ ընդհատ 'ի միայնակեցաց, հզօր խորհրդածած 'ի հոգևորականս, և առաւել վարուք քան բանիւ 'ի շինութիւն կարգեալ ամենեցուն ։

Ընդ այն ժամս առ կայսերբն մեծին կոստանդիանոսի յարեաւ չար հերձուածն արիոսի երիցու աղեքսանդրացւոյ, որ ուրա-

նայր

արխանոսաց դասուն, և կրճտել զատամունս
՚ի վ՟ն՟ր ։

Պատմի յոմանց և այս, թէ իբրև ՚ի խնդ-
մտանէին ա՟ծ հարքն վ՟ս յօրինելոյ զգաշն
հաւատոյ, զ՟ի զհանգամանս ՚ի ջաղխումն ա-
ղանդոյն արիոսի, ՚ի սկզբան անդ ոչ սահ-
մանեցաւ ինչ որոշակի՝ մինչև անկթար յօ-
րինեացի ։ Եւ եղև ՚ի միում յաւուրց անտի՝
յորժամ դարձան աղեքսանդր և աթանաս
յօթևանս իւրեանց, նստէր աթանաս ա-
ռանձինն միայն ․ և երևեցաւ նմ՟ հոգին ս՟բ
՚ի նմանութ՟ հայրապետին իւրոյ աղեքսանդ-
րոսի, ո՟չ թէ արտաքուստ ՚ի տուն եկեալ ․
և ասէ ցնա ․ ընդէր կաս ՚ի ձեռին քո գը-
րիչ և քարտէս, և գրեա զոր ասեմս ․ զի
տարեալ յատեան սուրբ ժողովոյն ընթերց-
ցես՝ յորժամ ասացից ես քեզ ։ Եւ նա արար զ՟ն
հրամանի վ՟ճ՟ռին իւրոյ ․ և սկիզբն արարեալ
գրեաց զբանս հանգամանակին ․ Հաւատամք
՚ի մի ա՟ծ, և որ ՚ի կարգին ։ Եւ իբրև վախ-
ճանեաց զգիրն, եղեալ արտաքս ՚ի սենե-
կէն որ երևեցաւն նմա՝ աներևոյթ լինէր ։
Իսկ զկնի ժամու ՚ի վ՟ր անցելոյ՝ մինչդեռ
աթանաս ընթեռնոյր զոր գրեացն, եկն նա
ինքն աղեքսանդր հայրապետ ․ և տեսեալ
եթէ վերծանէ ինչ ինքնագիր, ընծայց ասէ
զինչ է զոր ընթեռնուս ։ Նա ետ ըզնոյն ․
այն է ասէր իմ՝ զոր արդ հրամայեցեր ինձ
գրել ։ Զարմացաւ զ՟ն այս աղեքսանդրոս ․ և
ընծեալ զգրեալսն՝ ինչ ոչ ասաց, զխորհեալ
հոգւոյն՝ եթէ աստուածային տեսչութե է գործն ։

Եւ

Տայր զմեծութ բանին և զն հօր համագոյութ,
առաքած հայհոյելով զնա՝ և ոչ ծնունդ ։ Ի
անբաժանելի զառաջինն Աղեքսանդր արժանին
'ի սահմանս եգիպտացւոց, մերժեաց զա-
րիոս 'ի հաղորդութե եկեղեցւոյ աղեքսանդր
հայրապետն, և բազմօք հնարեցաւ գործակ-
ցութ աթանասի արմատախիլ առնել զա-
ղանդ նր. բայց չեղև ձեռնհաս. զի որքան
զօր բազմանային թեւակիցք արիոսի 'ի մե-
ծամեծ իշխանայն արքունեաց և յեպսաց.
և մն այսր բազմապատիկ թուղթս ըն խմա-
սութ գրեր աթանաս 'ի դիմաց աղեքսան-
դրի 'ի կողմանս կողմանս ։ Այլ եւսեբիոս
նիկոմիդացի՝ զլխաւորն 'ի կուսակիցս արիո-
սի՝ շնորհս գտեալ առաջի աւագանւոյն,
զնմ ճեան արկանէր զաղեքսանդրիւ, ոչ
թէ 'ի սակս ընդնայն խնդրոյ վրդովէ զե-
կեղեցի ։ Այս հրամանաւ կոստանդիանո-
սի եղև ժողով յաղեքսանդրիա՝ դարման
տանել խաղաղութ ։

Եւ երբև առաւել ձախողակի վճարեցան
ելք իրացն, գումարեցաւ այնուհետև տիե-
զերական սբ ժողովն նիկիոյ՝ յամի տն. 325,
'ի ձեռն հայրապետաց. յորոց մի էր և երա-
նելին աղեքսանդր պատրիարգ աղեքսանդ-
րիոյ եգիպտացւոյ, և աթանաս աւագ-
սարկաւագ նր ընդ նմ ։ Ընդ յաղթող ախոյ-
եան հանդիսացաւ աթանաս ընդդէմ արիոսի
ածապարգև վճռութն իւրով. մինչև սքանչա-
նալ ամ սբց հարց միահաղոյն ընդ զօրաւոր
բանս նր հոգելից, և նախանձաբեկ լինել

արի-

արխանոսաց զասուն, և կրձատել զատամունս
'ի վ̃ր ն̃ր ։

Պատմի յամանց և այս, թէ իբրև 'ի խնդ-
մտանելին ոք̃ հարքն վ̃ս յօրինելոյ զգաշն
հաւատոյ, յ̃ր զհանգամանս 'ի ջաղխումն ա-
ղանդոյն արիոսի, 'ի սկզբան անդ ոչ սահ-
մանեցաւ ինչ որոշակի՝ մինչև անալթար յօ-
րինեցի ։ Նա եղև 'ի միում յաւուրց անուր՝
յորժամ զարձան աղէքսանդր և աթանաս
յօթևանս իւրեանց, նստէր աթանաս ա-
ռանձինն միայն. և երևեցաւ նմ̃ հոգին ս̃բ
'ի նմանութի̃ հայրապետին իւրոյ աղէքսանդ-
րոսի, ա̃ս թէ արտաքուստ 'ի տուն եկեղ̃.
և առ ցնա. որդեակ ա՛ռ 'ի ձեռն քո գր-
րիչ և քարտէս, և գրեա՛ զոր ասեմս. զի
տարեալ յառեան սուրբհոգովին ընթերց-
ցիս՝ յորժամ պատգիցես քեզ ։ Նա առար ե̃
հրամանի վ̃դայն իւրոյ. և սկիզբն արարեալ
գրեաց զբանս հանգամանակին. Հաւատամք
'ի մի ա̃ծ, և որ 'ի կարգին ։ Իսկ իբրև վախ-
ճանեաց զգրեալն, եկեալ արտաքս 'ի սենե-
կէն ոչ երևեցաւն նմա՝ աներևոյթ լինէր ։
Իսկ զկնի ժամու 'ի վ̃ր անցելոյ՝ մինչդեռ
աթանաս ընթեռնոյր զոր գրեացն, եկն նա
ինքն աղէքսանդր հայրապետ. և տեսեալ
եթէ վերծանէ ինչ ինքնագիր, լռեայց ասէ
զինչ է զոր ընթեռնուս ։ Նա ետ պ̃ինի.
այն է, տէր իմ՞ զոր արդ հրամայեցեր ինձ
գրել ։ Զարմացաւ ը̃ այս աղէքսանդրոս. և
լուեալ զգրեալսն՝ ինչ ոչ ասաց, գիտացեալ
հոգւոյն՝ եթէ ա̃ծային տեսչութե̃ է գործն ։

Եւ

Եւ եղև 'ի խմբիլ միւսանգամ սիւնհոդո-
սին, և 'ի լինել բանից վ՟ն սահմանի հաւա-
տոց, մատոյց աթանաս զթուղթն առ հայ-
րապետ իւր, և ասէ․ տէր իմ ահաւասիկ
բանքն՝ զոր հրամանաւ քով գրեցի, հանել
յատեան առաջի սր̃ց հարց ժողովոյս ։ Եւ
հայրապետն հրամայեաց նմ կարդալ զայն
'ի լսել ամ̃ենցն ։ Եւ իբրև ընթերցաւ հոգե-
լից բերանովն զթելադրեալսն 'ի հոգւոյն
սր̃յ, միաբան հաւանութ̃բ ընկալան զնոյն
ամ̃ բազմութ̃ի հայրապետացն՝ հանդերձ
բարեպաշտ թ̃գրաւն կոստանդիանոսիւ և
մեծամեծօք նր̃․ և հաստատեցին զուղղա-
փառ սահմանն հաւատոյ՝ խոստովանելով
զհամագոյ և զմիասնական ամենասբ̃ երրոր-
դութիւն, և դաւանելով զորդի՝ ած̃ յայ̃ հօրէ,
ծնունդ՝ և ոչ արարած․ յաւելեալ և նզովս՝
որոց յանդգնին զը̃դէն հայհոյել ։ (3)

Յետ այսորիկ զկնի արձակման ժողովոյն իւ-
րեա անցին ամիսք հինգ, եկեալ երանելի
հայրապետն աղեքսանդրոս յաթոռ իւր՝ հի-
ւանդացաւ մերձ 'ի մահ․ և զի ամ̃ենցն ակն
եղեալ էր 'ի վ̃ր աթանասի՝ զնա նստուցա-
նել յաթոռն, զայն գիտելով նր̃՝ փախստեայն
ծածկէր զանձն, խոյս տուեալ 'ի տեղի մի
անծանօթ 'ի մ̃դկանէ՝ պատճառանօք իրիք
գործոյ յանձնելոյ նմ 'ի հայրապետէն իւրմէ ։
Իսկ աղեքսանդր՝ քանզի գիտէր 'ի հոգւոյն
յայտնութ̃է զաթանասին ընտրութ̃ի 'ի յաջորդ
իւր, մինչդեռ շունչն 'ի նմ էր՝ ձայնեաց 'ի
մահճէն անուն զաթանաս յանուանէ․ և որք

լուանն

ըռնանն՝ կարծէին, եթէ զայլ ոք կարդայ · զի աթանաս չէր 'ի միջի · վ՞ն 'ի ներքս ընթացու առ նա այլ ումն 'ի պաշտօնէից աթանասու անուն · և հարցանէր՝ թէ զի՞նչ հրամայես: Իսկ սբ՞ հայրապետն ոչ ետ նմ՞ պ՞խնի, այլ անդրէն միւսանգամ և բազում անգամ ձայնէր, ա՛թանաս, ա՛թանաս: Յայնժամ 'ի միտ առին՝ որք 'ի տանն էին, եթէ զերանելին աթանաս զարթուցանել իւր կարդայ · և պինդ տուեալ ասեն · ո՞ր չէ՞ նա աստ, զի քո հրամանաւ երթեալ է ուրեք 'ի գործ : Իսկ հայրապետն ասէ · կարծես փախչել աթանաս · բայց փախչելով ոչ փախիցես · յայտ արարեալ՝ թէ առաջի կայ նմ՞ յանձին կրել զառաջնորդական պատիւ, և մեծամեծ փորձանաց տանել · որ և եղև իսկ :

Քանզի 'ի վախճանել սբ՞յն աղեքսանդրի՝ ժողովեցան միաբան բազմու՞թք եպ՞սաց, և յուզէին խնդրանօք ածել զերանելին աթանաս, և բռնադատեալ ձեռնադրեցին զնա յեպ՞սութի և 'ի պ՞տրիարգութի աղեքսանդրիացւոց յաթոռ սբ՞յն մարկոսի աւետարանչի : Իսկ եղև ուրախութի մեծ ամ՞ ուղղափառաց, զի գիտէին զնա քաջ հովիւ, և հզօր ախոյեան ընդդէմ ապականիչ գայլոց արիանոսաց · մինչև ասել բազմաց, եթէ յարոյց մեզ ա՞ծ եղջիւր փրկութե՝ 'ի խորտակել զզօրութի թշնամեացն հաւատոյ : Իսկ ը՞ հկ՞ռկն՝ դառնութի անհնարին տիրեաց հերձուածողացն դասու, և ամպ մթագին պատեաց զնոքօք · որոյ վ՞ իսկ չշնջել սկսան այսր անդր ընդ-

դէմ

դէմ աթանասի, զի մարթացին ի՛ւիք պար-սաւագիր լինել նմ, և յեղծումն դնել զա-նուն բարեհամբաւութե նր, որ առաւել քան զառաւել հռչակեր է ամ տեղիս յօրէ անտի նստելոյ նորա յաթոռ հայրապետութե․ և երևելի նշանօք ևս սքանչելի լինէր ։

Ս՟ զի և յառաջնումն նուագի անդ՝ յորում ել ՚ի սբ բեմն հայրապետական զարդու, մա-տուցանել զմեղսաքաւիչ խորհուրդ մարմնոյ և արեան տն ՚ի սբն անաստաս՝ յառաջիկայ-ութե յոքնաթիւ. եպսաց և քհնյից և ուխտի մանկանց, յանկարծակի բացաւ ձեղուն յար-կի տաճարին, և լոյս սաստիկ զեղեալ լցաւ ՚ի ներքս ։ Եւ մինչդեռ երանելին աթանաս ՚ի սաստկութե լուսոյն ՚ի պակուցման եղեալ հիանայր, հայեցեալ ետես ՚ի վերոյ քան զինքն ոմ կամփսակս իւղոյ ՚ի սորս իջեալ, և է նմին բազմութի անմարմնական զօրաց պարառեալ զսբ սեղանովն. և յորժամ ՚ի ձեռս էառ հայրապետն զնա խնդն, տեսա-նէր զնա լինքն զթագաւորն փառաց՝ զմիա-ծին բանն այ բազմեալ իբրև ՚ի զահոյս ՚ի վր ձեռաց իւրոց. որ և ինքնին զանգեալ զհացն ընդ անապական մարմնոյն՝ բանայր զնո կողս իւր, և հոսէր զպատուական ա-րիւնն ՚ի նուիրանոցն ։ Եւ զայս ոչ նա միայն, այլև ամքին՝ որ բեմականքն էին՝ տեսին. յորոց մի էր և ընտանի աշակերտ նր տիմո-թէոս, որ զայսոսիկ պատմէ. վսյ առ հա-սարակ յահի ըմբռնեալ՝ սոսկացեալ կային ։ Եւ իբրև աւարտեաց սբ հայրապետն ըղ-



խոր-

խորհրդական աղօթսն հանդերձ արտասուօք, ապա համբարձաւ տուն հրեշտակօք յերկինս ։

Իսկ առ նմին՝ երևեալն 'ի յորդանան հոգին սբ աղաւնակերպ թևօք սլացեալ՝ հանգչէր 'ի վն փրկական խորհրդոյն․ և 'ի մատուցանել հայրապետին զգոհացողական աղօթս՝ աներևոյթ լինէր տեսիլն նմ։ Իսկ յորժամ հաղորդեցաւ հայրապետն սբ խորհրդոյն, և հաղորդեաց զպաշտօնակիցս իւր, ապա բերեալ մատուցանէր և ժողովրդեանն ։ Իսկ ահա ոմն 'ի բազմութենէն՝ որ անարժանութբ իշխեաց մերձենալ 'ի սբ խորհրդն, հրակիզել մեռաւ անդէն ․ և այլ ոք դարձեալ անմաքուր սրտիւ համարձակեալ՝ իսկոյն մոլեգնել սկսաւ, մինչև իւրովի խածատել զմարմինն իւր ։ Զոր տեսեալ ամենին՝ ահաբեկ լինէին․ և այլ ոք ոչ իշխեաց 'ի ժամուն մատչիլ անխտիր 'ի խորհրդն ահաւոր ։ Յայնժամ և սբ հայրապետն խրատս իմաստս առաջի դնէր ամենին, զառաքելականն յուշ առնելով, թե փորձեսցէ մրդ զանձն իւր, և ապա 'ի հացէ անտի կերիցէ և 'ի բաժակէն արբցէ․ զի որ ուտէ և ըմպէ անարժանութբ, դատաստան անձին իւրում ընդունի․ զի ոչ խտրէ զմարմինն տն․ վսյ ասէ՝ պարտ է մաքուր լինել հոգւով և մարմնով, մաքրեալ զմիտս յոյժ աղտեղութէ չարեաց, և անխիղճ միտք մերձենալ 'ի սբն սբց․ նախ բնակարան լինել անյայտից՝ յայտնեցելոյն, և ապա ընդունել 'ի սիրտս մեր զբնակեալն 'ի

լոյս անմատոյց ։ Որպէս և յայսմ բանս քա-
րոզութեան իւրոյ՝ երկնաւոր վարդապետութեամբ խրատէր
և ուսուցանէր զժողովուրդն ընդ առողջութեան հոգ-
ւոյն ՚ի նմա բնակելոյ ։ և պատկառելի ան-
ձամբ և անարատ քաղաքավարութեամբ ձգէր
զամենեսին յունկնդրութիւն ։ և խոնարհ և հեզ
յամի զանձն ընծայեցուցեալ՝ համարձակ
մատուցանէր յինքն զմեծն և զփոքրն, կարե-
կից լինել և դարման տանել վշտաց միոյ միոյ
՚ի նոցանէ, իբրև գորովագութ հայր աղքա-
տաց, և դիւրահնար բուժիչ ախտացելոցն
հոգւով ։

Իսկ ՚ի վերայ անչափ վաստակոց և հոգոց ՚ի
հովուել զհօտն, անզբաղուն ունէր հոգւոյ
սքանչելի ։ և յիւրոց սովորական մխիթա-
րութեանց ոչ վերջանայր, աղօթասէր գտեալ և
ճգնասէր ։ և անդադար ՚ի կարդացմունս
սուրբ գրոց, և ՚ի շարագրութիւս հոգեշահ վարդապետու-
թեան ։ Այլ որ այսու ամենայնիւ անհամեմատ ցու-
ցաւ, են առաւել հանդիսանայր իբրև մի
միայն ՚ի խոստովանող հայրս՝ ՚ի տանել ան-
պարտելի համբերութեամբ նեղութեանց և հալածա-
նաց յերեսաց օտարաց և սիրելեաց, ՚ի թշ-
նամեաց և յընտանեաց հաւատոյ ։ զի գրե-
թէ տիեզերք ամենայն զինեցան ընդդէմ նորա, և
իշխանք և թագաւորք՝ քահանայք և եպիսկոպոսունք միաբա-
նեցան ընդդէմ նորա ։ մինչև անմարթ է գրով
բովանդակել՝ զոր ինչ կրեաց անվանելի նա-
հատակն ճշմարտութեան ։ այլ առ ՚ի փոքր ՚ի
շատէ նշանակել՝ սկիզբն եղև հալածանաց
նորա այսպէս ։

Յաւուրց անտի սարկաւագութեան մեծին աթանասի՝ ոխս պահէին նմա համախոհք արիոսի. քանզի ասէին՝ թէ գրգռիչ և խրատտու աղեքսանդրոսի հայրապետին՝ ՚ի մերժել զարիոս՝ ոչ այլ ոք է, բայց աթանաս միայն. և երբև զփորձ առին նախանձայուզութեան նորա ՚ի վերայ ուղղափառ հաւատոց ՚ի ժողովն նիկիոյ, առաւել ևս զչարեցան ։ Այլ քանզի յետ ժողովոյն յաքսորս տարեցան արքունի հրամանաւ կուսակիցք արիոսի, յորս գըլխաւորագոյնք էին եւսեբիոս եպիսկոպոս նիկոմիդացի, և թէոգնիոս նիկէացի. միանգամայն և աթանաս ամբարձաւ յաթոռ հայրապետութեան աղեքսանդրացւոց, ոչ զօրէին առ ժամանակ մի ստանել ինչ նմա. մինչև ինքեանք յետ ոչ բազմաց առ երեսս ապաշխարութեան կեղծաւորեալ՝ դարձան յաքսորանաց միջնորդութեամբ կոստանդեայ քեռն կոստանդիանոսի. և առ սակաւ ինչ զօրացեալ՝ հանել սկսան յաթոռոց զուղղափառ եպիսկոպոսունս, և մուծանել ՚ի տեղի նոցա զարիանոսս. և զի առաւել ջանք նոցա էր ընդդէմ աթանասի, զայսպիսի չարարուեստ հնարս նիւթեցին ։

Հաւանեցուցին զմեծն կոստանդիանոս վասն արիոսի, թէ՝ և նա միաբանի ՚ի նիկիական հաւատս. և այնուհետև հրաման առեալ՝ դարձուցին զնա յաքսորանաց, և յղեցին յերկիր իւր յաղեքսանդրիա. և քանզի աթանաս չընկալաւ զնա ՚ի հաղորդութիւն եկեղեցւոյ հանդերձ ուղղափառ հօտիւն, յարեցաւ արիոս ՚ի նախնի համաշունչս իւր ՚ի մելիտոնիանոսս

(զորոց ասացաւ 'ի վարս պետրոսի Հյրպ̃տի)․ զի ո̃ք թէպէտև յերկուս երեսս վարէին, բայց առաւել համամիտք էին Եւսեբեայ․ վ̃ոյ և ս̃ն աթանաս խաղաղ օտարացոյց յիւրմէ զմե լիտխանոսաց դասս։ Օ այն լուէ̃ Եւսեբեայ Նիկոմիդացւոյ՝ մեծամեծս սպառնայր բարկութ̃ 'ի վ̃ր աթանասի․ այլ զի մի թըռեսցի յանդգնութ̃ ինչ գործել, գրէ նամակ սիրոյ կեղծուպատիր և ամոք բանիւ առ աթանաս, յորդոր լինելով նմ̃ ը̃ունել զարիոս և զորս ը̃ նմ̃ 'ի հաղորդութի։ Իսկ մեծն աթանաս համարձակ պխնի առնէր, թէ զսերմանացանս չար հերձուածոց և ըդթշնամիս ճշմարտութե̃՝ զդատապարտեալսն 'ի տիեզերական ս̃ժողովոյ, անմարթ է ինձ ը̃ունել 'ի հաղորդութի։

Յայնժամ լցեալ Եւսեբի ցասմամբ մեծաւ՝ մատուցեալ չարախօս եղև զաթանասէ առաջի կոստանդիանոսի․ նա միայն է ասէ՝ որ ձեռներէց լինի խռովել զեկեղեցի ա̃յ, և երկպառակութ̃ բաժանել զհաւատացեալսն քո̃․ Իսկ այնչափ ինչ խօսեցաւ և արար բանսարկութիս, մինչև ետ գրել արքայի գիր սպառնալեաց առ աթանաս․ զի կա̃մ ընկալցի զարիոս և զայլսն ը̃ նմ̃ զկարծեցեալ ապաշխարօղս՝ 'ի հաղորդութի, և կամ մի ակնկալցի մնալ յաթոռ իւր։ Իսկ ս̃ն աթանաս գրեաց աներկիւղ առ թ̃գն․ չիք հաղորդութի ուղղափառաց եկեղեցւոյ ը̃ ք̃սամարտ հերեսիովտապետի։

Ընդ այս համարձակախօսութե̃ աթանասի

ծան-

ծանրացաւսուցն լինէր արքայ , ըն̄ սադրելոյ նենգաւորացն եւսեբեայ. որ եւ առիթ գտեալ համարեալ զգործումն արքային՝ փութացաւ գրեաց ճեպով յաղեքսանդրիա առ մելիտիանոսս, զի յաճախեսցեն առ թգ̄րն թուղթս ամբաստանութե զաթանասէ ։ Գրեցին յայնժամ եւ նք̄ ըն̄ կամի. 'ի նոյն միաբանեցան եւ այլ համախոհք նց̄ 'ի նիկոմիդացւոց. այլ քզ̄ի 'ի նիկոմիդիա էին 'ի ժամուն այնմ եւ մակար երիցունք աթանասի, ոք̄ յանդիմանեալ ինքնակալին՝ 'ի դերեւ հանին զնոցա չարախօսութիւնս նց̄ ։ Եւ իբրեւ 'ի վր̄ եհաս թգ̄րն սուտ չարախօսաց , պատուհասեաց զգլխաւոր նոցին՝ որում անուն էր Իսխիռ ։ Յետ այսորիկ յաւելին մելիտիանոսք եւ զայլ չարախօսութիւն 'ի գրգռութե եւսեբեայ , որպ̄ թէ աթանաս սատար լեալ իցէ ընչիւք ումեմն ապստամբ եղելոյ 'ի թգ̄րէն . եւ այլ ինչ բզ̄մ ։ Յայնժամ կայսրն յղեաց պատուհէր առ աթանաս՝ գալ առ ինքն, եւ տեսանել զդատ մելիտիանոսաց ։ Եւ իբրեւ եկն եհաս աթանաս , եւ քննեցաւ յատենի ա̄մ ինդիր հկ̄ուէ , յայտնի եղեւ ա̄մ սուտն չարախօսաց . վասն որոյ 'ի բաց մերժեաց զն̄ս կայսրն յիւրմէ , եւ զաթանաս պատուով դարձոյց 'ի տեղի իւր , գրել եւ հրովարտակ առ աղեքսանդրացիս՝ ը̄ունել զարժանաւոր հովիւ իւրեանց իբրեւ այր ա̄յ ։

Այնուհետեւ զայլ չարիս մեքենայեցին մելիտիանոսք. զի զոմն 'ի համախոհից իւրեանց արսենիոս անուն եպ̄ս կողմանցն եգիպտա-



ցի

ոի՝ յօտար երկիր փախուցին և թաքուցին , և համբաւեցին զնա դաւով սպանեալ յաթանասէ . և 'ի հաստատութ՟ն անհեթեթ գործոյն՝ զայլոյ ուրումն հատել ձեռս այսր անդր շրջեցուցանէին յանուն արսենիոսի . և յղ՟ս այսորիկ բազմապատիկ երթևեկք թղթոց լինէին 'ի մէջ եպ՟սաց և դ՟տուրին, և արքայի իսկ գլխովին . և անկաւ շշնջիւն մեծ ը՟ ամ՟ տեղիս : Բայց մեծն աթանաս անվրդով միօք կայեալ առաքեաց խնդրակս , և ետ յուզել և գտանել զարսենիոս . որ թէպէտ և նա զառաջինն ժխտէր , թէ չեմ ես արսենիոսն այն . բայց պարտեալ 'ի բազմաց վկայուէ՝ որք զնա քաջ ճանաչէին , խոստովան եղև և ինքն . մինչև 'ի բաց կալ նմա 'ի համախոհից իւրոց , և յարիլ յաթանաս . զնոյն արարին և այլք 'ի նմին հերձուածոյ մելիտիանոսաց , և յաւելան 'ի դասս ուղղափառաց :

Եւ մինչև էր տարածեալ առ ամ՟նին՝ թէ կենդանի գտաւ արսենիոս , արիանոսք հարկեցուցին զինքնակալն՝ զի լիցի ժողով եպիսկոպոսաց 'ի տիւրոս յաղագս գործոցն աթանասի . վասն զի բ՟զմ են ասէին չարիքն՝ որք պատմին զնմէ . և կայսրն գրեաց առ աթանաս՝ իջանել 'ի տիւրոս եպ՟սօք իւրովք , և տալ պինդ դատախազից իւրոց առաջի ժողովոյն : Իսկ ս՟ն աթանաս թէպէտև դիտէր զպատիր հնարս թշնամեաց , ցածուցէ յանձն էառ զհրամանն արքունի . և առեալ ընդ իւր զքառասունևինն եպ՟սունս [illegible] ե-

գիպ-

զհիպատացւոց՝ չոքաւ 'ի ժողովանդր, տարեալ ընդ իւր և զԱրսենիոս անյայտ 'ի մարդկանէ ։ Եկին և այլ եպիսկոպոսունք 'ի տեղեաց տեղեաց՝ հարկեալ 'ի կայսերական հրամանէ ․ այլ արիանոսք՝ կամ թէ ասել եւսեբեանք՝ էին հանդիսադիրք և գլխաւորք ժողովոյն․ միանգամայն և դատախազք աթանասի, ունելով և զոչ սակաւս 'ի մելետիանոսաց՝ գործակիցս ։

Իբրև ուղղեցաւ ատեանն յառաջիկայումն արքունի դատաւորաց, սկսան զառաջինն ամբաստան լինել եւսեբեանք զաթանասէ, թէրև այն թէ գործեալ իցէ զանարժանս ընդ կնոջ միում՝ յօթևանելն երբեմն 'ի տան նորա ․ և զայս պնդէին փաստահունէ, զի կաշառօք որսացեալ էր նոցա զոմն կին չար՝ վկայել յատենի անդ զանօրէնութիւն զայն, իբրև բռնաբարեալ յաթանասէ ։ 'Ի չարախօսել անդ կնոջն՝ աթանաս կայր արտաքոյ․ և իբրև կոչեցին զնա գալ 'ի ներքս, և տալ պատասխանի, էառ նա ընդ իւր զտիմոթէոս զաշակերտ իւր՝ զոր 'ի վերն անդր յիշեցաք, պատուէր տուեալ նմա, զի փոխ իւր նա տացէ պատասխանի բանից կնոջն, ոչ թէ ինքն իսկ իցէ աթանաս ։ Եւ եղև յորժամ խօսեցաւ կինն ընդ թելադրութեան խրատատուաց իւրոց, դարձաւ և ասէ ցնա տիմոթէոս ․ արդարև կին դու՝ թշնամանեա՞լ իցէ իմ երբէք 'ի տան քում, կամ գործեալ զայնպիսի ինչ ։ Եւ նա լքեալ ասէ․ այո այո դու աներկիւղդ յոյժ և անպատկառ 'ի մարդկանէ բռնադատեցեր զիս՝ 'ի

բառնալ յինէն զծաղիկ պարկեշտութեան ։ Այլ առ դիւրսն ասէր. երդնում ՚ի տր, զի այս այր է՝ որ լլկեաց զիս ։

Զայն իբրև լուաւ բազմութի ժողովոյն՝ դատաւորօքն հանդերձ, շարժեցան ՚ի ծաղր. և սաստիւ ՚ի բաց մերժեցին զկինն յատենէ անտի. մինչև թշնամիքն առհսրկ շառագունեալ՝ ամօթալից կորանային. զի Քարմացոյց զնս իմաստութի Աթանասի, որ լռուք իւրով հրատարակեաց զիւր անմեղութի ։ Յայնժամ դատաւորքն կամէին պատուհասել զկինն, և քննել զխրատատուս նորա. այլ եւսեբեանք՝ յորոց ՚ի ձեռս էր իշխանութի այնր ատենի, խափանեցին զիրսն. և ինքեանք սկսան ՚ի նորանոր ամբաստանութիս բերել ընդդէմ Աթանասի. բայց ոչ կարացին ինչ հաստատել ։

Յաւելին յետոյ ասել, թէ արտաքոյ կանոնաց խաբանօք և բռնի կալեալ իցէ նր զաթոռ պատրիարգութե. ՚ի մէջ առին և սուտ յօղ գիր բողոքանաց ՚ի բերանոյ ժղվրդեան ընդդէմ Աթանասի, և այլ ինչ բզմ ։ Այլ իբրև յոմն արդարացաւ երանելին Աթանաս՝ դէմ յանդիման ցուցանելով զստուի կարկատուն բանից չարախօսաց իւրոց, նոքա այնուհետև յոջ մատուցին զհատեալ ձեռն՝ որ կարծիւր արսենիոսի. և սկսան թշնամանել զարդարն՝ ասելով, թէ ահա նշանակ արիւնհեղութեանն՝ զոր գործեցեր, կամ ետուր գործել ։

Եհարց ցնս Աթանաս, թէ արդարև այդ

ձեռն

ձեռն արսենիոսի՞ իցէ. Ճանաչէ՞ք դուք զար-սենիոս, և զձեռն նր ։ Իսկ յասել նց իբրև 'ի միոջէ բերանոյ, այո՛ ճանաչեմք, և այս է նր ձեռն, ակնարկեաց աթանաս իւրոցն՝ 'ի ներքս ածել զարսենիոս կենդանի, զոր որ-բեալ էր պահել ուրոյն 'ի ծածուկ ։ Իսկ ե-դև 'ի մտանել նորա, մատեաւ առ նա աթա-նաս. և կալեալ զերկոցունց ձեռացն՝ ցու-ցանէր դատախազից իւրոց և դատաւորաց, ասելով. ո՞չ սա այն արսենիոս է՝ որ սպա-նեալ քարոզի. ո՞չ այս ձեռք նր են՝ աջոյ և ձախոյ հաստատուն և անթերի 'ի տեղիս իւ-րեանց. և ո՞յր է արդ միւս այլ ձեռն հա-տեալ, թո՛ղ դատախազքդ իմ վկայեսցեն ։ Յապուշ կրթեցան առ այս՝ ժողովեալքն առ-հսրկ. զի եթէ՛ բարեկամք և եթէ թշնա-միք աթանասի կային, որք քաջ ճանաչէին՝ եթէ նա ինքն արսենիոս է կենդանի և ողջ-անդամ, որ համբաւիւր սպանեալ դաւով յաթանասէ ։ Յայնժամ յանհնարս մոլել ոսոխացն՝ սկսան աղաղակել. մո՛գ է աթա-նաս, կախարդ է և հմայող. և յայնչափ կա-տաղուն բորբոքեցան, մինչև առ ետեղ կամէին գիշատել զնա, եթէ չէր ապրեցուցեալ զնա արքեղայոսի մեծի պատրկի՝ որ գլուխն էր արքունի դատաւորաց ։

Յետ այսորիկ ձեռն արկին եւսեբեանք ա-ռաքել արս յաղէքսանդրիա և 'ի սահմանս նր, և աշարկուք ձեռագիրս պահանջել 'ի բազմաց և վկայութիւս սուտս ընդդէմ աթա-նասի, պատուհաս 'ի վր ածեալ անհաւան եղե-

եղելոցն . մինչեւ լնուլ աղմկաւ զտուն եգիպ-
տացւոց ։ Զայս ամ՟ տեսեալ աթանասի՝
խոյս ետ 'ի տիւրոսէ , եւ դէմ եդեալ գնաց
'ի կոստանդնուպօլիս առ կայսրն կոստան-
դիանոս՝ ցուցանել նմ՟ զանկարգութ՟ եւսե-
բեանց, եւ զստութ՟ չարախօսութ՟ց նոցա ։
Իսկ թշ՟քն պաշարեալ յերեսաց բազմադիմի
ամբաստանութ՟ց յաճախելոց ը՟դէմ աթա-
նասի յարանց եպ՟սաց եւ 'ի քհ՟նյից, հրաման
յղեալ առ եպ՟սունս ժողովեալս 'ի տիւրոս՝
երթալ յե՟էմ, եւ անդ կատարել զնաւակա-
տիս տաճարի փրկչին՝ զոր ինքն էր շինեալ ,
եւ ապա անդանօր միաբանգամ քննել զդատ
աթանասի առանց խռովութե ։ Այլ եւսե-
բեանք յո՟ջ ե՟ զ ը՟ունելութի նամակի կայ-
սեր՝ պարտաւոր վճռեցին զաթանաս . եւ ար-
ժանի անկանելոյ յաթոռոյ իւրմէ՝ վս խոյս
տալոյ նր 'ի տիւրոսէ ։ Նաեւ ապա եկեալ 'ի
ժողովական եէմի՝ հաստատեցին միաբանգամ
զաթանասէ անարժան լինել գլխովին աթո-
ռոյն իբրեւ խանգարիչ եկեղեցւոյ , եւ ին-
քեանք սահմանեցին՝ ը՟ ուղղափառս գրել
զարիանոս ։ Բայց քհ՟ի ոմանք յեպ՟սաց՝ որք
յուղղափառաց դասէն էին , ընդդէմ զինե-
ցանն ից քաջութ՟ , ինչ ոչ կարացին թշնամիքն
վճարել . եւ յուզէին անհնարին խռովութիւ
օր քան զօր ։

Ազդ եղեւ այս ամ՟ յականջս կոստանդիանո-
սի . վս՟ հրաման ետ , զի առ ինքն եկեսցեն
եպ՟սունքն՝ որք ունէին հկ՟կուի ընդ աթա-
նասի . զի անձամբ լուիցէ զդատն ։ Յայն-
ժամ

ժամ անձնապարեալ եւսեբեայ Նիկոմիդացւ-
ւոյ՝ եկաւ ընդ իւր գլխաւորս 'ի Համախո-
հից իւրոց, և ազգի ազգի հնարիւք խափա-
նեալ զմուտս ջատագովացն աթանասի առ
արքայ, մինչ միայն իւրովքն հանդերձ յան-
դիման եղև կայսեր. և յետ ծանր ծանր ամ-
բաստանութեց՝ յաւել հաստատել 'ի ձեռն
սուտ վկայից, ոչ թէ ասացեալ իցէ աթա-
նասի խոտխոտալով ընդդէմ ինքնակալին, թէ
կարող եմ ես արգելուլ՝ զի մի ևս բերցին ցո-
րեան յաղեքսանդրիոյ 'ի կոստանդնուպօ-
լիս : Ընդ այս դժուարեալ կայսեր, և ոչ
ևս հանդարտեալ իրացն քննութե, իսկ և իսկ
հրամանեաց աքսորել զաթանաս յերկիր հե-
ռաւոր յԾն գաղղիացւոց : Յայնժամ եղև
խնդութի մեծ եւսեբեանց և ամ՝ արքանեկաց
նոցա. զի այնուհետև յիւրեանց ակն ունէին
կացուցանել պատրիարգ յաղեքսանդրիա.
բայց ոչ հաւանեցաւ կայսրն. և այնպէս ա-
ռանց հովուի մնայր աթոռն այն առ ժամ մի :
Իսկ երանելին աթանաս յա̃ծ ապաստանեա-
բարեէ զօղուան եկեղեցւոյ՝ անվրդով միոք
տարաւ զայնմ հալածանաց (որ եղև յամի տն.
336). մինչդ թէ և խնդութք ընկալաւ, զի
գիտէր զանձին անմեղութն : Իսկ հասեալ 'ի
տեղի արտաքսմանն՝ 'ի տրեվերիս օգոս-
տայ կոչեցեալ, անդադար պարապէր ըն-
թերցուածոց և աղօթից, և բզմ նպաստս
հոգևորս մատուցանէր բնակչացն արևմտից
ա̃ծիմաստ բանիւք և գրովք իւրովք :
Մինչդեռ յաքսորս էր մեծն աթանաս, գուն

գոր-

գործեցին եւսեբեանք՝ զի ժամուն արիոս ա֊
ղեքսանդրացի, որ ցայն վայր կենդանի էր՝
բայց խորշելի ամենյն, ընդունելի լիցի 'ի հա֊
ղորդութի հաւատացելոց, և մտցէ յեկեղե֊
ցի. և իբրև բազմօք թախանձեցին վն այսր
զինքնակալն կոստանդիանոս սուտ եպիսկո֊
պոսունք, կոչեաց զնա կայսրն առաջի իւր,
և հարցանէր, եթէ պահե՞ս հաւատարիմ
մտօք զհաւատս կաթողիկէ եկեղեցւոյն այ:
Նա անօրէնն 'ի վերին երեսս եցոյց զանձն
միաբան լինել 'ի հաւատս ը̃ ուղղափառաց.
և երդուեաւ առաջի արքայի: Յայնժամ ա֊
սէ ցնա կայսրն. եթէ ուղիղ իցէ հաւատքդ քո,
ուղիղ և երդուեար. ապաթէ ոչ՝ է երդմանն քո
դատեսցի զքեզ ած. և արձակեաց զնա խա֊
ղաղութ: Նա այն ինչ խնդային արիանոսք
ուրախութ մեծաւ, 'ի նոյն իսկ աւուրս սա֊
տակեցաւ արիոս 'ի գարշելիսն. և յամօթ
եղեն ամ աղբանեակք նր. և ցնծութի մեծ ե֊
ղև ամ ուղղափառաց:

Բայց ժղվրդն աղեքսանդրացւոց և ամ միա֊
նակեացք եգիպտոսի տակաւին 'ի սուգ մեծ
կային վն զրկելոյ 'ի քաջ հովուէն իւրեանց
յաթանասէ. և սոէպ գիր աղաչանաց յղէին
առ կայսրն՝ դարձուցանել զնա յաթոռ իւր.
գրեաց վասն սոցին իւրաց և երանելի հայրն
անտոնիոս զարդն անապատի, յայտ արարեալ
թղթին՝ թէ ամ ամբաստանութիք որք եղեն
ընդդէմ աթանասի, են ստայօդ հնարք չարա֊
փառաց: Իսկ կայսրն ոչ կարէր հաւատալ
այսմ. զի թէ ասէ 'ի հնրկ ժողովրդեանէ ող

լե

լինելը դատախազ նր, յոչինչ գրեի ․ բայց զի՞ արարից, զի դումարք եպսաց և քհնյից նր դատախազեն զնմ ․ և ոչ գիտէր՝ թէ այնպիսիքն էին անձինք նենգաւորք ․ մինչև յետոյ ուրեմն ինքնին հասու եղև չարուե նր, և անմեղութե աթանասի ․ և խոստացաւ դարձուցանել զնա փութանակի ։ Այլ մինչդեռ յայսմ մտաց խորհրդի էր, եհաս վախճան կենաց մծաւէր թգրին կոստանդիանոսի, աւանդեալ հաստատուն կտակաւ՝ զի դարձուսցեն զաթանաս յաթոռ իւր ։

Այլ եղև երբև յաջորդեցին ՚ի կայսերութե երեքին որդիք նր յամի տն 337, կոստանդին երիցագոյն յորդիս նր՝ ընդ կոստասայ կրտսերոյ յարևմուտս, և կոստանդ միջնոյ որդին յարևելս, յապաղեաց դարձն աթանասի ․ զի կոստանդ կայսր արևելից՝ յորոյ ՚ի ձեռս էր կտակն, եղեալ ՚ի բանս արիանոսաց՝ անփոյթ արար ՚ի գլուխ տանել զպատուէր հօր իւրոյ ։ Այլ յետ այնորիկ կոստանդին կայսր արևմտից հաւանեցուցեալ զկոստանդ՝ դարձոյց զաթանաս պատուով յաթոռ իւր, յետ կալոյ նորա ՚ի տեղի աքսորանաց իբրև ամս երկուս, և ամիսս չորս ։ Այլ եղև անպատմելի ուրախուի հօտի նր ․ և մծ դասք ուղղափառաց զօրուի զգեցան ։ Իսկ թշնամիք երանելւոյն միացեալ ընդ փառս նորա, միանգամայն և խիթացեալ գուցէ հաճոյ գտցի նա յաչս կոստանդեայ կայսեր, և ձգեսցէ զնա ՚ի կողմն ուղղափառաց, իսկ և իսկ սկսան կուտել ամբաստանութիւ

՚ի

'ի վերայ պաթանասի առաջի արքային ։ Եւ նախ զայս ինչ կարկատէին, թէ որ ժողովով եպսաց ընկեցաւ յաթոռոյ, չէր օրէն նմա առանց ժողովական հաւանութե դարձ առնել անդրէն ․ զնոյն գրեցին և առ կոստանդին և առ կոստաս յարևմուտս ։

Յաւելին ապա և զայլ պէսպէս չարախօսութիս՝ ցուցանելով զաթանաս ոպ յանցաւոր 'ի բզմ իրս ըդէմ քղքական օրինաց ․ մինչև հրաման առեալ 'ի կոստանդեայ՝ ժողով արարին յանտիոք, և գրեցին զաթանասէ ազգի ազգի ամբաստանութիս առ գլխաւոր առաջնորդս, ոպ զի միաբանեսցին հանել զնա միւսանգամ յաթոռոյ ․ և կամելով իմն ահ արկանել աթանասի՝ գրեցին թուղթ և առ երանելին յուլիոս հռովմայ հայրապետ, թախանձ արկանելով նմա՝ զի ժողով մեծ գումարեսցի ․ և դու լիցիս անէն դատաւոր ։ Զայն իմացեալ աթանասի՝ յղեաց և ինքն դեսպանս առ յուլիոս, և ունայնացոյց զզրպարտութիս չարախօսաց ։

Յայնժամ ժողովեցան և եպսունք ուղղափառաց 'ի սահմանացն եգիպտացւոց և 'ի մերձակայ տեղեաց յաղեքսանդրիա քղք ․ և գրեցին նամականի պնդառութե վս հայրապետին իւրեանց աթանասի առ յուլիոս և առ այլ աթոռս, մի առ մի գրելով զսուտ ամբաստանութիս չարափառաց, և յայտնի կացուցանելով՝ թէ ոմ փոյթ նոցա հայի 'ի ծաւալումն աղանդոյ իւրեանց, որոյ ջաղխիչ է աթանաս, և 'ի խափանումն ուղղափառու-

թե

թէ ծաղկելոյ 'ի ձեռն նորին աթանասի . զորս գրեցին և այլ երևելի եպիսկոպոսք յայլոց վիճակաց առ յուլիոս հայրապետ՝ միաբան վկայելով ճշմարտութեան ։

Ապա գրէ յուլիոս առ աթանաս և առ գաւառապետս նորա, զի անդանդաղ 'ի հռովմ եկեսցեն, և 'ի ձեռն օրինաւոր ժողովոյ հաստեսցի խաղաղութիւն ։ Յօժարութեամբ ունկնդիր եղև աթանաս երանելին . և փութանակի յուղի անկեալ գնաց 'ի հռովմ (յամի . 339) ։ Զայն իբրև տեսին հակառակորդք, զարմացան յոյժ, զի ոչ ունէին ակն վստահութեան գնալոյ նորա . և ինքեանք երկուցեալ՝ գուցէ յամօթ լիցին առաջի ժողովոյ քահանայապետին, չառին յանձն երթալ 'ի ժողովն հռովմայ՝ պատճառելով զխռովութիւն պատերազմաց և զայլ ինչ բանս ։ Եկաց աթանաս 'ի հռովմ ամ մի և ամիսս վեց՝ սպասելով գալստեան չարախօսաց իւրոց . այլ ոչ ոք 'ի նոցանէ համարձակեցաւ գալ . թէպէտև բազում անգամ գրեաց առ նոսա յուլիոս ։ Յայնժամ փութացաւ աթանաս դառնալ 'ի տեղի իւր . զի մի սեպհական հօտն անհովիւ մնասցէ՝ վտանգ ինչ կրեսցէ ։

Իսկ եւսեբեանք յետ ազգի ազգի հնարից՝ զոր խորհեցան ընդդէմ աթանասի, գումարեցին ժողով մեծ յանտիոք հրամանաւ կոստանդեայ կայսեր իբրև 'ի կարևոր պէտս եկեղեցւոյ, խառն յարիանոսաց և յուղղափառաց . ուր երկդիմի բանիւք խոստովանեալ զհաւատս՝ ցուցին զանձինս միաբան ընդ նի-

կիա

կիտական զաւանութե, և սահմանեցին ինչ ինչ կանոնս իբրև 'ի բարեկարգութե առկս. և զաթանաս պարտաւորեալ իբրև պատուէրից եկեղեցւոյ՝ կարգեցին 'ի տեղի նորա 'ի պատրիարգուի աղեքսանդրիոյ զոմն 'ի համախոհից իւրեանց՝ գրիգոր անուն յԾէն կապադովկացւոց (յամի. 341)։ Որոյ առեալ է իւր զունդս զօրականաց՝ հանդերձ բազմութբ արիանոսաց եմուտ յաղեքսանդրիա, գործակից ունելով և զքղքապետն փիլագրիոս ուրացող, որ ունէր ընդ իւրև զօրս 'ի հեթանոսաց և 'ի հրէից, և էր ձեռնտու արիանոսաց։ Այս եղև խռովութի մեծ 'ի քաղաքի անդ. զի ժղվրդն առ հասարակ զաթանաս խնդրէին զուղղափառ հայրն իւրեանց հարազատ. այլ բռնացաւ 'ի վրն նոցա քղքապետն, և զինուորք նորա սուսերօք և բրօք վանեցին զամբոխն, և բզմ և անհնարին չարիս գործեցին 'ի տունս և յեկեղեցիս. վայ և աթանաս չգտեալ զդադար յաթոռ իւր՝ հազիւ մարթացաւ ճողոպրել զանձն փախստեամբ 'ի տեղի մի անքոյթ. և գրով ծանոյց զասուց ուղղափառաց 'ի տեղիս տեղիս զայն ամ յանդուգն չարութի այլափառաց։

Նոյն այսու օրինակաւ տիրեաց քղքի բռնաւոր եպն գրիգոր, եառ զամ եկեղեցիս 'ի ձեռաց ուղղափառաց, և եդ 'ի նոսին զիւր պաշտօնեայս յարիոսեան աղանդոյ. և նեղեաց յոյժ զուղղափառս դժայնակիցս աթանասի բանտիւք և կապանօք և աքսորանօք՝

'ի ձեռն բաղակայ անողորմ իշխանի . և եղև պատճառ կորստեան հոգւոց բազմաց . ըղնոյն արար և 'ի մերձակայ սահմանս եգիպտոսի , չար ևս քն զհեթանոսս չարչարելով զքրիստոնեայս , և զքահանայս և զեպիսկոպոսունս նց ։ Յայնժամ գրեաց առ նա յանապատէ երանելի սբ հայրն անտոնիոս խրատ յանդիմանութե . այլ նր քամահեալ զամնիւք սբյն՝ ոչ ինչ ցածեաւ 'ի չարութէն ։

Եւ զի ծարաւի էր արեանն աթանասի , ետ գրել քաղաքապետին գիր բողոքանաց առ կոստանդ կայսր իբրև 'ի դիմաց բովանդակ քաղաքին , ցուցեալ զաթանաս ոչ միայն անարժան աթոռոյ , այլ և մահու պարտական ։ Բայց քանզի գիտէր զարևմտեայս 'ի կողմն աթանասի լինել , գրեաց և առ կոստաս կայսր արևմտից ( զի մեռեալ էր կոստանդին , ) բամբասելով զաթանաս իբրև պատճառ ամ խռովուց եկեղեցւոյ ։ Նոյն արարին և եւսեբեանք՝ որք ժողովեալ կային յանտիոք . քանզի դեսպանս արձակեալ առ կոստաս արքայ՝ պատ 'ի պատ բանիւք ուղղափառ զանձինս ցուցանէին , և զաթանաս միայն առիթ հերձման և պառակտիչ եկեղեցւոյ ։

Յայնժամ երանելին աթանաս միաբանգամ աշխատութի յանձն առեալ դիմեաց 'ի հռոմ , և յայտնի արար արևմտեայց զամ նենգութի արիանոսաց և արբանեկաց նոցին . հանին անդր և այլ բզմ եպիսկոպոսունք և երիցունք՝ փախուցեալք 'ի հալածանաց եւսեբեանց . և

առաջի ամենեցուն նորին վկայեալ ցուցաւ անմեղութիւն Աթանասի, և չարանենգութիւն Հակառակորդաց. առ որս գրեաց յուլիոս գիր խրատու և յանդիմանութեան, և աղաչեաց դադարել ՚ի խռովութեանց. այլ քանզի չեղև ինչ օգուտ, ոչ իշխեաց Աթանաս դառնալ յարևելս՝ ուր ոչ գոյր նմա հանգիստ։ Յայնմ ժամանակի՝ կայսրն կոստաս, որ էր ՚ի միդուլէ (որ և մեդիոլան քաղաք իտալիոյ), կոչեաց անդր զԱթանաս, և առ իւր պահեաց բազում պատուով. և յաւել գրել վասն նորա թուղթ գովութեան առ եղբայր իւր կոստանդ յարևելս, միանգամայն յորդորելով զնա խնամ ունել խաղաղութեան եկեղեցւոյ ՚ի ձեռն օրհնաւոր ժողովոյ։

Այս վասն եղև ժողով մեծ ՚ի սարդիկէ քաղաք Թրակիոյ (յամի 347). ուր գումարեցան բազմութիւնք եպիսկոպոսաց յարևելից և յարևմտից. և զի յայտնի էր անմեղութիւն մեծին Աթանասի, չիշխեցին արիոսեան եպիսկոպոսունք յանդիման լինել ժողովոյն. թող զի մեռեալ էր յայնժամ զօրաւոր բազուկն իւրեանց եւսեբիոս նիկոմիդացի՝ դրօշակակիր արիանոսաց։ Յայնժամ հարք ժողովոյն ստուգութեամբ քննեալ զդատ Աթանասի և զայլոց եպիսկոպոսաց հալածելոց վասն արդարութեան, արդարացուցին զնոսա. և ՚ի յայտ բերեալ զմախանս չարախօսաց՝ հանին զխռովարարսն յաթոռոց. և գրեալ գիր յամենայն եկեղեցիս՝ ծանուցին զիրացն ճշմարտութիւն։

Զայն տեսեալ հակառակորդաց՝ ժողովեցան

ցան և ինքեանք 'ի Փիլիպուպօլիս մօտ 'ի սարդիկէ. և զամենայն վճիռ ժողովոյն ընդ վայր հարեալ՝ զընդդէմն սահմանեցին, յաւելուածովք չարախօսութեանց ընդդէմ Աթանասի. և զբանս իւրեանց հրատարակեցին յանուն սարդիկեայ ժողովոյն ։ Եւ ոչ այսչափ միայն, այլև վստահացեալ 'ի կայսրն Կոստանդ՝ զոր յիւրեանց կողմն գիտէին, ետուն ըմբռնել զոմանս յուղղափառ եպիսկոպոսաց, էր զոր 'ի բանտ տային, և էր զոր յաքսորս առաքէին. յղեցին և պատուիրակս յԱղեքսանդրիա՝ չտալ տեղի Աթանասի, եթէ եկեսցէ նա անդր ։ Այլ իբրև յանչափս բերեալ եղեն թշնամիքն ճշմարտութեան, մինչև գործել և զայլ յայտնի գործս անարժանութեան, տաղտկացաւ 'ի նմանէ կայսրն Կոստանդ. և ետ պատուէր հրամանի՝ մի ինչ առնել ընդդէմ Աթանասի և միաբանելոցն ընդ նմա ։ Եւ յետ քանի մի ամսոց 'ի մեռանելն Գրիգորի բռնաւոր եպիսկոպոսի, գրեաց արքայ թուղթ հրաւիրանաց երկիցս և երիցս առ մեծն Աթանաս, որ էր 'ի ծմկին յԱկուիլիա Իտալիոյ, գալ և նստել պատուով յաթոռ իւր յԱղեքսանդրիա ։ Յայնժամ (յամի. 349) երթեալ վերստին երանելւոյն Աթանասի 'ի Հռոմ՝ հանդիպեցաւ յողջոյն Յուլիոսի հայրապետին. և անտի բազում շքով յուղարկեցաւ 'ի տեղի իւր. և մի այսր Յուլիոս գրեաց գիր ուրախակցութեան առ Աղեքսանդրացիս ։

Հասեալ Աթանասի 'ի կողմանս Անտիոքայ՝ յանդիմանն եղև անդ Կոստանդեայ կայսեր.

և բազում մարդասիրութեամբ ընկալեալ 'ի նմէ՝ ա-
ղաչեաց զարքայ, զի անդէն առաջի նորա
եկեսցեն չարախօսք իւր՝ յորոց բազումք էին
յանտիոք, և եթէ ունիցին ինչ ասել ընդդէմ
նորա՝ ասասցեն. և մի 'ի հեռուստ ընդ վայր
աշխատ արասցեն զարքայ գրովք զրպարտու-
թեանց. բայց չարախօսքն յամօթ եղեն լռե-
ցին. և ոմանք ևս եկեալ առաջի՝ խնդրէին
զթողութիւն։ Յայնժամ հրամայեաց թագաւորն
անհետ առնել 'ի միջոյ զամենայն թուղթս չարա-
խօսութեանց՝ որք գրեալ կային զաթանասէ. և
յաւել երդմամբ խոստանալ աթանասի, թէ
այլ ոչ ևս ունկն մատուցից չարախօսաց քոց։
Եւ եղև իբրև տեսին եպիսկոպոսունք արիանոսաց
զսէր բարեկամութեանն՝ որ 'ի մէջ աթանասի և
կոստանդեայ կայսեր, բանս 'ի բերան եդին
արքային՝ ասել ցաթանաս. և արդ քանզի եր-
թաս խաղաղութեամբ յաթոռ քո, մի ինչ ծանր
թուեսցի քեզ՝ լսել զխնդիր մի թեթև,
զոր խնդրեն 'ի քէն այս եպիսկոպոսունք. զի զմի
'ի բազմաց անտի եկեղեցեաց աղեքսան-
դրու՝ շնորհեսցես ժողովրդեան նոցա, որք
ոչն կամիցին քեզ հաղորդիլ։ Յայնժամ
զմտաւ ածեալ աթանասի իմաստութեամբ 'ի դե-
րև հանել զխնդիր նոցա՝ ետ պատասխանի արքային
ցածութեամբ, և ասէ. և զիա՞րդ հնար իցէ ու-
մեք անլսօղ լինել առ խնդիր ինքնակալիդ,
յորոյ 'ի ձեռս է հրամանատու լինել ամենայնի.
բայց մի ինչ է՝ զոր և ես հայցեմ յինքնակա-
լէդ փոխ խնդրոյդ այդմ։ Եւ յասել ար-
քային, խնդրեա՛ զոր ինչ և կամիս, ասէ ա-

թա-

թանաս . խնդիր իմ այս է . քանզի և յանտիոք կան ընդ մեզ 'ի մէնջ՝ որք չառնուն յանձն հաղորդիլ ընդ եպիսկոպոսս տեղւոյդ , թոյլ տացի և նոցա ունել եկեղեցի առանձին : Հաճոյ թուեցաւ բանն առաջի կայսեր , և հրամայի դատեցաւ զխնդիր աթանասի . այլ իբրև զեկոյց զայն արիանոսաց՝ յորոց 'ի ձեռս էին եկեղեցիք անտիոքացւոց , չառին նոքա ընդաւին յանձն . ոչ զեկեղեցի նոցա կամիմք ասեն , և ոչ զմերն տամք նոցա : Յայնժամ 'ի միտ էառ կայսրն զգեղեցիկ հնարս աթանասի . և արձակեաց զնա ընդ մեծարանօք 'ի տեղի իւր յաղեքսանդրիա , պատուէր յղեալ առ ամ իշխանս գաւառաց՝ արժանաւոր պատուով ընդունել զնա և զմխիթարս ընդ նմ, և ջնջել յամ տեղեաց զամ գրուածս չարախօսաց :

Իսկ ո՞ կարէ պատմել զուրախութի և զցնծութի ուղղափառաց ընդ դարձ մեծին աթանասի յաթոռ իւր . խուռն ընթանային յամ կողմանց յաղեքսանդրիա՝ տեսանել զքաջ հովիւն և զառաքինի նահատակն , ոմ զմի յառաքելոց քնի . մանաւանդ թէ զնոյն ինքն զքս տեսեալ համարէին . մինչև նմանօրինակ շքով ընդունել զնա . վն զի 'ի վր յաւնակի հեծուցեալ զնա հայրապետն՝ 'ի ձայն երգոց և օրհնութե մուծին 'ի քաղաքն , և արարին հանդէս մեծ՝ ոմի և ոչ 'ի գալստեան կայսեր լինէր երբէք : Իսկ ինքն երանելին զփառս և զպատիւ յոչինչ համարեալ ընդ այն ևեթ ուրախ լինէր մեծապ , զի եդիտ զհօտ

իւր անարատ պահեալ ուխտ, և հաստատուն
'ի հաւատս ուղղափառութե։

Սկսաւ այնուհետև կենարար ջրով հոգւոյն վրդպուէ արբուցանել զպապաքեալս, և զը–մարթացուցանել զանմխին հոգեբուղխ բանիւ շրթանց իւրոց։ Ներեաց սիրով ամ̃ նե–ղողաց իւրոյ, և հաշտեցոյց զթշնամիս իւր. մինչև բազմք յեկեղեաց՝ որոց յառաջագոյն մխաբանեալ էր ը ոտխս աթանասի, անձամբ յոտս նր դիմեալ, և կա դիր խոնարհական յղեալ առ նա, ներել աղաչէին. Եւ սուսեել ողջամիտք և մտերիմք յիւրաքանչիւր տեղեաց թուղթս խնդակցութէ յաճախէին առ նա. և ինքն իսկ կոստանդ կայսրն սակս ընտանի նամակագրութ մեծարէր զերանելին։

Այլ յետ կալոյ սբյն աթանասի խաղաղութե յաթոռ իւր առ ժմկ մի՝ կրկին ևս յարեաւ հալածումն ը դէմ նր. քանզի իբրև սպանաւ կոստաս կայսր արևմտից, և կոստանդ վանեալ զապստամբս՝ տիրեաց բովանդակ կայսերութե միահեծան իշխանութ, փութացան արքանեակք արիանոսաց յաճախել առ նա չարախօսութիս զաթանասէ, ոմ թէ՝ ոչ դոյզն սատար լեալ իցէ և նա ապստամբաց, և բազում ինչ գործեալ ընդդէմ կայսերական պետութե և եկեղեցական օրինաց. և որ մեծն է աւեն, ցորչափ աթանաս նստեալ կայ յաթոռ աղեքսանդրու, օր յօրէ 'ի վատթար անդր բերի վիճակ եկեղեցւոյ, և կործանին հաւատք. քանզի նա հերետիկոսս զմեզ կարդայ և զորս ընդ մեզ
հա–

հաղորդէին, որպէս և զինքնակալ գլխովին ։
Զայս և առաւել քան զոյն խօսեցեալ ա-
րիանոսաց՝ որոց համարձակութիւն էր յոյժ ա-
ռաջի կոստանդեայ կայսեր, շրջեցին զմիա-
նի յատելութիւն ընդդէմ երանելւոյն ։
Եւ զի է այն աւուրս վախճանեցաւ երանե-
լին յուլիոս հռովմայ հայրապետն՝ մտերիմն
աթանասի, և յաջորդեաց լիբերիոս (յամի.
352), արբանեակք չարին ետուն բերել
զիր յանուն լիբերիոսի ընդդէմ աթանասի.
և ազգի ազգի դաւաճանութիւնս և բանսար-
կուս արկին երկպառակութիւն նաև ՚ի մէջ
ուղղափառաց ։ Եւ ՚ի յուզել խռովութեան ընդ
ամ եկեղեցիս՝ հաւանեցոյց լիբերիոս ըղ-
կայսրն, զի ժողով լիցի եպսաց յակուիլա.
բայց արիանոսք դուն գործեցին՝ զի ՚ի մի-
լանէ գումարեսցի ժողովն, ուր էր յայն-
ժամ կայսրն, և առ նմ բազմութիւն ոսոխացն
աթանասի ։ Մինչեւ հրաման ելանէր
՚ի կայսերէ՝ ժողովիլ եպսաց յարևելից և
յարեմտից ՚ի միլանէ (յամի. 354), ոչ վս
օգտի ինչ եկեղեցւոյ, այլ զի դատապարտ
արասցեն զաթանաս և զկուսակիցս նր, որք
ոչն հաւանէին անխտիր հաղորդիլ ընդ արիա-
նոսս. սմին իրի և ոչ ՚ի մէջ եկեղեցւոյ սահ-
մանեցին զտեղի ժողովոյ՝ որպէս օրէն էր լի-
նել, այլ՝ յապարանս արքունի. որպէս զի չու-
նիցին եպսունք լիով զազատութին առաջնոր-
դական, այլ հարկեսցին ակն ածել յերե-
սաց արքայի ։ Պարծեալ և զայլ չարութիւն
խորհեցան. զի է հասանել ուրուք յեպսաց

'ի քաղաք անդր, նախ բռնադատէին զնա՝ տալ ձեռագիր ընդդէմ աթանասի, և ապա մտանել 'ի կարգ ժողովոյն. և կամաւ հարկանէին նմա՝ չիշխել ասել ինչ բան ընդդէմ կամաց ինքնակալին. սոյնպէս և զայլս՝ որք ոչ եկին անդր, ստիպէին արքունի հրամանաւ՝ ձեռն տալ հաւանութեան յանկումն աթանասի յաթոռոյ. որում կամակար զիջան յոլովք յառաջնորդաց վատասրտաց, պատճառելով՝ թէ չէ արժան վասն պաշտպանելոյ զայր մի՝ զողջոյն իսկ զեկեղեցին խռովել, և կամ շարժել զթագաւորն ընդդէմ իւր ուղղափառաց։

Իբրև ըստ այսմ օրինակի հանդիսացաւ չարաժողովն այն Միդուլեայ, նա ինքն կայսրն կոստանդ. եղև անդէն դատախազ և դատաւոր աթանասի, և վճռեաց զնա յանցաւոր ըստ թելադրութեան արքանեկացն արիոսի։ Յայնժամ յոտն կացեալ ոմանց յուղղափառ եպիսկոպոսաց՝ բողոք բարձին, և արիաբար զդէմ կալան արքայի, ասելով. անիրաւ է ժողով այսպիսի, և դատակնիք սորա. զի աթանաս՝ որ 'ի ձենջ դատի, չէ աստ առաջիկայ, և ոչ քննութիւն օրինաւոր 'ի վերայ նորա. ատեան հարստահարողաց է ատեանս, և ոչ գումար հովուաց եկեղեցւոյ. քաւեալ եմք մեք առաջի նորա։ Զնոյն բողոքեցին գրով և այլք յեպիսկոպոսաց՝ որք ոչն կամեցան գալ յայն ժողով անիրաւութեան։ Իսկ թագաւորն բարկացեալ՝ մատնեաց զնոսա բանտից և կապանաց և աքսորանաց. արձակեաց և յաղէքսանդրիա զօր բազում՝ ձերբակալ առնել զաթանաս. քանզի

գի-

գիտէր՝ թէ ոչ թողուն զնա ժ̄ղվրդք երկրին: Իսկ եկեալ յանկարծակի աւելի ք̄ զհինգ հազար արանց սուսերամերկաց՝ պատեցին պաշարեցին զեկեղեցին, յորում կայր երանելի Հայրապետն հանդերձ բազմութ̄ ժողովրդոց 'ի պահու գիշերային պաշտաման. և առէին, տո՛ւք 'ի ձեռս մեր զաթանաս միայն ը̄ արքունի հրամանի, և ոչ միում ումեք 'ի ձէնջ հասցէ ինչ վնաս: Իսկ 'ի լինել ահագին գզրգման և շփոթութե̄, յորդոր լինէին հայրապետին՝ որք զնովաւն կային, ծածկել զանձն 'ի մէջ ամբոխին, և խոյս տալ ը̄ նա̄ 'ի տաճարէ անտի: Իսկ երանելին տայր պ̄խ̄նի. քա՛ւ լիցի ինձ՝ յանձն իմ խնայել, և զհօտն քո̄ 'ի վտանգ մատնել. եթէ զիս խնդրէն, աւասիկ եմ. միայն թէ դուք ապրեսջիք: Զայս ասացեալ՝ նստաւ յաթոռոյ, և հրամանն ետ սարկաւագին նուագել 'ի լուր ժ̄ղվրդեան զայն բան սաղմոսին. * զի յաւիտեան է ողորմութի̄ նր̄ ‖. և ապա հրամայեաց, զի ա̄մ ժ̄ղվրդն ելթիցէ իւրաքանչիւր 'ի տունս իւրեանց. և յելանել նց̄ զեղուին և զինուորքն 'ի ներքս. և յամ կողմանց զգուշանային՝ զի մի և աթանաս ելցէ ը̄ ամբոխին:

Յայնժամ վերստին աղաչէին զհայրապետն գդերբք եկեղեցւոյն՝ փութալ ճողոպրել զանձն. այլ նա դարձեալ ասէր. ո՛չ ելից աստի, մինչև ոչ ելանիցէք դուք ամ̄քին ողջանդամ արտաքս. զի լաւ է ինձ վտանգիլ՝ ք̄ միում 'ի ձէնջ: Իսկ նց̄ ոչ հանդարտեալ

հրա-

Հրամանի տէրն՝ բռնի ձգեցին զնա ընդ իւրեանս, և խառն ընդ ամբոխին՝ իբրև զմի ՚ի ժողովրդենէ ՚ի դուրս կոչեցին և ապրեցուցին զհովիւն իւրեանց. զի թէպէտ և շուրջ պատեալ կային զինուորքն, և կէսք այսր անդր ընթանային ՚ի մէջ տաճարին, այլ ոչ ոք ՚ի նմանէ կարաց տեսանել զելս հայրապետին. և այնպէս խնամով Տն անվնաս զերծաւ երանելին (յամի 356):

Իսկ պաշտօնեայք նորա յանծանօթ վայրս թաքուցին զնա. մինչև պարապ գտեալ նորա՝ խոյս ետ ՚ի կողմանս անապատի. և եկաց յառանձնութեան զաւուրս ոչ սակաւ: Բայց անողորմ զօրականքն իբրև տեսին՝ թէ Աթանաս չէ ՚ի մէջի, յարձակեցան գազանաբար ՚ի վերայ ամբոխին՝ արանց և կանանց. և արարին կոտորած մեծ. որում չէր ինչ գիտակ հայրապետն. բայց այն իսկ էր հոգ սրտի նորա. վասն լաւ համարէր դնել զանձն ՚ի վերայ ժողովրդեան:

Եւ այսորիկ և այլ բազմապատիկ չարեաց գործեցին արքանեակք արիանոսաց ՚ի քաղաքի աղեքսանդրացւոց, մինչև յուզել զամենայն տունս և զեկեղեցիս և աւար հարկանել. աստի համարձակութիւն առեալ և հեթանոսաց՝ ոտնակոխ արարին զնոցա տեղիս, և բազում ոճիրս գործեցին:

Յայնժամ հրամանաւ կայսեր առաքեցաւ յաթոռ աղեքսանդրիոյ՝ գէորգ անուն ոմն կամ գորգոնիոս կապադովկացի՝ այր ժանտ և արեանարբու, ձեռնադրեալ յարիանոսաց յան-

յանտերոք. և զի ՚ի բաց խորշեցան ՚ի նմէ ամ ժողովուրդք ուղղափառաց, և չկամէին հաղորդիլ, վասն զի զնա ՚ի նզովս մահու դատեցաւ, և զայլս բազումս զանիւք և կապանօք խոշտանգեաց ։

Ընդ որ չհանդուրժեալ ամբոխին՝ յաւուր միում յանկարծակի դիմեցին ՚ի վերայ նորա ՚ի մէջ եկեղեցւոյն ցասմամբ. և նորա մազապուր ձողոպրեալ ՚ի ձեռաց նոցա՝ անկաւ առ կայսրն. և առեալ ՚ի նմէ օգնականութիւն՝ եկն վերստին, և բռնանայր ՚ի վերայ ժողովրդեան չար քան զառաջինն ։

Իբրև եհաս լուր այսր ամի առ աթանաս, և ապա ևս եղև նմ՝ թէ բազումք յեպիսկոպոսաց իբրև ՚ի պատճառս իւր մատնեալ են ՚ի բանտս և ՚ի մետաղս և յազգի ազգի նեղութիս, ընդ որս և լիբերիոս հռովմայ հայրապետն, և երևելին ովսիոս եպս կորդուբայ (որ գլուխ էր ժողովոյն սարդիկեայ), խորհեցաւ դիմել անձամբ առ կայսր, և գտանել դարման եղելոցս այսոցիկ. զի ոչ համարէր՝ եթէ հաւանութեամբ նորա լեալ իցեն այն ամ չարիք ։

Իսկ եղև յեկանել իւրում ՚ի ճանապարհ, լուաւ՝ եթէ սաստկացեալ է հալածումն ընդ ամ տեղիս արքունի հրամանաւ. և կամակցութեամբ նորին կոստանդեայ կայսեր արիանոսք բռնացեալ են յեկեղեցիս ուղղափառաց, և ՚ի խնդիր են կորուսանել զաթանաս և զայլ եպիսկոպոսունս ուղղափառաց՝ որ ոչն առնուն յանձն միաբանիլ ընդ արիանոս ։

Յայնժամ անյոյս լեալ աթանասի գտանել ՚ի

'ի մեղկանէ զհնարս խղճուէ, և յած միայն ապաստան եղեւ աղօթիւք՝ դարձ սրար անդրէն յանապատ․ շրջէր 'ի խորշիթս հարց եգիպտացւոց, և նոքօք ևեթ մխիթարէր յանհնարին տրտմութէ սրտին ։ Բայց ջղի անդր ևս հասին արիանոսք, և ձեռն արկին չարչարել զնը միայնակեացս, զի յայտնեսցեն նը զսլթանաս, երկուցեալ երանելւոյն՝ զի մի 'ի պատճառս իւր վտանգ ինչ հասցէ նը, մեկնեցաւ յեւս խորագոյն անապատ․ և այնպէս հալածական շրջեցաւ՝ մոլորեալ 'ի լերինս և յամայի տեղիս, և ղօղեալ յայրս և 'ի քարանձաւս զամս վեց, ստէպ փոփոխելով տեղի թաքստի․ մինչև բնակել երբեմն և 'ի մէջ գբոյ՝ առանց տեսանելոյ զարև 'ի բզմ աւուրս ։

Եւ լինէր յորժամ հանդարտէր ուրեք յանկասկած վայրս անապատի, ոչ դադարէր երանելին անձանձիր գրութբ քարոզ լինել ճշմարտուէ՝ զոր չկարէր լեզուաւ վճարել․ քանզի զցայգ և զցերեկ 'ի հոգս եղեւ վն վտանգի եկեղեցւոյն այ յերեսաց ապանդաւորաց զօրացելոց՝ գրէր թուղթս խրատականս և մխիթարականս առ հաւատացելս, և յորդոր քաջալերուէ առ առաջնորդս իւրաքանչիւր եկեղեցեաց՝ հաստատուն կալ 'ի հաւատս ուղղափառուէ․ անդ գրեաց և բազումճառս ընդդէմ մոլորուէ արիոսի, ոմն և ընդդէմ հոգեմարտից մակեդոնեանց այնինչ 'ի վեր երևելոց իբրև շառաւիղ դառնուէ յարմատոյն արիանոսաց ։ Նաև գրե-

եաց

եաց և գիր ը՟արձակ առ կայսրն կոստանդ՝ 'ի յայտ բերելով զա՟մ դաւաճանութ՟ պատրողաց անձին նր՟, և յուշ առնելով նմ՟ զիւր և զայլ եւս ս՟բ եպ՟սաց զջան և զվաստակ 'ի վր՟ եկեղեցւոյն քի՟ . և զի թշնամանէին զնա արիանոսք իբրև յանցաւոր փախստական եղեալ, յայտնի կացոյց՝ թէ ոչ յանցանք իւր, այլ՝ դժնէութ՟ նց՟ հարկեցոյց զնա խոյս տալ յառանձնութ՟ի . քանզի և չէր իսկ օրէն ասէ՝ տարապարտ մահու մատնել անձամբ զանձն, որպէս նոքա կամէին, այլ՝ ըս՟ տ՟րունեան հրամանին փախչել քաղաքէ 'ի քղ՟ք ։ Եւ եղեւ 'ի մեռանիլ կոստանդեայ կայսեր յամի տն՟ 361, յորժամ յաջորդեաց 'ի կայսերու՟ն հօրեղբօրորդի նր՟ յուլիանոս ուրացողն, հրաման եհան առ ա՟մ եպ՟սունս արտահմանեալս 'ի ձեռն կոստանդեայ՝ դառնալ 'ի տեղիս իւրեանց . ո՟չ զի յինքն յանկուցէ զսիրտ ժղ՟վրդեանն՝ իբրև գթածագոյն զանձն ցուցեալ ք՟ զնախորդս իւր ։ Եւ զի 'ի նմին ժամկի նաև գէորգ արիոսեան՝ որ բռնու՟բ ունէր զառաջնորդութ՟ի աղեքսանդրիոյ, արար ինչ ը՟դէմ կամաց հեթանոսաց, և չարաչար մահու սպանաւ 'ի նոցանէ, այնուհետև հ՟մարձակութ՟ի եղև երանելւոյն աթանասի դառնալ յաթոռ իւր . յորոյ 'ի մտանել 'ի քաղաքն՝ անպատմելի ցնծութ՟ի եղև հօտին ։

Յայնժամ երանելի հայրապետն իսկ և իսկ խնամ կալեալ բարեկարգութ՟ն եկեղեցւոյ՝ ժողով արար յաղեքսանդրիա, և բանիւ և

գրով

գրովգուն գործեաց բառնալ 'ի միջոյ զնմ երկպառակութի, որ ծագեալ էր 'ի պատճառս միաբանելոցն ընդ արիանոսս յակամայ կամս. և ընկալաւ սիրով զդարձեալսն յապաշխարութի. և զայնոսիկ որք տարապարտ բաժանեալ էին յիւրեանց մն հակառակութե 'ի վր ձայնից և բառից, միաբանեաց 'ի մի հաւատս՝ հայելով յողջմտութի դաւանութե ք 'ի պէսպիսութի ձայնի։ Արդ՝ թէպէտև այսու օրինակաւ հանդարտեաց եկեղեցի 'ի հալածանաց արիանոսաց, բայց առ նմին յարեաւ մեծ ևս հալածումն 'ի վր ամ քրիստոնէից յերեսաց յուլիանոսի ուրացողի, որ ջանայր զնմ աղդաշրջել 'ի կրօնս հեթանոսաց՝ նախ հնարիւք խաբէութե, և ապա բռնաւորական տանջանօք. յորում ժմկի բազմօք ճգնեցաւ 'ի վր հօտին իւրոյ երանելին աթանաս. մինչև ոչ միայն զիւրսն պահել հաստատուն 'ի հաւատս, այլև զբզմս 'ի հեթանոսաց դարձուցանել 'ի ճշն ճշմարտութե։

Ընդ աւուրսն ընդ այնոսիկ պաշտօնեայք ամ պարշտութեն յուլիանոսի բացին զգերեզմանն սբյն յովհաննու մկրտչի առ սեբաստէ քաղաքաւ պաղեստինոյ, և ցրուեցին զսբ նշխարս նր. և անդրէն 'ի մի հաւաքեալ՝ այրեցին 'ի հուր, և զմոխիրն յանդաստանս ցանեցին. զի մի անկցի 'ի ձեռս քրիստոնէից։ Այլ խնամով ոմն անդ հանդիպեալ ոմանց 'ի կրօնաւորաց երեմիացւոց՝ հնարիւք իմն կորզեցին մասունս քանի մի յոսկերաց սբյն, և տարան առ հայր վանիցն՝ որ կոչիւր փիլիպպոս. և

նր

նդ անբաւական զանձն համարեմ՝ 'ի պահել աներկեւան զայնպիսի զանձ անգին՝ յղեաց առ մեծն աթանաս 'ի պարգեւս : Այլ սուրբ Հայրապետոն եւ բերել զորմն պահարանի կմ̃ աւանդատան եկեղեցւոյ, եւ անդ եդ 'ի պահեստ. մինչեւ յայտնեցաւ որ այլոց 'ի ժամս խաղաղութե. : Արդ՝ այս գործ թէպէտեւ ոչ ել 'ի վեր, բայց անկաւ շշնջիւն 'ի մէջ հեթանոսաց, թէ աթանաս է գլխաւոր պաշտպան ամենայն հրացն քրիստոնէից. եւ ասէին, թէ ցորչափ նստի նա գլուխ նազովրացւոց ազանդոյն, խոչընդակն է մեծ՝ զենիս մերոյ տարածման. եւ զի նախն ծանուցն ամբաստան լինէին առաջի յուլիանոսի զնմէ : Յայնժամ գրեաց յուլիանոս գիր հրամանի առ աղեքսանդրացիս եւ առ զօրուն եգիպտոսի՝ 'ի բաց հալածել զաթանաս զթշնամին չաստոց 'ի քաղաքէ անտի եւ յամ սահմանացն եգիպտացւոց, պատճառանս եդեալ ընդէմ հրամանի առաջին հրամանատուէ, թէ առանց իմոյ գիտութեա առաջնորդ նստի անդ, այն՝ որ կայսերական հրամանաւ էր արտաքսեալ. եւ զի սովորեալ է ասէ զոտկնայս հեղլենացւոց դառնալ յօրէնս գալիլեացւոյն, եւ մկրտիլ : Ընդ այս արտմեցան յոյժ հաւատացեալքն, եւ բոլորեալ զհայրապետաւն իւրեանց՝ լային դառնապէս. իսկ երանելին աթանաս մխիթարեաց զնս՝ գուշակելով զարագ արագ վճարումն առաջիկայ հալածանաց. մրրիկ է ասէ յանկարծական,

որ փութով անցանէ :

Եւ եղեւ 'ի խնդրել զնա արքունի խնդրա-կաց՝ մուծին զնա հաւատացեալքն 'ի նաւակ մի, եւ խաղացուցեալ ընդ նեղոս՝ փութային զերծուցանել յայլ տեղի ։ Զայն իբրեւ գի-տաց կոմսն՝ որ զհետ մտեալ էր սրբոյն, էառ ը̅ իւր արս սիկարեանս, եւ պնդեցաւ զկնի նր̅ նաւակաւ ։ Յայնժամ սկսան խռովիլ ու-ղեկիցք սրբոյն. եւ խրատ տային նմա ելանել առ տեղեաւն 'ի ցամաք, եւ փախչել յանա-պատ ։ Նա ասէ աթանաս. ոչ այդպէս. այլ մեք մեզէն ը̅ առաջ ելցուք հալածչին մերոյ, զի յայտնի լիցի՝ թէ մեծ է օգնականն մեր քան զհարստահարիչն. եւ հրամայեաց դարձու-ցանել զնաւակն ։ Իսկ կոմսն ք̃զի ակն ոչ ունէր՝ եթէ ը̅ առաջ գայցէ նմ̅ խնդրելին, հարցանէր ցաթանաս եւ ցորս ը̅ նմա, եթէ տեսեա՞լ իցէ նց̅ զաթանաս 'ի մ̅ջ̅ գետոյս, եւ կմ̅ լուեա՞լ իցէ նց̅ թէ ո՞ւր իցէ նա ։ Նք̅ ետուն պխնի. արդ եւս տեսաք զնա. զի չէ ինչ հեռի 'ի տեղւոջէ աստի ։ Յայնժամ փու-թացոյց կոմսն զձ̅իս իւր՝ երագ հասանել զկնի նր̅. եւ այսու օրինակաւ յմ̅ջ̅ ընթացան խնդրողք անձին նր̅՝ զրահետ վարեալ. եւ աթանաս անցեալ զերծեալ տր̅՝ դարձ արար յաղեքսանդրիա. եւ զհասարակ գիշերա-գնաց թաքեաւ 'ի յարկս պառաւ կուսի ու-մեմն, եւ անդ դադարեաց. եւ ոչ ոք գիտաց զնմ̅է թէ ո՞ւր իցէ, ոչ 'ի հեթանոսաց, եւ ոչ 'ի հաւատացելոց ։

Յետ կալոյ սրբոյն 'ի թաքստի անդ ամիսս ինչ, ուրացողն յուլիանոս սատակեցաւ անե-

բևոյթ ձեռամբ 'ի պարսս . և 'ի Թ͞գրել Յու-
լիանոսի կամ Յովիանոսի ընդ նորա . յամի
393 , դադարեաց հալածումն 'ի քրիստոնէից ։
Յայնժամ եղեալ և աԹանասի 'ի տեղւոջէն՝
ուր կայր , եկն եկաց յանկարծակի 'ի մէջ
եկեղեցւոյ 'ի պաշտաման գիշերային ժամու .
Ը͞ որ ափշեցան ամ͞քն , և լցան անպատմելի
խնդութ͞ ։ Ապա հաւանութ͞ աւետ͞ երանել-
ւոյն 'ի նոր ինքնակալէն՝ նստաւ անդրէն
համարձակութ͞ յաԹոռ իւր , և սկսաւ հով-
ուել զհօտն ։ Եւ էր սիրելի և արգոյ յոյժ
յաչս կայսեր . մինչև աղաչել նմ͞ զաԹանաս
գրել առ ինքն զբանս հաւատոյ , և ցուցա-
նել՝ Թէ ո͞յք 'ի դասուց հաւատացելոց զան-
մոլար ճշմարտուէ զհետ ընԹանան . ք͞զի 'ի
վարանս էր յովիանոս յերեսաց բազմուԹ͞է
հերձուածոց ծիլլին ։ Յայնժամ գրեաց առ-
նա մեծն աԹանաս ըստ իւրում ա͞ծիմաստ
հանճարոյ գիր հաւատոյ սքանչելի վ͞րդպու-
Թ͞ե . և Թ͞գրն մեծաւ սիրով և հաճուԹ͞ը
ընկալեալ զայն՝ հաստատեցաւ 'ի հաւատս
ճշմարտուէ , և բազմօք մարդասիրուԹ͞ ցու-
ցանէր դասուց ուղղափառաց ։ Եւ կամեցեալ
ս͞յն աԹանասի պատուասիրել զբարեպաշ-
տուԹ͞ կայսեր՝ եկն 'ի տեսուԹ͞ նր͞ 'ի կողմանս
անտիոքայ . և եգիտ մեծարանս յոյժ առ 'ի
նմէ ։ Օ եղան անդ 'ի վ͞ր ինքնակալին բազ-
մուԹ͞իք յաչաղկոտաց , և սկսան յանձնել
չարախօսուԹ͞իս ընդդէմ աԹանասի . բայց
Թ͞գրն 'ի բաց մերժեաց զն͞ս յիւրմէ , և զա-
Թանաս դարձոյց պատուով 'ի տեղի իւր ։

Մինչդեռ ակնունէին ուղղափառք վայելել 'ի խաղաղութե̃ ը̃ հովանեաւ ո̃լուեն յովբիանոսի , փութով եհաս նմա վախճան՝ յամի տ̃ն 364 . և թ̃գւրեցին երկու եղբարք աննմանք միմեանց , վաղենտիանոս ուղղափառ յարեմուտս , և վաղէս արիոսեան յարևելս ։ Սա ինքն վաղէս սադրեալ 'ի չար խրատու-ճաց՝ հրամանս եհան առ իշխանս իւրաքանչիւր տեղեաց , զի ո̃մ եպ̃սունք ուղղափառաց՝ որք աքսորեալ էին առ կոստանդեաւ , և անդրէն դարձեալ առ յուլիանոսիւ , միւանգամ ընկեսցին յաթոռոց և արտասահմանն լինիցին . և եկեղեցիք նոցա տացին 'ի ձեռս արիանոսաց ։

Յայնժամ եղև հե̃կութ̃ի վ̃ս աթանասի . Զի իշխան ք̃ղքին կամէր և զնա հանել յաթոռոյ . իսկ աղեքսանդրացիք պնդէին , թէ հրաման վաղեսի ոչ է վ̃ս հայրապետիս մերոյ . զի սա թէպէտև առ կոստանդեաւ աքսորեցաւ , այլ ոչ դարձուցաւ տիրապէս յաթոռ իւր 'ի յուլիանոսէ , առ որով տակաւին 'ի տառապանս կայր . բայց միայն առ յովբիանոսիւ կալաւ զաթոռ իւր խաղաղութե̃ ։ Առ 'ի լինել չփոթից՝ զանգիտեալ աթանասի , գուցէ չարիք հասանիցեն ժ̃ղվրդեան 'ի պատճառս իւր , մեկնեցաւ առ ժամն մի 'ի տեղի ուրեք առանձին ։ Բայց կայսրն վաղէս կամելով խաղաղել զամբոխն , եւս առաւել զի ակն ածէր յանուանէն աթանասի , դրեաց հրաման դարձուցանելոյ զնա յաթոռ իւր ։ Այլ 'ի զօրանալ հալածանաց արիանոսաց

ընդ-

ընդդէմ ուղղափառաց 'ի բազում այլ տեղիս , ստէպ գրէր Աթանաս թուղթս յորդորանաց և քաջալերութե առ ուղղափառ եպ̃սունս . և առանձին ընտանութ̃բ սիրոյ թղթակցութիւ առնէր ընդ մեծին բարսղի նստելոյ յաթոռ եպ̃սպետութե կեսարու կապադովկացւոց ։ Եւ զի 'ի մէջ ն̃մ եկեղեցեաց` որք բազում վիշտս կրեցին յերեսաց վաղեսի , դիւրութի էր յայնժամ եկեղեցւոյն աղէքսանդրացւոց , համարձակ առ աթանաս դիմէին նեղեալքն ն̃մ . և նա բանիւ և գրով մխիթարէր և զօրացուցանէր զն̃մն 'ի ն̃ր . և բազում անգամ ժողովական խորհրդակցութ̃բ հոգ տանէր բարեկարգութե եկեղեցւոյ , և նուաճութե աղանդոյն արիանոսաց ։ Գնաց և առ դամասոս հայրապետ հռովմայ` սանձահարել զաղանդաւորս , որք զօրացեալ էին 'ի կողմանս արևմտից ։ Եւ զայնու ժմկաւ յաւուրս ծերութե իւրոյ գրեաց զվարս ն̃ր հօրն անտոնի անապատականի ։

Եւ այսպէս 'ի հն̃պզօրդեան գրութիս և յաշխատութիս վ̃ն եկեղեցւոյ ծախեալ զաւուրս իւր , և կատարեալ զընթացս կենաց ն̃ծահաճոյ քաղաքավարութ̃բ , և՛ս առաւել մըշտատև նահատակութ̃բ 'ի հալածանս և 'ի նեղութիս , լի արդեամբք փոխեցաւ յերկինս , արթուն հովիւն և հզօր քարոզ բանին ճըշմարտութե` երանելին աթանաս , յամի տն իբր 371 , 'ի հասակի Ձ , կմ ՀԵ , ամաց . (4) պատուէր տուեալ վ̃ն մարմնոյ իւրոյ` մի՛ ինչ երևելի պատիւ ընծայել , այլ` 'ի հասարա-

կաց գերեզմանս թաղել արտաքոյ քաղաքի։
Ոս և արարին իսկ՝ երկուցել դիմադարձ
լինել քանի սբյն . և սուգ առին 'ի վր նորա
ոչ միայն աղեքսանդրիա և ամ եգիպտոս ,
այլև համօրէն եկեղեցիք ուղղափառաց ը
տիեզերս. զի առ ամենին համեալ էրն նր համ
անոյշ սրբութեան և ծաւալեալ լուսաւոր
վրդպուհին նր յարևելից մինչև յարևմուտս։ (5)
Եւ եղև յետ կալոյ մարմնոյ սբյն առ ժմկ
մի՝ 'ի տեղւոջն , ուր թաղեցին զնա ը հրա-
մանի նր , ապա առ ժմկօք ( ոչ կարծի ) մե-
ծին թէոդոսի կայսեր փոխադրեցաւ պատ-
ուով 'ի տեղի մի նշանաւոր 'ի քաղաքի անդ
աղեքսանդրացւոց . մինչև՝ յանցանել քանի
մի դարուց , ( զոր ոմանք դնեն 'ի ը. դարու
յաւուրս սբյն գերմանոսի ) բերեալ եղեն
նշխարք նր 'ի թգրական քաղաքն 'ի կոստան-
դինուպօլիս , և ամփոփեցան 'ի հոյակապ
տաճարի սբյն սոփիայ . և զի անտի ևս փո-
խեցին այլք զնի յայլ տեղի քաղաքին՝ քսե-
րոլոփոն կոչեցեալ , ուր շինեցաւ եկե-
ղեցի յանուն նր , դէպ եղև ասել քերթո-
ղացն յունաց՝ թէ դարձեալ այսր անդր բե-
րի երանելին աթանաս՝ ոչ թէ և յետ մա-
հուն վտարանդի լինելով։
Այլ 'ի յետին ժմկս եղև վերջին փոխադրու-
թի նշխարաց սբյն 'ի հանդարտեալ կղզին
վենետիկեցւոց՝ ը օրինակիս ը այսմիկ ։ Յա-
մի տն 1453 , յորում առին այլազգիք զկոս-
տանդինուպօլիս , 'ի կողոպտել եկեղեցեաց
և 'ի ցրուել սբ սպասուց և պատուական
նշխա-

նշխարաց սրբոց, նաւապետ ոմն վենետիկեան բանս եղեալ ընդ ումեմն մետրապօլտի յունաց՝ եբարձ ՚ի քսիրոլոփ ասացեալ տեղւոյն զմարմին սրբոյն աթանասի՝ ՚ի ժամու սաստիկ անձրևոյ՝ պատեալ ՚ի մէջ քրձի. և եդեալ ՚ի նաւ իւր՝ եբեր ՚ի յաջորդ ամի 1454, ՚ի վենետիկ՝ յաւուրս երանելւոյն լաւրենտիոսի յուստինեան՝ առաջին պատրիարգի տեղւոյն, և փրանկիսկոսի փոսկարինեայ դքսի, ամբողջ ամենայն անդամօք, և անապական մարթոյլ մարմնոյն. բայց ՚ի գլխոյն՝ որ առ ի տարեալ ՚ի հռովմ հանդերձ անապական լեզուաւն, և ապա փոխադրեալ ՚ի սպանիա, կամ ընդ այլոց ՚ի գաղղիա՝ ՚ի թեմն տուրոնիեան՝ ՚ի թաղն տիւսեյրին ասացեալ. և բաց ՚ի միոյ ՚ի մատանցն՝ զոր կանխաւ հատեալ և բերեալ էր այլոց ՚ի վենետիկ, և եդեալ ՚ի կուսաստան սրբոյն լաւրենտիոսի անուանեալ ։ Այլ ՚ի գալատեան անդ ամբողջ մարմնոյ սրբոյն ընդ նախագրելոցս՝ կազմեցին վենետիկեցիք մեծահանդէս թափոր՝ հանդերձ ամենայն ուխտիւ եկեղեցւոյ և բովանդակ ծերակուտիւն. և նախ բերեալ զպատուական զանձն ՚ի մեծ եկեղեցի սրբոյն մարկոսի աւետարանչի՝ նախկին հայրապետին աղեքսանդրու, կատարեցին տօն ցնծութեան երգովք օրհնութեան՝ վասն շնորհելոյ նոցա աստուածն զսրբոյն աթանաս հայրապետ զարժանաւոր յաջորդն աւետարանչի ։

Այլ ապա պատրաստեալ տեղի հանգստարանի սրբոյն, բարձին զգահաւորակն՝ յորում

կայր մարմինն՝ ութ եպսունք զարդարեալք 'ի Հայրապետական զգեստս. և այլ ևս եպիսկոպոսունք և քհնյք, և պատրիարգն և դուքսն ՟Բ՟ նին, Հանդերձ դասուք կրօնաւորաց և Յակոբկանաց. և անցուցին նաւակօք 'ի Հանդիպակաց կղզին՝ որ կոչի Եուտայիջա (ռամկօրէն՝ ալաղուէքա). և Հանգուցին յեկեղեցւոջ սրբոյ խաչին, որ 'ի վանս կուսանաց բենեդիկտեանց. ուր և կայր մինչև ցաւուրս մեր (որում և եղաք ականատես) 'ի վր̃ բեմի կառուցելոյ 'ի միջավայրս տաճարին՝ ոսկեզօծ տապանակաւ. յորում տեսանի ընդ ապակի փեղկս մարմին սրբոյն՝ տարածեալ 'ի վր̃ թիկանց, մեծագին Հայրապետական զգեստուք. և յերկոսին ձեռսն ագուցեալ մատանի ականակապ, և Հողաթափ յոտսն. իսկ 'ի տեղի գլխոյն՝ յարմարեալ կայ պաճոյճ բեհեզեայ՝ և խոյր 'ի վր̃: Նախ քան զնորոգումն այնր եկեղեցւոյ 'ի յետին ժամանակս՝ կայր և յորմն մերձակայ արձանագրեալ յիշատակարան վարուց սրբոյն, և փոխադրութեան մարմնոյ նր̃ 'ի տեղի անդր. ո՞չ և բազում արծաթի տախտակք ընծայեալք սրբոյն յուխտաւորաց նորա, և նկարք Հրաշից եղելոց նորին բարեխօսութ̃. յորոց և բազումք մնացին մինչև 'ի ժամանակս մեր: Քանզի յորժամ բերեալ եղև անդր մարմին երանելւոյն աթանասի, բազմապատիկ սքանչելիք և նշանք բժշկութեան գործեցան 'ի ձեռն նորա. և նախ՝ բուրէր 'ի սր̃ մարմնոյն այնպիսի Հոտ անուշութեան,

թէ, մինչև զմայլիլ ա՟մցն և զարմանալ յա-
ռաւել անդ փոխադրութեան նորին՝ ը՟ ա՟մ ձ՟պհն,
ընդ որ անցանէր ։

Էր յայնժամ 'ի Վենետիկ պատանի ոմն 'ի մօտակայ երկրէն Բարմայու. սա 'ի նոյն աւուրս ըմբռնեալ 'ի ժանտախտէ՝ իբրև վըտանգեցաւ 'ի մահ, տեսանէ յանուրջս զեկս ոմն. որոյ քաջալերեն զնա՝ պատուիրէր գնալ 'ի ս՟բ խաչ, և մերձենալ 'ի նշխարս Աթանասի. և յորժամ տարան զնա անդր՝ մինչդեռ քհնյք յարդարէին զհանգստարան տապանի ս՟բյն, և մերձեցուցին 'ի նա զնշխարս ս՟բյն, առժամայն փարատեցաւ 'ի նմէ ախտն մահաբեր ։ Եւ կին ոմն զամս հնգետասան տանջեալ անդամալուծութ՟, և ոչինչ օգտեալ 'ի հնարից բժշկաց, իբրև դիմեաց առ ս՟բն Աթանաս, վաղվաղակի հաստատեցան ա՟մ անդամք ն՟ր, և առողջացաւ բոլորովիմբ ։ Մանուկ մի փոքրիկ զրկեալ էր 'ի տեսութե՟ երկոցունց աչաց՝ յերեսաց սաստիկ ուռուցաց բովանդակ գլխոյն. զոր իբրև տարաւ մայրն 'ի տապան ս՟բյն, զիջաւ ուռոյցքն, և բացան աչք ն՟ր ։

Երեխայ մի նորածին՝ լի էր բորիւ. մինչև 'ի փոխել զերիզապինդսն՝ 'ի վայր թափէին մասունք մարմնոյ ն՟ր, և ոսկերքն իսկ երևէին. իբրև յանձն արարին զնա ս՟բյն ուխտիւք, բժշկեցաւ վաղվաղակի ։ Այնպէս եղև ընդ այլ մանուկ բորոտեալ՝ չորեքամեայ. վ՟ոյ փոխեցին զանուն մանկանն 'ի պատիւ ս՟բյն, և Աթանաս կոչեցին ։ Եղև

Երբեմն ալէկոծութ սաստիկ 'ի ծովուն վենետկեցւոց. և դիպացեալ ալեացն՝ կործեցին զՀնգետասան ոգիս 'ի նաւէ ուստեք 'ի ծովն. այլ ընդ կարդալ նոցա զանուն սրբոյն աթանասի՝ անդրէն զերծան 'ի նաւ անդր անվնաս: Բազում և այլ նշանք այսպիսիք եղեն ընդ ժամանակս ժամանակս:

Յոյնք բնակեալք 'ի վենետիկ, որք ունին առանձին եկեղեցի 'ի քաղաքին սրբ գէորգ անուանեալ, սովորութ ունէին մինչև ցաւուրս մեր ամ ընդ ամէ 'ի տօնի սրբոյն աթանասի՝ 'ի մայիսի 2, երթալ յեկեղեցի անդր սրբ խաչի՝ 'ի յարգութ նշխարաց նորին մեծին աթանասի իբրև վճպի եկեղեցւոյ իւրեանց, և անդ կատարել զերեկոյին պաշտամունս ընդ կարգի իւրեանց Հանդիսաւ: Իսկ 'ի մեկնիլ իւրեանց 'ի տաճարէ անտի՝ անդ թողուին զբերեալ մոմեղէնս 'ի պատիւ. և առնուին 'ի կուսանաց անտի վանից սրբ խաչին զծաղիկ մի փառաւոր՝ Հանդերձ ձեռագրով վկայութ զգալստենէ իւրեանց: Բայց 'ի մեռանիլ եպսի նց՝ դադարեաց այն սովորութ: Վասն զի յաւուրս յայսոսիկ՝ և մարմին սրբյն փոխադրեցաւ 'ի բուն քաղաքն վենետիկ՝ 'ի մեծ եկեղեցին սրբյն զաքարեայ:

Իսկ 'ի մեծն Հռոմ՝ ուր եղև տեղի ապաւինի սրբյն 'ի կենդանութ, շինեցաւ եկեղեցի վայելուչ յանուն նր՝ 'ի գրիգորէ ժԳ երորդէ, Հանդերձ դպրոցաւ 'ի պէտս մանկանցն յունաց՝ ընդ պաշտպանութ նորին սրբյն աթանասի պանծալի վճպին եկեղեցւոյ:

Ծ. Ա.

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Զկնի եկեղեցական պատմիչ՝ որ ոչ խօսեցի զմեծէն Աթանասէ․ քշի և զնովաւ յաւէտ յածին երևելի անցք եկեղեցւոյ 'ի չորդ դարու․ և որ մեծն է՝ գրեթէ որոշումն ուղղափառաց յայլափառաց յայնմ ժմկի հաստատեալ էր 'ի լինելն միաբան կամ անմիաբան ընդ Աթանասի։ Կայ պանծալի արձանական նորա՝ ծն ներբողական ճառ 'ի կատարումն կենաց նր յօրինեալ 'ի գրիգորէ ածաբանէ․ որպ և բազմապատիկ գովութիւք զնմ 'ի գիրս յետագայ հարց առ հասարակ, ևս առաւել առ կիւրղի աղեքսանդրացւոյ, և առ գելասիոսի կիւզիկեցւոյ՝ որ ասի գրիչ պատմութեան ժողովոյն նիկիոյ։ Քաջ գիտակ են այսմ ամի և բոլլանդեանք՝ 'ի հաւաքեալ անդ 'ի սքչէ զնիւթ վարուց սբյն Աթանասի․ միայն անծանօթ գտանին առաջին հեղինակի վարուց նր․ որ այն ինքն է ընտանի աշակերտ նր տիմոթէոս․ որոյ գրուածն՝ հին թարգմանութբ նախնեաց մերոց գտանի 'ի ճառընտիրս մեր, մակագրեալ այսպ․ *'ի պատմութէ վարուց սբյն Աթանասի, զոր ասացեալ է տիմոթէի աշակերտի նր, և Աթոռակցի աղեքսանդրացւոյ ||․ որով իմանամ ճառընտիրք մեր զնոյն զայն տիմոթէոս՝ որ գործակից էր սբյն 'ի բղմ իրս․ որպէս և յատենի անդ՝ յորում չարախօսէին թշնամիք զԱթանասէ, սա ինքն տիմոթէոս էր՝ որ զդէմս Աթանասի յանձին բերեալ նշաւակեաց զհնարս նց․ ըստ որում եդաք 'ի կարգի պատմութես․ և նոյնն է՝ որ յաջորդեաց յաթոռ սբյն Աթանասի՝ զկնի եղբօր իւրոյ պետրոսի։ Իսկ ոչ բղմ ինչ 'ի գրելոցն 'ի տիմոթեայ ասաց՝ գտանի և առ այլ եկեղեցական պատմիչս, նոյնպ և գտանի ինչ ինչ առ մեզ՝ ինքեան եւեթ սեպհական իբրև առաւել տեղեկագունի առանձին գործոց վճռպին իւրոյ․ որ է բաց յայլոց իրաց և սքանչելիքն ցուցեալ 'ի ձեռնադրութե նր՝ կամ 'ի հանգստական պտրգի առաջնում․ վիպ ասէ անդանօր տիմոթէոս․ *սոսկացեալ պակուցեալ կայաք՝ որք էաք մերձակայ․ իսկ հանգիստեցայ և ես՝ մինչև ցայս ժամ կայացեալ ||։ Զայս եդաք, զի իմասցիս՝ թէ ուր ուրեք գտանի ինչ մի 'ի վարս սբյն Աթանասի, որ ջըկայցէ առ այլս, այլ միայն առ մեզ, 'ի վաւերական գըրոց.

քութեանց անտի ախմաթեայ է առեալ. և անցեալ նաև 'ի յայսմաւուրս մեր:

Ուր ծանիր և զայն, զի որպ 'ի Հ. յունվ. 19. դնի յիշատակ աթանասի և կիւրղի 'ի միասին, և 'ի տօնացուցի միանգամայն կատարի տօն նց. նոյնպէս և առ յոյնս է տեսանել միով աւուրբ յառաջ՝ 'ի յունվ. 18. միայն թէ նք դարձեալ ուրոյն ուրոյն ևս տօնեն զնա, զաթանաս 'ի մայիսի. 2. և զկիւրեղ 'ի յունիսի 27. իսկ լատինք ոչ ունին զառաջինն՝ զի միանգամայն տօնել զերկոսեան, այլ զերկրորդն. զի զաթանաս տօնեն 'ի մայիսի 2. և զկիւրեղ 'ի յունվ. 28:

(2) 'Ի Հ. և 'ի Ճ. բանիւք ախմաթեայ աշակերտին աթանասի՝ ոչ յիշի ուրուշակի բան մկրտութե, այլ միայն այնպէս ձեռնադրութեանց՝ զոր առնէր մանուկն աթանաս ընդ խաղս: Իսկ հռուփինոս և այլք 'ի պատմագրացյունաց՝ բաց 'ի ձեռնադրութէ՝ մեկին ևս զբեն զմկրտութենէ. մինչև առիթ եղև յետնոց խնդիր յարուցանելոյ, թէ արդեօք յիրաւի մկրտեցա՞ն այն մանկունք, եթէ ոչ. որովհետև խաղ էր գործն ըստ առաջին տեսութե. և միանգամայն կարէր զօրել 'ի ստուգութե դիտաւորութե մկրտելոյ: Այլ այս չկամելով ոմանց տալ պատախանի, մանաւանդ թէ խոյս տալով 'ի դժուարութէ՝ ջանան ընդ առասպել գրել զայդ դիպուած. բայց այլք պնդեն՝ թէ յիրաւի մկրտեցան. զի աթանաս՝ թէպէտև մանուկ, դիտէր առեն տիրապէս մկրտել զոչ մկրտեալսն, և նք ևս զնոյն կամէին. որպէս յայտ է 'ի վկայութէ հռուփինոսի ժամանակակցի, որ իբրև 'ի կենակից եղելոց աթանասի լուեալ՝ գրէ, թէ աղէքսանդր հայրապետ եհարց և ստուգեաց յաթանասէ և յընկերաց նր, թէ զի՞նչ ասէին 'ի մկրտելն և 'ի մկրտիլն. և յարէ. * Եւ իբրև ետես զամ ինչ ըստ կարգի
,, կրօնից մերոյ 'ի գլուխ ելեալ, խօսեցաւ ընդ ուխտի
,, եկեղեցւոյն, և հաստատեաց՝ որպ աւանդի, թէ որոց
,, անթերի պահմամբ հարցուածոց և պատասխանեաց մկրտեալ
,, էր 'ի ջուր, չէ օրէն երկրորդել զմկրտութիւն, այլ միայն
,, լնուլ զոր ինչ օրէն է պաշտաման քահանայից ||: Ըստ նոյն հաստատեն և այլք 'ի մատենագրաց՝ զհետ գնալով հռուփինոսի իբրև արժանահաւատ հեղինակի. և ըստ նմին աւանդի նաև 'ի բասիլեան յայսմաւուրս յունաց. մայ. 2. յասելն՝ թէ աղէքսանդր հայրապետ ոչ զայլ ինչ արար, բայց միայն * ածային մեռոնաւ զմանկունսն օծեալ՝ կատարեաց ||: Այդ՝ եթէ ճշմարիտ իցէ այդ,

այգ, անմարթ է այնուհետեւ յետնոց նոր խնդիրս յուզել. զի նա ինքն սբն աղեքսանդրոս լաւ ևս գիտէր յայնժամ զհանգամանս գործոյն, քն թէ այլ ոք յայժմուս: Իսկ ուր եգաք ըստ հռովբինոսի՝ թէ 'ի բարձր վայրէ տեսեալ իցէ աղեքսանդրոսի զմանկունսն, 'ի հ. և 'ի ծ. սակս տեսանել յանցանել անդ հայրապետին առ մանկամբքն կմ առ վարդապետարանաւ. թերևս՝ զի յետ 'ի վերուստ տեսանելոյն եկեալ իցէ և 'ի մօտոյ նշմարել:

(3) Հանգանակն նիկիական, ուր յայտ է, ա մասին է նոյն ա առաքելական կոչեցեալ հանգանակի՝ որ առաւել յարեւմուտս է ծանուցեալ 'ի սկզբանէ և այժմ, և ա մասին է յաւելուած բացատրական նորին իսկ սբ ժողովոյն նիկիոյ. և զի ժողովք ոչ զնմ ինչ համանգամայն 'ի բերանոյ ամէն հաւաքէին յատենի անդ, այլև զբքմ ինչ ուրոյն նշանակեալ կանխագոյն՝ յատեան ածէին, և միաբան հաւանութբ ընդունէին և սահմանէին, վսյ ոչ ինչ խորթ է՝ թէ հոգին սբ յառաջագոյն ազդեալ իցէ զհանգանակն զայն աթանասի, և յետոյ նովաւ հանդիսացուցեալ 'ի ժողովի, և կամ յատենի անդ թելադրեալ իցէ նորա յօրինել միաբանաբար. բայց են որ ասեն՝ թէ բուն հեղինակ եղև մեծն ոսկիոս կորդուբացի: Կայ և միւս այլ սահման հաւատոյ՝ վարդապետական, հանգանակ աթանասի ասացեալ (դուցէ առաւել ոսկիոսի յանկաւոր). որոյ բնագիրն է լատին, և կարծի յոմանց յօրինեալ յաթանասէ 'ի ժմկս դեգերանաց նր յարեւմուտս. բայց քանզի բզմք չառնուն յանձն ընծայել զայն աթանասի, այլ՝ այլում ումեք 'ի հարց ըզկնի նիկիական և կոստանդնուպօլսեան ժողովոյ, մեզ ոչինչ անհաւանելի թուէր վերագրել զայն սբյն կիւրղի, եթէ գիտէաք լինել գործ արևելեան հարց:

(4) Սոկրատ դնէ զվախճան սբյն աթանասի՝ յերկրորդ հիւպատոսն գրատիանոսի և պրոբոսի, * յետ վարելոյ զեպսկոպոսութիւն 'ի մէջ բազմադիմի մրցմանց զամս խզ ||. որ անկանի յամ տն 371. զնոյն հաստատեն և անանուն պատմիչ յոյն և մետափրաստէս՝ նոյնչափ ամս տալով ժմկի եպսկոպոսութեն նր: Սոյնպ և սբն կիւրեղ դնէ զամս խզ. իսկ հռովբինոս՝ փոխեցաւ ասէ 'ի խզերորդ ամի եպսկոպոսութեն. նոյն է և բարոնիոսի հաշուելն զժամանակ եպսկոպոսութեն նր՝ յամէ տն 326, մինչև 'ի 372: Բայց սակայն յայսմաւուրք և ժամագիրք յունաց ասեն, * զամս խբ ձգնեալ վո քսի ||, կմ * զամս խբ, 'ի հալա-

ծանս

ծանս նահատակեալ||. Ընդմին և 'ի Հ. գրի. * Իսկ ամ փախստական լեալ՝ ծագնեցաւ վն ուղղափառ հաւատոյս||։ Ը հակառակն ասեմք 'ի յետնոց համարին զաթանաս գեա կենդանի լինել յամի տն 373. կմ 374. որով միջոց եպսուէ ն' ձգի յամն խէ։ Այլ չեն ինչ տարբերութիւնք մի և երկու ամաց՝ այլ և այլ օրինակաւ հաշուելոց։ Որ և վն բովանդակ կենաց աթանասի այսր առէ քարեպրոք բոլլանդեան. * վն հասակի ամաց սբյն չէ մարթ որոշակի սահմանել ինչ. ինձ այսր թուի թէ մտաւոր իցէ յոյժ ութսունամեայ՝ ք եօթանասնամեայ հասակի||։ Սա ինքն քարեպրոք հայելով յերկուս աւուրս՝ յորս լինի յիշատակ սբյն աթանասի առ յոյնս. ք 'ի յնվ. 18. Ը կիւրղի. և 'ի մայ. 2. առանձին, զառաջինն վարկանի լինել օր ընտրութն ն' յեպսութն, և զերկրորդն՝ օր մահու նորա. որ է լոկ հաւանական կարծիք. միայն զերկրորդն հաւանականագոյնս ցուցանէ այն. զի 'ի մայիսի 2. գտանի յիշատակ ն' բաց 'ի յունաց և 'ի լատինացւոց՝ նաև առ եգիպտացիս և արաբացիս. թող զքաղդէացիս կմ զմառոնիս, յորս գտանի կրկին յիշատակութի և 'ի յունվարի. 18. բայց առանց կիւրղի, որ դնի առ յոյնս։ Այլ հայեցեալ նախասացեալ խուզարկուէի 'ի բանս ժամագրոց յունաց, խոստովան լինի՝ թէ գուցէ 'ի մայիսի 2. լեալ իցէ փոխադրութի նշխարաց սբյն աթանասի 'ի սբն սոփի։ Իսկ պատճառ տօնելոյ ('ի յունվարի. 18) ընդ կիւրղի առ այն, զի յետ ծնկաց անդր բերել եղեն և նշխարք սբյն կիւրղի, և առ նմ ամփոփեցան. եթէ չիցէ բուռական պատճառ միագրութե տօնի երկոցունց՝ համանմանութիւն բազմարդիւն և մեծանուն հայրապետացս մի և նոյն աթոռոյ աղեքսանդրացւոց։

(5) Կարևոր է գիտել և զայս 'ի պէտս քաջ իմանալոյ զեկեղեցական պատմութիս, զի զկնի սբյն աթանասի յաջորդեաց յաթոռ ն' Ը յառաջագոյն ընտրութե ն' և հաւանութ ամէն, պետրոս հայրապետ երկրորդ՝ ընթացակից աթանասի և վաստակակից յամ հալածանս. բայց արիանոսք՝ որք յաթանասէ հեծ երկնչէին, 'ի վախճանիլ ն' համարձակութ առեալ 'ի վաղեսէ՝ տիրեցին եկեղեցեաց աղեքսանդրիոյ. և բազմապատիկ չարիս գործեալ՝ 'ի բանս արկին և զպետրոս. յորմէ հալածէ զերծեալ ն' անկաւ 'ի հռովմ առ դամասոս. և յետ մահուն վաղեսի դարձաւ յաթոռ իւր. այս պետրոս հայրապետ յամի գովելի գաւս հանգոյն առաջնոյն

առ

տօնելոյ՝ բաց ՚ի միոյ մարդկօրէն գայթակղութէ, ա-րով միաբանեցաւ յանկումն գրիգորի ծծաբանի յաթո-ռոյն կոստանդնուպօլսի, և ՚ի նստիլ անդ մաքսիմոսի նենգաւորի ։ Յետ պետրոսի յաջորդեաց ՚ի պատրիար-գութէ ուղղափառաց աղեքսանդրիոյ՝ տիմոթէոս եղ-բայր նորա ։

Եւ յաւուրս սորին տիմոթէայ կմ՟ նախընթացի նորա պետրոսի՝ խօսեցաւ ծծաբանն զարժանականն աթա-նասի յաւուր յիշատակի նորա ՚ի կոստանդնուպօլիս ՚ի մատուանն անաստասիայ, սկիզբն առնելով այսպէ. * Զա-
,, թանաս ներբողելով՝ զառաքինութին ներբողեցից. զի
,, նոյն է զնմանէ ասել, և զառաքինութի ներբողել ։
,, Վս զի զամ ինքեան համահաւաքեալ ունէր զառա-
,, քինութի. կամ ճշմարտագոյնս ասել, ունի. զի կեն-
,, դանի են այ ամենեքեան՝ որ այ կեցին, թէպէտև աս-
,, տի անդր փոխեցան ... Եւ զառաքինութի գովելով՝
,, զած գովեցից, յորմէ ՚ի մարդիկ առաքինութին ... Զի
,, սակաւք են այ, թէպէտև ամենեքին ձեռակերտք նո-
,, րա ... (՚ի սակաւուց սակի թուել զսբ նահապետս,
,, զմարգարէս, զառաքեալս, զվդպս, զվկայս արեամբ
,, նահատակեալս և զքանչելագործս՝ ՚ի վր բերէ).
,, ՚ի սոցունց յայսցանէ աթանաս՝ ոմանց հաւասարել
,, գտաւ, քան զոմանս փոքր մի խոնարհ երևեալ. է զի
,, և զայլովք ՚ի նոցանէ գերազանցեաց, թէ ոչ է յանդգ-
,, նութի ասելս. և զոմանց զբանն, զայլոց զգործն,
,, զոմանց զհեզութին, զոմանց զնախանձն, զայլոց ըղ-
,, մրցանս, զոմանց զբազում ինչ իրս, զոմանց զամն յին-
,, քեան նմանաբերեալ, և զայլ յայլմէ զգեղեցիկն ա-
,, ռեալ, որպս որք զկերպարանս ևս գերապանծ նկարա-
,, գրեն, և ՚ի մի իւր անձն ժողովեալ, զմի տեսիլ ա-
,, ռաքինութէ յամենեցունց ճշգրտեաց. բանիւ զօրա-
,, ւորացն՝ գործով յաղթեալ, և գործնականացն՝ բա-
,, նիւ. եթէ կամիս, բանիւ՝ բանիւ պերճացելոցն, և
,, գործով՝ գործնականաց վեհագոյն հանդիսացեալ...
,, Եւ եթէ մեծ է յառաջադունիցն քան զնա՝ օրինակ
,, նմին լինել առաքինութէ, ոչ փոքր՝ ՚ի պարծանս մե-
,, րումս քաջի՝ որոց զկնի նորա լինել օրինակ ։ Արդ՝
,, զամ զնորայսն ասել և զարմանալ յերկարագոյն ա-
,, գեօք իցէ քան զառաջիկայս հանդէս ճառի. և պատ-
,, մուէ գործ, և ոչ ներբողենի. և զնոյն իսկ պսակ-
,, հական գործս նր գրով աւանդել ՚ի դաստիարակու-
,, թի և ՚ի զուարճութի յետնոց՝ աղօթից ինձ պետք
,, (կամ

,, ( կամ ուխտիւք փափաքելի )․ որպ̃ նա ինքն զամենայ_
,, նոյն անառնի զվարս շարագրելոյ, զմիայնական վա_
,, րուց զօրինագրութիւն 'ի ձև պատմութեան ||:

Այս 'ի կարգի գովութեան ասէ զնմանէ․ * Զամ զհին
,, և զամ զնոր գիրս ուսեալ, որպ̃ և ոչ զմին ոք այլ
,, ճոխանոյ թէոլոգականաւ ( ա̃յ աստուածաբանաւ ), ճոխա_
,, նայ և վարուց պայծառութբ̃․ և զօդէ հրաշապէս
,, զերկոսին՝ որպ̃ ոսկի շղթայ գողցես, զ՚ի բազմաց անզ_
,, զօդելին․․․ Զգիտասպետութիւն ընդունի ժողովըր_
,, դեանն նմա հաւատացելոյ․ մանաւանդ թէ ասել՝
,, զհամօրէն տիեզերաց զվերակացութի․ և ոչ ունիմ
,, ասել, առաքինութեն առաւել յաղթանակ՝ եթէ ե_
,, կեղեցւոյ ազբիւր և կեանք առնու զկարգ սրբու_
,, թեն․․․․ Առաքելաբար և հոգևորապէս 'ի մարկո_
,, սին աթոռ վերաբերի, ոչ պակաս՝ բարեպաշտութեն,
,, քան նախագահութեն յաջորդ․․․․ Բարձր էր գոր_
,, ծովք, այլ խոնարհ մտօք․ առաքինութբ̃ անմերձե_
,, նալի, բարեմոյն բարուք յոյժ դիւրամերձենալի․
,, հեզ, անբարկացող, կարեկից, քաղցր բանիւ, առա_
,, ւել քաղցր՝ քաղաքավարութբ̃․ տեսլեամբ հրեշտակա_
,, կան, հրեշտակագոյն մտածութբ̃․ խաղաղ 'ի յանդի_
,, մանելն, դաստիարակող 'ի գովելն․․․ յորոց մին քաղց_
,, րաբարոյութի, և միւսն խոհականութի․ և երկաքան_
,, չիւրն՝ իմաստասիրութի․․․ համարձակի բանս մինչև
,, յայտոսիկ, զի զնա գիտէ կոչել գիրն զորս կեանս ք̃
,, ք̃ղի․․․․ Աթանաս մեզ, ցորչափ կենդանի կայր․
,, սիւն եկեղեցւոյ ||: Եւ այլ ևս պանծալի բանք․ որպ̃
և ը̃ թարգմանութե անուանն կոչէ զնա * Անմահութե
,, սիրող և առիթ և անուանակիր ||:



ՎԱՐ Բ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Կիւրղի մեծի՝ աղեքսանդրու Հայրապետին ։

Հ. յունվր. 19 ։ Փր ԻԷն. յունվր. 18 ։ Յ. յունվր. 18. և յունիս. 27. ԿՄ 9 ։ Լ. յունվր. 28 ։ Ղպ տըբի. Բ. ադէ ։ Բուլղար յոհաննէս. 'ի Ե հաւ. յունվր. էր. 843 = 854 ։ Սեանհոր. և այլ է հնգեցակին պարմ ։ (1)

ՀԱՄԱՆՄԱՆ ԱԹԱնասի մի միայն յաթոռակցացն, ախոյեան ուղղափառութեն և ամուր պարիսպ եկեղեցւոյ, բազմարդիւն ժիր մշակ յայգւոյն զօրութեց՝ տիրական անուանմբ պատուեցեալ Հայրապետն Կիւրեղ աղեքսանդրացի (2) ծնաւ յազնուատոհմ և 'ի բարեպաշտ ծնողաց՝ 'ի սահմանս աղեքսանդրիոյ եգիպտացւոց, մօտ 'ի վախճան չորրորդ դարու. և սնեալ 'ի մանկութե 'ի բարի վարս և յուսմունս, ընդ աճել հասակին ևս քան զևս մարզեցաւ 'ի կրթարանս իմաստութեն 'ի ձեռն խնամոց Թէոփիլեայ պատրիարգին աղեքսանդրիոյ. որոյ էր քեռորդի կմ եղբօրորդի (3). և քաջուսումն գտաւ յամ արտաքին գիտութիւս իմաստասիրա-

կանս

կանս (4)․ և նս առաւել խելամուտ եղև ա̃ծային վ̃դպութն մարգարէական և առաքելական տառից, ո̃ց և բանից նախնի հարց և վ̃դպաց եկեղեցւոյ ։ Որ և ձեռնադրեալ սարկաւագ և քահանայ ՚ի նմին ՚ի Թէոփիլոսէ՝ զարմացուցանէր զա̃մենեսին հզօր քաջողութ̃ բանին և առաքինափայլ գնացիւք․ վ̃յ ՚ի մեռանել Թէոփիլեայ՝ գրեթէ համօրէն ժողովրդն խնդրէին զկիւրեղ լինել իւրեանց առաջնորդ․ բայց ք̃ղի էին և ոմանք՝ որք զտիմոթէոս աւագ սարկաւագն խորհէին ընտրել, եղև եռօրեայ մաքառումն ՚ի մէջ աղեքսանդրացւոց ՚ի վ̃ր երկոցունցն այնոցիկ․ մինչև ՚ի կողմն կիւրղի միաբանիլ ամ̃ցն, և նստուցանել զնա յաթոռ պատրիարգական շքեղ հանդիսիւ, ՚ի մետասաներորդ ամի կայսերութեան Թէոդոսի փոքու․ այն է յամի տ̃ն 412․ ՚ի 18 հոկտեմբերի ։

Իսկ երանելին կիւրեղ յորժամ նստաւ յաթոռ հայրապետութեան, փոյթ յանձին կալաւ որքել և անպարտ պահել զհօտ իւր յայլևայլ հերձուածոց ժ̃նտացելոց ՚ի ժ̃մկին։ Եւ զի նաւատիանոսք՝ որ և նովատեանք՝ ունէին ցայնժամ եկեղեցիս յաղեքսանդրիա,՚ի բաց եհան զն̃ս ՚ի ք̃ղքէ, և ետ զեկեղեցիս ն̃ց ՚ի ձեռս ուղղափառ երիցանց․ որոյ վ̃ս սկսան այլափառք թշնամանել և բամբասել զկիւրեղ՝ ո̃պ հալածիչ անողորմ, զճշմարիտ նախանձաւորն հաւատոց, և զարթուն հովիւն եկեղեցւոյ ։ (5)

Այր մեկուսի յաղեքսանդրիոյ իբրև տասն

վտակաւն՝ տեղի մի կոչեցեալ կանոպէ կամ կանոպոս . և փոքր ինչ բացագոյն 'ի Նմանէ Մանութէ գիւղն , յորում էր բնակութի այսոց չարաց . զայն տեղի զառաջինն գուն գործեաց Թէոփիլոս մաքրել , և ոչ կարաց 'ի գլուխ տանել զգործն . ապա իբրև վ̃ն Նոցին իւրաց հոգայր մեծն կիւրեղ , և խնդրէր յա̃յ աղօթիւք՝ ցուցանել նմ̃ զելս հնարից , երևեցաւ նմա հրեշտակ ա̃յ 'ի տեսլեան , և հրամայեաց բերել 'ի տեղի անդր զնշխարս սր̃ց վկայիցն կիւրոսի և յովհաննու , և աւետարանչին մարկոսի , և շինել վկայարան 'ի տեղւոջն . և յորժամ արար կիւրեղ զհրամայեալսն ( յամի . 414 ) , այնուհետև անհետ եղեն վայրենի դևքն 'ի գեղջէ անտի: Յարեաւ 'ի նմին ժմկի և աղմուկ մեծ յաղեքսանդրիա՝ ը̃ հրէայս և ը̃ քրիստոնեայս անհաշտ Թշնամիս իւրեանց . և 'ի զայրանալ հակառակուե̃՝ միաբանեալ հրէից յարձակեցան բազմուե̃ 'ի վ̃ր քրիստոնէից , և կոտորեցին զբ̃զմս : Այլ իբրև բմբռնեցան գլխաւորք չարեաց , և նկուն եղեն խռովարարք , հրաման եհան կիւրեղ հայրապետ , զի ամ̃ հրէայ՝ որ ոչ առնու յանձն զքրիստոնէուի , 'ի բաց մեկնեսցի 'ի քղ̃քէ անտի. և ն̃ք ելին ցրուեցան 'ի զանազան տեղիս . և մաքրեցաւ քաղաքն . եղեն և ոմանք՝ որք դարձան 'ի ք̃նական հաւատս . և եղև խաղաղուի մեծ յաղեքսանդրիա :

Իսկ ովրեստէս իշխան քաղաքին Թէպէտև քրիստոնեայ հաւատով՝ բայց ոչ խորհելով

դչարեցաւ ի գործ սրբոյ հայրապետութեան, զի պակասեցին սաստ այնչափ մինչև ՚ի քրիստոնէից՝ շահաւէտք ՚ի տուրևառս. և վ̃նկ գրեաց առ թագաւորն առ կայսրն։ Որոյ կիւրեղ ունայնացոյց զբանսն իւր՝ յայտ առնելով կայսեր, թէ քանի՞ չարիք լինէին ՚ի քաղաքի անդ յերեսաց ատելեայն քնի։ Եւ զի ոչ ոք կալաւ յայնմ հետէ քրիստոնէից ի հայրապետութիւն, իջին յանապատ բազմութիւնք միայնակեցաց՝ միջնորդ լինել հաշտութեան ՚ի մէջ երկոցունց. այլ և ոչ իբրացն նա ձախողակի պատահեցին. մինչև ծագեցաւ նոր աղմուկ չփոթի ի կուսակիցս կիւրղի և ի թեւակիցս քրիստոնէին. Եւ ՚ի խռովութեան անդ սպանան բաց յայլոց ոմանց՝ ամմոնիոս ոմն միայնակեաց մեծանուն, և հիպատիա՝ կին անուանի ի նոյն քաղաքն՝ դուստր թէոնեայ փիլիսոփայի, զօրաւոր բանիւ և գրով՝ գերազանցեալ զիմաստասիրօք ժամկին։ Եւ ոչ ուրեմն զկնի բազում վրդովմանց եղև խաղաղութիւն զգօն առաջնորդութեամբ մեծին կիւրղի (յամի. 415)։

Այլ էր և մնացուած երկպառակութեան ՚ի մէջ առաջնորդաց եկեղեցւոյ ՚ի պատճառս անցից սրբոյն յոհաննու ոսկեբերանի. զի անտիոքացիք և կոստանդնուպօլսեցիք և այլք յերևելի աթոռոց ի մեծին հռովմայ առժանաւոր պատուով մեծարէին զանուն ոսկեբերանի՝ կարգելով զյիշատակ նորա ընդ այլոց հայրապետս. իսկ աղեքսանդրացիք օտարանային ՚ի նմէ՝ յաւուրց անտի թէոփիլոսի պատրիարգին իւրեանց, որ ատելին եղև

ղև

զև ոսկեբերանի՝ պատճառանօք նախանձայուզումն Եղ̃եմ որոգայթնեանց. մինչև կիւրեղ անգամ առ ժմն մի միգկօրէն խորհրդով ջատագով ցուցեալ նախորդին իւրոյ Թէոփիլեայ, յորմէ ընդ երախտիս էր գտեալ, չհաւանէր 'ի յիշատակ եկեղեցւոյ դասել զանուն ոսկեբերանի. և գիր ևս յորդորանաց ընկալեալ յայլոց առաջնորդաց՝ ոչ կամէր հաւանիլ: Եւ մինչդեռ նա յայս մտաց խորհրդի էր, ա̃ծ ընծայեաց զմիտս նր̃: Որոյ վա̃ պատմի յոմանց այսպիսի ինչ (իմն 'ի կատակացն ոսկեբերանի). Թուէր նմ̃ տեսանել յերազի, զի ոսկեբերանն յանհան 'ի բաց վարէր զնա 'ի դրանէ եկեղեցւոյն, և ոչ թողոյր մերձենալ 'ի պաշտօնն ա̃ծային. տեսանէր և զամենօրհնեալ ա̃ծածին կոյսն զդըշխոյն երկնից, որ խրատէր զյանհան՝ խնայել 'ի կիւրեղ իբրև յանգիտացեալ յայսմ մասին. զի դա է աստ վրէժխնդիր փառաց իմոց (6): Եւ իբրև զարթեաւ կիւրեղ 'ի տեսլենէ անտի, 'ի միտ առ զխ̃րդ իրացն, և 'ի բաց եդեալ այնուհետև զտարապարտ կարծիս Եղ̃եմ երանելւոյն յանհանու՝ սկսաւ հռչակել գովու̃թ զանուն նորա, և տալ յիշատակել յեկեղեցւոջ 'ի կարգս սր̃բց հայրապետաց: Բայց լրումն տեսլեանն 'ի դամուն կիւրղի գլխովին յանկ ելանէր զկնի ամաց ինչ անցելոց:

Քանզի յետ հաշտութե̃ն եղելոյ ընդ աթոռն աղեքսանդրիոյ և կոստանդնուպօլսոյ՝ յորժամ մեռաւ ատտիկոս պատրիարգ Թ̃րա-

կան քղքին, և յետ նր̄ սիսիննիոս կամ սի-
սիանոս սակաւաժամկեայ, ապա յաջորդեաց
յամի տն̄ իբր. 428. մարդադաւանն Նեստոր,
որ յարոյց հերձուած չար յեկեղեցւոջ, և
ուսոյց մոլորութի հրէական՝ լոկ մրդ դաւանե-
լով զյս̄ զորդին մարիամայ, և բաժանելով
յանձնէ որդւոյն այ̄, յերկուս որդիս և յեր-
կուս դէմս որոշել. և սկիզբն և կատարած
իւրում հայհոյութե եդ՝ չասել զսբ̄ կոյսն
ածածին, այլ՝ քսածին. իմանալով մրդածին.
և թէ ասէր ածածին, իմանայր կրաւորա-
պէս և բարոյապէս՝ յայ̄ ծնեալ. և ոչ ըստ
ուղղափառաց ներգործաբար և ֆիզիգա-
պէս, այ̄ ծնօղ այ̄։ Զայս որոմն սատանայ-
ական՝ մննուածոյ բունիւք ցանեալ զառա-
ջինն 'ի թգ̄րական քղքի, սկսաւ և 'ի հեռա-
ւորս տարածանել թղթովք. մինչև եհաս
գիր նորա թունալից և առ միայնակեացս ե-
գիպտոսի. և անկաւ շշնջիւն և յոյզ խնդրոյ
առ բզմս՝ 'ի գայթակղութի տկարաց։
Եւ եղև իբրև եհաս բանն յականջս երանե-
ւոյն կիւրղի, վառեցաւ ազդմամբ հոգւոյն
իբրև արի նախամարտիկ 'ի վրէժ խնդրութի
փառաց որդւոյն այ̄, և ամենօրհնեալ մօր
նր̄ ածածնի։ Եւ առեալ 'ի ձեռս զհրաշա-
լի գրիչ իւր՝ գրեաց նախ թուղթ զգուշութե
առ միայնակեացս անապատի, յամօթ առնե-
լով զյետին մոլորութի չարին, և յանդիմանե
կացուցանելով 'ի գլուխ և 'ի հարց զուղղա-
փառ վրդպութի. շարագրեաց և երիս գիրս 'ի
ձև նամակի, զմին առ կայսրն Թէոդոս փոքր,
և

և առ վաղենտինոս ․ զեկղն առ եւդոքսիա թագուհի , և զերրդն առ պողքեր դշխոյ ․ բայց առանց յիշելոյ զանուն նեստորի , զի մի երևեսցի նախատինս դնել կայսեր՝ վն ընտրելոյ անխորհրդաբար զայնպիսի այր յառաջնորդութի հօտին քնի ։

Եհաս բանն և 'ի լսելիս երանելւոյն կեղեստինոսի հռովմայ հայրապետի ․ և նա գրեաց առ կիւրեղ՝ քննել ստուգութբ զիրսն, եթէ արդարև զայնպիսի մոլորութի չար սերմանեալ իցէ նեստորի , զորմէ փոքր մի յռջ գովութիս մեծամեծս խօսէին բզմք՝ հայեցեալք յարտաքին գնացս կեղծաւոր և խորամանկ օձին ։

Յայնժամ գրեաց երանելին կիւրեղ գիր ողոքական և խրատական առ նեստոր՝ միանգամ և երկիցս՝ հոգեշահ և ազդու բանիւք ։ Իսկ նր խցեալ զլսելիս իբրև առ ձայն թովչի ճարտարի՝ անսաստ գտաւ ամենևին , և յանդուգն պխնագրութբ՝ քերէր յանձնէ զկեղտ անուն մոլորութե , և զկիւրեղ արկանէր ը̃ ստգտանօք իբրև անգէտ գրոց վկյութե ։ Եւ եղև յետ բզմ հնարից՝ զոր հնարեցաւ իմաստունն կիւրեղ վն դարձի մոլորելոյն , իբրև ետես զնա յամառ 'ի խոտորնակ միտս, դեսպան արձակեաց 'ի հռովմ , և զեկոյց զամն կեղեստինոսի հայրապետին ։ Եւ նր ժողով արարեալ եպսօք իւրովք 'ի հռովմ՝ դատապարտեաց զմոլորութի նեստորի ․ և գրեաց թուղթս առ նեստոր և առ սբն կիւրեղ ․ զի թէ յետ աւուրց տասանց յռունե-

գալ 'ի կոչ ժողովոյն , որով կոչեցին զնա ե-
րիցս անգամ . մինչև զկնի կարևոր քննութեան
իբրև յայտնի ցուցաւ մոլորութիւն Նեստորի և
յամառութիւն , ընկեց զնա ժողովն 'ի պատ-
ուոյ եպիսկոպոսութեան և 'ի պաշտամանց քահանայութեան .
և հաստատեաց զուղղափառ դաւանութիւն հա-
ւատոյ՝ խոստովանելով զՏէր մեր Յիսուս Քրիստոս՝ միա-
ծին որդի Այ և որդի կուսին , մի որդի՝ ան-
բաժանելի միաւորութեամբ Աստուծոյ և մարդկութեան . և
զծնօղն նորա՝ Աստուածածին : Եւ եղև հանդէս
ցնծութեան 'ի քաղաքի անդ . զի բարձաւ չարն 'ի
միջոյ . և սուրբն կիւրեղ՝ որ ճանաչիւր գլուխ
ժողովոյն իբրև տեղակալ հռովմայ հայրա-
պետին , վասն և վերագոյն բազմեալ էր զդես-
պանս նորա , խօսեցաւ յատենի անդ ճառ-
սքանչելի 'ի ներբող ամենասուրբ Աստուածածնի , և
'ի ջախջախումն աղանդոյն Նեստորի . և ապա
գրեցաւ թուղթ ժողովական առ կայսրն և
առ ուխտ եկեղեցւոյն կոստանդնուպօլսոյ :
Իսկ Նեստոր քաղէ 'ի կողմն իւր ունէր զիշխա-
նաւորս և զպաշտօնեայս արքունի դրանն ,
զամենայն հնարս հնարեցաւ՝ զի մի հասցէ նամակ
ժողովոյն առ կայսրն :

Յայնժամ վայրի եհաս յեփեսոս յոհհան պատ-
րիարգն անտիոքայ՝ որ էր աշակերտակից
նեստորի . և լուեալ զդատապարտութիւն նորա՝
ծանրացաւումն եղև . և արարեալ ժողով
առանձին իւրովք գործակցօք՝ դատապար-
տեաց զսուրբն կիւրեղ իբրև ծայրայեղ խոտո-
րեալ յայլ մոլորութիւն . ընդ նմին և զմեմնոն եպիս
եփեսոսի՝ վասն տարածելոյ նորա զպատճէննորա

վիճս կիւրղի՝ որ ընդդէմ Նեստորի, և վն փա-
կերպ զեկեղեցիս քաղաքին ընդդէմ համա-
խոհիցն Նեստորի. և պատուիրեալ յԾածկան
բազում՝ սպառնայր զնոյն առնել և այլոց
եպսաց, եթէ չառնուցուն յանձն ունայնա-
ցուցանել զբանս կիւրղի : Իսկ սբ եպսունք
ժողովոյն արտաքսեցուցել զկիւրեղ և զմեմ-
նոն՝ նզովս եդին 'ի վերայ յովհաննու և զոր-
ծակցաց նր վն յանդգնութե նոցին :

Իբրև այս ամ խառնիխուռն համբաւով
հնչեաց յականջս կայսեր, համարեցաւ նա՝
եթէ և կիւրեղ և մեմնոն օրինօք դատա-
պարտեալ իցեն. քանզի այնպէս զգացուցին
նմ արքունականքն յովհաննու. վս յղեաց
պաշտօնէր 'ի ձեռն արքունի գործակալաց՝
հրատարակել զկիւրեղ և զմեմնոն ը Նես-
տորի խռովմբք պարտաւորեալս, և զերե-
սին զնս իբրև զխռովարարս խաղաղութե միութե-
նակ 'ի բանտս մատնել : Այլ իբրև 'ի վերայ
եհաս սուտն համբաւոյն, և գիտաց՝ եթէ
յանիրաւի բանտարգել արար զկիւրեղ և
զմեմնոն, յետս կոչեաց զառաջին հրաման
իւր. և 'ի գերև հանեալ զբանս ժողովակին
յովհաննու անախորժացելոյ, հրաման ետ փա-
կել զնեստոր 'ի վանս ուրեք անտիոքայ իւ-
րև 'ի դիպահոջ, մինչև զգաստասցի :

Այլ քանզի ժամանն Նեստոր ոչ դադարէր
նաև անդանօր սերմանել զորոմն չարութե
իւրոյ, արտաքսահման եղև 'ի յովասիս ա-
մայի վայր լիբիոյ. ուր որդնալից եղեալ
հայհոյիչ լեզուաւ՝ չարաչար սատակեցաւ.

և

և գրուածք նր̃ 'ի հուր այրեցան արքունի հրամանաւ . իսկ 'ի տեղի նորա ընտրեցաւ պատրիարգ կոստանդնուպօլսոյ մաքսիմիանոս անուն :

Նա իբրև այսու օրինակաւ խաղաղացաւ եկեղեցին ք̃րի, հասանէին այնուհետև նամականի գովուէ առ երանելին կիւրեղ 'ի կեղեստինոսէ հռովմայ հայրապետէ, և 'ի մաքսիմիանոսէ կոստանդնուպօլսոյ, և յայլոց աթոռոց, գովելով զնա սիւն հաւատոյն և խարիսխ ամրոյն եկեղեցւոյ ա̃ծյ, քաջ հովիւ և նահատակ առաքինի . որ անվեհեր արկ զանձն յամենայն վտանգս՝ առ 'ի պաշտպանելոյ ճշմարտութե̃ : Նա և ինքն իսկ կանխաւ առեր . ոչ տաց քուն աչաց իմոց, կամ՝ նինջ արտևանանց իմոց, և կամ՝ հանգիստ իրանաց իմոց, այլ մինչև 'ի մահ ճգնեցայց յայսմ՝ պտ̃րգմի՝ որ վս̃ հօտուց փրկութե . և փառս անձին համարեցայց մեռանիլ յայսպիսի մրցմունս . նմին իրի և տէր ինքնին յաջողեաց նմ̃ յաղթութի̃ 'ի գլուխ տանել զգործ մեծ և կարևոր :

Սակայն յովհան անտիոքացի տակաւին խռովր է կիւրղի . որոյ վս̃ և ոչ սակաւ գայթակղութի̃ լինէր յեկեղեցւոջ՝ ոմանց 'ի կիւրեղ յարելով, և այլոց 'ի յովհան, և ընդ ակամբ հայելով 'ի միմեանց վր̃, և խորշելով 'ի հաղորդութե̃ միմեանց . բայց մեծն կիւրեղ խոնարհութ̃ և երկայնմտութ̃ շահեցաւ զսիրտ յովհաննու . մինչև յետ բզ̃մ ամացից անցելոյ՝ գրեցին երկոքեան զիր զաւանութե̃ առ-

մե-

մխեանս, և ցուցան միաբան լինել 'ի Քրիս- մարմնովն . և այնմ հաստեցաւ հաշտութի և սէր 'ի միջի նց :

Բայց կրեաց երանելին կիւրեղ և զայլ բազում վիշտս 'ի սուտ եղբարց, որոց դժուարըմբռնելի էր խորհուրդ միաւորութե նր յանճառ խնդր մարդեղութե բանին այդ . մինչև գրեթէ զամ աւուրս իւր պարապել նմա ընդերանել զհկծկութս իւր, ուսուցանել զարդէտս, և առաւել ևս իմաստնացուցանել զիմաստուն կարծեցեալս՝ բազմապատիկ դըրուածս խրատք . յորս երևելի է գիրք պարապմանց նր յղթն խորհրդոյ մարդեղութե . և գիրք զանձուց ընդդէմ ազգի ազգի հերձուածոց . թող և զայլ բզմ ճառս նր և ըղթուղթս՝ լի իմաստութե և հաւատով, և զմեկնութիւս հին և նոր կտակարանաց լուսաւոր միութե :

Ոխնեցաւ մեծն կիւրեղ նաև ընդդէմ արբանեկացն թէոդորոսի մոպսուեստացւոյ վարդապետին նեստորի . զի սոքա իբրև ուսոյն՝ եթէ մերժեցաւ նեստոր և այրեցան գրուածք նր, սկսան 'ի մէջ առնուլ զգիրս վարդապետի նր թէոդորոսի, ոչ և զնորուն վարդապետի դիոդորի տարսոնացւոյ . որոց հաշակեալ էին անուանք առ բոլորս : Մեծն կիւրեղ յանդիման կացոյց, եթէ որպէս անձնայն փառասիրութե նեստորի և իբրև աղբիւր դառնութե է գործ մոպսուեստացւոյն : Իսկ վասն սոցին իրաց ընտանի թղթակցութ եղև 'ի մէջ սորին կիւրղի և սորին սահակայ պարթևի

հայ

Հայոց Հայրապետի, որ Հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ այսինքն Մեսրոպաւ, և բովանդակ ուխտիւ եկեղեցւոյն իւրոյ՝ գտաւ իբրև առաջին և գլխաւոր ջաղխիչ աղանդոյ մոպսուեստացւոյն և հետևողաց նորա ․ վասնորոյ և զայնու ժամու որք միանգամ թշնամիքն էին Կիւրղի՝ թշնամանէին և զՀայս ․ որպէս և բարեկամք Կիւրղի՝ սէր և ընտանութիւն մեծ ունէին ընդ Հայս ․ յորոց սակի էր և սուրբն Պրոկղ եպիսկոպոս Կիւզիկոյ՝ որ յետոյ եղև պատրիարգ Կոստանդնուպօլսոյ ։

Որդ՝ այսպիսի քրտնաջան աշխատութեան վասն եկեղեցւոյ, և համապատգորդեան ուղղութեան լցեալ երանելւոյն Կիւրղի զմեծահամբաւ վարուց իւրոց զընթացս՝ Հանգեաւ խաղաղութեամբ ՚ի Քրիստոս, և փոխեցաւ ՚ի կեանս սրբոց Հայրապետաց, յամի Տեառն իբր 444 ․ կացեալ ՚ի Հայրապետութեան աղեքսանդրու զամս լբ ․ և թաղեցաւ անդ յաղեքսանդրիա ՚ի շիրիմս Հայրապետաց ։ Այլ յետ ժամանակաց՝ պատուական մարմին նորա, կամ նշխարք ինչ յոսկերացն ասին բերեալ ՚ի Կոստանդնուպօլիս, և ամփոփեալ առընթեր նշխարաց սրբոյն Աթանասի ․ ուր և առանձին տօնախմբութիւն կատարի ամ ըստ ամէ ՚ի պատիւ երկոցունց տիեզերահռչակ սրբոց Հայրապետացս աղեքսանդրիոյ՝ (7) այսինքն Աթանասի և Կիւրղի, ՚ի յունվարի 18 ․ ըստ որոյ դնի և յիշատակ երկոցունց ՚ի մեր յայսմաւուրս ՚ի յունվարի 19 ․ կամ ըստ ոմանց՝ ՚ի 18 ․ համաձայն յունականին ․ և կատարի տօն նոցա միանգամայն ՚ի

միում

միում աւուր 'ի կարգի աստ ասպայից. Թող
զոր յոյնք կրկին և տօնեն զնա ուրոյն ուրոյն
'ի զնզն աւուրս. և զայն ևեթ կարգ պահեն
հռովմայեցիք ։ (8)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Ոչինչ ընդհատ յաճախասէ՝ նաև կիւրղի գործք յայտնի են յամ եկեղեցական մատենագրաց ժմկին, ոպ և յիւրոցն գրուածոց. վոյ և իբրև քաջայայտ ամցն՝ կարի համառօտ բանիւ խօսին ԾԱ. և Հ. Թող զի 'ի Հ, ըստ օրինակաց ինչ՝ առընթեր աճմանասի գնի ոչ միայն վարք կիւրղի աղեքսանդրացւոյ, այլև եւէմացւոյն. մինչև ոմանց թուղուլ զառաջինն, և զերկրորդն ևեթ գրել աստանօր 'ի յունվարի 19. և զի չէ այն տեղի նը, վոյ յաւելուն այլ օրինակք. * զնր (թ զերուսաղէ-
„ մացւոյն ) կատարեալ պատմուեն թէ կամիս՝ 'ի մար-
„ տի ժը գտցես և կարդա ||։ և թերևս ընդ ամսոյ սորա շփոթելով աստ 'ի ԾԱ. վն կիւրղի աղեքսա՞. * փոխեցաւ
„ առ ած, որ օր իը էր մարտի ամսոյ ||։ Միայն թէ և առ այլ վկայագիրս վէճ է վն աւուր փոխման կիւրղի աղեքս՞. զայս գիտեմք՝ ոպ և այլոց ծանուցաք, զի յոյնք երկիցս տօնեն զկիւրեղ. նախ՝ 'ի յունվր. 18. ը աճմանասի. որպէս է տեսանել 'ի Յ. բասիլ. և ժամագր. և երկրորդ՝ առանձինն. որ 'ի Յ. բասիլ. գնի՝ 'ի յունիսի 27. իսկ 'ի ժամագր. 'ի յունիսի. 9։ Այլ լատինք՝ որք ոչ տօնեն ը աճմանասի, զկիւրեղ առանձինն գնեն 'ի 28. յունվարի։ Իսկ զի ոմանք համարեցան՝ թէ փոխումն կիւրղի յաստեացս լեալ իցէ 'ի 9. յունիսի, ուր գնէ զնա առանձինն ժամագիրքն յունաց, և կոչէ զօրն զայն՝ օր զէննէօն, կն ( երկնաւոր ) ծննդեան նըյն, առ այս ասէ բոլլանդ. * Օր ծննդեան՝
„ 'ի յիշատակս նըց նշանակէ հասարակօրէն զհանդիսա-
„ ւոր պաշտօն նըյ ուրուք յայնմ աւուր. վոյ չունի ինչ
„ այնչափ հաւաստիս մակարերուեդ այդ ||։ Իսկ ինքն յաւելու, թէ * գուցէ 'ի սմին աւուր ( յորում տօնեն
„ լատինք ) 'ի 28 աւուր յունվարի՝ ամի տն 445, վախ-
„ ճանեալ իցէ, ցեղ զամս եպսուե լը ||. ոպ լրացեալ

ցու-

# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

## Գրիգորի ածաբանի՝ Նազիանզու եպսի ։

Հ. և Յ. յունուար. 25 ։ Լ. մայիս. 9. (1) ։ Ճառընտիր. Ա. ճյա = ճկդ ։ և Բ. ոխդ = ոծէ ։ Գրիգոր երէց յոյն ։ Սա էնուն Գր. ածաբ. յատենաւոր Վարս եւր, և յայլ գիրս ։ Ածանուան պատմիչ Փոխատր. Նշխ. սէջն ։ Բոլլանդեանն եաճեպ-րոց. 'ի Է հատ. մայիսի. երես. 369 = 459 ։ Բարոնիոս. և այլ հին և նոր եկեղեցական պատմիչք ։ (2)

ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԵՐՉՆ 'ի հարս, և գերագոյնն 'ի սր̃ վր̃դպս, սիւն հաստատութեան հաւատոյ, և պարծանք ուղղափառաց, Ա՛ծաբանն գրիգոր՝ էր յՅէն երկրորդ կապադովկիոյ, 'ի քաղաքէն Նազիանզու (3), որ և յառաջնոց դիոկեսարիա ասացեալ, ազգաւ յոյն՝ ծնեալ 'ի սկզբան Դ դարու ։ Մայր նր̃ էր քրիստոնեայ հաւատով և յոյժ բարեպաշտ (4). որում անունն կոչի 'ի յունաց Նոննա, և 'ի մեզ Նունէ. իսկ հայրն՝ որ նոյնպէս գրիգոր, կր̃ (առ որոշելոյ յորդւոյն) գրիգորիոս կոչեցաւ, էր յայլակրօնից անտի հեթանոսաց հելլենացւոց, յաղանդոյ այնոցիկ՝ որք ոչ այնչափ կռոց պաշտօն

մատուցանէին, քան որչափ մնոտիապաշտք էին. զի զայլ զիս և զպաշտամունս զոհից անգամնեալ՝ պատիւ տանէին կրակի և ջրագի, ճանաչելով և զմի ած. բարձրեալ. ուստի բարձրեալպաշտք ձայնէին. ունէին և խնչ խնչ յօրինականն աւանդից հրէից՝ պահելով զշաբաթս և զխտրանս խմն կերակրոց, բայց զթլփատութի խոտէին: Այսպիսի կրօնիւք վարեալ նր զամս բզմս՝ մինչև անցանել ի զյխնամեայ հասակաւ, յետոյ ուրեմն 'ի մերին տունչունէ ընկալաւ զնր. հաւատս քրիստոնէութե՛ ըստ այսմ օրինակի:

Մինչդեռ կէր նր բարեպաշտուհին նոննի անդադար աղօթիւք և արտասուօք խնդրէր յայ զդարձ առն իւրոյ, և հնազօր յորդոր լինէր նմ բանիւք հեզուէ, և տուեալ եւս բարի օրինակաւ վարուց իւրոց, առ փոքր փոքր վառեալ առն 'ի սէր և յրնտանութի քրնական հաւատոց՝ յաւուր միում տեսանէ տեսիլ զարմանալի. զի 'ի քուն գիշերոյ թուէր նմ երգել զայն տուն սաղմոսաց, * ուրախ եղէ ըն այնոսիկ՝ որք ասէին ցիս, 'ի տուն տն երթիցուք մեք ||. զոր չէր նր երբէք նուագեալ. և զոյգ ընդ բանիցն եռանդն անկանէր 'ի սիրտ նորա՝ դառնալ 'ի քրիստոնէութի: Նախերև զարթեաւ 'ի տեսլենէն, պատմեաց զայն կնոջ իւրում. և նոննեայ ուրախ լեալ մեծապէս՝ աղաչէր զնա թախանձանօք մի՛ անփոյթ առնել զկոչմանբն այ: Յայն խն հաստատեալ գրիգորիոսի՝ սկսաւ այնուհետև պատրաստել զանձն առ մկրտութի: Նէպ եղև

յա-

յաւուրսն յայնոսիկ գալ անցանել Ժ՟ ՔԴ՟ՔՆ
Նաղխանդայ՝ բազմաւ՟ եպ՟սաց ուղեւորելոց
'ի դաւանութեան սր՟ ժողովոյն Նիկիոյ . յորս
երևելի էր սր՟ն գևոնդիոս եպիսկոպոսն կե-
սարու , ընդ որոյ իշխանութ՟ էր և Նաղխանդ .
առ սոսա դիմեաց գրիգոր , և յայտ արար
զփափաքումն իւր առ սր՟ մկրտութին . և նոքա
ուրախ եղեն , և երախայացուցին զնա՝ զի
մկրտեսցեն : Հասին անդր 'ի նոյն աւուրս
և մերս արիստակէս երանելին , որ 'ի գի-
մաց սր՟ լուսաւորչին առաքիւր 'ի ժողովն ,
և մեծն յակոբ մծբնայ հայրապետ , և եւ-
թաղէ եպս եդեսիոյ , և յովհան եպս պար-
սից : Սոքա ամենին առաջնկաց գաւեալ հան-
դիսի մկրտութեն գրիգորիոսի՝ ասեսին , զի
իբրև ելնա 'ի ջրոյն՝ շուրջանակի լոյս փայ-
լատակեաց զնովաւ : (5)

Նա մեւս եւս այլ նշան բարեգուշակ պատա-
հէր 'ի տեղւոջն , զի 'ի կատարել անդ ըղ-
կարգ մկրտութ՟ , զոր գործակցութ՟ միմեանց
առնէին սր՟ն գեւոնդ , և եպսն Նաղխանդու՝
համդերձ առաջնկայ եպսօք , յեղակարծ իմն
յափշտակութ՟ ուշոյ սկսան ասել 'ի վ՟ր՟ Ն՟ր՟ և
զբանս պատշաճեալս առ ձեռնադրութի քա-
հանայութ՟ և եպսութ՟ . այլ իբրև յուշ եղե-
նոցա՝ զոր գործէին , ասեն ցմիմեանս , ոչ
վայրապար համարիմք՝ զոր յանդգնաս սխա-
լեցաք , այլ հաւաստի գուշակութի հասանե-
լոյ սորա յետ սակաւուց յաստիճան եպսա-
կան . որ և եղև իսկ . զի յետ իբրև երկուց
ամաց փախձանեցաւ եպս Նաղխանդացւոց ,

և ձեռնադրեցաւ փոխանակ նորա յեպիսկոպոսութիւն տեղւոյն 'ի նմին ժամանակեայ պատարագել սա ինքն գրիգորիոս՝ հայրն գրիգորի մծաւանի :

Իսկ ծնունդ մծաւանին գրիգորի եղև 'ի սկզբան քրիստոնէութեան հօր իւրոյ՝ այսպիսի ինն սքանչելեօք. մայր նր բարեպաշտ ամուլ խնդրէր յայ տալ նմ զաւակ արու, և նախքան զյղանալն խոստանայր տուողին տաքի մատուցանել, նուիրելով զնա 'ի պաշտօն տաճարի նն, և կամ յուխտ միայնակեցաց. և բազմամեայ ժամօք 'ի նոյն հայցուած դեգերեալ՝ տեսանէ երբեմն յանուրջս զմանուկն՝ զոր հանդերձեալ էր ծնանել, մինչև պայծառ ապանալ 'ի մտօ նր էր կերպարանայն և բոս առաքինազարդ բարեմասնութեցն. նոյնպէս և զանունն 'ի միտ առնոյր՝ գրիգոր լինել: Իսկ իբրև արդիւնքն էր տեսլեանն կատարեցան անվրէպ, և ածեալ մանուկն բարւոք խնդեամբ մծապաշտութե, յուշ արար նմ մայրն զուխտ իւր՝ որ վն նուիրելոյ զնա էր, և մանուկն գրիգոր իբրև զամիտ յօժարութբ յանձին կալաւ զիրսն. զի յամի հրու զանձն ընծայեր հոգեւոր խրատու քնաւէր ծնողին :

Իսկ մինչդեռ 'ի տիս էր տղայութե՝ տեսանէ յերազի զերկուս պարկեշտ կուսանս, որք կային առաջի նր լուռ՝ խնդրող զիմօք զաւս յերկիր կառուցեալ: Իսկ 'ի հարցանել գրիգորի զնո, ո՞ էք դուք. մին ասէ. մաքրութիւն եմ. և միւսն՝ պարկեշտութի. և յորդորէին

զնա

զնա նմանօղ լինել ինքեանց. զի մեք աստէն՝ սիրելիք եմք և ընտանիք Թագաւորին Երկնաւորի. և զորս մեզ նմանելին՝ լուսազգեստ զարդարեմք, և տարեալ կացուցանեմք առաջի աթոռոյ Աստուածութեան. և զայս ասացեալ՝ մեկնեցան 'ի տեսութենէ նր̃: Զարթուցեալ գրիգորի 'ի քնոյ անտի՝ 'ի միտ առնոյր զպատիւ հրեշտակական առաքինութեանս, և ցանկայր յանձին բերել զնոյն անթերի. և ընդ աճել հասակին՝ որչափ ինչ խորհուրդք նորա ջ լինէին նմ̃ ընդդէմ մաքրութե̃ և պարկեշտութե̃, զնոյն տեսանել յիշէր և անդորրանայր հոգւով: Եւ որ է զոր այնչափ քաղցրանայր նմ̃ առաքինութեն Ա̃ծյ, մինչև առ ոչինչ համարել զամենայն երկրաւոր վայելչութիւնս, և որպէս 'ի դառն գեղոց խորշիլ 'ի փափուկ կերակրոց և 'ի զգեստուց, և յամ̃ զուարճութե̃ց և 'ի զբօսանաց հասակակցաց իւրոց:

Եղև և այլ եղբայր գրիգորի կեսարիոս անուն, և քոյր մի նց̃՝ գորգոնիա կոչեցեալ, նոյնօրինակ սնեալք 'ի բարեպաշտութեան վարս (6). բայց գրիգոր գեր 'ի վերոյ գտանէր, և 'ի մատաղ հասակի անդ՝ սքանչելի օրինակ տայր նոցա առաքինասէր փութոյ և երկիւղածութե̃: Բազում անգամ տայր 'ի ձեռս գրիգորի մայրն բարեպաշտ զգիրս սր̃ս, և բացեալ զպատմութիւնս սր̃ նահապետաց՝ առաջի առնէր նմ̃ նմանօղ լինել ա̃ծահաճոյ գնացից նց̃. և այնպէս մանուկն գրիգոր վառէր հոգւով յուսումն ա̃ծայինն առաւից, և խելամուտ լինէր 'ի նոյնս, և 'ի նո-

սին զուարձանայր Տէրն ՚ի խրախունս կոչ-
նոց ։

Նա յորժամ եղև պատանեակ, եռայր հո-
գի նորա ՚ի նմ ուսանել զամ ներքին և ար-
տաքին իմաստութի․ և ոչ գտեալ զոք բաւա-
կան յիւրում քաղաքի, խորհեցաւ գնալ ՚ի
քաղաքս ականաւորս գիտութե ։ Այլ հաւա-
նեցուցեալ զծնօղսն իւր՝ եկաց զառաջինն ՚ի
կեսարիա կապադովկացւոց․ և յետ սակա-
ւուց Ճպհորդեալ քանի մի ուսումնակցօք ՚ի
կեսարիա պաղեստինոյ (?)․ և կացեալ անդ
առ ոսս թեոպեմպոսի մեծանուն հռե-
տորի՝ ՚ի սուղ ժամ ուսեալ զարդացաւ յոյժ
յուսմունս մակացութեց ։ Յետ այսորիկ յա-
ռաւելագոյն փութացեալ՝ փոխեցաւ յա-
ղեքսանդրիա եգիպտացւոց․ ուր առաւել
հռչակիւր դպրոց գիտութեց․ և յորժամ ան-
դանօր եւս մեղուաջան աշխատութբ բազում
մթերս իմաստից յանձին ամբարեաց, այ-
նուհետև տենչացաւ հասանել յաթէնս, որ
կոչիւր մայր իմաստութե և տեղի իմաստա-
սիրաց ։

Նա առ սաստիկ եռանդման հոգւոյն՝ ոչ սպա-
սեալ դիպօղ ժամու նաւարկութե, փութա-
ցաւ եմուտ ՚ի նաւ յաւուրս անբարեխառն
օդոց ( որ ամի՝ յամսեանն նոյեմբերի )․ և
ահա յանկարծակի յարեաւ մրրիկ մեծ ՚ի
ծովու, և նաւն ՚ի վտանգի կայր․ մինչև ամ
նաւորդաց անյոյս լինել ՚ի կենաց, և մեծա-
ձայն կոծել զկորուստ անձանց ։ Իսկ Գրի-
գոր քան ՚ի մահուանէ՝ ՚ի վտանգէ հոգւոյն

զան

զանգիտէր , մի՛ արդեօք առանց լուսացման մտ̃ աւազանին ելցէ 'ի կենցաղոյս . քն̃ի ըստ տարադէպ սովորուե̃ ժամկին՝ որ զօրացեալ էր առ ք̃մն , եդեալ էր 'ի մտի՝ յերկրաւորական տիւ ընդունել զմկրտութի̃ . վս̃յ յարտասուս ցնդեալ՝ ողբայր դառնագին անձամբ , և ասէր . մինչդեռ մնայի կենդանի ջրոյն , ժամանեաց ինձ ջուր մահաբեր . և առ տէր գոչէր . մի՛ ընկլցեն զիս պտոյտք ջուրց կորստական ծովու , մինչև է իմ լուսացեալ կենարար ջրով մտ̃ աւազանին : Եւ այնպիսի ձայն աղիողորմ յերկինս բարձրացուցանէր , մինչև նաւորդաց և նաւատեաց մոռացեալ զանձանց վտանգ՝ հարցանէին կարեկցութ̃ զպատճառս անչափ ողբոց գրիգորի : Եւ նա փնկ պխնւոյ առաւելոյր 'ի լալագին հեծեծանս՝ կարդալով առ նա , որ միայն կարողն է սքանչելագործել . և 'ի մաղթելն իւրում 'ի համար բերեալ զսքանչելիսն ո̃յ յեգիպտոս և 'ի ծովն կարմիր՝ ասէր . կարող ես տէր և այժմ , ով և կամիս՝ կեցուցանել : Այլ և ուխտս դնէր՝ ոչ ևս յապաղել զմկրտութի̃ն զկնի ազատանալոյն 'ի կորստենէն . նաև բոլորովին զինքն բոլորապտուղ ընծայել ապրեցուցանողին խոստանայր , մերկանալով յաշխ̃է , և մն̃ և եթ ծառայելով կրօնաւորութ̃՝ ա̃յ ուխտի մօրն իւրոյ :

Այս անցք աւելորդուե̃ յայտնեցաւ և ծնողաց գրիգորի 'ի տեսլեան . վս̃յ և նք̃ ուժգին զօշմամբ առ ա̃ծ կարդային . և լսելի

լինէր աղօթքն նոց և Գրիգորի ։ Եւ աչաւ տե-
սանէր մի ոմն ՚ի նաւավարաց՝ որ մնացեալ ոչ-
րեւ լինէր Գրիգորի, զի բարեպաշտուհին Նու-
նի մայր նորա միջամտեալ լեալ ՚ի ծով անդր՝
գնայր ՚ի վ՛ ջրոցն, և բուռն հարեալ զնա-
ւէն՝ հանէր ՚ի ցամաքն ։ Եւ իբրեւ պատմեաց
Գրիգորի՝ զոր եսեսն, անդէն փաղփաղակի
տեսիլն արդիւնանայր (8) ։ Մս զի յանակն-
կալ պահու հանդարտեաց ծովն, և հասին
խաղաղութ՛ ՚ի հեռաւոր կղզի ։ Զոր տեսեալ
անհաւատիցն՝ որք կային ՚ի նաւի անդ, խոս-
տովան լինէին՝ թէ միայն մեծն քրիստոնէից
է փրկիչ և օգնական որոց կարդան առ նա ։
Եւ ոչ սակաւք ՚ի նոցանէ հաւատացին ՚ի ք՛ս ։
Յետ այսորիկ յաջողակ հողմով նաւարկեալ
Գրիգորի՝ եկն եհաս յաթէնս ։ Եւ իսկ և իսկ
անդ յայն փափագմամբ առեալ զանձն յիմաս-
տասիրական ուսմունս՝ վարժեցաւ յամ՛ հրա-
հանգս աթենացւոց, արարեալ անդ ամս
բազմս ։ Եւ յորժամ Գրիգոր յաթէնս էր, եկն
անդր և Բարսեղ կեսարացին յետ շրջելոյ ՚ի
բիւզանդիոն և յայլ քաղաքս նովին փութով
ուսումնասիրութե ։ Եւ եղեն երկոքեանն մի
սիրտ և մի ոգի՝ հաղակիցք միմեանց և բնա-
կակիցք ։ Եւ ձեռնտուութ՛ իւրեանց քաջ ու-
սան զամ՛ հանճարս իմաստութե արտաքնոց ։
Եւ որ մեծն է՝ յորդոր և օրինակ լինէին այլ
ընկերի իւրում՝ յառաջադէմ գտանիլ յած-
պաշտութե քան յընթացս ուսմանն, ժուժկա-
լեալք ՚ի պահս և յաղօթս իբրեւ ՚ի կրօնս
միակեցութե, և կրթեալք յանարատ քղքա-

վա-

վարուն՝ ընթերցուածովք սուրբ գրոց . մինչ զի ուսանելասէրք և զարմանալիք էին ամ՟ աթենացւոց . և ել համբաւ իմաստութե՟ և առաքինութե՟ նց՟ ը՟ ամ՟ եկեղեցի և 'ի վայրս հեռաւորս . և աւելին , թէ ոչ յարեաւ ոք յաթէնս նման գրիգորի և բասիլիոսի՝ կատարեալ առաքինութ՟ զոյգ ընդ կատարեալ գիտութե ։

Ընդ աւուրսն ը՟ այնոսիկ՝ յամի տն՟ 354 , կամ 355 , եկն յաթէնս իբրև ուսանելոյ աղագաւ և յուլիանոս եղբօրորդի մեծին կոստանդիանոսի , երիտասարդ ստահակ և չարանենգ . զորոյ զգնացս և զբարս տեսեալ գրիգորի՝ գուշակելով լինել կասկածէր զչարեացն , զոր արար նա զկնի սակաւուց 'ի թագաւորել իւրում . մինչև ասել առանձինն 'ի լուր այլոց ուսումնակցաց . բայց զո՞րպիսի չար կորիւն սնուցանէ ինքնակալութի հռովմայեցւոց . այլ տացէ տր՝ զի 'ի սուտ ելանիցեն բանք բերանոյ իմոյ ։

Յետ այսորիկ ( յամի 355 կամ 356 ) խորհեցաւ բարսեղ ելանել յաթենայ . զի ոչ ոպ՟ կարծէր՝ եգիտ զաթէնս , և ոչ լցաւ ծարաւ նորա առ կատարեալ իմաստութի ։ Իսկ տխրեցաւ յոյժ գրիգոր ընդ մեկնիլն նր՟ 'ի նմէ . և բազմօք ջանացաւ խափանել զնա , և ոչ կարաց . ապա եդին բանս 'ի միջի , և ձեռն ետուն միմեանց , զի 'ի դէպ ժամու գտցեն այր զընկեր իւր , և միաբան հրաժարեալ յաշխէ՝ զառանձնական վարեսցեն կեանս 'ի պաշտօնն այ՟ ըստ օրինակի միայնակեցաց ա-

նա

նապատի ։ Եւ ընդ նմին յետ բաժանելոյ 'ի միմեանց՝ զօր նոր յիշեսցին հաւաքանօք զմիմեանս . մինչև չհանդուրժել գրիգորի՝ խառհեր փաղփաղակի հասանել զկնի բարոզի ։

Զայն իմացեալ աթենացւոց և այլոց ուսումնակցաց գրիգորի՝ աղաչէին զնա բազում թախանձանօք կալ մնալ առ նո . զի ցանկալի էր ամեցն վայելել յիմաստութ նորա և 'ի հրեշտակային քղ բարեպաշտութե . և կամելով խափան լինել նմա՝ բռնադատեցին զնա բազում անգամ ընդունել զաթոռ իմաստութեան աթենացւոց , և լինել վրդպ արհապադին . Տեսեալ գրիգորի՝ թէ ոչ թողուն զնա երթալ , լռեալ առ ժամ մի . և ապա յետ բազում աւուրց պատճառանօք խոյս ետ յաթենայ , և գնեաց ընդ ցամաք 'ի կոստանդինուպօլիս . ուր եգիտ և զկեսարիոս զեղբայր իւր՝ այն ինչ եկեալ յաղեքսանդրիոյ , ուր կացեալ էր նա 'ի հրահանգս ուսման ։

Եւ ապա ընդ թախանձանաց ծնողացն դեռ եղեալ գնաց 'ի հայրենի քաղաք իւր 'ի նազիանզ . և անդ՝ ոմն կարծի , զառաջինն ընկալեալ զմկրտութի 'ի հօրէն իւրմէ 'ի գրիգորիոսէ եպիս (?) , և որոշեալ զինքն 'ի քաղաքային իրաց՝ յանապատ փութայր ։ Բայց ծնողքն նր փութով դարձուցին զնա , և ոչ թողլ եւոււն նմա առ ժամն մեկնիլ 'ի նոցէ . ոմն և ոչ բարուղի՝ իւրքն ։ Եւ այսու օրինակաւ արգելեալ գրիգորի 'ի տան՝ դարմանէր զպէտս ծնողաց իւրոց 'ի ծերութե նց , մանաւանդ անդուլ պարապեալ հոգևոր մա-

զիս և մերձաւորութե զրոց . մինչև զարմանալ ամն՝ որք տեսանէին զնա . զի ընդ կարևոր զբաղմանցն վասն սան հօր իւրոյ՝ ունէր և զկատարեալ հանդարտութի միայնակեցաց . երևէր՝ ի մէջ մրկան բնակեալ, այլ քաղաքավարութի նր յերկիւղ էր . քզի և ուխտ եդեալ էր անձին իւրում՝ ամ ուրեք իբրև յանապատի կեալ, և յամի նախապատիւ առնել զսկիզբն հոգւոյ ք զմարմնոյ . զգուշ- կալ անձին յամ պատրանաց ծխի, և հանապազ զմեղսն խորհել . ոչ խօսել ինչ բան դատարկ, ոչ երդնուլ՝ և ոչ զոք երդմնեցուցանել . և ոչ կալ երբեք անգործ, այլ զցայգ և զցերեկ դեգերիլ յածաշունչ գիրս : Այսպիսի քղք քաղաքավարութբ բոլորովին ը ած միացեալ՝ բզմ անգամ տեսանէր յայտնապէս ՚ի տեսլեան գիշերոյ զՔս, և ամծախօս լինէր ը նմա ընտանեբար :

Ո այնու ժամու զօրացեալ էին արիանոսք՝ ՚ի թգւորութե կոստանդեայ որդւոյ կոստանդիանոսի . այլ բազմօք զինեցաւ ը դէմ նոցա հայրն գրիգորի գրիգորիոս եպս նազիանզու՝ օգնականութի գտեալ յորդւոյ իւրմէ . որ կատարեալ իմաստութբ ըն այս և ճշմարիտ ածաբանութբ յաղթահարէր և դարձուցանէր զմոլորեալսն : Տեսեալ արիանոսաց՝ եթէ յանդիմանի յուղղափառաց մոլորութի իւրեանց, հնարեցան պատրանօք որսալ զբզմս ՚ի ագէտաց և ՚ի գիտնոց՝ ՚ի ձեռն փոփոխութե տառի միոյ . քզի պատճառելով՝ թէ ամ խառնուի է մի ձայնիս օմօուսիօն, որ է համա-

գոյ, մածին 'ի տեղի նոր գձայնոյ օծիւսիծն, այն է նմանապղոյ. զի սա ասեն՝ նմին է ըստու-նելի, և առիթ խաղաղութե ։ Ս. յաղթին հնարիւք ժողով սպառեալ 'ի սելեւկիա և յարե-մինա՝ աղաւաղեցին զնիկիական սահման նը-հաւատոյ · և մանուճածոյ բանիւք միաձայն նմին ցուցեալ առ արտաքս զդաւանութիւն իւրեանց՝ հրամանաւ կայսեր հարկեցուցին զըզմն յեպսպաց ձեռն գնել ձախողակի վճռոյ ժողովոց իւրեանց. զոր և արարին իսկ երեւե-լի երեւելի անձինք ոչ սակաւ՝ ոչ զխնելով զդաւանձնանուի այլափառաց · 'ի նոյն պատ-ճառս ըմբռնեցաւ և զկիւրղոս հայրն զրի-գորի, և ձեռնադրեաց վճռոյն արիմինոյ ՅԹ կաւն ինքնակալին ։

Օ այն տեսեալ ժառանգաւորաց եկեղեց-ւոյն նազիանզու՝ մերձակայ միայնակեցօք հանդերձ, խորշեցան և 'ի բաց կացին 'ի հա-ղորդութե հաւուլին իւրեանց՝ ըմբռնելոյ 'ի թակարդս արիանոսաց ։ Նա ինքն իսկ զրի-գոր ծանծկեցաւ առ ժամ մի 'ի տեսութե հօրն՝ ստարութի ցուցանելով առ նա փառն բանին այնորիկ · և սոյա ազգի ազգի հնարիւք հո-գացաւ անդրէն 'ի ձիդ ճշմարտութե դար-ձուցանել զծերունի ծնօղն, և զաստուա-ցեալն 'ի նմէ միւսանգամ միաբանել ընդ նմ · քզի 'ի լինել ծանր խնդրոց և երկպա-ռակութեց՝ ԶԷ մէջ մնեալ աքանչելին զրիգոր զարդարեալն ամ իմաստութ և առաքինութ, շահեցաւ զհովիւն և զհօտն միանգամայն · զի զհայրն զերծոյց 'ի պատրանաց դաւանա-

նո-

նոցա , և զժողովուրդ նորա հաշտեցոյց ընդ նմա . և զնոսին հաստատեաց յուղղափառ դաւանութեն Նիկիական հաւատոյ՝ հնազօրեալ վճարութբ ամենայն բերքանցն : Եւ էին բանք նորա այնչափ վսեմ և խորին՝ միանգամայն և ճարտար և վայելուչ , մինչև յինքն ձգել զամ բերելս , և հաւանեցուցանել զամ անհաւանս :

Եւ եղև ի թագելն յուլիանոսի ուրացողի՝ պատուիրեաց ի նմա կեսարիոս եղբայրն գրիգորի , ամբարձեալ յերևելի աւագանի յարքունի դրան . զոր խորև լու երանելին գրիգոր , գրեաց առ եղբայր իւր խրատ յանդիմանադարկանն՝ զգուշացուցանելով զնա ի թունից չար վիշապին : Եւ նորա ունկնդիր եղեն ազդու և օգտակար բանից հարազատին իւրոյ՝ ինքնակամ հրաժարեցաւ ի պատուոյն , և աճապարեալ դարձ առաւ ի հայրենիս իւր : Ընդ որ ուրախ եղև յոյժ գրիգոր . և առաւել՝ զի այնուհետև ի զարմանել կեսարիոսի զառն հօր իւրոյ՝ դիւրին լինէր նմա փախել յառանձնութ առ մտերիմն իւր բասիլիոս :

Եւ այն ինչ պատրաստէր զանձն եւլանել ի տանէ հօր իւրոյ , բռնադատեաց զնա հայրն և ծերունազարդեաց քահանայ . զի լիցի ինքեան օգնական ի ծերութեան ի պէտս եկեղեցւոյ(10) : Ըստ նմին օրինակի և բարսեղ բռնադատեալ յիւրոցն՝ օծաւ ի քհյ . նմին իրի գրէ առ նա գրիգոր . ո՞չ դու՝ նոյնպէս և ես , միօրինակ ըմբռնեցաք երկոքին : Իսկ յետ սակաւուց

’ի

'ի լինել իւրեք գժտութե 'ի մէջ Եւսեբիոսի եպսին կեսարու կապադովկացւոց եւ 'ի մէջ բարսղի, խոյս ետ բարսեղ 'ի ցանկալին իւր առանձնութի անապատի։ Զայն լուեալ գրի-գորի՝ եկաւ հաշտուէ 'ի մէջ նց գրով, զոր գրեաց առ երկոսեանն. եւ ապա փութացաւ եւ ինքն գնալ առ բարսեղ յանապատ։ Բայց քզի խափան եղեն նմ ծանր խօթութիք հօրն եւ մօրն մինչեւ 'ի դրունս մահու, յաղօթս ե-ղեւ ապաստան, եւ ընկալաւ յոյժ զառողջութի նց. եւ այնպէս յաջողեցաւ նմ երթալ առ բարսեղ 'ի կողմանս պոնտոսի՝ իբր խոյս տա-լով 'ի տանէ հօր իւրոյ։

Յայնժամ ապա զոր առ միմեանս պաշնաւո-րեալ էին, 'ի վար արկանէին զառաքինութեն զփարս. եւ միով հոգւով նահատակեցին յան-ձին կրէին զկատարելութե վարս կրօնա-ւորական հանդիսիւք, պահօք եւ աղօթիւք հանդերձ, հանդարտեալ յառանձին սե-նեակս՝ ոչինչ հեռի 'ի միմեանց. եւ բզմ այն էր՝ զի 'ի միասին խմաստասիրէին ճառս բզմս 'ի վր քրիստոնէական հաւատոց եւ ամբիծ քրքանայութե։ Եւ ասէր երանելին գրիգոր. խնդամ մեծապէս, զի ոչ յայլ ինչ եղեն իմծ զխոսանացս իմաստք աթենացւոց, բայց միայն առ արհամարհել զնոսին, եւ 'ի միա-սնուլ զքաղցրութիւն ճաշակաց ամենեցն մեղպութե. զի քաղցր են 'ի բերան իմ բանք տն. ք զմեղր խորիսխ. եւ 'ի ձեռն ամծայնին առ-ւելս զփորձ առ ի մտաւի խաբէութեց երկրա-ւոր իմաստութե. որ արտաքոյ երեւի պաճու-

ճան

Ճանօք բանից լինել ինչ , այլ արդեամբք պակասեալ գտանի : Իսկ եղեւ յորժամ կու-չէին զբարբառ Թախանձանօք ծանօթք նորա 'ի կեսարիա , գրեաց նա զկնի առ նոսա , եւ ա-սէ : զիա՞րդ զոր յետ բազում աշխատութեանց հա-զիւ ստացաք զփափաքելին մեր առանձնութիւն , 'ի բաց Թողլից վաղվաղակի : Ներեցէք ինձ աղաչեմ՝ վայելել առ ժամ մի 'ի բարեմաս-նութեան , որում հանդիպեցայ , զանել ջրհոր խոր կենդանի ջրոյ՝ զանօթն ընտրութեան , զե-րանաշնորհ անձն , զԳրիգոր ասեմ զեղբայրն քո :

Ընդ յանապատի գրեաց Գրիգոր զԳիրս յան-դիմանութեան առ ուրացողն Յուլիանոս , որոյ արգելեալ էր մանկանց քրիստոնէից , զի թէ ոչ դարձցին յօրէնս հեթանոսութեան՝ մի՛ ուսա-նիցին զիմաստութիւն արտաքին գրոց : քանզի ա-սէր , թէ զխոցեն զիւրեանցն : Եւ երբ ուսա-նին եւ զմեզ՝ երկոքումբք մարտնչին ընդ մեզ : Որում յայտնի կացոյց Գրիգոր , թէ չունին ինչ պէտս արտաքնոցն իմաստութեան հաւատա-ցեալքն քրիստոսի . եւ վասն այսր իսկ յօրինեաց ինքն Ճառս յոլովս ոտիմաստ հանճարով , եւ բանս իմաստասիրականս եւ տաղաչափութիւս պէս-պէս . եւ զայնս տայր ուսուցանել որդւոց քրիստոնէից . որովք առաւել հմտանային՝ քան թէ գրովքն արտաքնոց : Մինչեւ տեսեալ յուլիանոսի՝ թէ ոչինչ օգտեցաւ , ունայնա-ցոյց զառաջին հրաման իւր . քանզի յոյժ վեհա-գոյն տեսանէր զԳրիգորի հանճարագրու-թիւն քան զիմաստնոցն հելլենացւոց . եւ որ

մեծն

մեծն է՝ քաջ ցուցեալ էր գրիգորի, թէ առ-
ատքին գիտութիւք առանց միաբանելոյ ընդ
ա̄ծային տաւիղ՝ սուտ էր եւ գլխոյն անման
՚ի լուսոյ, եւ լի շաղփաղփութ̄ :

Յետ այսորիկ էր զի դառնայր գրիգոր ՚ի նազիանզ քղ̄ք իւր ՚ի թախանձանաց ծերունի ծնողացն, եւ էր զի յանապատն փութայր ի̄ բարսղի : Բայց յորժամ թ̄գ̄լեաց վաղէս արիոսեան, եւ միանգամ հերձկուն առին արիանոսք, առիպաւ կոչեաց հայրն գրիգորի զորդի իւր առ ինքն. եւ այնպէս հարկաւորեալ դարձ արար յանապատէ, եւ նպաստ մեծ եղեւ եկեղեցւոյ : Գուն գործեաց եւ՝ զի եւ բարսեղ իջցէ յանապատէ ՚ի կեսարիա՝ լինել ձեռնտու ուղղափառացն դասու. դրեաց եւ առ եղբայր նո̄ գրիգոր նիւսացի՝ որ յայնժամ յուսմունս արտաքին զպրուէ̄ց զեղեբէր, թողուլ զերկրաւոր իմաստութ̄, եւ ա̄ծային գիտութեանց ուշ ունել. եւ նովին անհետ առնել ՚ի միջոյ հ̄ւտացելոց զհերձուածողացն սերմանս : Եւ եղեն յայնժամ երեքին ոք իբրեւ եռալուսեան ջահս ՚ի լուսաւորութ̄ եկեղեցւոյ : Այլեւ հանդերձ այսու ձգամբք զօր ձգնէին վ̄ս օգտի եկեղեցւոյ, ոչ վերջանային գրիգոր եւ բարսեղ յաւանձնաւորութ̄ իւրեանց. զի սակաւ սակաւ ՚ի մերձակայ շէնս միայնացեալ՝ տային զանձինս ՚ի խստակրօն վարս, եւ յա̄ծային խոկմունս. եւ ըստ կարեւոր պիտոյից եկեղեցւոյ՝ դառնային այց առնէին քղ̄քաց իւրեանց :

Եւ իբրեւ մեռաւ կեսարիոս եղբայրն գրի-

գորի , պատուեաց զնա ճառաբանն ներբողա-
կան ճառիւք , վկայելով զնմանէ՝ թէ բազում ան-
գամ տեսի 'ի տեսլեան զհոգի նորա զուարթ
ելուսափայլ . նոյնպէս ներբողեաց և զպարե-
պաշտ քոյր իւր զԳորգոնիա 'ի վախճանիլ նո-
րուն ։ Եւ յայնմհետէ հարկ եղև Գրիգորի
'ի տան դադարել . զի և ծնօղք նորա ծե-
րացեալ էին յոյժ . և եղև հովաբարձու ե-
կեղեցւոյն Նազիանզու 'ի տեղի հօր իւրոյ ,
որ էր իբրև Ղ ամաց ։

Ընդ այն ժամս եհաս վախճան Եւսեբեայ
եպիսկոպոսին կեսարու կապադովկացւոց . և
յաջորդեաց յաթոռ նորա երանելին Բարսեղ՝
ձեռնադրեալ 'ի հօրէն Գրիգորի ճառաբանի .
և այս առաւել 'ի ձեռն ջանից Գրիգորի , որ
գիտէր զառաքինութիւն Բարսղի , և ճանաչէր
զնա մի միայն արժանաւոր այնմ աթոռոյ ,
և քաջ ախոյեան ընդդէմ աղանդաւորաց
ժամկին ։ Եւ այնուհետև սովոր կոչէր սուրբն
Բարսեղ զճառաբանն Գրիգոր առ ինքն՝ լինել
նմա օգնական յամս պէտս եկեղեցւոյ . Քանզի
ասէ և լոկ առաջիկայութիւն քո բաւական է 'ի
յաղթահարել զթշնամիս հաւատոյ . և այն-
պէս լինէր նմա ձեռնտու 'ի բազում գործս բա-
րեկարգութեանց , որպէս և 'ի դարմանս աղքատաց .
մինչև տալ շինել հոգետունս և հիւանդա-
նոցս և հիւրանոցս . և գրել ևս ճառս աղ-
քատսիրութեան ։

Յետ սակաւուց 'ի լինել խռովութեանց 'ի վի-
ճակին Բարսղի յերևաց իշխանասէր ան-
ձանց՝ հարկեցաւ նա բաժանեցուցանել և ևս

զեպիսկոպոսարանս. և բռնադատէին նաև զԳրիգոր՝ կամէր ձեռնադրել զնա եպիսկոպոս Սասիմայ, զի մարթասցի տիրապէս հովուել զժողովուրդս Աստուածաբան վարդապետութեամբ իւրով: Իսկ Գրիգոր՝ ի բաց հրաժարէր՝ առ ՚ի չզրկելոյ յառանձնութենէ և ՚ի հոգեպարար անդորրոս կենաց. քանզի և տեղին այն լի էր խուժանօք Արիական իւրոց. թող զի տեսանէր և՝ զի բազմապատիկ բանք անկան ՚ի ժողովրդեան ՚ի ձեռն յաչաղկոտաց, որք բանսարկութեամբ աղանդաւորաց բամբասէին զբարեկամութիւն երկոցունց նոցա ընդ միմեանս. մինչև փոքր մի ևս զժտութի արկանել ՚ի մէջ նոցա զկռուիլն: Իսկ սրբոյն Բարսղի առ ոչինչ գրեալ զնոցա ընդդիմութիւն՝ փութացաւ եկն անձամբ ՚ի Նազիանզ, և անդ ձեռնադրեաց զԳրիգոր յեպիսկոպոսութիւն քաղաքին Սասիմայ:

Այլ ՚ի յառնել շփոթից յերեսաց թշնամեաց՝ որք ոչ թողացուցանէին Գրիգորի վարել համարձակ զպաշտօնն, զոր առ հարկի ընկալեալ, ոչ կամեցաւ նստիլ յայն աթոռ, այլ ինքնակամ դարձաւ ՚ի տեղի իւր՝ ՚ի խնդիր լինելով վարուց միայնութեան: Յայնժամ բռնադատեաց զնա հայր նորա ծերունին՝ ընդունել զիւրոյին աթոռն Նազիանզու. զի ոչ ևս էր ինքն կարող հովուել հօտին: Իսկ երանելին Գրիգոր թէպէտև բազմօք ընդդէմ դարձաւ, բայց յաղթեալ ՚ի հնազանդութենէ՝ յանձին կալաւ իբրև գործակից ևեթ հօրն. և այն՝ այսու պայմանաւ, զի զկնի հօրն վախճանի՝ մի՛ ստիպեսցեն զնա կալ մնալ յայն ա-

ւթոռ, այլ՝ թոյլ տացեն նմա առանձնա-
նալ ընդ փափաքանաց իւրոց ։

Յետ այսորիկ իբրեւ փոխեցաւ ՚ի կենաց եր-
ջանիկ հայրն նր ծերունին գրիգորիս եպս
նազիանզացւոց, յամի տն իբր 373, ուսինչ պա-
կաս ՚ի հարիւրամենից, զկնի վարելոյ զե-
պիսկոպոսն ամս խե կամ խէ, պատուեաց զնա
սբն գրիգոր արժանաւոր ճառիւ յառաջի-
կայութե մեծին բարսղի, զսկիզբն բանից առ
նա ինքն առ բարսեղ ուղղեալ. ուրանօր մե-
ծամեծս եւ զարմանալիս խօսի զառաքինու-
թեց հօրն. եւ զի կենդանի էր տակաւին բա-
րեպաշտուհի մայրն նոնի, զնա եւս արժա-
նաւոր գովասանեաց անդանօր եւ մխիթարեաց ։
Եւ զկնի սակաւուց ՚ի վախճանիլ նաեւ մօրն,
աղաչեցաւ այնուհետեւ երանելոյն գրի-
գորի յամ հօտոց, յայտ արար նազիանզաց-
ւոց՝ թէ ես ոչ եմ ձեր եպս, եւ չեմ կամեր
ընդ հովուութե իւրք եկեղեցւոյ. ընտրեցէք
ձեզ հովիւ զոք, եւ զիս ազատ կացուցէք ։
Բայց նոքա՝ զի ոչ թողուն զնա քղքացիքն
եւ առաջնորդք մերձակայ գաւառաց. քղի
պատճառանօք ընտրելոյ զայլ ոք՝ աղաչէին
կալ այլ եւս ժմկ ինչ. այլ այն կամք էին նց,
զի ոչ զոք ընտրեսցեն, եւ նա միշտ մնասցէ.
յայնժամ խոյս ետ լռելեայն ՚ի նազիան-
զայ, եւ անկաւ ՚ի սելեւկիա իսաւրացւոց. ուր
դադարեաց ՚ի վանս եկեղեցւոյ սրբուհւոյն
թեկղի, կացեալ ՚ի լռութե ոչ սակաւ ժմկս.
մինչեւ դիցեն առն զոք եպս նազիանզու, եւ
ապա դարձայց ՚ի տեղի իւր ։ Յետին ամք իւ-

րեւ հինգ, եւ ոչ եղեն նաւախանգացիք զոք ի-
րեանց եպս. մինչեւ սկսան ոմանք յառաջ-
նորդաց մեղադիր լինել գրիգորի՝ եթէ ն̄ղ
թողու զհօտն անտէրունչ. վ̄յ հարկեցաւ
դարձ առնել անդրէն 'ի նաւախանգ (յամի
378, կա՛մ 379), եւ ինքնին հովուել զժ̄ղվրդն։
Բայց սակայն պնդէր, թէ ես չեմ եպս տեղ-
ւոյս. ընտրեցէք ձեզ զոք հովիւ։

Յայնմ ժամի հիւանդացաւ երանելին յերե-
սաց ծանր վաստակոց եւ ճգնութեց. եւ յայն-
պիսի ներքուստ միջի լռաւ զփոխումն 'ի կե-
նաց զմէջն բարւոյ կեսարու հայրապետին,
եւ ընկղմեցաւ 'ի խոր տրտմութի. այլ յայսմ
ամի վ̄ր գրեաց գիր մխիթարական առ եղ-
բայր ն̄ր գրիգոր նիւսացի. եւ իբրեւ փոքր մի
թեթեւացաւ 'ի խօթութէ, յօրինեաց զարձա-
նական բարւոյն՝ նկարագրելով զնախանձե-
լի վարս սրբոյն ն̄ր. զոր եւ ը̄ խրատմն վկայ-
ելոյ՝ բ̄ղմ անգամ տեսանէր 'ի տեսլեան գի-
շերոյ, եւ ը̄ունէր 'ի նմէ ազդարարութի եւ քա-
ջալերութի՝ արիաբար կալ 'ի պաշտաման ի-
րում, եւ մի վերջանալ 'ի վաստակոց, որ վ̄ս
օգտի եկեղեցւոյ։

Յաւուրսն յայնոսիկ եղեւ ժողով եպկոպաց
յանտիոք՝ վ̄ս դատելոյ հնարս խաղաղութե
եկեղեցւոյ, եւ կարգելոյ ուղղափառ հովիւս
յիւրաքանչիւր եկեղեցիս, զի մի իսպառ զօ-
րացին արիանոսք։ Կոչեցին հարք ժողովոյն
նամակ եւ առ երանելին գրիգոր նազիանզա-
ցի՝ հրամայելով նմ̄ առանց ը̄ բանս ինչ ա-
ծելոյ երթալ 'ի թ̄դրական քղքն 'ի կոստան-

դե-

գինուպօլիս , և առաջնորդել ժողովրդեան ուղղափառաց . զի անդ առաւել զօրացեալ էին արիանոսք , և բազմացեալ ազգք ազգք հերեսիովտաց . և վտանգ մեծ էր եկեղեցւոյն . և ոչ ոք համարձակէր լինել բաւական 'ի յաղթահարել զչարափառս , և հաստատուն պահել զուղղափառս 'ի Ճշմարիտ վպուն բաց յերանելւոյն գրիգորէ . որոյ անուն իմաստուն և սրբուն հռչակեալ էր ընդ ամ տեղիս : Յայնժամ յակամայ կամս բռնադատեալ երանելւոյն 'ի հարկեցուցիչ հրամանաց հարցն , և 'ի կարևոր օգտէ հաւատացելոց , եւ գնաց 'ի կոստանդնուպօլիս՝ յամի տն 379 , 'ի Ժմկին՝ յորում մեռաւ վաղէս արիանեան կայսր , և ընտրեցաւ 'ի կայսերուն մեծն Թէոդոս բարեպաշտ (11) :

Իսկ եկեալ 'ի հասանել գրիգորի 'ի Թգրական քղքն՝ քղի չև էր եկեալ անդր Թէոդոս արքայ , ոչինչ զօրեաց հրապարակաւ յայտնել զանձն . զի ոչ Թողուին նմ արիանոսք , որոց տիրեալ էր եկեղեցւոյն յաւուրց անտի վաղեսի , և կոստանդեայ իսկ . վյ եկն իջևանեցաւ 'ի տան միում առ ծանօթս իւր . ուր ժողովէին առ նա ուղղափառք իբրև 'ի ծածուկ՝ լսել զքարոզութի նր : Իսկ յայնմ հետէ եղև տեղին այն իբր ժողովեալ և աղօԹարան ուղղափառաց , և տիրապէս տեղի վերականգնելոյ ուղղափառութեն՝ որ ողջ կործան անկեալ Թուէր . ուստի և տեղին կոչեցաւ անաստասիա , որ Թարգմանի յարութի . ուր և յետոյ եկեղեցի շինեցաւ վայելուչ ,

և անդ եղան նշխարք սրբուհւոյն անաստա-
սիայ (12) ։

Այլ թէպէտ տեղի քաղաքումն մերն էր այս-
պիսի՝ անշուք և անծանօթ կարծեցեալ ,
բայց յորմէ հետէ եմուտ անդր երանելին ,
ծաղկեցաւ 'ի քղքի անդ ուղղափառութի , և
բեկաւ զօրութի այլափառաց ․ մինչև լինել բա-
նի գրոյն , եթէ տունն դաւթի երթալով եր-
թայր և զօրանայր , և տունն սաւուղայ եր-
թայր 'ի նուաղումն ։ Ընդ հանդիսացոյց ե-
րանելին գրիգոր զածածիր պարգև հրաշա-
լի ածաբանութե իւրոյ ․ քղի զօր ամ վճարէր
ժողովելոցն առ հնորկ զհրաշափառ խորհրդոյ
համագոյ և միասնական սբ երրորդութե , և
զանճառ տնօրէնութէ միածնին՝ խորհմաց և
ազդու բանիւք ․ զածութի բանին՝ ընդդէմ
քսամարտից յայտնի կացուցանելով , և զած-
ութի հոգւոյն սբյ՝ ընդդէմ հոգեմարտից ․
որով դասք ուղղափառաց հաստատէին 'ի
ճշմարտութե , և յամօթ լինէին հերձուածողք ․
քղի մի առ մի նշաւակէր զսնոտի բարբանջ-
մունս ամ աղանդաւորաց ժմկին , արիանո-
սաց , մակեդոնեանց , եւնոմեանց , փոտի-
նեանց , մարկեղեանց , սաբէլեանց , ապողի-
նարիտաց , նաւատիանոսաց , և որոց 'ի նո-
ցին սակի ․ որք ստէպ գային վիճել ը նմա ,
և գլխակորեալք յետս դառնային , զի մին
զհազարս վանէր զօրացեալ տե ։ Յապուշ
կրթեալ էին ժղվրդք կոստանդնուպօլսոյ
ընդ ածիմաստ բանս՝ որք ելանէին 'ի բերա-
նոյ երանելւոյն գրիգորի ․ և կարդային զնա

ածա

ածաբան, (յունարէն՝ Θεολόγος,) իբր սեպ-հական անուամբ պատուեալ զկնի ածաբան աւետարանչին յովհաննու :

Եւ իբրեւ օր քան զօր յաջողեալ լինէր վարդապետին ածաբանին, եւ բազումք ի մոլորելոց դառնային ի ճշմարտութեան ճանապարհն, զայրացաւ ընդդէմ նորա նախանձ հակառակորդացն հաւատոյ՝ արիանոսաց եւ արքանեկաց նոցուն. եւ ոչ կարելով բանիւ զդէմ ունել նր, սկսան ազգի ազգի թշնամանօք համբաւագերծ առնել. էր՝ զի քաղաքան այպանէին զնա, իբրեւ անշան գեղջ ծնունդ, եւ էր՝ զի զգեստուքն անզանէին իբրեւ զծուծ խոշորազգեաց. երբեմն զգիմացն անչքութիւն՝ ի պատահարաց փաստելոյ, մինչդ թէ եւ ի ծերութենէ եւ ի հիւանդութենէ նիհարացելոյ, ոմանք տգեղ ընդ վայր հարկանէին, եւ երբեմն զձեւ բանիցն ծաղր առնէին լրբութեամբ. քանզի նախանձաբեկ լեալ ընդ սքանչելի բեմբասացութիւն նր՝ որ ած իրօք պերճախօսն էր եւ հռաշաբան, նետս նախատանաց ի նա ձգէին՝ գուսանաց եւ վարձակաց զնա նմանեցուցանելով : Իսկ ի միում նուագի առ յոյժ կատաղութեան իւրեանց՝ առ հսրկ կրճտեալ զատամունս՝ դիմեցին ի վերայ սրբոյն բրօք եւ քարամբք. այլ ած պահեաց զնա անփասելի ի յարձակմանց նոցա : Դարձեալ յայլում նուագի բարուրանս իմն ստուէ խոխոտեալ զնմէ՝ իբրեւ յանցաւոր լինել յօրէնս արքունի, ձգեցին զնա կապանօք առաջի հեթանոս դատաւորի. այլ իբրեւ յայտնի արար երանելին հեզութեամբ զանմեղութիւն իւր, հրա-

մայրաց զմտուրն թողուլ զնա ազատ ։

Յայնմ ժամի և յայլ բազմապատիկ վիշտս և
'ի հալածանս ժամին անվրդով կայր երանե-
լին. և որչափ առաւելոյր զազանութի ստախաց
իւրոյ, նոյնչափ և նա իբրև զառն անմեղ՝ սի-
րով և քաղցրութ՟ խօսէր ը՟ նմ՟. որով և զան-
համարս 'ի թշնամեաց յինքն ձգեաց. մն՟ւնդ
զի ունէր և զայս շնորհ առանձինն, զի 'ի դէպ
ժամու և ո՟չ լսելեացն ը՟տանելութե այնպէս
յօրինէր զբանն , մինչև անմարթ էր միան-
գամ լռողին աննախանձ՝ չյարել 'ի նա. և այն-
պէս զբզ՟մս դարձոյց յանուղղայ գնացից , և
ծաղկեցոյց 'ի ք՟քի անդ ը՟ ուղղափառ հա-
ւատոց և ընթացս ա՟ծպաշտութե ։

Եւ 'ի տարածիլ համբաւոյ նր՟ 'ի հեռաւոր
վայրս՝ ընթանային առ նա բզ՟մք յերևելի
արանց. յորոց միջի և մեծն հերոնիմոս դաղ-
մատացի՝ ( որ եղև մին 'ի լուսաւոր և 'ի բազմ՟
արդիւն վրդպաց հռովմայեցւոց, ) ծաղկեց՟ն
ա՟մ գիտութե՟, որ դեգերէր յայնժամ 'ի կող-
մանս երկրին ասորւոց , դիմեաց 'ի բիւզան-
դիա առ ա՟ծաբանն գրիգոր, և փառս անձին
համարեցաւ անուանիլ 'ի կարգի աշակեր-
տաց նր՟. զի գեր 'ի վերոյ տեսանեմ ասէր
զվրդպութի՟ սորա ք՟ զա՟մ վրդպացն յունաց և
լատինացւոց ։

Եւ իբրև յա՟մ կողմանց յաճախէին արդիւնք
բարելաւութե երանելւոյն գրիգորի , միաբա-
նեցան ժ՟ղվրդ ուղղափառաց՝ որ 'ի կոստանդի-
նուպօլիս , կացուցանել զնա իւրեանց պատ-
րիարգ. զի ոչ գոյր նոցա յայնժամ եպ՟ս ուղ-

ղա-

ղափառ : 'Ի սոյն միտս միաձայնեցաւ և Հայրապետն աղեքսանդրիոյ՝ պետրոս երկրորդ, և գրով հաստատեաց զեպիսկոպոսութիւնն՝ լինել հօվիւ Թագաւորական քաղաքին : Բայց երանելին Գրիգոր բազմօք ընդդէմ դառնայր, և չառնոյր յանձն զայն պատիւ․ մինչև արտասուօք աղաչել զգլխաւորս ժողովրդեանն՝ զի զայլ ոք արժանաւոր ընտրեսցեն․ այլ նոքա ոչ յետս կացին 'ի խորհրդոց իւրեանց, և անուանեցին զնա հայրապետ իւրեանց :

Եւ քանզի տակաւին 'ի ձեռս արիանոսաց էին եկեղեցիք, և ինքնակալն Թէոդոս 'ի պատերազմունս և յայլ զբաղմունս արուէ դեգերէր 'ի հեռաւոր տեղիս, աղմուկ մեծ յարուցին արիանոսք 'ի Թագաւորական քաղաքին, և բազում չարիս գործեցին ընդդէմ դասուց ուղղափառաց․ իսկ երանելին Գրիգոր սիրով և քաղցրութեամբ նուաճեաց զԹշնամիս՝ յամի փոխանակ չարի բարի հատուցանելով :

Ապա 'ի հասանել Թէոդոսի 'ի Թեսաղոնիկէ՝ տեղեկացեալ վասն խռովութեան եկեղեցւոյ և ստահակութեան արիանոսաց, եհան հրովարտակ՝ զի մի՛ գտցի ոք 'ի Թագաւորեալ քաղաքի օտար 'ի նիկիական հաւատոյ․ այլ՝ ամենայն այլադաւանք կամ դարձցին 'ի միաբանութիւն եկեղեցւոյ, և կամ 'ի բաց երթիցեն 'ի քաղաքէն : Այսու հրամանաւ Թէպէտև զօրացան ուղղափառք, այլ ոչ իսպառ ընկճեցան չարափառք․ զի ոչ ամենեքին մեկնեցան 'ի քաղաքէ․ և բազումք այն էին՝ որք յայտնապէս

ընդ-

ընդդէմ դարձան արքունի հրովարտակին. մինչև արիւն ևս հեղուլ 'ի հրապարակի:

Օ այս ամ տևեալ ոճին Գրիգորի դարձեալ զիւր հեղահամբոյր բարս 'ի կիր արկանէր առ դադանացեալ թշնամիս, և քաղցրութ̃ ջանայր յանկուցանել զսիրտ նց. զոր ամ̃ սիրալիր յորդորանօք խօսէր ը̃ նմ̃, և այնպիսի մարդասիրութ̃ ցուցանէր, մինչև բազմաց 'ի նոցանէ յաղթեալ 'ի սիրոյ նր̃՝ մտադիւրութ̃ դառնային 'ի խոնարհութի, և 'ի հպատակութ̃ եկեղեցւոյ: Այլ այս գովելի ընթացք առն այն՝ որով դիւրագոյնս որսայր զմիտսն յուռկան աւետարանին, դժպատեհ թըւեցաւ ուղղափառացն դասուց. որոց ցայնչափ ժմկս հարստահարեալ յարիանոսաց, և առ ժամն համարձակութ̃ գտեալ 'ի թագաւորել մեծին Թէոդոսի, կամէին իմն հատուցանել զհատուցումն նոցա՝ նոցին, և շնչէին ը̃դէմ ա̃ծաբանին:

Այս տրտունջ ժողովրդեան դուռն եբաց մեծի խռովութե. քանզի կային ոմանք 'ի յաշակերտաց և 'ի փառասիրաց՝ որք 'ի խնդիր էին արատս գտանելոյ ա̃ծաբանին, զի մարթասցին 'ի բաց վարել զնա յաթոռոյ, և ժառանգել զտեղի նր̃. յորոց միջի գլխաւոր դասէ Մաքսիմոս ոմն աղէքսանդրացի՝ այր խորամանկ և ճարտար 'ի յոյզս խռովութե̃, աշակերտեալ կինիկեան՝ այս է շնական աղանդոյ փիլիսոփայից, և երբեմն զոհեալ ևս կռոց. որ վս̃ իւրոց ապիրատութեց յաքսորս անկեալ՝ և ձաղուպրեալ, քարոզէր զանձն

երբև

իբրև հալածեալ վն քրի և կենդանի նահա-
տակ ։ Արդ՝ սա զառաջինն իւրով կեղծու-
պատիր հնարիւք շնորհս գտեալ առաջի ե-
րանելւոյն գրիգորի , և բազմօք երախտա-
ւորեալ 'ի նմէ , մինչև լինել իբրև զմի 'ի սե-
րելի պաշտօնէից նր և յաշակերտաց , այլ
և կենակից և սեղանակից , իբրև լրտես
զբրթմնջիւն ժղվրդեան՝ որ զնմէ , սկսաւ օ-
տարացուցանել զամբոխն 'ի գրիգորէ և
յինքն ձգել ․ քանզի ցուցանէր զանձն նմ
ոգւով թշնամի չարափառաց , և ոչ որպէս
զգրիգոր՝ որ համախոհ և համաշունչ է առ
ընդ թշնամիսն ճշմարտութե ․ և այսու օրինա-
կաւ հաճոյացաւ յաչս բազմաց ․ և այնչափ
յառաջեցոյց զչարարուեստ հնարս իւր՝ մին-
չև յանկուցանել յինքն և զմիտս պետրոսի
աղեքսանդրու պատրիարգին ․ որոյ փոխեն
յառաջին հաւանութէ իւրմէ՝ որով հաստատ-
եացն զպատրիարգութի գրիգորի , յղէ և
եպիսկոպոսունս յեգիպտոսէ՝ զի ձեռնադրես-
ցեն յաթոռն կոստանդնուպօլսոյ զնա ինքն
զմաքսիմոս աղեքսանդրացի ։

Եկեալ եպսյ 'ի թրական քաղաքն պատ-
ճառանօք այլ ինչ իրաց՝ գտին մեծամ ընու-
նելուն և մղամտութի յերանելւոյն գրիգո-
րէ ․ և իբրև զաւուրս ինչ 'ի խնդ մնացին
վն իրացն՝ զոր եկեալ էին կատարել , 'ի նմին
ժմկի խօթացաւ երանելին գրիգոր ․ և նոցա
զայն առիթ գտեալ համարեալ՝ ժողովեցին
'ի գիշերի միում զկիպրացեալն ը մաքսի-
մոսի , և գիշերայն ձեռնադրեցին եպս ըզ-
մաք

մաքսիմոս 'ի տան ռամկի ուրուեմն կին փողահարի, և անուանեցին պատրիարգ կոստանդդինուպօլսոյ. և զի չէր կայսրն 'ի քաղաքի, դիւրաւ ձգեցին հրապուրանօք և կաշառօք զմեծամեծս իսկ 'ի հաւանութի։ Բայց քանզի ոչ ամենայն ժողովրդն հաւան էր ընդ այն, ընդ յայտնիլ իրայն՝ անկաւ երկպառակութի անհնարին 'ի մէջ ամբոխին. և էր ալէկոծեալ քաղաքն ողջոյն։

Իսկ երանելի աստուածաբանն հիւանդագին անձամբ մեկնեալ առ ժամ մի 'ի քաղաքէն՝ ոչ զանձին ինչ հոգայր, այլ զժողովրդեանն իւր. զի ակն յայտնի տեսեալ զվարատուն հօտին յերեսաց յափշտակիչ գայլոց՝ աշխարհէր զվտանգ անդամոցն եկեղեցւոյ. վասն որոյ գրով և բանիւ յայտ առնէր ամենեցուն զվնաս հոգւոց՝ որ յառաջ գայր 'ի բռնակալութէն մաքսիմոսի աղանդաւորի։ Իսկ այնչափ ազդու եղեն խրատք սրբոյն, մինչև յետ ոչ բազում աւուրց 'ի բաց թօթափեցան 'ի մաքսիմոսէ համախոհքն իւր առ հասարակ. և ինքն անօգնական մնացեալ՝ դիմեաց առ կայսրն թէոդոս 'ի թեսաղոնիկ. բայց 'ի նմէ ևս ամօթով մերժեալ՝ անկաւ յաղեքսանդրիա. ուր ստիպէր զպետրոս հայրապետ, զի կամ հաստատեսցէ զնա յաթոռն կոստանդնուպօլսոյ, և կամ աստ և դու զրկեսցիս յաթոռոյ քումմէ. այլ փութով 'ի վերայ հասեալ քաղաքապետն՝ հալածական արար զնա 'ի տեղւոջէ անտի։

Բայց քանզի չև էր հանդարտեալ աղմուկ

երկ-

երկպառակութեան 'ի թագաւորական քաղաքի, խորհեցաւ երանելին Գրիգոր թողուլ զայն աթոռ, և դառնալ 'ի տուն իւր. վասն էր յաւուր միում 'ի բեմն, և ասէ ցժողովուրդն. կացէք մնացէք խաղաղութեամբ, զի ես այսուհետև հրաժարիմ իսպառ 'ի գործոյ հովուութեան, և մեկուսանամ յիմ առանձնութիւն. զի մի 'ի պատճառս իմ հերձուած և բաժանումն անկցի 'ի մէջ հօտին Քրիստոսի. զայս միայն յուշ առնեմ ձեզ աղաչելով, զի անթերի պահեսջիք զհաւատս ուղղափառութեան, և մի անգործ առնիցէք զվաստակս իմ՝ որ առ ձեզ: Զայն լուեալ բազմութեան՝ առհասարակ յարտասուս հարան, և չհանդուրժեալ էին մեկնիլ քաջ հովուէն՝ գոչէին 'ի մի բերան. դու ես մեր հայր և հովիւ և վարդապետ. ո՛չ թողումք զառաջնորդդ մեր: Այլ տեսեալ՝ թէ ոչ կամի լսել նոցա Աստուածաբանն, սկսան թախանձել բողոքարկութեամբ 'ի ձայն կականման, և ասել. եթէ 'ի բաց գնաս 'ի մէնջ ո՛ հայր մեր, 'ի բաց գնան 'ի մէնջ և հաւատք ճշմարտութեան, և օտարանայ 'ի մէնջ երրորդութիւն մեր. և զիա՞րդ անտես առնիցես զժողովուրդ Աստուծոյ՝ զգին արեանն Քրիստոսի. կամ զի՞նչ պիտի տացես Աստուծոյ: Յայնժամ խոնարհեալ սրբոյն յարտասուս նոցա՝ խոստացաւ կալ առ ժամանակ մի, մինչև եկեսցեն այլք յեպիսկոպոսաց:

Յաւուրսն յայնոսիկ (յամի. 380) եկն եմուտ Աստուածասէր թագաւորն Թէոդոս 'ի Կոստանդինուպօլիս. և տեսեալ զքաղաքն ծաղկեալ ուղղափառութեամբ 'ի ձեռն վաստակոց Աստուածաբանին

նին գրիգորի, ուրախ եղև յոյժ. և ապա զնա յորդորելոյ սիրոյն մաքրեաց զքաղաքն յայլազանգից, և 'ի բաց հանել զեկպուտն արիանոսաց՝ յանձնեաց զեկեղեցիս 'ի ձեռս ուղղափառաց, յետ տիրելոյ անդ արիանոսաց 'ի քառասուն ամաց հետէ. և զերանելին գրիգոր իբրև օրհնաւոր հայրապետ առեալ տարաւ հանդիսապէս յաւագ եկեղեցին:

Եւ եղև 'ի գնալ ինքնակալին ընդ հայրապետին 'ի տաճար անդր, յանկարծակի ամպ մթագին պատեաց զերեսս երկնի, զի խաւար թանձրամած երևէր 'ի լոյս տուընջեան: Զայն իբրև տեսին ջոկք հերձուածողաց, սկսան խայտալ և ասել. ահա այս նշան է յայտնի, զի ոչ կամի Աստուած զարտաքսիլն մեր յեկեղեցւոյ թագաւորական քաղաքիս. և մինչ այն խաւար կալաւ զերկիր. և զօրին հկըկն՝ տրտմութիւն մեծ եղև պարզամտաց 'ի մէջ ժողովրդեանն ուղղափառաց, որք զաւուրս մթութեան 'ի հանդիսական տօնս գուշակ չարեաց առնէին. իսկ սուրբն գրիգոր քաջալերէր զնս՝ մի ինչ գրել զբանս այլափառաց:

Եւ եղև 'ի մտանել նր ընդ արքայի 'ի ներքս 'ի խորանն, փարատեցաւ ամպն, և ծագեաց լոյս պայծառ. ընդ որ ուրախ եղեն ուղղափառք, և զամօթի հարան հերձուածողք:

Յայնժամ պատուասիրեալ արքայի զգրիգոր՝ ասէ ցնա. աւադիկ հայրդ՝ տէր ինքնին քեզ յանձն առնէ զեկեղեցիս, զոր քրտամբք քով ուղղեալ ծաղկեցուցեր. քո՛ է այսու հետև հօտս, և քո՛ է աթոռ հայրապետական:

կան ։ Նա որչափ երանելին գրիգոր հեռ̄կէր չմտանել ընդ այնպիսի լծով, նոյնչափ և կայսրն բարեպաշտ բռնադատէր զնա յանձին ունել զայն պաշտօն ։ և ունէր զա̄ծաքանն ա̄ծասէրն Թէոդոս ’ի կարի մեծարանս, և իբրև հարազատ հօր հոգւոյ հպատակէր նմ̄ յոյժ ։ և սակայն ևս հրաւիրէր զնա ’ի պալատն արքունի ։ այլ նա խորշէր, և ոչ տայր անդր ։ իմ գործ է ասէ ծառայել հօտին ք̄ի, և ոչ ’ի սպաս Թ̄գ̄րաց վայելել ։

Իբրև տեսին արիանոսք և այլք ’ի հեռ̄կողդաց չմարտուէ, եթէ ջաղխիչն աղանդոց իւրեանց պատուեցաւ յոյժ յինքնակալէն, ետուն բազում դրամս միում ’ի դազանաւոր զօրականէն՝ դաւով սպանանել զսր̄ հայրապետն ։ և նա առեալ ըն̄ իւր այլ ևս գործակիցս՝ յանկարծակի եմուտ ’ի սենեակն, ուր անկեալ կայր սբ̄ն ’ի մահիճս՝ տկարացեալ ’ի սաստկական խօթուէց մարմնոյն ։ Օ այն տեսեալ սբ̄յն՝ խլրտեցաւ ’ի մահճաց, և զոտս իւր ’ի գուրս արձակեաց ։ Յայնժամ անկաւ ահ մեծ ’ի ա̄նէ ’ի վերայ առնն, և կաթեցան ձեռք նորա, և ոչ զօրեաց առնել ինչ ։ և ’ի փախչիլ ընկերաց նր̄ արտաքս՝ տարածեաց այրն զձեռն իւր արտասուօք առ ոտս երանելւոյն գրիգորի, և խնդրէր զթողու մ̄ց չարեացն՝ զոր եկեալ էր առնել ըն̄ նա ։ իսկ սբ̄ն քաղցրուԹ̄ խրատեաց զնա, և արձակեաց սիրով՝ ասելով ։ ա̄ծ իմ պահեսցէ զքեզ որդեակ, որ պահեսցէ զիս յորոգայԹից Թշնամւոյն ։ և ոչ եհան ումեք զբանն

’ի

՚ի վեր ․ և այնպիսի անոխակալուէ շահեցաւ
զմիտս հկ̄կորդաց ․ զի և ընդ ամ̄ քաղաքն
քարոզէր հեզուէ երանելւոյն ։
Յետ այսորիկ ստէպ յորդորէր ածաբանն
զբարեպաշտն Թէոդոս դարման տանել խա-
ղաղուէ եկեղեցւոյ, և մաքրել զորուէ իւր
յաղտոյ ազգի ազգի հերձուածողաց, որոց
չար որոմունք սերմանեալ էին ՚ի բզմ̄ տե-
ղիս ․ առաւելագն̄ մակեդոնեանց հոգեմար-
տից ․ միանգամայն և աղաչէր գտանել զոք
արժանաւոր և կարգել յաթոռն կոստան-
դնուպօլսոյ, և զինքն արձակել յաշխատուէ ։
Իսկ վն̄ սոցին իրաց գումարեցաւ սբ̄ ժողովն
կոստանդնուպօլսոյ յամի 381, ՚ի հարիւր և
յիսուն հայրապետաց ․ յորս երևելի էր սբ̄ն
Մելիտոս անտիոքայ հայրապետ ։ Որք՝ զկնի
կանոնելոյ զսահման հաւատոյ ընդդէմ հերձ-
ուածոց ժամկին, ապա սբ̄ն Մելիտոս և այլք
՚ի գլխաւոր եպսց բռնադատեցին զնա ինքն
զածաբանն գրիգոր, և հաստատեցին ՚ի պատ-
րիարքուէ Թգ̄րական քղ̄քին ․ և Թէպէտ
ընդդէմ եկաց նա զառաջինն, այլ յետոյ
յանձն էառ հնազանդիլ հարց ժողովոյն,
հայեցեալ ոչ յառանձին իւր օգուտ հան-
դարտուէ որում փափաքէր, այլ յօգուտ
հօտին քի, որ այնպիսի նախանձաւոր հով-
ուի պէտս ունէր ։
Իսկ մինչչև էր աւարտեալ ժողովն, վախճա-
նեցաւ սբ̄ն Մելիտոս ․ զոր պատուեաց ներ-
բողական ճառիւ, բաց յայլոց և ածաբանն
գրիգոր ․ և ՚ի լինել հկ̄կուէ մի յաջորդի
Ի նը

նի յաթոռն անտիոքայ՝ միջնորդ խաղաղու-
թեան եղև ածարանն , և խրատ ետ զոր արժանն
էր գործել : Այլ զի բզիք չեղեն հաւն խոր-
հրդոյ նորա , սաստկացաւ երկպառակութիւն .
մինչև դառնալ յոքունց 'ի թշնամութի՞ն ըդդէմ
սորին : Յաւելաւ յայնժամ միւս ևս խռովութի .
զի ոմանք յեպսացն եգիպտացւոց անապատն
հասեալ 'ի ժողովն՝ մեղադիր լինէին հարց ,
թէ զիարդ առանց մեր կամաց նստուցիք զգրի-
գոր պատրիարգ , և ոչ անսացիք դալստեան
մերոյ : Զայս առիթ առեալ և այլոց հկ̃կոր-
դացն գրիգորի՝ սկսան չարախօս լինել զնմա-
նէ , եթէ առանց իրաւանց և արտաքոյ կանո-
նաց ընկալաւ զաթոռն կոստանդնուպօլսոյ՝
վասն փառաց և պատուոյ , 'ի բաց թողեալ
զնուաստ առաջնորդութի սասիմայ , և ապա
նազիանզու , իբր թափառական հետամուտ
եպիսկոպոսարանաց . և հեզնելով ձայնէին
զնա եռեպիսկոպոս , զի երից տեղեաց ընտ-
րեալ եպիսկոպոս :

Իսկ 'ի զայրանալ օր ըստ օրէ խռովութե՝ և-
կաց երանելին գրիգոր յատենի ժողովոյն ,
և հրաշալի ատենախօսութ̃ յայտ արարեալ
զզրպարտութիս չարախօսաց , և զիւր այնչափ
վաստակս 'ի վ̃ր հօտին քո̃ի , հրաման խնդ-
րեաց 'ի հարց հրաժարել յաթոռոյն . և ասէ .
եթէ վ̃ս իմ են խռովութիւքս , չեմ ես լաւ քան
զյովնան . առէք ընկեցէք զիս 'ի ծով , և դա-
դարեսցէ մրրիկդ 'ի ձէնջ . այլ ես խնդամ
մեծ̃պ̃ , զի ազատանամ 'ի տաղտապէ հոգոց ,
և դառնամ յիմ ցանկալի օթևան հանդար-

տուէ ․ և ես առաւել ուրախ եմ 'ի տր , զի որք հանեն զիս յաթոռոյ՝ չկարեն յայ 'ի բաց հանել , այլ առաւել մերձեցուցանեն , որում կարօտիմս ․ տո՛ւք ինձ աղաչեմ զանդ-դրօս կեանս առանձնութե , լինել միայն ը միայնոյ ան այ իմոյ ․ և դուք ընտրեցէք ձեզ զայր այնպիսի՝ որ հոգւովն այ վարեսցի , և զեկեղեցին 'ի խաղաղութե կալցի ․ քանզի և ինձ ծանր է տանել այսպիսի դժուարակիր քրտանց ․ հեզութի ցուցանել՝ և վն այնր յան-ցաւոր գտանիլ ․ և վն բարերարութե չարա-րար կարծիլ ․ ոչ ես եմ կարող կռուիլ ընդ մախանաց , և միօրինակ մաքառիլ ը սիրելս և ը թշնամիս ։ Զայս ամ և առաւել քան զոյն բզմ անգամ խօսեցաւ ը հարս ժողո-վոյն , և ը ժողովուրդն , և ընդ թշրն ․ և հազիւ ուրեմն հաւանեցուցեալ զնս՝ եհա-հրաման դարձ առնելոյ 'ի գւռ իւր հայրենի ։ Բայց յայսր ամի մի տխրութի ոչ սակաւ ու-նէր զսիրտ երանելւոյն՝ առ 'ի չգիտելոյ՝ թէ յո՛յր ձեռս անկանիցի հօտն , զոր ժողովեաց այնչափ աշխատութբ ․ և կամ զիա՛րդ պա-հեսցին հաւատք ուղղափառութե 'ի հոգևոր որդիս իւր , զորս բզմ երկամբք ծնաւ 'ի քս ։ Եւ այսու օրինակաւ եղ մեկնեցաւ 'ի քաղա-քէն կոստանդնուպօլսեցւոց՝ ուրախամիտ ը գերծանիլ իւր յաղմկաց , և տխուր ը բաժա-նիլն յորդւոց իւրոց ։ Այլ առաւել տրտմե-ցան գլխաւորքն 'ի հարց սրբոյ ժողովոյն , և արտասուս բզմ հեղին որդիք նր հարազատք ․ և այնչափ էր թախծութի սրտի ճշմարտասէ-

րաց ,

րաց , մինչեւ ոմանք յերեւելի եպսաց խոյս տուեալ մեկնեցան 'ի քղքէ՝ զճակատ հարկանելով, եւ զկուրծս բաղխելով . զի մի՛ լիցի նոցա տեսանել զայլ՝ որք նստեալ 'ի տեղի առն Այ գրիգորի : Իսկ եպսունքն՝ որք մնացին , 'ի վարանս մտեալ՝ թէ զո՛ դիցեն յաթոռն փոխ գրիգորի , ոչ գտանէին զելս իրացն վասն երկպառակութե՝ որ 'ի մէջ մեծի եւ փոքու . մինչեւ յետոյ ուրեմն հաւանութ ինքնակալին թէոդոսի ընտրեցաւ նեքտառիոս տարսոնացի՝ այր բարի՝ 'ի կարգէ պալատականաց :

Իսկ երանելին Ածաբանն երթեալ առանձնացաւ 'ի կալուածս հօր իւրոյ 'ի կարպաղ անուանեալ վայրի արիազոն աւանին՝ մօտ 'ի նազիանզ , տուեալ զանձն 'ի վարս միակեցական ճգնութե : Ստիպէին զնա նազիանզացիք՝ լինել նցա առաջնորդ . բայց նա չառնոյր յանձն , զի մի՛ զրկեսցի 'ի հանդարտութենէն՝ զոր եգիտ ըստ տենչանաց իւրոց . այլ ետ ձեռնադրել յաթոռ եպսութե նազիանզու զեւղաղիոս ոմն 'ի ծանօթից իւրոց՝ զայր բարեկրօն . եւ ինքն զմն ինչս տան հօր իւրոյ բաշխեաց աղքատաց՝ զուարթ սրտիւ դադարեաց յարիազոն . եւ հնպզ գոհանայր զԱյ . մինչեւ գրել եւ առ սոփրոնիոս իշխանն 'ի կոստանդինուպօլիս , թէ այլք իբրու զրկանս իմն առնել ինձ համարեցան՝ հանելով յաթոռոյ . այլ ես երանի տամ այսպիսի զրկանաց , որ տայ ինձ պարապել հանդարտութե եւ անզբաղ իմաստասիրել :

Սոյն գրեաց երանելին բազմապատիկ պի-
տանաւորս և թուղթս յօգուտ և 'ի շինութիւն
եկեղեցւոյ , և 'ի նուաճումն աղանդաւորաց
ծմկին· զի թէպէտև մեկուսացեալ էր 'ի հօ-
գոց , այլ ոչ անփոյթ զհոգացն իւր՝ որք
առեալ էին նմ 'ի պայծառութ եկեղեցւոյ ։
Սոյն շարագրեաց և զվարս իւր առանձնաւոր
բանիւ՝ առ 'ի խնուլ զանդգուռն բերանս · զի
բզմք այն էին՝ որք ասէին բամբասանօք մի-
տօք , թէ վն յանցաւորութ կմ մոլորութե
մերժեցաւ նա յաթոռոյ , և կէսք՝ թէ ակա-
մայ հրաժարեցաւ յիշխանութէ , և այլք ևս
զայլ արատս ջանային դնել 'ի վր այլևայլ
բանից և գործոց նր · նմին իրի հարկ հա-
մարեցաւ գրել սուղագոյն զնմ անցս՝ որք
անցին ընդ նա , և առաքեաց առ բնակիչս
կոստանդնուպօլսոյ , որով յայտնի եղեն նմ
չարախօսք ։
Բայց տակաւին ոչ դադարեաց դևն 'ի հան-
դարտութե անդ յարուցանել փորձանս ընդդէմ
սրբյն · զի սկսան մերձաւորք նր բամբասել
զնա , թէ յայգեստանս և 'ի զուարճութիս
անցուցանէ զաւուրս ծերութէ իւրոյ , այն՝ որ
միակեցական վարս խստամբերութե կա-
ծեցուցանէ յանձին կրել · և այլ ևս բզմ
բանք դժպատեհք ։ Իսկ զայն ոչ գիտէին ,
թէ 'ի ծածուկ ձգնէր երանելին , և զօր նմ
տանջէր զծերացեալ մարմինն 'ի խիստ պահս
և 'ի գետնախշտութիս և 'ի խարազնազգե-
ցութիս՝ առաւել քան զխստակրօն ձգնաւորս
բնակեալս յանապատի · և 'ի վր հնգդր-
դեան

դեան վշտաց հիւանդութեան՝ անխնայ զինքն ընդդէմ անձին իւրոյ, մինչ գրեթէ առիթս խնդրել տանջելոյ. որ և 'ի միում նուագի թուեցաւ նմ, եթէ անհամբերութբ խիստ ինչ խօսեալ իցէ ը ումեք ըստ ծերունեացն բարուց, և վնկ զաւուրս քառասուն անբարբառ լռութբ սանձահարեաց զլեզուն ։

Հրաժարեցաւ սբն միանգամ և երկիցս 'ի թէոդոս կայսերէ և յեպսաց՝ գալ 'ի կոստանդնուպօլիս՝ առ 'ի գումարել նոր ժողով վս պսպս իրաց. այլ նա չէառ յանձն. զի ոչ սիրէր զաղմուկս՝ որք լինէին 'ի մէջ եպսաց ։ Նա իբրև կարի տկարեցին զնա, արար երանելին պնի. թէև յօժարէր 'ի գալ՝ ոչ թողու զիս յետին տկարութի մարմնոյս և մահացու հիւանդութիս. և ը այս խնդամ, զի անկարանամ երթալ ։ Այլ այսու ամին ոչ դադարէր իմաստալից գրովք 'ի թիկունս հասանել եպսաց՝ ուսուցանելով զարժանն, և զօրաւոր ածաբանութբ յաղթահարելով զհերձուածօղս՝ մինչև ցվերջին աւուրս իւր. քանզի և 'ի ծանր հիւանդութե միջի ոչ վերջանայր 'ի շարադրութէ բանից օգտակարաց. էր զի անձամբ գրէր, և էր զի նօտարաց աւանդէր ։

Նա իբրև փտանգեցաւ 'ի ցաւոց, և ետես զանձն մերձեալ 'ի դրունս մահու, սկսաւ խանդակաթ բանիւք խօսել ընտանեբար ը քնի փրկչին իւրոյ. և 'ի խօսակցութե անդ՝ քաղցրութբ աւանդեաց զհոգին 'ի ձեռս նյ, յամի տն 389, կմ 390. ըստ այլոց՝ 391 (թող

զչափ ամաց հասակին անգիտելի՝ զոր ոմանք կճ դնեն, և այլք ոչ պակաս ք զ ). Թողել 'ի գանձ եկեղեցւոյ՝ բաց յառաքելական վառտակոց՝ զհրաշալի մատեանս ածաբան վարդապետութեան իւրոյ. որ են անվրէպ կանոն և առաջնորդ ամ դասուց աշակերտելոց ճշմարիտ ածաբանութեան, և վկայութիւնք բանից նորա անջինջ արձանագիրք յամ ժողովս եկեղեցւոյ:

Իսկ պատուական մարմին սբյն Թաղեցաւ զառաջինն յիւրում քաղաքի 'ի Նազիանզ առ գերեզմանի հօր իւրոյ. մինչև յետ բզմ ժմկաց՝ յամի տն իբր 945. սա փոխադրեալ 'ի Թագաւորական քաղաքն 'ի Կոստանդինուպօլիս այսպիսի ինչ օրինակաւ: Քանզի բարեպաշտ կայսրն Կոստանդին Պերփիւռոժէն՝ Թոռն Վասլի արշակունւոյ՝ ստէպ մըտախոհ լեալ վն բազմապատիկ երախտեաց, զոր եցոյց ածաբանն գրիգոր 'ի կենդանութե իւրում առ բնակիչս կոստանդնուպօլսոյ, խօսեցաւ յաւուր միում ը աւագանւոյն իւր, և ասէ. զի՞նչ զայնպիսի այր այ՝ զմեր բազմերախտ հայր, և զպայծառ ջահ եկեղեցւոյ, Թողլն հարքն մեր յանծանօթս կալ իբրև 'ի Թաքստեան յամայի վայրս Նազիանզու: Նա խհդ արարեալ առաքեաց արս գըլխաւորս 'ի Նազիանզ՝ յուզել և գտանել զնըշխարս սրյն, և բերել արժանաւոր պատուով 'ի Թագաւորեալ քաղաքն: Գրեաց Թգրն և գիր աղերսանաց խոնարհական ժտութբ առ ածաբանն՝ իբրև առ կենդանի սբ, աղա-

ղաչելով զնա ընդ զփափագ իւր հոգւոր, և գալ հանգչիլ ընդ այլ սբս՝ որք ամփոփեալ կային յեկեղեցիս կոստանդնուպօլսոյ ։ Իսկ առեալ արանցն զայս գիր՝ գնացին 'ի նազիանզ, և գտին զտեղի գերեզմանի սբյն . այլ քանզի երկու չիրիմք էին առընթեր միմեանց միաձև, յերկբայս անկան՝ թէ ո՞ր 'ի նցէ ածաբանին իցէ . մն զի և բնակիչք տեղեացն այսչափ միայն գիտէին աւանդութբ՝ եթէ յայն չիրիմս կան թաղեալ ածաբանն գրիգոր, և հայր նր գրիգորիոս, և այլք 'ի տանէ նր . և ոչ գիտէին հաւաստեաւ՝ եթէ որն իցէ չիրիմ գրիգորի ։

Յայնժամ արքն եկեալք յարքունի դրանէ սկսան արտասուախառն պաղատանօք կարդալ առ ածն, զի մի՛ ունայն լիցի աշխատութի իւրեանց, և մի՛ 'ի դերև ելցէ ածահաճոյ խնդիր կայսերն ։ Իսկ տր կատարեաց զհայցուածս նց . զի է բանալ զգերեզման սբյն՝ յանկարծակի բուրեաց հոտ անուշութե, և գտան նշխարք ոսկերաց նր ամբողջ յարմարեալ 'ի կարգի իւրեանց . մինչև յայտնապս 'ի միտ առնուլ ամէն 'ի բազմապատիկ նշանաց, թէ այն է մարմին ածաբանին գրիգորի ։ Յայնժամ փութանակի ամփոփեցին զնա պատուով 'ի նոր արկղ՝ տանել է իւրեանս . զի առ յոյժ խնդութեն շտապէին առօրին դարձ առնել 'ի տեղի իւրեանց ։ Իսկ եղև հակառակութի է բնակիչս տեղւոյն, որոց ցաւ մեծ լինէր զրկիլ յայնպիսի պատուական գանձէ . այլ արքն արքունի դրան

ազգի ազգի խոք հաւանեցուցեալ զնա՝ բար-
ձին զոր գանձն , և անկան ՚ի ձմհ :

Եւ եղև բանս այս ՚ի կողմանս կողմանս . և ահա գունդագունդ հասանէին զձմհային մեծամեծք և փոքունք , եկեղեցականք և Ճաւկանք, և խնկօք և մոմեղինօք յուղարկէին զմարմին սրբոյն՝ հանդերձ երգովք օրհնութ , և անթիւ հառաչել հանդիսիւ , որպէս թէ թափոր յօրինեալ հեռաղհեալէ ՚ի նաղխանդայ մինչև ՚ի բիւզանդիա : Եւ իբրև մերձ եղև սրբն ՚ի թգրակն քաղաքն , ելին ընդ առաջ մեծաշուք փառաւորութբ թգրն և ամ մեծամեծքն՝ բազմութբ քհնյից և ժողովրդոց . և այնպէս անպատմելի ցնծութբ և օրհնութբ մուծին ՚ի ներքս յաւուրս ձմերայնոյ . և առեալ ածին նախ յեկեղեցի պալատանն արքայի . և ապա յօրինեալ զդագաղս ծիրանեօք և ամ երևելի սպասուք՝ բարձին ըզմարմին սրբյն եպսնք ՚ի վր ուսոց իւրեանց, և բոլորեալ զնովաւ դասք սինկղիտոսաց հանդերձ թգրաւ՝ բերեալ հանգուցին ՚ի հոյակապ տաճարի սրբց առաքելոց , առ մարմնոյ սրբյն յովհաննու ոսկեբերանի՝ ՚ի կողմն մի խորանին : Այս այն եկեղեցի է , առ որ խօսելով ամծաբանին ՚ի մեկնիլ անդ իւրում յաթոռոյն կոստանդնուպօլսոյ՝ ասէր . խաղաղութի ըն ձեզ առաքեալք , գեղեցիկ յարկ բնակութե . և ահա նոյն տաճար գեղեցիկ՝ եղև հանգստարան սրբյն :

**Այլ յետ անցանելոյ այլ ևս դարուց՝ (թէպէտև ժմկն և եղանակն անգիտելի ,) բարձին**

ձին ոմանք անտի զնշխարս ածաբանին , և տարեալ 'ի Հռովմ՝ ամփոփեցին յեկեղեցւոջ ուրեք կուսաստանի՝ անուանեալ սրբյն Մարխամու՝ 'ի Մարտեան ( կամ յարեսեան ) դաշտի ։ Եւ զկնի ժմկաց բազմաց՝ յամի տն 1580 , երեւելին գրիգոր ժգերորդ՝ Հռովմայ Հայրապետ՝ շինեալ մատուռն մեծակառոյց 'ի մէջ Հոյակապ տաճարի սրբյն պետրոսի , որ 'ի վատիկան , անդ Հանգոյց ձեռամբ իւրով զպատուական նշխարս սրբյն գրիգորի ածաբանի՝ ընդ այլ նշխարս սրբց , շքեղ Հանդիսիւ 'ի 11 ․ աւուր յունիսի ․ բայց գտանին և մասունք ինչ յոսկերաց նր նաև յայլ տեղիս ․ և ամ ուրեք ամ յարգանօք պատուին 'ի Հաւատացելոց՝ 'ի փառս փառաւորելոյն 'ի խորհուրդս սրբց իւրոց ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Յոյնք 'ի յունվարի 30․ կատարեն զտօնախմբութ երից երեւելի վրդպաց միաժամայն , որ են բարսղի , գր ․ ածաբանի , և յովհ ․ ոսկեբերանի , հաշակելով ներբողանի պէսպէս 'ի վր երեցունց առ հասարակ ․ բայց առանձին և գլխաւոր տօն ածաբանին կատարի առ նոսա 'ի յունվարի ․ 25 ․ այն օր է՝ յորում գնեն և յայսմաւուրք մեր զվարս նր , և 'ի նոյն միջոց հայր գնելի տօնացուցի մերոյ զածաբանն 'ի կարգս ապայից ։ Այլ որ արժանի է ծանուցման , ուր այլք 'ի պատմչաց չյիշեն զօր վախճանի սրբյն , 'ի Ճառընտիրն մեր Բ , այլ և 'ի Հ ․ բացայայտ գրի , թէ հանգեաւ 'ի քս * 'ի յունվարի իէ || ։ Բայց զի լատինք ըստ հռովմէական վկայաբանութեան կատարեն զյիշատակ ածաբանին 'ի մայիսի ․ 9 ․ յայն հայեցեալ՝ հաւանական դատի բաբեպրոք բոլլանդեան , թէ սոյն սա լիցէ օր փոխման սրբյն յասատկացս ․

եալս. իսկ զօրն յորում կատարեն յոյնք՝ ընծայէ Ճմկն
փոխագրութե նշխարաց նր 'ի կոստանդնուպօլիս. որ է
անստոյգ և մտաշահձոյ պաշտպանութի. զի թէպէտ յամ
սեանն յունվարի սահ լինել փոխագրութ͞ին այն, բայց
ոչ սահ ուրեք (գոնէ առ յոյնս)՝ թէ 'ի մայիսի լեալ
իցէ վախճան նր. մինչ զի կարող է ոք սակս իբրև ընդ
հակ͞ս, թէ և մայիսի 9. իցէ Ճմկ փոխագրութ͞ն նշխա-
րաց սր͞յն 'ի կոստանդնուպօլսոյ 'ի հռոմ. և թէ 'ի հին
և 'ի սաոյգ պատմութեց սուսալ իցէ և եղեալ 'ի Հ. և
'ի Ճ. լինել վախճանի սր͞յն 'ի յունվարի. և այնչափ
առաւել՝ որչափ զի բաց 'ի հռովմէական վկայաբանու-
թէ՝ այլ վկայագիրք լատինացւոց ոչ այնչափ գնեն ըզ-
յիշատակ նր 'ի մայիսի, որչափ 'ի յունվարի. ոմ͞ն ոմանք
'ի յունվարի 11. ոմանք 'ի յունվարի 13. և ոմանք ևս
'ի յունվարի 29: բայց յայսպիսի խնդիրս եւրոպացիք ն
որ զեւր միտս հաւանեցէ:

(2) Ազբիւր ոմ մատենագրաց՝ որք գրեցին զվարս
մծարանին, նա իւրն մծարանն Ճանաչի. ա͞ղ և մեկն
վկայէ մատախ. յասելն. * Որք միանգամ գրիչք են
„ վարուց նր, ոչ այլուստեք՝ բայց 'ի նորին գրոց առին
„ զնիւթ բանից ||: Զնոյն խոստովան լինի և գրիգոր
երէց՝ որ Ճոխագոյն քան զամենին յօրինեաց Ճառօրէն
կմ ներբողական զպատմութի վարուց սր͞յն 'ի Ճ գա-
րու, յասելն թ͞ր հին թարգմանութե. * Ոչ ոք զն նորա
„ եթող ինչ մեզ գրով. այլ իբրև 'ի հասու սերմանեաց
„ ժողովեցից 'ի պարապոյ անդուոյ բանից նորա՝ որ ինչ
„ միանգամ յղնա նր են. և նմանեցայց խմաստուն Ճար-
„ տարապետի, որ զմանր քարինս առ մեծամեծօքն 'ի
„ մի ժողովեալ՝ դնէ առ 'ի պատրաստութի որմոց. և
„ այնու յարմարեալ կազմէ առուն կատարեալ թագա-
„ ւորի ||. և զարձեալ խօսելով զսր͞յն՝ թէ 'ի վերջին
հանդարտութե գրեաց ոտանաւորս են, յաւէ. * ուստի
„ և ինձ գտաւ առատագոյն նիւթ Ճոխութե առաջա-
„ դրութե բանիցս ||: Ասացի՝ թ͞ր հին թարգմանութե. զի
այս գործ գրիգորի յոյն երիցու, որ կայ տպագրեալ
յունարէն՝ հանգերձ լատին թարգմանութ͞բ 'ի սկիզբն
գրոց մծարանին 'ի հատ. ա͞, նոյն այն է՝ զորոյ զհայ-
կական թարգմանութի զոյգ ը͞ վարուց սակեբերանին
ունիմք առ մեզ 'ի հին մատենի գրեալ 'ի խնդրոյ օծնի
սեաստոսի (որ Ճմկակից էր վկայաբերին մերում, և
նախահաւ լամբրոնացւոյն). ուր 'ի վերնագրի դնի.
* Պատմութի վարուց սր͞ հօրն մերոյ մեծին գրիգորի
„ մծա

„ Մատեանն Նաղխաղու եղեալ . զոր Թարգմանեաց 'ի յու-
„ նականէն 'ի մերս՝ որբազան կԹղկին հայոց մեծաց գրի-
„ գորիս վկայասէր || . և սկիզբն բանիցն ունի այսպէս .
* Այսօր հրաւիրեաց զմեզ ո՛վ արք եղբարք՝ մեծն
„ գրիգորիս Մատեանութ ճոխացեալն 'ի հոգեւորական
„ իմաստութիս իւրոյ Ճգնաւորական բարեպաշտութեն
„ իմաստիցն հանդէս || : Նոյն գործ է և օրինակեալն
'ի Ա. Ճառընտրի . բայց ոչ օրինակ յօրինակէ տարբե-
րի ըստ առաւել և ըստ նուազ զգուշաւորութ գրչաց : Եւս
առաւել ոչ սակաւ տարբերուԹի ունանի ըստ այժմու-
յունարէն բնագիրն, և ըստ հին Թարգմանութեն հայե-
րէն՝ ոչ միայն ըստ բառից, այլև ուրեք ուրեք յոյժ բա-
նիցն և յընԹացս պարբերութեցն . բայց քանզի ըստ գա-
ղափարութե և ըստ հնրհ ընԹացից է մի և նոյն գործ, վսյ
և զհայկական Թարգմանութին նշանակեմք 'ի ծանօԹու-
Թիս ըստ անուամբ բուն հեղինակին՝ որ գրիգորի երի-
ցու :

Այլ է և հեղինակ միւս պատմութ վարուց Մատեա-
նին՝ գտեալ 'ի Բ. Ճառընտրի մերում . որ ոչ միայն
բազմաց տարբերի յընԹացից գրիգորի երիցու, այլև
ինչ ինչ նորանոր աւանդէ՝ զոր ոչ գտանեմք առ այլ
մատենագիրս . և ոչ գիտեմք՝ Թէ ո՛ իցէ հեղինակ այսր
գործոյ, որ է նոյնպէս հին Թարգմանութի : Իսկ Հ.
է քաղուած բաղադրեալ կէս մի յառաջնոյն, և կէս մի
յերկրորդ օրինակէ գտեալ 'ի Ճառընտիրս ազգիս : Ուր
Ց. և Լ. են լոկ քաղուածք առաջնոյն, որ գործոյ գրի-
գորի երիցու : Թո՛ղ և զայլ վկայագիրս՝ որք 'ի վր
նոյն գործոյ պատահեսցեն և ինչ ինչ մասնաւոր պա-
րագայս, անձամբ անձին քաղելով վերստին զայլ բանս
'ի բուն գրոց Մատեանին, և յայլ եկեղեցական պատ-
մագրաց . ըստ սմին օրինակի աշխատասիրեաց և բարո-
նիոս՝ յետ հանդէսելոյ նշխարաց սրբոյն 'ի վատիկան առ
գրիգորիւ ժգ. . քանզի 'ի յաճախել հռովմայեցւոց 'ի
համբոյր նշխարաց Մատեանին, և 'ի հետամուտ լինել
պատմութ վարուց նր, ձեռն էարկ բարոնիոս 'ի Թա-
խանձելոյ բազմաց նորոգ հաւաքել զվարս Մատեանին
'ի գրոց նր . և նուիրեաց նմին գրիգորի պապին . զի
Թէպէտև ասէ անբաւական զանձն իմ համարեալ՝ ասէի
ցժողովս, * աւանիկ կայ Ճառ ներբողեանի գրիգորի ե-
„ րիցուն 'ի վր նաշխանդացւոյն ||, այլ նք ասէ՝ * չառ-
„ նուին յանձն զիմ հրաժեշտ . իսկ վս գրիգորի երիցու-
„ ասէին, Թէ նա ոչ այնչափ զվարս, որչափ զՃառս գա-
„ վեա-

,, վեասս գրեաց . և բազում ինչ է՝ զորոյ զանց արար գրել ,
,, և զբազմաց համառօտեալ է անց . ինչ ինչ այլայլագրեա_
,, մէ, և ինչ ինչ ոչ անվրէպ միաձայն ընդ Ճշմարտութեան պատ_
,, մութն ||: Բայց յայտ է քննողաց՝ զի զայսցուն երաց ,
սոյն ասէ, նոյն է՝ որ ինչ կայ առ Գրիգորի երիցու , և
առ Բարսեղիոսի . զի և աղբիւր երկոցունց է մի, այսինքն գրո_
ւածք նորին Ածաբանի . և մեք որպէս 'ի վաղնջաց ա_
ռաք , նոյնպէս և յաղբերէն Ճշմարտեալ՝ յաղբիւր անդր
ընդ կարի մերձեալ հոգացաք զբանս կարեւորս:

Այլ ո՛ ոչ գիտէ ; թէ՝ և որք խոստանան 'ի բուն աղ_
բերէն եւեթ ըմպել, այսինքն 'ի գրոց Ածաբանին, ոչ ունին
զնոյն կարգ պատմութեան անխառն բովանդակել . այլ հա_
րուսին և յայլ եկեղեցական պատմագրաց և 'ի գործոց
ժողովոց հաւաքել բազում ինչ 'ի լրումն բանից . սոյն
և զգովութիւն սրբոյն՝ զոր սէրն առ խոնարհութեան բառ կա_
րի առաւել , յայլոց առնու հարց և 'ի վկայից ու_
սանել . զի թէպէտև արգիւնք նորա լիով վկայեն, բայց
և ճառաչոյք արգեանց նորա յայտնագոյն խոստովանին .
սոյն է ոտեանել 'ի վկայութիւն ասացողաց 'ի մասանց
գրոց Ածաբանին, զի մեծամեծս խօսին զնմէ՝ այլ ոչ
ինչ չափաւորաց՝ ամ նախնի մատենագիրք: Մեզ շատ
լիցի պատմելի բան հաւաքինոսի Ժամակից հեղինակի .
զի ասէ . * Գրիգոր՝ այր ածոյ անհամեմատ , որ բա_
,, նիւ և գործով ծաղկեալ՝ զանազանափայլ լոյս գի_
,, տութեան ծագեաց յեկեղեցիս քո . զի զայն ինչ վարդա_
,, պետեաց , զոր արդեամբք կատարեաց . . . . Ոչ մարթ
,, զոք այլ ('ի վկայից) գտանել՝ ընտիր քան զնա վարուք ,
,, և առաւելեալ 'ի սրբութեան . և ոչ 'ի պերճախօսութեան
,, մասին գերազանց և ականաւոր, և ոչ հաւատով մաք_
,, րագոյն և ուղղագոյն . և ոչ գիտութեամբ լիագոյն և կա_
,, տարելագոյն: Սա միայն է , զորոյ զվկայութիւն չկա_
,, րեն և ոչ իսկ անմիաբանքն յիւրեանս՝ յիւրեանց
,, կողմն ձգել և վիճել , այլ սովոր են առնել զայլոցն .
,, այլ այնպիսի փայլէ արդեամբք առ այս և յեկեղեցիս
,, այս , զի որ միանգամ ժպրհեսցի իւիք իրօք հերձել
,, վկայութեան նորա , նովին իսկ՝ զի առաւելագոյն ինչ իմա_
,, ցաւ՝ հերետիկոս գտանի . մինչ զի յայտնի նշանակ գը_
,, տանի զարտուղի լինելոյ 'ի հաւատոյ՝ նորին ածոյն , որք
,, ոչ միաբան գտանին ընդ Գրիգորի 'ի հաւատս ||: Այս և
իրաւամբք ասէր հերոնիմոս . * այնպիսի վկայաւ պար_
ծիմ և ցնծամ ||:

Զնոյն վկայեն արդեամբք և համօրէն Ածաբան վկայք

եկե_

եկեղեցւոյ՝ յաւուրս անուն գրիգորի և այսր. զի վկայութիւնք բանից ածաբանին գրիգորի զարգարեցին ըզվկայութի իւրեանց, է զի յանուանէ կոչելով, և չամ ևս այն է՝ զի սերտողաբար զբանս նր իւրացուցանելով, համօրէն յետագայ վրդպք յունաց և հռովմայեցւոց և հայոց. ոպ յայտ է՝ որոց դեգերին 'ի գիրս հին և նոր վրդպաց :

Բայց որ մեծն է՝ նոքին իսկ հերձուածողք, զորոց զաղանդս հզօրեղապէս ջախեաց ածաբանն, մեծապէս ակնածէին յիմաստուէ նր. թ որում և փիլիսոփայքն արիստեան մատենագիր՝ Ժմկակից սրբյն, հիացմամբ մեծաւ խօսի զգրիգորէ. և ցուցանէ զնա գեր 'ի վերոյ լինել քան զամ վրդպս ծաղկեալս յառաջ քան զնա, և առաւել յաղթահարիչ աղանդոյ իւրեանց քան զմեծն աթանաս. ոպ և առ մեօք երևելի էին ամէ նաև բարսեղ կեսարացի, և ապողինար լաւոդիկեցի. այլ գրիգոր գերազանցեաց զամենեքումբք՝ գրով և բանիւ : Եւ յիրաւի. զի իւրաքանչիւր ոք 'ի վրդպաց է որ յայսմ մասին առաւելու, և է որ յայնմ, ոմն 'ի գրուէ, և ոմն յատենախօսուէ. ոմն առաւել յարտաքին գիտութիս, և ոմն յածայինս. կէսք 'ի բարոյականն, և կէսք 'ի տեսականն. իսկ երանելին գրիգոր զամյն գոգցես ձիրս յինքեան ունէր միահամուռ հաւաքեալ՝ 'ի տուչուէ շնորհաց հոգւոյն :

(3) 'Ի Հ. ամի ածաբանն լինել * 'ի քաղաքէն ալխազու ||. ոպ և յայլ գիրս հայոց գրի * անձիանձու ||. և 'ի Ճ. * ծնեալ 'ի քաղաքին նազիանզու ||. այլ մեք եդաք ուղղագրելով թ յունականին՝ * նազիանզու ||: Ընդ որում նոյնացուցանել երևին ոմանք զմերձակայ աւանն արիազոն. որոյ եպս ամի լինել 'ի Հ. հայրն գրիգորի : Այլ է և գիւղն արիանզ 'ի հանդրուանս նազիանզու՝ տեղի ծննդեան գրիգորի անուանեալ 'ի նիկետասայ :

(4) Յայտնապէս ամէ ածաբանն զմօրէն իւրմէ 'ի ճառն. ձի. լինել * անդրանիկ 'ի ծնէ՝ 'ի նախնեաց և 'ի սկզբանց
,, ածասէր, և քսասէր. և հայրենի ժառանգուէ ըն-
,, կալեալ զառաքինուէ ||. և ոչ ոպ զայր իւր 'ի վայրենի ձիթենւոյ 'ի բուն ձիթենի պատուաստեալ. և բազմօք հաստատէ՝ թէ կինն եղև պատճառ դարձի առն 'ի ճշհ ճշմարտուէ : Այսպ յասել ոմանց 'ի յոյն վկայաբանից՝ թէ ծնօղք ածաբանին էին յառաջագոյն հեթանոս, կարի լայնաբար խօսեցան՝ յոքնակի բանիւ, որ եղակի ևեթ ճշմարտի 'ի վերայ հօրն :

Ըստ

Ըստ նմին և գրիգոր երեց, կմ որ նոյն է՝ Ճ. Ա. յար և նման բանից ածաբանին գրէ. * Իսկ մայր նր սբ՝ և ,, 'ի սբ նախնեաց ||: Զնոյն հաստատէ և Ճ. Բ. յաւելուածով մանաւոր բանից՝ որ յղբս հօրն, այսպ. * Նա ,, ինքն ոչ ունելով զքահան հաւատոն զածգիտուն՝ ,, քան թէ զհեթանոսական մոլորութն, 'ի սան թագա- ,, ւորին պատմեալ առ գիտկետախանոսին, և սուացեալ ,, զպետուն 'ի մր եօթն գործակալաց 'ի դրան արքու- ,, նի. ունելով և կին 'ի հաւատացելոց՝ անուն նունի ||: Զայսպիսի սրտիւ հօրն ոչ գտանեմք առ այլս. բայց թէ էր այր մեծատուն, կմ գոնէ ոչ անմշան ոք, յայտնի ցուցանեն և այլք. զի թերևս գործակալուն ինչ ունէր արքունի իշխանութբ 'ի կապադովկիա:

Ածաբանն 'ի խօսելն զգարձէ նր՝ ասէ. * այնչափ է- ,, բարութբ զհետ ընթացաւ Ֆդմարտութե, մինչև ծառայ- ,, եալ նմ 'ի մորէն և յընչիցն ||. որով կարծի գեռ երիտասարդ կամ պատանեակ զնա ցուցանել. բայց յետագայ գործք նր յայտ առնեն՝ թէ յայնժամ անցեալ էր զխնամինիւք:

(5) Զազանցելոյ՝ որք եղեն 'ի միրաութե գրիգորիսի հօր ածաբանին, գրեթէ ամ պատմիչք յիշատակեն, ունելով հիմն և 'ի բանից ածաբանին. իսկ թէ առաջիկայ եկին անդ և հայրապետքն՝ զորս յիշեցաք, մեկն գրէ մերս խորենացի 'ի խօսելն զդնալոյ սբյն արիստակեայ 'ի ժողովն նիկիոյ. Բ. 86. այսպ. * Որոյ երթեալ՝ հասանէ մեծին ղևոնդի. և հանդիպի այնմ (այս. յայնմ ,, ժամուն), զի միրաէր զգրիգոր զհայրն գրիգորի ,, ածաբանի. որ իբրև եղ 'ի ջրոյն, լոյս շուրջ փայլա- ,, տակեաց զնովաւ. զոր ոչ ոք 'ի բազմութեն եսես, ,, բայց միայն ղևոնդիոս՝ որ միրաէրն, և մերն առիս- ,, տակէս, և եւթաղէ եգեսիայ, և յակովբ մծբնայ, ,, և յովհան պարսից եպիսկոպ, որ նոյն չուեզոք ուղևորէին ,, 'ի ժողովն ||: Սմին նման գրի և 'ի Ճ. Բ. * և միրաէր ,, հայրն գրիգորի ածաբանին 'ի ձեռն երանելի հայրա- ,, պետին ղևոնդի, որ ձեռնադրեաց զսբն գրիգոր ըզ- ,, հայոց լուսաւորիչն: Պատահի անդ և սբն յակովբ ,, մծբնայ հայրապետն, և նեփթաղ եգեսիացւոց ,, եպսն, և սբն առիստակէս՝ որ 'ի հայոց առաքեալ ,, էր սակս ժողովոյն նիկիոյ որ 'ի քաղաքումն արիոսի չա- ,, րափառութե. և տեսեալ սոցա անդ յայտնի զշնորհս ,, հոգւոյն սբյ Ֆառագայթաձև փայլելով զածայինն ա- ,, ւազանաւն. Է. որ սքանչացեալ՝ օրհնէին զամենասբ

,, զեր-

„ զերրորդութիւն . և զգեցեալ նորա զՔս վաղվաղակի „ ըստ առաքելական բանին, թէ մկրտեալքն 'ի Քս՝ զՔս „ զգենուն ||։

Ուր արժան է գիտել, զի որպէս խորհեցին, և Ծ. Բ, նոյնպէս և բարոնիոս 'ի վարս ածաբանին՝ գնեն, թէ մկրտօղն էր սբն Ղեւոնդ. այլ ինքն ածաբանն ցուցանէ՝ թէ թէպէտ սբն Ղեւոնդ և այլ հայրապետք առաջինկայ էին, բայց եպսն նազիանզու էր՝ որ մկրտէր. զորոյ զանուն չյիշէ. բայց ասէ՝ թէ գուշակեաց՝ զի զոր կնքեացն, * յաջորդելոց է ինքեան յեպսութն ||։ Եւ ըստ այսմ գրէ բարոնիոս՝ հնչէ առաջին կարծեաց իւրոց, 'ի տարեգիրս. յամի 325. հմր. լԸ. * յետ սա_ „ կաւուց՝ աղ եպսն այն, որոյ մկրտեալ էր զնա, փո_ „ խեցաւ 'ի կենցաղոյս . . . . և յաջորդեաց հայր նր (ըստ „ ածաբանին )||։ Այլ 'ի միաբանել զայսոսիկ՝ ասելի է, թէ հանգխագիր մկրտութն էր սբն Ղեւոնդ իբրև եպսապետ գաւառին. իսկ անմիջական մկրտօղ՝ եպսն նազիանզու իբրև առաջնորդ քաղաքին. և կմ անդրա_ դարձեալ. մինչ զի երկոքեան եա ասին մկրտել իբրև գործակիցք իրերաց ։ Զայս հաստատէ և ասելն ածա_ բանին վն ակամայ սպասաւորացն 'ի ժամու մկրտութե. * հոգևորական իմն վրիպակս՝ անախտղծ վճարութե „ վճռքն առնեն ||. ըստ մկրտօղ հայրապետացն՝ 'ի կատա_ րելն զկարգ մկրտութե՝ նաև ինչ ինչ ըստ կարգի ձեռնա_ դրութե արարին. ուր աչս բազմաւորակի խօսելով յայտ առնէ, թէ պաշտօնակցութբ միմեանց մկրտեցին ։

(6) Գր. երէց ասէ զնոննեայ. * անոնչայր մանկան ար_ ուէր ||. այսպէս գրէ և ինքն ածաբանն յառանաւոր վարս իւր. յորմէ մակաբերութբ եղեալ է 'ի Հ. թէ * ա_ „ մուլ էր, և զաւակ ոչ ունէր ||։ Ըստ առաջնոյն մարթ է ասել, թէ քոյր ածաբանին գորգոնիա (որ 'ի Հ. գրի՝ գորգունա) իցէ երիցագոյն քն զնա. բայց հայտ_ ցեալ յայն՝ զի մօտ 'ի ծերութե չէր լեալ նոցա այլ զա_ ւակ. 'ի դէպ է և զերկրն հաստատել՝ թէ բնաւ իսկ անզաւակ էին մինչև 'ի ծնունդ գրիգորի. և նոննի՝ որ ցանկայր զաւակի, խնդրէր յԱյ զաւակ արու, և Տր ետ նմա զերկուս ուստերս, և զմի դուստր, որք յանուանէ յիշատակին ։

(7) Վն կեսարիայ քաղաքի՝ ուր զառաջինն եմուտ գրիգոր 'ի դպրոց, անմիաբան են մատենագիրք. ոմանք ընդ բարոնիոսի իմանան զկեսարիա պաղեստինոյ, ուր ծաղկեցաւ երևելի դպրոց գիտութե, որ և եղև ու_

սումն

սուսերաբան որոգինեայ, պամփիւղոսի վկայի, եւսեբի կեսարացւոյ, և այլոց երևելի արանց: Իսկ այլք ը̅ հերմանոսայ իմանան զկեսարիա կապադովկացւոց զերկիր ծննդեան ո̅րբյն բարսղի. ուր զառաջինն ասեն ուսան գրիգոր և բարսեղ զսկզբունս մակացութեանց, և ծանօթացան միմեանց: Բայց պարտ է ասել՝ թէ յերկուսին ջոկս իսկ համանուանս ուսաւ ածաբանն. զի բացայայտ գրէ գրիգոր երէց. թէ նախ չոքաւ 'ի կեսարիա (յուսումն). և ապա նաւեաց ասէ 'ի պաղեստին (նովին փութով ուսման). ուր բացարձակ կեսարիա ասելով՝ իմանայ զակնաւորն կեսարիա կապադովկացւոց ոչ ինչ հեռի 'ի նազիանզայ. և պաղեստին ասելով՝ իմանայ զերևելի ուսումնարանն պաղեստինացւոց. այն է կեսարիա փիլիպպեայ:

(8) Ծ̅. Բ̅. զտեսիլն ասէ լինել առ գրիգոր. և այն՝ կրկնակի; գրելով այսպ̅. * Եւ տագնապեալ գրիգորիոս
„ ահիճ մեծաւ, տեսանէր 'ի տեսլեան կին՝ մերձ զո-
„ լով ըմբռնել զնա 'ի նաւէն, և ոչ տայր շարժիլ նմ
„ 'ի նաւէ անտի. և յարուցեալ զեկոյց զտեսիլն նա-
„ւորդացն: Իսկ մի ոմն 'ի նոցէ ասէ. կինն՝ զոր տեսեր,
„ նշանակ է ծովուս, ուստի ոչ ես զերծանելոց... Եւ
„ 'ի բժշ̅մ տրտմութե̅ եղեալ ննջէր. և տեսանէր այլ իմն
„ տեսիլ հրաշալի. կին մի երևեալ՝ որոյ տեսութիւն զա-
„ ռաքինութիւն զուշակէր, մերձենալովն ըմբռնէր զնա
„ 'ի նաւէն, և ձգեալ կորզէր զնա 'ի ցամաքն. և զար-
„ թուցեալ պատմէ զտեսիլն: Եւ նց̅ ուխտեալ՝ ասեն.
„ արգարև բարեպաշտութեհ ծնօղն քո՝ 'ի ձեռն նորա
„ (իմն. իւր) ը̅ունակ աղօթիցն յափշտակեաց զքեզ
„ 'ի խստութէ̅ ծովուս. ուստի և մեք ապրիմք՝ զերծա-
„ նելով նորին աղագաւ և աղօթիւք||: Այլ զոր մեք եգաք՝ առաւել համաձայն է բանից ածաբանին. ըստ որոյ գնեն և Ծ̅. Ա̅. կմ̅ գրիգոր երէց, և այլ պատմիչք. այլ է՝ թէ նոյն տեսիլ երևեալ իցէ միում 'ի նաւորդաց և գրիգորի միանգամայն:

(9) Դժուարին է որոշել զտեղի և զժամկ մկրտութե̅ ածաբանին. ջ̅զի բարոնիոս դնէ՝ թէ անը̅միջապ̅ ընդ հասանել 'ի նաւահանգիստ ելլադայ մկրտե̅լ իցէ. իսկ գրիգոր երէց, և անանուն պատմիչ փոխադրութե̅ նշխարաց ս̅բյն՝ ասեն լինել յետ բժշ̅մ ժմկաց 'ի դառնալ իւրում յաթէնայ յերկիր իւր: Բարեպրոք բոլլանդեանն է զի ը̅ միջինն ընթանայ, դնելով ոչ անմիջապ̅, և ոչ զկնի դարձին յաթենայ, այլ 'ի միջոցի իմիք պարապոյ,

'ի զերծանել 'ի վտանգէ ծանր զեռնաշարժութե՝ նախ Ձ զբարեկամանալն Է բարսղի յաթէնս • և Է զի ընարէ սակս՝ թէ յետ դարձին 'ի հայրենիս՝ յետին հօրէ իւրմէ իցէ մկրտել • * զի ոմն այլ ումեք ընծայեր (ասէ) զայս պաշտօն || : Համաձայն է և բան Ծ • Բ • իբր համաձայն և անհամաձայն այլոց • քզի նախ զալեկոծութեն ոչ դնէ 'ի գնալն յաթէնս, այլ 'ի դարձին յեկադայ 'ի տուն իւր • և ապա յարէ • * և դադարել ծովն՝
,, նաւեալ հասին 'ի քաղաքն , և պատմեալ զանցս ան_
,, ցիցն հանգերձ կրկնակի տեսլեամբն՝ հանգիտի եղ_
,, բօրն կեսարեայ • և ձեռնեալ զինքն՝ փութանա մկրտի,
,, ընկալեալ զգրոշմ քշտական որ հաւատոյն, կրօնաւո_
,, րն վճռկի 'ի տեղւոջն՝ որ անուանեալ կոչի արկադ_
,, նոս || : Աստի կրկին խմաստ քաղի • առաջին՝ թէ հասեալ 'ի քզքն , ԺԹ 'ի կոստանդինուպօլիս , ուր հանդիպեցաւ եղբօր իւրում կեսարիոսի , անդ մկրտեալ իցէ • և ապա եկեալ յարխազոն 'ի հայրենի կալուած իւր՝ կրօնաւորեալ իցէ : Եւ երկրորդն , թէ հասեալ 'ի Ֆզք իւր 'ի Նազիանզ՝ անդ ընկալեալ իցէ զմկրտութի • և կրօնաւորեալ յարխազոն : Զերկրորդս զայս գտանեմք և 'ի Հ • ուր ասի՝ թէ 'ի վերջին դարձին իւրում յաթենայ 'ի տուն իւր՝ կրեաց ալեկոծութի , և գնացեալ 'ի տեղին իւր՝ մկրտեցաւ :

(10) Այլ մեծ ևս դժուարութի կայ յորոշել զչափ հասակի Ածաբանին՝ 'ի ժմի գնալոյ յաթէնս և դառնալոյ և քհնյանալոյ , զորմէ կախին և հաշւէք ծննդեան և վախճանի նր , կամ բովանդակ ամաց կենաց նորա : Զինչ ամ դժուարութե հաստատեալ է 'ի կրկին համաձայն ժմկագրութիս , զորս վարէ նա ինքն Ածաբանն • քզի նախ՝ 'ի խօսել իւրում զընթացից ուսման իւրոյ յաթէնս , և զբարեկամութէն Է բարսղի , յատանաւոր վարս իւր , համար • ԺԷ • ասէ բառիւքս այսոքիւք՝ ըստ յունականին • * Եւ Ֆզի բզմ ժմկ մաշեալ եր 'ի բանս ( ԺԲ յուսմունս ), արդէն երեսներորդ լինձ գրեթէ այն էր ամ || • ուր բարեպարբ խմանայ զերեսուն ամս ուսման • իսկ յելսն յաթենայ ասէ զնա լինել ԾԸ ամաց : իսկ բարոնիոս խմանայ զերեսուն ամ հասակին • ընդ մին և 'ի Հ • գնի՝ թէ երեսնամեայ դարձաւ յաթենայ : Նոյնպէս խմանամք և զհամաձայն կարծեցեալ բանս գրիգորի երիցու , որ ըստ այժմու յունական օրինակի գրէ այսպէս , * զերեսներորդն արդէն լցեալ ամ յուսմունս , այնուհ 'ի հայրենիս դանձն պատսպարէր || • ուր 'ի հայե_

րէն թարգմանութեն չէք բառդ ուսմունք • այլ գրի այսպէս • * և էր այնուհետև ամաց իբրև երեսնից, յորժամ եկն առ ծնօղսն իւր ||: Եւ այս երևի աստ՝ թէ չկայցէ այլ ինչ ընդդիմութի • թող զի ոչ առաջին կարծեաց, նոյնպէս և երկրորդին օգտէ՝ ասելն ածաբանին յայնժամ զհայր իւր ծերացեալ գոլ:

Բայց անդրէն զայլ տարակոյս հանեն քննիչք • Զի գրէ երկրորդ Նա իւրն ածաբանն անդէն 'ի համարն • ճէ, թէ հայր նր 'ի սախայել զնա՝ լինել գործակից ինքեան յառաջնորդութեն նաւախնդու, յորդորէր բանիւքս այսուքիւք • * Զև ես զայնչափ չափեցեր կեանս, որչափ էանց նուիրագործութեց ինձ ժմկ ||: Որ է ասել՝ ոչ յայտ է անպաշար մօտք վերծանողաց, թէ ոչ են ամք կենաց քոց այնչափ, որչափ ամս զքհնյական պաշտօն վարեալ է իմ • վն իբրև ժրագոյն կարող եմ օգնել ինձ • և անտի յայտնի լինի՝ թէ ածաբանն 'ի քհնյութե հօր իւրոյ է ծնեալ • և թէ 'ի քհնյանալ իւրում չէր անցեալ զքառասնամենիւք, և յեպսանալն՝ չև էր եօթանասնամեայ • և այսպէս անդրէն սուտգի՝ թէ նախայիշեալ երեսներորդ ամն յաթէնս՝ յայտ առնէ զժամանակ կենաց նորա, և ոչ ուսմանն:

Այլ չգիտեմ զիարդ լատին քննիչք զբառդ նուիրագործութե առնուն աստանօր փխկ եպսութե՝ առանց ընդբանս ինչ ածելոյ • վն և զելս իրացն չգտանեն • Զի բարոնիոս համարի զայս բան՝ չափազանցական ձև ասութե լինել • և այլք յայլեայլ կարծիս բերին • մինչև հարկ համարի բաբեալրոզ 'ի նոր հնարս ձեռնարկել՝ գրելով այսպէս • * Բանք հօրն գրիգորի առ որդին՝ որք
,, զեմ քննիչս տագնապեն, եթէ դոյզն ինչ սրբագրութե
,, ուղղագրեսցին, թուի թէ դիւրաւ մարթին վերա-
,, ծիլ յայնպիսի միտս՝ որ ոչ օտարասցի 'ի պատմութե
,, և 'ի բանէ բազմամեայ գոլոյն • Ջ է՝ եթէ զայն, որ
,, գրի • • • ouou տիէլթէ թիսիոն էմի խռօնօս ( որչափ
,, էանց զոհից ինձ ժմկ ), համարեսցուք այլազգ գրեալ
,, 'ի հեղինակէն՝ այսպէս • ouou տիէլթ՝ էգխիոն էմի
,, խռօնօս • զի յայնժամ իմաստ բանին լինի • որչափ
,, էանց ամաց ինձ ժմկ ||: Եւ թէպէտ անհեթեթ գտանի այս իմաստ, (զի ո՞ ոչ գիտէ՝ թէ որդին չունի զայնչափ ամս՝ որչափ հայրն,) բայց բաբեալրոզ հնարի զառաջս առնուլ այսր անպատեհութե՝ ասելով ԺԸ իւրումն նախապաշարման • * Եւ ոչ իսկ յանդգնաս լինի ասել
,, հօրն առ որդին, ոչ մարթ է կարծել ոմանց, թէ

,, չև

,, չև ևս հասեալ իցէ 'ի չափ հասակի իւրոյ. վասն զի
,, բանն էր յղփա յանձն անձկոյ զանառանութեն եպսութեն
,, նախանձու. յորմէ որդին ազատ կամելով կացուցա-
,, նել զանձն, որ էր յայնժամ հ̃ը ամաց... զհասակն
,, իւր 'ի մէջ առնոյր իրաւամբք՝ թէ այժմ է ինձ դէպ
,, ժմկ ծառայելոյ այ և զանձն իմ հոգալոյ: Իսկ հայրն ևս
,, առաւել իրաւացի ախնի առնէր առաջի՝ վս գոլոյն
,, իւրոյ երբ ծանեայ, ասելով՝ թէ դու հեռի ես յոյժ
,, տակաւին 'ի ծերութենէ իմմէ... և այսպ լուծանի
,, կնճիռն, որ այլուստ անլուծանելի երևի ||: Զայս
այսպ խօսի այրն բազմախնդիր, քզի եղեալ է 'ի մտի՝
թէ յոչ գնել այսպէս՝ հարկ լինի յեպսութե հօրն գնել
զծնունդ գրիգորի. որ է անտեղի:

Այլ մեզ չկայ ինչ հարկ զայդ գնելոյ. զի իմանամք 'ի
բանից անտի ծծաբանին՝ 'ի ժմկս քհնյութե հօրն ծնել
զնա գոլ յռջ քհ զեպսութե. և ունիմք 'ի հաստատութի
այսմ և զԾ. Բ. ուր յայտնի գրի՝ թէ յետ մկրտութե
հօրն (յետ որոյ փութով քհնյացաւ նա,) ծնաւ գրի-
գոր, և յետ նր կեսարիոս եղբայր նր, և այսպ միաբա-
նին ամ կարծիք հաստատունք: Գիտեմք՝ զի բարեպաշտ
անդրանիկ գնելով զծծաբանն, ուստի և երիցագոյն
ոչ միայն քհ զկեսարիոս, այլև քհ զգորգոնիա, միանգա-
մայն և չտալով բաւական ժմկ 'ի քհնյութե հօրն մինչև
յեպսութի, չգտանէ միջոց ծննդեան հարազատաց նր.
բայց առաւել է նախ՝ թէ հաւանականագոյն է գնել անդ-
րանիկ զքոյր նր զգորգոնիա, հայելով 'ի բան ծծաբա-
նին և գրիգոր երիցու՝ զոր նշանակեցաք վերագոյն՝ թէ
նուէր ցանկայր արու զաւակի. որ ը̃ իմիք ենթադրէ
ունել յառաջագոյն զդուստր. և երկրորդ՝ չէք ուստեք
յայտնի ապացոյց, թէ չիցեն քանի մի ամք անցեալ 'ի
քհնյութե հօրն մինչև յեպսութի նր.

Որպ և իցէ՝ բարեպաշտ յետ բզմս վիճելոյ, ը̃ կարծեաց
առաջի առնէ ժմկագրութի այսպիսի. գրիգոր ծծա-
բանն և բարսեղ կեսարացի թուին հասակակից. և եր-
կոքին ևս նախ քհ զամն տն 300. ծնեալ. քզի յամի՝ 367. ա-
լևորեալ կոչէ գրիգոր զբարսեղ. զոր չէ մարթ ասել
ըստ հաշուի այլոց՝ որք ի̃ ամաց գնեն զնա : և յամի տն
371. մտ 'ի վախճան հօր իւրոյ՝ կոչէ ծծաբանն զանձն
իւր ծերացեալ ալևոր. ուստի գէթ կ̃ ամաց պիտէր
լինել. բայց բազմօք աւելի ը̃ բարեպաշտ, որ գնէ
աստանօր՝ թէ ծծաբանն 'ի գալ իւրում 'ի կոստանդի-
նուպօլիս՝ էր աւելի քհ ութսուն ամաց. զոր այլք հաղիւ

Նորին · և այսմ կարծեաց հեղինակ է Ծ· Բ· ուր գրէ ·
Թէ յետ դարձին Գրիգորի յաթոռոյն կոստանդնուպօլ-
սոյ յերկիր իւր, * յորժամ սբն բասիլիոս հանգերձե-
,, էր բարի անուամբն ննջել յանանց և յանծերանալի
,, կեանսն, գնաց Գրիգորիոս առ նա 'ի կեսարիա, և
,, գրեաց 'ի թաղումն նր ներբողական ճառս, և դար-
,, ձաւ անդրէն յարիազոն ||:

Այլ թերևս հին այսր վրիպակ կարծեաց լեալ իցէ
հին աւանդութին այն ոմանց, զոր 'ի կիր արկանէ գրի-
գոր երէց՝ յասելն վս Ածաբանին · * Երկոտասան ամ
կալ նմա 'ի բիւզանդիա՝ բանք են ||· Զի որոյ և նիկե-
փորոս պատրիարգ 'ի տարեգրութե իւրում, և Հ · և
Ծ· Բ· պարզապէս դնեն, թէ ժբ ամ հովուեաց Ածա-
բանն զեկեղեցին կոստանդնուպօլսոյ : Այլ հարկ է ա-
սել՝ թէ 'ի վաղուց հետէ վրիպակաւ գրչուէ մտեալ է
թիւն ժբ, փոխ դնելոյ ը և եւթ · զի նա երկու ամ և եւթ
ամբողջ նստաւ 'ի քաղաքի անդ մինչև 'ի լինել ժողո-
վոյն կոստանդնուպօլսոյ · յորում ժմկի հրաժարեալ
դարձաւ 'ի գւռ իւր · ոպ միաբան գրեն ամ ժմկագէտք :
Մինչ և զայն կարէ ոք կարծել, թէ գործք Ածաբա-
նին 'ի թգրական քաղաքի անդ թուին զաւելի ժա-
մանակ պահանջել · և բաւական չերևի երկեմեայ կմ
եռամեայ ժմկն եդեալ 'ի բարոնիոսէ · զի գալ նմա
յամի 379 · և դառնալ 'ի 381 : Եւ սակայն նաև նոքա՝
որք ժբ ամս ընծայեն, այնպիսի ինչ ասեն՝ որ ըստ այ-
լում ենթադրութե հարկաւ ը ամաց է նշանակ · քզի
գրէ 'ի Ծ · Բ · այսպ · * Իսկ բարեպաշտ թգրն ( թէո-
,, դոս, զորմէ է բանն անդանօր ) յղէ առ բասիլիոս,
,, և ծանուցանէ զվտանգն որ 'ի հերձուածոցն, առա-
,, քել զայր ոք ճարտարաբան և իմաստասէր առ ինքն ·
,, և առաքեալ զսա ( զԳրիգոր ) սբյն բարսղի · և գայ
,, հասանէ 'ի քաղաքն || · և զկնի գրէ իբրև երկրորդ
գնալ · * աղերսիւ սբյն բարսղի գնաց երանելին Գրի-
,, գոր 'ի կոստանդինուպօլիս 'ի կոչումն թգրացն վա-
,, ղենախանձութի և թէոդոսի ||:

Ուր թէ հարկ ենթադրութե ժմկագրաց ձեռնարկել այսպ·
թէոդոս ոչ թգրեաց յառաջ ք զամն մն 379 · և Գրիգոր
ոչ եկաց 'ի թգրական քաղաքի՝ անդր ք զժմկ ժողովոյն
կոստ, որ եղև յամի 381 · ապրեմն եթէ առ թէոդոսիւ
լեալ իցէ գալուստ Ածաբանին՝ ոնց ամիւն ընդունելին,
ոչ լինին ժմկք կալոյ նր 'ի կոստ աւելի ք զմիջոց երից
ամաց · թող զի ոչ ոք ասէ զԳրիգոր երկիցս եկեալ յետ


եղու-

եղաւն ՚ի կոստ''. և ոչ ոք կենդանի գնէ զբարսեղ ՚ի ժմկս ժող'' կոստ'' ։ Զայս այսպէս ենթադրեմք և մեք, վ̃ղյ և Ը սխալական աւանդուենս դատեմք զկարծիս Ծ. Բ. և որոց համաձայնակից երևին նմին ։ Եւ սակայն զայն եւս ծանուցանեմք բանասիրաց, թէ ոմ̃ պատմութիւնք հայոց պահանջեն առ Թ̃ւրութ̃ մեծին Թէոդոսի զաստ֊նամեայ ժմկ աւելի քան զամբողական չափմունս ժմկա֊գրաց, նոյնոմ̃ և ՚ի պատմութիւնս հայրապետաց սորա ժմկի երևի այս հարկ կմ̃ դժուարութի. որում եթէ հնարս գտանիցաք, կարող էաք ասել յայնժամ՝ թէ ա̃ծաբանն սոսն ամօք յա̃ռջ քան զկայսերանալ Թէոդոսի առ Գրա֊տիանոսիւ՝ եկեալ իցէ ՚ի կոստ'' այց առնել ուղղափա֊ռաց՝ ՚ի Թ̃ւրութ̃ վաղեսի և վաղենտիանոսի և ՚ի Թ̃ւրա֊կերպ զօրավարութե Թէոդոսի. Մինչդեռ կենդանի էր սր̃ն բարսեղ. և թէ այլ եւս ամս երկու իբրև պատրիարգ կացեալ իցէ ՚ի կոստ'' ՚ի բուն կայսերութե Թէոդոսի զկնի մահուն վաղեսի ։ Այլ զի այս կարծիք անլուր է առ այլս, նմին իրի և մեք չունիմք հաստատել. և փափա֊քիմք գտանել զոք՝ որ գտցէ ելս այսպիսի խնդրոց ։

(12) ՚Ի Հ. գնի. * իջուանեցաւ ՚ի մատուռ սր̃յն անաս֊տասայ ||, առեալ ՚ի գրիգորէ երիցունէ՝ որ համարի. թէ տեղին այն էր յա̃ռջագոյն իսկ եկեղեցի փոքրիկ ՚ի ձեռս արիանոսաց՝ նովին անուամբ այսր անաստասիա, սրբուհի անաստասիա՝ կմ̃ սր̃ յարութի կոչեցեալ ։ Բայց յայտ է ՚ի բանից ա̃ծաբանին, թէ զառաջինն էր տուն ինչ, և վա̃ անդանօր լինելոյ նորոգութե ուղղափառութե՝ զայն անուն ընկալաւ, որ թարգմանի յարութի կամ յարութենական. ուր և յետոյ շինեցաւ եկեղեցի վա֊յելուչ, և կոչեցաւ նր̃ անաստասիա կմ̃ նր̃ յարութի ։ Բանք ա̃ծաբանին ՚ի միում վայրի են այս. * Այն
,, տուն ՚ի բարձրակատար գագաթն լերին ամբարձ զա֊
,, ռաջինն զբանն ա̃յ, որ նախ առ ոտս լերին երևէր.
,, և վե̃կ անաստասիա անուն ժառանգեաց. անաստա֊
,, սիա ասեմ՝ քրտնավաստակ ձեռին իմոյ գործ նշանա֊
,, ւոր ||. և յայլում վայրի. * խաղաղութի Ը քեզ ա̃նաս֊
,, տասիա՝ ՚ի բարեպաշտութե ընկալեալ զանուն, զի
,, դու վերականգնեցեր մեզ անդրէն զհաւատս ||։ Հա֊մաձայնին այսմ և բանք սոզոմենոսի. Է. 5 ։ Բայց այսու ա̃միճ ասի յոմանց, թէ եկեղեցին այն կոչիւր յանուն սրբուհւոյն անաստասիայ կուսին, զի նշխարք նր̃ անդ ամփոփեցան՝ ԺԸ գրելոյ Թէոդորոսի վերծանողի. իսկ Ծ. Բ. երևի զերկոսին կարծիս միացուցանել՝ գրե֊լով

լով օրինակ զայս . * իշխանեցաւ 'ի մատուռն փոքր և
,, արհամարհ՝ սրբուհւոյն անաստասայ . . . և մրճրեա-
,, ցաւ մն սրբուհւոյն անաստասայ՝ եթէ յետոյ մեծա-
,, ցուցանեն և գեղեցկացուցանեն , և անուանեն զն
,, յարուն, որ եղև 'ի ժմկս լևոնի բարեպաշտ արքային ||։



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## սրբոյն Տրիփոնի վկային ։

Հ. փետր. 2։ Հ= Յ. և Տռ ԵԷւ. փետր. 1։ Յ. փետր. 1։ Լ. նոյեմբ. 10։ Ռուսբեռ. Ա. ՁՅԷ= ՁՂԲ։ Հռոմէականք ԵՂ. 136։ Մեթոդ. առ սուրբեան . և այլն ։ (1)



ՌԱԶՄԱՅԱՂԹ ԵՒ նշանաւոր վկայն քնի երանելին Տրիփոն (ըստ յունականին՝ դրիփօն , որ թարգմանի գիրգ և փափուկ , ) էր հայրենեօք 'ի փռիւգիայ գաւառէ 'ի գեղջէն սամուսայ (2) , որդի հաւատացեալ հօր և մօր՝ ծնեալ 'ի սկիզբն երրորդ դարուն ։ Եւ մինչդեռ 'ի դեռաբողբոջ տիոն էր , մեռաւ հայր նր . իսկ բարեպաշտ մայր նր , և քոյրն երիցագոյն հասակաւ՝ սնուցանէին զմանուկն տրիփոն , և ուսուցանէին խրատու իմաստութ . որ և հլու գտանէր յամի , և զարգանայր յուսումն բարեպաշտութե . քզի շնորհքն այ էին 'ի վերայ

մանկանն․ և երևէր 'ի տղայական հասակի ունել զկատարեալ իմաստութիւն չափահասից․ մինչև լինել խրատտու և յորդորիչ հասակակցաց իւրոց 'ի վարս բարիս բանիւ և օրինակաւ իւրով։

Այս էր գործ նորա արածել զսագս առ լճին, որ մերձ էր 'ի բնակութենէ գեղջն․ այլ սիրտ նորա հանապազ զվերինս խորհէր, և առաքինի մօրն հոգևոր ջանից և աղօթից ստէպ կայր։ Տեսանէին ընկերք նորա, զի յորժամ տկարանայր մին 'ի սագուց, յաղօթս կայր Տրիփոն, և առողջացուցանէր․ մինչև՝ 'ի լինուլ երկոտասան ամաց հասակի նորա՝ սկսաւ նորա յայտնի առնել ամենայն զշնորհս բժշկութեան, զոր պարգևեալ էր հաւատարիմ ծառային իւրում 'ի մանկութենէ անտի․ զի անուամբն Քրիստոսի ողջացուցանէր զամենայն ցաւագնեալս, և փարատէր զամենայն ցաւս 'ի մարդոց և յանասնոց, և հալածէր զդևսն։

Այս եղև յաւուր միում յանկարծակի խածանել չարաթոյն օձի զոմն 'ի մանկանց․ որ և 'ի դժնդակ հարուածոյն պաշարեալ և թուլացեալ՝ անկաւ իբրև զմեռեալ․ և 'ի պատել զնովաւ ընկերացն՝ կարեկցելով և արտասուելով, ժողովեցան և այլ բազմութիւնք մարդկան, և ծնողք նորա, և ողբս առեալ լային ցերեկ ժամ իբրև 'ի վերայ մեռելոյ։ Իսկ նորա հեծեծագին ձայնեալ ասէր․ օգնեա՛ ինձ ով Տրիփոն եղբայր, աղաչելով զնա, զի ապրեցայց․ քանզի քեզ տուեալ շնորհք բժշկութեան յԱստուծոյ։ Այս իբրև անդէն զնա առ օձահար

հար մանուկն , ամբարձ տրիփոն զաչս իւր յերկինս , և կնքեաց նշանաւ ս՟բյ խաչին ըզհարեալն 'ի Թունաւորէն՝ աւելով ։ Յուսատու տիեզերաց Ք՟ս՝ կեանք և փրկիչ ազգի մ՟դկան , որ բժիշկդ ես հոգւոց և մարմնոց , բժշկեա՛ զվիրաւորեալս՝ սքանչելի անուանմբ քով ս՟բվ ։ զի կարող ես յա՟մի հզօր զօրութ՟բ քո տ՟ր ա՟ծ իմ ։ Եւ իսկոյն յարեաւ մանուկն , և փառաւորէր ընդ նմա զա՟ծ ։ և ա՟մ ժողովուրդն սքանչացեալ՝ գոհանային զ՟նէ ։ և խանդաղատեալ զտրիփոնիւ՝ սիրէին զնա ա՟մ զծառայ ա՟յ ։ Իսկ նա ոչ որպ՟ զմանուկ մեծամտէր , այլ՝ ա՟յ տայր զփառսն ։ և օր՟օրէ առաւելոյր 'ի խորհուրդս բարեպաշտութ՟ե և 'ի գործս առաքինութ՟ե ։ Այլ 'ի հռչակել անուանն նր՟ , մինչև փառաւորել յա՟մ՟ցն , խորհեցաւ ստ՟ն պատանեկին խօսս տալ առ ժամանակ մի 'ի գեղջէ անտի իւրմէ ։

Եւ մինչդեռ յայս մնաց խորհրդի էր , լուաւ և ձայն՝ որ ասէր նմա ։ Երթ գնա՛ և յայլ գիւղս և 'ի քաղաքս , և զհիւանդս նր՟ բժշկեա՛ , և զցաւսն փարատեա՛ ։ Եւ ահա ետես տրիփոն , զի անցանէր առ նովաւ այր ոմն Ձ՟ւհորդ՝ նստեալ 'ի վ՟ր գրաստու ։ բարբառեցաւ առ նա պատանեկին , և ասէ ։ եկից զհետ քո ուղեւոր բարի՝ ուր և ա՟ծ հրամայեսցէ ։ Եւ նա ասէ ։ Եկ , բարի է որդեակ ։ զի ետես զշնորհսն ա՟յ երևեալ 'ի վ՟ր նր՟ ։ Եւ հանեալ զնա ը՟ իւր 'ի գրաստ՝ գնայր խօսելով ը՟ նմա զՁ՟ւհայն , և լսէր 'ի պատանւոյն զշահս հոգւոց ։ հարցանէր 'ի նմէ բանս օգ-

տա-

տանջանս, և լուեալ զիմաստուն ասացուածս նր՝ զարմանայր, եթէ զիա՞րդ մանուկ գոլով՝ և կատարեալ բանս բարբառի ։ Եւ այն ինչ հիացմամբ հայէր ընդ նա այրն ՚ի թիկունս կոյս, ետես զհրեշտակ այ՝ զի կայր առ որիփոնի ՚ի պահել զնա հրամանաւ այն, և սոսկացեալ զարհուրեցաւ․ իսկ սբն այ քաջալերեաց զնա բանիւք իմաստուն ։

Եւ մինչդեռ գնային նք, աղաղակէին դեւք զկնի սբյն, և ասէին․ յո՞ւր երթաս որիփոն հալածիչ մեր, և քարոզ սրբութե․ իսկ նա ոչինչ ետ պատասխանի ։ Զայս ամ տեսեալ և լուեալ առն Ածհօրդի՝ առաւել ևս ՚ի հիացման և յերկիւղի լինէր, և ասէր ցորիփոն․ սբ՛դ այ՝ եղէց քեզ ծառայ և սպասաւոր, զի արժանի եղէց ողորմութե այն ։ Եւ նա ասէ․ ծառայ քոյ ես․ սպասաւորեա՛ նմա սրբութք և արդարութք․ և կեցցես ։

Եւ իբրև եկին յօթևանս ուրեք՝ ագանել զայն գիշեր ՚ի պանդոկի, գտին զպանդոկապետն հիւանդ ՚ի սաստիկ ջերման տագնապեալ․ յայնժամ աղաչեաց զորիփոն այրն՝ որ ուղեկից էր նորա, զի ապրեցուսցէ զհիւանդն․ և սբն կնքեալ զնա նշանաւ խաչին քի՝ ասէ, արի՛ կա՛ց վաղվաղակի յանուն տն այ ։ Եւ նոյնժամայն յարեաւ․ և սկսաւ սպասաւորել նց, և եդ առաջի նց սեղան․ և եղև ուրախութի մեծ նմ ընտանեաց նր, և փառաւոր առնէին զտր նովաւ ։

Յարուցեալ առաւօտուն՝ դէմ եդեալ գնային ՚ի կեսարիա, աղօթելով՝ ՚ի Ածհի սաղմոսիւք

և

և օրհնութ՟ . և ահա գազան մի վայրենի վա֊
րեալ 'ի դիւաց՝ առաջին զայրացմամբ գայր
ը՟դէմ նր՟ , որ՟ թէ 'ի կորուսանել զնս՟ ։ Իսկ
տրիփոն ոչ դադարեաց յաղօթիցն , և ոչ հա֊
մարեցաւ ինչ զցասումն գազանին . իսկ ըն֊
կեր նր՟ զարհուրեալ ձիչ բառնայր . և աղեր֊
սայրեցն զնա սր՟բ ոյ ։ Եւ սր՟ն ասէ . քաջա֊
լերեա՛ , և մի՛ երկնչիր . զի որ՟ ը՟ մեզ է . և
ամբարձեալ զձեռս իւր 'ի վեր՝ ասէ . Տ՟ր ա՟ծ
ամենակալ՝ ձգեա՛ զպահպանական աջ քո ,
և հալածեա՛ զերկիւղ դիւական 'ի ծառայէ
աստի քումմէ . չար դևքն նկուն լիցին յա֊
հաւոր անուանէդ քումմէ , յորմէ դողան ա՟մ
արարածք . զօրացո՛ զսա 'ի կամս ողորմութե
քո , և մերժեա՛ զխռովեցուցիչն . զի զքեզ
փառաւորեսցէ աներկիւղ յամենաչար հոգ֊
ւոյն ։ Եւ յասել նր՟ զայս՝ զարհուրեալն քա֊
ջալերեցաւ , և անվեհեր ձայնակից լինէր
սր՟յն յաղօթս ։ Եւ ապա կնքեալ տրիփոնի
ը՟դէմ գազանին՝ ասէ . դարձիր 'ի տեղի քո՝
ուստի եկիր . և որք առաքեցինն զքեզ՝ նը֊
կուն լիցին , և իսկոյն փախստական եղև ։
Իբրև մոտին 'ի կեսարիա , վազեաց ը՟առաջ
սր՟յն դիւահար մի , և ողորմագին գոչէր առ
տրիփոն , և ասէր . փրկեա՛ զիս ծառա՛յդ ա՟յ
'ի պաշարմանէ թշնամւոյն՝ որ ըկէ զիս ։
Յայնժամ գթացեալ սր՟յն 'ի վր՟ նր՟՝ յար֊
տասուս հարաւ , և յոգւոց հանեալ՝ կարդաց
առ ա՟յ , և ասէ . Ո՛ առագայթ փառաց , և
պատկեր բարերարին ա՟յ՝ անշիջանելի լոյս ,
իրաւանց և արդարութե ա՟ր . ահեղ և փառա֊

ւոր

սրբեղանուն քո, քո՛ հալածեսցէ զայդ չար 'ի ստեղծուածոյս քո. զի սրբեալ 'ի չարէն՝ զարարողդ օրհնեսցէ, որ կարողդ ես և հզօր յամ̃ի, և կամեցող ողորմութե։ Եւ նոյնժամայն լլկեալ զինքն սաստկապէս զայրն՝ ել 'ի նմանէ, և ոչ փոթորկեալ հողմ ուժգին չքասեցաւ յանապատն կոյս։ Եւ զերծեալ առն յայսոյն չարէ՝ փառաւոր առնէր զՏր, և պատմէր ամ̃ցն զքանչելիսն Այ։

Իբրև լուաւ զայն այր ոմն նշանաւոր 'ի քաղաքի նոյնօրինակ վտանգեալ 'ի դիւէն, դիմեաց առ սա տրիփոնի, և աղաչէր զնա՝ զի արասցէ նմա ողորմութի։ Ասէ տրիփոն. ողորմեսցի քեզ լսողն վտանգելոց. և իբրև մերձեցաւ առ նա և կալաւ զձեռանէ նորա, շարժէր զնա դևն և տագնապէր յոյժ։ Յայնժամ սաստեալ 'ի նա սբյն՝ ասէ. քեզ ասեմ այս չար անիրաւութե՛ երկի՛ր յահաւորէն Այ, և ե՛լ 'ի դմանէ, և այլ մի՛ ևս դարձցիս յայս բնակութի։ Եւ առժամայն ել դևն, և ոչ ծուխ թանձրացեալ պակասեաց 'ի հողմոյ. և այրն գգաստացեալ՝ գոհանայր զՏնէ և զծառայէն Այ։ Այնպէս բժշկեաց երանելին տրիփոն և զդուստր առն միոյ 'ի նմին քաղաքի աղօթիւք իւրովք։

Եւ հնչեաց այնուհետև լուր նր̃ ը̃ ամ̃ քաղաքն 'ի մէջ հեթանոսաց, եթէ պատանի ոմն՝ որ խոստովանի զանձն ծառայ Այ բարձրելոյ, նշանս գործէ մեծամեծս։ Իբրև եհաս բանն յականջս ուղկիոսի դատաւորի՝ որ թէպէտև հեթանոս, այլ այր բարեսէր և

ար

արդարադատ , ցանկացաւ տեսանել զծա-
ռայն ա՟յ ․ և առաքեաց արս Հսւաստարխսն՝
ածել զնա ․ և իբրև բերէին զնա , ել դատա-
ւորն ը՟առաջ ն՟ր առ դուրս իւր , և ասէ ցնա ․
բարի եկիր ծառայ ա՟յ բարձրելոյ : Պատաս-
խանի ետ երանելին տրիփոն և ասէ ․ ա՟ծ
բարձրեալն լուսաւորեսցէ զմիտս քո առ օգ-
տակարագոյնն անձին քո : Ասէ ցնա դա-
տաւորն ․ մանուկ գոլով՝ որպէս զայդպիսի
շնորհս ստացեալ ունիս իբրև զայր կատա-
րեալ հոգւով , ո՟չ թէ հալածել և զդեւս ՚ի
մ՟դկանէ : Ասէ ցնա ս՟րբն ․ ա՟մ արարածոց ս՟րբն
ոչ է՟ արժանաւորութե իմոյ , այլ է՟ ողորմու-
թեն իւրոյ այց առնէ ՚ի վերայ երկիւղածաց
անուան իւրոյ , թէպէտև նուաստք իցեն և
անպիտանք ․ ո՟չ զի զէսն խափանեսցէ ․ զի
մի պարծեսցի կարողն մարմնով և գիտութն
իւրով առաջի ա՟յ : Վասնզի և այս զօրութի
ա՟յ կամացն է , որով երբ և կամի՝ հալածէ
զդեւս և զցաւս ՚ի մ՟դկանէ ․ ը՟նմին և զապա-
կանագործ ազդմունս չար խորհրդոց , որք
գերեն և ընկղմեն զմարդիկ ՚ի խորս ապա-
կանութե չարեաց : Արդ արի և դու հաստատ
յամենակալն ա՟ծ , և ստացիր ՚ի նմանէ ըղ-
բարերարութե շնորհս ․ զի ՚ի ձեռն ճշմարիտ
հաւատոյ և անարատ վարուց արդարութե
ժառանգեսցես փոխանակ անցաւոր և սնո-
տի ճոխութեցս զերկնից արքայութին , և զա-
նապական բարիս , որ կայ պահի հաւատա-
ցելոց ս՟ց և արդարոց՝ անհամեմատ լուսա-
ւորութի և պայծառութի ՚ի ք՟ս յ՟ս :

Եւ

Այլ յաւել դատաւորին, աղօթեաց մտ իւր, զի որպ ասացերդ՝ եղիցի. յաղօթս եկաց սր͞բն Տրիփոն, և ասէ. խնամակալ զօրութի լուսաւորեա՛ զաս լուսով ա͞ծգիտութե՝ ձգելով ՚ի խաւարէ ՚ի լոյս, որ լուսաւոր առնես զառ քեզ հաւատացեալս. զի լուսով քո տեսանելով զլոյս ճշմարտութե՝ փառաւորեսցէ ըզքեզ ճշմարիտդ ա͞ծ: Այս յայնմհետէ ա͞ծային տուչութբ ծագեաց ՚ի նա լոյս ա͞ծգիտութեան, և դարձաւ ՚ի սր͞բ հաւատս. և կայր միայն ահիճն ոչ ՚ի բարեպաշտութե փառս:

Յետ այսորիկ ածին առ երանելին հիւանդ մի ջրգողեալ՝ անյոյս ՚ի բժշկական դարմանոց. որ հայցէր և աղաչէր զսր͞բն, զի աղօթս արարեալ բժշկեսցէ զնա յանուն ա͞յ իւրոյ: Այս սր͞բն կարեկից լեալ նմա՝ արտասուօք և հառաչանօք կարդաց զանունն ա͞ծն. և յուշ առնելով զբժշկութիւն փրկչին՝ զոր կատարեաց նա ՚ի վե͞ր երկրի, խնդրէր ՚ի նմանէ՝ գթալ ՚ի վե͞ր ախտացելոյն, և տալ առողջութի ը͞ս մեծի ողորմութե իւրում. զոր և ընկալաւ իսկ ՚ի ա͞ծնէ բարեխօսութբ իւրով զառողջութիւն նորա:

Բայց զի մի զեղցի զնովաւ ամբոխն, ջանայր երանելին մեկուսանալ յառանձին բնակութի. և հանապազորդ աղօթիւք և պահոց պնդութբ անցուցանէր զժամանակս իւր, և ա͞մ արդար կրօնիւք խոկայր յօրէնս ա͞ծն ՚ի տուէ և ՚ի գիշերի: Ընդ որ նախանձեալ մախացող բանսարկուին՝ մարտ սաստիկ յարուցանէր ընդդէմ սրբոյն ազգի ազգի փորձանօք.

նօք․ այլ նա շնորհօք ա՟ն անգործ առնէր ըզ-
պատերազմ չարին ։

Իսկ եղև ՚ի միում յաւուրց՝ դիմեալ գայր առ-
նա կին մի կոյր և կարկամեալ յայսոց չարաց,
շտապ ընթացիւք յանդուգն և անհեթեթ-
վարեալ ՚ի դիւաց․ զոր տեսեալ տրիփոնի՝
զարհուրեցաւ զառաջինն․ և ասէ․ ո՞վ ես
դու, և ուստի՞ գաս ։ Նա ասէ կինն․ ես եմ ըն-
դունարան այսոց բազմութէ․ ածեալ յանա-
պատէ եկեալ կամ առաջի քո ։ Իսկ սրբն ա-
սէ․ ընդէ՞ր եկիր այսր․ և նա ասէ․ գիտա-
ցի զզօրութի ՟այ շնորհացն որ ՚ի քեզ․ արդ-
գթա՛ և օգնեա՛ ինձ ։ Յայնժամ եղաց սրբն
՟այ դառնապէս ՚ի վր թշուառացելոյն․ և
յաղօթս եկաց արտասուօք առ ՟այ ՚ի բազում
ժամս․ մինչև վտանգեալ դիւաց յաղօթից
նր՝ այլ և այլ ձայնս արձակէին զարհուրա-
կանս ։ Սաստեաց ՚ի նս սրբն, և ասէ․ յա-
նուն ՟այ զօրութեց հալածեալք ՚ի դմանէ՝
այլ մի ևս լիցի ձեզ իշխանութի մերձել դմա ։
Իսկ դևքն աղաղակէին չփոթեալ յահէ ՟այ,
և ասէին ցտրիփոն․ փոխանակ զի հալածե-
ցեր զմեզ աստի, երթամք ՚ի հուրն, զի և
անդ գայցես ակամայ ։ Յայնժամ առեալ
սրբյն ՚ի ձեռս իւր զնշան խաչին քի՝ զոր կրէր
ը̄ իւր, կնքեաց ՚ի վր կնոջն․ և առժամայն
գտաւ զգաստացեալ ՚ի դիւացն, և առող-
ջացեալ ՚ի ցաւոցն․ և որք տեսինն՝ մեծա-
ձայն օրհնէին զ՟այ զպարգևօղն բարեաց ՚ի
ձեռն ծառային իւրոյ ։

Իսկ դիւացն երթեալ ՚ի հուրն՝ սկսան լլկել

զկին

զկին ուղղումն զատաւորի քաղաքին, որում անուն էր պրոկղ. և 'ի սաստիկ տանջել զնա այսոցն չարաց՝ ոչ ուստեք հնարս գտանէր մխիթարութե. բայց դեւքն աղաղակ բարձեալ առէին. եթէ ոչ գայցէ տրիփոն աստ, ոչ ելանեմք: Ապա առաքեալն խնդրակս յայլ և այլ տեղիս՝ տեսանել, եթէ կայցէ՞ ոք ուրեք տրիփոն անուն նշանագործ՝ դիւաց հալածիչ. և իբրև բազում հարցաքննութբ խուզէին, լուան եթէ 'ի կողմանս կեսարիոյ հնչի համբաւ նր. մինչև եկեալ գտին զնա անդ. և առեալ տարան 'ի հռովմ՝ փութով մեծաւ: Եւ իբրև մուծին զերանելին 'ի տուն վշտացելոյն, աղաղակել սկսան դեւքն, և ասել. եկիր և աստ հալածել զմեզ. և յո՞ փախիցուք յերեսաց քոց: Եւ ասէ սբն. յանուն տն զօրութեց՝ որ զօրացոյց զիս 'ի վերայ ձեր, անզօր եղեալ հալածեսջիք 'ի խաւարն արտաքին, որ պատրաստեալ է բս չարութե ձերոյ յաւիտենից փրկչէն. և անդէն սրբեցաւ կինն յայսոց պղծոց, և փառաւոր առնէր զաստուծն տրիփոնի: Յայնժամ խօսեցաւ սբն բանս բազումս վս ուղիղ հաւատոց և գործոց բարութե առ ամ ընտանիս տանն նորա. և փութացաւ մեկնիլ 'ի քաղաքէ անտի, զի մի տարածեսցի անուն նր:

Եւ տեսեալ՝ եթէ ուր և երթայ, ոչ զերծանի 'ի գովութէ մարդկան, խորհեցաւ դառնալ յերկիր հայրենեաց իւրոց, և յառաջին գործս իւր կալ 'ի նուաստութե: Այլ իբրև դարձաւ անդր, ընթացան առ նա բազմութք

 բնա-

ընակիչք տեղւոյն՝ կարօտեալ սրբուե՟ նր . և բերին առ նա զհիւանդս և զախտաժէտս . և աղաչէին՝ զի որ օտարաց առնէ բարիս , մի՛ անխայեսցէ և իւրայոցն տալ . և նա յակամայ կամս զիջաւ 'ի հայցուածս նց . և աղօթիւք բժշկեաց զբազումս :

Ընդ ժամանակս ՟Է՟ այնոսիկ թգրեաց 'ի Հռովմ գորդիանոս կայսր . որոյ էր դուստր մի համանուն՝ գորդիանէ , զգօն և իմաստուն՝ վարժեալ փիլիսոփայական գիտութ , և երևելի գեղով . և այն ինչ խորհէին յարովք 'ի թգրական զարմէ՝ առնուլ զնա , անակնկալ աղէտք 'ի վր աղջկանն հասանէին . զի հարեալ յայսոյն չարէ՝ մոլեգնել սկսաւ . աղաղակէր , և կարդայր զտրիփոն յանուանէ՝ ասելով . օգնեա՛ ինձ աղօթիւք քո սրբդ ոյ : Իսկ թագաւորն և թագուհին ահաբեկեալք խուզէին , թէ ո՞վ իցէ տրիփոնն . և պատմեցաւ նց՝ թէ այն է , որ երբեմն արար բժշկուի 'ի քաղաքի աստ , և այժմ դարձեալ է յերկիր իւր 'ի փռիւգիա : Յայնժամ առձակեաց կայսրն առ հաւատարիմս փութանակի գտանել զնա , և բերել առ ինքն պատուով . և նոցա որոնեալ բազում քննութ՝ եկեալ գտին զնա 'ի գեղջ նորին , զի արածէր սագս մերձ 'ի լիճն . և տեղեկացեալ՝ եթէ նա է , զոր խնդրէինն , ոչ կարէին հաւատալ՝ հայելով 'ի նուաստ կերպարանս նր : Իսկ իբրև հարցին զնա , թէ դո՞ւ ես տրիփոնն , ոչ իշխեաց ծածկել զանձն . զի 'ի տնէ ազդեալ էր նմա երթալ ընդ նոսա , և մի՛ յապաղել .

վոյ և ասաց, թէ ես եմ։

Ապա առին զնա, և հանեալ յերիվար՝ փութացուցանէին ընդ հրամանի թագաւորին, ծանուցանելով նմ զպատճառս երթալոյն՝ որ յայտնի էր նմա։ Այլ նա ՚ի ճանապարհին ոչ դադարէր աղաչել զած, զի բժշկեսցի դուստր թագաւորին նախ քան զմտանել իւր ՚ի քաղաքն. զի թերևս դիւրաւ զերծանիցի յամբոխից մարդկան։ Այլ եղև ՚ի մերձենալ նորա ՚ի հռովմ երից աւուրց ճանապարհաւ, սկսան դևքն չփոթմամբ մեծաւ դղրդիլ, և աղաղակել. արիք ելցուք ՚ի յաղջկանէ յայսմանէ, զի գայ տրիփոն հանել զմեզ ՚ի բնակութենէս, և հալածէ զմեզ՝ ուր չէ մեր կամք։ Այլ անդէն լքեալ զաղջիկն՝ ելին ՚ի նմանէ. և առողջացաւ աղջիկն։ Այլ յետ երից աւուրց՝ իբրև եկն տրիփոն, հաւատաց թագաւորն՝ թէ ՚ի ձեռն սրբոյն արար այ բժշկութիւն դստերն նր. և մեծարեաց զսրբն առաջի ամն մեծամեծաց իւրոց։

Ապա սկսաւ թախանձել թգրն զտրիփոն՝ ցուցանել նմա, թէ զինչ պիսի ոգի չարութեան, որ մտանէ ՚ի մարդիկ ներգել զնն մարմնով և հոգւով. վոյ և ասէր, աղաչեմ զքեզ ծառայդ այ՝ զի ցուցցես մեզ զդևն, որ չարչարէր զդուստրն իմ։ Այլ նր խնդրեալ ժամ ՚ի թագաւորէն աւուրս եօթն, պահեաց ըզշաբաթն ողջոյն, և եկաց յաղօթս զտիւ և զգիշեր արտասուօք և պինդ հաւատովք, զի կատարեսցէ տր զխնդիր թգրին՝ յանդիման առնելով երևելի օրինակաւ զգաղտամարտ թշնամւոյն զչարութի՝ առ ՚ի զգուշութիւն ամե-

նո-

տողից ։ Եւ եղև 'ի կատարիլ աւուրց ժամադրութեն՝ կոչել զնա Թգրին մեծաւ պատուով՝ դարձեալ աղաչէր զնոյն ։

Յայնժամ ասէ սրբն առաջի բազմութե ատենին, (ուր ժողովեալ էին հեթանոսք և հաւատացեալք ․) Քեզ ասեմ այս չար, զինչ և որք իցես՝ երևեսցիս ․ զի յայտնի լիցի ամենին զաղտնորոգայթ խորամանկութիւն քո ։ Եւ նոյնժամայն եկն եկաց 'ի միջի մին 'ի գլխաւոր զնդէ անտի դիւաց, ը նմին և արքանեակք նր՝ որոց մտեալ էր 'ի դուստր թագաւորին, կերպարանեալ որպ զշուն՝ հրեղէն աչս ունելով, և զգլուխն ը երկիր քարշելով ։ Ասէ սրբն ցդևն ․ յոր սակս մտեր 'ի դուստր կայսեր չարչարել զդա ։ Ասէ դևն ․ Հայրն իմ առաքեաց զիս հանդերձ ընկերօքս՝ չարչարել զդա այդպէս ․ զի ցուցցուք յանձին քո՝ զոր ինչ առնեմք 'ի հոգիս բազմաց ։

Տրեփոն ասէ ․ և ո՞վ է հայրն ձեր, և զի՞նչ գործ նր ։ Դևն ասէ ․ սատանայ՝ հակառակ բարւոյ, և չարին յորդորիչ ․ որ յափշտակէ զխորհուրդս բարեպաշտութե 'ի մարդկանէ, զմծսիրութի, զսրբութի և զարդարութի, և տնկէ զխորհուրդս անմծութե և անօրէնութե և հայհոյութե ․ և արհամարհանօք արհամարհել տայ զհաւատս և զարդարութե վարս, զոր պետրոս և պօղոս քարոզեցին 'ի քաղաքիս յայսմիկ, և ը տմ տիեզերս հանդերձ այլովք առաքելովք ։ Եւ ուսուցանէ մեզ՝ ոչ միայն խորհրդովք պատրել զմարդիկ,

այլ և գործովք չարութե․ որով մոլորեցուցանէ զհաւանեալսն՝ ՚ի բազմածութի, ՚ի սպանութի, յաղահութի, յամբարտաւանութի, և յա՟մ անսակս չարութե մերոյ՝ զոր գիրք ձեր պատմեն ձեզ․ և ահա զայսոսիկ ատամք կատարել մարդկան խորհրդով և բանիւ և գործով, հեշտութբ քարշեալ զամենեսին յարդարութե ՚ի մեղս․ զի հայրն մեր չարաբար է, և մեք արբանեակք չարին։ Բայց առ արդարս՝ որք սիրեցին զա՟ծ, տկարանամք առնել ինչ, և անզօրք առ միոս նոցա լինիմք․ այլ միայն առ խոնարհեալսն ՚ի կամս մեր և ՚ի ցանկութիս երկրաւորաց զօրանամք։ Ահա անացի քեզ զայս ա՟մ ոչ ՚ի կամաց, այլ՝ ակամայ զճշմարիտն խոստովանելով, կշտամբեալ ՚ի հրեշտակէ ա՟յ․ զի թէ չհարկեր զիս ՚ի սոյն հզօրն, զիմ սովորական թակարդն ՚ի կիր արկանէի․ զի ոչ բնաւին առ մեզ ճշմարտութի քարոզի, այլ՝ ստութի, զի կարասցուք որսալ զմարդիկ ՚ի կորստեան վիհն և յանշէջ հուրն։

Իսկ զայս լուեալ թ՟գրին և մեծամեծացն՝ զարմացեալ հիացմամբ փառաւորէին զա՟ծն ողորմած․ և բազումք ՚ի լսողացն հաւատացին ՚ի ք՟ս զօրութբ սքանչելեաց ն՟ն․ և հաւատացեալքն առաւել հաստատեցան ՚ի հաւատս ճշմարտութե։ Յայնժամ ասէ ս՟րն ցդեն․ Երթ յետս այսուհետև հակառակորդ ճշմարտութե, որ յակամայս զճշմարիտն խոստովան եղեր․ և անդէն չքացաւ այսն չար ՚ի միջոյ ատենին։ Իսկ թ՟գրն մեծարեաց

զե-

զերանելի այրն ա̃յ, և ետ նմա ինչս բազումս ոսկի և արծաթ. և նա ոչ կամէր առնուլ. և բռնադատեաց զնա յոյժ, մինչև ամաչել սրբոյն. և առեալ բաշխեաց կարօտելոց. և ապա դադարագնաց եղեալ՝ եկն 'ի տեղի իւր : Յետ այսորիկ մեռաւ. թ̃գւրն գորդիանոս՝ որ խաղաղութ̃ե էր ը̃ քրիստոնեայս. և յաջորդեաց 'ի կայսերութ̃ե փիլիպպոս, որ և ը̃ նմին օրինակի և առաւել ևս յանդորրու ունէր զհաւատացեալս. մինչև թ̃գւրեաց զկնի փիլիպպեայ՝ դեկոս (3), այր անագորոյն՝ մոլեալ 'ի կռոցն պաշտամունս : Սա յարոյց հալածանս 'ի վերայ քրիստոնէից ը̃ ամ̃ երկիր տ̃րութ̃ե իւրոյ, հրաման տուեալ յամ̃ գաւառս և 'ի գիւղս, զի որք ոչն պաշտեն ըզկուռս՝ չարաչար տանջանօք վախճանեսցին : Իսկ ընկալեալ պաշտօնէից նորա զհրամանն զայն՝ խոշտանգէին և նեղէին զհաւատացեալս, զի հնազանդեսցին կործանական հրամանի թագաւորին :

Յայնմ ժ̃մկի նստէր դատաւոր 'ի նիկիա քաղաքի (4) ակիւղինոս կմ̃ ակուիղինոս եպարքոսն (5), ծարաւի արեան քրիստոնէից. ուրոյ ծանուցեալ վասն երանելւոյն տրիփոնի՝ թէ 'ի ձեռն վարուց և սքանչելի գործոց իւրոց դարձուցանէ զբազումս 'ի կռապաշտից 'ի քրիստոնէութ̃ի, և զհաւատացեալսն հաստատուն և անդրդուելի պահէ, առաքեաց զինուորս ձերբակալ առնել զնա, ուր և գըտանիցեն, և ածել յատեան : Իսկ զի ոչ էր պարտ թաքչել լուսաւոր անձինն 'ի խաւա-

րի, ըմբռնեալ զինուորացն զսուրբն Տրիփոն՝ ածին կապանօք 'ի Նիկիա յատեան եպարքոսին որպէս զմահապարտ ոք :

Եհարց զնա եպարքոսն, և ասէ. ա՛յր դու՝ զի՞նչ անուն է քո, և որո՞յ բախտի ես : Ասէ երանելին. Տրիփոն անուն է իմ 'ի ծնողաց, և քրիստոնեայ 'ի շնորհացն հաւատոյ. այլ և յազատ ազգէ, եթէ քեզ թուեսցի ինչ մեծ : Ասէ եպարքոսն. և ո՞չ լուեար ըզհրամանս թագաւորին՝ որ յաղագս քրիստոնէից, հրով և սրով և այլ ևս դառն տանջանօք մատնել 'ի մահ : Ասէ երանելին. եթէ արժանի ինչ մահու գործեալ է իմ, ո՛չ հրաժարեմ 'ի մեռանելոյ : Ասէ եպարքոսն. և զի՞նչ այլ չարիս ասիցես քան զայդ, զի ապախտ արարեալ զարքունի հրամանաւ՝ մոլեալ կաս զհետ կրօնից քոց, և զայլս ևս մոլորեցուցանես. և արդ զգաստացեալ զոհեա՛ աստուածոցն, և պաշտեա՛ զնոսա՝ որպէս և մեք. և սիրելի լինիցիս թագաւորին և մեծամեծաց նորա : Ասէ սուրբն Տրիփոն. հաստատեալ եմ 'ի ճշմարիտ հաւատսն՝ որ 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին. և անշարժ կամ մնամ 'ի խոստովանութեան յայսմիկ : Ասէ եպարքոսն. մի՛ ընդվայր բարբառիր զայդպիսի բանս 'ի լսելիս իմ. Նախ քան ըզչարչարանս ընդունել՝ հաւանեա՛ ասացելոցս, և զոհեա՛ : Պատասխանի ետ սուրբն. զիմ չարչարանս՝ զոր ածելոց ես 'ի վերայ իմ յօժարութեամբ ընդունիմ վասն սիրոյն Աստուծոյ :

Զայս լուեալ եպարքոսին՝ հրամայեաց ցասմամբ մեծաւ բորբոքել խարոյկ, և կախել

զսուրբն

զմբն ՚ի վր հրոյ . զի թերևս առ կսկիծ ցաւոցն մեղմասցի ասէ ՚ի խստութենէ սրտի իւրոյ : Իսկ եկաց երանելին այնպէս կախեալ զօրն ամ ուրախ սրտիւ . և առ ած աղօթս մատուցանէր : Տեսեալ բռնաւորին զժուժկալութիւն սբյն՝ հրամայեաց զմարմինն նր սրով խոցոտել . և հարկանէին զերանելին սուսերօք յամ կողմանց . մինչև պատառոտիլ ամ մարմնոյն , և բանալ վտակաց արեան ցուացանել զերկիր . իսկ սբն հաստատուն պահէր զխորհուրդս իւր առ ած :

Իսկ իբրև ժամք երեք անցանէին ՚ի չար և ՚ի դառն տանջանսն , վաստակեցան ձեռք դահճացն . և զի սբն զուարթ կայր տակաւին , զարմացեալ էր բռնաւորն , եթէ զիարդ ոչ կնճիռ երեսաց , և ոչ յոգւոց հանել , և ոչ այլ ինչ նշան նեղսրտութե նշմարի ՚ի նմա , այլ՝ սքանչելի լռութի զուարթութբ երեսաց :

Ապա ասէ ցորիփոն . եթէ արդարև զղջացար ՚ի մեծամտութենէդ յայդմանէ . զի ոչ ոք կարէ կալ ընդդէմ թգրական հրամանի :

Ասէ սբն . երկրաւոր հրամանաց՝ որ ընդդէմ երկնաւորին , բազումք ընդդիմացեն յաղթեցին , և առին զպսակն յանմահ թագաւորէն . վյ և ես յուսացեալ եմ ՚ի զօրութի անմահին , և հաւատամ յաղթել քում բռնութեդ և թգրին , և խորհրդակցին ձերոյ սատանայի . և ոչ պաշտօնատար լինիմ դիւցն , որ յորդորէ զիշխանս քո գործել զհաճոյս իւր զլցեալսն ամ անիրաւութբ , զի յաւիտենական տանջանացն հաղորդս արասցէ , որ պատ-

բաստեցաւ նմա և հնազանդեցոյց նր՛ յարդար դատաւորէն ։ Զայս լուեալ բռնաւորին՝ առաւել ևս 'ի բարկութի բրդեցաւ ․ և զի էր ձմեռն խիստ և ձիւն յոյժ ,հրամայեաց տանել զՏրիփոն, և ընկենուլ 'ի դաշտ մի ցրտային , և ասաց բազմութե զինուորաց ձիընթաց առնել 'ի վր՛ նր՛ առաւթուր կոխելով ․ և արարին այնպէս ։ Իսկ սբն յայնպիսի ահագին կիրս տանջանաց ուրախութբ սրտի գոհանայր զՔՍ ․ և իբրև բազում ժամք անցանէին վտանգիցն 'ի վր՛ նր՛, կարդայ սբն առ տէր, և ասէ ․ տէր մի համարիր սոցա զայս մեղս ․ զի ոչ գիտեն զինչ գործեն ։(6)

Յետ այսորիկ միւսանգամ կացուցին զնա յատենի ․ և ասէ ցնա բռնաւորն ․ եթէ ոչ զգաստացար յայդպիսի մտաց , և ես յաւելից այլ ևս 'ի չարչարանս քո ․ և ապա բարձից 'ի քաղցր կենացս ։ Ասէ սբն Տրիփոն ․ ես շնորհօքն Քի զգաստացեալ էի, և եմ իսկ ․ և ուրախ եմ 'ի չարչարանսն՝ որ վս՛ Տն , որչափ և յաճախեսցես ․ զի բզմ չարչարանօք բազմացին ինձ պարգևք 'ի յաւիտենական թագաւորէն ։ Իսկ տեսեալ բռնաւորին զհաստատուն միտս քաջ նահատակին , ասաց տանել զնա 'ի բանտ , թողացուցեալ առ վայր մի առանց տանջանաց ․ զի թերևս ինքնին ասէ դարձցի և հաւանեսցի կամաց մերոց ։ Իսկ յետ աւուրց ինչ ետ բերել զնա յատեան, և ասէ ․ վարժեցար դու՝ ոչ կարծեմ, և օգտեաց քեզ յոյժ ներումն ժմկի՝ զոր թողացուցի 'ի տանջանացդ , դառնալ 'ի մոլորութե

քում

քումմէ 'ի պաշտօն դիցն ։ Ասէ սբ՟ն առի-
փոն ․ անդստին 'ի մանկուէ իմմէ խրատեալ
և վարժեալ էի , և վ՟ն այն արհամարհեցի
զկուռս , և սիրեցի զա՟ծ՝ որ արար զերկինս
և զերկիր և որ 'ի ն՟ա արարածք իցեն ․ զնա
օրհնեմ և փառաւորեմ և երկիրպագանեմ,
և 'ի պատուիրանս ն՟ր կամ յոյժ ․ զի որ ու-
րանայ , ուրացեալ լիցի առաջի հրեշտակաց
ա՟յ՝ որ յերկինսն են ։

Առ այս սրտմտեալ բռնաւորին՝ հրամայեաց
բերել բևեռս երկաթիս , և ցցել յոտս ն՟ր ․
և այնպէս ը՟ն փողոց քաղաքին ընթացուցա-
նէին 'ի վ՟ր ձեանն զօրն ա՟մ (7) ։ Սակայն և
ոչ այնպէս վտանգել լինէր քաջ նահատակին
ք՟ի ․ այլ կայր մեծաւ ուժով 'ի հաւատս
հաստատուն՝ առնուլ զկեանսն յաւիտենից։
Իսկ բռնաւորն զարմացեալ ը՟ն ժուժկալութ՟ի
սբ՟յն՝ այլազգ տանջանս զմտաւ ածէր ․ հրա-
մայեաց մերկացուցանել զնա , և կապել
ձեռս 'ի յետս , և հարկանել զնա գաւա-
զանօք արանց տասանց ․ և ո՛չ այնպէս մար-
թացաւ խոնարհել զսբ՟ն 'ի կամս իւր ։

Ապա հրամանն ետ այրել ջահիւք զկողս ն՟ր ։
Եւ մինչդեռ յայն տանջանսն էր երանե-
լին , տեսանէին զսբ՟ն յոլովք 'ի հաւատա-
ցելոց լուսով պայծառացեալ , և անպատմե-
լի գեղեցկութ՟ե զարդարեալ ․ քանզի ծա-
գեաց լոյս 'ի վ՟ր սբ՟յն , և երևեցաւ ծաղ-
կեայ պսակ 'ի գլուխ ն՟ր ․ և դէմք ն՟ր լուսա-
փայլ ճառագայթէր (8) ․ և տային օրհնութ՟ի
ա՟յ ։ Իսկ սբ՟ն ա՟յ ամբարձեալ զձեռս իւր յեր-

կինս

կինս 'ի բազկատարած կախաղանին՝ աղօ-
թէր եւ ասէր. Տ՟ր ա՟ծ յ՟ս ք՟ս, մի՛ զօրասցի 'ի
վ՟ր իմ չարն գործակցօք իւրովք չարչարել
զիս եւ խոտորել 'ի քո կամացդ. այլ արժա-
նաւորեա՛ զիս մտանել 'ի թիւ ընտրելոց քոց
հօտից, շնորհելով զանապական պսակն՝ զոր
խոստացար ծառայից քոց ս՟ց։ Յայնժամ
ասէ ցնա բռնաւորն. զի՞նչ ունիս ասել, կ՟մ
զի՞նչ 'ի մտի եդիր առնել՝ որ այդպէս պըն-
դեցար 'ի կամաւոր չարչարանս եւ 'ի մահ.
արդ ա՛ղէ ասա՛, հնազանդի՞ս հրամանաց
ինքնակալի։ Ասէ ս՟ն ատրիփոն. բազում
անգամ լուար յինէն, եւ զի՞ այլ հարցանես.
կենդանի՛ է ա՟ծ՝ որ յերկինս է. զնա միայն
պաշտեմ, եւ երկիւղ իմ 'ի նմանէ է եւեթ, եւ
ոչ յայլ ումեքէ։

Զայս ա՟մ լուեալ եպարքոսին, եւ զխա-
ցեալ զանչափ միտս ն՟ր, եհատ 'ի վ՟ր ս՟ցն
վճիռ մահու. եւ հրապարակախօս եղեւ ա-
սէր. Զատրիփոն փռիւգացի, որ հրամանա-
կայսեր վ՟ս քրիստոնէութե՟ բազում չարչա-
րեալ, եւ ոչ հաւանեալ հրամանաց ինքնա-
կալին, հրամայէ արքունական դատաստանն
սրով սպանանել։

Իբրեւ ածին զս՟ն 'ի տեղի կատարմանն, հա-
ւանեցոյց զդահիճսն ներել նմա առ ժամա-
նակ մի. եւ ամբարձեալ զձեռս 'ի վեր՝ եկաց
յաղօթս առ ա՟ծ, եւ ասէ. Գոհանամ զքէն
տէր ամենակալ, որ առաջնորդեցեր ինձ 'ի
մանկութէ՟ իմմէ՝ գնալ 'ի ճ՟պհս արդարութե՟,
եւ առնել զկամս քո բարիս. եւ ետուր շնորհս,

եւ

և զօրութ 'ի վր դիւաց՝ հալածել զնս բանիւ քով. և յաղթող երևելի ցուցեր զծառայ քո առ պատերազմունս նց, և նկուն արարեր զնս և յամօթ ամ ուրեք ։ Արդ խնդրեմ 'ի քէն տէր, զի և յետ կատարմանն իմոյ կացցէ և մնասցէ այս շնորհք ողորմութեդ քո առ վտանգեալսն յայսոսիկ՝ 'ի հաւատացեալս, որ յիշեն զանուն ծառայի քո տրիփոնի. և զիս զանարժան ծառայ քո տր՝ զոր արժանի արարեր վն անուանդ քոյ սբյ չարչարիլ և մեռանիլ, ընկալ 'ի թիւ սբց քոց վկայից, որոց փառաւորեալ է մահ առաջի քոյոյ տէրութեդ. զի ը նմ արժանաւորեցայց փառաւորել զհայր և զորդի և զսբ հոգիդ այժմ

և միշտ և յաւիտեանս ։

Նա ասացեալ զամենն՝ կատարեցաւ 'ի քս (9) փառաւոր վկայն քի սբն տրիփոն՝ հաշակաւոր և անուանի վկայուբ 'ի սկիզբն փետրվարի, (10) յամի տն իբր 250 (11) ։ Իսկ հաւատացեալքն՝ որ կային 'ի նիկիա, դողացան զնշխարս սբյն. և եդեալ 'ի տապանակի՝ յղարկեցին նաւաւ 'ի գիւղն իւր. ուր և աւանդեալ էր նր յառաջագոյն, և ազդեալ ևս տեսլեամբ գիշերոյ. և անդ եղաւ 'ի նըշանաւոր տեղւոջ. ուստի և փոխադրեցաւ յետ Ժամկաց յարևմուտս (12) ։ Եւ արար ած 'ի տեղւոջ կատարման նր և յայլ տեղիս բազում այսահարաց բժշկութիս, և այլոց ախտացելոց և վտանգելոց, 'ի ձեռն զօրաւոր բարեխօսութե սբյն տրիփոնի. զի զփառաւորիչս իւր փառաւորէ աստ և 'ի հանդերձելումն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Աղբեւր վկայաբանութեանս՝ հանդերձ նախընթաց
վարուք և սքանչելեօք սրբոյն տրիփոնի, եղև մեզ իրա_
ւամբք ճառընտիրն մեր նշանակեալ. ուր ծմ ինչ ըստ
գրելոյս գտանի հարթ և ընտիր ոճով, որ և երևի շա_
րագրեալ 'ի հին հեղինակէ՝ ոչինչ հեռի յաւուրց սրբոյն:
Քաղուած սորին ճանաչի և որ ինչ համառօտիւ վեր_
ծանի միաբան 'ի Հ. Յ. և 'ի Հ=Յ: Այստի առեալ է
և մետափրաստէսինն առ սուրիոսի՝ վերածելով յոճ
իւր ճոխաբանական. միայն թէ սք ծմքին, և որ այլ
ևս հետևօղք նց. զբուն վկայաբանութին ևեթ՝ ք զուղա_
մուն նահատակութեն ըօրինակեն. իսկ զնախընթաց
պատմութն մանկութեն հարևանցի միայն նշանակեն:
Փոխան ամցն չանալիցի աստէն. Հ=Յ. * Մինչ պատա_
,, նին էր, սագեր արածէր. բնակեցաւ 'ի նմա հոգին
,, սբ, և անուանմն քնի բժշկէր զամ հիւանդս և զդի_
,, ւահարս: Լուաւ ձայն՝ որ ասէր. երթիջիր յամ քա_
,, ղաքս փռիւգիայ, բժշկեա զհիւանդս. յարուցեալ
,, գնաց, և առնէր սքանչելիս ||. յարէ զկնի և զբժըշ_
կութն գտեր թղթի. ևն: Լուր և զմետափր. առ սու_
րիոսի: * 'Ի բարեպաշտ ծնողաց (ասէ) ծագեալ բա_
,, րեպաշտագոյն զաւակ, 'ի մատաղ հասակէ տեսա_
,, նոչափ ածահաճոյ՝ մինչև յարմար գտանել 'ի սպա_
,, սահարկու լինել ներգործութեց հոգւոյն: Նմին իրի
,, այնպէս ախտք փախչէին 'ի մարմնոց. իսկ դիւաց
,, համօրէն բնութն հկռկամարտ մարդկութեն՝ անուամբ
,, ևեթ տրիփոնի դանել, մանաւանդ թէ բռցակիզել
,, 'ի զօրութէ հոգւոյն՝ որ էր 'ի նմա, փախուցեալ լի_
,, նէր 'ի մարդկանէ, և վարիւր բռնութբ 'ի ներքին
,, խորշս անապատի: Այլ չէ՛ ժամուս զամ առ 'ի նմէ
,, գործեցեալ սքանչելիս 'ի թիւ արկանել. զմիոյ ևեթ
,, արարից առատօր ցուցանակ, որով յայտնի լինել
,, մարթասցի զօրութն շնորհաց՝ որ էր 'ի նմա. և անցից
,, 'ի վկայութն քաջայաղթ նահատակին ||. և յարէ զնոյն
բժշկութն գտեր գործիւանոսի կայսեր :
Իսկ հաւուննարտ, (որ քաջ քննութ՝ հարազատ վկայա_
բանութց է հաւաքօղ,) չառնէ բնաւ զին յիշատակ զյա_
ռաջընթաց գործոց սրբոյն մերոյ. այլ 'ի բուն վկայա_
բանութն անդր բերի՝ սկսեալ յըմբռնմանէ նր: Եւ վս
վկայաբանութեն գլխովին սկսանի խօսել այսպէս. * Որ

,, մեզ

„ մեզ երևի, սա՛ 'ի մէջ յիշատակարանաց պարտի զգե-
„ րագոյն տեղին ունել ... և այնչափ առաւել պար-
„ տի 'ի յարգի լինել, որչափ գրեթէ այն ամ՝ զոր յա-
„ ռաջն ունէաք ( մեք լատինացիք ), անստոյգ էին, և
„ բազում մասամբ առասպելախառն. որպէս յայտ է
„ յայնցանէ՝ որ պատմին հասարակօրէն 'ի վիկենտիո-
„ սէ բելլովակեցւոյ, 'ի պետրոսէ եկուիլինոսէ, և
„ յայլ նոյնպիսի մատենագրաց ||։ Եւ ահա զովեալն
և յառաջ բերեալն 'ի սմանէ հին վկայաբանութիւն՝ է բո-
վանդակութն օրինակի Ճառընտրիս մերոյ. մինչ զի որք
տարբերինն. առ լատինս 'ի հռուինարտէ, տարբերին
և 'ի մէնջ։

(2) Սամուսա. այսպէս գրի անուն գեղջն երկիցս 'ի
Ճ. իսկ 'ի Հ. սամսատա, կմ սամսադա. Հ=Ց. սամ-
սադա. սուրիոս գրէ, կամբսադա. հռուինարտ, սան-
սորոս. իսկ ժամագիրք յն. լամբսակա. այլ յետինս
այս թուի խառնել զանուն գեղջն ընդ գաւառի. քզի
լամբսակ է անուն գաւառի 'ի փռիւգիա։ Յաւելուն
սուրիոս և հռուինարտ, թէ գիւղ սկյն մերձ էր 'ի քա-
ղաքն ապամիայ. յորոյ վր բարուք ասէ նա ինքն հռուի-
նարտ, յայտ է թէ ոչ է սա ապամիա ասորւոց, այլ
գոյր և այլ ապամիա յԾին բիւթանիոյ. զոր ոմանք ապ-
րիմա, և այլք ապրինիա գրեն։ Այլ միաբանին ամ
վկայագիրք՝ թէ սբն տրիփոն էր 'ի փռիւգիա Ծէ։

(3) Ճ. և Հ. և յայսմաւուրքն տէր լինել՝ վրիպակաւ
դրչաց զանուն կայսերն կոչեն գորդիանոս. որ 'ի Հ=Ց.
ուղիղ գրի գորդիանոս։ Անկեալ է 'ի Ճ. և տող մի 'ի
բաց, զի մինչ գրելոյ՝ թէ յետ գորդիանոսի յաջորդեաց
փիլիպպոս, և զկնի նորա դեկոս՝ որ սկսաւ հալածել
զքրիստոնեայս, գրի՝ թէ յաջորդեաց փիլիպպոս. և
յաւուրս նր եղև հալածումն են. որ թէ առ փիլիպ-
պոսիւ նահատակեալ իցէ սբն տրիփոն. և սակայն ը
ամ վկայաբանից՝ առ դեկոսիւ վկայեաց նա. թող զի
յաղագս փիլիպպոսի ասի յոմանց, թէ 'ի քրիստոնէութ
գլխովին դարձեալ իցէ։ Սոյնպէս ուղղագրելի է և Հ.
ուր ասի՝ թէ յետ գորդիանոսի * Թգրեաց դեկոս, և
փիլիպպոս. և կռապաշտքն կալան զտրիփոն ||. մինչ
գնելոյ նախ զփիլիպպոս, և ապա զդեկոս. առ որով
ըմբռնեցաւ տրիփոն. ը որում գրէ տր լինել. * Թգրեաց
փիլիպոս. և յետ փիլիպպոսի դեկոս. և այլահաւատքն
կալան զտրիփոն ||։

Իսկ որ գրի 'ի ժամագիրս յունաց՝ թէ սբն տրիփոն էր

* առ

* առ Թղ̄րուքն գործածնումն յերկերիւրերորդի իննա-
ներորդի և հինգերորդի ամի 'ի Թղ̄րութէ անտի օգոս-
տեայ ||. ոգ̄ և 'ի յայսմաւուրս տր ինչն, և 'ի Հ=Յ.
* յետ ՃԶրլէ ամաց Թագաւորին (կամ 'ի Թղ̄րութէն)
օգոստոսի ||, և կմ̄ ըը̄ Հ. * յետ Թղ̄րուէն օգոստեայ
ՃԶրլթ ամաց ||, ոչ կարէ հայիլ 'ի սկիզբն ծաղկելոյ սր̄յն
տրիփոնի առ գործածնումն, այլ 'ի Ժմկ նահատակուէ
նորին առ դեկոսիւ. զի օգոստոս կայսր նստաւ 44 ա-
մօք յա̄ռաջ քան զսկիզբն Թուականին ք̄սի. և մեռաւ յամի
տն 15. իսկ գործածնոս նստաւ յամի տն 238. և դեկոս
յամի. 249. և ըը̄ այսմ լինի նահատակութն տրիփոնի
յամի տն 250. և ճշմարտի ասելն՝ թէ ՃԶրլէ, կմ̄ ըստ
հաշուէին բարոնիոսի և Հ. ՃԶրլթ ամօք յետ Թղ̄րուէն
օգոստեայ եր սր̄ն տրիփոն, ըս̄ Ժմկ նահատակուէ նր̄:
Ուստի ոչ վայրապար լինի և ուղղագրելն սուրիոսի
կմ̄ մետափր" զայս հաշիւ այսպէս. * Յամի 225. յետ
մահուանն օգոստեայ՝ էառ գործածնոս զգաւազան
ինքնակալուէ հռոմայ ||. զի անկանի 'ի 240 ամ տն,
որ է ըը̄ մեզ երրորդ ամ Թղ̄րուէն գործածնոսի:

(4) Ուր դնէ Հ. Նիկիոյ պօլիս, չէ՛ պարտ իմանալ զքա-
ղաքն կոչեցեալ նիկոպօլիս, այլ զնոյն ինքն նիկիա՝ ի-
մանալով զպօլիսն փոխ բառիս քաղաք. ըը̄ որոյ ուղիղ
գրի 'ի յայսմաւուրս տր ինչն, և 'ի Հ=Յ. 'ի քաղաքն
նիկիայ, կմ̄ 'ի նիկիոյ քաղաքն, համաձայն Ճ. և ամ̄
վկայագրաց:

(5) Ըստ հռովմայեցւոց հնչի աքուիլինուս, որ Թարգ-
մանի արծուեային. (Թող զոր վրիպակաւ գրեն ոմանք
'ի լտ. քուիլինուս:) իսկ յունականն գրի աքիլինոս.
կմ̄ աքիւլինոս. ըը̄ որոյ 'ի Հ. ըը̄ ձեռ" գրի ակիւղինոս.
Հ=Յ. ակիղինոս. և Հ. տպ. ակեղինոս. իսկ 'ի Ճ. և
առ տր ինչն՝ պակասի անունն գլխովին:

(6) Զոր ըստ Ճ. եդաք զձիընթացս 'ի վր̄ տրիփոնի,
փոքր մի այլազգ քաղէն անտի զանազան յայսմաւուրք:
Հ. * կապեցին զնա 'ի վայրենացեալ ձիս. և քարշե-
,, ցաւ սր̄ն ը̄ քարս և ը̄ Թուփս յաւուրս ձմերայնոյ,
,, և ամ̄ մարմինն ջարդեցաւ, և հեղաւ շատ արիւն ||:
Հ=Յ. * կապել 'ի ձիս ամեհիս, և քարշել ընդ վէմս
,, յաւուր ձմերայնոյ ||: Յ. * կապեալ ընդ վայրենի
,, ձիս՝ քարշի ընդ անկոխ տեղիս 'ի պահու ձմերան ||:
Հաւուինարս. * հրամայեաց դտ̄ւրն ծառայից իւրոց,
,, զի յորս ելեալ՝ քարշեսցեն զսր̄ն կապեալ 'ի սաստ-
,, ցեալ Ժմկի 'ի վր̄ եղեման. որով հերձան ներքանք

,, ոտից

,, ոտից նր || ։ Մետափր" Թուէր բաղադրել զնմն՝ յա_
սեղն ․ * հրամայէ գալ զկնի իւր կապեալ՝ յելանել
,, անդ ի բռունմ յորս ․ և էր տեսանել զվկայն 'ի լկանս
,, դառն տանջանաց ․ քանզի ներքանք ոտից նր հերձեալ
,, լինէին ․ զի ոչ միայն բոկոտն մատնիւր յանտանելի
,, սառնամանիս ձմերայնոյ , այլև առաւթուր կոխեալ
,, լինէր յերիվարաց ․ և մարմինք նր պատառեալ՝ յեր_
,, կիր ծաւալէին || ։

Մինչ զնախընթաց տանջանս գանից որոյ՝ մետափր" լոկ
հարուած գանից 'ի կախաղանի ձևացուցանէ ․ զոր որ
ինէլ , և Հ=Ց ․ դեպեցիկ բացատրեն համաձայն Ծ ․ միով
բառիւս * Թրածեծ առնել || ․ ըստ որոյ և Հ ․ գրէ ․
* Թրածեծ արարին զնա ․ և այնպէս ջարդեցին զնմ
անդամս մարմնոյն || ։ Իսկ ժամագիրք Ց ․ ասէ ․ * մոր_
թեղերծ լինի || ։ Զօրով և հաւունարտ զանց առնէ ․
ոչ և զտանջանս հրոյ չգրէ որոշակի , այլ յիշէ ևեթ
զսպառնալիս այրելոյ հրով ․ զորմէ տես և 'ի (8) ։

(7) Հ=Ց ․ ուստի և Հ ․ մոռանայ զտանջանս բևեռաց,
զոր մետափր" , և հաւունն" , հանգոյն Ծ ․ նկարագրեն ․
և յաւելու իսկ հաւունարտ , թէ յասել դատաւորին
ցտրիփոն և ցընկեր նր ( զոր անոմանէ հռեսալիկիոս ) ,
* զի՞ է , չզգայք ինչ արդեօք 'ի տանջանսդ ․ սրբքն ե_
,, տուն պխնի ․ ոչ ․ զի բևեռքն չեն միսեալ յոտս մեր ,
,, այլ ոչ թէ 'ի կօշիկս || ։ Որ Ց ․ ժամագիրքն այլազգ
ստորագրէ զբևեռսդ՝ յասելն ․ * մերկ 'ի վր երկաթի
բևեռաց քարշլ || ։ Նոյն է և ասելն Ց ․ բասխլ ․ * մերկ
'ի վր երկաթի բևեռաց գնի || ։ Այլ այսպիսի տար_
բերութիւնք պարագայից առաւել հաստահիմն առնեն
զստուգութի բազմաչարչար նահատակութե սրբյն ։

(8) Հ ․ զծագումն լուսոյ 'ի վր սրբյն յարէ զկնի տան_
ջանաց ձիընթացից ․ զի զանց առնէ՝ ոչ զբևեռս , նոյնպ
և զջահս ․ զոր որ ինէլ , և Հ=Ց , մեկնագրեն համաձայն
Ծ ․ և այլոց՝ յասելն ․ * և հրով խորովեցին զկողսն ․
և անբաւ լոյս ծագեաց 'ի վր նր , և ծաղկեայ պսակ
եդաւ 'ի գլուխ նր || ․ ևն ․ զնոյն ճոխագոյն ստորագրէ
մետափրաստէս ։

(9) Թէպէտև ընթացք ասացուածոյ մերոյ ինքնին յայտ
առնեն՝ թէ սրով կատարեցաւ սրբն տրիփոն , այլ մեք
խորհրդով ոչ յիշեցաք զսուրն , զի անորոշ բայիւս * կա_
տարեցաւ || , տացուք իմանալ զկրկին իմացուած վկա_
յաբանից ․ յորոց ոմանք ասեն , ոչ Ծ ․ * անդէն վաղ_
,, վաղակի հատին զգլուխ երանելւոյն սրով ․ և այս

,, պէս

,, պէս աւանդեաց զհոգին ||. և Յ. բառիւ. * 'ի բաց
,, հատաւ գլուխն ||, ուր և նկարի պատկեր գլխատ-
ման, կալով առ նմա դահճին՝ մերկեալ զսուրն 'ի պա-
տենից, և սքին 'ի խոնարհ ունելով զգլուխն: Եւ
հռուլինարտ մեկն առէ. * սրախողխող եղեալ՝ աւան-
,, դեաց զերանելի հոգին 'ի ձեռս արարչին ||: Իսկ այլք
առեն, ոմ մր իէլ, և Հ = Յ. * և նախ քան զհա-
,, տանել (կամ զհարկանել) դահճին՝ աւանդեաց զհո-
,, գին. և ապա՝ զսքն վախճանել՝ ոչ եհատ զգլուխն ||:
և Հ. * նախ (կամ յառաջ) քան զհարկանել դահճին
,, (զգլուխ նր), աւանդեաց զհոգին իւր. և յորժամ
,, տեսին զնա մեռեալ, ոչ հատին զգլուխ նր ||: և մե-
տափր. * մինչև հարեալ էր սրով, աւանդեաց զհո-
,, գին ||: Զոր և ժամագիրք Յ. 'ի մեղեդի վերաբե-
րեալ՝ է՛ զի առէ, * զսուրն մեռանելով կանխեցեր ||,
և է զի առէ. * ժամանակ կատարման քո ամենագլուխ,
'ի փեարմարի որփոն յառաջ քան զհատումն նախա-
վախճան ||: առյա 'ի նոյն միտս վերծանէ և 'ի պատմու-
թեն. * զգատակնիք սրոյ ընկալաւ. զոր կանխեալ՝ ա-
ւանդեաց մր զհոգի իւր ||:

Այլ յայտ է, թէ այս տարբերուն վկայագրաց ծա-
գեալ է 'ի հոմաձայնութէ յունական բառիս բաօֆթեմ-
նօ. զոր 'ի կիր արկանէ և ժամագիրքն յունաց, որպէս
կարծի 'ինմին իսկ 'ի բուն վկայաբանութէ ճառընտրիս
մերոյ 'ի փոխ առեալ: Արդ այդ բառ ստուգաբանի
նախաժամանել. և անխտիր նշանակէ՝ զփութապէսն
լինել իմիք, և կամ զկանխելն քան զայլով. նմին իրի
ոմանք իմացան այսպէս, և ոմանք այնպէս՝ նաև 'ի կա-
տարման ասա սքին որփոնի: Ինձ լաւ ևս երևի ի-
մացուած ճառընտրիս մերոյ՝ վաւերական աղբեր այլ-
ում վկայաբանից: 'ի Թարգմանուէ սր գրոց. ուր իբր
'ի քսան տեղիս գտանի ձայնդ բաօֆթանօ, վերածեալ
է 'ի մեզ այսպէս եղերօքս. ժամանեմ, կանխեմ, յա-
ռաջեմ, աճապարեմ: Յայսպիսի և յայլ տարբերութիս
հին վկայաբանութց ոչ բերեմք 'ի հաստատուն կամ 'ի
պէտս ներհակ կարծեաց զբանս նոր մատենագրաց.
զի որչափ և անուանի անձինք իցեն, կամ գոնէ հան-
դիսացեալ առ բազումս գրուած նց, ոչ ունին հեղի-
նակութ անձնական, այլ՝ են հետևողք այսմ կամ այնմ
օրինակի. թող զխոտորեալսն յամ օրինակաց:

(10) Պարզապէս դնէ Ծ. * կատարեցաւ սքն որփոն
,, յերկուսն փետրուարի ամսոյ հաշակաւոր և անուա-

„ նի վկայութե̅ || · ԺԲ նմին և Հ · կարգէ յարացի իւ̅ ·
և 'ի փետրվարի Ա ։ յիշէ և բոլլանդ · 'ի Ա · փետր · 268 ·
թէ կոստանդ · փեւրինկիոս ևս զտրիփոն յառաջ բերէ 'ի
փետրվարի · Ա ։ Ե՛ն և որք դնեն 'ի Դ · փետրվարի ·
տես 'ի վայր (12) · Եւ սակայն յոյնք հնո̄րկօրէն դնեն
և կատարեն զյիշատակ սր̅յս 'ի փետր · Ա · ԺԲ որոյ ե֊
դեալ կայ և 'ի Հ = Յ · և 'ի յայսմաւուրս մր̅ իէլի ,
և 'ի հին Ճաշոցս մեր ։ Իսկ լատինք փոխագրեալ են 'ի
նոյեմբ · Ժ ։

(11) Հաուինարա դնէ զկատարումն սր̅յն լինել յամի
250 , կամ 251 · և 'ի վր̅ բերէ · եթէ նահատակեալ իցէ
'ի նոյեմբեր ամսեան՝ յորում տօնեն լատինք , դնելի է
250 · իսկ եթէ 'ի փետրվարի՝ յորում տօնեն յոյնք , դը֊
նելի 251 · ( վս̅ կասպեալ գոլոյ Ը գեկոսի , որ սակա֊
ւմս թշ̅րեաց ) · և յարէ · * Այլ զյետին կարծիս ընտ֊
„ րելի լինել Ջ̅ զառաջինն բազում պատճառք հաւա֊
„ նեցուցանեն · քանզի այս վկայք ( տրիփոն և հաւս֊
„ պիկիոս ) 'ի յուլիանոսեան չարչարեցան , նմին իրի և
„ առաւել ծանօթագոյն գտանին յունաց · և երևելի
„ լինել առ նս̅ հաւաստի առնեն ոչ միայն եկեղեցա֊
„ կան յիշատակք , այլև հոյակապ վկայարանք 'ի պա֊
„ տիւ սր̅յն տրիփոնի 'ի թշ̅րական քաղաքի անդ կանգ֊
„ նեալք · զորոց խօսին պրոկոպիոս , կոդինոս , և այլ
„ մատենագիրք · Տինա և երկու կայսերք՝ ըստ ալլա֊
„ տիոսի ... ներքողական ճառ խօսեցան 'ի վր̅ սր̅յն
„ տրիփոնի ։ Եւ դարձեալ անվթար վկայաբանութիւնք
„ մարտիրոսացս այսոցիկ զառաջինն յունարէն գրե֊
„ ցան · և ահա 'ի նոսին՝ ոչ̅ և յայլս՝ ասին նահատակեալ
„ 'ի Ժմկի ձմերան , որ առաւել 'ի դէպ գայ փետր֊
„ վարի քան նոյեմբերի ։ Համաձայնին ևս բազում
„ վկայագիրք լատինացւոց յառաջ բերեալք 'ի բոլլան֊
„ դայ 'ի փետր · 1 · 2 · և 3 · ոչ̅ և ուսոճարդ 'ի հնա֊
„ գոյն օրինակս , մանաւանդ 'ի մերումս գերմանական
„ օրինակի՝ որ կարծի լինել ձեռագիր հեղինակին ։
„ Եւ թէպէտ հանդիսացեալ է 'ի հռովմէական վկա֊
„ յաբանութե̅ յիշատակ սր̅ցն տրիփոնի և հռեսպիկիոսի
„ 'ի Ժ · նոյեմբերի , այլ սակայն եթէ ուղիղ դատիմք ,
„ այդ թուէր լինել վս̅ փոխադրութե̅ իրիք նշխարաց · Ջ̅ղի
„ նշխարք նոցա պահին 'ի հռովմ յերկուս վկայարանս ·
„ Ջ̅ յեկեղեցւոջ սր̅յն տրիփոնի յարէսեան ( կմ̅ 'ի մար֊
„ տեան ) դաշտի , որ յառաջին շաբաթու աղուհացից
„ պաշտի · և յեկեղեցւոջ սբ̅ հոգւոյն 'ի սաքսեան թե֊

,, մի. ուր մարմինք նշ՟ որպէս և սրբուհւոյն Նիմփայ,
,, գրեթէ ամբողջ զետեղեալ տեսանին 'ի ներքոյ աւագ-
,, բեմին մինչև ցայժմ: Այլ 'ի պատճառս այսր ե-
,, կեղեցւոյ՝ որ է 'ի սաքսիա, կամ ըստ սաէպ գրելոյ
,, առաջնոց՝ սաքսոնիա, պատրեալ ոմանց՝ հնարեցան
,, ասել, թէ այդ վկայք նահատակեալ իցեն 'ի սաք-
,, սոնիա անուանի Ծ գերմանիոյ: Եւ այլք ոմանք հա-
,, յելով յայն, զի նշխարք սոցա 'ի միասին փակեալ
,, պահին Ը սրբուհւոյն Նիմփայ 'ի մի և 'ի նոյն բեմի՝
,, յայլ սխալանս շրջեցան, ոչ թէ երեքեանն իսկ 'ի մի
,, և 'ի նոյն տեղւոջ և 'ի ժամի նահատակեալ իցեն: Հուսկ
,, յետոյ զարմանք են, զի 'ի վկայաբանութե սուրիոսի,
,, մանաւանդ թէ և 'ի բազում հնագոյն վկայաբանու-
,, թիս՝ միայն սբն տրիփոն է հանդիսացեալ, զանց
,, արարեալ զյիշատակաւ հռեսպիկիոսի ||: Եւ որ ա-
սելի է, այդ անուն լատինական՝ ռէսբիչիուս՝ կամ յայտ
առնէ զայլ ոք նահատակեալ յարեմուտս, և յաւելեալ
'ի լատին թարգմանչէ 'ի վարս տրիփոնի. և կամ գուցէ
իցէ ուղեկիցն սբն տրիփոնի, թերևս միշտ գործակից
նմին ծանուցեալ, և նահատակութե արժանացեալ. զո-
րոյ զանուանն չգիտելով այդպիսի եդին ոմանք անուն
հանրական. զի թարգմանի վերաբերական կամ վե-
րահայեցիկ:

(12) Բաց յերկուց վկայարանաց հռովմայ՝ ուր գտանին
փոխադրեալ նշխարք սբն տրիփոնի, (ոչ տեսեր. 'ի 11.)
յիշատակի և 'ի գաղղիատիա ուրոյն գանձ նշխարաց նր.
ջքղի գրէ բոլլանդ 'ի Գ. փետրվարի. էջ. 319. այս-
պէս. * Սբն տրիփոն վկայ նիկիացի յառաջ բերի յայսմ
,, աւուր 'ի փարիզեան ձեռագիրս ուսուարդայ. 'ի
,, հերմանոսէ գրեհենեայ ... և 'ի կանիսիոսէ ... իսկ
,, փերրարիոս 'ի հանրական դասակարգութե սբց վկայէ՝
,, թէ յասկրիկլիա՝ որ ռամկօրէն ասի քալթաւօ քաղաք
,, գաղղիատիոյ Ը մղոնք վենետկոյ, 'ի նմին աւուր պաշ-
,, տի հանդիսաւոր հռչակաւ սբն տրիփոն վկայ՝ իբրև
,, պաշտպան քաղաքին. և թէ՝ անդանօր պահի պատուով
,, մարմին նր. այլ թէ այլ ոք իցէ, չգիտեմք ||: Զայս
վերջին յաւելուած յայն սակս 'ի վր ածէ բոլլանդ.
քանզի կան և այլ երկու վկայք տրիփոն անուամբ յի-
շատակեալք առ լատինս 'ի յունվարի. 4. և 'ի յուլի-
սի. 3. մին նահատակեալ յափրիկէ, և միւսն յաղեք-
սանդրիա:

Ժամագիրք յունաց առանց յիշելոյ զփոխադրութի նըշ-
խա-

խարաց՝ նշանակեն միայն զյարգ պաշտաման սրբոյն Տրե-փոնի 'ի ծաղկեալ ժամանակս կայսերութեն իւրեանց՝ այսպէս . * Եւ կատարի հանդէս նորա 'ի վկայարանի ,, նորուն , որ է 'ի ներքին կողմն տաճարի սրբոյն յով-,, հաննու ա̃ծաբանն աւետարանչի , մօտ յամենասուրբ մեծ ,, եկեղեցին || . իսկ մօտ յայս սօֆիայն՝ զայն եկեղե-ցի , զոր առ մեօք 'ի սկիզբն ժԹ դարուս քանդեցին այլազգիք՝ (որում և եսս եղէ ականատես ,) առ 'ի շի-նել անդ զինուորանոց . որ և այրեցաւ և այլափոխե-ցաւ յաւուրս քաղաքական խռովութեանց :



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

սրբոյն Բարսումայ կամ Պարսամայ ճգնող հայ-րապետին եղեսացւոց , և որոց Ձ նմա : (1)

Հ . դեկտ . 14 : Տօր էծկ , և Հ = Յ . դեկտ . 9 : Յ . Լա . յուանվ . 30 . և Ժմ . յնվ . 29 , և 30 : Լ . յնվ . 30 . Լաս և 29 : Բոլլանդ յոհաննէս . 'ի Է . հատ . յնվ . էջ . 1026 : Բարոնեաս յամի . 107 . և այլք :



ՍՈՒՐԲ ԽՈՍՏՈՎԱՆՈՂ-վկայն քսի , և երջանիկ հայրա-պետն Բարսումա (2) , ( որ և գրի Բարսամոյ , կամ Պարսամ , և կամ Բարսիմ , այլ ըստ բուն հնչման արևելեան լեզուաց՝ Պարսաւմա , որ Թարգմանի որդի ծոմոյ , ) էր եպսկս եդեսիոյ , որ է ուռհայ՝ 'ի միջագետս հայոց , յաւուրս տրայիանոսի կայ-սեր՝ 'ի սկիզբն երկրորդ դարու : Սա իբրև հովիւ քաջ և արթուն առաջնորդէր հօտին

փոքու հաւատացելոց՝ որք կային անդ յաշա-
կերտութ[եա]ն սրբոյն Թադէոսի առաքելոյ. որ
Թէպէտև զառաջինն դարձոյց զժողովուրդ-
եդեսացւոց 'ի սուրբ հաւատս ընդ մեծաւէր և բա-
րեպաշտ արքայիւն մերոյ աբգարու, այլ քան-
զի յետ աւուրցն սանատրկոյ միւսանգամ տա-
րածեցաւ 'ի քաղաքի անդ հեթանոսութիւն,
նուաղեալ էին յոյժ քրիստոնեայք, և կռա-
պաշտք զօրացեալ:

Եւ եղև յաւուր միում՝ 'ի պիղծ տօնի կռոցն
հեթանոսաց տեսանէր սուրբ հայրապետն
բարսումա 'ի քաղաքի անդ եդեսիոյ զհա-
մազգայինս իւր զպարթևս (3), որ ձեպէին
'ի զոհսն. և սարբիւղոս կամ շարպէլ քուրմ՝
այր ծերունի զգեցեալ էր վասն տօնին պատ-
մուճանս պայծառս և երևելիս, և կիդար՝
այն է խոյր արքայաշուք՝ նկարեալ ոսկւով
'ի գլուխն իւր. և այնպէս ստիպէր հրամա-
նաբար զժողովուրդն՝ խնդութեամբ կատարել
զտօնն:

Յայնժամ վառեցաւ սուրբ եպիսկոպոսն 'ի նախանձ
վրէժու փառացն Աստուծոյ, և առեալ ընդ իւր զԹի-
փա (կամ զԹիրայա) քահանայ, և զսիլոփա
(կամ զսեղովաս) սարկաւագ՝ մատեաւ առ
քուրմն, և ասէ ցնա. 'Ի քէն պահանջելոց
է ամենակալն Աստուած զհոգիս այսքան մոլորել
ժողովրդեանս, զորս ստիպես զոհել խուլ
և համր և անշունչ կռոց. նա՝ և 'ի քեզ
զիա՞րդ ոչ խնայես, զի այր ծեր ես, և այդ-
քան անմտութեամբ վարիս: Եւ այլ բազում վերպա-
կան բանիւք խրատեաց և յանդիմանեաց
զնա.

զնա . և զօրութն սբ հոգւոյն՝ զոր յանձին զգեցեալ էր , քաջ հաւանեցոյց զնա հաւատալ 'ի քս : Ապա անյապաղ 'ի գիշերին յայնմիկ առեալ սարբիւղայ քրմի զբաւէա կամ զբաւէասա (4) զքոյրն իւր՝ գնաց առ եպսն . և մկրտեցան 'ի նմէ . և անուանեցաւ սարբիւղոսն Թութայէլ (5) : Որ և արկաւ զիւրև պատմուճան սպիտակ , որպ օրէն էր զգենուլ նոր մկրտելոցն՝ 'ի նշանակ լուսաւորութն սբ աւազանին :

Ի փաղփուն անդր տեսեալ զնա կռապաշտիցն սպիտակ զգեստիւք , զարմացան յոյժ ը նա : Եւ նա ասէ ցնս . ընդէ՞ր զարմացեալ հայիք ը ի՞ս . իմացարո՞ւք և գիտացէ՞ք ամքն , զի մկրտեցայ ես յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ , հաւատացեալ 'ի քս ածն ամի . և այսու լուացմամբ ջրոյ մկրտութն թողութն մեղաց ընկալայ 'ի քնէ այ , որպէս և ամ չարեացն՝ զոր 'ի ձեզ գործեցի . վս զի ես էի պատճառ գայթակղութն ձերոյ և կորստեան հոգւոց , որ խաբէի զձեզ յանարժան գործս զազրութն սնոտի պաշտամանց . բայց այսուհետև լինիմ ձեզ պատճառք փրկութն . արդ հաւատացէք 'ի ճշմարիտ ածն ամի 'ի տէր մեր յս քս . և այլ օգտակար բանս խօսեցաւ : Իբրև լուան զայսպիսի բանս նր բազմութն ամբոխին՝ որք 'ի նա հայէին իբրև 'ի կատարեալ առաջնորդ կրօնից իւրեանց , 'ի տրչութէ շնորհացն այ դիւրանասաց եղեն վկայութե նր . և ոչ սակաւք հաւատացին 'ի քս՝ արք և կանայք , ծերք և տղայք . և կանխեալ

կային առ նա՝ զցայգ և զցերեկ ։
Ապա եղև Լուսիաս դատաւորին՝ որ իշխանութբ̃ հռովմայեցւոց հրամանատար էր յայնժամ յեդեսիա (6), եթէ սարբիլոս քարոզ քրիստոնեայ եղև, և զհետ իւր ձգեաց զբազմունս ամբոխին ։ Նա կոչէր զնա վաղվաղակի առաջի իւր ․ և բազում ողոքական բանիւք և սպառնալեօք խօսեցաւ ըն̃ նմա՝ ՚ի բաց թողուլ զնոր օրէնս, զոր ընկալաւ, և կալ յառաջին պաշտօնին ․ այլ նա քաջութբ̃ արար պինդ ամ̃ բանից դատաւորին, և ամենևին ոչ հաւանեցաւ նմա ուրանալ զՔս, և կամ զոհել այլ եւս կռոց ։ Նա դատաւորն բարկացեալ՝ ետ հարկանել զերանելին դալար գրօք ․ և ապա քերեցին և քերթեցին երկաթի եղնգամբ զծնօտս նորա և զերեսս ․ և կապեալ զձեռս ՚ի յետս՝ հարկին ուժգին զորովայն նր̃ ․ և այնպէս տարան արկին զնա ՚ի բանտ ․ որոյ զհետ երթային բազումք ՚ի հաւատացելոցն ։

Յետ բազում աւուրց հանեալ ՚ի բանտէն՝ միւսանգամ կացուցին զերանելին առաջի դատաւորին ․ և տեսին զնա նոյնպէս հաստատուն ՚ի հաւատս քսի ։ Ապա հրամանն ետ Լուսիաս, և կախեցին զնա զաջոյ ձեռանէն, մինչև խախտեցան ամ̃ յօդուածքն ․ այրեցին և հրով զարտևանունսն և զքերեալ ծնօտսն ։ Նա դարձեալ կախեցին և քերեցին զկողսն նր̃ ․ և բացախ խառնեալ աղիւ հեղին ՚ի վր̃ վիրացն և ՚ի վր̃ քերթեալ և խանձողեալ ծնօտացն ։

Յետ այնորիկ հանեն զնա 'ի խաչ․ և յետ կայլոյ ժամս ինչ 'ի վ՟ի խաչին՝ իբրև տեսին եթէ ոչ մեռանի, իջուցին 'ի վայր․ և կամէին սղոցել զնա ։ Յայնժամ ոմանք 'ի բարեկամաց մատուցին նմա գինի թմբրադեղաւ, զի մի՛ զգասցի զցաւս տանջանաց ։ Ասէ սէ՟ն․ կամիմ՝ զի առաւելապէս զգացից զդառնադոյն կտտանս․ և ո՛չ արբ զգինին ։ Եւ համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ ասէր․ Թողուլի՛ արա ինձ տ՟ր առաջին յանցանաց իմոց, որովք բարկացուցի զքեզ պիղծ կռօքն և զոհիւք, և փրկեա՛ զիս 'ի հանդերձեալ դատաստանացն ։ Զայս ասացեալ, և արարեալ յինքն զնշան տ՟ռ խաչին, եմուտ 'ի մամուլն, և սկսան սղոցել զնա ։ Այլ շատ ջանացեալ սպասաւորաց դատաւորին, տեսին զի ոչ գծեաց 'ի նա խիզարն․ ապա հատին սրով զգլուխ ն՟ր․ և այնպէս կատարեցաւ երանելին 'ի տէր ։ Իսկ քոյր ն՟ր բաւէա ընկալաւ զգլուխ սրբոյն 'ի գիրկս իւր, և ասէ․ ընկա՛լ և դու զհոգի իմ ընդ հոգւոյդ քում քաղցրի՛կ եղբայր իմ, և մատո՛ քնի՝ յոր հաւատացաքն ։ Եւ լուեալ դատաւորին, մինչ դեռ 'ի գիրկսն ունէր նա զգլուխ եղբօրն, հրամայեաց, և հատին զգլուխ ն՟ր 'ի նոյն տեղի․ զորս առեալ քրիստոնէիցն՝ թաղեցին պատուո՛վ 'ի տապանս իւրեանց ։

Յայնժամ մատնեցին ոմանք դատաւորին, եթէ զարբիւլոս քուրմն՝ եպ՟կսն քրիստոնէից բարսումա դարձոյց 'ի հաւատն իւր և մկրտեաց․ (որով և նա եղև պատճառ մահ-

ուճան նորա.) և ոչ զնա միայն, այլև զբազումս 'ի գլխաւորաց քաղաքին՝ զօտս (կի̃ զաւղաս, և կի̃ղարքեթաս), և զարհաւէաս, և զյոփէոս: Հրաման ետ զնոսին ածել առաջի իւր զվ̃ եպսն. և գնացեալ սպասաւորացն՝ գտին զնա 'ի տանն ո̃ւյ բազմութ̃ք քրիստոնէից. և իբրև կալան զնա ձգել յատեան, զհետ ընթացան նորա և հաւատացեալքն. և եկեալ համդերձ նովաւ առաջի ատենին՝ ընդ նմին աղաղակէին միաբան, և ասէին, թէ մեռանիմք վ̃ս սիրոյն ք̃սի, մեռանիմք:

Իսկ դատաւորն սաստէր յամբոխին՝ հարցանել սկսաւ զեպ̃սն բանիւք բազմօք. և նա համարձակ յօժարութ̃բ խոստովան եղև՝ ցանկանալով մեռանել վ̃ս անուանն ք̃սի: Յայնժամ զայրացեալ դատաւորին՝ ետ գան հարկանել զնա ուժգին եօթն (կամ հինգ) առանց. և դարձեալ ողոքական բանիւք խօսէր ը̃ նմա. զի ջանայր հաւանեցուցանել զնա 'ի կամս իւր. և կի̃ սպառնալեօք հնարէր ահացուցանել: Իսկ ո̃ր եպ̃կսն ասէր. ես զք̃ս հաւատամ ա̃ծ, և անարգեմ զկուռս քո. և դու հրամայեա տանջել զմարմին իմ վ̃ս ք̃սի. զի լիցի ինձ բարի. քանզի բանք քեո չեն ինձ յօգուտ: Իսկ հրամայեաց դատաւորն տանջել զնա 'ի կախանս և 'ի քերանս երկաթի եղնգամբք. կախեցին զնա և քերեցին. այլ ոչ կարաց լուծանել զհաստատութի մտաց ն̃ր:

Իսկ մինչդեռ զարմացեալ կայր դատաւորն,

և

և խորհէր՝ թէ որ այլ տանջանօք փորձեսցէ զնա մինչև ՚ի մահ, ՚ի նոյն ժամն եհաս հրամայրտակ առ դատաւորն ՚ի պատրկէն և ՚ի մեծ եպարքոսէն սպալատիոսէ, թէ հրամանք հասին ՚ի մեծ թագաւորէն տրայիանոսէ ազատել զամենայն քրիստոնեայսն ՚ի բանտից և ՚ի տանջանաց. և առժամայն լուծին զնոսա եպիսկոպոսն ՚ի կախաղանէն, և արձակեցին: Իսկ էր պատճէն թագաւորական հրամանին այսպէս, թէ լուաւ թագաւորութիւս մեր ՚ի հաւատարիմ իշխանաց մերոց բազմաց վասն քրիստոնէից, զի օրէնք նոցա նման են նոմոսաց մերոց. պիղծ համարին զարիւնահեղս և զկախարդս, և ՚ի բաց լինել ասեն ՚ի շնութենէ և ՚ի գողութենէ, և ՚ի նենգութենէ որ առ ընկերս, և ՚ի զրկանաց. ատել ուսուցանեն զկաշառատուս և զկաշառառուսն և զգողամիտսն: Իսկ վասն զի մի խորհրդով են ՚ի նոցա և մեր նոմոսն գրեալքն, հրամայեցաք դադարեցուցանել զհալածանս ՚ի քրիստոնէից, և զսուր և զտանջանս, և կեալ նոցա ՚ի հանգստեան. և խաղաղութեան կատարել զկարգ կրօնից և պաշտաման իւրեանց. ոչ թէ նոցա զիջանելով, այլ նոմոսացն գրելոց հաւատարութեան: Արդ՝ եթէ ոք արգելու զնոսա ՚ի կրօնից իւրեանց և կամ հալածեսցէ և կամ նեղեսցէ, պատիժս և տանջանս ընկալցի ՚ի թագաւորութենէս մերմէ:

Յայսպիսի հրամանացս ազատեցաւ և սուրբն բարսումա եպիսկոպոսն ՚ի կապանացն և ՚ի տանջանացն. և առեալ զնա բազմութիւն հաւատացելոցն արանց և կանանց՝ մեծաւ ուրախութեամբ,

սաղ-

սաղմոսիւք և օրհնութ՟ տարան յեկեղեցին։ Յու այնուհետև համարձակութի գտեալ երանելւոյն՝ աներկիւղ քարոզէր զկրօնս ած-պաշտութե. որով և դարձոյց զբազումս ևս այլ 'ի պարթևացն 'ի հաւատս քսի։ Յու այնպէս բարի վարուք և մեծաւ ճգնութ՟ և առաքինութ՟ կեցեալ՝ ունելով զչարչարանան քսի 'ի մարմնի իւրում, և հասեալ 'ի բարւոք ծերութի՝ հանգեաւ խաղաղութ՟ 'ի քս խոստովանող վկայն և ճգնաւորն քսի երանելին բարսումա. և թաղեցին զնա հաւատացեալքն յայտնապէս մեծաւ տօնախմբութ՟ և պատուով յեկեղեցին 'ի տեղին իւր։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Նախ քան զտեսութեն վարուց սրբ խոստովանող եպսին բարսումայ կմ պարսումայ, հարկ 'ի վր կայ ծանուցանել ընթերցանելեաց զանհրաժեշտ և զանպատռճակելի խնդիր ծագեալ 'ի համաձայնութէ համանուն առն օտարի մուծելոյ 'ի յետին օրինակս յայսմաւուրաց, տօնացուցի և Ճաշոցի. Արդ՝ ոչ գիտելի է իմաստնոց, և կամիմք՝ զի գիտելի լիցի ամցն, կարծ վաղագոյն է կարգաւորուն տօնացուցին՝ ոչ և Ճաշոցին՝ քան զայսմաւուրացն. զի յայսմաւուրք՝ սկսեալ 'ի Ճառընտրայ՝ զառաջին ծագումն 'ի մեզ առին 'ի մեծէն գրիգորէ վկայասիրէ 'ի ժա դարու. և զվերջին կարծեցեալ լրումն գտին 'ի ձեռն գրիգորի ծերենց խլաթեցւոյ 'ի ժե. դարու. ուր Ճաշոցն կանխագոյն հանդիսացեալ յաղգին՝ զարդարեցաւ այլ ևս ընթերցուածովք՝ * ցուցմամբ աւուրց հռոմի ամսոց ||, 'ի ձեռն նորին վկայասիրի՝ յժ վկայելոյ իւրոյ 'ի յիշատակարանս հին ձեռագրաց. և 'ի Ճոխագոյն վայելչութ վերածեալ եղե 'ի սքն ներսիսէ կլայեցւոյ։ Իսկ տօնացոյցն յառաջ ք զայս ամ հինհարկեն էր և կարգաւորեն 'ի սբց Թարգմանչ

մանչաց յիսահակայ և 'ի մեսրովբայ, ուր աւանդանե
ազգիս համօրէն՝ հանդերձ խորագրովք ամ օրինակաց
ամնացուցից · թէպէտև զկնի ութեք ութեք գուցէ լե-
րումն ինչ առել իցէ 'ի նմին վկայաւորել և 'ի շնորհաւ-
որյն, և կմ յայլոց յառաջագունից ՚ք զնա · թող զայսա
ժամանակաց այլափոխութեան ։

Արդ՝ եթէ 'ի թարգմանչաց անտի մերոց եդաւ ա-
նուանս պարսուման կմ պարսամայ ասրնթեր արիփոնի
վկայի · ( ըր որում է տեսանել յամ հին և նոր օրինակս
ամնացուցից ,) ապա հարկ է խոստովան լինել թէ ուր
սբն արիփոն , նոյնպէս և սբն պարսումա էր յառաջ
ժամու քան զթարգմանիչս ։ Եւ ահա այսպիսի է միայն
սբն բարսումա կմ պարսումա ձգնող հայրապետ եգե-
պտացւոց · վոյ և զնր զվարս հարկ էր մեզ աւանդել ։
Եւ ըր հինն՝ պարսամ կմ պարսումա ասորի սամոս-
տացի՝ որ մանծեալ է 'ի յետնոց 'ի յայսմաւուրս , յե-
տոյ էր քան զթարգմանիչս մեր · նմին իրի ուր անգի-
տելի էր նց , նոյնպէս և մեզ անգիտելի մնացէ յաւի-
*տեան ։

Թերևս ունէր ոք ասել , թէ յետ թարգմանչաց այլք
'ի հայրապետաց ազգիս եւս յաւելլին ոչ սակաւ անուանս
սբց 'ի յամնացոյցն ։ Բայց զորս արդեօք · զվարդանեանս
և զղևոնդեանս , զնոյն ինքն զթարգմանիչս , զվահան
գողթնացի , և որ սոցին նման են՝ 'ի բնիկ ազգէ հա-
յոց , և կմ 'ի հայաստան նահատակեալս · ուր յայտ է՝
որոց մեր գնեն · ապա օտարքն՝ որպիսիք ոմանք և իցեն ,
օտար են 'ի հարազատ կարգաւորութէ ամնացուցին ։

Այնօրինակ ազգէն և օրինակք հին ճաշոցաց , յորս մի
եւեթ ընթերցուած գտանի 'ի փետրվարի ՟ժ՟ · յանուն
սբյն արիփոնի վկայի առանձինն ։ Իսկ յայն օրինակս՝
յորս տեսանի և անուանս պարսամայ , գրի ուրոյն այս-
պէս · ✱ Պարսամայի զարփինիս կարգս ‖ · զոր անմարթ
էր առնել , եթէ և պարսամայն չէր վկայ ուր զարփոն ,
կամ ձգնեալ 'ի խոստովանութե վկայութե · և սակայն
յետինք զակաւեալք զհետ ասորւոց ոմանց՝ բարձեալ
են զընթերցուած մարտիրոսի , և եդեալ են նոր ըն-
թերցուած ձգնաւորի · ուր զի սամոսատցին 'ի ներքս
սպրդեսցի՝ ընդդէմ կարգաւորութե և մտաց նախնի հարց
մերոց ։

Բայց և այնպէս՝ ընթերցուած ձգնաւորի թէև տա-
րադէպ գոյցէ սբյն արիփոնի , ոչ ինչ ՚անդէպ գայ սբյն
բարսումայ հայրապետի · զորոյ զվարս այսպէս գիտա-
ւորէ

ւորէ յայսմաւուրքն գլխովին. * Եւ այնպէս բարի վա֊
,, րուք ( ասէ՝ յետ հանգիստ խոստովանողական վկայ֊
,, ութե ), և մեծաւ ճգնութբ̃ և առաքինութբ̃ կեցեալ, ու֊
,, ներով զչարչարանսն քնի ՚ի մարմնի իւրում. և զբա֊
,, զում գործոցյանհաւատիցն ՚ի հաւատս քնի: Եւ
,, հասեալ ՚ի բարիոք ծերութե՝ հանգեաւ խաղաղութբ̃
,, ՚ի քս̃||: Այսպէս գրի ՚ի հնագոյն ձեռագիրս յայս֊
մաւուրաց. ուր յետինք ( ոչ գիտեմ. կամաւ, եթէ
անհոգութբ̃ ) թողեալ են ՚ի բաց զձայնս՝ * մեծաւ ճգ֊
նութբ̃ ||:

Յաւել լինի և զայն, զի ոչ̃ յոյնք տօնեն զնոյն բարսու֊
մա եդեսացի՝ երկու և երեք աւուրբք մօտ նոյն ոլի֊
փոնի, ( յն̃ զոլիփոն ՚ի ա. փետր. և զբարսումա ՚ի յուն֊
վարի Է. կամ ԺԹ. ) սոյնպէս և նախնիք մեր եդեալ
են զբարսումա կից Է̃ ոլիփոնի՝ եթէ ՚ի տօնացուցի և
եթէ ՚ի ճաշոցի. յորմէ և յայսմաւուրք եդին զմին զկնի
միւսոյն ՚ի սկիզբն փետրվարի: Այլ սակայն յետին օ֊
րինակագիրք յայսմաւուրաց՝ ըստ թեւլագրութե ասու֊
ւոց, ( որք ՚ի սոյն միջոց մուծանեն զիւրեանց պարսամն
կամ զբարսումայն, ) փոխանակ պատմելոյ զվարս նոյն
բարսումայի եդեսացւոյ՝ կարգեալ են զպատմութե սա֊
մոստացւոյն, և վայրապար փոխադրեալ զեդեսացւոյնն
ոմանք ՚ի դեկտ. ԺԴ. և այլք ՚ի Թ դեկտ: Եւ ո՞ կարէ
տանել, զի տարագիր լիցի նա, և փոխանակ նր̃ դիցի
անորն. և ազգասիրապէս՝ բարձցի պարթեւազեանն ե֊
դեսացի, և դիցի սորին սամոստացի՝ սուտ մխիթա֊
րութբ̃ մելիտինեայ քաղաքի փոքուն հայոց, որ ընծայի
նմա յոմանց իբրև տեղի ծննդեան կամ վանաբնակութե.
այլ մեր թողեալ զնա դնալ ՚ի տեղի իւր՝ երթամք ըղ֊
հետ ազգային նոյն մերոյ, և որոց Է̃ նմա:

(2) Որպէս և զեւ՞որդ պտաք ՚ի Հ. զվարս կամ զվկայա֊
բանութե սբ̃յս, գրեթէ նովիմբք եղերօք առաջի եդաք՝
յաւէտ ըն̃ ձեռագրաց. նոյն է և գոյացութե պատմութե
առ. Յ. և Լ. ոչ̃ և առ ասորիս և առ այլ արեւելեան
վկայագիրս՝ ըստ յիշատակելոյ ասսեմանեայ ՚ի զանազան
տեղիս: Եւ ոչ̃ ՚ի մեզ՝ է զի անուն սբ̃յն գրի բարսու֊
մա, կամ պարսումա, և է զի զի բարսիմէոս կմ̃ բար֊
սիմա, ըն̃ նմին և առաւել եւս տարբերութբ̃ առ այլս է
իմանալ. բայց ոմն վերածելի՝ ոչ̃ ասացաք, առ բնիկ
հնչումն պարսաւմա, որ ռամկօրէն պարսամ, եւս և
վարսամ ասի: Նոյն անունն է՝ որ և բարծումա գրի,
ստէպ ՚ի կիր արկեալ առ ասորիս և առ քաղդէացիս
՚ի

'ի վաղ ժմկաց հետէ ։ Զայս մի̃ այն երկրորդեցի, զի մի տարբեր ընթերցուած անուանց լիցի քեզ կանոնո-րոշելոյ զայլ յաւէտ, այլ տարբերուն վարուց և գոր-ծոց և ժամանակաց ։

Արդ՝ ծանիր, զի 'ի Լ. յնվր. 30. երկու ս̃ք յիշատա-կին բարսիմէ և բարսեղ անուամբ՝ երկոքին եւս եպ̃ս եդեսիոյ 'ի զնոյն ժմկս. քանզի ասի. * Յեդեսիա յերկ-,, րին ասորւոց՝ (յիշատակ) ս̃ին բարսիմեայ եպ̃սին, ,, որոյ դարձուցեալ զբազումս 'ի հեթանոսաց 'ի հա-,, ւատս, և կանխագոյն առաքեալ զնոսա առ պսակն ,, (վկայական,) հետևեցաւ զկնի ն̃ց առ տրայիանո-,, սիւ արմաւենեաւ մարտիրոսուէ ։ Անդանօր՝ ս̃ին ,, բարսեղ եպ̃սի՝ շնորհիւ բժշկուեց երևելի եղելոյ. ,, որ 'ի վաղեսէ արիանոս կայսերէ 'ի վերջին ծագս աշխ̃ր-,, հի արտաքսահմանեալ վ̃ս կաթողիկէ հաւատոյ՝ վախ-,, ճանեցաւ զկեանս||։

Եւ զերկրորդս զայս յիշատակեն նաև յոյնք 'ի ժամա-գիրս իւրեանց. հոկտեմբ. 15. այլ առ մեզ առաջինն միայն գտանի, զորոյ և զպատմութին եդաք ։ Իսկ թէ Լ. ցուցանէ զնա մարտիրոս լինել, առ այս ասէ բոլլանդ., թէ չէ՛ պարտ այդու իմանալ՝ որպէս թէ 'ի տանջանս մարտիրոսուէ իցէ վախճանեալ, այլ թէ մարտիրոսա-կան չարչարանս կրեաց, և յետ հանգստեամբ վախճա-նելոյն՝ վկայական եհաս պսակաց. ըստ որոյ և բարո-նիոս ասէ յամի. 107. * փառաց մարտիրոսութե ար-ժանաւոր եղև (կամ արդիւնաւորեցաւ)||. և 'ի ժա-մագիրս Յ. յունվարի. 30. գրի 'ի ներբող ն̃ր. * բար-,, սիմէոս անարիւն վկայ եղև ք̃ի, և հաւատարիմ քա-,, հանայապետ||։

Զվարս երկրորդ բարսիմեայ այսպէս առաջի առնէ թէոդորետոս. էր (ասէ) երևելի և մեծանուն ոչ միայն յեդեսիա յաթոռ իւր, այլև 'ի փիւնիկէ, յեգիպտոս և 'ի թեբայիդ. զի համբաւ բարեկլաւուէ և առաքինուէ ն̃ր տարածեալ էր ը̃ ամ̃ տեղիս. զսա վաղէս հրաման ետ դնել 'ի դիպահոջ 'ի կղզին առադսոյ փիւնիկեցւոց. այլ իբրև լուաւ, թէ ընթանան առ նա անդր բազմութին յոյժ, քանզի առաքելաշնորհ գոլեալ՝ բանիւ զցաւս փա-րատէր, աքսորեաց զնա յոքսիրինխոն քաղաք եգիպ-տացւոց. և ջզի անդ եւս հասանէին ժղովուրդք, վարեաց 'ի հեռագոյն ամրոց փիլոն անուն 'ի սահմանս բարբա-րոսաց զայրն ծերունի՝ զարժանաւոր բնակիչն երկնից արքայուէ ։ Եւ պատմի (ասէ,) թէ անկողին ն̃ր կայ մին-

սորէ յայսմաւուրքն գլխովին. * Եւ այնպէս բարի վա_
,, րուք ( առէ՝ յետ հանգիստ խոստովանողական վկայ_
,, ութե ), և մեծաւ ճգնութբ և առաքինութբ կեցեալ, ու_
,, նելով զչարչարանսն քնի 'ի մարմնի իւրում. և զբա_
,, զում դարձոյց յանհաւատից 'ի հաւատս քնի: Եւ
,, հասեալ 'ի բարւոք ծերութե՝ հանգեաւ խաղաղութբ
,, 'ի քս ||: Այսպէս գրի 'ի հնագոյն ձեռագիրս յայս_
մաւուրաց. ուր յետինք ( ոչ գիտեմ. կամաւ, եթէ
անհոգութբ ) թողեալ են 'ի բաց զձայնս՝ * մեծաւ ճգ_
նութբ ||:

Յաւել լինի և զայն, զի ոչ յոյնք տօնեն զՍբն բարսու_
մս եդեսացի՝ երկու և երեք աւուրբք մօտ Սբյն ովի_
փոնի, ( յս զովիփոն 'ի Ծ. փետր. և զբարսումս 'ի յուն_
վարի Է. կամ ԺԹ. ) սոյնպէս և Նախնիք մեր եդեալ
են զբարսումս կից Է սովիփոնի՝ եթէ 'ի տօնացուցի և
եթէ 'ի Ճաշոցի. յորմէ և յայսմաւուրք եդին զմին զկնի
միւսոյն 'ի սկիզբն փետրվարի: Այլ սակայն յետին օ_
րինակագիրք յայսմաւուրաց՝ ըստ թեւլադրութե ասոր_
ւոց, ( որք 'ի սոյն միջոց մուծանեն զեւբեանց պարսամն
կամ զբարսումսն, ) փոխանակ պատմելոյ զվարս Սբյն
բարսումայի եդեսացւոյ՝ կարգեալ են զպատմութե սա_
մոստացւոյն, և վայրապար փոխադրեալ զեդեսացւոյն
տօնս 'ի դեկտ. ԺԲ. և այլք 'ի Թ դեկտ: Եւ ո՛ կարէ
տանել, զի տարադիր լիցի Սբն, և փոխանակ նր դիցի
անՍբն. և ազգասիրապէս՝ բարձցի պարթեւաղեանն ե_
դեսացի, և դիցի ասորին սամոստացի՝ սուտ մխիթա_
րութբ մելիտինեայ քաղաքի փոքուն հայոց, որ ընծայի
նմա յոմանց իբրև տեղի ծննդեան կամ վանաբնակութե.
այլ մեր թողեալ զնա դնալ 'ի տեղի իւր՝ երթամք ըղ_
հետ ազգային Սբյն մերոյ, և որոց Է նմա:

(2) Որպէս և զեւորդ գտաք 'ի Հ. զվարս կամ զվկայա_
բանութե սբյս, գրեթէ նովիմբք եղերօք առաջի եդաք՝
յաւէտ ըս ձեռագրաց. նոյն է և գոյացուն պատմութե
առ. Յ. և Լ. ոչ և առ ասորիս և առ այլ արեւելեան
վկայագիրս՝ ըստ յիշատակելոյ ասեմանեայ 'ի զանազան
տեղիս: Եւ ոչ 'ի մեզ՝ է զի անուն սբյն գրի բարսու_
մա, կամ պարսումա, և է զի զի բարսիմէոս կմ բար_
սիմոս, ըս նմին և առաւել ևս տարբերութբ առ այլս է
իմանալ. բայց ոմն վերածելի՝ ոչ ասացաք, առ ընիկ
հնչումն պարսաւմա, որ ռամկօրէն պարսամ, ևս և
վարսամ ասի: Նոյն անուն է՝ որ և բարծումա գրի,
մանաւ 'ի կիր արկեալ առ ասորիս և առ քաղդէացիս
'ի

՚ի վաղ ժմկաց հետէ ։ Զայս վն այն երկրորդեցի, զի մի տարբեր ընթերցուած անուանց լիցի քեզ կանոն որոշելոյ զայր յառնէ, այլ տարբերութն վարուց և գործոց և ժամանակաց ։

Արդ՝ ծանիր, զի ՚ի Լ. յնվր. 30. երկու սքք յիշատակին բարսիմէ և բարսէմ անուամբ՝ երկոքին եւս եպս եգեսիոյ ՚ի շնչն ժմկս. քանզի ասի. * Յեգեսիա յերկ-
„ րին տարւոց՝ (յիշատակ) սբյն բարսիմէայ եպսին,
„ որոյ դարձուցեալ զբազումս ՚ի հեթանոսաց ՚ի հա-
„ ւատս, և կանխագոյն առաքեալ զնոսա առ պապն
„ (վկայական,) հետևեցաւ զնոսին նդ առ տրայիանո-
„ սիւ արմաւենեաւ մարտիրոսութն ։ Անդանօր՝ սբյն
„ բարսէմ եպսի՝ չորրհիւ բժշկութեց երևելի եղելոյ,
„ որ ՚ի վաղեսէ արիանոս կայսերէ ՚ի վերջին ծագս այնր
„ Տի արտաասհմանեալ վն կաթողիկէ հաւատոյ՝ վախ-
„ ճանեցաւ զկեանս ||։

Եւ զերկրորդս զայս յիշատակեն նաև յոյնք ՚ի ժամագիրս իւրեանց. հոկտեմբ. 15. այլ առ մեզ առաջինն միայն գտանի, զորոյ և զպատմութին եդաք ։ Իսկ թէ Լ. ցուցանէ զնա մարտիրոս լինել, առ այս ասէ բոլլանդ, թէ չէ պարտ այդու իմանալ՝ որպէս թէ ՚ի տանջանս մարտիրոսութն իցէ վախճանեալ, այլ թէ մարտիրոսական չարչարանս կրեաց, և յետ հանգստեամբ վախճանելոյն՝ վկայական եհաս պսակաց. ըստ որոյ և բարոնիոս ասէ յամի. 107. * փառաց մարտիրոսութն արժանաւոր եղև (կամ արդիւնաւորեցաւ) ||. և ՚ի ժամագիրս Յ. յունվարի. 30. գրի ՚ի ներբող նր. * բար-
„ սիմէոս անարիւն վկայ եղև քնի, և հաւատարիմ քա-
„ հանայապետ ||։

Զվարս երկրորդ բարսիմէայ այսպէս առաջի առնէ թէոդորետոս. էր (ասէ) երևելի և մեծանուն ոչ միայն յեգեսիա յաթոռ իւր, այլև ՚ի փիւնիկէ, յեգիպտոս և ՚ի թեբայիդ. զի համբաւ բարեկրօնութն և առաքինութն նր տարածեալ էր ը ամ տեղիս. զսա վաղէս հրաման ետ դնել ՚ի դիպահոջ ՚ի կղզին առադայ փիւնիկեցւոց. այլ իբրև լուաւ, թէ ընթանան առ նա անդր բազմութի յոյժ, քանզի առաքելաշնորհ գտեալ՝ բանիւ զցաւս փարատէր, աքսորեաց զնա յոքսիրինխոն քաղաք եգիպտացւոց. և ջզի անդ եւս հասանէին ժղվրդք, վարեաց ՚ի հեռագոյն ամրոց փիլոն անուն ՚ի սահմանս բարբարոսաց զայրն ծերունի՝ զարժանաւոր բնակիչն երկնից արքայութն ։ Եւ պատմի (ասէ,) թէ անկողին նր կայ

մին-

մինչև ցայժմ յառաջ կղզին սպահեալ պատուեալ մեծաւ. քանզի բաղումք յախտաժէտաց ՟Է հանդչին 'ի մ՟ջ ն՟ր՝ ստացան անդրէն զառողջութի հաւատով:

Արդ թէպէտ և երկրորդիս այսմ 'ի ձաւ լիցէ՝ հանդոյն առաջնոյն կոչիլ խոստովանօղ կամ ճգնօղ հայրապետ, այլ տօնելին կա՟ հանդիսացեալն առաւելապէս է առաջինն. զոր և ասեմ դնէ պարզապէս յիշատակեալ գոլ 'ի պտ՟րգամատուցի քաղդէացւոց. տես հատ. ՟Է. երես. 6. ուր և կշտամբէ՝ զորս հնարէին բամբասել զնա, ո՟չ թէ բարսումայն անս՟ե լիցէ առ 'ի ն՟ջէ յիշատակեալն: Եւ զի իրաւացի են այս փաստք ն՟ր, ապա և չէն իրաւունք դասել նմա զտօնացոյց հայոց ՟Է առարիս յայսմ մասին՝ 'ի խօսելն զպարսումայէ յակոբիկեանց. յերես. 8. զի թէ ինքն գիտէ զլաւն ընտրել, և մեք ընկալաք 'ի տ՟նէ զբարի բարին ժողովել յամենս, և զխոտանն 'ի բաց ընկենուլ. թո՛ղ զի և զմարգարէականն փութամք կատարել. որ հանէ զպատուականն յանարգէն, բերան իմ կոչեսցի, ասէ տ՟ր:

(3) Ատանօր՝ ուր 'իտովրական օրինակս Հ. դնի, զպարթևազինան, մին 'ի հին օրինակաց գրեալ էր՝ ըզպարթևազէնան: Այլ որ գրի յամսին կինդար կա՟ կինդարս կա՟ կիդարս, պարտի լինել կիդար՝ ո՟չ դնէ տ՟ր լինէլ. և կա՟մօտ յունականին՝ կիդարիս. զի և առ յոյնս ասի գիտարիս:

(4) Բաւէա կամ բաւէաս, որ ըստ Լ. բարբէա, 'ի Յ. է' զի գրի վալէա, և է' զի վէլէա, զոր յոյն երգաբանն 'ի ժամագրքի անդ ստուգաբանել կամի յունարէն՝ հափաւան. բայց յայտ է թէ է անուն արևելեան. որպէս և զբարսումայն 'ի զուր ձգէ 'ի յունական ստուգաբանութի, ո՟չ թէ վարսումա ծաղեալ իցէ 'ի ձայնիցս վարօս՝ ծանրութի, և սօմա՝ մարմին. ՟Ը որում ասէ, * տըռէեալ զծանր մարմինն հողոյ վասսումէոս դասակից բարձուլաց զաւուրն ծանրութի ||: ուր բարուք ասէ բոլլանդ. * այլ այս ձայն առանց ՟Է բանս լինչ ածելոյ՝ ասորական է ||:

Ուր գիտելի է. զի Յ. բասիլ. 'ի յունվարի 30. համաձայն մեզ դնէ պարզապէս զյիշատակ ս՟րյն բարսումայի, հետևաբար ևեթ նշանակելով՝ եթէ զմկրտիլ սարքիւլոսի 'ի նմէ, և եթէ զնահատակիլն ՟Է քեռ իւրում բաւէայ: Խակ 'ի սեպտ. 5. ուրոյն կարգէ զյիշատակ թաթուէլի և քեռ ն՟ր բաւէայ, ո՟չ թէ արդէն քրիստոնեայ էին, և վ՟ս դարձուցանելոյ զք՟ս 'ի հե-

թա-

Թանոոսայ՝ ըմբռնեցան և նահատակեցան . և զի ոչ զա_
նուն կայսեր յիշէ սա և ոչ զզաստուորի , կարէ կար_
ծել վերծանողին՝ թէ այլ պատմութի իցէ : տես զայսմա_
նէ և 'ի (5) :

Իսկ ժամագիրք յաւնաց գրէ նախ 'ի յունվարի . 29 .
*յիշատակ սրբ̃ց վկայիցն սարգսիայ և մեծմեծայ քեռնենի ,
որք կատարեցան յեղեսիա || , 'ի վր̃ բերեալ և զհամա_
ռօտ պատմութիւնն : Եւ ապա 'ի նմին աւուր յարէ ու_
րոյն . *յիշատակ սր̃յն բարսիմայ մեծի վկայի եպիսկոպոսին
եդեսիոյ || , նոյնպէս հանդերձ համառօտ պատմութե̃ն .
և դարձեալ միւսանգամ 'ի յունվարի . 30 . ասէ . *Նա_
հատակութի̃ սր̃յ վկային բարսիմեայ եպիս || . և սոա
ևս կրկնէ զնմանօրինակ պատմութի̃ : որ̃ և 'ի հոկտ . 15 .
վերստին առանձնակի դնէ զյիշատակ * սր̃ց մարտի_
,, րոսացն սարգեւլոսի և մեծմեծայ քեռ նր̃ || , հանդերձ
նոյնպիսի՝ և ը̃ լինիք տարբեր՝ գրուց̃ վկայաբանութե̃ :
Թող զի և 'ի սեպտ . 5 . առանձին յիշատակ կարգէ՝ օ_
տար հանգամանօք . * Սր̃ն սարգեւլոս քարկոծեալ (ա_
սէ ) 'ի դահճաց՝ կատարի : Սարգեւլոս չառեալ յանձն
,, պաշտել զպիղծ կուռս՝ ձեռամբք արանց պղծոց քար_
,, կոծ լինի || : Ե՛ն , որք ը̃ բովանդակեանց այսպէս պատ_
ճառս տան այդց կրկնութեց և տարբերութեց . այլ մեզ
շատ լիցի այսչափ նշանակել , և մերովս շատանալ ըն_
տիր վկայաբանութեբ̃ :

(5) Այլ շփոթ է առ լատին քննիչս 'ի վր̃ անուանս
Թուլթայէլ , ( զոր լինքեանք ընթեռնուն Թաթուէլ , )
որ է երկրորդ կոչումն որդւյն սարգեւլայ 'ի մկրտութե̃ , և
այս վր̃ կրկնադիմի պատմութեց աւանդելոց 'ի Լ . ուր
'ի 29 . յունվարի ասի . * Յեղեսիա յերկրին ասորւոց
,, ( կատարումն ) որբց վկայիցն սարգեւլիոսի և բարբէայ
,, քեռ նր̃ . որոց մկրտեալ յեպիսկոպոսէն բարսիմեայ ե_
,, պիսկոպոսէ՝ 'ի հալածանս տրայիանոսի առ լիւսիա
,, դատաւորաւ պսակեցան մարտիրոսութեբ̃ || : Իսկ 'ի
սեպտ . 4 . ասի . * 'Ի նմին աւուր ( յիշատակ ) որբցն՝
,, Թամէլի , որ էր յառաջագոյն քուրմ կռոց , և ընկե_
,, րաց նր̃ մարտիրոսաց՝ առ ադրիանոս կայսերաւ || :
Եւ զի բարոնիոս փոխանակ Թամէլի ընտրէ ընթեռնուլ
Թամուէլ , ևս առաւել ըստ այլոց Թաթուէլ , սկսա_
նի բովանդ տարակուսիլ՝ թէ արդեօք նոյն իցեն սար_
բէլոս և բարբէա նահատակեալք առ տրայիանոսիւ՝
ը̃ սարգեւլայ և ընդ բարբէայ նահատակելոց առ դոմե_
տիանոսիւ . և թէ ո՞ իցէ Թաթուէլն . և յայս աւարտէ

զխնդիրն, թէ * մ ոչ ՚ի կասկած անկանիցի՝ թէ նոյն
,, վէվէա ( կամ բաւէա ) է, և նոյն սարքելոս. և թէ՝
,, թաթուէլն է եղբայր սարքելայ. կամ թէ նոյն ինքն
,, իցէ երկանուն՝ սարքելոս թաթուէլ կոչեցեալ, կամ
,, թէ միակ անուն իցէ սարքելաթաթուէլ: Իսկ թէ
,, սոքա առ ագրիանոսիւ, և նոքա առ տրայիանոսիւ
,, անին նահատակեալ, գուցէ կալանաւորեցան առ
,, տրայիանոսիւ, և սպանան առ ագրիանոսիւ. և կամ
,, թէ ՚ի խափանել տրայիանոսի զհալածանս՝ յետոյ յա-
,, դրիանոսէ իցեն նահատակեալ, և կամ յիշխանաց նո-
,, ճզի երկոքեանն իսկ նուաճեցին պատերազմաւ զա-
,, րաբեան ազգն զայնոսիկ || : Որ առաւելս, զի քաջն
բուլանդ պէսպէս յօղյեղելով զկարծիս՝ գտանէ և եղ-
ծանէ միանգամայն զառոյգն, զոր խնդրէ. մինչ զի եթէ
՚ի ձեռին ունէր զվկայաբանութիւն մեր, զնոյն եւթ զհետ
երթայր, և լուծանէր զամենայն տարակոյս:

(6) Շփոթեալ են զվիպս բուլանդայ և ոմանք ՚ի վկայա-
գրաց, որոց ըստ մասի գտեալ՝ թէ եդեսիա էր տակա-
ւին ՚ի ձեռս արքայարեանց, և զհամբաւ լուսխոս գտա-
ւոր հռովմայեցի իշխեցէ անդ, յաւելեալ են ՚ի քնոց
զաբգար ոմն իշխան եդեսիոյ հալածիչ քրիստոնէից առ
տրայիանոսիւ. վասն միասանգամ ՚ի վարանս մտեալ՝ զհետ
և զնոր աբգարս զնէ բուլանդ օրինակ զայս. * Եդե-
,, սացիս լինել ( ասէ ) զասին յետինս՝ զսարբէլոս, բղ-
,, վէվէա, և զթաթուէլ, եթէ նոյն իցեն ընդ առաջինսն՝
,, և եթէ որիչ ՚ի նոցունց, խմաստասիրեմք յանուանէ
,, աւգար կամ աբգար իշխանին. որ է անուն ընտանի՝
,, փոքրիկ թագաւորաց երկրին օսրոյենացւոց, որոց
,, գլուխ քաղաքաց է եդեսիա: Աբգ՝ աւգար օսրոյե-
,, նացի դաշինս կռեաց միաբանութեան ընդ հռովմայեցիս
,, առ պոմպէոսիւ, և սպա թեւակից լեալ պարթևաց՝
,, եղև առաջնորդ կոտորածին կրասոսի. ըստ դիոնէյե-
,, շատակէ ՚ի խ երորդ գիրս: Այլ ոմն երևելի յոյժ աւ-
,, գար եղև իշխան եդեսիոյ՝ իբրև ութսուն և հինգ ա-
,, մօք յետոյ. որ առաքեաց դեսպանս առ քրիստոս փրկիչն
,, մեր, և ընկալաւ ՚ի նմէ զանձեռագործ պատկերն.
,, զորմէ ասէպ յիշատակութի լինի յեկեղեցական մատե-
,, նագրութիւս: Եւ ապա եղև այլն այս աւգար ՚ի ժամս
,, տրայիանոսի, և կամ ագրիանոսի. որ թերևս ՚ի շնորհս
,, հռովմայեցւոց գխմամարտ լեալ իցէ կրօնիս մերում.
,, զոր մուծեալ էր յեդեսիա սուրբն թադէոս՝ բժշկելով
,, և մկրտելով զնախասացեալն զաբգար: Իսկ թէ աբ-

,, դեօք լեւոնս յանուն նր, եթէ յանուն կայսերն վա-
,, րէր զքաղաքապետութեն (յեղեսիա), անստոյգ է:
,, Եւ թերեւս սոյն այս աբգար է այն, զորմէ գրէ յու-
,, լիոս կապիտոլինոս 'ի վարս անտոնինոսի պիոսի, ա-
,, սելով. Զաբգար արքայ 'ի կողմանց արեւելից միով
,, նեթ հրամանատուութեամբ իւրով առ ինքն ած: Գտր
,, և աբգար անուն արքայ պարսից՝ նուաճեալ 'ի սեւե-
,, րոսէ, որպ վկայէ սպարտիանոս: Հուսկ յետոյ քսի-
,, փիլինոս համառօտիչ դիոնի գրէ 'ի վարս անտոնինոսի
,, կարակաղոսի, թէ յորժամ եկն առ նա աւգար ար-
,, քայ օսրոյենաց իբր առ բարեկամ, նենգեաց (կայսրն)
,, ուխտի դաշինն, և կալեալ էարկ զնա 'ի կապանս,
,, և զԾն օսրոյենայ յինքն կորզեաց՝ զաւանց թագա-
,, ւորի զմնացեալն||:

Այս որ ունիմք ասել. որպ աստոյգ է 'ի բանից դիոնի Ժմկակցի՝ թէ աբգար վերջին էր առ կարակաղոսիւ, և այն՝ այր բարեպաշտ սրբակրօն հաւատովն քսի՝ բստ վկայելոյ եպիփանու, ափրիկանոսի և եւսեբի, նոյնպէս և անստոյգ է աբգարն՝ որ առ պոմպէոսիւ: Իսկ թէ յետ մեծին աբգարու՝ որ առ քսիւ, կային իշխանք կմ նահապետք եդեսացիք՝ եթէ աբգար և եթէ այլով անուամբ, և մեք ընդունիմք. բայց սակայն յետ աւուրցն սանատրկոյ, և յետ փոխագրելոյ արքունեաց հայոց յարմաւիր և յերուանդաշատ և յարտաշատ՝ միջագետք առհասարակ, ընդ նմին և եդեսիա՝ էր ընդ իշխանութբ կայսերաց. մնչ և դաւառապետք կամ սատրապք կարգեալք 'ի նցէ վարէին զգաւառորական իշխանութն. նմին իրի ոչինչ զարմանամք, եթէ լեւոնս դատաւոր հռովմայեցի՝ հրամանաւ կայսեր յարուցեալ էր զհալածանս. որպէս և հրամանաւ նորա անդրէն դադարեցոյց. և եթէ գտր յայնժամ իշխան ոք՝ աբգար կմ այլանուն, ոչինչ կարէր արգելուլ զհրաման ինքնակալին. բայց չէ արժան զնա բերել, թէ ուրեմն էր գործակից հալածանաց. զի որչափ ստոյգ կարծի, թէ որ լռէն՝ հաւանի. նոյնչափ և ստոյգ է յոլովակի, զի որ լռէն՝ ոչ հաւանի:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

սրբոյն Վլասայ եպիսկոպոսին Սեբաստիոյ, և որոց ընդ նմա:

Հ. փետր. 10 : Յ. և որ էէլ. փետր. 11 : Լ. փետր. 3 : Ղատըլութ. ԱՂ. պէէ. և Գ. նծը : Մեսաքէր: Ս.նոնէճոս: Բոլլանդ յօհաննէս. ա. հատ. փետր. 3. էջ. 331 — 353. և այլն :(1)

ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾ վկայն քսի՝ սբ վլասիոս հայրապետ(2), էր ծննդեամբ յաշխէ փոքուն հայոց 'ի սեբաստիա քաղաքէ, և կամ 'ի սահմանաց նր՝ որ էր առաջնոյ դրի սահմանակից կապադովկիոյ(3), 'ի վախճան երրորդ դարուն: Ասի յոմանց, թէ ծնօղք նր էին հեթանոսք. և ինքն զկնի հաւատացեալ 'ի քս, և ջերմ գտեալ յածպաշտութե. իսկ ըստ այլոց բազմաց անորոշակի պատմի՝ սնեալ 'ի մանկութէ հետէ 'ի վարս ածպաշտութե: Յու դրձլ՝ բզմք են որ ասեն, թէ յառաջագոյն էր արուեստիւ բժիշկ, և ապա հանգոյն սբյն ղուկայ, ևս և կոզմայի և դամիանոսի՝ 'ի մարմնաւոր բժշկութե վերաբերեաց զնա ած 'ի լինել նշանագործ անուամբն քսի(4):

Որդ՝ յառաջադէմ գտեալ վլասայ առաքի-

նի

նի և գովելի ընթացիւք, և զնմ ժամանակս կենաց իւրոց երկնային կրօնիւք քաղաքավարեալ՝ եղև ըն նմանութե յովբայ այր արդար, ճշմարիտ աստուածապաշտ, անյիշաչար, մեկնեալ յամ գործոց չարեաց ։ Սոյ 'ի մեռանիլ Եպսին Սեբաստիոյ, (որ և սևաստ կմ սրվազ՝ յառաջին կոչեցեալ հայս,) կամեցան ուխտ եկեղեցւոյն և ժողովուրդն առհսրկ՝ ամ գաւառականօք հանդերձ ընտրել միաբան հաւանութբ 'ի պատիւ Եպսութե զերանելին վլասիոս, զփորձ առեալ ամբիծ կենաց և իմաստութե նր ։ Իսկ նա ոչ առնոյր յանձն՝ անարժան զանձն խոստովանելով այնպիսի պատուոյ. սակայն հարկաւորեալ 'ի բնակչաց գաւառին, միանգամայն և տեսչութի այ համարեալ զշարժումն ամ բազմութե, զիջաւ ակամայ 'ի կամս նց ։ Եւ այնպէս ժողովեալ եպսաց բազմաց և քահանայից և կղերիկոսաց՝ վերակոչեն զնա յաթոռ քահանայապետութե Սեբաստիոյ քաղաքի ։ Եւ լինէր այնուհետև տիրապէս քարոզ ճշմարտութե բանիւք և արդեամբք, լուսաւորելով զամենին բանիւ աւետարանին կենաց, և դարձուցանելով զբազումս 'ի մոլորութե կռոց 'ի ճշմարիտ աստուածգիտութի ։

Եւ ոչ յառաջ քն զեպսութին եռացեալ հոգւոյն այ՝ զօրացուցանէր զքաջ նահատակս 'ի ժմկս հալածանաց դիոկղետիանոսի, և յորդոր բարի լինէր ամենի հաստատուն կալ 'ի հաւատս ճշմարտութե. սոյնպէս և առաւելութբ զնոյն գործէր զկնի եպսութեն. ըստ

որում եւ աւանդի, թէ 'ի ժամանակին՝ յորում հնգեքին քաջ նահատակք եւստրատիոսեանք մատնեցան 'ի բանտ եւ 'ի կապանս վն քմի, սա ինքն երանելին վլասիոս հայրապետ յայց ելանէր նց ստէպ, եւ մատակարարէր նց զկենարար խորհուրդ մարմնոյ եւ արեանն տն. եւ քաջալերեալ յորդորէր աներկիւղ հանապազորդել յամ նեղութիս 'ի սէր արարչին. որում եւ յանձն արար սբն եւստրատիոս զկտակ իւր վն իւրոց տան իւրոյ. որին վն է տեսանել 'ի հին նկարս պատկերաց, զի կայ նկարեալ 'ի մէջ հնգեցունց վկայիցն սբն վլասիոս աւրնթեր եւստրատիոսի՝ առնլով 'ի ձեռանէ նր զգիր կտակի:

Արդ եւ այն ինչ թուէր զիջանիլ հրդեհ հալածանաց՝ 'ի թ̃գրել մեծին կոստանդիանոսի, վերստին բորբոքեցաւ հուր դառնութե̃ յերեսաց լիկիանոսի ամպարշտի՝ որ քեռայրն էր նորին կոստանդիանոսի, եւ հասեալ անուանն կայսերութե̃ 'ի վ̃ր արեւելեան կողմանց՝ յամի տն 308. այր մոլեգին զհետ կռոց. նմին իրի յարոյց հալածանս անհնարինս 'ի վերայ քրիստոնէից:

Եւ քանզի լուաւ՝ եթէ կողմանք սեբաստիոյ ծաղկեալ են ածպաշտութբ, եւ որ յօրէ բազմանան հաւատացեալք յ̃ին փոքուն հայոց եւ կապադովկացւոց, եդ 'ի մտի բնաջինջ առնել անտի զանուն քրիստոնէութե̃. եւ յայս գործ անօրէնութե̃ ընտրեաց զայր հնացեալ չարութբ՝ ժպիրհ եւ ապարասան ագրիկողայոս անուն հեղլենացի, կարգեալ զնա դա-

տա-

տաւոր սեբաստիոյ , և իշխան հրամանատար մերձակայ սահմանաց . և օգնական նմա գայլ ոմն չարադև լիւսիաս անուն՝ իբրև ոստիկան և տեսուչ Ֆին ։

Այս եղև իբրև լուեան հաւատացեալքն՝ որ 'ի սեբաստիա , զհամբաւ գալստեանն ագ-րիկողայոսի ահագին սպառնալեօք , բազմք 'ի նոցանէ ցրուեցան յայլ և այլ տեղիս , և այլք ղօղեալ թաքչէին յանքոյթ վայրս ։ Ընդ որս և երանելի եզան վլասիոս հարկեալ 'ի յոր-դորանաց հաւատացելոց՝ խորհեցաւ ծածկել զանձն առ ժամ մի . և կատարելով զաւետա-րանական բանն՝ հալածական լինելոյ քաղաքէ 'ի քաղաք , մանաւանդ թէ և զօրինակ փրկչին խոյս տալոյ յանապատն եփրայիմայ , ել և ինքն 'ի սեբաստիոյ , և երթեալ բնակեցաւ 'ի լե-րինն արգիասոյ ( որ և գրի արգէսոյ , կամ արգէոս , կմ արտէնի ) յայրի միում . և ան-դէն հանդարտեալ յառանձնութ՝ ուր ոչ ե-րևէին հետք անգամ մարդոյ , այլ միայն գազանաց և անասնոց , պարապէր աղօթից և հոգևորական տեսութեց , հանապազոր-դեան ժուժկալութ՟ պահոց և խստամբեր աշխատութ՟ ։ (5)

Ընդ ժողովէին առ նա անասունք վայրի , և ընդելացեալ մերձ կային նմ , ոչ թէ խնդրե-լով զօրհնութի առն այ . և նա ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնէր զնս ։ Այս թէ մին 'ի նցէ տկարանայր , գայր առ սբն , և իբրև բանա-ւոր նշանացի ցուցանէր զցաւս իւր . և ոչ մեկնէր յայրէ անտի , մինչև շարժել զերա-

նելին 'ի գութ՝ զի արարցէ նմա ողորմութի. և սէին գնէր ձեռս 'ի վր նր անուանմբն քոյ, և առողջացուցանէր :

Յաւուրսն յայնոսիկ ելին ոմանք 'ի սպասաւորացն արքեպիսկոպոսի՝ առ որսալ երէվայրի (6). և շրջեալ որսորդացն այսր և անդր՝ հասին ոմանք 'ի նոցանէ 'ի լեառն, յորում թաքուցեալ էր վկայսն. և տեսեալ զվայրի կենդանիս խմբովին առաջի այրին՝ զհետ եղեն նր. այլ 'ի ցրուէլ նց յահէ որսողացն՝ տեսին այրն զնր եղեալ, զի աղօթս մատուցանէր առ ած. և իբրև դարձան 'ի քաղաքն, պատմեցին դատաւորին: Յայնժամ հրամանեաց դատաւորն, զի բազում խնդրակք երթիցեն զհետ որսորդաց իբրև 'ի պատճառս որսոյ՝ 'ի լերինս և յամայի վայրս. զի որչափ և գտանիցին 'ի ղօղելոց քրիստոնէից, ածցեն մատուսցեն առաջի նր :

Եկեալ խնդրակաց՝ գտին զվկայսն յաղօթս. և ասեն ցնա. արի եկ ը մեզ, զի կոչէ զքեզ դատաւորն : Եւ նր ուրախացեալ ը բանն՝ զուարթ սրտիւ և հեզութբ եա պնին. և կայք ասէ որդեակք իմ երթիցուք 'ի միասին անյապաղ. քզի 'ի գիշերիս յայսմիկ երևեցաւ ինձ տր երիցս անգամ, և ասէ. յայտնեցաւ մատն ինձ պատարագ ը օրինի քահանայապետութն քո. և արդ որդիք բարիոք եկիք. տր ընդ մեզ է :

Եւ 'ի գնալ նց զճանապարհայն, հանդչելով 'ի տեղիս տեղիս, խօսէր երանելին հայրապետն ը հեթանոսս ը մեծի և ը փոքու

բանս

բանս օգտակարս հոգեւորաց վարդապետութեան . որով լուսաւորեալ զմիտս բազմաց՝ էած 'ի Ճշմարիտ աստուածածանօթութիւն . եւ ազգի ազգի սքանչելեօք հաստատէր զնոսա 'ի հաւատս . մինչեւ հռչակ հարկանել զնմանէ ընդ ամենայն տեղիս՝ ընդ որ անցանէր : Մատուցանէին առ նա յաւանաց եւ 'ի գիւղօրէից հիւանդս եւ ախտաժէտս . եւ նա դնէր ձեռս 'ի վերայ նոցա . եւ արձակէր առողջացեալս 'ի տունս իւրեանց , ոչ միայն զմարդիկ , այլ եւ զանասունս անգամ՝ զոր բերէին առ նա . մինչեւ զարմանալ եւ խնդրակացն , եւ ակն ածել սրբոյն՝ առնել զոր կամի : Կին մի ունէր որդի միամօր . դէպ եղեւ՝ զի յուտել մանկան մասն ինչ ձկան՝ կլանէր ոսկր 'ի ձկանէ անտի փշալից . եւ արգելեալ 'ի փողսն՝ վտանգէր յոյժ , եւ լինէր անմռունչ : Իսկ մայր մանկանն՝ քանզի լուեալ էր վասն սրբոյն , էառ զմանուկն 'ի գիրկս , եւ փութացաւ գնաց 'ի գտանել զայրն Աստուծոյ . եւ մատուցեալ առ նա՝ ընկէց զմանուկն յոտս նորա . աղաղակէր արտասուօք եւ ասէր . ողորմեաց որդւոյ իմոյ ծառայոյ քո . քանզի միամօր է իմ : Յայնժամ եդեալ սրբոյն զձեռն իւր 'ի վերայ փողոց մանկանն , եւ համբարձեալ զաչս իւր յերկինս՝ ասէ . Որ ես բժիշկ այնոցիկ՝ որ Ճշմարտապէս կարդան առ քեզ , լուր աղաչանաց ծառայի քում , եւ անտեսանելի զօրութեամբ քո 'ի բաց կորզեա զփշաւակար փուշն 'ի մանկանէ աստի . եւ յայսմ հետէ եթէ 'ի տղայս , եթէ յերիտասարդս , եւ եթէ յանասունս՝ յայսպիսեաց ինչ անցք ան-

ցանկոցէ , և յիշեսցէ զանուն ծառայիս քո , արասցես նմա բժշկութի՛ւն մեծի փառաց անուանդ քո : Իսկ իբրև կատարեաց զաղօթսն , առողջացաւ մանուկն . և ետ զնա ցմայր իւր : Այն դարձեալ յայլ գիւղ ( զոր ոմանք նիկոպօլիս կոչեն , ) առ սբն վլաս այլ ոմն կին աղքատ և այրի , որոյ ոչ էր այլ ստացուած , բայց միայն անասուն մի՝ կով խոզ մի փոքրիկ . զոր 'ի նմին պահու յափշտակեալ գայլոյ՝ տանէր . և մատուցեալ այրւոյն առ եպսկն՝ աղաչէր փրկել զանասունն 'ի գայլոյ անտի . լայր և գանգատէր նմա , թէ գայլն տարաւ զիմ խոզն : Իսկ սբն ժպտելով ասէ ցնա . մի տրտմիր կի՛ն դու . և հասցէ առ քեզ անասունն քո . զայս ասաց , և սաստեաց գայլոյն՝ որ չերևէր 'ի միջի : Իսկ իբրև դարձաւ կինն յետս՝ հայել զկնի հետոց գայլոյն , և ահա գայր ընդ առաջ նր գայլն , որոյ պահեալ էր զանասունն առանց վնասու . և այսպէս թողեալ զնա մօտ այրւոյն՝ մեկնեցաւ 'ի տեղւոջէն :

Արդ՝ իբրև եկն եմուտ սուրբն վլասիոս 'ի քաղաքն սեբաստիա , հրամայեաց ագրիկողայոս արկանել զնա 'ի բանտ մինչև 'ի վաղիւն . և 'ի վաղիւն անդր նստեալ յատենի՝ հրամայեաց ածել զառաջեաւ զեպսն : Իսկ սկսաւ նախ ողոքանօք խօսել ընդ նմա դատաւորն , և ասէ . ողջամբ եկիր , ուրա՛խ լեր վլասիոս բարեկամ ածոցն : Պատասխանի ետ երանելին . ուրա՛խ լեր և դու դատաւոր հզօր . այլ մի ասեր զնս ածս , զի դևք են , և ոչ ածք .

տ̃ծք . և յաւիտենից հրոյն մատնին հանդերձ
պաշտօնէիւք իւրեանց ։

Միամտեալ դատաւորին է̃ բանս համարձա֊
կութե՛ նր՝ հրաման ետ վաղվաղակի դալար
գաւազանօք հարկանել զնա . զի սթափես֊
ցի աստ յանմտութե՛ն , և ուսցի փխկ անարգե֊
լոյ մեծարել զտ̃ծսն ։ Իսկ իբրև հարին մինչ֊
չև ցբազում ժամս , ասէ սր̃ն համարձակա֊
գոյնս ցբռնաւորն . ով լիրբ և անպատկառ
դիցն պաշտօնեայ՝ եթէ կարծիցես փոխել
զիս 'ի ձեռն տանջանաց քոց 'ի խոստովանու֊
թե ճշմարտին տ̃յ . այլ ոչ կարես . քանզի
ունիմ՝ որ զօրացուցանէ զիս յս̃ ք̃ս որդին
տ̃յ կենդանւոյ ։ Յայնժամ ակնարկեաց դա֊
տաւորն անդրէն 'ի բանտ արկանել զնա (7) ։
Իսկ զկնի երից աւուրց դր̃ձ նստեալ 'ի վր̃
բեմի՝ հրամայեաց ածել առաջի իւր զսր̃ն
տ̃յ . և ասէ ցնա . վկամսիէ զոհեա տ̃ծոցն , ե֊
թէ կորնչիս չարաչար մահուամբ ։ Մյա֊
սիոս ասէ . տ̃ծք՝ որ զերկինս և զերկիր ոչ
արարին , կորիցեն . իսկ մահն զոր դուդ ինձ
սպառնաս , առիթ ինձ լինի կենացն յաւի֊
տենականաց ։ Տեսեալ բռնաւորին զանփո֊
փոխելի զհաւատս նր̃՝ ետ կախել զերանե֊
լի վկայն զփայտէ , և երկաթի քերչօք՝ զոր
այլք սանտերս ասեն՝ քերել զնա յոյժ . մինչ֊
չև ոռոգանել վտակաց արեանն նր̃ զգետինն ։
Իսկ նա 'ի տանջանսն զնոյն բան երկրոր֊
դէր առ դատաւորն . դու համարիս ասէ հար֊
ուածս հասուցանել 'ի վր̃ իմ . այլ ես ու֊
նիմ յիս զզօրացուցիչն իմ զք̃ս . և սպասեն

ակն

ակն ունիմ անանց բարեացն՝ զոր պատրաս-
տեաց սիրելեաց իւրոց ։

Հրաման ետ դատաւորն իջուցանել զնա 'ի փայտէն, և անդրէն 'ի բանտ տանել ։ Եւ մինչդեռ տանէին զսրբ. վկայն արեամբ շաղախեալ գլխովին, կանայք ոմանք երկիւղածք յայ՟՝ եօթն թուով՝ զհետ երթային սրբյ՟ն, և արեամբ որ իջանէր 'ի նմէ՝ օծանէին զանձինս իւրեանց (8) ։ Զայն իբրև տեսին դահիճքն, ածին կացուցին զնոսա առաջի դատաւորին և ասեն. ով դատաւոր՝ և սք՟ քրիստոնեայք են. և պատմեցին զոր տեսին զգործ նց՟ ։ Եւ դատաւորն ասէ ցնս՟. հնազանդեցարուք ածոցն՟, և զոհեցէք զոհս նց՟ ։ Մինչ եսուն նք՟ ընդ խաբս և ասեն. եթէ կամիս՝ զի զոհեսցուք ածոց՟ քոց, տուր բերել զնս՟ մերձ 'ի ծովակն. ուր լուացեալ զերեսս մեր անդ՝ պատրաստ լիցուք 'ի գործն առաջիկայ ։ Ուրախ եղև յոյժ բռնաւորն՝ կարծեցեալ եթէ զկամս իւր խոստանան կատարել. վ՟յ հրամայեաց բերել կանգնել զածս՟ իւր ը՟ խնդրոյ կանանցն մերձ առ ծովակն ։ Իսկ նք՟ առեալ զզարշելի դիսն՝ ընկեցին 'ի ջուր անդր ։

Լու եղև բանս այս յականջս բռնաւորին. բարկացաւ դառնացաւ և գոյն երեսաց նորա փոխեցաւ. կրճտէր զատամունս իւր, և զկնամն զզինուորօքն արկեալ՝ ասէր. ընդէ՞ր ոչ արգելէք զնոսա, զի մի՛ արկցեն զածսն՟ 'ի ծովն ։ Ասեն զինուորքն. զոր օրինակ նենգ- գութ խօսեցան ընդ քեզ, նովին պատրանօք

զմխտա

զմիտս մեր հարեալ, այն ինչ կարծէաք՝ թէ երկիրպագցեն սիրով, առեալ ընկղմեցին զԾ՛ծման : Իսկ իբրև յանդիման եղեն դատաւորին կանայքն երանելիք Ծ՛ բուռն հրամանի, և սաստկագոյնս կշտամբեէ՛ լինէին վ՛ղ գործոյն՝ զոր գործեցին, ն՛ք եաուն պխնի, և ասեն . Ն՛ծ՝ որ 'ի զօրականաց պահի զի ապրեսցի, և չկարէ պահել զանձն իւր աւանց օգնականի, չէ՛ Ծ՛ծ . ք՛զի Ծ՛ծ անմխանելի է և անչարչարելի . այլ այդ՝ զոր դուքդ Ծ՛ծս կարդայք, ձեռագործք են մարդկան 'ի փայտից և յոսկւոյ և 'ի քարէ և 'ի պղնձոյ՝ զուրկ 'ի մտաց և 'ի զօրութէ՛ դրօշեէ՛ք . Նման նոցա եղիցին՝ ոյք արարին զնս՛, և Ծ՛մքն՝ որ յուսան 'ի նս՛ . և արդ տես դու զԾ՛ծոց քոց զկար զօրութե՛, եթէ կարօ՞ղ են ելանել 'ի խորոց լճին :

Յայնժամ մոլեալ բռնաւորին՝ հրամայեաց հալել կապար, և արկանել 'ի սան մեծ . առնմին պատրաստել և սուսերս և ձանկս երկաթիս և այլ տանջանարանս . իսկ 'ի միւս կողմն տարածանել կտաւս փափուկս, և այլ ևս կանացի զարդս ոսկեղէնս և արծաթեղէնս : Եւ ասէ ցկանայսն . ընտրեցէ՛ք ձեզ յերկոցունց այտի . կա՛մ երկի՛րպագէք Ծ՛ծոցն և ապրեցուցէ՛ք զանձինս այսպիսի փափկութե՛ք հանդերձ . և կա՛մ 'ի մի՛տ առէք՝ եթէ փորձիլ ունիք 'ի պատրաստեալ տանջանարանացդ :

Իսկ ն՛ք կանայքն ընտրեցին զտանջանսն . և մին 'ի նոցանէ եթուք 'ի զարդսն, և առեալ

զկտաւսն՝ ընկեց 'ի հուր հալոցին։ Սորա էին մանկունք երկու՝ եկեղք զկնի մօրն. և տեսեալ՝ եթե պատրաստի մայրն լուրեանց 'ի տանջանս նահատակութե, աղաչել սկսան զնա, և ասեն. ա՛ռ և զմեզ ընդ քեզ, և մի՛ թողուր զմեզ կորնչել 'ի վր երկրի. այլ ո՛չ յագեցուցեր զմեզ քաղցր կաթամբ քո, յագեցո՛ զմեզ և արքայուե ոյ մերոյ։ Զայն լուեալ դատաւորին՝ ետ որոշել զորդայսն 'ի մօրէն. և սրտմտեալ ը իմաստուն բանսնց՝ հրամայեաց զմանկունսն 'ի բանտ տանել, ուր վշտախոսն էր. և զկանայսն փութապէս հանել 'ի կախաղան և քերել։

Նուեղէն անդ սքանչելիք. զի փայլատակէին մարմինք նց իբրև զլոյս՝ առաւել ք զձիւն սպիտակացեալ. մինչև ոկարանալ աչաց զինս ուոորացն հայել 'ի նս. զի և զարիւն նց՝ ո՛չ կաթն սպիտակ տեսանէին (9)։ Իջ և հրեշտակ յերկնից. որ բժշկեաց զամ վէրսնց, և ասէ ցնս. մի՛ երկնչիք. բարի մշակն սկսանի հնձել, և ոչ եթե 'ի սկզբանն առնու զվարձս. այլ իբրև կատարէ զգործ աշխատուեն ըստ կամս տանուտն՝ որ կոչեացն զնա 'ի հունձս, յայնժամ առնու օրհնութե լի բովանդակ զվարձս իւր, և ուրախութե երթիցէ 'ի յարկս իւր. այսպէս և դուք՝ որք բարիոք սկսայք, ձգնեցարո՛ւք մինչ 'ի վախճան մրցանաց, զի ընկալջիք 'ի փրկչէն բոլորեցունց զկեանսն յաւիտենականս։

Յետ այսորիկ հրամայեաց դատաւորն արկանել զերանելի կանայսն 'ի հնոց հրոյ. այլ

ան-

անդէն վաղվաղակի շիջաւ բորբոքումն հրոյն, և անվնաս ելին 'ի հնոցէ անտի ։ Ընդ որ յիմարեցաւ դատաւորն և ասէ . 'ի բաց ընկեցէք 'ի ձէնջ զկախարդութիւնդ զայդ , և մատիք զոհեցէք աստուծոցն ։ Իսկ սրբ. կանայքն ասացին միաբան . փառք քեզ Թագաւոր մեր յս քս , որ հրաւիրեցեր զմեզ 'ի Ճանապարհս բարութեանց քոց ։ Եւ ցդատաւորն ասեն . փութա՛ կատարեա՛ զոր ինչ խորհիս վասն մեր . քանզի մեք հրաւիրեալ եմք յարքայութիւն երկնից ։ Յայնժամ զայրացեալ հրամայեաց բռնաւորն սրով կոտորել զնս ։(10)

Եւ առեալ զնս դահճացն՝ տարան 'ի տեղի նահատակութե . իսկ սրբքն աղաչեցին զնոսա , զի թոյլ տացեն առ վայր մի յաղօթս կալ . և իբրև թողացուցին , ծունր խոնարհեցուցեալ ասեն . Ո՛վ է ած ոպ զած մեր , որ մեկնեաց զմեզ 'ի խաւարէ , և կոչեաց 'ի փառս լուսոյ իւրոյ . վսյ աղաչեմք զքեզ ած մեր , դասաւորեա՛ զմեզ ը առաջին վկայիցն քո սրբյն Թեկղի , ընդունելով զաղաչանս սրբյ քահանայապետին քո և վկային վլասայ՝ որ առաջնորդեաց մեզ 'ի նահատակութիս յայս ։ Եւ դարձեալ տարածեալ զձեռս իւրեանց , և համբարձեալ զաչս յերկինս՝ ասեն . Փառք քեզ քս ած մեր , որ արժանի արարեր զմեզ կալ յայսմ զոհարանի իբրև զոչխարս 'ի ըսպանդ վարեալ . և արդ ընկա՛լ զոգիս մեր պատարագ 'ի վր սրբյ սեղանոյ քո ։ Եւ մինչդեռ բանքն 'ի բերան նց էին , եհատ դահիճն սրով զպարանոց երանելեացն , որք

մատ-

մնտանեցին զանձինս իւրեանց յօժարակամ.
վճ յուսոյն և սիրոյն՝ զոր ունէին առ Քս ։
Իսկ զատաւորն յերրորդ ժամու աւուրն նըս-
տաւ 'ի վր բեմի , և հրամայեաց հանել ըզ-
վկայս 'ի բանտէ , և ածել առաջի իւր . խօ-
սել սկսաւ և ասէ ցնա . վկա́սիէ այժմ զոհեա
կռոցն , թէ ոչ ։ Պնի ետ սբն . ո՞ է 'ի մարդ-
կանէ , որ ճանաչիցէ զԱծ ճշմարիտ արարիչ
ամի , և երկիրպագանիցէ կռոց անշնչից . դու
խաւարեալդ քարանց և փայտից երկրպա-
գանիցես , այլ ես արարողին երկնի և եր-
կրի . և զայս գիտեա՛ , զի ես 'ի սպառնա-
լեաց քոց ոչ երկնչիմ . ո՞չ կամիս՝ այնպէս
տանջեա՛ զիս . զի զմարմինս իմ միայն մատ-
նես տանջանաց . այլ հոգւոյս իմոյ՝ արա-
րօղն միայն իշխէ ։
Դատաւորն ասէ . ո՛վ թշուառական , եթէ
ընկեցից զքեզ 'ի խորս ծովու , զի՞նչ օգտեա-
ցէ քեզ այն՝ որում երկրպագանես և պաշ-
տես ։ Ընդ այս եպերանս հայհոյչին վառեալ
նախանձու փառացն այ սբ. եպիսկոպոսն՝ ա-
րար պխնի խստագոյն բանիւ , ասելով . Դու
դու այդպէս վարկանիս յիմար , թէ երկրպա-
գելովդ զարշելեացն կեցցես . վա՛յ քեզ ե-
րի՛ցս թշուառական և արիւնարբու գազան ,
զի ժառանգելոց ես զյաւիտենական հուրն .
այլ ես այժմ ցուցից քեզ 'ի վր ջրոցս զզօ-
րութին այն իմոյ՝ զոր պաշտեմ ։
Յայնժամ հրամայեաց իշխանն կապել քար
զպարանոցէ նորա , և ընկենուլ 'ի ծովն անդր
( այն է լիճն սեբաստիոյ ) . և նա յառաջէն
կնքեաց

կնքեաց զջուրսն նշանաւ խաչի ։ Եւ աՀա ջուրն փոփոխեալ 'ի լոյծ բնութենէն՝ զպնդութի ընդունէր ․ և անցեալ կայր ինքն 'ի վր ջրոցն իբրև 'ի վր ցամաք երկրի ։ Եւ ասէ առ դաՀիճսն և առ բազմութի Հեթանոսաց ․ եթէ ունիք միտս , երևեցուցէք զզօրութի նց ․ և կեսջիք և դուք աստ ։ Եւ նոցա Համարձակեալ դիմեցին 'ի վր ջրոցն , և ընկղմեցան 'ի խորս ծովուն՝ որք իբրև փաթսուն և ուլթ (11) ։ Յայնժամ Հրեշտակ տն իջեալ և կաց առ նմին , և ասէ ․ ուրախ լեր քՀնյապետ տն , եկ եւ այսր , և ընկալ զպսակն որ պատրաստեալ է քեզ յայ ։ Եւ նա յարուցեալ երթայր 'ի վր ջրոց , մինչև եկն ել 'ի ցամաք ․ և տեսին ժողովուրդն ամ , զի լոյս ծագէր յերեսաց նր ․ և լի եղեն սքանչելեօք ։ Բայց բռնաւորն ագրիկողայոս կախարդութի անուանէր զամ գործս սբյն , և ասէր ցնա ․ զի՞ է՝ զի ցայգ վայր պնդեալ յամառեալ կաս 'ի միտս քո ․ այդչափ լա՞ւ Համարեցար մեռանել՝ քան զոՀել ածոցն ։ Սբն ասէ ․ գիտեա՛ ո՛վ դատաւոր , զի ծառայ եմ նորին տն , և զարշելեայ ոչ զոՀեմ ։ Բարկացաւ դատաւորն , և գրեաց վաղվաղակի 'ի վր նորա վճիռ գլխատման այսպէս ․ Զվլասիոս՝ որ զՀրաման ինքնակալ թգւրին արՀամարՀեաց, և զածսն անարգեաց , Հրամայեմք զի մաՀապարտ դատել , և սրով Հատանել զգլուխ նր , Հանդերձ երկու ևս մանկամբք՝ որք խոտորեցան զկնի մոգութե նր ։

Եւ իբրև տարան զնա 'ի տեղի կատարման ,

և

և զաՀիճն պատրաստէր զուսեր, յաղօթս եկաց սուրբ Հայրապետն, և ասէ. Տէր Աստուած իմ, որ ապրեցուցեր զիս 'ի մաՀուանէ կռապաշտութեան, և փոխեցեր 'ի խաւարէ 'ի լոյս, յանգիտութենէ 'ի ճշմարիտ գիտութիւն. տէր զօրութեանց՝ որ նստիս 'ի վերայ քերովբէից, և բանաս ըզձաՀանս երկնից. որ ձգեցեր զաղեղն քո նշան յամպս. որ զսատանայ կործանեցեր, և ըզզօրութիւն վիշապին խորտակեցեր. լուր աղաչանաց ծառայիս քո, և Հաս յօգնականութիւն Հաւատացելոց քոց յամենայն կարիս նոցա՝ որ ըստ Հոգւոյ և որ ըստ մարմնոյ. և թէ ոք ըստ պատաՀման փուշ կամ ոսկր կլանիցէ, և կամ այլ ինչ յայսպիսեաց աստ նեղութեանց ումեք դիպեսցի, որ մեծ և որ փոքր, և կարդասցեն յանուն իմ առաջի աստուածութեանդ, կատարեա զիւրաքանչիւր զխնդրուածս սրտից նոցա: (12)

Եւ յաղօթելն նորա զայս՝ էջ ամպ յերկնից, և ծածկեաց զնա. և ասէ ցնա փրկիչն՝ յամպոյ. Ամենայն խնդրուածս քո կատարեմ նաՀատակ իմ քաջ, և առաւել ևս քան զոր աղօթեցերդ՝ արարից. և օրՀնեցից զտունս ամենեցուն՝ որք զյիշատակս քո կատարեն, և զշտեմարանս նոցա լցուցից բարութեամբ՝ վասն բարի խոստովանութեան քո առ իս. դու եկ և Հանգիր 'ի փառս անձառ, զոր պատրաստեցեր քեզ քոյին ճգնութեամբդ: Եւ զայս խօսեցեալ փրկիչն՝ վերացաւ յերկինս:

Եւ զաՀիճն փաղփաղակի յառաջ մատուցեալ զլխատեաց զսուրբն Վլաս Հանդերձ երկու մանկամբք արտաքոյ քաղաքին մերձ 'ի պարիսպն

'ի վ՟ր վիմի ։ Այլ կին մի բարեպաշտ՝ որում անուն էր Եղիսէա, առեալ զնշխարս նոցա՝ ամփոփեաց 'ի տեղւոջն, յորում կատարեցան ։ Եւ եղև տեղին նշանաւոր բազմապատիկ սքանչելեօք բժշկութեց, զոր առնէր ա՟ծ բարեխօսութ՟բ ս՟ր՟յն վլասայ ։ որոյ կատարումն եղև յամի տ՟ն ի՟բ՟ր 315 ։ յամսեանն փետրվարի Ժ, կամ Ժ՟Ա (13) ։ 'ի ժամանակս Թագաւորութեն լիկիանոսի (14) ։

Այլ փառաւորեցաւ և փառաւորեալ է անուն ս՟ր՟յն ընդ ա՟մ տիեզերս յա՟մ եկեղեցիս քրիստոնէից (15) ։ Այլ առաւել 'ի տ՟րութ՟ե ռակուզայի՝ որ 'ի դաղմատիա, հանդիսապէս պաշտի քառօրեայ տօնախմբութ՟բ իբրև զգլխաւոր պաշտպան, և 'ի դրօշակի նկարի պատկեր ս՟ր՟յ հայրապետին վլասայ ։ ո՟պ և երբեմն յա՟մ դրամս այնր տ՟րութ՟ե պատկեր սորա դրոշմեալ լինէր ։ Դարձեալ և բնակիչք բենեւենտայ ք՟ղքի իտալիոյ 'ի Թ՟իւ պաշտպանաց իւրեանց գրեցին զն՟րքն վլաս, պահելով առանձին տօն պատուոյ իւրեանց յանուն նորա ։ Կառուցան և բազում եկեղեցիք յանուն ն՟րյն ը՟ ա՟մ տեղիս ։ նախ 'ի սեբաստիա և յայլ քաղաքս ասիոյ ։ ապա 'ի կոստանդինուպօլիս մօտ 'ի տաճար ն՟րյն փիլիպպոսի առաքելոյ 'ի միլդիատեան կոչեցեալ վայրի ։ ո՟պ և 'ի հռովմ հինգ եկեղեցիք, և այլ ևս բ՟զմք 'ի ռակուզա, 'ի բենեւենտ, 'ի նէապօլիս ։ Թող զորս 'ի սպանիա և 'ի գերմանիա ևն ։ իսկ փոքրիկ մատուռնք և խորանք 'ի քաղաքս և 'ի գիւղս, որոց ոչ գոյ

թիւ ։ Ո՜ լինեցան ուրեք ուրեք և փանորայք յանուն սրբյն վկայոյ՝ և ըն պաշտպանութե̄ նորին, իբրև նմանօղ լինելով առանձնարք-նակ ձգնութե̄ նորա յայրին ։ Նա զի բազում նշանք բժշկութեց եղեն ըն ժամս ժամս բարե-խօսութը սրբյն, առաւել 'ի վը հիւանդութեց մանկանց և անասնոց, վյ և առաւելա-յորդ ջերմեռանդութե̄ առ սըն 'ի միոս ամ-բոխին բստ առաւելութե̄ երախտեաց գտելոց առ 'ի նմէ ։ Նոյ մասունք նշխարաց սրբյն այն-չափ սփռեալ կան 'ի զանազան տեղիս, մին-չև առել յովհաննու բոլլանդայ. * գրեթէ անհամար եկեղեցիք յերբայիս նշխարօք վկայոյ պարծին ‖. զորմէ տես 'ի կարգի յե-տագայ ծանօթութեց ձոխագրյն (16) ։ Նա զայն 'ի միտ առ, զոր ասէ նա խնքն բոլլանդ. * Սրբն վկայն է մին 'ի չորեքտասանն սրբց, զորս երաշխաւոր օգնականս կարդան ‖ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Պարձեալ գեղեցիկ պարծի ձառընտիրն մեր Ա. 'ի վկայաբանութե̄ սրբյն վկայոյ՝ իբրև հնագոյն և յառա-կագոյն աղբիւր այլոցն ամի. վյ և մեք առաւել զայն կալաք մեզ առաջնորդ. իսկ զայլսն իբրև ուղեկից և գործակից ևեթ ։ Բայց 'ի յայսմաւուրաց ամ ազգաց՝ որք ըն գոյացութե̄ քաղուած են նոյն ճառընտրին, որպ և Ճ. Պ. գլխովին, քառեակ օրինակք ըն արձակ վկա-յաբանութեց յառաջ բերին 'ի բոլլանդայ՝ առեալք 'ի հին ձեռագրացն. և լա. և որչափ երևին յօրինուածք հին հեղինակաց, նոյնչափ և համեմատք ըն էական բա-նից՝ եթէ իրերաց և եթէ ճառընտրիս մերում ։ 'Ի մէջ սց օրինակն. ա. յունարէն գրեալ, և թարգմանեալ 'ի

լա-

լոռին, հասարակօրէն առաւել համաձայնի մեզ և թ բառիցն, բայց 'ի մասնաւոր բանից ինչ՝ որք թերևս թ զանազանութե հին գրչաց անկեալ են յայսմ օրինակէ, կամ պահեալ են յայնմ օրինակի. սոցին ձայնակից գտանի և մետափրաստես: Բ. է գործ լսաւին հեղինակի՝ իբրև Դարձակուն առաջնոյն, Ելլյունամբ պարագայից, պատմառագրութեց, նկարագրութեց, և այլ ձևոց բանից՝ թէպէտև ընտիր ոճով: Գ. է նոյնպէս գործ լսաւնականն՝ յօրինեալ առն երախտաւորելոյ 'ի սմին վասայ. զի նորին բարեխօսութե՛ք զերծեալ 'ի գրաց մահուանէ՝ 'ի նշան շնորհապարտութե յօրինեալ է զնոյն վկայաբանութ առաւել ճոխաբանութ: Դ. է յառաջ բերեալն 'ի բարոնիոսէ՝ քաղեալ 'ի լսաւին տաւնաւորաց. վնյ և նորաձև ճարտարախօսութե՛ք սեթևեթեալ. մինչ զի չեղեն ինչ պէտք զննել զխոտորմունս սորա: Մր արեք յիշեսցուք 'ի կարգիս մեր Բ. Գ. Գ. վկ. իմա զնախանշանակեալսդ:

(2) Պլատոնոս անուն կարծի ածանցումն յունական ձայնիս պլատոս, որ նշանակէ բոլորովն. որում առաւել մեա գայ սովորականն նախնեաց մերոց տառադարձութի, եթէ 'ի գեալ էր հնչել բղաւիս կամ բողաս:

(3) Վկ. Գ. և Դ. մեկն գրեն զՍեն լինել ծննդեամբ սեբաստացի. այլք չորոշեն ինչ. բայց զնոյն ենթադրեն՝ իբրև 'ի քաղաքէն կամ 'ի նահանգէն սեբաստիոյ: Իսկ զսեբաստիա ոմանք 'ի հին Յագրաց և 'ի վկայագրաց անուանեն քաղաք կապադովկիոյ, Դարձակ առեալ բղսահմանս այնր Թի. այլ հարկօրէն վկայաբանութիւք և պատմութիւք գտեն 'ի փոքրն հայս, կամ յառաջին հայս, և կամ Խհանրապետս՝ 'ի հայաստան. որպ և է: Բարեւք ասէ բոլլանդ. * Բաղում վկայք աշխարհացուցին զայն „ քաղաք՝ առաւել առ գիոկղետիանոսիւ, և տպա առ „ լիկինոսիւ. յորմէ առաքեցան 'ի բնաջինջ առնել „ յԾէն հայոց և կապադովկացւոց զօրէնս քրիստոնէ„ ութե՝ լիւսիաս և ագրիկողայոս. երկոքին եւ հել„ լենք, և երկոքին մոլեալք զհետ անօտի պաշտամանց „ կռոց ||: Բայց լիւսիաս էր իբրև ստրատիկան և պահապան շրջակայ սահմանաց. իսկ ագրիկողայոս որպ իշխան գահերէց և դատաւոր համօրէն գաւառացն. և սորա բանիւ գործէին մր չարիք. վնյ վկ. Բ. Գ. կամին տառադաբանել զանուն նր. 'ի յն. աղրիօս գօլայօս, որ վայրենի քծնող. և բոլլանդ՝ աղրիօն լաօս, որ վայրենի ժողովուրդ. որպ և ոմանք՝ աղրիոն լաա, որ վայրենի քար:

(4) Միայն ճառընտիրն մեր Ա. ինչ ոչ յիշէ զառաջին վիճակէ սբ͞յն Վլասայ. իսկ Ճ. Գ. որպէս և Հ. և Յ. և վկ. ա. բ. գ. միաբան ասեն, թէ էր կանխաւ բժիշկ արուեստիւ :

(5) Այսպիսի օրինակաւ բացատրի յամենայն առանձնութեն սբ͞յն՝ ոչինչ [illegible] 'ի ճգնաւորական առանձնարանակուէ. ուր ոչ գիտեմ՝ ուստի առեալ յաւելուն Կանիսիոս, Պետրոս Նատալեան, և այլք 'ի յետնոց, թէ թռչունք բերէին նմա կերակուր :

(6) Վ͞ր որսոյ գազանաց յաւելուլ Մետափր" զայս պատճառ, զի͞ թէ 'ի պէտս գազանամարտութե͞ կի͞ր առ 'ի գիշատել տալ զնահատակս՝ կամէին կենդանւոյն որսալ : 'ի նոյն միտս երևի խօսել և վկ. բ. յասելն, թէ *յաւուր՝ յորում ոստիկս բաշխէր զօրաց և պատիւս, հրամայեաց բերել երէ վայրի բազում 'ի հանդէս ամբոխին || :

(7) 'ի բանտարկութե͞ սբ͞յն պատմէ վկ. ա. զայս ինչ աւելի. * Եւ լուեալ ( ասէ ) հաւատացեալ կինն պա_
,, ռաւ և այրի զկալանաւորութե͞ սբ͞յ վկային և նահա_
,, տակին ք͞րի Վլասայ, և զհաստատութե͞ հաւատոյ ն͞ր,
,, եւ զենուլ զխոզն՝ զոր կորուսեալ էր 'ի գազանէն հրա_
,, մանաւ սբ͞յն Վլասայ. և եփեալ զգլուխ ն͞ր և զոտս՝
,, էարկ յանօթ ինչ. եւ և 'ի պտղոց երկրի. և ճրագ
,, լուցեալ՝ մատոյց ս͞բ վկային ք͞րի 'ի բանտի, և աղա_
,, չէր ճաշակել անտի : Եւ ն͞ր գոհացեալ՝ ճաշակեաց,
,, և օրհնեաց զկինն և ասէ. կին դու ը͞ն սմին օրինա_
,, կի արա զյիշատակ իմ, և ոչ նուազեսցի բարութե͞ն
,, ա͞յ 'ի տանէ քումմէ. և եթէ ոք նմանող լինելով քեզ՝
,, արասցէ զյիշատակ իմ ը͞ն օրինակիս ը͞ն այսմիկ, ան_
,, պակաս ունիցի յա͞յ իմմէ զերկնաւոր պարգևս և զօրհ_
,, նութի͞ զա͞մ աւուրս : Եւ առեալ երանելի պառա_
,, ւոյն զպատուէր ս͞բ վկային՝ գնաց ուրախութբ͞ 'ի
,, տուն իւր, փառաւորելով և օրհնելով զա͞ծ : Եւ լցաւ
,, 'ի հաւատացեալ այրին յայն, թէ պատմեսցի ը͞ն ա͞մ
,, ա͞ծ և զօր արար դա 'ի յիշատակի ն͞ր || : Զնոյն երկրորդեն և վկ. բ. գ. միայն դնելով՝ թէ եւ կինն ընծայս բանտապանին, և այնպէս կարաց մտանել 'ի ներքս. յաւելուլ բ. թէ Վլաս ասաց կնոջն լուցանել մոմեղէնս 'ի յիշատակ իւր : Զայս ա͞մ համառօտեալ գտանեմք և 'ի Հ. խառնելով ինչ մի և 'ի գործոյ եօթն կանանց : Բայց դարձեալ միաբան գրեն ա. բ. գ. թէ յետ մահու սբ͞յն այրին այն ամ ը͞ն ամէ առնէր զյիշատակ ն͞ր մոմեղէ_

զինօք, և կերակրելով զաղքատս. և թէ՝ նոյն սովորութեն պահեցաւ 'ի զարմի նը, և յամենին տարածեցաւ :

(8) Որ 'ի Ճ. Ա. անորոշակի գրի կանայք ոմանք, այլք առ հասարակ՝ 'ի Հ. Ց. Լ. և Ճ. Գ. ող և վկ. տ. բ. ևն, որոշ գրեն լինել թուով եօթն : Մ՝ իայն բ յաւելու զայս պարագայ, թէ սբ բանիւ սոյն գարձեալ էին 'ի հաւատս : Գարձեալ տ. և բ. յաւելուն վս կուսյ՝ զորս 'ի լինն արկին սբ կանայք, թէ 'ի քրձի եգեալ էին, և կնքեալ կապարաւ. կմ թէ նք եգին 'ի քուրձս կապարալիցս, և այնպ արկին 'ի խորս : Իսկ գ յաւելու, թէ եկեալ էր և գտաւ որն յափն լճին.

(9) Այսպէս քաղեմք զմիտ բանից այլ և այլ վկայագրաց. զի ուր գնէ Ճ. Ա. * փայլատակէին մարմինք
,, նց իբրև զձիւն ||. այլք բ Ճ. Գ. գրեն. * և փնի ա-
,, բեանն կաթն իջանէր ||. կմ ա տ. բ. գ. * Տեսանէին
,, զինուորքն 'ի քերել անգ. զի փխն արեան կաթն իջա-
,, նէր 'ի մարմնոյ նց. և մարմինք նց ող ձիւն սպիտա-
,, կանայլին, և ոմ բոց հրոյ Ճառագայթէին || :

(10) Ոմանք աստանօր գրեն, թէ երկաքին մանկունքն 'ի ժամ գլխատման մօր իւրեանց ընթացեալ առ նա՝ ասեն. պատրաստեալ են պսակքն ձեզ 'ի տնէ. արդ ըղմեզ յանձն արա քաղ նահատակին վկայից հօտապետին մերոյ : Այլ մեզ բարւոք թուեցաւ ա այլոց յառաջադոյն դնել զբանտարկութիւն նց բ սոյն. բ որում և կատարեցանն իսկ զկնի :

(11) Հ. և Միտափր. ող և օրինակք ինչ վկ. տ. գնեն համաձայն մեզ արս կմ զօրականս՝ թուով. կբ. իսկ վկ. գ. ( ող և օրինակք ինչ. տ. վկ. ) դնեն. կե. և վկ. բ. գնէ. Հ. որ են տարբերութիւք թուանշանաց 'ի գրչաց՝ քան 'ի հեղինակաց :

(12) Կարեւոր է լսել ասս զբանս բոլլանդեայ, որ յաղագս խնդրուածոց սբյն վկայից 'ի ժամ գլխատման՝ առաւելապէս վս նեղելոց 'ի փչոց ձկանց կմ յակերաց 'ի փողմն կաուելոց. * Զայդ (ասէ) և երկնաւոր ձայնն
,, կատարել խոստացաւ, և յաճախագոյն պքանչելիքն
,, հաստատեն : Եւ ոչ նորագիւտ ինչ է այս ջերմեռան-
,, դուն, ող ոմանք 'ի նանրախոհից կարկալէն || : Այնչափ հրապարակեալ են ասէ՝ իրքդ, մինչ զի այնտեղ ամն հին բժիշկ յոյն՝ յետ առաջին դնելոյ զքնական դարմանս գեղոյ վս այսպիսի վտանգելոց, զայն զայս յաւել իբրև զօրագոյն քան զամ. իբր զի յորժամ վտանգեալն անյոյս իցէ 'ի կենաց, գիմեսցէ յօգնականութ

սբ՟յն Վլասայ. և կալեալ ուրուք զպարանոցէ նր՟, կմ՟ կնքեալ զպարանոցն նշանաւ խաչի՝ առաջէ ցաւքն կմ՟ ցփուշն. * Վլասիոս Վկայն և ծառայն քճ՟ի առէ, կամ ,, ել արտաքս, և կամ էջ 'ի վայր ||: Յարէ բոլլանդ. * Սփռեալ է ըէ՟ ծագս ամեզերաց այս ջերմեռանդութի ,, առ սբ՟ն Վլասիոս յայնպիսի հարկաւորութե ||. և պատմէ ևս զմին 'ի հրաշից եղեալ յամի տն 1589: Թող զոր լուաք և տեսաք մեք առ մեօք 'ի մէջ ազգիս հայոց. յորոց մինն կարի հպաւոր՝ ուխտ եդեալ անձին, յետ ազատելոյ 'ի վտանգէն՝ յամ ամուրս կենաց իւրոց առնել առանձին տօնս 'ի պատիւ սբ՟յն Վլասայ:

Ասէ դրէ դարձեալ բոլլանդ, թէ ոչ միայն վս՟ նեղելոց յաւելէ կմ՟ 'ի փշոյ ձկանց, այլ և տմ՟ փոխացաւոց և տառապելոց երաշխաւոր օգնական է սբ՟ն Վլաս. ուստի եղև սովորութի 'ի վաղուց հետէ յաւուր տօնի նորա օրհնել մանաւոր օրհնութբ՟ հացս և գինիս, պտուղս և զարմտիս՝ կարդալով զանուն սբ՟ն Վլասայ: Զօրինակս իսկ օրհնութեցն գտեալ 'ի հին մագաղաթեայս 'ի մէջ բերէ: Են ևս առէ, որոց ջրով ցօղեալ զմատունս սբ՟ ոսկերաց նր՟՝ զայն տան ըմպել հիւանդաց: Այնպէս, և առաւել ևս՝ (որ նախապատիւ է մեզ,) 'ի տառապանս հոգւոյ և յազգի ազգի փորձութիս եհաս յօգնութի սբ՟ն Վլասիոս:

(13) Որ՟ 'ի Լ. կատարումն սբ՟յն Վլասայ դնի 'ի գ՟. փետր. առյնպէս և վկ. տ. մէկն դրէ՝ լինել *յամսեանն փետրվարի՝ յաւուրն երրորդի||: ուր ըը՟ Հ. դնի 'ի Ժ փետր. և սակայն Ծ. Ա. և Դ. որք և տր իէլ դնեն ըը՟ յունաց 'ի փետր. ԺԱ: Թող զոր ոմանք 'ի լտ. եդին 'ի ԺԵ փետր: Պատճառ տարբերութեն առեալ լինի 'ի մթին ձեռս ամսագրութե 'ի յոյն և 'ի լատին բարբառ. զի 'ի վկ. ը. և գ. եդեալ է * յերրորդ նոնայան փետրվարի||. որ է 3. փետր. փխն դնելոյ արդեօք՝ *յերրորդ իդոսն փետրվարի||. որ է ասել. 11. փետր: Կայ և այլ պատճառ ասելի 'ի (15):

(14) Համաձայն Ծ. դնեն տմ հին վկայագիրք, առ լիկիանոսիւ. ըը՟ որոյ և բարոնիոս վերածէ յամ տն 316. և այլք ոմանք 'ի 312: Այլ 'ի զուր եդին յետին վկայագիրք՝ առ դիոկղետիանոսիւ յամի տն 287, կամ 288. չփոթեալ յայնմանէ՝ զի հալածէր զեկեղեցին յաւուրց անտի նր՟, և աթոռակցի նորուն մաքսիմիանոսի՝ զորոյ եւեթ զանունն յիշեն այլք. մեծ ևս է սխալումն այնոցիկ՝ որք եդին առ յուլիանոսիւ:

(15) 'Ի

(15) 'Ի վախճան ամի ծանիր. զի բաց 'ի մեծէն վլասայ սեբաստացւոյ՝ զոր տօնեն յոյնք 'ի 11. փետր. գտանի առ նոսա յիշատակ միւս եւս վլասայ կեսարացւոյ 'ի փետր. 3. զոր կոչեն անդեորգ. եւ գրի զանմանէ անդանօր 'ի ժամագիրս յունաց, թէ էր ծննդեամբ 'ի կեսարիոյ կապադովկացւոց. եւ 'ի պատանեկութեան իւրում՝ յորժամ արածէր զարջառս, 'ի խնդրել զնա արքունեաց հեթանոսաց՝ ինքնակամ մատնեաց զանձն 'ի ձեռս նց. եւ վն հաւատոյն քնի հարաւ արջառովքն, եւ ապա արկաւ 'ի կառայ եռացեալ ջրոյ. այլ անվնաս պահեցաւ. վնյ դահճիքն հաւատացին 'ի քս. եւ սբն մկրտեաց զնս 'ի կառայէ անտի՝ ցօղելով 'ի վր նց : Իսկ դատաւորն կարծելով պատրեալ զջուրն՝ եւ ցօղէր 'ի վր աչաց իւրոց. եւ առժամայն կուրացաւ, եւ անկեալ մեռաւ : Յետ այսորիկ ելեալ սբյն 'ի կառայէ՝ եկն մերձ 'ի գոմս անդեոց իւրոց. ուր աղջոյն առեալ մօրն եւ բնտանեաց իւրոց՝ աւանդեաց զհոգին. եւ որք մերձն կային՝ տեսին զհոգի նր իբրեւ աղաւնի մաքուր թռուցեալ յերկինս : Զկնի թաղման նորա 'ի տեղւոջն, հովուական ցուպ նր՝ որ եդեալ էր առ խորանաւ, բողբոջեցաւ. եւ սաղարթացեալ՝ հովանի եղեւ խորանին : Ուր առէ բոլլանդ. թէ մարթ էր ումեք տարակուսիլ՝ թէ գուցէ նոյն իցէ ընդ վլասայ սեբաստացւոյ. բայց եղանակ կատարման երկոցունց՝ ոչ եւ պէսպիսութի տանջանացն որոշ ցուցանեն : Մեք յաւելումք, թէ չկարեմք չխոթել զկեսարիա ը սեբաստիոյ. եւս առաւել զծագարոզ սբն հանդիպացեալ է որոշ ժմկաւ եւ տմ սուրդապատում հանդամանօք՝ ը մի համար գրել ը անծանօթ սբյ, որոյ եւ ժմկն անյայտ, եւ հանգամանք պատմուեն՝ կարօտ քննութե : Բայց զինչ զարմանք, եթէ բազմացին սբք համանունք. ոչ յայտ է եւ 'ի բազմաւորութէ նչխարաց՝ որք կրեն զանուն սբյն վլասայ. որպէս արդ տեսցես :

(16) Հռչակեալ բոլլանդայ խրատամբք ը բազմութիւն նչխարաց դանելոց յանուն սբյն վլասայ 'ի բզմ եւ 'ի զանազան տեղիս՝ սկսանի տալ ազգի ազգի պատճառս. յորս առաւել ստոյգ է՝ այն, զոր առէ. * Որ ինչ սակս
,, պատահէ 'ի գործս պատմութեց նոյնանուն սբց, զի
,, որ երեւելին է 'ի նս հռչակաւ սրբութե՝ գործք նր
,, յանհմուտ արանց ընծային այլոց անուանակցաց նր,
,, սորին հակառակն հանդիպի 'ի նչխարս բզմ անգամ.
,, զի որ բազմացն են, միում 'ի նցէ առաւել նշանաւո-

զանձն 'ի ճգնութեն : Եւ 'ի վկայարանի սբյն պետրոսի երևելի մասն գլխոյ վլասայ , և այլ նշխարք 'ի մերձակայ տեղիս : Ցորբետել քաղաք ետրուրիոյ սպանիացւոց՝ յաւագ եկեղեցւոջ ասի լինել գլուխ սբյն վլասայ՝ պատանց կզակի , գտեալ 'ի փլատակս մերձակայ քաղաքին անտեգանիոյ · զորոյ և զօր գիւտի կատարեն 'ի մայիսի · 12 : Եւ զև երբեմն գողանալ զայն ոմանց , այլ մինչդեռ սանէին նաւակաւ՝ նաւակն ինքնին յետս դարձաւ · դարձեալ այլ և գողացան · բայց սբ̃ նշխարքն աներևոյթ ձեռամբ ածեալ գտան 'ի տեղւոջ իւրեանց · Թող զի և անբաւ հրաշք և նշանք բժշկութեանց լինին անդ · որք վս̃ և 'ի Հռովմայ իսկ՝ զոյգ Ե̃ համօրէն ետրուրիոյ դիմեն անդր յուխտ բազմութք յամենայնն մայիսի 'ի յիշատակ գիւտի , և 'ի փետրվարի 'ի տօն սբյն : Այլ նշխար ինչ նր̃ առի լինել 'ի վոլատեռա ետրուրիոյ · բազուկ մի նր̃ 'ի մեդիոլան · բազուկ մի 'ի կոմպոստելա սպանիոյ · և այլ մասունք ինչ 'ի պլաշենցիա և յուլիսիպոնա · և այլ մասն՝ 'ի սիկիլիա · մասն մի 'ի լուսիտանիա 'ի բելոնէր ամրոցի · մասն ինչ 'ի գըլխոյն կամ յայլ նշխարաց 'ի մոնդեբելուլան քաղաքի նարբոնայ գաղղիացւոց , և այլ մասունք 'ի միմատ և 'ի մերոդոն :

* Բայց արդ իջցուք 'ի բելգիա ( ասէ բոլլանդ · յոր-
„ մէ ծնէ է և ինքն ) · և ոչ է պարտ զարմանալ ումեք՝
„ թէ այնչափ նշխարք արևելեան սրբց իցեն աստանօր ·
„ վս զի 'ի Ժմկին յորում կալան զպաղեստին բելգա-
„ ցիք և փռանգք , որ ինչ և նշխար մնացեալ էր անդ՝
„ յետ բազմաժմկ և բազմապատիկ աւարհարութեց այն
„ գաւառաց յերեսաց այլազգեաց , այսր փոխադրե-
„ ցաւ ամե նախանձաւոր մաքառմամբ : Եւ որչափ ինչ
„ նշխարք 'ի բոլանդակ արևելից հաւաքեալ կային 'ի
„ կոստանդինուպօլիս իբրև 'ի քաղաք ապաստանի , այն
„ ինչ տիրեցին այնմ տրութն իշխանք փռանգրացւոց՝
„ սոքա ևս այսր յղեցին զայնոսիկ առ 'ի հարստացու-
„ ցանել զքաղաքս տրութ իւրեանց և 'ի մեծարել ըզ-
„ բարեկամս · գուցէ և ինչ ինչ ընծայեցան առաջնոր-
„ դաց՝ առ առնուլ 'ի նցէ դրամս յօգնականութ պա-
„ տերազմի · Եւս բազումս բերին Ե̃ իւրեանս 'ի գա-
„ ւառն 'ի հայրենիս · թող զորս յղեցին անտուստ առ
„ իւրեանցսն || :

Զայս եդեալ՝ 'ի վր բերէ · այլ առաւել բազմագոյն նշխարք սբյն վլասայ կան ( ասէ ) աստ 'ի միջի մերում

'ի

՚ի զանազան քաղաքս ։ Ցանտանեքրքիս ՚ի միում տաճա_
րի կայ մասն ինչ մանանայի , որ Թուի ՚ի սրունից ,
Հանդերձ այլ եւս մանր նշխարօք ։ ուր եւ բազում նշա_
նակք կախեալ կան ՚ի մէջ եկեղեցւոյ՝ ՚ի յիշատակ բժշ_
կութեանց եւ այլ երախտեաց եղելոց միջնորդութեամբ սբյն
Վլասայ ։ եւ յայլում տաճարի կայ ատամն մի նր , եւ այլ
մասունք մանրեալք ոչ փոքր ։ ՚Ի Վանս ուրեք բազուկ
նր՝ նշանօք երեւելի ։ եւ այլ մասունք յայլ եկեղեցիս մօտ
՚ի Լոմվանիա ։ Մին յատամանց ՚ի Լուքսեմբուրգ ։ եւ միւս
այլ ատամն ՚ի Լերիա ։ եւ այլուր այլ ոսկերք ։ Սկաւա_
ռակ գլխոյն սա ի Լինեւ ՚ի Վանս սբյն դիոնեսիսի՝ առ_
Լերամբքն Համնոնիոյ , իբրեւ Հերձուեալ յերեսաց եր_
կաթի քերչայ կր սանտերաց ։ ՚ի կրիապեան Վանս ա_
տամն մի նր ։ եւ ՚ի վիկոնեան Վանս մասունք ինչ Հան_
դերձ ոսկի մատանեաւն ։ ՚Ի կամերակ մասն ծնօտից ։
՚ի բլաղիակ ոսկր ինչ պարանոցի ։ ՚Ի Վանս սբյն բեր_
տինու յաւգոմարտոլիս՝ մին ՚ի կողից , եւ ատամունք
երկու ։ ՚Ի դուճակիս քաղաք փլանդրիոյ՝ Վայլանկոյմն
կզակին՝ Հանդերձ այլ նշխարօք ։ եւ յայլում եկեղեցւոջ
երեւելի մասն ՚ի միոյ ՚ի կողից նր ։ ՚Ի տոռնակ ոսկր
ինչ երեւելի ։ ՚ի գերարդինոն կզակ նորա ։ ՚Ի բռուգայ
մասն ՚ի բազկէ ։ ՚Ի կողոնիա ագրիպպինոյ՝ ուրեք բա_
զուկ մի ։ ուրեք ոսկր մի մեծ ՚ի բազկէն ։ այլուր մասն
՚ի ծնօտից , այլուր մասն ՚ի կողից ։ առա մասն , անդ
այլ եւ այլ ոսկերք ։ Այսպէս եւ յայլ բազում տեղիս մա_
սունք բազում, մանունք եւ խոշորք ։ յորոց միջի եւ յա_
լոմք են ուխտատեղիք նշանաւորք սքանչելեօք ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

սրբոյն Ոնեսիմեայ աշակերտին պօղոսի ։

Հ․ փետր․ 10 ։ Յ․ Հ=Յ․ և որ ըՃՂ․ փետր․ 15 ։ Լ․ փետր․ 19 ։ Ըստ լատինացւոցն հենուռենեոս․ Ժ̃ ․հար․ փետր․ ԷՂ․ 855=859 ։ Մեռանէր․ և այլք ։ (1)

ՍՈՒՐԲՆ ՈՆԵՍԻՄՈՍ (որ թարգմանի օգտակար և շահեկան), մեծն կոչեցեալ 'ի մէջ երկուց այլ համանուն սրբոց (2), և առաքեալ անուանեալ՝ ըստ որում աշակերտ առաքելոյն պօղոսի, էր հայրենեօք 'ի քղ̃քէն կողոսացւոց՝ ծառայ փիլիմոնի առն ազնուականի 'ի նմին քղ̃քէ, և հռովմայեցւոյ ըստ կարգի ազատութեան ։ Նա եղև յետ դառնալոյ փիլիմոնի 'ի հաւատս ք̃սի քարոզութ̃ սր̃յն պօղոսի՝ կանխէին հաւատացեալք 'ի տուն անդր նորա․ զորս հանգուցանէր և մխիթարէր փիլիմոն ։ Իսկ Ոնեսիմոս փոխանակ յարելոյ 'ի տ̃ր իւր՝ տակաւին մնայր 'ի հեթանոսական մոլորութ̃․ և ոչ այսչափ միայն, այլև երիտասարդական ոգւով խորհուրդ 'ի մտի եդեալ զերծանիլ 'ի ծառայութ̃է՝ գողացաւ յընչից տ̃ն իւրոյ փիլիմոնի, և անկաւ փախստական 'ի հռովմ ։

Այլ

Այլ ըստ յաջողելոյ մարդասիրութեան այ̃՝ որ կամէր զդարձ նորա բոլորովին , հանդիպեցաւ ոնեսիմոս տեսութե̃ն սրբոյն պօղոսի . զի էր յայնժամ առաքեալն կապեալ 'ի հռովմ . և որ յառաջն օտարանայր 'ի նմանէ իբրև 'ի ծանօթէ տն̃ն իւրոյ , այնուհետև ստէպ կանխեալ առ նա , և ընտելացեալ՝ լուաւ բազմօք յառաքելոյն զքարոզութիւն բանին այ̃ . մինչև ընկալեալ զքր̃ հաւատս՝ մկրտեցաւ և եղև քրիստոնեայ . և ծառայէր ա̃մ սիրով 'ի պէտս առաքելոյն՝ իբրև ներքին պաշտօնեայ նր̃ և սարկաւագ աւագ , և պօղոս ունէր զնա ոպ̃ որդի սիրելի :

Արդ կամեցեալ առաքելոյն հաշտ առնել զոնեսիմոս ը̃ տն̃ իւրում , և հաւանութ̃ նր̃ առնել զնա իւր յարբանեկութ̃ , ետ 'ի ձեռս ոնեսիմեայ գիր ընծայութ̃ կամ յանձնարարութ̃ առ փիլիմոնն՝ ա̃մ ուշիմութ̃ և քաղաքավար բանիւք լի , աղաչելով զնա ընտանեբար՝ ներել յանցանաց ոնեսիմեայ , և ընդունել զնա սիրով ոչ ևս իբրև ծառայ , այլ՝ իբրև եղբայր : Աղաչեմ զքեզ ( ասէ ) վս̃ որդւոյ իմոյ՝ զոր ծնայ 'ի կապանս իմ զոնեսիմոս . ( իմա , զօգտակարն անուամբ և արդեամբք յայտնապէս . վն̃յ 'ի վր̃ բերէ . ) որ երբեմն քեզ անպիտան . բայց արդ քեզ և ինձ պիտանի : Եւ այս եղև յամի տն̃ իբր 58 . 'ի չորրորդ ամի ներոնի . յորում ժմկի գրեաց առաքեալն և զթուղթն առ կողոսացիս , և յղեաց 'ի ձեռն նորին ոնեսիմեայ և տիւքիկոսի , ոպ̃ և յիշէ 'ի թղթի անդ :

Իբրև

Իբրև եհաս Ոնեսիմոս 'ի Կողոսա , բազում
մարդասիրութբ ընկալաւ զնա Փիլիմոն՝ ա-
ռաւել քան զգրեալն 'ի Պօղոսէ՝ ըստ գուշա-
կելոյ նորին առաքելոյ . և 'ի դէպ ժամու
յղեաց զնա պատուով անդրէն 'ի Հռովմ առ
սրբն Պօղոս՝ սպաս տանել նմա 'ի կապանս :
Այնուհետև եղև Ոնեսիմոս ոչ միայն պաշ-
տօնեայ , այլև տիրապէս գործակից Պօղո-
սի 'ի քարոզութի աւետարանին . և այնչափ
յառաջադէմ գտաւ յառաքինի վարս և 'ի
նախանձաւորութի առաքելական մշակութե ,
մինչև լինել երևելի յաշակերտս Պօղոսի՝ որ
Սօղոս փոխեալ 'ի Պօղոս , և առաքեալ ան-
ուանիլ իբրև զայլ աշակերտս տն և առա-
քելոց :
Իսկ եղև յետ արձակելոյ Պօղոսի յառաջին
կապանաց , ընդ նմա շրջէր քարոզէր և Ոնե-
սիմոս զաւետարանն քրի 'ի Հռովմ և յամ
Իտալիա : Իսկ տեսեալ առաքելոյն զշնորհս
հոգւոյն՝ որ 'ի վր նորա , ձեռնադրեաց զնա
եպիսկոպոս . և զի երանելին Տիմոթէոս հո-
վիւ սեպհական եկեղեցւոյն եփեսացւոց՝ էր
գլխաւորն 'ի գործակիցս Պօղոսի , և ոչ կա-
րէր որոշիլ 'ի նմանէ 'ի ժմկին յայնմիկ , զա-
ինքն զՈնեսիմոս յղեաց ասեն առաքեալքն
յԵփեսոս՝ լինել զտեղի Տիմոթեայ , գուշա-
կելով միանգամայն՝ թէ յետոյ ունի լինել
նա սեպհական հովիւ եփեսեայ :
Այլ յետ կատարման Պօղոսի՝ յորժամ դարձ
առնէր Տիմոթէոս յաթոռ իւր , յայնժամ
երանելին Ոնեսիմոս միւսանգամ դիմեաց յա-
րև

ընմուտս՝ շրջիլ քարոզութեամբ և հաստատել զաշակերտեալս ։ Նա անցեալ ընդ պատրաս՝ եգիտ անդ զպօղիքսենա կոյս սպանիացի և զատուս , որք աշակերտեալ էին սրբոյն անդրէի առաքելոյ ․ և յորդորանօք նոցա եմուտ 'ի նաւ նոքօք հանդերձ , և գնաց 'ի սպանիա ․ ուր լուսաւորեաց զբովանդակ գաւառն կարպետանիոյ , և հաստատեալ կարգեաց եկեղեցիս ։ (3)

Օ այսու ժամկաւ կատարեցաւ նահատակութեամբ երանելին տիմոթէոս ․ և եփեսացիք աղաչեցին զսուրբն յովհաննէս աւետարանիչ՝ մի թողուլ զայն եկեղեցի առանց հովուի , այլ անձամբ վերակացու լինել ․ զոր և արար իսկ մինչև ցաւուրս տրայիանոսի ցամն 99։ Նա յետ փոխմանն նորա հրաւիրեցին եփեսացիք զսուրբն ոնեսիմոս բազում ստիպաւ ․ և նորա դարձ արարեալ յարևմտից՝ կալաւ զառաջնորդութիւն եփեսոսի իբրև հովիւ սեպհական 'ի ծերութեան հասակի ․ զի էր յայնժամ անցեալ զվաթսնամենիւք ․ և բազում բարեկարգութեամբ զարդարեաց զեկեղեցի եփեսացւոց , յարգելով և անձեռուցանելով զվաստակս երանելւոյն տիմոթեայ և սրբոյն յովհաննու աւետարանչի ։

Յետ ամաց ինչ՝ յորժամ ըմբռնեցին զսուրբն իգնատիոս աստուածազգեաց հայրապետն անտիոքայ , ( որ և աշակերտ աւետարանչին յովհաննու , ) և առեալ տանէին կապանօք 'ի հռոմ , դէպ եղև նմա անցանել ընդ զմիւռնիա քաղաք ․ յայնժամ եկն ընդ առաջ նորա յե-

փեսու

փեսեայ սրբոյն Ոնեսիմոս ընդ ամենայն յեկեղեց-
ւոյն Եփեսացւոց . և ողջունեալ զմիմեանս՝
մխիթարականք եղեն իրերաց . և եղև անպայ-
ման խնդութի սրբոցն երկոցունց ։ Իսկ յաւել
յայնժամ գրել սրբոյն Իգնատիոս թուղթ մխի-
թարութե առ Եփեսացիս . յամի տն 107 . ուր
արժանաւոր գովութե յիշատակէ զհովիւն
նց՝ յաւել ասելով . * Օ յոքնաթիւ
,, բազմութի ձեր յանուն այ ընկալայ յան-
,, ձին Ոնեսիմեայ , որ անպատմելին է 'ի սէր,
,, և ձեր 'ի մարմնի եպիսկոպոս . որում ըն-
,, նիցի՝ ըստ հայցեմ ('ի տնէ) , ըստ յսի քսի
,, զձեզ սիրել , և ամենայն ձեզ՝ նմին լինել
,, նմանօղ . օրհնեալ է այն՝ որ ետ ձեզ ար-
,, ժանաւորացդ ունել զեպս այնպիսի . . .
,, Այս ինքն Ոնեսիմոս բազմօք գովէ զձերդ
,, ածային բարեկարգութի , զի ամենքին ըստ
,, ճշմարտութեն կեայք . և զի՝ և ոչ մի հերձ-
,, ուած 'ի ձեզ տեղի ոչ ունի . և ոչ ումեք
,, լինիք լսող բայց յսի քսի՝ որ խօսի ճշմար-
,, տութե ‖ ։ Գրեալ կայ և 'ի թուղթն՝ որ
յանուն նորա առ ժղվրդն անտիոքացւոց այս-
պէս . * Ողջոյն տայ ձեզ Ոնեսիմոս՝ Եփեսաց-
ւոցն հովիւ ‖ ։

Իսկ զկնի նահատակութե սրբոյն Իգնատիոսի՝
երբև 'ի խնդիր էին հեթանոսք , թէ ո՞ ոք
այլ կայցէ գլխաւոր 'ի քրիստոնէից միջի՝ 'ի
տարածել զհաւատս խաչելոյն և 'ի հաստա-
տուն պահել զհաւատացեալս , մատնեցին
ոմանք զերանելին զՈնեսիմոս ։ Ըստ արքու-
նի հրամանաւ և բանիւ անթիհիւպատին ա-

տրաց

տիացւոց ըմբռնի և նա , և ածեալ լինի կապանօք 'ի Հռովմ քաղաք . ուր իբրև կացուցին զերանելին յատենի , եհարց զնա եպարքոսն՝ որում անուն էր տերտիւղոս , և ասէ . Ո՞վ ես դու , և կամ ուստի՞ եկիր , որ քարոզես զայլ ա՛ծ՝ զոր մեք ոչ ճանաչեմք ։ Ասնի ես Ոնեսիմոս . ես երբեմն ծառայ էի մարդոյ զանձագին . և արդ ծառայ եմ այ՝ գնեալ պատուական արեամբն քի , և ազատ քան զամ մարդիկ . քանզի 'ի բաց մեկնեցայ 'ի կռապաշտութե , և կոչեցայ 'ի բարեպաշտութի ։

Նա այլ բազում բանս խօսեցաւ ընդ եպարքոսին յածյին գիտուէ . զի թերևս դարձցի 'ի ճնգհ ճշմարտութե ։ Իսկ տերտիւղոսն այն հայեցեալ ընդ համարձակութի սրբյն՝ բարկացաւ 'ի բարկութի , և եդ զնա 'ի բանտ զաւուրս ժը̃ , պատուէր տուեալ՝ զի ոչ հաց և ոչ ջուր տացեն նմա , որպ զի մեռցի 'ի սովոյ ։ Բայց երանելին Ոնեսիմոս անփոյթ պահեալ՝ ոչ դադարէր և 'ի բանտի անդ ուսուցանել զբանն կենաց . որով և զբազումս դարձոյց 'ի հռովմայեցւոցն յածպաշտուի . զորս հալածեաց եպարքոսն 'ի Հռովմայ ։

Նա զմն Ոնեսիմոս հեռացուցեալ 'ի քաղաքէն՝ տարաւ ընդ իւր կապանօք 'ի պատիողոս , կմ 'ի քաղաքն պոպլիա ։ Նա անդ ևս սկսաւ երանելին քարոզել զբանն այ , և զբազումս դարձոյց 'ի քնական հաւատ՝ որք գային առ նա ։ Զայն իբրև գիտաց տերտիւղոս , հրամայեաց զօրականին , և ճաղկեցին զսուրբն

հաստ բրօք ուժգին արք չորս ․ և ապա ընկե-
ցին յորսայս , և խորտակեցին զոլոքսն և
զբարձսն ․ յորում վայրի աղօթելով երանե-
լի առաքեալն և սբ հայրապետն Ոնեսիմոս՝
աւանդեաց զհոգին իւր առ ած գեղեցիկ
վկայութբ ․ Են որ ասեն՝ թէ քարկոծ եւս ա-
րարին զերանելին (4) ․ և այնպէս կատարե-
ցաւ 'ի քս յաւուրս տրայիանոսի կայսեր յա-
մի տն իբր ․ 109 ։

Յայնժամ մատիդէ կին քրիստոնեայ 'ի թա-
գաւորական ազգէ (5), որ ասի լինել նա ինքն
քոյր տրայիանոսի կայսեր 'ի ծածուկ աշա-
կերտեալ սբյն կղեմայ հռովմայ հայրապե-
տի , առաքեաց և էառ զմարմին սբյն Ոնեսի-
մեայ , և ամփոփեաց յարծաթի տապանակի ․
զոր յետ ժմկաց ոմանք 'ի բարեպաշտից ե-
փեսացւոց առեալ տարան յաթոռ նր յեփե-
սոս , և անդ հանգուցին պատուով ․ թող զի
զկնի մասունք ոսկերաց նր անդրէն յարե-
մուտս դարձան ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Առաջին մասն վարուց սբյն Ոնեսիմեայ՝ մինչև 'ի դարձն , քաղե 'ի թղթոյն պօղոսի առ փիլիմոն ըն հին և նոր մեկնչաց ։ Երկրորդ մասն՝ փ քարոզութ նր ընհանրապէս աւանդի յամ վկայաբանից , բաց յեպսւէն՝ զոր ունիմք յայտնապէս 'ի թղթոց սբյն իգնատիոսի ածազգեցի ․ ուստի առնուն և լատին մատենագիրք ․ այլ ընտրելի է զայնմանէ 'ի Հ ․ և 'ի Յ ։ Իսկ վերջին մասն՝ փ վկայաբանութն թէպէտև յամ ազգս գտանի , բայց մեք առաւել պահեցաք զընթացս յայսմաւուրաց մր իջելի ․

որ առնել միաձայնի ընդ Հ = Ց : և թէ կայցէ ինչ տարբեր առ այլս, նշանակեմք 'ի կարգիս :

(2) Խորհրդով յիշեցաք զանուանակիցս սքչն. զի մի լի- ցի ումեք շփոթել. թէպէտև անհնար իսկ է շփոթել : Զի մեծն ոնեսիմոս էր յառաջին դարու՝ աշակերտ ա- ռաքելոյն պօղոսի : Երկրորդն ոնեսիմոս՝ որ յիշատակի 'ի Հ. սեպտ. 28. կամ ապր. 20. և 'ի Ց. Ն. 'ի մայի- սի. 10. էր յերրորդ կամ 'ի չորրորդ դարու՝ առ դե- կոսիւ և կամ առ լիկինիոսիւ. վճայ երից եղբարց յի- տալիա՝ ալփիոսի և փիլադելփոսի և կիւրինոսի. և 'ի պատմութ նց նախ ՟Ժ՟ զնն պատկեցաւ մարտիրոսութ : Իսկ երրորդն ոնեսիմոս էր կրօնաւորութն սք և նշանա- ւոր 'ի կողմանս կեսարիոյ պաղեստինոյ՝ թերևս յե- տոյ ժմկաւ, բայց յաւուրս հալածանաց. զորմէ լինի յի- շատակ 'ի Հ. օգոստ. 28. և Ց. յուլ. 14 : տես և 'ի վայր՝ ծան՛. (4) :

(3) Քարոզութ սքչն ոնեսիմեայ աշակերտին պօղոսի 'ի սպանիա, զոր պինդ ունի աւանդութի սպանիացւոց, (թէ որում է տեսանել 'ի վկայագիրս նոցա, մանաւանդ առ յովհաննու տամայոսի սալազարայ.) առնիւ 'ի դէպ է. թէ որում և պօղոս յիշէ յանուանէ զսպանիա իբրև նպատակ քարոզութե իւրոյ : Իսկ զոր դնեն ոմանք 'ի յունաց՝ թէ սա ինքն ոնեսիմոս համարի 'ի թիւս նախ- կին առաքելոց բիւզանդիոյ զկնի սքչն անդրէի և ստա- քէոսի, պէտս ունի ստուգութե. չասացից՝ թէ գուցէ առեալ իցէ 'ի գնալոյ ոնեսիմեայ յեփեսոս և 'ի զմիւռ- նիա, ըստ և 'ի պատրաս. ուր եգիտ զաշակերտեալս 'ի սքչն անդրէէ :

(4) Այլ ինչ տարադէպ երևի մեզ միաբանել զերկին եղա- նակ կատարման սքչն ոնեսիմեայ՝ չախչախանօք ոլորացն, և քարկոծմամբ. յորոց զառաջինն գտանեմք 'ի Հ. և Ց. և զերկրորդն 'ի Ն. Այլ այն է տարադէպ, զի փեր- րարիոս և տամայոս այլովքն հանդերձ՝ այնչափ ամրանդեմ են 'ի քարկոծումն, մինչև մեղադիր լինել գաղեսինոսի՝ թէ ուստի առեալ իցէ գրել զկատարումն սքչն 'ի պա- տիողս չարաչար գանիւք և խորտակմամբ անդամոց : Փերրարիոս վճռէ. թէ յայտնապէս սխալի գաղեսինոս, և տամայոս՝ կարի մեծ սխալումն կոչէ զգործ նր. և զայլ ևս հին և նոր հեղինակս միաձայնեալս ընդ նմին՝ համարձակ նշաւակէ, և ոչ գիտէ՝ թէ ինքն չարաչար սխալէ՝ յասելն. * Զոնեսիմեայ զնահատակութի գրե- ,, ցին մետափրաստես, յորմէ և սուրիոս, և հաւաքօղ ,, նո

,, Նորա գրասիրս ․ այլ զխաւանաց գալեսինեայ զՏեա
,, երկթալով զերկուս ոնեսիմոսս շփոթէ զա||: Զորոչ
բարւոք ուղղագրէ Հենսքեններս բոլլանդեան՝ 'ի վերայ
ածեալ, թէ Հեղինակ սխալանացս ոչ է գալեսինոս,
այլ՝ մետափրաստէս, և կամ Հեղինակն՝ որում զՏեառ եր_
թան լիպոմանոս և սուրիոս ․ ա͞ որոյ նահատակութե
ոնեսիմեայ դնի 'ի պոտիողոս՝ այնպիսի Հանդամանօք
Հանդերձ: Ո՛չ բարւոք վճռաւ երևի և փերրարիոս
յաւելլն ․ * Այն՝ որ 'ի պոտիողոս նահատակեցաւ,
,, ոչ է աշակերտ առաքելոյն պօղոսի, այլ բազմօք ապր_
,, բեր 'ի նմէ ․ ո՞յ վարք երկաքանչիւրոցն յայտ առնեն||:
Առ որս 'ի դէպ է ասել, եթէ իմաստունք ըմբռնին 'ի
խորագիտութիւս իւրեանց, և առաւել թիւրորդին 'ի
մասհաճութիւս ազգային կուսակցութե ․ զի այս նմ յա_
ռաջ գայ 'ի պաշտպան կալոյ այսմ քան այնմ վկայաբա_
նութե ․ ապա թէ ոչ՝ շրջի ձեռնարկս 'ի վր նոցա, թէ
քարկոծմամբ վկայեալն ոչ է առաջինն ոնեսիմոս, այլ՝
երկրորդն ․ յորոյ 'ի վարս ընթեռնումք մեք, թէ եդին
քար ծանր 'ի վր սրտի նր, և այնու աւանդեաց զՀո_
գին ․ իսկ զառաջնոյն ընթեռնումք՝ թէ յետ գանից 'ի
խորտակման ոսկերացն կատարեցաւ ․ ուրեմն զոքա խն_
քեանք շփոթեն զերկուս ոնեսիմոսս 'ի մի : Այլ եթէ
մն անուան քաղաքին իցէ վէճն, մեք ոչ Հակառակիմք ․
այլ կարօղ եմք առ լուծումն կրկին ․ նախ՝ զի թէպէտ
'ի սովորական օրինակս Հ ․ և Ց ․ գրի պոտիողոս, որ
և բուզեօլի, այլ յօրինակին մր իՀլի գրեալ կայ պոտ_
լիա ․ թող որք կամինն՝ զայս սրբագրեցեն և ընդգրկեա_
ցեն : Երկրորդ՝ զի՞նչ դժխնութի կայցէ նահատակիլ
երկու նոյնանուն սրբց 'ի նոյն 'ի պոտիողոս ․ առաջ_
նոյն ոնեսիմեայ՝ առ ադրիանոս եպարքոսիւ, և երկ_
րորդին առ դիոմեդէս դատաւորաւ : Թող անդր զա_
ւելորդ յուզմունս ․ զի բանք բազումք յաճախեն զբռւ_
նոյնութե :

(5) Տեր իՀլ ընդ. Հ = Ց ․ այսչափ միայն գրէ, * կին
,, մի քրիստոնեայ 'ի թագաւորական ազգէ|| ․ իսկ յու_
լիանոս պետրոս առ բոլլանդեանս մեկն առաջին դնէ ․
* մարիդէ թագուՀի՝ քոյր տրայիանոսի կայսեր 'ի ծա_
,, ծուկ աշակերտեալ սրբյն կղեմայ|| : որ են Հաստատու_
թիւք իրերաց 'ի վկայութե :



# ԵՐԿՐՈՐԴՈՒՄՆ ՏՕՆԻ

սբ̃յն Աղեքսանդրոսի Հռովմայ Հայրապետի ․
և վերստին յիշատակ Կոստանդիանոսի
Թգ̃րի՝ վ̃ն դարձի նորա ։



ՆԱԽԿԻՆ ԵՒ ԳԼԽԱ-ւոր տօն սրբոյն Աղեքսանդրոսի կատարի 'ի սկզբանէ հետէ յեկեղեցի հայաստանեայց՝ առընթեր կ̃ի զոյգ ը̃ սբ̃յ Հայրապետին բարսղի կեսարացւոյ , որ անկանի 'ի շաբաթ օր պահոց յայտնութե̃ , իբրև 'ի սեպհական տեղի տօնախմբութե̃՝ մօտ 'ի տարեգլուխն ․ զի ոչ̃ 'ի մեզ և 'ի յոյնս և 'ի լատինս միաբան դնի տօն բարսղի յառաջին աւուր յունվարի, նոյնպէս և յերկրորդ աւուր անդ յունվարի դնի տօն սեղբեստրոսի եթէ առ յոյնս , և եթէ առ հայս ․ ոչ̃ յայտ է 'ի հին ճաշոցաց և 'ի յայսմաւուրաց ը̃ տօնացուցից ․ զոր և լատինք երկաւուրբք յառաջ տօնեն 'ի վախճան տարւոյն 'ի դեկտ ․ 31 ։

Իսկ սմին օրինակի և բուն յիշատակ տօնի մեծին կոստանդիանոսի դնի առ յոյնս և առ հայս միաբանաբար 'ի 21 ․ մայիսի ․ ոչ̃ և մօտ յայն ժմկ տօնեմք յաւուր երեքշաբաթի երրորդ կիրակէի զկնի պենտեկոստէին՝ զոյգ ընդ մօր նր̃ հեղինեայ ։ Թող զլատինս՝ որք

հա̃կ-

Հնդկօրէն զհեղինէ ևեթ տօնէն 'ի 28 . օ-
գոստոսի ։

Արդ յայտ է , թէ առաջինկայս երկրոր-դումն՝ կ թէ ասել երկփեղկումն տօնի սեղ-բեստրոսի ը՟ն կոստանդիանոսի՝ 'ի յետնոց է եղեալ յայտնի պատճառանօք այլայլակ գա-լոյ միջոցի ապայիցս . ո՟չ զի յերկար լինել այդր միջոցի՝ այսր փոխադրեսցի զկնի վլա-սայ հայրապետի և ոնեսիմեայ՝ այն տօն սեղ-բեստրոսի , որ արդէն առ հարկի սեղմեալ է 'ի միջոց յայտնուե՟ ը՟ն բալասղի . ո՟չ և տօնք գորդիոսի , և պողիկտոսի և՟ա , զայս տեղի ապայից ընուն ը՟ն կարգի ։ Ու. առհա այսու տնտեսութե՟ կրկնագրութե՟ եղև սովորութի՟ կրկին տօնել զսե՟ն սեղբեստրոս , ( որպէս և զայլս ոմանս 'ի սե՟ց առ զանազան պատճա-ռաց . ) 'ի նոյն պատուհասէ՟ կրկին և զմեծն կոստանդիանոս՝ ոչ վ՟ս այլ իրաց , բայց զի զհետ վարուց սեղբեստրոսի՝ որ միանգամ միայն գրի 'ի յայսմաւուրս՝ 'ի յունվարի . 2 . եղեալ կայ ուրոյն խորագրով պատմութի՟ դարձին նր՟ և մկրտուե՟ 'ի ձեռն սեղբեստրո-սի . ո՟ր պարտ էր միտ դնել , զի աստ ոչ է եղեալ՝ * Յիշատակ է կոստանդիանոսի ‖ , և՟ա . ո՟չ եղեալ կայ 'ի մայիսի . 21 . այլ լոկ պատմաբար , * Ս՟ն սե՟յն կոստանդիանոսի թգ՟րին՝ թէ ո՟չ հաւատաց 'ի ք՟ս 'ի ձեռն սեղ-բեստրոսի ‖ . կա՟ ը՟ն այլ օրինակաց . և տպ . համառօտագոյն . * Հաւատալն 'ի ք՟ս կոս-տանդիանոսի ( թգ՟րի ) ‖ ։

Օ այսոսիկ նշանակեցաք ոչ 'ի տալ փոփո-

խել զկարգումն հաստատուն տանից՝ որ կա-
խել է զազգային սովորութե, այլ առ 'ի յայտ-
նել՝ թէ խորհրդով հարևանցի ևեթ նշա-
նակեցաք աստանօր 'ի կարգս ապայից զկրկ-
նութիւն տանիցս՝ առանց կարօտելոյ պատմել
աստ զվարս նոյն սրբոց, որոց կան պահին
սեպհական տեղիք. քանզի հանդերձեալ
եմք ամլ դնել զվարս սրբոյն սեղբեստրոսի
զկնի վարուց սրբոյն բարսղի և եղբօր նորա գրի-
գորի նիւսացւոյ 'ի միջոցի յայտնութե պա-
հոց. նոյն և զվարս սրբոյն կոստանդիանոսի ընդ
հեղինեայ մօր նորա 'ի միջոցի պենտեկոստէին
և վարդավառին: Այլ մեք յայսմ վայրի
անցցուք 'ի վարս այլոց սրբոց տօնելոց 'ի մի-
ջոցի աստ ապայից:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

### սրբոյն Գորդիոսի Հարիւրապետի կեսարացւոյ :

Հ. Յ. Ա. յաւելուած. 3 : Մեծն Բարսեղ 'ի Ներբողեանն Գորդեոսի. հատ. Է. ճառ ծը. երես. 141 : Ճառընտ. Ա. ՃԷ : Բ. ՉՅԶ : Բոլլանդ յունուա- նեա. 'ի Գ հատ. յուն : Հաւաքմունք : Մետափր. առ սուրբսն. ԻԳ : (1)



ՅԱՂԹՈՂ ՎԿԱՅՆ քսի Երանելին Գորդիոս էր ծննդեամբ 'ի կեսարիայ քաղաքէ կապադովկացւոց. * ուստի և առաւելապէս մեզ սիրելի (ասէ մեծն բարսեղ կեսարացի), զի սեպհական զարդ մեր է || : Նա թէպէտև հաստատացեալ ծնողաց որդի էր նա, այլ 'ի հասանել իւրում յարբունս՝ 'ի սկզբան անդ կայսերութեն դիոկղետիանոսի, ընտրեցաւ 'ի կարգ զինուորութե ճ̄ զօրս արքունի. զի էր այր կորովի և զօրաւոր, յաջողակ 'ի գործ պատերազմի՝ և արի ոգւով : Մինչև յառաջադէմ գտեալ 'ի բազմապատիկ հանդէսս քաջութե՝ պատուեցաւ 'ի զօրագլխաց և յիշխանաց թ̃գ̃րին, և կացուցաւ հարիւրապետ և կոմս հրամանաւ ինքնակալին :

Այլ 'ի յարուցանել դիոկղետիանոսի ընդ-դէմ քրիստոնէից հալածանս , տեսեալ գոր-գիոսի զանհնարին աղէտս որք հասին 'ի վ͞ր հաւատացելոց , փարանէր տագնապէր ան-բերելի սրտացաւու͞թ . քանզի և օգնել ինչ ն͞ց չէր ձեռնհաս , և տեսանել զտառապանս ն͞ց չկարէր հանդուրժել . զի զօրհանապազ առաջի աչաց նշմարէր զոմն 'ի հուր , զոմն 'ի սուր , և զայլս յոլովս յազգի ազգի հնարս տանջանաց և մահու մատնեալ : Ապա խոր-հուրդ քաջ 'ի միտ դնէր թողել զանձն 'ի գնդէ զինուորութե͞ , և մեկնիլ գնալ յօտա-րութի͞ . զի մի երևեսցի հաղորդ լինել խորհր-դոց և գործոց անօրէն հալածչացն : Եւ գնաց 'ի քղ͞քէն , և դիմեաց յանապատն կոյս . և առանձնացեալ 'ի փապարս լերանց՝ մա-կեցական վարս սահմանեաց անձին , 'ի սով և 'ի ծարաւ կամակար ձգնելով , և հանա-պազօրդ աղօթիւք ը͞ ա͞ծ խօսելով : Եւ այն-պէս զամս բազումս զաւարեալ յանապա-տի՝ եղև միայնակեաց ընտրեալ , անդադար կրթանօք հոգւոյն և ա͞ծամերձ լուսաւորու-թեամբ :

Յետ այսորիկ յաւուրս թ͞գրու͞ն լիկինոսի իբրև միւսանգամ արծարծեցաւ հրդեհ հա-լածանաց 'ի վ͞ր քրիստոնէից , և ազրիկողայ-ոս անօրէն դատաւոր արևելից չարաչար տանջէր զն͞սին (2) , յայնժամ վառեալ ա͞ծ-ային նախանձու երանելին գորդիոս էջ յա-նապատէ 'ի քղ͞ք իւր 'ի կեսարիա , կշտամ-բել յայտնապէս զմոլորութի͞ հեթանոսաց ,

յանձն

յանձն առեալ 'ի մահ մատնիլ վս քսի ըս օրինակի այլոց սրբ վկայից : Նա ևս էր օր մի՝ յորում Հանդէս մեծ լինէր Թատրոնական խաղուց 'ի քաղաքին անդ 'ի պատիւ տօնի պատերազմասէր դիւին , որ է Արէսն յունին , որ և մարս կչ մարտ լսի · և ամն բազմութի քաղաքին ժողովեալ էին յընդարձակ վայր ասպարիզի ձիընթացից · և էր տեսանել ամբոխ բազմութե հեթանոսաց և հրէից · և քրիստոնէից հոյլք ոչ սակաւք ընդ նոսա խառնեալք · քանզի և ծառայիցն թողացուցին տեարքն իւրեանց զայն օր պարապոյ , և մականց մնկպանոցացն ուսուցիչքն՝ ընթանալ 'ի տեսարանն · մերձ էին և կանայք նշանաւորք և անուանիք և ռամիկք · լցեալ լինէր ասպարէզ թէատրոնին , և զմիմեամբք ելանէին 'ի տեսանել զհանդէսն :

Յայն վայր տեսարանի եկեալ հասանէր երանելին գործիոս աներկիւղ համարձակութբ · և զօրացեալ շնորհօքն քսի՝ մեծաձայն բարբառ արձակէր , * յորոյ 'ի լսողաց կան և ոմանք մինչև ցայժմ ( կենդանիք ) ‖ , ասէ սրբն բարսեղ (3) · և այս էր՝ զոր ասէրն բանիւ եսայեայ · Յայտնի եղէ այնոցիկ՝ որ զինէն ոչ հարցանէին · գտայ այնոցիկ՝ որ զիս ոչ խնդրէին · յայտ արարեալ՝ թէ ոչ 'ի հարկէ եկն 'ի վտանգն , այլ կամաւորութբ եմուտ 'ի հանդէսն :

Նորա այս բարբառ լսելի եղև յանակնկալ պահու , անկաւ ազմուկ 'ի մէջ ամբոխին · և թողեալ զհանդէսն թատերաց՝ 'ի նա հայէին ,

էին , զարմացեալք ընդ համարձակութիւն երա-
նելոյն . մանաւանդ զի տեսանէին զնա իբ-
րև այր մի տառապեալ 'ի ձև միայնակեցի
և վայրագացեալ դիմօք յաղագս լեռնակեաց
բնակութեան . խռովացեալ վարսիւք հերաց
գլխոյն , խորագոյն մօրուօք , և խստացեալ
ամ անդամօք մարմնոյն , ցուպ 'ի ձեռին ու-
նելով , և խարազնազգեաց զգեստուք . մին-
չև հնչել նոր աղաղակի վն նորատեսիլ առն
և նորալուր բանից նր :

Ընդ երև և իշխանն ադրիկողայոս՝ շուրջ պա-
տեալ 'ի զօրականաց . հրաման ետ լռեցու-
ցանել զամբոխն . ետ կոչել զայրն , և հար-
ցանել սկսաւ . ո՞վ ես դու՝ ասէ , և կամ վն
ո՞յր է աղաղակս այս : Պատասխանի ետ ծն
անպէհէր սրտիւ , և ասէ . ծառայ եմ թգրին
քի անմահի՝ արարողին զերկինս և զերկիր ,
և որ 'ի նմ արարածք են՝ երևելիք և աներ-
ևոյթք . և եկի քարոզել զճշմարտութին , և
վկայել վն սուրբ անուանն նր : Յայնժամ
եհարց իշխանն զպատմութի զօրացն վն նր , և
թէ պիտոյեն ինչ զնմանէ : Ասեն ամենք 'ի
գլխաւորացն . յառաջ ժամանակաց ինչ ան-
ցելոց՝ գիտեմք զդա 'ի դասս զինուորաց , և
զհարիւրապետութե պատիւ ընկալեալ 'ի
թգրացն . իսկ թէ զի՞արդ այժմ այսպիսի
կերպարանօք եկեալ՝ զայդ բարբառի , ոչ
գիտեմք : Իշխանն ասէ . ա՛յր դու թէ ար-
դարև այդ այդպէ՞ս իցէ . ('ի զօրականաց և
'ի հարիւրապետաց անտի՞ էիր :) Ասէ զօր-
դիոս . այո՛ այդ այդպէս է . այլ իբրև լուայ

զհրամանն ամպարիշտ Թգրացն՝ որք զհաւա-
տացեալս յուրացութիւն Ճշմարիտ հաւատոյ
հրապուրէին, 'ի բաց կացի 'ի պատուոյ զին-
ուորութենէն . վս զի լաւ է ընդ աղք գնալ 'ի
տանն Այ քան բնակել 'ի յարկս մեղա-
ւորաց . և այնպէս կրօնաւորեալ յանապա-
տի՝ աղաչեցի զԱծ, զի արժանի արասցէ զիս՝
աներկիւղ և առանց զանգիտելոյ առաջի
Թագաւորաց և իշխանաց քարոզել զՔս ա-
նուն նր, և մեռանիլ վս անուան նորա . զի
այնպէս հաղորդեցայց նցն . քանզի և ես
քրիստոնեայ եմ, և ծռյակից նց վկայիցն ։
Պաստաւորն ասէ . և զիա՞րդ ոչ զարհուրիս
'ի տանջանաց ըն հրամանի Թգրաց որ լսես,
և կմ որպէս իշխես զքեզ քրիստոնեայ ան-
ուանել ։ Պորփիւրս ասաց . Տր է իմ օգնա-
կան, և ես ոչ երկեայց, զի՞նչ արասցէ ինձ
մարդ . ես քրիստոնեայ եմ, և եղէց . զի մի՛
հաւասարեցայց պիղծ պաշտամանցդ ձերոց
և անօրէն գործոց, որոց խաւարեալ են միտք
և օտարացեալ են 'ի կենաց անտի Այ՝ վս
ագիտութե սրտից ձերոց, որ ոչ ճանեայք
զարարիչն երկնի և երկրի ։

Յայնժամ իշխանն հրամայեաց կապել զնա,
և տանել 'ի բանտ . զի մի՛ խափանեսցին
խնձոյք Թատերացն և ածոցն ։ Ապա 'ի միւ-
սում աւուրն ըն այգանալ առաւօտուն նստեալ
յատեան՝ հրամայեաց ածել զերանելին զա-
ռաջեաւ, և ասէ . զիա՞րդ իշխեցեր երէկ
մտանել 'ի Թէատրոնն, և խափանել զխաղն,
և արհամարհել զտօնս ածոցն, մանաւանդ

ան-

անուանելով զքեզ քրիստոնեայ աներկիւղ համարձակութ՟ : Ո՛վ երանելին . խնդրեցի յԱ՟յ որ տայ առատապէս ինձ համարձակութ՟ վ՟ն անուան իւրոյ . վ՟ն զի սիրեցի ես զերկնաւոր թագաւորն և զինուորեցայ նմա , և 'ի բաց եղէ յաւժամանակեայ զինուորութենէս , լաւ համարելով զմահ քան զկեանս խղճիւ . խնդրեցի 'ի տ՟նէ իմմէ մի կորուսանել ընդ ամպարիշտս զանձն իմ , և մի ը՟ն արս արիւնահեղս զկեանս իմ առնել . և այնպէս հրաժարեալ յիմմէ կենցաղականացս՝ ետու զիս Ա՟յ , և պատրաստ արարի զանձն իմ մահու՝

վ՟ն ն՟ր անուան իւրոյ :

Ո՛վ իշխանն . 'ի բա՛ց թող զայդպիսի յախուռ և յանդուգն բանդ , և պաշտեա՛ զԱ՟ծն՝ զոր թ՟գրքն պաշտեն . զի թողցին քեզ յանցանքն հայհոյութեդ ը՟դէմ դից և թ՟գրաց՝ զոր համարձակեցար առաջի բազմաց առնել , և զերծցիս 'ի տանջանաց . և զզինուորական պատիւն դի՟ծ առնել ընկալցիս 'ի թ՟գրէն , և մեծասցիս ընդ իշխանս յարքունիսն : Ո՛վ երանելին . ցանկացայ հաճոյ լինել թ՟գրին յաւիտենից , և ը՟ունել զանապական պսակն և զանմահութ՟ կենաց . և դու մի ակնունիր ինձ յայնմ յուսոյ յայս խոնարհիլ յանցաւոր պատիւս , որ այսօր է՝ և վաղիւն կորնչի , պատիւն և որք զպատիւն տան . արդ զոր ինչ առնելոց ես , մի յապաղեր , այլ արա՛ փաղփաղակի . զի զիմ տանջանսն քո՝ զոր ածելոց ես 'ի վ՟յ իմ , արհամարհեմ վ՟ն սիրոյն ք՟ի . զի նա տայ ինձ ույժ

և

և զօրութի, և յամօթ առնէ զայնոսիկ՝ որք
ոչ հաւատան 'ի նա :

Յայնժամ դատաւորն լի եղև ցասմամբ, և հրամայեաց կախել զնա 'ի փայտ քերանաց : Եւ զահձացն շուրջ պատել զնա իբրև զա-րիւնարբու գազանս՝ ձգեցին զնա 'ի փայտ անդր, և դառնադոյն տանջանօք քերեցին զկողս նր : Իսկ սրբն 'ի մէջ անհնարին ցաւոցն համբարձեալ զաչս իւր յերկինս՝ յաղօթս եկաց այսպէս . Տր յս քս՝ որ տմ երևեցեալ և աներևութից ստեղծիչդ ես, որ գերեցեր զմահ և կոխեցեր զդժոխս, որ խայտառակեցեր 'ի խաչին զիշխանութիս և զպետութիս, և նշաւակեցեր զիշխանս չիս . որ սբց քոց առաքելոցն ետուր զօրութի 'ի բարձանց, և առաքելով զնս իբրև զառիւծս 'ի մէջ գայլոց՝ անմիտս պահեցեր 'ի բազմութէ անօրի ապականչացն . որ մատաղոյ մանկանն դաւթի ետուր յաղթութի 'ի վր հսկային գողիադու . որ զբաբելոնին հնոց հրոյն սանձեցեր, և զմարմնովք երից մանկանցն ցօղ սրսկեցեր, զի մի մերձեսցի 'ի նս ամենևին . որ զտկար տունկ մորենւոյն զօրադոյն քան զամենակեր հուրն ցուցեր քոյով զօրութբդ :

Զօրացո և զիս և կարողացո, զի դու տր գիտես զտկարութի մրկան, զի ը զցամաք խոտոյ տկարագոյն է զօրութի մեր, և քան զծաղիկ վայրի սակաւաժամանակեայ է փառք մեր : Տուր փառս անուան քում տր, և լցո զզօրութի յարուցելոցն 'ի վր հօտի քո . զի գիտասցէ տմ երկիր, թէ դու միայն ես բարե-

րար

բար և բարձրեալ՝ որ տես ոյժ և զօրութիւն յուսացելոցս 'ի քեզ ։ Եւ իբրև դադարեաց յաղօթից, թողացուցին և դահիճքն զձեռս իւրեանց. և հրամայեաց բռնաւորն իջուցանել զնա 'ի կախաղանէ անտի, և տանել 'ի բանտ մահապարտաց, սպառնացեալ նմա, զի եթէ ոչ հաւանեսցի, այլովք զգաստասցի կտտանօք ։ 'Ի մէջ առաջնոց տանջանացն ասէ՝ զամենայն մարմինն խարանօք ապականեցից ։ Եւ մինչդեռ տանէին զսուրբն 'ի բանտն, 'ի գնալն ընդ մէջ քաղաքին աղաղակէր և ասէր ։ Որք ընդհատակացն զրկելոց յապարէզս զմերան տեսանէք, զմնաց ածէք և ընդ ցաւոցն զպարգևս ։ զի եթէ թագաւորք զմեռելոց զինուորաց մի իւր զազգայինսն մեծաւ պարգևօք մեծարեն 'ի պատիւ քաջացելոցն, և զրոյք և անդրոյք քարոզեն զնոցա զառաքինի զխիզախանն, և անմոռաց զնոցա զյիշատակն պահեն, և ցուցանեն որոց յետ նոց, որչափ ևս առաւել մարտադիրն մեր Քրիստոս մեծապէս պատկէ զվկայս իւր և յարութեան իւրոյ, և 'ի հանդերձեալ ծին՝ որ գալոցն է՝ հաղորդս առնէ արքայութեան իւրոյ ։ և այսոցիկ վկայեն յառաջապատ նահատակացն ոսկերք, որ պատուականն են քան զամենայն մեծութիւն ։ Այրթայքն և զկնի սոյց վկայքն ամ բազմութիւն կեսարացւոյ քաղաքին, (որոց յայտնեցաւ անձն նորա յապարիշի անդ ։) և 'ի զօրականաց ոչ սակաւք, և յուղարկեցին զնա մինչև 'ի բանտն ։

Յետ հնգետասան աւուրց անցելոց՝ դրծ

անօ

անօրէն իշխանն ագրիկողպոս հրամայեաց ածել զերանելի վկայն քո, և ասէ ցնա . Ես ոչ համարիմ, եթէ խրատու ինչ պիտու-հեան պէտք են բանից առ քեզ . այլ կարծեմ իսկ՝ եթէ ՚ի բանտին անդատին հաւանեալ՝ եկիր բարեպաշտիլ առ ածն . արդ մի յայսմ հետէ առաջին յամառութեդ վարեացիս, զի մի՛ հարկեցուսցես զիս մատչել ՚ի քեզ սաստկագոյնս . այլ հաւանեա՛ց և բաժեա՛ զքեզ յառաջիկայ տանջանացն ։

Պո՛խ ես սուրբն գործիա աներկիւղ, և ասէ . եթէ գիտէիր դու զպարգևսն այ, զի ՚ի ձեռն վայրկենի չարչարանաց ՚ի յաւիտենից տանջանացն փախչիմք, և փոխ հատուցման առնումք զթագաւորութիւն երկնից, աղօթս առնէիր արդեօք դու և որ ընդ քեզ են՝ զի և դուք չարչարէիք մ՛ք քոհ, ո՞չ ըս իս անցուցանէս . այլ մն զի երկրպագեալն ՚ի ձէնջ դևքն կուրացուցին զմիտս ձեր, ոչինչ ունիք յոյս յետ կենացս այսոցիկ, այլ ըղձանայք զաւուրս ձեր զառաջիկայս ըս հաճոյս ունել, և զայս և եթ փոյթ պնդութեան արժանի համարիք ։ Ո՜վ տառապեալ և թշուառական մարդիկ, զի՞ այդչափ մեծարէք զկեանս մարմնոյ, և անփոյթ առնէք զփրկութիւն ոգւոյ . յորժամ ելանիցէք ՚ի կենացս յայսցանէ, տեսանէք զգեհենն՝ որ պատրաստեալ է ձեզ . յայնժամ ապա զղջանայք, թէ մինչ ունէիք ժամանակս վաստակոց՝ զիա՞րդ զանց արարիք զփրկութէ ձերմէ . և յանհրաժեշտ տանջանս արկանէք

զձեզ

զձեզ. զի դուք ձեզէն արարիք. զի ո՞վ է՝ որ պատրաստէ ձեզ զյաւիտենական տեղւոյն զտանջանս, եթէ ոչ դուք։ Եւ արդ զարթերո՛ւք ՚ի մոլորութենէդ՝ յոր ըմբռնեալդ էք. զերծուցէ՛ք զաչս ձեր ՚ի խաւարէն, ընկալարո՛ւք ՚ի միտս ձեր զերկնային լոյսն, և լուսաւորեցէ՛ք զխաւարեալ միտս ձեր. և յայնժամ նկատեսջի՛ք զհամբարեալն ձեզ զպատուհասն։ Որ ըստ պատկերի Այ եղեալ էք, անձամբ զանձինս անբան անասնոց նմանեցուցանէք, և զհաստիչն ձեր ոչ գիտէք. ՚ի խնամսն արարչին ձերոյ վայելէ՛ք զամ օր, և արհամարհէք զնա. երբ զքարինս՝ որ ՚ի նմանէ եղեն պաշտէք։ Եւ զի՞նչ աւելի էք դուք քան զքարինս, յորժամ այդպէս անզգայ էք և ոչ առնուք ՚ի միտ յարարածոց տեսանի զարարիչն ճանաչել. այլ զօրէն խոզի ՚ի տիղմն թաւալիք, և ՚ի ցանկութիւ մարմնականս զանգանիք, և ոչ երբեք զակն ոգւոց ՚ի վեր ամբառնայք, և ոչ մեկուսանալ յերկրաւորացս յօժարիք։

Արդ այսուքիւք բանիւք՝ (որովք գեղեցիկ համարձակախօսէր յառեննի երանելին զորդիոս,) զբարկութի իշխանին՝ իբրև զհուր վառեալ զբովանդակն յարոյց ՚ի վերայ խնքեան զառն զմոլեգնուէ։ Յայնժամ յարուցեալ ՚ի վը բանից երանելւոյն՝ առէ ցդահիճսն. բերցի՛ն վաղվաղակի կապար հալոցովքն, և քուրք արջառաջլացն. և ՚ի վերայ անուոցն պրկեսցի. և ամ տեսակ տանջանաց և ժանիք զազանաց մերձեսցին ՚ի մարմին դորա,

հուր եւ սայրասուր սուսերք, եւ խաչ եւ վէհ․ զի մի՛ լիցի պարծիլ առ քրիստոնեայս՝ որպէս թէ յաղթող եղեւ ՚ի մ՟ր ինքնակալացն, եւ անպատուել զգիսն :

Յայնմ վայրի քաջամարտիկ զինուորն յաւագ մատուցեալ պինդ առնէր զատաւորին, եւ ասէր․ Ո՛վ անխրատ եւ անզգայ իշխան, ես եւ ոչ միանգամ միով մահուամբ ՚ի սանջանս պատրաստ եմ ՚ի մեռանել վ՟ս անմահ թ՟գաւորին իմոյ ք՟սի, այլ՝ բազում անգամ յօժար եմ մեռանելոյ՝ եթէ հնար է․ ուր նա՝ որ տէրն էր եւ արարիչ, վ՟ս մեր եւ վ՟ս մերոյ փրկութեան չարչարեցաւ եւ մեռաւ : Արդ զի՞ հեղգայք դահճ՟քդ բռնաւորիդ, վ՟ս է՞ր դադարէք, զի՞ է զի ոչ կատարէք զկամս հօրն ձերոյ սատանայի, զորոյ զգեցեալ է իշխանդ ձեր զապառազինութի՟ն նր․ զգեցցին մարմինք իմ, խորտակեսցին անդամքս, հրոյ այրեսցին մնացորդք մարմնոյս․ մի՛ յապաղէք զիս յերանելի յուսոյն․ զի փոխ վիրացս՝ զոր կրեմ, լուսեղէն պատմուճան ՚ի յարութե՟ն մեզ ծաղկեսցի, եւ փոխ անպատուութեանս՝ պսակքն բրաբիոնին անթառամք, եւ փոխ խաւարչտին բանտին՝ դրախտին վայելչութիւն, եւ փոխ ՟Է չարագործան դատապարտութե՟ն՝ ՟Է հրեշտակին բնակութի : Սերմանեցէք բազում յիս, զի հնձեցից յոլովագոյն :

Իսկ արբանեակք չարին հանդերձ դատաւորաւն հիացեալ զարմացեալ կային․ եւ իբրեւ զարհուրանօք ըմբռնել զսուրբն ոչ

կարեւին, անդրէն յողոքանս դարձուցանէին զբան սպառնալեացն ։ Յայնժամ դարձեալ դատաւորն՝ հեզ բանիւք խօսէր, եւ պատրանօք խաբէութեան փորձէր զերանելին. պարգեւս եւ պատիւս ՚ի Թագաւորացն խոստանայր բերել նմա, եւ մեծամեծ ճոխ եւ երեւելի լինել ՚ի զինուորական կարգին, եւ դատաւորական իշխանութե՛ ընձեռել նմա ։ Բայց սէրն լցեալ զխոստումն նր՝ ծաղր առնէր զհեթանոսացն անմտութիւնն, եւ ասէր. Ով դատաւոր՝ զի՞նչ կարես տալ ինձ հաւասար երկնից արքայութեանն արժանաւոր, յորմէ մերժել զիս հրապուրես. պարգեւք քո ընդ քեզ լիցի ՚ի կորուստ. զոր առնելոց ես՝ արա վաղվաղակի. քանզի ես դիւաց ոչ զոհեմ, եւ ձեռաց քոց երկիր ոչ պագանեմ, այլ թքալից առնեմ եւ նզովեմ, եւ իբրեւ զաղբ անպիտան համարիմ. վասն զի ձեռք՝ որ զերկինս եւ զերկիր ոչ արարին, կորիցեն ։

Եւ նոյնժամայն բռնաւորն անհամբերելի բարկութ. եւ սրտմտութե՛ լցեալ՝ հրամայէր զինուորացն մերկացուցանել զնա, եւ առ ՚ի մահ տանջել հրապարակաւ յերեւելի տեղւոջ ։ Յայնժամ Թափեցաւ ամ՛ քաղաքն ՚ի վն՛ նր ՚ի տեսարանն՝ մեծամեծք եւ ռամիկք. եւ որք ոչն ժամանեցին միջամուխ լինել ՚ի ժողով անդր, ՚ի վեր ելեալ շուրջանակի զպարսպաւն կային տեսանել զմեծն զայն եւ զզարմանալի նահատակութիւն սբյ վկային քի ։ Ընդ զիմէին մատաղոյն՝ ծանօթք եւ սիրելիք (՚ի հեթանոսաց), եւ փարելով մաղ-

Թէին՝

Թէին՝ և ջերմ արտասուս հեղլով աղաչէին զերանելին՝ ՚ի բաց ձողոպրել զանձն ՚ի տանջանաց, և ոչ մատնել ՚ի տապ հրոյ, և ծախել տարաժամ զվայելուչ հասակ գեղոյն, և լքանել զքաղցր լոյս արեգականս : Իսկ այլք ոմանք (՚ի մերձաւորաց՝ ՚ի հաւատացելոց սակի) խորհրդակից լինէին և ասէին. բանիւ՛ միայն առ զուրացուն, և խորհրդովք և մտօք կալ զհաւատդ՝ ոպ̃ և կամիս. զի ոչ ՚ի լեզու հայի ասէն ա̃ծ, այլ՝ ՚ի սիրտ և ՚ի խորհուրդ. Եւ այսու օրինակաւ զզատաւորդ կարես հաճել, և զա̃ծ հաշտեցուցանել :

Իսկ երանելին և ամենագովն նահատակն անխոնարհելի և հաստատուն մտօք կայր ՚ի համբերական ժուժկալուն, և ոչինչ փոյթ առնէր զտանջանացն՝ զոր ածէին ՚ի վ̃ր նր̃ դահճքն : Իբրև տեսանէին բազմութին ըզմարմին նր̃ գզեալ ՚ի տանջանացն, և քանցեալ ՚ի քերանացն, և ՚ի ջալոտիցն հարուածոց, վշտակից լինելով նմ̃՝ կական բարձեալ լային զառնապէս աղխողորմ արտասուօք : Եւ նա ասէ ցն̃ս. մի լայք ՚ի վ̃ր իմ, այլ հրճուելով ընդ ուրախութե̃ աղարէք ՚ի վ̃ր վկայութե̃ իմոյ. և լացէք զա̃ծամարտդ զայդոսիկ՝ որ ը̃դէմ բարեպաշտացն զայդ առնեն. զի թողուլ այսուիկ՝ որով զմեզ այրեն, լինքեանց զհուր գեհենին գանձեն : Դադարեցէք ՚ի լալոյդ, և մի խոստակեալ ձմլէք զսիրտ իմ. զի ես ուրախ եմ ՚ի վերայ տանջանացս :

Պարծել ասէ և ցայնոսիկ՝ որ զխրատն տայ-
յին ուրացութե, բան բերանով ասել և ձա-
ղակրիլ 'ի տանջանաց. Ո՞վ դուք՝ որ զայդա-
սիկ իշխէք ասել, և ջանայք իբրև զանխ-
մատ պատրել և 'ի կորուստ մատնել զանձն
իմ. զիա՞րդ ուրացայց զՏն իմ և զՏր; որ 'ի
մայրենի խանձարրոց ընծայեցայ նմա. ա-
րում երկիրպագանեմ և փառաւորեմ և
պաշտեմ: Ո՞չ սարսափիցէ երկինք 'ի վերուստ
և ո՞չ խաւարեսցին լուսաւորք 'ի վր իմ համա-
դերձ աստեղօք. երկիր իսկ համբերիցէ՞ բա-
լորովին: Ո՛ի մոլորիք, Տծ ոչ արհամարհի.
'ի բերանոյ մերոյ դատի զմեզ, և 'ի բանից
պարտաւորէ. ո՞չ ընթերցայք զահաւոր սպառ-
նալիսն Տն, թէ որ ուրասցի զիս առաջի մար-
կան, ուրացայց և ես զնա առաջի Հօրն ի-
մոյ՝ որ յերկինս է: Ո՞ր աղագաւ ինձ կորս-
տեան խորհրդակից լինիք խաբելով այդպի-
սի դառն խրատուք. ընդէ՞ր է ինձ՝ զի զսա-
կաւ աւուրքս շահեցայց, և զյաւիտենականն
բովանդակ տուժեցայց. և զի փախեայց 'ի
վշտաց մարմնոյ, և ոչ տեսից զբարութի ար-
դարոցն. արդ զի պարտ է ամենեքին մե-
ռանիլ ամ ումեք, հա՛պա զկեանս մեր 'ի
ձեռն մահու շահեսցուք:

Օ այսոսիկ ասացեալ նր, և յինքն զօրինակ
խաչին տպաւորեալ՝ մերձ եղև յանիւն տան-
ջանաց՝ որ կազմեալ կայր նմա, ոչինչ փո-
խելով զգոյնն, և ոչ այլայլէր զզուարթու-
թին, այլ իբրև ծարաւի դիմելով 'ի համ-
դէս նահատակութե: Եւ տեսեալ զդանդա-

ղու-

զուժ դաշնակաց՝ որք միայն ակնարկութե դա-
տաւորին, ասէ, երանելին ցիշխանն. Արդ
ընդէ՞ր ոչ փութաս զկարօտութիս իմ լնուլ, և
զկամս հօրն քո սատանայի կատարել. զի
ինձ կեանք քո է, և փախձանել 'ի խոստո-
վանութիս յայս՝ անմահութե պարգևք ։
Յայնժամ բարկացեալ դատաւորն՝ հրամայ-
եաց մերկացուցանել և հեղուսիւք կապել
զսբն 'ի վր անոճոյն, և տանել 'ի բարձրա-
ւանդակ տեղիս և հոլովել զաւ 'ի վայր լե-
րինն ։ Արդ 'ի հոլովել անոճոյն՝ ջաղխեալ
ջարդէին ամ անդամք սբ վկային. բայց սա-
կայն ոչ տխրէին նմա տանջանքն. ուր առուք
արեան մարմնոյն խորտակելոյ 'ի վր սեռիցն
ցայտէին, և Դ անիւն 'ի բաց հոսէին ։ Իսկ
մեծիմաստին գործիոսի բացեալ զբերան իւր՝
ասէր. գոհանամ զքէն տէ՛ր բարութեց՝
օգնական իմ և ապաւէն իմ և փրկիչ իմ. զի
զիս զանարժանս արժանի արարեր ընդունե-
լոյ հանդէս ընդդէմ բանսարկուին. զի դու
ես ած՝ որ քակտես զիմաստութի նր. մի տե-
րեսցեն ինձ խորհուրդք ամպարշտութե՝ որ 'ի
քէն ոչ սիրեցան. վս զի մեծ է անուն քո 'ի
վր երկիւղածաց քոց ։
Իսկ անդէն վաղվաղակի քակտեալ անիւն՝ 'ի
բաց ելանէր. և տեսին ամք զմարմինն ե-
րանելոյն թաւալեալ՝ յարենէն կարմրացեալ.
իսկ զոգին՝ վս որոյ ցաւագնէին, ողջ պա-
հէր անեղնակալ. մինչև զարմանալ ամենե-
ցուն ընդ հրաշալի վկայութ արդարոյն ։ Յայն-
ժամ ասէ ցնա դատաւորն. ափշեցուցեր և

յիմարեցուցեր և հիացուցեր զանձն քոյով կախարդութեամբ․ բայց ես յայսմհետէ ոչ ներեցից քեզ։ Սէն ասէ․ զդիւթութիւն և զմոգութիւն ես ոչ գիտեմ, և ոչ երբէք կալայ յանձին, և մի այլ լիցի ունել․ ես քրիստոնեայ էի և եմ և եղէց․ և իբրև զքրիստոնեայ ջանացայց մեռանել։ Իշխանն ասէ․ վաղվաղակի շնորհեցից զոր խնդրես․ բայց թէ լսես ինձ բարեկամի քում յայսմհետէ, և զոհեսցես աստուծոյն, ձողոպրեսցիս յաւաջիկայ տանջանացն հրոյ, և բարեկամ մեր լիցիս, և պատուաւորական աթոռն ընծեռեսցես 'ի թագաւորացն, և բարեպաշտ օրինացն աստուծոց հպատակ լիցիս՝ ընդ և մեք։ Սէն ասէ․ զօրէնս անօրէնս ես ոչ գիտեմ, և ըզթագաւորս նոքօք վարեցեալս ես ոչ ճանաչեմ․ և աստուածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն։

Յայնժամ տեսեալ ագրիկողայոսի զանշարժ հաստատութիւն հաւատոց երանելւոյն յետ այսչափ հարց և փորձ բանից՝ փութացաւ վճիռ առնել, գրեալ վճռին նամակ այսպիսի օրինակաւ․ Զգորդիոս զօրական թագաւորին զպատուհեալն հարիւրապետական իշխանութեամբ, որ ինքնակամ յօժարութեամբ անարգեաց զպատիւն և զգինուորութիւն, և հայհոյեաց զաստուածն մեր և զթագաւորն՝ այնպիսեօք, զոր և գրել չէ պարտ կամ լսել, և հաւանեալ աղանդոյն գալիլեացւոցն՝ տակաւին ևս 'ի նոյն մոլորութիւն յամառեալ կայ, զսա կենդանւոյն այրել հանձոյ թուեցաւ․

իմա–

իմացարուք ամ̅ բազմութիւնդ :

Եւ իբրեւ ընթերցեալ եղեւ 'ի նամակէ աս-
տի դատակնիք մահուան յամենեցուն լսելիս,
անդէն փաղփաղակի սպասաւորք առեալ
զգործսն եւս քան զեւս արագ ջանային կա-
տարել, լուցեալ զհն յն արտաքոյ քաղաքին
մերձ 'ի պարիսպն : Յայնժամ անօրէն իշ-
խանն հրամայեաց նախ 'ի վր̅ փայտի պըր-
կել, ոչ̅ թէ առ արկանելով նմա անձնաշնոր-
բելի լինել 'ի հնոցէն : Եւ դահիճքն կամէին
'ի նմանէ մերկացուցանել զայծեայսն՝ զոր
զգեցեալն էր 'ի ներքոյ, եւ լուծանել զգօ-
տին . զայս առնելով տակաւին փորձէին
զնա . իսկ երանելին փութայր ինքնին մուտ
առնել 'ի հուրն՝ 'ի բաց եղեալ իւրովի ըզ-
հանդերձսն, եւ լուծեալ զգօտին : Կամէին
եւ զօդ ոտիցն հանել . եւ տեսին՝ զի նր̅ յա-
ռաջագոյն զայս արարեալ էր : Ընդ ընթա-
նային իւրաքանչիւր ոք 'ի հաւատացելոցն՝
փութով մերձենալոյ 'ի քրտունս նր̅ : (յորոց
մի է եւ պատմօղ բանիցս :)

Իսկ դահիճքն իբրեւ պատրաստեալ կազմե-
ցին զգործարանսն, կապեցին զնա, եւ կա-
մէին հեղուսել զնա ընդ փայտ մի եւ ընկե-
նուլ 'ի հուրն : Եւ սա էր երանելին ցնոսա .
Թո՛յլ տուք ինձ, զի որ ետն ինձ զհամբե-
րութի՛, նոյն ինքն կարող է եւ առանց աշ-
խատութ̅ պահել զիս 'ի հուրն : Յայնժամ
ոչ բեւեռեցին 'ի փայտն, այլ առեալ կապա-
նօք միայն՝ դային ածէին զնա իբրեւ զգառն
պատարագ եւ իբրեւ զխոյ յողջակէզս . եւ հուր

հնոցին բորբոքէր յոյժ յոյժ, և բարձրանայր բոցն 'ի բարձունս ։

Իսկ երանելին մտադրեաց զինքն 'ի հոգին սր՟, և համբարձ զաչս իւր յերկինս, և աղօթեաց այսպէս ասելով. Տէր ա՟ծ ամենակալ՝ որ սիրելւոյն քո և օրհնելոյն յս՟ի ք՟սի հայրդ ես, որով զքո գիտութիւն ընկալաք. որ կաչեցեր զիս զօրութ՟ քո 'ի կոչումն վկայութե՟. ա՟ծ զօրութեց՝ և ստեղծիչ ա՟մ արարածոց և ա՟մ կենդանեաց որ կան առաջի քո, օրհնեմ զքեզ՝ որ արժանի արարեր զիս այսօր խառնիլ 'ի գունդս վկայից քոց. և լինել կցորդ բաժակի ա՟ն մերոյ յ՟սի ք՟սի, 'ի հաւատալ յարութե՟ և 'ի կեանսդ յաւիտենից շնչով և մարմնով՝ հանդերձ անապականութ՟ հոգւոյն 'ի հաղորդութ՟ սր՟ հոգւոյդ ։ Եւ արդ եկի իբրև զոչխար 'ի սպանդ, և արդ ընկալեալ եղէց այսօր առաջի քո սր՟ պատարագ և ընդունելի, ո՟պ պատրաստեցեր յառաջագոյն՝ և կատարեցեր անսուտ ճշմարիտդ ա՟ծ. վ՟նկ օրհնեցից զքեզ, և փառաւորեցից զանուն քո յաւիտեան 'ի ձեռն քահանայապետիդ մերոյ յ՟սի ք՟սի սիրելւոյ որդւոյ քո ։ Տուր ինձ զօրութիւն կատարել զընթացս իմ քրիստոնէութ՟, և առնուլ զնշան յաղթութե՟ քո. զի յաղթեցից հակառակամարտին, և առից 'ի քէն զանթառամ պսակն ։

Եւ կատարեալ զաղօթսն՝ կնքեաց զինքն նշանաւ սբ՟յ խաչին (ո՟պ և զիարդ մարթ էր ձեռօքն կապելովք), և եմուտ 'ի հուրն զըւարթամիտ խնդութ՟ իբրև 'ի դրախտ փափկու-

կութՃ : Եւ էր տեսանել զարմանս մեծամեծս . զի հուրն կամարաձև եղև իբրև ընդ խորան, և եկաց 'ի վ̃ր ս̃բյն . և իբրև զառագաստ նաւի հողմունոյց գոգացեալ՝ շուրջպատեաց զմարմինն նորա . և կայր 'ի մէջ հրոյն՝ ոչ ո̃ք զմարմինն մարդոյ այրեցեալ, այլ իբրև զվարդ և իբրև զնարդոս անուշահոտ . օրհնէր և փառաւորէր զա̃ծ 'ի մէջ հնոցին, և ասէր . Փա՛ռք քեզ հա՛յր, փա՛ռք քեզ որդի՛ միածին, փա՛ռք քեզ հոգի՛դ ճշմարիտ, երրորդութեանդ ս̃բյ և միոյ ա̃ծութեանդ՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից : Եւ ասացեալ զամէնն՝ զօրէն փչման արձակեաց զոգին : * Եւ տեսաք զհոգին նր̃, ( ասէ ակնատես վկայաբանն, ) զի իբրև զփայլակն

վերացաւ յերկինս || : (4)

Եւ եղև յետ կատարման ս̃բյն՝ իբրև ցրուեցաւ ամբոխն 'ի բաց, բարեպաշտ արք յազնուականաց քաղաքին տուեալ ինչս զինուորացն՝ որք հրամանաւ դատաւորին պահէին զմարմինն ս̃բյ վկային, և առեալ 'ի գիշերի թաղեցին 'ի թաքստեան տեղւոջ . և եկաց անդ մինչև 'ի դադարել հալածանացն : Եւ 'ի ժամանակս բարեպաշտին Թէոդոսի մեծի՝ երանելին հայրապետն բարսեղ, որ էր եպս̃ քաղաքին կեսարացւոց, շինեաց վայելուչ վկայարան, և անդ փոխեաց զնշխարս ս̃բյն գորդիոսի . և ներբողական ճառիւք պատուեաց, յամսեանն յունվարի 'ի յերրորդում աւուրն՝ պատուէր տուեալ ամ յամէ տօնել զօր յիշատակի նորա :

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Առանձին պարգև ինչ համարիմք մեզ բարեխօսութե նորին իսկ սրբոյն գործիոյ, զի իբրև պատուական մասն նշխարաց նորա պահեցաւ առ մեզ բուն վկայաբանութի նր՝ աւանդեալն 'ի Ճառընտ. Ա. յորմէ զուրկ գոլով բոլլանդեայ, ոչ և սուրիոսի և հաւուինարտայ, ոչինչ այլ առնեն՝ բայց միայն յիշել բերել զներբողեանն սրբոյն բարսղի՝ որ 'ի մեր վկայն, և զայն բաղդատել ընդ զանազան լատին թարգմանութեամբ և ընդ յոյն բնագրի, առանց բերելոյ այլուստ վկայաբանութի ինչ ըստ սովորական ընթացից իւրեանց: Եւ գուցէ շատացեալ իսկ իցեն ձառից բարսղի. բայց թէ ունէին զՃառընտիր մեր 'ի ձեռին, յայնժամ ցյագուրդ վայելէին 'ի մեծահաց սեղանոյն, և զբարսղին իսկ բանից զճաշակս լաւ ևս առնուին: Այլ որ զարմանալին է, նաև բասիլեան յայսմաւուրքունաց՝ ոչ և ժամագիրք նոցա՝ 'ի բարսղի եւթ հայիլ բանս բաւականացեալք, ուր համառօտ է պատմութի, և ընդարձակ գովասանութի, այնպիսի քաղուած առնեն պատմական՝ որ եղեալ է իբրև ծառ տերևաթափ. զորոց զհամառօտութի պահելով և յայսմաւուրաց հայոց և այլոց ազգաց՝ նոյն օրինակ անշուք գըտանին յայսմ մասին. ոչ յայտ է որոց բաղդատենն, և յայտնագոյն ևս ցուցցի 'ի կարգին:

Միայն ցաւիմք. զի որպէս 'ի Ճառընտիրն մեր Ա. առ հնութե պակասի թուղթ մի յառաջաբանական ( թէպէտև առանց [illegible] վկայաբանութե ), նոյնպէս և առ սրբոյն բարսղի կամ պակասեալ է վերջին մասն պատմական յաղագս եղանակի կատարման սրբոյն հրով, և կամ առ կարի համառօտութե անյայտ իմն մնացեալ. մինչ զի առանց օգնականութե լիակատար վկայաբանութեն՝ հոմաձայն լինի իմանալ զբանս սրբոյն բարսղի. ոչ թէ սըրով փախճանեալ իցէ. ոչ և յիրաւի այնպէս իմացան յայսմաւուրք առ հասարակ. որ է սխալ:

Այս է մեզ մեծապէս սատար, զի որպէս վկայաբանն մեր իբրև ականատես գրեաց, նոյնպէս և սբն բարսեղ իբրև ականջալուր 'ի տեսողաց ներբողեաց. որով և բազում համաձայնութի է ընդ մէջ երկոցուն, ուրեք ուրեք և ձայնակցութի ըստ բառիցն. մինչ զի հարկ է խոստո-

վա

վանել՝ թէ ինքն իսկ բարբառդ հայրապետ տանել իցէ ոչ սակաւ հատուածս բանի 'ի սոյն 'ի վկայաբանէս , և շարժակեալ ճառօրէն . զորոյ զհակառակն ոչ ունիմք առել , թէ վկայաբանն 'ի բարբառէ իցէ առեալ ինչ ինչ . զի ականատեսն յառաջագոյն է քան զականջալուրն յականատեսից . և որչափ յարգի է սբ. հայրապետն 'ի վայելուչ ճառախօսութն , նոյնչափ և անկեղծ վկայաբանս յիւրում պատմագրութեն :

Ունիմք հայերէն հին թարգմանութ. և զայդ ճառ. բարբառի՝ առանց նախերգակ ներբողի՝ թբ. պատմական մասին եւեթ հաւատարիմ յեղեալ 'ի մեր բարբառ . որ է տեսանել 'ի ճառընտ . Բ . թող զխալանս գրչին , որ փոխ անուանս գործեաց՝ դնէ դէորգէոս . որ և փոխ գրելը կապարք՝ գրէ կապանք . ևն :

(2) Սբն բարսեղ թբ. օրինի ներբողաբանից՝ առանց սալոյ զանուն թագաւորին , որ զհալածանսն յուզէր , սակայն բանաւոր առէ . յորոյ վբ. այսպէս գրէ Գառնիեր ծանօթարարն . և լա . տպագրութ . * Քաջայայտ է ,
,, թէ այս բանաւոր կամ դիոկղետիանոս էր , և կամ լիկիա-
,, նոս . այլ թէ որն իցէ՝ իրաւամբք մարթ է երկբայել || :
Եւ թէպէտ պակասի 'ի ճառընտրիս մերում թուղթն առաջին՝ յորում ունէր լինել որոշումն անուանց . բայց յընթացից պատմութեն աներկբայ քաղի՝ թէ գորդիոս ետես նախ զհալածանս դիոկղետիանոսի , ուստի չոքաւ յանապատ . և ապա առ լիկիանոսիւ էջ յանապատէ . և վկայեաց առաջի ագրիկողայոսի դքսի . զորոյ զանունն ևեթ նշանակէ ճառընտիրն մեր . թող անծանօթ լիցին այլք : Յայս միտ խմա և զատելն Հ . վն սբյն գորդիոսի . * Էր յամս լիկիանոսի կուսակալ արքային || . որ և բոլլանդ համաձայն Յ . դնէ զնահատակութին առ լիկիանոսիւ , նոյնպէս և եւսեբիոս ասսեմանի 'ի մասն . Բ . երես . 218 . և այլք :

Վսյ զարմանալ արժան է Ը բարոնիոս , որ յամի 304 . համար . կա . 'ի մէջ բերեալ զբանս բարսղի՝ համարի , թէ սբ հայրապետն խօսիցի զբանաւորէն գաղերիոսէ մաքսիմիանոսէ առ դիոկղետիանոսիւ , և թէ առ տրուէթբ մաքսիմիանոսի և դիոկղետիանոսի լեալ իցէ կատարումն գորդիոսի : Եւ առաւել զարմանալի՝ ձայնակցութն հըռուինարտայ , որ գրէ յէջ 449 . այսպէս . * Յայսմա-
,, ւուրքյունաց զգորդիոս առ լիկիանոսիւ չարչարեալ
,, առեն , առ որով փայլէր պատուով կոմսութ . այլ լաւ
,, ևս վերածի մարտիրոսութն նր 'ի հալածանս դիոկղե-
,, տիա-

րիչն երկնի և երկրի. և յերկրորդումն զաւդ-
ղութիւն ճանապարհին՝ որ տանի զմեզ առ
ած մինչև 'ի վերնաքաղաքն երկնից. արդ ե-
կայք խառնեսցուք 'ի դասս փառաբանչաց
տռն , և երթիցուք զկնի նց՝ մինչև ցոր վայր
հասանեն ոտք նց: Եւ իբրև մատեան յամ-
բոխն. և հարցին՝ թէ ո՞ է ծերունին այն, որ
գնայ յաւանակաւ 'ի մէջ բազմութե , պատ-
մեցաւ նց , թէ նա ինքն է հեղինոս եպսն՝
այր սբ և նշանագործ. որ և 'ի հուր մտեալ
և ելեալ է անփորձ՝ պայքարելով ընդ կա-
խարդի ումեմն (7): Ուրախ եղեն յոյժ ընդ այս՝
եւգինէ և ներքինիքն որ ընդ նմ. զի զոր խնդ-
րէինն փութով յաջողեաց նց տր՝ տեսանել
զայրն այ :

Գնացին զհետ նորա մինչև 'ի վանս. և յետ
հանդարտելոյ եպսին՝ մատեան առ նա ա-
ւանձինն , և անկեալ առ ոտս նր՝ աղաչէին
ուսուցանել նց զհաւատս փրկութե. քանզի
ասեն՝ 'ի հեթանոսաց անտի եմք, և եկաք 'ի
ճշմարիտ կրօնս ածգիտութե :

Իսկ նա եպսն կանխագոյն տեղեկացեալ
յածայլին յայտնութե վն գալստեան նց ,
ընկալաւ զնս բազում մարդասիրութբ. և
իբրև յանգէտս հարցանէր , ուստի՞ էք և
յորմէ՞ ազգէ. և զի՞նչ անուանք են ձեր:
Պատասխանի ետ եւգինէ , և ասէ. քաղա-
քաւ և ազգաւ հռովմայեցի եմք. և մին յեղ-
բարց աստի պռոտոս անուանի. և երկրորդն
յակինթոս. իսկ ծառայ քո եւգինէոս կո-
չիմ: Յայնժամ ասէ եպիսկոպոսն. բարիոք

կո-

կոչեցար պատուական անուամբ Եւգինէոս . զի քաջապէս գործեցեր ո̅ճ քաջատոհմիկ՝ Թողուլ զկուսան , և գալ զհետ քո՛ ծառայել նմա : Նա արդ ասեմ քեզ , զի եցոյց ինձ տր՛ թէ բազում անցք անցանելոց են ը̅ քեզ 'ի փառս անուան նր̅ . և արդ զօրացիր , զի տր ընդ քեզ է , և ոչ Թողցէ զքեզ 'ի ձեռանէ . և երկոքին ընկերք քո ընդ քեզ՝ որք ցայժմ զանուն ծառայութե̅ կրէին , արդ 'ի բարեկամութի̅ քո̅ 'ի վեր ելին . զի ինքն տր̅ն ասէ ցծառայս իւր հաւատարիմս . ոչ ևս կոչեցից զձեզ ծառայս , այլ՝ բարեկամս : Բազում և այլ ինչ խօսեցաւ ը̅ նո̅ այրն ա̅յ . և յաւուրսն յայնոսիկ մկրտեալ զնո̅ յանուն տն̅՝ ասէ . եղիցի ձեզ տեղի բնակութե̅ առանձնութե̅ աղքատին վանացս ը̅ այլ եղբարս . զի ես յայցելութե̅ եկի այսր , և ոչ մնամ աստ . և յանձն արարեալ զնոսա հօր վանացն՝ գնաց անտի . և նք̅ ուրախութբ̅ մեծաւ գոհացան զա̅յ և զեպսկ̅ն . և դադարեցին անդ 'ի վանս՝ իբրև 'ի բնակարան արքունի պարգևեալ նց̅ 'ի տն̅է :

Իսկ ծնողքն իբրև տեսին՝ թէ ոչ դարձաւ Եւգինէ 'ի կարծեալ ժամու և յաւուր , առաքեցին զկնի նր̅՝ տեսանել թէ ո՞ւր իցէ , և զի՞ յամեաց . և դարձան խնդրակքն ունայն . զի ո՛չ ուրեք՝ ուր գուշակէին , մարթացան գտանել : Յաւելին որոնել ա̅մ փութով և յայլ բազում տեղիս , և ոչ գտանէին . վ̅յ բազում տրտմութե̅ 'ի վր̅ հասաներ նց̅ և սուգ անհնարին՝ վարանական մտօք :

Սկսան այնուհետև լալ ծնողքն զզուարթն անմեղան, եղբարքն զքորն, և ծառայքն զտի-կինն՝ զառն ողբովք: Յայնժամ 'ի հրապարակս ատութե̃ անկեալ ոմանց 'ի քրմաց՝ հաւանե-ցուցին 'ի վերին երեսս զծնօղս նր՝ կարծել, եթէ դիքն յափշտակեցին զնա կենդանւոյն վն գեղեցկութե̃ն և իմաստութե̃ն. մինչև 'ի նոյն խորհուրդ ընկղմեալ և հօրն նր փիլիսո-փոսի՝ 'ի սուտ սփոփումն սրտի իւրոյ շինեաց տաճար արձան յանուն եւգինեայ, և համարե-ցաւ զնա իբրև զմի 'ի չա̃ծուհեաց:

Իսկ նա կոյսն եւգինէ՝ որ և եւգինէոս, առ-նացի ձևով կրօնաւորեալ 'ի նախատացեալ վանս միաբանակեցաց՝ եւ քան զեւ յառա-ջադէմ լինէր արիական ոգւով 'ի հանդէս առաքինուե̃ց և ճգնողական վարուց, հան-դերձ գործակցօքն պրոտոսիւ և յակինթո-սիւ, լեալ օրինակ բարի ամ̃ցն՝ յաղօթակա-ցուե̃ և 'ի պահեցողուե̃ և յայլ ճգնութիւ և 'ի գործս բարեպաշտուե̃, հոգւով եռա-ցեալ՝ միանգամայն և խոնարհ և հեզ յոյժ, և կատարեալ համբերող. մինչև իբրև հրեշ-տակ ա̃յ համարեալ էր յաչս մեծի և փոքու անապրատ քաղաքավարութե̃:

Նւ եղև յետ երից ամաց՝ վախճանեցաւ հայր վանացն. և խորհեցան եղբարքն կացուցա-նել փոխանակ նր զեւգինէ. զի թէպէտև մատաղատունկ տեսանէին և սակաւամեայ տիօք, այլ ճանաչէին զնա գերապանցեալ քան զոր 'ի ծնէ հաւատացեալ եղբարքս, և առաքինուե̃ մասամբք յաղթող բազմամեայ

հա-

հաստակաց․ վ՟յ և աչք տ՟մ՚ն 'ի նա հայէին, զի նա լիցի առաջնորդ եղբայրութե՟ն ։ Եւ իբրև 'ի վեր հանին նմա զբանն , բազմօք զդէմ կալեալ երանելին՝ պատճառելով բանս պէսպէս․ և որչափ նա զանձն հրաժարեցուցանէր , նոքա առաւել ևս հաստատէին 'ի խնդրս իւրեանց․ մինչև բռնադատեցին զնա 'ի հաւանութի՟ հնազանդութե՟ ։

Յայնժամ ետ բերել Եւգինէ զաւետարանն տ՟ռ , և ասէ ցեղբարսն․ արժան է ծառայիցն ա՟յ յա՟մ գործս առաջնորդ ունել զտ՟րն և զփրկիչն մեր ք՟ս․ և արդ տեսցուք՝ եթէ զի՞նչ կամք իցեն նր՟ յընտրութեան ձերում յայդմիկ, և նորին հրամանաց հպատակ կացցուք ։ Եւ իբրև եբաց , հանդիպեցաւ տ՟ն բանին՝ որ ասէ․ Որ կամիցի 'ի ձէնջ մեծ լինել , եղիցի ձեր պաշտօնեայ․ և որ կամիցի 'ի ձէնջ առաջին լինել , եղիցի ձեր ծառայ ։ Եւ այս 'ի վ՟ր ածեալ Եւգինեայ՝ ասէ․ և արդ քանզի ըստ տ՟ն բանի՝ 'ի պաշտօնէութի՟ և 'ի ծառայութի՟ կարգէ՛ գործդ՝ յոր զիս առիպէք , ոչինչ հրաժարեմ հնազանդ լինել ձեզ ա՟յ տէրական հրամանին , և ամենեցուն յետնորդ զանձն իմ կացուցանել ։

Եւ ա՟յ ասացն՝ նոյնպէս և գործով կատարեաց երանելին․ զի թէպէտև վանաց հայր անուանեցաւ, այլ ք՟ զա՟մ եղբարս 'ի նուաստութե՟ ունէր զանձն․ նախ ինքն էր՝ որ կանխէր յա՟մ գործս ուխտին , և այնու զայլսն յորդորամիտ գործէր և չէր ինչ պաշտօն ցածուն՝ զոր չառնէր անձամբ․ մինչև ջուր ան-

գամ

զամ բերել , և փայտ հաստանել ։ Նաև ընա-
կարան անձին սահմանէր 'ի տեղւոջ անդ՝
ուր դռնապանն նստէր , զի և ոչ ք՟ զնա 'ի
վեր դնել զանձն կամեցաւ ։ Այլ 'ի մ՟ւ այսր
ա՟մի՝ զա՟մ հոգ եղբարց ը՟ հոգւոյ և ը՟ մարմ-
նոյ մեծաւ խնամով անթերի 'ի գլուխ տա-
նէր . և զկարգ աղօթից ոչ երբէք խախտէր
'ի գիշերի և 'ի տուընջեան ։ Այլ իբրև այսու
օրինակաւ սքանչելի լինէր յա՟մ կարգս ա-
ռաքինութե՟ց՝ առաւել 'ի խոնարհութե՟ , տուեան
նմա յա՟յ շնորհք բժշկութե՟ց . մինչև հանել
զդևս 'ի մ՟դկանէ , և բանալ զաչս կուրաց ։
Այլ եւ համբաւ նո՟ յոյժ . գային առ նա բա-
զումք , և ողջանային 'ի զանազան ախտից .
և պատմէին յա՟մ եգիպտոս , թէ այսչափ
մեծամեծս առնէ ա՟ծ 'ի ձեռն աբբայ Եւգի-
նէոսի ։

Այլ էր կին մի հեթանոս յաղեքսանդրիա , մե-
ղանա կի՟ մելանթիա անուն նո՟ , (8) մեծատուն
յոյժ , դուստր ուրումն 'ի սինկղիտոսացն . սա
չորեքօրեայ ջերմամբ ախտացեալ՝ տագնա-
պէր ը՟ բազում ժամանակս , և ոչ գտանէր
ուստեք դարման բժշկութե՟ . արդ իբրև լուաւ
'ի բազմաց՝ որչափ ինչ առնէր հայրն Եւգի-
նէոս , եւ տեսանել զինքն յոտս նո՟ . և եկեալ
'ի դուրս վանաց՝ աղաչէր զս՟ն՝ խնդրել վ՟ն
նո՟ բժշկութի՟ յա՟յն իւրմէ . և նա նշանաւ
ս՟բ խաչին և անուամբն ք՟ի արար աղօթս 'ի
վ՟ն նորա . և յաւել եւս օծանել իւղով ։ Այլ
նոյնժամայն զօրացաւ մելանա , և ստացաւ
կատարեալ առողջութե՟ մարմնոյ . և բազում

գո-

գոհութեամբ ողջունեալ զնա՝ մեկնեցաւ անտի · եւ գնացեալ 'ի կայուածս իւր՝ որ ոչ ինչ հեռի էր 'ի վանացն Եւգինեայ արտաքոյ աղեքսանդրիոյ, ելից երիս արծաթի անօթս դրամովք [9], եւ յղեաց Եւգինեայ 'ի պարգեւս ։ Իսկ նա յետս դարձոյց զընծայաբերսն՝ ասելով · ասասջի՛ք տիկնոջ ձերում, թէ ընչից ինչ չունին պէտս սակաւապէտ ծառայքս Աստուծոյ · քանզի լի՛ եմք եւ առաւելեալ ամենայն բարութեամբ՝ զոր վայելեմք 'ի ձեռաց Տեառն · եւ թէ 'ի բարւոյ մասին կամիցի ծախել, բաշխեսցէ՛ զայդ կարօտելոց ։

Իբրեւ լուաւ Մելանիա, տրտմեցաւ՝ զի չեղեն ընդունելի ընծայքն · եւ եկեալ անձամբ առ երանելին՝ աղաչէր մի՛ արհամարհել զտուրս իւր · եւ խոստանայր այլ եւս բազում տալ ։ Բայց նա ոչ ինչ էառ յանձն, եւ խօսեցեալ ընդ նմա շահս հոգւոյ՝ արձակեաց զնա ։ Իսկ կինն չար փոխ օգտելոյ 'ի հոգեւորց բանից երանելւոյն՝ յայլ խորհուրդս անարժանութեան անկղխտանայր · քանզի կարծեցեալ զԵւգինեայ՝ թէ այր իցէ, եւ տեսեալ զկայտառ դէմս առոյգ հասակի նորա՝ ցանկացաւ նմա · եւ ոչ կարացեալ ժուժել տռփանացն՝ հնարս խորհէր անմտութեամբ առ որսալ զնա 'ի կամս իւր ։ Ապա դադարեալ աւուրս ինչ 'ի տուն կալուածոց իւրոց՝ ձեւացեալ լինէր որպէս խօթանկեալ 'ի մահիճս · վասն եւ յղէր առ Եւգինէ՝ աղաչելով զնա աշխատ լինել եւ գալ 'ի տես հիւանդութեան իւրոյ · եւ սուրբն յարուցեալ գնաց առ նա միամտութեամբ սրտին ։ Յայնժամ

եբաց

եբաց նմա մելանեա զմԹերեալ մաղձ չարախ-
տամատ ցանկութէ իւրոյ, և սկսաւ հրապու-
րել լինել ը նմ, և կմ իբրև օրինօք ամուսին
նր լինել. զի չիք իմ ասէ այր, (որ վաղաւ-
րիկ եղև,) և ոչ այլ ոք՝ որ ժառանգէ զբազ-
մութի ստացուածոց իմոց :

Իսկ երանելին զայրացեալ 'ի հոգի իւր ը
ամբարտ բանս նր, սաստեաց և յանդիմա-
նեաց խստիւ. սանձեա՛ ասէ զլեզուդ, և կար-
կեսցի՛ բերան քո՝ որ բուրէ զժանտուԹի. զի՞
ժայԹքես 'ի մեզ զԹոյն հնոյ օձին. հեռի՛
են խորհուրդք այդպիսի 'ի ծառայից այ :
Եւ իբրև կամէր նա լրբուԹբ մերձենալ 'ի
սրբն, 'ի բաց մերժեաց զնա քաջապէս երա-
նելին, և ասէ. յիրաւի կոչեցար մելանեա, (որ
Թարգմանի սևակ.) զի կին ժանտ ես դու,
և զաւակ սատանայի, որդի գեհեննին՝ և ժա-
ռանգ չարին. 'ի բա՛ց կաց 'ի ծառայէս այ. և
զայս ասացեալ՝ ել անտի, և գնաց :

Յայնժամ լի եղև մելանեա ամօԹով, և բոր-
բոքեալ 'ի բարկութի և 'ի Թշնամութի անհնա-
րին ընդդէմ բարերարին իւրոյ՝ խորհեցաւ
մատնել զնա դատաւորի : Յարեաւ եկն 'ի
քաղաքն աղեքսանդրիա, և համարձակեցաւ
դիմել հանդերձ նաժշտօք առ եպարքոսն
փիլիպպոս՝ անգիտացել զնա հայր լինել եւ-
գինեայ. և չարախօս եղև զսրբոյն՝ ասելով.
այս ինչ աբեղայ 'ի քրիստոնէից անտի եկել
'ի տուն իմ նենգաւ՝ կամեցաւ ննջել ը իս
բռնուԹբ, և կեղտ անուն արկանել 'ի վր
տան հօր իմոյ. և եԹէ չէր իմ ձիչ բարձել

և

և յօգնութիւն կոչեաց զնաժիշտս , ոչ փրկանէր 'ի ձեռաց նր . և այլ բազում բանիւք պարսաւեաց զսքն և զեղբարսն որ ընդ նմա էին 'ի վանս :

Իբրև լուաւ եպարքոսն , առաքեաց բարկութբ զօրականս 'ի վանս Եւգինեայ , զի կալցին զնա և զամ վանականսն ընդ նմա , և բերցեն կապանօք առաջի իւր : Իսկ եղև 'ի հասանել նց՝ լինէր աղմուկ մեծ և ամբոխ 'ի քաղաքի . անդ էր խռովտալ հեթանոսաց 'ի վր հաւատացելոց . քզի և հրաման ել յեպարքոսէ պատրաստել թատրոն հանդիսի 'ի տեսիլ պատուհասին , որով կարծէր պատուհասակոծ առնել զանմեղսն իբրև զչարագործս . ժողովեցան անդր բազումք և 'ի քրիստոնէից՝ զի մարթասցին գոնէ առնուլ մասն յոսկերաց սրցն իբրև նահատակաց ճգնաւորաց :

Արդ իբրև ածին կացուցին զԵւգինէ յատեան՝ կրօնաւորական սքեմաւն , հարցանել սկսաւ զնա եպարքոսն փիլիպպոս , և ասէ . յիրաւի՞ են ասացեալքն 'ի մելանայ վր քո . այս է՝ զոր ուսուցանէ ձեզ քսն ձեր՝ անխտիր լինել յամ ապիրատութիս . մինչև չակնածել և 'ի մեծազգի և 'ի պարկեշտ տիկնայց : Իսկ սրբն 'ի խոնարհ ունելով զգլուխ իւր՝ զի մի եկեսցէ 'ի ծանօթութի , ասէ դաշն ձայնիւ և համեստ բանիւ . Տր մեր յս քս՝ որում ես ծառայեմ , սբ է սբց և մաքրութ մաքրութեց . և զնոյն մեզ վճռեաց՝ սրբս և անարատս լինել հոգւով և մարմնով , և այս-

պէս

պխնեաց խոստացեալ զանձանելի մեծոյ՝ մեծութեն իւրոյ 'ի միանձնաւոր կեանս : Ապա եթէ մեք լինայր այդ զ՜ը դէմն չարախօսեաց, արժան էր ընդ իմոյ ոչ փութանակի ունկն մատուցանել, մինչև յերկուց լուիցես կողմանց, և այնպէս 'ի դատաստան ուղիղ գայցես : Իսկ արդ եթէ յանցաւոր լիցէ ծառայ քո, ոչ երկնչիմ 'ի պատուհասէ . բայց թէ անպարտ դատնիմ յայդպիսի մեծ եղեռն չարութէ, և ոտին իմ պարտաւորեալ երանիցէ յատենէ աստի, զայս աղաչեմ՝ զի մի չար ինչ արասջիք նմա վ՜ն իմ . քանզի և օրէնքն իսկ մեր զայս պատուիրեն մեզ՝ անոխակալս լինել, և բարի առնել չարարարաց մերոց, և ոչ չարի չար հատուցանել :

Զարմացաւ եպարքոսն ը՜ն իմաստուն պատասխանին, որում ակն ոչ ունէր . այլ տակաւին անհաւատանայր, և առաւել մեղանչէին անսայր չարախօսութ, որ համարձակագոյն ասնգէր զբանն՝ վստահացեալ 'ի նախանձիչս իւր, որոց խոստ տուեալ էր՝ տալ յատենի վկայութի սուտ . ոչ և արարին իսկ . քանզի յառաջ մատուցեալ նախշտացն՝ ասեն . հազիւ կարացաք ապրեցուցանել զանձինն մեր 'ի ձեռաց չար աբեղայիդ : Սովինք առաւել ևս խռովեալ եպարքոսին՝ սպառնայր մեծամեծս ը՜դ իմ Եւգինեայ . և կամէր վճիռ չարաչար մահու ածել 'ի վ՜ն նր, և զընկերս նր խոշտանգել :

Յայնժամ հառաչեաց երանելին, և ասէ . ժամանակ է լռելոյ, և ժամանակ է խօսե-

լոյ․ եթէ լուեցից, երկնչիմ՝ գուցէ պատ-
ճառ եղէց բազմաց՝ նախատինս դնել մեզ ան-
օրէն քրիստոնէից․ ապա լաւ լիցի ինձ խօ-
սել ՝ի դէպ ժամու, և փառաւորել զանուն
փրկչին իմոյ՝ յայտնելով զճշմարիտն․ զի մի
պարծեսցի չարն ՝ի վերայ ծառայից քոց։
Զայս ասացեալ, և մղձկեալ ՝ի սաստիկ
դթոյն՝ ոչ ևս կարաց տանել․ այլ համար-
ձակ գոչեաց պարզաբար․ դու իմ Հայր բա-
մարդոյ, և ես եմ դուստրն քո եւգինէ՝ զոր
կորուսեալ համարէիր․ այլ իմ արհամար-
հեալ զանձն առ սէրն քո և ՝ի պատիւ մա-
քուր կուսութեան՝ զայս ձև հրեշտակային յան-
ձին զգեցայ․ մերկացայ զ[illegible] և զորս ենն [illegible],
և փոխանակ նոցին զքեզ միայն զինև արկայ։
Ոչ ապաքէն եղբարք իմ են աւիտոս և սեր-
գիոս՝ որ զքև նստին աւադիկ․ և ուր է
մայր իմ կղոդիա տիկինն։ Ոչ ահա և եր-
կոքին ներքինիք՝ զոր տեսանէք ընդ իս, պռո-
տոսն և յակինթոսն են․ որք ընկերեցին
ինձ միաբան զհետ երթալ մերում փրկչին,
՝ի գտանել զկեանսն՝ որ ՝ի քս յս։
Եւ մինչդեռ բանքն ՝ի բերանն էին, իսկ և
իսկ ծանեան զնա ՝ի դիմաց և ՝ի բարբառոյ՝
հայրն և եղբարքն․ և ընթացեալ գիրկս ար-
կանէին և համբուրէին յորդ արտասուօք մեծ
անակնունելի գիւտին։ Ազդ եղև մօր նր
կղոդեայ, թէ դուստրն քո եւգինէ կենդա-
նի է․ եկն և անկաւ զպարանոցաւ նր․ և ե-
ղև ցնծութիւն մեծ ամենայն տան եպարքոսին, և լա-
լին բազում ՝ի սաստկութէ ուրախութե նմ

մերձաւորաց ։ Եւ իբրև տարածեցաւ այս լուր 'ի ժողովրդեան , փառաւորեալ լինէր անուանն ք͞սի , և յամօթ լինէին չարքն ։ Եղեն և ոմանք 'ի հեթանոսաց գտեալք 'ի տեղւոջ հանդիսին , որք ասէին ․ Ճշմարիտ է ա͞ծն Եւգինեայ ․ յորմէ համարձակեալ և քրիստոնէից՝ կէսք ձայնէին ․ մի տ͞ր , մի ք͞ս , մի հաւատ , մի մկրտութի͞ ․ և այլք , ո՞վ է ո͞պ տ͞ր ա͞ծ մեր՝ որ յայտնի առնէ զանյայտս և զծածկեալս իմաստութ͞բ իւրով , և ըմբռնէ զիմաստունս 'ի խորագիտութե͞ իւրեանց ․ աջ քո տ͞ր փառաւորեալ է զօրութ͞բ , աջ քո տ͞ր խորտակեաց զթշնամիս ։

Յայնմ վայրի հրաման ետ եպարքոսն փիլիպպոս բերել զգեստս մեծագինս և կերպասս ոսկեթելս , և բռնադատեալ զգեցոյց զդուստրն իւր ․ և հանեալ զնա 'ի բարձր գահոյս՝ երևելի արար տեսողաց ․ զի ծանիցէ ա͞մ բազմութի՝ եթէ սա ինքն է դուստր իւր սիրելի , որ ցայնչափ ժամանակս օտարացեալ 'ի տանէ հօր իւրոյ՝ ընտրեաց զխոշոր կեանս ․ և եղև այն օր տօն ուրախութե͞ յապարանս եպարքոսին և ը͞ն քաղաքն ա͞մ ։

Իսկ մեղանայն այն ամօթապարտ չարախօսն Եւգինեայ՝ 'ի դառնութի͞ ոգւոյ համակեալ՝ ինքնահալած փախչէր յատենէ անտի , և սենեակ 'ի սենեկէ թաքչէր ․ իսկ բարձրեալն ամենակալ՝ որ ոչ անպարտ առնէ զանիրաւս , առակ նշաւակի կացուցանէր զնա Յի ․ քանզի էջ հուր 'ի բարձանց , և բոցակէզ ծախեաց զա͞մ տուն նորա ա͞մ ընտանեօք և

դոյիւքն հանդերձ . յորմէ կրկին ևս զահի
հարեալ անհաւատից՝ ճշմարիտ գոլ վկայէ-
ին զհաւատս եւգինեայ, և ոչ սակաւք 'ի
նոցանէ դարձան 'ի մոլորութէ իւրեանց ։
Յետ այսորիկ խօսեցաւ եւգինէ ը ծնօղացն
և ը եղբարս իւր 'ի բանից ածային գրոց .
և շնորհօք այցելութե ածն՝ արար զնս քրիս-
տոնեայս . քանզի մկրտեցաւ եպարքոսն փի-
լիպպոս ամ տամբ իւրով . և դրձլ երանե-
լին եւգինէ զգեցաւ կանացի զգեստ կրօ-
նաւորութե . և այնուհետև բազմացան հա-
ւատացեալք 'ի քաղաքի անդ աղեքսանդրաց-
ւոց . և եղև համարձակութի յոյժ քրիստո-
նէից 'ի կողմանս եգիպտոսի ։ Եւ այս պէտք
եղեն փիլիպպոսի աղդ առնել կայսեր զայս
ինչ, եթե օգուտ բազում տեսանի որութե
ինքնակալին յանդորրու պահել զքրիստո-
նեայս, և թողացուցանել նց համարձակ
պաշտել զկրօնս իւրեանց . զի որչափ հաւա-
տարիմ գտանին յօրէնս, այնչափ առաւել
մտերիմ ծառայութի ցուցանեն և տրանց
մարմնաւորաց՝ խրատեալ յօրինաց անտի իւր-
եանց ։ Եւ կայսրն՝ որ ոչինչ թերեհաւա-
տէր 'ի բանից փիլիպպոսի, յանձն առնէր
զխրատն իմաստուն տնտեսութե նր ։

Այլ իբրև զօրանալ սկսան հաւատացեալքն
յեգիպտոս, ընդ այս մախացեալ ոմանց 'ի
գլխաւոր պաշտօնէիցն հեթանոսաց՝ դիմե-
ցին 'ի հռովմ, և ամբաստան եղեն զփիլիպ-
պոսէ առաջի նորոյ ինքնակալին և դահեկցի
նր, (որ էին ը ոմանց սեւերոս և անտոնի-

նոս, և զի այլոց կարծին լինել վոլուսիանոս և գաղենոս, ) եթէ եպարքոս տեղւոյդ եթող ելից զդիցն պաշտօն, և զոմն խաչելեալ պաշտէ․ և յաւելին չարախօսել՝ թէ առ խնամարկելոյ նազովրացւոց աղանդոյն՝ զընդդէմն գործէ հրամանաց ձերոց, և զեան

առնէ բազում յիրս արքունի ։

Յայնժամ յղեաց առ նա թագաւորն հրովարտակ սաստիկ և կշտամբանաց․ Որ յառաջ քան զմեզ ինքնակալն էր՝ ասէ, դիւցազն հայր մեր՝ պատուեաց զքեզ մեծապէս շքով եպարքոսութեան՝ որպէս հաւատարիմ՝ 'ի պաշտօն դիցն և 'ի հրամանս արքունի․ մինչև գոգ․ թագաւոր ազատ՝ քան իշխանաւոր որք ընդ իշխանութեամբ՝ կացուցանել զքեզ 'ի վերակացութին եգիպտացւոց․ և ոչ փոխել ինչ կամէր զքեզ յիշխանութենէ այտի, այլ՝ կենօք չափ սահմանեաց կալ քեզ յայդոսիկ կողմանս՝ առ 'ի յիւրմէ մարդասիրութենէ․ և մեք զնոյն պահեցաք պատիւ, և եդեալ ևս էր 'ի մտի առաւելուլ քան զոր ունիսդ ։ Բայց այժմ քանզի ազդ եղև մեզ, և քննեցաք և 'ի վերայ հասաք, եթէ օտարացեալ ես քո 'ի կրօնից հայրենեաց, որով և զհակառակն ժպրհիս գործել մեծաց և ինքնակալաց, հրաման այսպէս տուաք, զի կամ զառաջին զմեր օրէնս կալցիս՝ և յառաջին աստիճան պատուոյդ վայելեսցես, և կամ 'ի բաց մերժեալ յաթոռոյ իշխանութեանդ՝ յամենայն ընչից միանգամայն զրկեսցիս․ եթէ և ապրանաց տեղի ունիցիս ։

Ուեն փիլիպպոսի զայսպիսի հրաման՝ պատճառ

ճառեցաւ աւուրս քանի մի զհիւանդն լինել. մինչև վաճառեաց զաղտ զա̃մ ճոխութիս իւր, և բաշխեաց աղքատաց ի̃ ա̃մ երկիրն եգիպտոսի. և ապա ինքնակամ հրաժարեալ յիշխանութէ եպարքոսութե՝ զեկոյց ինքնակալաց կարգել զայլ ոք 'ի տեղի իւր. և ինքն մեկուսացաւ տամբ իւրով 'ի տեղի մի՝ ուր հաւատացեալք առաւել կային արտաքոյ քաղաքին: Եւ զի էր նա այր զգօն և առաքինի վարուք, ջերմ յա̃ծպաշտութե. և առատ բանիւ, ընտրեցին զնա յեպ̃սութի 'ի սահմանս վիճակին եգիպտացւոց. որով յա̃ծական առաջնորդութե՝ վերառեալ եղև յեկեղեցական կարգ հովուի. և բազմօք սատար լինէր ժողովրդեանն ա̃յ, փայլեալ հաւատովք և բարի գործովք. մինչև առնել և սքանչելիս 'ի վ̃ր հիւանդաց և այսահարաց անուամբ տ̃ն :

Յետ այսորիկ առաքեցաւ 'ի Թգ̃րէն զօրագլուխ ոմն պերեննիոս անուն՝ (10) 'ի վերակացութի աղեքսանդրիոյ եգիպտացւոց, պատուէր առեալ սպանանելոյ զփիլիպպոս միայն՝ առանց վրդովելոյ զժողովուրդ երկրին, զի մի խռովութի մեծ լինիցի: Եւ նա եկեալ 'ի քաղաքն՝ պատուեցաւ ո̃մ զիշխան 'ի Թագաւորէ առաքեալ. և յետ աւուրց հնարս խորհեալ 'ի ծածուկ տալ զկեանս փիլիպպոսի, յղեաց 'ի վ̃ր նորա զոմանս 'ի սպասաւորաց իւրոց ծպտեալ 'ի կերպարանս քրիստոնէից. որոց գուշակ եղեալ զտեղւոյն՝ մտին յեկեղեցին, ուր կայր փիլիպ-

պոս եպսն 'ի պաշտաման աղօթից. անդ հայ-
րին և 'ի մահ վիրաւորեցին զնա 'ի մէջ տա-
ճարին. որ և երիս աւուրս կեցեալ յետ վի-
րացն՝ աւանդեաց զհոգի իւր առ Ած, վկայ-
ական պսակին արժանաւորելով, և հայրա-
պետականին, կացեալ յեպսուէ տարի մի,
և ամիսս երիս կամ չորս (11): Նաև սբ կոյսն
Եւգինէ թաղեաց զերջանիկ հայրն իւր 'ի
գերեզմանս տեղւոյն՝ զոր շինեալ էր կղո-
դիա մայր նորա օտարանոց. որ և յոմանց
վանք և վկայարան կոչի, և յայլոց նոյն կար-
ծի է վանաց նիտրիոյ՝ զոր շինեաց ասեն Եւ-
գինէ (12:

Բայց զկնի կատարման երանելւոյն փիլիպ-
պոսի՝ ոչ գոյր հանգիստ իւրայոցն յեգիպ-
տոս յերկիր օտար. վսյ յետ ժամանակի խոր-
հուրդ արարեալ դարձան 'ի հայրենի քաղաք
իւրեանց 'ի հռովմ՝ կղոդիա և երկու որդիք
նորա սերգիոս և ալիտոն, համդերձ Եւգի-
նեաւ և երկու ներքինեօքն: Իսկ թէպէտ
զառաջինն իբրև յանծանօթս լինէին, այլ
քանզի կային նց անդ ծանօթք և կարևոր
բարեկամք 'ի մեծամեծացն հռովմայեցւոց,
սքը ընկալան զնս սիրով. և առանց հարց-
փորձի զհաւատոց նց՝ ընտանութի ցուցին
բազմօք. մինչև յառաջ ձգել զսերգիոս և
զալիտոն 'ի գործակալութի իւրացն արքունի
ըստ հայրենի պատուոյն. և տալ ալիտոնի
անուն հիւպատոսի՝ թր բդեշխի, և զսերգիոս
անուանել բեկարիոս թր փոխանորդ՝ յափրի-
կէ (13):

իսկ

Իսկ սբ՟ կոյսն Եւգինէ առանձնացեալ'ի տան հանդերձ մարբն և ներքինեօքն՝ փայլէր յառաքինի գործս իբրև կիրթ յա՟մ ընթացս բարեպաշտուե և միակեցական վարուց կատարելուե . և սքանչելի օրինակաւ իւրով և ա՟ծիմաստ վարդապետուբ հոգեշահ բանից ձգէր զբազումս յօրիորդայն Հռովմայ 'ի հաւատս քսի . յորս երևելի եղև բասիլա ( կամ վասիլլա , որ թարգմանի թագուհի) յազգականութէ թագաւորի՝ կոյս իմաստուն և ուշիմ միտօք : Քանզի լուեալ սորա զբարի համբաւ Եւգինեայ՝ եկն առ նա 'ի գիշերի . և տեղեկացեալ 'ի նմէ վն ճանապարհին ճշմարտութե՝ յարեցաւ 'ի նա , և կամեցաւ աշակերտիլ նմա . այլ զի երկնչէր կալ առ նմա և կամ յաճախել յերթևեկս , զի մի մատնեսցի , աղաչեաց զեւգինէ յղել առ ինքն զներքինիս իւր իբրև 'ի սպասաւորութի, ոճ զի առաւել ևս հրահանգեսցին նոքօք 'ի կարգս քրիստոնէութե :

Եւ նա առաքեաց զպռոտոս և զյակինթոս նախ իբրև ընծայաբերս 'ի բնակութի բասիլայի . զորս ընկալեալ նորա՝ կալաւ զնսի 'ի տան իւ՟ անուամբ ծառայից , այլ պատուէր զնս առանձինն իբրև զառաքեալս քսի . և լուեալ 'ի նոցէ ստէպ զբանս աւետարանական վկայութե՝ զօրանայր 'ի հաւատս . մինչև հանդիպեալ հայրապետին՝ (որ յամանց կիպրիանոս եպս կոչի . և յայլոց կոռնելիոս քահանայապետ Հռովմայ , ) 'ի տեղւոջ ուրեք աղատ յամբոխէ՝ առաւել ևս լուսաւորեցաւ

՚ի նմէ, եւ ընկալաւ զմկրտութիւն սրբ աւազա-
նին ։ Իսկ յետ հաստատելոյն ՚ի հաւատս
Քսի՝ ուխտ եդ անձին իւրում պահել անա-
րատ մինչեւ ցմահ զկուսական զմաքրութիւն,
արհամարհեալ զկարգ ամի՝ յոր խորհէին
մուծանել զնա մերձաւորք իւր. որոց խոստ-
ացեալ էր զնա պսակել ումեմն երեւելի ա-
զատորդւոյ ։

Իսկ այնուհետեւ պէսպէս պատճառանօք
առեալ այց առնէին միանձանց յանքոյթ տե-
ղիս երկոքին սր կուսանքն Եւգինէ եւ Բա-
սիլա, եւ քաջալերեալ յորդորէին զմիանձնս
՚ի կամս այ ՚ի բարիս՝ ՚ի հաճոյն եւ ՚ի կատա-
րեալն ։ Իսկ եղեւ անուանել սբյն Եւգինեայ
՚ի տեսլեան երազոյ զմարտիրոսութիւն Բասի-
լայ կուսին. եւ Բասիլա եւտես այր մի լուսա-
ւոր՝ բերեալ Եւգինեայ զերիս պսակս. մին
զճգնութեն յաղեքսանդրիա, եւ միւսն զմար-
տիրոսութեն ՚ի Հռոմ. եւ զերրորդն վս մա-
քուր կուսութեն. եւ ասացեալ միանձնց՝ զոր
տեսինն, ուրախ եղեն ՚ի Տր ։

Իսկ ումն յաղախնայցն Բասիլայ երթեալ մատ-
նեաց զնա իշխանին պոմպէի՝ խօսեցելոյն ը
Բասիլա, թէ տիկինն իմ հրապարակեալ յեւ-
գինեայ՝ այլ ոչ կամի ամուսնանալ ը. քեզ ։
Իսկ պոմպէոս (1*) բազում աշխատ եղեւ ան-
ձամբ եւ ՚ի ձեռն պատգամաւորաց փոխել
զմիտս կուսին. եւ ինչ ոչ օգտեցաւ. վսյ
գնաց ամբաստան եղեւ առ Թագաւորն զեւ-
գինեայ, թէ զա̃մ ոչ հրապարակէ զառնալ
յա̃ծն իւր, եւ ոչ տայ թոյլ կնոջ մերձաւո-

րեւ

բիւր ՟Ը՟ առն․ և եթէ արգելցին մարդիկ յամուսնանալոյ՝ որպէս ասէ Թղթուին հռովմայեցւոց, և զիարդ յաղթեմք թշնամեաց ստորաձնաց ։ Յայնժամ զայրացեալ Թղթն՝ հրամայեաց պոմպէի, զի թէ ոչ հաւանեսցի Բասիլս՝ մահու սպանջիր աւէ զնա՝ ի ձեռն դատաւորին․ նոյնպէս և զեւգինէն զայն ես տաց կորուսանել իրաւամբք ։ Արթեւլ պոմպէի՝ միասանգամ փորձեաց ՝ի ձեռն պառաւանց և մհկաց գողանալ զվիտս բասիլայի, և ոչ կարաց հաւանեցուցանել զնա․ վ՟ոյ յետ բազում ողոքանաց և սպառնալեաց՝ հատին զգլուխ ն՟ր սրով․ և նա այնպէս կատարի ՝ի ք՟ս ։

Յետ այսորիկ հրամանն ետ կայսրն, զի դատաւոր քաղաքին՝ նիկետիոս կ՟մ անիկոսս անուն փորձեսցէ տանջանօք և մահուամբ զեւգինէ և զգործակիցս ն՟ր․ և դատաւորն ետ ունել զեւգինէ հանդերձ ներքինեօքն, և տանել ՝ի տաճար կռոցն՝ զի երկիրպագցեն և զոհեսցեն ։ Իսկ ն՟ցն մտեալ անդր՝ չառին յանձն երկիր պագանել կռոց․ այլ մանաւանդ աղօթեցին առ ք՟ս, և նոյնժամայն բագինքն ա՟մ անկեալ կործանեցան ։

Ընդ որ բարկացեալ անօրինացն՝ հատին զգլուխս երկուց ներքինեացն պրոտոսի և զյակինթոսի ։ Եւ ՝ի սրբուհւոյ կուսին եւգինեայ յոտսն կապեցին վէմ մի մեծ, և ընկեցին ՝ի գետն տիբերիս․ և ահա անդէն արձակեցան կապանք, և լուծաւ վէմն և էջ ՝ի խորսն․ իսկ աղախինն ք՟ի գ՟նայր ՝ի վ՟ր

ջրոյն

Ջրոյն որպէս 'ի ցամաքի, մինչեւ ել 'ի ցամաք անցք · յայնժամ սքանչացեալ ամենեցուն 'ի տեսողացն՝ փառս ետուն այ · մինչեւ անարգել նց̃ զկուռս խրբեանց եւ զկռապաշտս , եւ հաւատալ 'ի քս՝ զոր Եւգինէն պաշտէր ·

Ապա հրամանն ետ դատաւորն , եւ ջեռուցին սաստիկ զբաղանիսն , ( որ յոմանց սեերինեան կոչի ,) եւ արկին անդր զԵւգինէ · եւ այնպէս ցրտացաւ բաղանիսն , մինչ զի այլ ոչ կարէին ջեռուցանել · եւ անարատ ել անտի եւ Եւգինէ · զորմէ կէսքն ասէին մոգ եւ կախարդ լինել , եւ այլք գովէին զհաւատս կուսին (15) ·

Դժուարեալ դատաւորին ետ արկանել զԵւգինէ 'ի բանտ խաւարչտին , զի կացցէ անդ անսուաղ եւ անլոյս ։ Եւ ահա լոյս մեծ ծագեաց 'ի բանտին , եւ երեւեցաւ անդ փրկիչն՝ ունելով 'ի ձեռին հաց սպիտակ իբրեւ զձիւն , եւ անուշելի բուռ համոյն քաղցրունս · եւ ասէ ցկոյսն · առ Եւգինէ կերակուր 'ի ձեռաց իմոց · զի ես եմ փրկիչ քո , զոր 'ի բոլոր սրտէ եւ յամ անձնէ սիրեցեր · եւ ես զքեզ սիրեցի · եւ ահա ոչ անցցեն աւուրք բազումք , զի ընկալայց զքեզ յիմ արքայութիւն՝ որ 'ի յերկինս · եւ զայս ասացեալ՝ եղեւ աներեւոյթ ։ Իսկ եղեւ յետ կալոյ երանուհւոյն Եւգինեայ 'ի բանտի զաւուրս տասն կամ հնգետասան՝ (16) , առաքեաց դատաւորն դահիճ , եւ ետ գլխատել զնա անդ՝ զճգնազգեաց նահատակն եւ զանարատ հարսն հոգւոյն սբյ ։ Որոյ զպատուական մարմինն առեալ հաւա-

տա-

տացելոց՝ տարան ամփոփեցին պատուով 'ի լատինայ ճանապարհին արտաքոյ քաղաքին Հռովմայ 'ի սեպհական կալուածս նր՟. ուր և զբազմաց 'ի սր՟ց զնշխարս ժողովեալ էր նր՟ անդր :

Իսկ մայր նր՟ կղոդիա գայր և լայր ստէպ 'ի վր՟ հողոյ ցանկալի զաւակին իւրոյ եւգենեայ՝ անմխիթար ողբովք : Եւ երևեցաւ նմ՟ 'ի գիշերի միում յանուրջս դուստրն իւր՝ հանդերձ լուսազարդ դասուք սր՟ց կուսանաց, և ասէ. ողջոյն քեզ մայր իմ կղոդիա. զի՞ լաս մայր իմ, ուր պարտ էր քեզ ուրախ լինել վս՟ իմ. զի և զիս դասեցոյց տր՟ ընդ սր՟ս՝ զորս տեսանես սքանչելի փառօք. և հայրն իմ փիլիպպոս՝ դասեցաւ 'ի կարգս սր՟ց քահանայապետացն : Եւ արդ ուրախ լեր, զի և զքեզ մուծցէ տր՟ն մեր յուրախութի՟ իւր յաւուր կիւրակէի. Պատուէր տուր որդւոց քոց՝ եղբարց իմոց, զի պահեսցեն ուղիղ զդրոշմ սր՟յ խաչին. որ և նք՟ արժանի լիցին այսմ ցանկալի և անմահ կենացս :

Իբրև զայս ասաց՝ անհետ եղև յաչաց մօրն. այլ 'ի մեկնիլ նր՟ լսէր կղոդիա զձայն երկնաւոր զուարթնոց՝ որք փառաբանէին զած՟ : Յայնժամ զարթուցեալ 'ի խնդութէն՝ փառս ետ այ՟, և ասաց զտեսիլն՝ որդւոց իւրոց և որոց էին 'ի տան : Եւ յաւուր կիւրակէի 'ի ժամ սր՟ պատարագին՝ մինչդեռ աղօթէր կղոդիա ջերմ արտասուօք, աւանդեաց զհոգին իւր առ ած՟, լի աւուրբք և արդեամբք : Որպէս և երկու եղբարք եւգինեայ սեր-

գիոս

գիրս և ապիրատն՝ Թէպէտև յերկրի բնակէին, այլ քաղաքավարութի՛նց յերկինս էր, անարատ վարուք առաքինութե՛ իբրև լուսաւորս փայլեալ յնի. քանզի հաստատեալք ՚ի սէրն այ՝ մնացին անփորձ ՚ի չարեն զօր վախճանի իւրեանց. և սրբութե՛ փոխեցան առ նա, և հասին առ ծնօղս և առ քոյր իւրեանց յերանութի՛ արդարոց (17)։ Միձակ բարեվիճակ, և նախանձելի ամ առաքինեաց՝ մանաւանդ յՏակյան կարգէ. զի սակաւք եղեն՝ որք զայսօրինակ հանդիսացան և երանեցան ամ տամբք հանդերձ. հայր և մայր և զաւակք և ընտանիք. որոց գլուխ Ճանաչի իրաւամբք սբ կոյսն եւգինէ՝ նախաշաւիղ ամ բարեաց տան հօր իւրոյ. վէց և ը եւգինեայ եղեն տօնելի ՚ի մեծամեծաց մինչև ՚ի փոքունս նց (18), ամենազօր շնորհօք նն և փրկչին բոլորեցունց. որում վայելէ փառք և պատիւ յաւիտեանս. ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Մի և նոյն վարք և վկայաբանութի է՝ ոչ միայն ըստ գոյացութե, այլև ըստ ամ գլխաւոր հանգամանաց, ուրեք ուրեք և ըստ եղերաց, եթէ ՚ի զանազան յայսմաւուրս հայոց, և եթէ ՚ի բազմազան վկայագիրս յունաց և լատինացւոց և այլ ամ ազգաց. մինչ զի ոչինչ տանի երկբայութի՝ հրաշալի պատմութիս ։ Զօր և հաւաստէս յուեան դնէ Ճոխագոյն ՚ի վարս հարանց. ՚ի գլ. ա. ՚ի կարգի հին և վաւերական պատմութեց Ճգնաւորաց՝ գրելոց ՚ի սբյն հերոնիմոսէ և ՚ի նմանեաց նր. և ասէ՝ թէ ոմանք ընծայեն զթարգմանութի վարուցս՝ հռուփինոսի.

և

և չէ՛ խիկ ասէ օտար յաձոյ նի : Նշանակէ և զհին հե-ղինակս՝ որք յիշեն զայս վարս Եւգինեայ կուսի · որպէս ալկիմոս աւիտոս, և փորտունատոս, և անդելմոս : Վկայէ այսմ և բարեպաշտ բոլլանդեան սրբագրիչ գա-տաւոր՝ յաւելն 'ի մայիսի · 20 · երես · 634 · ( 'ի խօսելն զբասիլեայ կուսէն զաշակերտէ Եւգինեայ ) · * Այն
,, գործք ( ասէ, զի վարք և վկայաբանութիւն Եւգինեայ
,, և որոց ընդ նմա ) են յիրաւի հնագոյն յոյժ · քանզի
,, ալկիմոս աւիտոս եպիս վիեննայու, որ գահագլուխ
,, նստաւ 'ի ժողովն եպաոնիոյ 'ի գաղղիա՝ յամի տն · 517 ·
,, 'ի գիրսն՝ զոր գրեաց 'ի գովեստ կուսութե առ քոյր
,, իւր փուսկինա, առաջի աչաց ունէր զայն վարս · զոր
,, և արժանի համարեցաւ յատանաւոր տաղաչափութե
,, վերածել · տուն · չկ · մինչև 'ի ոճզ ||: Այնպէս և 'ի մէջ յունաց պանծալի ընծայեցոյց զայն ( ասէ ) մե-տափրաստէս · կն : Բայց մեք, զոր անվայել իմաստութե իւրում 'ի վր̄ բերէ յանդգնաբար · * Այլ սակայն որ-
,, չափ և համձայնական ընծայեցան երբեմն այն վարք,
,, այժմ եթէ 'ի փորձաքար պատմական քննութե ընդ-
,, հարցին, ոչ ոսկի, այլ կեղծ մետաղաց գտանիցին ||:
Բամբէ բարեպաշտ · բարւոք ընթանայիր, ո՛ կասեցոյց զքեզ Ճշմարտութենն չհաւանել · եթէ իմաստութե ոսկե-րիչ էիր, պարտ էր քեզ զմետաղն քաջ Ճանաչել, զը-տել զոսկին, և զայն առնուլ, և փայլուն գործել · զի ոչ այնչափ 'ի մետաղս փայլէ ոսկին՝ որչ 'ի ձեռս ոսկեր-չաց · բայց քո թողեալ զոսկերչութի՝ որ գիտէ զոսկի ոժգոյն կարծեցեալ պայծառ փայլեցուցանել, ցուցա-նես զանձն մետաղահատ անգէտ ընտրութե կեղծոյ և ոսկւոյ : Ապա թէ ոչ՝ այդ քո ապաբանութի ( մի ծանր թուեսցի քեզ՝ զի զքո ոճս քեզ վաճառեմ, ) անբերելի է և սրբյն Եւգինեայ · զի թէ դատաւորն զգլուխ նորա հատեալ՝ պսակաց արար արժանի, դու զպատիկ վկայ-ութե նորա կապտես կամ անարգես · և կամ 'ի կարգս հալածչաց անցեալ՝ զձեռս և զոտս սրբյն քանցես · մինչ զի և 'ի քէն անբարիօրինակ առեալ՝ ընդ մէջ գլխովն կորէ գործակիցն քո պետիէր 'ի ֆ̄ · հատ · սեպտ · 'ի վարս երկուց ներքինեացն Եւգինեայ, սակս կամելով զՃշմար-տութի պատմութես · և վկայ զո՛ այլ կոչէ, բայց զի ասէ, * զընթերցօղն առաքելք առ բարեպաշտ ||: Այլ տես-ցուք անաչառ, թէ զի՛նչ է՝ որ ուսուցանէ զատա և զնմանիս սոցա :

Նախ՝ պատճառեն զդոյացուե պատմութե լինել իւր

հո-

հաղեալ խաղ․ որ լսողինքըն ասի ըստ ասմամ ։ * Ա-
„ րեւելեան և արեւմտեան եկեղեցեաց ( ասէ բարեպաշտն )
„ միաբանակ ընտրելագոյն այն վարք․ քեր այն թէ զար-
„ մանալի յեղափոխութ̃ գիրուծանց անարժէլի հեշ-
„ տակի ընձայեցին ընթերցողաց և լսողաց, և ոչ սա-
„ կաւ նպաստ եղիցի 'ի զօրանն քրիստոնէական աստ-
„ քինած, և մանաւանդ կուսական մաքրութ ||։ Մի՛
մնայցի դու ուսանի ուսոյ այդպէս դեղեցիկ հակառա-
բանել․ եթէ յօրինողքն յայսպիսի միտս բարիս վարե-
ցան, զնախնի ոչինչ ազդեցին 'ի բեղ․ զուցէ քանզի խնա-
տուն են, և ոչ խորքս․ ուրեմն անխնամ զատնեմ ա-
րեւելեան և արեւմտեան եկեղեցիք, և խաբեցան 'ի սկզբա-
նէ և այսր․ և քո զի՞նչ միտքեն յեւերել զայդ պատմու-
թե․ նորոյ ծննդարանէն խելք զաւակ լինել՝ սուտ ցու-
ցանել զեկեղեցին և զեկեղեցական աւանդս միանգա-
մայն ։ Զի թէպէտ եկեղեցին ոչ դնէ զհիմն իւր 'ի վր̃
մարդկային պատմութեանց, բայց յընդունելն զնմանին՝ ոչ
տակաւ անփանայ և ըստ բեղ 'ի քրիստոնէական աւանդի-
նաւն ։ Թող զի եւ գիտէ ասնել է եկեղեցւոյ՝ ոչ ըստ
որում պատմական վկայուհի ոք, այլ ըստ որում այսպի-
սի վարուց փայլեալ և վկայեալ․ ապա թէ ոչ՝ չէր ա-
ւանձին պատմու ասնելոյ զեւգինէ անհնայն ասմբ
հանդերձ․ ոչ ծնողքն ունին զայլ գործ արժանի ասնե-
լոյ․ և ոչ եղբարքն և ոչ նեղքինքն, բայց յայնմանէ՝ որ
փակի յայս անհաս պատմութէ․ մինչ զի անդունել ըղ-
գոյացութե պատմութեն ( զորոյ զնմանն է տեսանել և
յայլ քանի մի սէս 'ի վարս հարանց, եւ․ եւս սուսել
առ բոլլանդեանս․ 'ի յունվարի․ 24․ զորմէ զինի․ ) է
անդունել կամ զսէս, կմ̃ զեկեղեցին՝ որ ասնէ զնոսա ։
Այլ չէ՛ արժան յերկար զխմախոսել անպատճառ թըշ-
նամանագրաց․ եկեսցուք 'ի կարճեցել պատճառան ։
Երկրորդ՝ պատճառանն զպատահմունս պատմութեն ան-
հաւաստի լինել ըստ ժամագրութե․ * Ընդ որոտաքին և
„ ըստ եկեղեցական պատմութե այնց ժամանակաց ( այս-
„ պէս բովանդակէ պէոհիէր զերկարաբանութիս բարե-
„ պաշտ, ) կամ յոյժ դժուարաւ, և կմ̃ ոչ իւիք որի-
„ նակաւ կարէն միաբանիլ․ զի լինել վանորէից միան-
„ ձանց յեգիպտոս, եպոսութի փիլիպպոսի յաղեքսան-
„ դրիա, քաղաքապետութի նիկետոսի կմ̃ ըստ այլոց ա-
„ նիկատոսի 'ի հռոմ․ միրոնեին բնակելոյ 'ի կուսանե-
„ լեայ կամ 'ի սովորաց քենյալեաւ ||։ Այս զէնք
են, որք ոչինչ մեզ սասանեն․ զայսպիսի անմիաբանու-
թիս

Թէս նովին իսկ լուծանելով, զի ոչ միաբանեն վկայա-գիրք յայգոսիկ անուանս կամ 'ի պարագայս, որպ միա-բան են 'ի պատմութե :

Այս աւելի է. սակաւք 'ի վկայաբանից են՝ որք ցու-ցանիցեն ատամոր, թէ վանորայք շատ կային յայնժամ յեգիպտոս. բայց և ոչ մին ուրանայ գոնէ զմին ուրկրո-նաւորեցաւ եւգինէ. զոր և քաջայարմար հանգամանօք ԺԵ վիճակի ճմկին այսպէս ստորագրէ որ իէլն մեր 'ի յայսմաւուրս իւր (միաձայն ամիս ԺԲ Հ = Յ) այսոր. * Վանք մի էր արտաքոյ քաղաքին՝ յորում ժողովեին ,, բազմաւ քրիստոնէից մն հալածանացն 'ի կռապաշտ-,, ից ||: Եթէ զայս ձև բանից գտանեին բաբեպրոք և պեաիէր, այլազգ խօսէին յայնժամ. և ոչ դիմախօ-սէին նաև մն միւս ևս փոքրիկ վանաց՝ զոր շինեաց նա-ինքն եւգինէ յօտարանոցի անդ շինելոյ 'ի մօրէ իւրմէ. և զայս ևս յիշէ անէր իէլ այսմ. * Թաղեցին զնա (ԶԱ ,, զփիլիպպոս) 'ի վանսն՝ զոր շինեաց դուստր իւր եւ-,, գինեա ||:

Եթէ 'ի կարգս պատրիարգաց աղեքսանդրիոյ չգտանեն խուզարկուք զփիլիպպոսդ անուն յայնժամ գոլով, մեք ոչինչ զարմանամք հանգոյն այլոց. նախ՝ զի բանք վկա-յագրաց, և մանաւանդ մերոցն՝ գիւրաւ մարթին յա-նորոշ միտս վերածիլ մն միոյ յեպարանաց վիճակին եգիպտոսի. մինչ զի և որք աղեքսանդրիոյ եպս ասեն, զաղեքսանդրիայն իբրև գլուխ եգիպտոսի գիտելով 'ի վիճակէ եգիպտոսի կամին ասել: Երկրորդ՝ հաւանա-կան ևս է, թէ փիլիպպոս եպարքոս կամ 'ի միջոցին և կմ յեպարանալն՝ զայլ անուն ընկալեալ իցէ. և մն այն ոչ է մարթ գտանել 'ի կարգս պատրիարգաց առաջին անուամբն : Ո՛չ գիտեմ, զի՞նչ ունին ասել քննիչքընդ-դէմ բացարձակ բանիս որ իէլի. * փիլիպպոս հայրն իւր ,, (ԶԱ եւգինեայ) եղև եպս քրիստոնէից ||: Օգտէ և բանն սեւերոսի աշխամեցւոյ և արևելեան ճմկագրուե, թէ յետ յուլիանոսի պատրիարգին աղէքս″, որ մեռաւ 'ի տասներորդ ամի կոմոդոս կայսեր՝ յամի տեառն 189. յայնմ հետէ եպսն աղեքսանդրիոյ 'ի բաց մեկնեալ էր 'ի քաղաքէն՝ մն հալածանաց սեւերոսի կայսեր և յաջոր-դաց նորա :

Սոյնպէս ոչինչ է ատարկուածն յանուանէ քահանայա-պետին Հռովմայ, զոր հնգկօրէն լսեին վկայագիրք յե-տինք՝ է զի կոռնելիոս և է զի ստեփանոս պապ կոչեն, յարմարել կամելով ճմկի քահանայապետաց. ուր մե-

տաւ

տափրաստէս ասէ , * կուռնելիոս՝ մեծ աստղ 'ի մէջ ,, եպսաց || · զի ով և կամիս իմա՛ յերևելի եպսաց զատ_ լոց 'ի հռովմ յայնմսիկ զարս հնութե : Զի՞նչ ասա՛ ե_ թէ ՟Ը Հ · ընթերցցուք · * զնայեալ առ եպսն կիպրիա_ ,, նոս || · կարծեմ թէ ՟Է այս տարբերութ առաւել հա_ ճեացին քննիչք · թէ կամին՝ և յափրիկէ գիցեն :

Իսկ ընդ զանազանեալ անուն քաղաքապետին հռովմայ վարանիլ ծանծաղմտութի է · զի որչափ և պարծեցին քննիչք իրազէտ լինել կարգի և անուանց քաղաքա_ պետաց կմ զատաւորաց հռովմայ , բազմօք սխալեն · զի բազմանուն էին հռովմայեցիք , և զատաւորք սանձիչք քրիստոնէից բազումք կարէին լինել : Մի միայն կա_ րևոր խնդրելին վր մեր՝ էր անուն կայսեր · զորմէ ատե_ ցուք արդ :

Անուն կայսեր՝ որ առաքեաց զփիլիպպոս եպարքոս յեգիպտոս , հտրկօրէն 'ի յն · և 'ի լտ · վկայաբանութեա միօրինակ դնի կոմոդոս · ( որ նստաւ յամի տն · 180 · ) նոյնպէս դնի և առ հայս · զի թէպէտ 'ի սովորական օրինակս Հ · գրեալ կայ , * 'ի թգւրութեն քսևերեայ նի_ ,, կոմիդեայ|| · բայց պարզ է ուղղագրել յընթերցուածոյ մր իէլի · որ ունի այսպ · * 'ի ժմս ամբարիշտ արքային ,, կոմիդեայ || : Իսկ անուն յաջորդին՝ որ ընկէց զփիլիպ_ պոս յեպարքոսութէ , և ետ նահատակել , ոչ յիշի 'ի յն · և 'ի հյ · այլ լատինք՝ են որ սևերոս , կմ սատուռնինոս դնեն ( զի ոք նստան յետ պերտինաքսի , և տիտոսի՝ քանի մի ամսօք յաջորդելոցն զկնի կոմոդոսի ) , և են որ վոլուսիանոս և գաղոս , կմ վալերիանոս և գալիե_ նոս դնեն , ոչ յայն հայեցեալ՝ թէ ո՞ք յայժմ 'ի վայր նստան ՟Ը ժմկին · ( զի նստան յամի · 251 · և 260 · ) այլ զի յար_ մարեսցեն ժմկի կուռնելիոսի հռովմայ հայրապետին ( նստելոյ յամի · 250 ) , միանգամայն և պաշտեսցեն և զանունն կայսեր՝ առ որով յետ ժմկաց նահատակեցաւ եւգինէ · քանզի զսա նաև մետափրաստէս և Հ · գալլէ_ նոս կամ գալլինոս կոչեն :

Արդ ո՞ ոչ տեսցէ , թէ ընդ վայր է 'ի պատճառս ան_ ուանցս՝ որք ՟Ը իմիք որոշ են , և ՟Ը իմիք անորոշ , խա_ թարել զվկայաբանութիւն , և անստոյգ մակաբերութեք չափ դնել ամաց փիլիպպոսի և եւգինեայ , ( որպէս և արարին ոմանք 'ի նոցունց իսկ խուզարկուաց , ) և ոչ հաւանելով իւրեանց իսկ բանից՝ քարկոծել զվկա_ յաբանս , չասացից՝ թէ և զվկայս : Որ ոք կամի , զմին յանուանց կայսերաց յիշատակելոց կալցի հաստատուն ·

և յդ̄ այնմ ընթացցի՝ յարմարելով եթէ հնար է տեղա-
ւոյս յարմարել զհատանսն անուանս կայսերաց դարուցն
այնոցիկ. յորս ( Թող զբռնաւորս կայսր անուանք լինե-
նացեալս ) Իւրաքանչիւրն ունէր զերիս և չորս, եւ և
զհինգ և զվեց անուանս և մականուանս և մականկոչու-
թիւս. որ Ղուկիոս աւրելիոս կոմոդոս. Մարկոս ան-
տոնիոս սեւերոս յուլիանոս. Մարկոս աւրելիոս պասսիա-
նոս անտոնինոս կարակալլա. Մարկոս աւրելիոս ան-
տոնինոս պասսիանոս վարիոս հեղիոգաբաղոս. եւն ։ Եւ
երբ էր ուսանել վկայաբանից զնմ̄ զխառնակութիւնս ան-
ուանսն սց̄, և անվրէպ նշանակել. և զխորդ 'չիցէ յան-
դգնուլ մն̄ նոյնթական սխալագրութեց անուանց՝ եւ և
մն̄ անտուղութե օտարոտի անուանց ումանց զըստու-
գուն բամբասել վկայաբանութե ։ Առ յօրինակ այսքան. Ե-
թէ կայ և ինչ ինչ մանր զննելի, յիշեսցուք՛ի կարգին ։
(2) Առ ինչ արդեօք, զոր յոյնք տօնեն 'ի դեկտ. 24.
(որ զեւգինէ կոյս և զորս ընդ նմա,) և լատինք միով
աւուրբ զկնի՝ 'ի դեկտ. 25. (զեւգինէ աստնձին. Թող
զի զփիլիպպոս յիշատակեն 'ի սեպտ. 13. և զերկուս ներ-
քինսն 'ի սեպտ. 11. որք թէ այսպէս զանազանելի ի-
ցեն աւուրբ կատարման նոցա,) մեք 'ի միջոցս ապայից
վերածեալք ։ Դիւրին էր ասել՝ թէ որով հետև 'ի յուն-
վարի 21. գնի 'ի Հ. վարք եւգինեայ ըստ ասմբ հան-
դերձ, կարի 'ի դէպ էր անցուցանել զտօն յիշատակի
նց̄ 'ի միջոց ապայից, որ է միջոց յունվարի և փետրվա-
րի. Բայց թող զի յառաջ է կարգադրութե տօնացուցի
քան զայսմաւուրաց յետոյ յօրինելոց, թէև գիցուք՝
թէ տօնացոյցն կախեալ է զպատմութե սբց̄, (որ է ստոյգ,)
միայն խնդիր՝ թէ ուստի եղև հին վկայաբանից մերոց
կմ̄ առաջին յօրինողաց զայսմաւուրս՝ դնել զեւգինէ
'ի յունվարի. 21. (որ է յամ հին և նոր օրինակս,)
կմ̄ 'ի յունվարի. 16. որք դնեն Հ = Յ. և որ ինչ ։
Մեք 'ի հետաքննութե իրացս՝ պատճառ մի գտաք զար-
մանալի. զոր այլով մասամբ պարտ էր յիշատակել բոլ-
լանդեանց, բայց չէ անցեալ ընդ միտս նց̄. ( ապաթէ
ոչ՝ զէն արդեօք լինէր բաբեպրոքեայ աստանօր ընդդէմ
մեր ։) Գտաք աստ, զի առ յոյնս կայ և այլ կոյս սըր-
բուհի՝ ոչ սակաւ պարագայիւք նմանաւոր վարուց եւ-
գինեայ, եւսեբիա քանզի կոչեցեալ և 'ի հինգերորդ դա-
րու կարծեցեալ. որոյ տօնն կատարի առ նս̄ 'ի յուն-
վարի. 24. (թող և զայլ վկայուհի քանզի 'ի 18. յուն-
վարի հարևանցի յիշատակեալ.) զոր ոչն գտանեն առ-

հայս • բայց կայ 'ի Հ = Յ, փ 'ի հայերէն ձեռագիր յայս_
մաւուրս թ̅ յունական կարգաւորութ̅ • և այն եդեալ
'ի յունվարի • 27 • բանիւքս այսոքիւք • * Յայսմաւուր՝
վարք աղախնոյն քր̅ի եւսեբեայ ։

,, Սա էր 'ի հռոմ քաղաքի դուստր մեծատան իշխանի
,, քրիստոնէի • կամեցաւ տալ զնա առն , և նա յանձն
,, ոչ առ • ասէր ցհայր իւր • ես քր̅ի կամիմ հարսնա_
,, նալ. զկուսութիւս իմ ոչ տաց յապականութ̅ • և հայրն
,, ոչ անսայր նմա • քանզի այլ զաւակ ոչ ունէր ։ Եւ
,, յորժամ ետես եւսեբիա զպաղեալ զհայրն 'ի գործ
,, հարսանեաց , 'ի գիշերի առեալ երկու աղախին հա_
,, մախորհ իւր՝ զգեցան առն զգեստ • ելին գաղտ 'ի տա_
,, նէն , և գնացին 'ի ծովեզերն՝ գտին նաւ պատրաստեալ •
,, գնացին յաղէքսանդրիա • և անտի 'ի կոոն կղզին • բնա_
,, կեցան անդ • դարձեալ զգեցաւ զգեստ կանացի , և
,, անուանեաց զինքն կսենի , որ թարգմանի 'ի հայ լե_
,, զու՝ օտար ։ Եւ մեծ ճգնութ̅ կացեալ սակաւ ժամա_
,, նակս 'ի կղզոջն՝ հանդիպեցաւ կրօնաւոր ծերոյ մի •
,, գնաց զկնի նր̅ 'ի քղքն սաւիճայ ( թ̅ այլոց՝ միլասայ •
,, որ 'ի կարիա ) , արդեւլաւ 'ի խցի • և յերկու և յերեք
,, աւուրս և 'ի շաբաթուն միայն ճաշակէր • և ոչ բան_
,, ջար և ոչ ունդ և ոչ միրգ և ոչ ձէթ և գինի , և ոչ
,, այլ ինչ՝ որ ընդ հուր անցանէր • բայց սակաւ հաց
,, յաղտասուս թացեալ ճաշակէր • և յերեկորեայ համ_
,, բարձեալ զձեռս յերկինս՝ մինչև յառաւօտն աղօթուք̅
,, և արտասուօք զաղօթս իւր կատարէր • և ապա սա_
,, կաւիկ մի 'ի վր̅ մերկ ծնգացն կանգնեալ ննջէր ։ Այլ
,, զճգնութ̅ վարուց նր̅ ընդ գրով ոչ կարեմք արկանել •
,, միով խորգով զոր 'ի կոոն կղզոջն զգեցաւ մինչև 'ի
,, ծունգսն , և այն առանց թեզանի , գլխիբաց՝ բոկ 'ի
,, ձմերանի և յամարանի ։ Եւ 'ի ժամ հանգստեան իւ_
,, րոյ տարածեալ զձեռս իւր 'ի յերկինս • և լոյս մեծ
,, ծագեաց 'ի խցին • և ընթացեալ գտին զերանելին կը_
,, սենին հանգուցեալ 'ի դեկտեմբերի ժէ • ( թ̅ այլոց •
,, 'ի յունվարի • ին̅ • ) և այլ մեծ սքանչելիս արար ա̅ծ
,, 'ի պատիւ հանգստեան նր̅ , պսակ աստեղեայ , և 'ի
,, միջին խաչ իջեալ յերկնից 'ի վր̅ դագաղացն • և ոչ
,, վերացաւ , մինչև եդին զնա 'ի տապան ||։

Արդ թէպէտև թ̅ ինքեան ա̅մին տարբեր է գոյացութ̅
պատմութ̅ս 'ի վարուց սր̅յն եւգինեայ կուսի և վկայուհ_
ւոյն , բայց մի'ս գիր՝ զի նման գտանին այս ինչ պարա_
գայք • քանզի և եւսեբիա կոյսն ( հանգոյն եւգինեայ )
ասի

սոխ լինել՝ ա․ հռովմայեցի ծննդեամբ ։ բ․ դուստր մեծատան իշխանի ։ գ․ 'ի կամիլ հօր նր ամուսնացուցանել զնա՝ փախեաւ ։ դ․ յաղեքսանդրիա եկն զառաջինն ։ ե․ երկու գործակիցք էին նր՝ աղախինք ( թէպէտ եւ ոչ ներքինիք ) ։ զ․ զգեցաւ առն զգեստ ։ է․ դարձեալ զգեցաւ զգեստ կանացի ։ ը․ եւ եղեւ ճգնաւոր ։ թ․ գնաց զհետ կրօնաւոր ծերոյ միոյ ։

Սակաւ եւ թեթեւ են ըստ իս այս պարագայք՝ նմանաւոր երեւեալք ․ բայց տես դու ինձ՝ զի թէ 'ի համառօտուե աստ ինն պարագայք նման նշմարին , 'ի լիակատարն՝ իբր եօթն եւս այլ բազմանալ երեւին ․ քանզի տեսանեմք առ յովհաննու բոլլանդեայ 'ի յունվ ․ 24 ․ ( այն է՝ բ․ հատ ․ յունվ ․ երես ․ 598 = 602 ․ ) զընդարձակ վարս սորին եւսեբեայ կուսի՝ քսենի կոչեցելոյ ․ իբրեւ 'ի ժամանակակից մարդոյ գրեալ , եւ 'ի նոյն մատենից 'ի լատին լեզուեալ 'ի ձեռն բոլլանդեայ ․ եւ ահա անդ բաց 'ի նախանշանակել պարագայից յարեւնման նշանակելոց ճոխագոյն ոճով , գտանես եւ զայսոսիկ լուր իմիք նման ( վարուցն եւգինեայ ) ․ ը՝ Ժ․ 'ի ճգնի փախստեան ասէ եւսեբիա ցերկոսին նաժիշտս գործակիցս իւր ․ * դուք
,, ինձ այսուհետեւ քորք եւ տեարք լինիջիք ․ ես ձեզ՝ ցոր_
,, չափ կեցից , սպասաւորեցից || ։ ժա ․ երեքեան եւս խնդրէին յայ՝ յօտար երկրի անդ , թէ * առաքեա առ
,, մեզ մարդ զոք քեզ հաճոյական , որով մարթասցուք եւ
,, մեք խոնարհելս փրկիլ || ․ եւ ահա տեսին զի գայր * ծե_
,, րունի պատկառելի՝ 'ի ձեւ կրօնաւորի || , պօղոս անուն ։ ժբ․ եհարց նա զեւսեբիա եւ զընկերս նր ․ * ուստի՞ էք || ․ եւ այլն ։ ժգ․ եւ եւսեբիա եհարց զնա ․ * ա_
,, ղաչեմ ( ասէ ) զքո սրբութի ․ զի՞նչ պաշտօն է քո ․ քան_
,, զի թուի ինձ տեսանել 'ի քեզ զեպսական կերպարանս
,, եւ զձեւ || ․ եւ նա ասաց ․ * քահանայ եմ այ , եւ վերա_
,, կացու սակաւ եղբարց վանաց փառաւորեալ սաա_
,, քելոյն սբյն անդրէի || ․ որ եւ յետոյ եպս եղեւ ( ասէ վկայաբանն՝ ) զկնի մահուան կիւրղոսի յաջորդին եփրեմի առն սբյ տօնելւոյ ։ ժդ․ ասաց ծերունին ․ * եւ ես
,, պանդուխտ եմ , եւ ոչ կարեմ առնել ինչ ձեզ 'ի տեղ_
,, ւոջս յայսմիկ || ։ ժե․ եւսեբիա արար իւր վանս * 'ի
,, տեղի մի հեռաւագոյն յամբոխէ || ․ եւ պօղոս յետ եպսութե իւրոյ՝ արար զնա սարկաւագուհի ։ եւ ոչ ոք գիտաց՝
* ուստի՞ էր սա կոյսն այն , կամ զի՞ էր եղեալ իցէ 'ի
,, հայրենեաց , կմ զի՞նչ անուն էր նորա , այլ ասէր միայն
,, զանուն իւր յատուկ՝ քսենի , որ է օտար ( կմ պանդուխտ)
,, գոլ || ։

Ii 2

,, գոյ ||: Ժդ. Եւսեբիա կրկին և կրկին յիշէ զսէրն Թեկ-
ղի աշակերտեալ սրբոյն պօղոսի, և ը̄ նմին զանձն աշա-
կերտել կամի ծերունւոյն. ևն: Արդ այս ամ պարա-
գայք տան մեզ երեք ինչ իմաստասիրել. Նախ՝ թէ հին
վկայագիրք մեր, ը̄ որս և որ իցէ, ոչ̄ և թարգմանիչն
կմ̄ հեղինակն Հ = Ց, յերեսաց այսպիսի նմանութեց
վարուց սրբյն եւգինեայ և սրբյն եւսեբեայ՝ չփոթեալ
են կամաւ և կմ̄ ակամայ զօր կատարման երկոցունց.
և տեսեալ ևս՝ թէ տօնացոյցք և Ճաշոցք ՚ի միջոցս ա-
պայից դնեն զեւգինէ, առաւել համառօտեալ են ըղ-
ձիոս՝ թէ կատարումն նր̄ լեալ իցէ ՚ի յունվարի քան
՚ի դեկտեմբերի. և գուցէ թէ հեղինակ բանիս եղև
մեծն գրիգոր վկայասէրն. քանզի և ՚ի հին Ճաշոցի՝ ուր
կայ յիշատակարան նր̄ վս̄ զարդարելոյ իւրոյ զՃաշոցն
ընթերցուածովք ՚ի վր̄ ամսոց հռոմոց, և վս̄ թարգմա-
նելոյ զվարս սրբց, դնի ՚ի յունվարի. Ժը̄. (ըստ այլ օ-
րինակաց. Ժդ̄. կամ Ժզ̄.) * Սրբյն փիլիպպոսի եպսի.
,, եւգինեայ կուսի ||: Եթէ ունէաք և վկայաբանութի
՚ի Ճառընտիրս եղեալս ՚ի ձեռս մեր, լոյս մեծ լինէր
մեզ ՚ի քննութի իրացս:

Երկրորդ՝ թէ պարտ էր բաբեպրոքայ փոխանակ սու-
տի առարկուածոց ը̄դէմ վկայաբանութե եւգինեայ կու-
սին, փոքր մի հետազօտել և զվարս եւսեբեայ կուսին.
յորմէ կամ իւրական ոգւով զօրացուցանէր զսուտ
պատՃառանս իւր, և կմ̄ գոնէ ընդ ոգւով յովհաննու բոլ-
լանդեայ նախահօր իւրոյ՝ զօրացուցանէր զստուգութե
վարուց սբ̄ց. բաղդատեսցէն խուզարկուք զնախատա-
ցեալ երկուս վարս՝ ը̄ քննութե երկուցս. բոլլանդեայ
տեսեմ և բոլլանդեանն բաբեպրոքայ. և մի աշխատ ա-
րասցեն զմեզ:

Երրորդ՝ թէ ոչինչ է վարանելի ը̄ պատահական նմա-
նութիս վարուց սրբյ և սրբյ. այլ առաւել հաստատելի
՚ի Ճշմարտութի. զի ոչ դէմք դիմաց՝ են նման անման,
սոյնպէս և գործք. և՛ս առաւել սրբց՝ ըստ որում են զա-
նազանեալ ծաղկունք մի և նոյն դրախտի եկեղեցւոյ,
և բազումք ՚ի նոցանէ՝ մանաւանդ թէ բոլորեքին՝ մի-
մեանց նախանձաւորք ՚ի կատարելութի սրբութե, վս̄ և
աննմանքն նմանաւորք, կմ̄ ոչ նոյնք՝ նմանք:

(3) Յունարէն՝ Եւ, է բարի, լաւ, ազնիւ, քաջ. և զէ-
նէս՝ ծնունդ, ազգ, ազն, տոհմ. դարձեալ Եւգէնէ, լաւ-
խակ, կարի քաջ. ազնիւ (նոյն նշանակութբ̄). Փրյա-
ռել, * ազնիւ (որպէս թէ, քաջ ես) ծառայ բարի և
,, հա-

,, հաւատարիմ|| . ԼՆ . մինչ զի որ ինչ է 'ի մեզ նշանակութ
բառիս ազնուական , և անուանս ազնուաւոր , նոյն է և թ
յունաց եւգինէոս , (ար") . եւգինէ կին եւգինեա (իգ")։
(4) Ոմանք ասեն , թէ փիլիպպոս եպարքոսն 'ի սկզբան
անդ իշխանութե իւրոյ արտաքսեալ իցէ զքրիստոնեայս
'ի քաղաքէն աղեքսանդրիոյ . որ նմին 'ի դէպ գայր 'ի
նուաճել զքաղաքն թ արքունի հրամանին . Թող զի և
բազումք յիշխանաց հեթանոսաց առնէին այսպէս ։ Բայց
և այսմ փոքու բանի դիմախօսել կամի բաբեպրոք . զի
ոչ գոյ ասէ յաւուրս կայսերաց ժմկին նշան ինչ հալա-
ծանաց լեալ ընդդէմ քրիստոնէից ։ Եւ ո՞ կարէ տանել .
թէ ամ մանր գործք այսպիսիք գրեալ իցեն 'ի պատմու-
թիս կայսերաց . ուր և մեծամեծքն յոլովակի լռեալ
կան ։ Այլ զարմանալի է , զի ներէ բաբեպրոք այսմ
լռութե՛ տալով յիւրմէ զայլ պատճառ . զուցէ ասէ՝ փի-
լիպպոս ինքնին 'ի գործ եդեալ զհին հրաման նախնի
թագաւորաց ։

(5) Քանզի իբր տասնամեայ ժմկ ունեաց կուսակալութ
փիլիպպոսի , զի էր նա ըստ վկայաբանից՝ ոչ ոմն սովո-
րական նախարար , այլ իբրև Թր , զի ցորչափ կենդա-
նի իցէ՝ մի ոք այլ նստցի 'ի տեղի նր , զայդ ևս անգա-
նէ իմաստունն բաբեպրոք ❊ այսպիսի հանապազորդութ
,, (ասէ) գրեթէ ոչ ինչ իք յարացուցին շփոթել կարէ
,, իբրև հաւանական || ։ Թող լռեցէ՛ զյարացոյց շփոթ-
տուե 'ի բարոնիոսէ և 'ի հռոմէեայ , որք հաստատեն՝
թէ մեծ պաշտօն էր եպարքոսութե եգիպտոսի , և կա-
չիւր օգոստական նախարարութ . քանզի օգոստոս կայսր
ինքեան էր պահեալ զայն իբրև ապահովարան հռով-
մէական կայսերութ , և օրինադրեալ էր մի զոք 'ի ծե-
րակուտէ անալ առաքել անդր , այլ յասպետական կար-
գէ զոք այր ընտիր , որ չիշխեսցէ ինչ իշխանասիրութ
ամենայն գրգռել . վն և 'ի պատմելն զոք քաջայարմար
յայն պաշտօն՝ ոչ փոխէին զնա կայսերք , գիտելով զայս՝
օգուտ յապահովութե տրութե . որովհետև եգիպտացիք՝ և
մանաւանդ աղեքսանդրացիք՝ էին խռովասէրք , և առ-
դոյզն իրաց դիւրապատրաստք յապստամբութ . որպէս
բազմօք գրէ դիոն ։ Հաս է մեզ զօրաւոր վկայութ
տակիտոսի , որ 'ի ձէ . գիր ասէ . ❊ Զեգիպտոս անդստին
,, յաւուրց դիւցազինն օգոստեայ ասպետք հռովմայե-
,, ցիք կալեալ ունին 'ի տեղի թրաց ( 'ի կողմանէ կայ-
,, սերաց և իբրև թր ) . այսպէս օգտակար թուեցաւ
,, զբռամբ ունել զայն գաւառ , որ է անմատչելի , և

„ տեսատ պաշարօք, տարաձայն աւելորդապաշտութբ և
„ զեղխութբ. և աղնոճական, և անդէտ օրինաց և դա_
„ տաւորութեց (տ՛ անսաստ)||։ Զայս ամ և յամ դարս
սաստկացեալ գտցես, և մինչև ցաւուրս մեր ոչ կարէ
ընդհատ։

(6) Անուանք ներքինեաց այսպէս աւանդին յամ վկայագրաց. զոր որ լինէլ գրէ պռոտաս և յակունդ. և Հ. պռոտոս և հիմակինթոս. թող զի ոմանք վրիպակաւ գրեցին պրոստոս, և հիմանկինթոս։ Բռօգոս յունարէն թարգմանի, առաջին. ապա եթէ ընթերցցիս բռօգօս (որպէս և ոմանք գրեն առ յոյնս), վերածի առ բառդ բռօգաքսիս, կամ բռօգասխս. որ են նախակարգութիւն, նախադասութիւն. ևն։ Իսկ իակինթոս կամ իւակինթոս է յակինթ թ ձայնին և թ իրին, անուն ծաղկան և ական պատուականի։

(7) Զոր այլք անուանեն էլինոս կամ հեղենոս եպս հեղինուպօլսոյ, որ լինէլ ելենաս կոչէ, որ է նոյն։ Մադն կամ կախարդն յաղթահարեալ 'ի սբյն' յեւրաս կոչի 'ի Հ. ուր և ասի' թէ 'ի բոցոյն սատակեցաւ. բայց հռոոմէա ը այլոց կոչէ զարէաս, և ասէ' թէ կիսամահ հանաւ 'ի հրոյ, և հալածեցաւ։ Կան և այլ երկու պատմութիւնք նման սմին 'ի հարանց վարս, որպէս վս սբյն եփրեմի պատրիարգին անտիոքայ' 'ի վիճել ը ումեմն սեւերիանիտ հերետիկոսի սիւնամոի 'ի կողմանս յերապօլսոյ, և վս հօրն կոպրէի 'ի վիճել ընդ մանիքեցւոյ ումեմն. զորս և լիով պատմէ նա ինքն հռոոմէա. յէրէս. 342. և 469. բայց չէ մարթ շփոթել ը առաջիկայիս։ Կայ և հեղինոս կամ էլլէն աբբայ, զորոյ զվարս բերէ հռոոմէա՝ յէրէս. 754. 'ի պաղաղիոսէ եպսէն հելենուպօլսոյ. գլ. կէ. զոր թերևս կարէ ոք շփոթել ը մերումս։

(8) Զոր Հ. և այլք ոմանք մելանա կամ մելենա կոչեն. որ թարգմանի սեւուկ, թուխ, սեակ, մելան. այլք ը որ լինէլ' գրեն մելանթիա, որ թարգմանի, սեւութիւն, կամ թխութիւն։

(9) Ոմանք այսպէս դնեն. արծաթի անօթս լցեալ դրամովք. զոր որ լինէլ բացատրէ' լցեալ քսակ արծաթ։ Հ=Ց. պահէ իբր տառադարձութբ զյունական բառ. * երիս Կլիփաս արծաթ. որ է 'ի յն. սգլիֆօս, որպէս և 'ի լտ. սկիֆուս. և նշանակէ բաժակ, սկնակ. ևն։

(10) Հ. պերինոս. որ լինէլ լաւ ևս' պերենիոս, որպէս և դնեն լատինք առհասարակ բերէննիուս (որ թարգմանի' մշտնջենաւոր, ամ ըստ ամէ). մետափր" տերենտիոս.

հռո_

հաստատեալ հնարի ընթեռնուլ հերեննիոս կեղսոս , որ յետոյ եղև մին 'ի յերեսուն բռնակալ թագաւորաց հռովմայ ։

(11) Այս առարկուծ ոմանց , թէ զխամբդ եւսեբիոս 'ի խօսելն զհետ վկայից եգիպտոսի՝ չյիշէ զնահատակուծ փիլիպպոսի , այլ բարոնիոս յամի 204. * գուցէ անգէտ
„ էր պատճառի մահուան նր . քանզի 'ի սկզբանց ծա„
„ ծուկ զաւում սպանաւ , և ոչ հանգիստացաւ ինչ նախըն„
„ թաց խոստովանութե քրիստոնէական անուան (յասենի)...
„ թող զայն՝ զի և այլ բազմ ինչ երևելի զանց առնէ նա .
„ և չէք այսմ տարակոյս . ոմ է տեսանել գրեթէ յիւրա„
„ քանչիւր տարիս ||։

(12) Մետափր . գնէ , թէ թաղեցաւ փիլիպպոս 'ի մէջ քաղաքին՝ 'ի տեղւոջն որ կոչիւր իսիոն . ուր 'ի կեն„ դանութե շինեալ էր նր վկայարան ։ Այգումն գնէ , թա„ ղեցաւ 'ի նիտրիա . և շինեցաւ վկայարան արժանաւոր վկային 'ի վր մարմնոյ նորա ։ Այլք՝ թէ 'ի նիտրիա , ուր վանս շինեալ էր եւգինէ . ոմ և տր իէլ ասէ , 'ի վանսն՝ զոր շինեաց եւգինեա ։ Իսկ Հ. և ոմանք 'ի լա. թէ եւգինէ թաղեաց զհայրն իւր 'ի գերեզմանս օտա„ րաց , ուր մայր նր կղոգիա շինեալ էր օտարանոց , կմ պանդխտանոց կամ հիւրանոց ։

(13) Ամէին միաբանի յիշեն ( առանց գործադրուծ իշ„ խանուծ ) , թէ ապիոոն ընտրեցաւ հիւպատոս կմ ան„ թիհիւպատոս ( կմ բդեշխ կմ փոխանակ բդեշխի ) կար„ թագինոյ ( որ է յափրիկէ ) . և սերգիոս՝ բէկար , կամ վիքարիուս ( կմ փոխանորդ ) յափրիկէ ։ Բայց թէ որ„ պիսի էր յայնմ ժմկի վիճակ տեղեացս , կմ զինչ վերա„ բերութի ունէր ընդ հռովմայ , յերկար լինի մեզ զննել . թող զի գուցէ և ոչ իսկ գնայցին անդր , այլ 'ի հռովմ զայնպիսի տիտղոս կրէին . կմ և յեկեղեցական կարգի կան այսպիսի աստիճանք պատուոյ 'ի վերայ կողմանց կողմանց , յորս և անհնար իսկ է երթալ ։

(14) Հ. Պետրէոս կմ պեմբէոս և կմ պէմպէոս . լաւ ևս տր իէլ համաձայնի ըն . պոմպիոս . զոր յոյնք հնչեն բոմբիիօս , և լատինք՝ բոմբէյուս ։

(15) Ոմանք ըս լա. ասեն , թէ արկանի 'ի հնոց սների„ նեան բաղանեաց . և շիջաւ հուրն , մինչև պաղիլ և բա„ ղանեաց . և ոմանք առանց հնոցի զբաղանիսն ևեթ նշա„ նակեն ։ Այլ զառաջինն հաստատէ և տր իէլ յասելն . * ընկեցին 'ի հուրն , և շիջաւ ||։ Մի արդեօք՝ յոյն ժա„ մագիրն երկուս դնիցէ քսենի կուսանս , բաղադրելով

զորոշ տարիս գնալ միոյ միոյ :

(18) Վն նշխարաց եւգինեայ և ծնողացն և եղբարց չէք այնչափ զօրոյ և կն աւելեկութի. այլ զերկուց նորքէ նեացն բռն ինչ ած խրոք: Հիմն դնի 'ի Լ. գ 'ի հաւաքմէական վկայաբերս. սեպտ. 11. այսր. * 'Ի հաւաքմ
„ 'ի ճանապարհն հին սալարկայ՝ 'ի գամբարանն բա-
„ սիլլայ, յիշատակ սրբց վկայիցն պատոսի և յակին-
„ թոսի (եղբարց, ըստ օրինակաց ինչ.) նշխարքն եւ-
„ բաննելոյն եւգինեայ... որք նախ չարաչար գան հա-
„ րեալ՝ ապա գլխատեցան 'ի միասին ||: Նոյն ըստ քըն-
նութեց յառաջ բերելոց 'ի պերիեռայ բուլանդեան՝ ճա-
նապարհն սալարկայ էր 'ի հռոմ՝ իբր երեք մղոնա-
հեռի 'ի քաղաքէն՝ մօտ 'ի տեղին սաբինա կոչեցեալ՝
տեղի գետնափոր, ուր ամփոփեալ լինէին մարմինք նա-
հատակաց. և ըստ իւրաքանչիւր սրբց գամբարանքն ու-
նէին անուանս. ուստի նոյն գամբարանն՝ որ կոչի բա-
սիլլայ, կոչի նաև գամբարան պատոսի և յակինթո-
սի. զի և սոքա 'ի նմին վայրի թաղեցան : 'Ի մէջ բե-
րէ յանուս գրուածս 'ի յաւելուածս հին մակագրութեց
զներբողական բանն՝ որք կային գրեալ 'ի վր տապա-
նաց պատոսի և յակինթոսի. զորս և պերիեռ երկրոր-
դէ. և յաւելու ասել, թէ ըստ բազմաց այն տառաւոր
գրուածք յօրինեալ են 'ի դամասոս պապէն. որոյ ա-
սեալ՝ թէ տապանք սրբցս ակնեալ էին ծածկել ի հո-
ղով, հրաման ետ պեղել, և երեւելի առնել. և եդ 'ի
վր վերատառութի տաղաչափեալ: Յետ ժմկաց՝ ասէ՝ և
քահանայ ոմն շինեաց անդ վկայարան. զոր և սիմա-
քոս պապ շքեղացոյց, և անդրէն նորոգեաց ադրիա-
նոս պապ յութերորդ դարու: Բազմօք հաստատեն հե-
ղինակք, թէ յիշատակ սրբցս էր 'ի կարգի հանդիսա-
ւոր տօնախմբութեց հռոմայ, զոր առնէին ամ ըստ ամէ
'ի վկայարանս իւրաքանչիւր մարտիրոսաց. վսյ և գտա-
նին անուանք սոց 'ի կարգի հնագոյն տօնացուցի հռով-
մայեցւոց, յորում սակաւուց և եթ 'ի սրբց անուանք
կան :

Եւ եղև յաւուրս գրիգորի դ. պապին, յամի տն իբր. 829. ըստ խնդրոյ ոմանց 'ի բարեպաշտից փոխադրեցան նշխարք սոցա ընդ այլ սրբցն 'ի մորուենախս գաւառ՝ 'ի գեօղն մուլինհայմ, որ յետոյ կոչեցաւ սալիկունշտադ կմ սելիկէնշդադ (որ գերմաներէն նշանակէ երանելեաց քաղաք,) 'ի վանս բենեդիկտեանց, և ամփոփեցան ընդ աւագ խորանաւ : Իսկ և եղև 'ի ժմկի գալստեան

տեան մարմնոց սրբոց յայտնի նշան բժշկութե 'ի վր այսա֊հարի միոյ · զորմէ Ճոխագոյն գրէ ականատես վկայ՝ աբ֊բայն նոյն վանաց եգիփնարատոս · և յայնմհետէ ծաղկե֊ցաւ տեղին այն յոյժ : Այլ 'ի մէջն ժէ դարու յառնա֊կոխ լինել տեղւոյն յերեսաց պատերազմացն չռէեաց՝ աղանդաւոր զօրքն բացին զխորանն, և զոսկերս սրբոց այսոցիկ և այլոցն ցրուեցին 'ի յատակս եկեղեցւոյն, և կոխոտեցին անարգանօք · յետոյ եկին քահանայք և ժողովեցին ը կարի, այլ խառնեցան բազում մասամբք նշխարք է նշխարս :

Կային և 'ի հռովմ մնացուածք յոսկերաց սրբոց · և ե֊ղև յամի տն իբր 970 · յորժամ ոթոն կայսր գերմանիոյ տիրեաց և առանձին իշխանութե իտալիոյ և եղև միա֊հեծան ինքնակալ, ազգական նր դէոդերիկ եպս մետայ 'ի շրջիլն է կայսեր յիտալիա՝ ժողովեաց զբմ նշխարս · և 'ի գնալն 'ի հռովմ՝ ուր ոթոն կայսր զորդի իւր հա֊մանուն ոթոն երկրորդ ետ պսակել ընդ թէոփանէի դստեր եղբօր կմ քեռ յովհաննու չմշկիկ կայսեր արևե֊լից 'ի ձեռն յովհաննու ժգ · պապին, յամի իբր 971, յայնժամ դէոդերիկ էառ 'ի պապէն զնշխարս ինչ պրո֊տոսի և յակինթոսի · և տարեալ 'ի գաղղիա՝ ամփոփեաց 'ի մետս քաղաք յեկեղեցւոջ վանաց սրբյն վինկենտիոսի վկային, զոր ինքն իսկ շինեալ էր · որպ գրէ ժմկակից պատմիչ : Բայց 'ի սոցանէ և 'ի զանազան քաղաքս իտա֊լիոյ գտանէին մասունք ինչ նշխարաց սրբոց · որպ 'ի պա֊տվիա, 'ի թեմն բարմայու, 'ի մանդուա, 'ի փլորեն֊տիա · և յայլ և այլ վկայարանս հռովմայ : Առաւել ևս պնդեն ոմանք լինել 'ի կոմոն կմ 'ի նովոկոմոն 'ի վի֊ճակի մեդիոլանու, իբր կանխագոյն բերեալ 'ի ձեռն լուէիտպրանտայ արքային լոնգոբարտացւոց՝ 'ի շնորհե֊լոյ գրիգորի բ · (ընդ որս յաւելուն ոմանք և զնշխարս եւգինեայ կուսին) · և ասեն՝ թէ ամփոփեցան յեկե֊ղեցւոջ սրբյն կարպոփորայ արտաքոյ քաղաքին՝ յամի տն 724 · յապրիլի · 2 · և թէ յետոյ առ ահի պատերազմաց բերին զայն ոմանք գաղտ 'ի քաղաքն, և եդին 'ի ստոր֊երկրեայ վայրս աւագ եկեղեցւոյն · բայց յամի 1317 · 'ի մայիսի 15 · իբրև բացաւ տապան սրբոցն, և գտաւ 'ի տամկութն ջրապատ իբր կոտաւով, առին հանգուցին 'ի բարձր տեղի յետկոյս աւագ բեմին · թող և զայլ ևս տեղեաց առանձին աւանդութիս պէսպէս · յորս կայ և շփոթութե համանուն սրբոց :

ՎԱՐՔ



# Կ.Ա.Ր.Ք.

## սրբոյն Կուռնելիոսի Հարիւրապետին ։ (1)

Հ. փետր. 22 ։ Լ. փետր. 2 ։ Յ. ծամակր. սեպտ. 13 ։ Բասիլ. հոկտ. 20 ։ Գործք առաք. գլ. Ժ ։ Բարօնիա. Ի. եղ. Ճկա ։ Գ. Ն. և Օ. ձձը ։ Բոլլանդ յաւելն. 'ի փետր. հատ. Գ. երես. 279. եւ ։ (2)



ԵՐԿՐՈՐԴ ԱԲՐԱՀԱՄ հայր հաւատոյ հեթանոսաց կոչեցելոցն 'ի նորածնեալ եկեղեցի քնի՝ գոլով սբն Կուռնելիոս. այն է յիշատակեալն 'ի սբյն ղուկայ աւետարանչէ 'ի գործս առաքելոց. ուր գլուխ գովուէ քարերջանիկ առնս այսորիկ պանծալի արձանագրի, յասել անդ. * Այր
,, մի էր 'ի կեսարիա (իմա պաղեստինոյ,)
,, անուն կուռնելիոս՝ հարիւրապետ'ի գնդէ
,, որ կոչէր իտալացի, (այ կամ յիտալիոյ իբ-
,, րև հռովմայեցի (3), և կամ յիտալիկայ
,, սպանիացւոց,) բարեպաշտօն և երկիւ-
,, ղած յայ ամ տամբ իւրով. առնէր ողոր-
,, մութիս 'ի ժողովրդեանն, և յաղօթս կայր
,, առ այ յամ ժամ‖. յայտ արարեալ՝ թէ
թէպէտև հեթանոս էր ազգաւ, այլ՝ բարի
ընու-

բնութե՛ և հեռի 'ի խառնակեցիկ վարուց և յանօրէն գնայից կուսպաշտից. 'ի սուտ կրօնս բազմ՚ածուէ էր ծնեալ, այլ անձամբ գիտակ եղեալ Ճշմարտութե միոյ միայնոյ Ճշմարտին այ՝ 'ի նմանէ եւեթ երկնչէր, և առնա կանխէր յաղօթս հանապազորդեան. (որպ 'ի հնումն յոբ երանելին և նմանիք նր.) և 'ի նոյն կրթէր օրինակաւ իւրով զամն ընտանիս իւր, զոր 'ի սակաւս է տեսանել 'ի ծնողաց :

Ճոխ էր այրն և փառաւոր յաչս ամենեցուն՝ հրէից և հեթանոսաց, որ 'ի կեսարիա մայրաքաղաք պաղեստինացւոց. բայց ոչ յօրացեալ 'ի սնոտի մեծութիւն և 'ի պատուսն աշխի (իբր յոլովից 'ի մեծատանց աշխի), այլ բարեգործ առ աղքատս և զգաստ, ողորմած էր և աղօթասէր : Նորա կն և աղօթք նր և ողորմութիւք ելին յիշատակաւ առաջի ծածկագէտին այ. և տր արժանի արար զնա տեսլեան երկնաւոր հրեշտակի իւրոյ. յորմէ առեալ հրաման՝ (որպ գեղեցիկ կարգաբանութբ Ճառէն սբ գիրք,) յղեաց արս 'ի յոպպէ, և կոչեաց առ ինքն զսբ առաքեալն զպետրոս զվէմն հաւատոյ. և լուեալ 'ի նմանէ զաւետարանն կենաց՝ իբրև երկիր արգաւանդ, այլ ծարաւի ջրոյն կենդանութե՝ հանդերձ ամն տամբ իւրով և մերձաւորօք, իսկ և իսկ ընկալաւ զկենդանին պարգևաց հոգւոյն սբյ՝ իբր օրինակի երանելի առաքելոց 'ի սբ վերնատան. մինչև խօսել և 'ի լեզուս, և մեծացուցանել զած. զոր տեսեալ պետրոսի՝ ան-

զէն առեալ մկրտեր ջրով սբ̄ առաքեալքն յա-
նուն յոր քրի զկուռնեցաւ և զորս է̄ր նմա՝
զմկրտեղոյն 'ի հօգի սբ̄ և 'ի հուր օրոյն ո̄չ ։
Նաև այս եղև փոքր մի զկնի նահատակութե
սբ̄յն սուրբանանուի նախամկայի , և զարձին
պօղոսի , յառաջին ամի յետ համբարձմանն
քսի յերկինս . այն է յամի տն . 34 ։ (4)
Նաև ահա այս սքանչելի զարձ երանեալոյն
կուռնեցլոսի 'ի սբ̄ հաւատս՝ եղև ո̄չ զուռն
մնից ա̄մ հեթանոսաց յեկեղեցի քսի . ո-
րով և հօտն փոքրիկ մեծանալ սկսաւ . քան-
զի սկսաւ լինել 'ի ներքնոց և յարտաքնոց
մի հօտ և մի հովիւ . յն կոչմանն երկնաւոր հով-
ուապետին . ուր մինչև ցայն վայր խորեին
հաւատացեալքն՝ որ 'ի հրէից , մերձենալ
առ այլազգիս , որով և փակեալ մնայր նոցա
Ճանապարհ փրկութե . զի փրկութիւն՝ ո̄չ և
փրկիչն՝ 'ի հրէից անուի էր . իսկ կուռնեցլոս
եղև առաջին 'ի մէջ հեթանոսաց՝ որ արժա-
նի գտաւ մտանել նախ յեկեղեցի սբ̄՝ կա-
թողիկէ և առաքելական , և ձգել օրինա-
կաւ իւրով զա̄մ տոհմերս զկնի իւր , օրինակ
հաւատոց ունելով առաջի զառաջին հարիւ-
րապետն՝ զորմէ վկայեաց փրկիչն ոի , թէ՝
և ո̄չ յի̄էլի այսպիսի հաւատս գտի երբեք ։
Արդ՝ իբրև մկրտեցաւ կուռնեցլոս և իւրքն
ա̄մ 'ի պետրոսէ , աղաչեցին զնա մնալ առ
իւրեանս աւուրս ինչ՝ առ առաւել վայելե-
լոյ 'ի հոգեւորական շնորհս վր̄պուն նր̄ . և սբ̄
առաքեալն յօժարամիտ կատարեաց զա̄ծա-
հաճոյ խնդիր նց՝ ես քան զես լուսաւորեաց
զա̄մսին

զտ՟մնին ա՟ծային ըմբիւնն ։ Յետ այսորիկ հրաժարեալ կուռնելիոսի 'ի գործոյ հարիւրապետութե՟ և յա՟մ կենցաղական զբաղանաց , ( ո՟պ միաբան վկայեն հի՟ն վկայագիրք , ) 'ի բաց եհան յանձնէ զպատիւ արքունի իշխանութե՟ , և զգեցաւ զզինուորութի՟ ք՟սի , եղեւ դրօշակիր նշանի ս՟բյ խաչին , և հետևօղ ս՟բ առաքելոցն 'ի քարոզութի՟ աւետարանին , աշակերտեալ պետրոսի վիմի . որ և յետոյ եղև ձեռնադրեալ 'ի նմանէ 'ի քահանայութի՟ և յեպ՟սութի՟ (5) . և այն զի էր այր ծերացեալ պատուական ալեօք ։

Նա եղև այնուհետև քաղաքն կեսարիա իրև հիւրանոց աշակերտաց 'ի պաղեստին , համարձակ մտանել և ելանել նո՟ց՝ քարոզել անդ զք՟ս հրէից և հեթանոսաց՝ հրամանաւ և գործակցութե՟ երանելւոյն կուռնելիոսի (6) . ո՟պ և անդ իսկ էին ապարանք փիլիպպոսի աւետարանչի՝ միոյն յեօթանց անտի սարկաւագաց . իսկ յայլ քաղաքս տակաւին զգուշութի՟ պահիւր՝ հրապարակաւ քարոզել առ հեթանոսս . վ՟զի և ցրուեալքն 'ի նեղութե՟ն՝ որ եղև 'ի վ՟ր ստեփաննոսի , թէպէտ և հասին մինչև 'ի կիպրոս և յանտիոքիա , այլ ոչ ումեք խօսէին զբանն՝ բայց միայն հրէից ։ Մինչև առ սակաւ սակաւ համարձակեցան աշակերտացն յանտիոք՝ խօսել սկսան ը՟ղ յոյնսն , յո՟ր ը՟ղ հելլենացիս և ը՟ղ այլ այլազգիս՝ աւետարանեալ զտ՟ր յս՟ . ուր և բազմութի՟ հաւատացելոց դարձաւ 'ի տ՟ր . և ապա 'ի ձեռն բառնաբայ և պօղոսի նախ յանտիոք

ան-

անուանեցան աշակերտքն քրիստոնեայք, ըն
քնեանք։

Եւ իբրև օր ը զօր տարածէր քննական հաւատք ՚ի կողմանս կողմանս, սպանաւ մեծն յակոբոս եղբայրն յովհաննու ՚ի հերովդէ յենջմ. և պետրոս արկաւ ՚ի բանտ. այլ յազատիլ նր առաջնորդութե հրեշտակի՝ յորժամ ելեալ գնաց յայլ տեղի, դիմեաց զկնի նր և կուռնելիոս՝ երթալ ուր և երթիցէ. մինչև յետ շրջելոյ ը բազում տեղիս քարոզութե՝ յարեցաւ ՚ի նա և երանելին տիմոթէոս աշակերտն պօղոսի. և նովաւ հանդերձ եկեալ հասին յեփեսոս, (ուր առաջնորդ էր կարգեալ տիմոթէոս ՚ի պօղոսէ)։ Ընդ խորհուրդ արար ՚նքն պետրոս ը երջանիկ գործակիցս իւր՝ խնամ ունել առաւել այնոցիկ ՚ի քաղաքաց, յորս չև էր հասեալ քարոզութի աւետարանին. վսյ մերձակեցին զքաղաքսն ՚ի վր իւրեանց. և ել մերձակ կուռնելիոսի՝ գնալ նմա ՚ի քաղաքն սկեփսիոն, որ ՚ի սկեփսիս գաւառի փոքուն միւսիոյ առ հելլեսպոնտոսիւ, մերձ յաւիդոս։ Յայնժամ հրամանաւ առաքելոյն դէմ եդեալ գնաց կուռնելիոս ՚ի սկեփսիոն՝ քարոզել անդ զբանն կենաց։

Եւ իբրև եմուտ ՚ի քաղաք անդր, և սկսաւ աւետարանել զքն ած, դղրդեցաւ ամբոխն ը լուր նորոյ քարոզութեն։ Եւ հաս բանն յականջս իշխանի քաղաքին, որում անուն էր դեմետրիոս, այր դիցամոլ, և նշանաւոր յուսմունս հեթանոսական աղանդոյն, և յա-

յա-

յարտաքնոյն իմաստասիրութիւն, միանգամայն և յոխորտաբարոյ:

Նա փաղփաղակի կոչել յատեան իւր զկոռնելիոս, և հարցանէր՝ թէ ո՞վ կամ ուստի՞ իցէ. և զո՞ր ազգ պաշտիցէ: Պ̃խի ետ երանելին, և ասէ. ես ծառայ եմ ա̃յ կենդանւոյ, և 'ի նմ̃է առաքեալ եկի այսր՝ աւետարանել ձեզ զանպատում բարիս, հանել զձեզ 'ի խաւարէ մոլորութե̃ն, և առաջնորդել 'ի լոյսն կենաց. և սկսեալ 'ի բանիցն յայսցանէ՝ պատմեաց նմ̃ զհաւատս ճշմարիտ՝ որ 'ի ք̃ս յ̃ս:

Յայնժամ իշխանն սաստեաց զայրագինս 'ի վ̃ր նր̃, և ասէ. ես զի՞նչ քեզ հարցի, և դու զի՞նչ տաս պ̃նի. երդնում 'ի դիս, զի թէ ոչ յետս կացցես յայդպիսի բանից սնոտեաց, ո՛չ խնայեմ 'ի քեզ. և արդ ա՛ղէ ասա՛, ո՞ ոք իցես դու, ո՞ւմ զինուորիս, և առ ի՞նչ եկեալ է քո այսր: Ասէ կոռնելիոս. եթէ զառաջին իմ վիճակ հարցանես, հարիւրապետ էի՝ զինուորեալ 'ի դուռն կայսեր. այլ զայն վաղու ես 'ի բաց եդի, և գրեցայ 'ի զինուորութիւն երկնաւոր թ̃գրին՝ որ արար զերկինս և զերկիր. և նորին հրամանաւ հասի այսր՝ քարոզել ձեզ զճշմարտութիւն վ̃ս օգտի կենաց ձերոց. ո̃պ զի դարձջիք առ տ̃րն իմ, և կեցջիք: Զայս և առաւել քան զայն լուեալ իշխանին 'ի բերանոյ երանելւոյն՝ ասէ ցնա. տեսանեմ զքեզ այր ազնուական՝ յեցեալ 'ի պատուական ալիս ծերութե̃, և գթամ ես 'ի վ̃ր հաստունա-

ցեալ հաստակերտ . հայեա 'ի բայց Թող զշա-
խօսուն նորաձայն բանիցդ՝ որք յիմարուն
մեզ թուին, եւ մատիր զոհեա մեծարեաւ եւ
մեծապօր ածոցն մերոց . ապա Թէ ոչ՝ գի-
տեա , զի չարաչար մահու մեռանիս , եւ ոչ
ապրիս 'ի ձեռաց իմոց :

Պատեցաւ կուսանելիս , եւ ասէ . եւ որոց ա-
սես զիս զոհել , որք հզօրագոյնքն իցեն :
Իշխանն ասէ . մեծին արամազդայ եւ ապո-
ղոնի : Յայնժամ հաւասեաց երանելին 'ի
մի կուրունեան , եւ ասէ . լուր ինձ իշխանդ
փառաւոր , զի զճշմարիտն ասեմ քեզ . զի-
տաց չարաց եւ խուլ եւ համր զիս զդոշելոց
չկարեմ մեծարանս նորհել . զի գրեալ է ,
տն այ քում երկիր պագցես , եւ զնա միայն
պաշտեսցես . եւ դարձ՝ ածք որ զերկինս եւ
զերկիր ոչ արարին , կորիցեն . եւ ոչ այսչափ
միայն , այլ եւ ձգնիմ ոգւով չափ , զի եւ զձեզ
հաւանեցուցից ած խմով դառնալ ձեզ յու-
նայնութեց առի յած կենդանին , եւ ճողոպ-
րել զանձինս ձեր 'ի դժոխային կապանաց
բանսարկուին մոլորութեց : Իսկ Թէ անհա-
ւան թուին քեզ բանքս իմ , փորձ ինձ տես
'ի գործոց . ածէ եկ երթիցուք ես եւ դու 'ի
տաճար ածոցն քոց , եւ տեսցուք՝ Թէ որչափ
զօրութի ունին , եւ զի՞նչ այն են պարծանք
փառաւորութեանց՝ զի գիտասցուք :

Զայն երբեւ լուաւ իշխանն դեմետրիոս , ու-
րախ եղեւ յոյժ , եղեալ 'ի միտի՝ Թէ իր տե-
սանել կուսանելիսի լոկ զշքեղ զարդս եւ
զհոյակապ շինուածս մեհենին , անդէն ու-

նի ակն ածել ՚ի դից իւրոց, և երկիրպագանել նմ̄. քանզի էր ՚ի քաղաքի անդ տաճար փառաւոր յանուն դիոսի, (որ և զևս, կամ արամազդ՝ հայր կարդացեալ չս̄ծոց,) մեծապայծառ զարդարեալ ոսկւով և արծաթով. և հաստատեալ ներքոյ և արտաքոյ տաճարոյ վիմօք կամարակապ յօրինուածով, և փայտայարմար քանդակեալ տախտակամած հեղուսիւք, բարձրակառոյց և ահաւոր տեսլեամբ: Սպա յարուցեալ իշխանին հանդերձ ատենիւն եառ զկուանելիս տանել ՚ի տաճար անդր. և ա̄մ բազմութի̄ն քաղաքին զկնի՝ արք և կանայք. ը̄ որս և կին իշխանին եւանթիա անուն, և որդի նր̄՝ որ ը̄ անուան հօրն դեմետր կոչիւր:

Եւ իբրև հասին ՚ի տեղին, ասէ իշխանն ցս̄րն. տես արդեօք՝ ո՞րպիսի է փառք տաճարիս այս, և զօրութի̄ն ա̄ծոցն մերոց. արդ մատուցեալ զոհեա՛, և լե՛ր սիրելի նմ̄, և բարեկամ մեր լինիցիս. քանզի տեսանեմ զքեզ այր պատկառելի, և թուի ինձ՝ եթէ մեծազգի և իմաստուն իցես դու: Իսկ ս̄րն ոչ ետ պատասխանի. այլ միայն հեծէր ՚ի խորոց սրտէ, և արտասուաթոր աղօթիւք խօսէր ը̄ ա̄յ, և ասէր. Հա՛յր երկնաւոր՝ արարիչ ա̄մ արարածոց, առաւել սքանչելագործ և հզօր. ցո՛յց տ̄ր զզօրութի̄ն քո ՚ի ժողովս յայս ՚ի ստեղծուածս ձեռաց քոց. նայեա՛ տ̄ր և տես զխաբէութի̄ս սոցա, զոր մոլորեցոյց բանսարկու թշնամին. բա՛րձ տ̄ր ՚ի միջոյ զգայթակղութի̄ս սոցա, զի քո են արարածք, և քեզ

լի

լցին երկրպագուք ։

Եւ զայս ասացեալ՝ մինչդեռ յոտին կայր, եդ ապա ծունր յարևելակողմն, և արար զնշան խաչին Տեառն պատկերաց կռոցն՝ ասելով. Դու տէր ամենակալ՝ որ առ դանիէլիւ զբել կործանեցեր, և զվիշապն հերձեր, և զերանս առիւծուց խցեր, դու տէր ինքնին և այժմ խորտակեա զդրօշեալս սնոտեացս. և տուր ճանաչել ժողովրդեանդ այդմիկ զպաշտօնել քո բարձր. զի դու ես պարծանք զօրութե մերոյ ։ Եւ նոյնժամայն անկան բագինքն, և զարկան զդետնի կուռքն ամ և փշրեցան ։

Յայնժամ աղաղակ բարձեալ ամբոխն առհասարակ Տեառն սրբոյն՝ ձգեցին հանին զնա արտաքս. և իշխանն գլխովին բորբոքեալ՝ ի բարկութի՝ ոչ գիտէր, թէ զինչ ասասցէ կամ զինչ արասցէ ։ Ընդ որ հայեցեալ կոռնելիոսի՝ ասէ. Ուր են արդ ո դեմետրի՝ մեծազօր աստուածք քո մեծք. առէ՛ր զչափ զօրութե նց, և զտէր իմոյ զկենդանւոյ ։ Իսկ նր անհնարին ցասմամբ լցեալ՝ ասէր. որով կախարդութբ կործանեցեր զանման դիսն մեր. յարոց ձեռաց ոչ զերծցիս անպատուհաս ։ Եւ զի եղեալ էր 'ի մտի դառն կտտանօք սպանանել զերանելին, և երեկոյացեալ էր ժամն, հրամանեա զայն գիշեր 'ի բանտ արկանել զնա. և հրամայեաց դահճացն՝ հարկանել զնա ուժգին բրովք, մինչև յագեսցին 'ի հարկանելոյ, և ապա զոտից և զձեռաց կախել զնա, և թողուլ մինչև ցառաւօտ ։ Օ այս

պատուէր տուեալ դարձաւ դեմետրիոս դառն
տխրութ՟բ յապարանս իւր ․ և ամբոխին ամ՟
կորագլուխ՝ ՝ի բաց մեկնեցան՝ ՝ի տեղւոջէ ան-
տի ։ Այլ կին և որդի իշխանին անապականեալ
մնացին ը՟ քուրմս ՝ի տաճարի անդ ․ և կային
զարմացեալ ՝ի վ՟ր եղելոյ իրացն , և կարի
յոյժ մորմոքէին ՝ի վ՟ր բեկման ա՟ծոցն՝ որ
խորտակեցան ։

Եւ եղև՝ յորժամ դահիճքն ՝ի բանտի տան-
ջէին զորն չարաչար , նա ջերմ սրտիւ աղօթս
մատուցանէր ա՟յ վ՟ն փրկութ՟ նեղչաց իւրոց ․
տես տ՟ր՝ ասէ , մի լռեր , և մի երկայնամիտ
լինիր ՝ի ժամուս յայսմիկ ․ ցոյց տ՟ր զզօրութ՟
բարկութ՟ քո ՝ի տաճարն յայն՝ յոր յուսացեալ
են որք ոչն ճանաչեն զքեզ ։ Եւ ահա յան-
կարծակի եղև թնդիւն մեծ ընդ բոլոր քա-
ղաքն ․ այլ սաստկագոյնս դղրդեցաւ տա-
ճարն , և հիմն ՝ի վեր կործանեցաւ ․ անդ
ընկղմեցան քուրմքն , և կին և որդի իշխա-
նին ընդ նմ՟ ։ Յայնժամ մի ոմն ՝ի սպասաւո-
րաց ատենին՝ տեղեփոն անուն՝ ընթացաւ
առ իշխանն , և պատմեաց լալագին՝ ասե-
լով ․ տէր , կորեան տիկինն մեր և որդին քո
սիրելի , զի անկաւ տաճարն ՝ի վ՟ր նց՟ ։

Եւ լուեալ իշխանն՝ պատառեաց զհանդերձս
իւր ․ և ընթացեալ ՝ի տեղին՝ կոծէր զանձն ,
և լայր զկինն և զմիամօր որդին ։ Հասին
անդր և այլ մեծամեծք քաղաքին , և սգա-
կից և կարեկից լինէին դեմետրիոսի ․ և ա-
սէին՝ գէթ հնարս խորհեալ վ՟ն հանելոյ ըզ-
մարմինս թաղելոյն ընդ փլատակաւ ։ Եւ

նա

նա Հրամայեաց բազմութեն 'ի բաց թափել-
ցուցանել զքարինսն , և հանել զփայտսն ,
և պեղել զհողն . Թերևս գտցէն մնացեալ
մարմինքն . և բազումս աշխատել զբազում
ժամս , և ոչինչ օգտեալ՝ գնացին գիշերայն
'ի վայրէն :

Ապա միւսանգամ 'ի միւսում աւուրն ընդ
առաւօտն հրամանն եւ իշխանին խորագոյնս
բրել և պեղել զհողն . և շատ ջանացեալ
բազմութե արանց հարիւրաւորաց՝ ոչինչ օգ-
տեցան (7) . որոյ վս անյոյս եղեալ դեմետ-
րեայ՝ դարձաւ անդրէն դառնութբ , և 'ի
զայրացմանէն խորհեցաւ ոչ ևս պահել կեն-
դանի զկուռնելիոս , այլ առ օրէն սպանա-
նել : Յայնմ վայրի եհաս զկնի իշխանին մի
ոմն 'ի քրմացն մնացելոց՝ բարբառոս անուն ,
և արգել զնա 'ի խորհրդոյ անտի իւրմէ՝ ա-
սելով . չկայ ինչ ընդ քեզ և ը առնն արդա-
րոյ . քանզի 'ի գիշերիս յայսմիկ եկի ես 'ի
տեղի տաճարիդ , և լուայ ձայն յաւերածոյ
անտի , զի աղաղակէին միաբան և ասէին .
Մ՝եծ է ածն քրիստոնէից , որ այրեցոյց ըզ-
մեզ 'ի ձեռն ծառային իւրոյ սբյն կուռնե-
լիոսի . և եկն 'ի կեցուցանել զմեզ յայսմ 'ի
վտանգէ : Նու դարձեալ ասէին . փութա-
ցի՛ դեմետրիոս առնուլ բերել այսր զկուռ-
նելիոս , և հանել զմեզ աստի , զի մի՛ կորի-
ցուք . Քզի մեծ սքանչելիս տեսանեմք աստ
մեծին այ , և զօրս հրեղէնս՝ որք հնչէին զա-
հաւոր բարբառ յերկնից 'ի յերկիր , փառս
տալով այ և աւետարանելով տիեզերաց ըզ-

խաղաղութ՟ ։ Եւ զայս ա՟մ ինձէն լուծայ յայտ-
նապէս․ և արդ տե՛ս, զուցէ այլն այն տառա-
քեալ է մեծին ա՟յ, և կարող է օգնել տա-
ռապանաց իշխանիդ և ա՟մ քաղաքիս ։

Զայն իբրև լուաւ իշխանն, զահի հարաւ ․ Եւ յարուցեալ վաղվաղակի ահիւ և խնդութ՟ չոքաւ ինքնին ’ի բանտն յառս սբ՟յն ․ և ետես զայրն ա՟յ՝ զոր գիտէր կապեալ ոտիւք և ձեռօք, զի ձեռն առեալ զգնայր ’ի սենեակ բանտին, և գիրք ’ի ձեռին օրհնէր և գովէր զտ՟ր ա՟ծ իւր ․ քանզի հրեշտակ ա՟յ եկեալ առ նա դրօքն փակելովք՝ լուծեալ էր զնա ’ի կապանաց ։ Առ այս կրկին եւս ապշեալ զարմացեալ՝ անկաւ առ ոտս երանելւոյն, և աղաչէր երթալ հանել յաւերածոյն զկին և զորդին իւր ․ փութա՛ն առէ՝ աղաչեմ, մինչդեռ կենդանի են ։ Ասէ սբ՟ն կուռնելիոս ցիշխանն ․ եթէ հաւատաս ’ի տ՟ր յ՟ս ք՟ս յորդին ա՟յ կենդանւոյ, կատարին խնդրուածք քո ։ Եւ իշխանն առէ ․ հաւատամ՝ ’ի տ՟ր յ՟ս ք՟ս և ’ի հայրն ն՟ր, միայն կեցուցէ զորդեակն իմ ։ Յայնժամ գնացեալ ’ի տեղին՝ արար կուռնելիոս զնշան խաչին, և ամբարձեալ զաչս իւր յերկինս՝ կարդաց աղօթիւք առ ա՟ծ, ասելով ․ տ՟ր ա՟ծ զօրութեց՝ որ հայիս յերկիր և տաս դողալ սմա, յորոյ երեսաց լերինք հալին, և խորք անդնդոց սարսին ․ դու ինքն տ՟ր լո՛ւր զհեծութ՟ կապելոց ․ և հան ’ի գբոյ տառապանաց զանկեալսն ’ի խորս խաւարին ․ և տո՛ւր փառս անուան քում տ՟ր ։

Զայս ասացեալ՝ հրամայեաց բանալ առ-

փոքր

փոքր մի զատեղին · և նոյն ժամայն լուսնեալ պատառեցաւ հողն , և անդէն 'ի վեր ելին եւանթիա կին իշխանին և դեմետր որդի նր՝ ողջ անարատ և պայծառ դիմօք · և ձայն բարձեալ ուրախութբ՝ ասէին · մե՛ծ ես ա՛ծ քրիստոնէից , որ ազատեցեր զմեզ 'ի դառն մահուանէ , և 'ի յաւիտենից կորստենէ 'ի ձեռն ծառայի քո կուռնելիոսի , և ցուցեր զզօրութի քո մեծ : Զայնակից եղեն նց և ամ բազմութին, և միաբարբառ գոչէին · մե՛ծ է ածն քրիստոնէից՝ զոր քարոզէ կուռնելիոս : Եւ հաւատացին յաւուր յայնմիկ իշխանն և ամ ընտանիք նր , և բազմութին՝ որ պեղէին զհողն և զքարինս տաճարին · և մկրտեցան ամենեքեան (8) : Եւ յայնմ օրէ և անդր նստէր ան կուռնելիոս 'ի տեղի մի երևելի՝ ստադիոն ասացեալ (որ է ասպարէզ), և ուսուցանէր հրապարակաւ զաւետարանական քարոզութին՝ որոց դային առ նա · որով և օր ըստ օրէ բազմանային հաւատացեալք 'ի նր :

Եւ արարեալ անդ կուռնելիոս ամս երիս՝ քարոզէր զաւետարանն փրկութե ընդ ամ գաւառն , դարձուցանելով զամենն յա՛ծ ճշմարիտ · և այնպէս մերձեցան 'ի հաւատսն քի՝ գործակցութբ դեմետրիոսի իշխանին բարեպաշտի , մինչև թէ ուրեք բագինք մնացեալ լինէր , ընթացեալք անդ՝ ինքեանք ձեռօք իւրեանց խորտակէին , և այրէին զմեհեանս : Եւ յայն երիս ամսն՝ զոր եկաց կուռնելիոս 'ի սկեփսիոն , շինեաց եկեղեցիս , և հաստա-

տեաց քահանայս և պաշտօնեայս ։
Իսկ իբրև մերձեցաւ կէտ կոչման նր, ձայն
եղև առ նա յերկնից, և ասէ. Եկեաջի՛ր կնու-
նելոյ և հանգիջի՛ր ը արդարոյն յարքայու-
թեն երկնից . զի ահա պատրաստեալ կայ
քեզ արդարութե պսակն ։ Իսկ նր գոհացեալ
զայ՝ աղօթեաց յերկար . և կոչեցեալ առ
ինքն զգլխաւորս 'ի հաւատացելոց՝ խրա-
տեաց զնս հաստատուն կալ 'ի սբ կրօնս ած-
պաշտութե . և օրհնեաց զնս եղբարքն նր
և զգաւառն . և հանգեաւ խաղաղութբ 'ի քս
յամսեանն փետրվարի (9) ։ Յայնժամ ժողո-
վեալ բազմութե քղքին՝ արարին կոծ մեծ 'ի
վր նորա՝ վն զրկելոյ իւրեանց 'ի սբ հօրէն
և 'ի լուսաւորչէն հոգւոց . և բարձեալ զպատ-
ուականս մարմին նր Եւնոմիոս քահանայն և
Դեմետրիոս ածասէր իշխանն հանդերձ ուխ-
տիւ եկեղեցւոյն՝ տարան պատուով և թա-
ղեցին 'ի նոր գերեզմանի, զոր վն տան իւրոյ
պատրաստեալ էր իշխանն 'ի տեղւոջ անդ
տաճարին կործանելոյ ։
Արդ՝ առաջինքն 'ի հաւատացելոց անտի
ստէպ ժողովէին 'ի վր տապանի սբյն և կա-
տարէին զյիշատակ նր . այլ զկնի բուսաւ
մորենի 'ի տեղւոջն, և ծածկեաց զտապանն.
և յանցանել ժամանակաց անյայտ եղև տե-
ղին 'ի մորենւոյն (10) . և զի ած առնէր բա-
զում սքանչելիս 'ի տեղւոջ անդ, զարմա-
նային բնակիչք երկրին, և զստուգութի ի-
րացն անգիտանային . և բազումք տգիտութբ
զմորենին համարէին սրբազան ինչ լինել,
և

և պատուհէին զտեղին ։ Նա եկաց մնաց այն-
պէս 'ի ծածկուն, մինչև հաստատեցաւ հա-
ւատ քրիստոնէութեան ընդ ամ երկիր · և ապա
յաւուրս փոքուն Թէոդոսի կայսեր՝ դէպ ե-
ղև, զի ոմն եպսն տրովաղայ սեղբխանոս՝ որ
և սիրոհանոս, եկն եհաս այցելութ 'ի սկեփ-
սիոն · անդ ետես 'ի տեսլեան զսբն՝ որ ասէր
ցնա · բազում ժամանակք են՝ յորմէ հետէ
բնակեմ ես աստ, և ոչ ոք յայտ եղև ինձ՝ բաց
'ի նոցունց անտի, զորս մկրտեալ էր իմ ։
Նա զարթուցեալ եպսն 'ի տեսլենէ՝ խոր-
հէր ընդ միտս վն հրաշալի յայտնութես, և ոչ
կարէր հասու լինել բանիցն ասացելոց ։ Ա-
պա 'ի միւսում գիշերի միւսանգամ երևե-
ցաւ նմ սբն, և ասէ · ես եմ կուռնելիոս հա-
րիւրապետն · և է դիր հանգստեան իմոյ ընդ
մորենեաւ մերձ 'ի տեղի մեհենին քանդելոյ ·
այլ դու շինեսցես ինձ աղօթարան այլ մօտ 'ի
հանգիստ դեմետրիոսի ծառային իմյ · այն է
տեղին կոչեցեալ պանդոքին (որ պանդոկ
կմ հիւրանոց) · յորում վայրի եդեալ կան
բազում մարմինք եղբարց մեր 'ի քն կատա-
րելոց ։

Յարուցեալ եպսն ընդ առաւօտն՝ ժողովեաց
զուխտ եկեղեցւոյն, և պատմեաց նց զտեսիլն ·
ապա գնացեալ բազմութբ 'ի տեղին՝ արմատա-
խիլ զմորենին արարին, և պեղեալ զհողն՝
գտին զտապան սբյն, և ուրախ եղեն յոյժ ։
Նա իբրև կամէին բառնալ և տանել զայն 'ի
տեղին պանդոքին՝ ուր հրամայեալ էր տե-
սիլն եկեղեցի շինել, տեսեալ եպսին՝ թէ

շուրջ

շուրջ զտեղեաւն կայ բազմութի՛ գերեզմանաց, անպատեհ համարեցաւ անդ հիմնարկանել եկեղեցւոյ. և խորհէր զայլ տեղի գտանել դիպողագոյն. բայց վերստին հրաման եառ ՚ի տեսլեանն՝ անդ ՚ի նշանակեալ տեղին շինել: Հոգայր եպսն և վս ծախուց շինուե. յայնժամ երևեցաւ սբն կուսանելեաց միում ՚ի բարեպաշտ աւագաց, որում անուն էր Եւգինէս, և հրամայեաց նմա ՚ի գլուխ տանել զշինութի եկեղեցւոյն, տուեալ նմա և զձև և զչափ շինուածոյն. և նր եկեալ առ եպսն՝ պատմեաց զպատուէր սբյն. և վաղվաղակի ձեռն ՚ի գործ արարեալ կանգնեցին զտաճարն յանուն սբյն կուսանելեացն. և պատրաստեցին տեղի տապանին ՚ի ներքոյ բեմին:

Իսկ եղև յորժամ համբերձեալ էին բերել հանդիսապէս ՚ի ներքս զպատուական մարմին սբյն, ինքնին տապանն առանց ուրուք հուպ լինելոյ սկսաւ շարժիլ և գնալ զհետ ուխտի եկեղեցւոյն. ընդ որ զահի հարեալ ամենն՝ մեծաձայն գոչմամբ բարձրացուցանէին զօրհնութիս այ. և այնպէս բազմութին յառաջէր, և տապանն զկնի գնայր, մինչև մերձ եղեն ՚ի դուռն եկեղեցւոյ. ուր երագեալ տապանին՝ եանց ընդ մէջ բազմութեն, և եմուտ յառաջագոյն քան դուռն փոքր՝ որ ՚ի կողմանէ, և եկն եկաց անշարժ ՚ի կողմն մե բեմին: Իսկ Թէպէտ բազմօք բուռն առնէին շարժել զնա փոքր մի ևս, և տանել հանգուցանել ՚ի մէջ խորանին, այլ ինքն ան-

սէին՝

սին՝ թէ անզգրդուելի կայ մնայ, 'ի միւս ա-ւուրն՝ թէ անդամնօր կամքէն սր̃յն հնազանդել ։ եւ այս սքանչելիք եղեն պատճառ դարձի ո-մանց 'ի հեթանոսաց մնացելոց 'ի քաղաքի անդ ։ (11)

Եւ այնուհետեւ ամ յամէ կատարէին միա-բան հաւատացեալք զյիշատակ սր̃յն 'ի տա-ճարի անդ նորա ։ Իսկ յաւուրս Աթանասի եպ̃սին Տրովադացւոց կարգեցաւ առանձին եպ̃ս Սկեպսիոնի Փիլոստորգիոս անուն ։ սա յորդորեաց զԵնկրատիոս ոմն պատկերահան՝ զարդարել նկարուք զտաճար սր̃յն Կուռնե-լիոսի, եւ 'ի միջի դրոշմել զպատկեր սր̃յն կենդանագրութ̃ ծերունի հասակի ։ իսկ նա քանզի էր այր զայրատիրա, 'ի նկարել անդ իւրում դժուարէր վասն չգիտելոյ թէ յո՞ր-պիսի դէմս կերպարանաց ձեւացուցանիցէ ։ եւ բարկացեալ թշնամանէր բանիւք անար-ժանս զեպ̃սն, եւ զսր̃ն յ̃ նմա ։ Թող ցուց-ցէ ինձ (ասէ) զդէմս իւր Կուռնելիոս, զի գիտացից նկարել զարժանն ։ Եւ մինչդեռ բանքն 'ի բերանն էին, գլորեցաւ անկաւ 'ի մեքենայէն 'ի վայր՝ յոր ելեալն էր ։ 'ի վեր վազեցին՝ որք մերձն կային, եւ գտին զնա չարաչար խորտակեալ եւ իբր անշնչացեալ ։ տեսին՝ զի եւ ոտունք եւ ձեռք եւայլն 'ի բերան նր̃ ։

Յայնժամ իմացեալ զպատճառս պատուհա-սին՝ դիմեցին աղօթիւք 'ի տապան սր̃յն ։ եւ ահա 'ի գիշերին՝ որ յաջորդէր, երեւեալ ինքնին սր̃ն Կուռնելիոս 'ի տեսլեան՝ կալա-

զձե-

զձեռանէ ենկրատիոսի, յարոյց զնա և ող-
ջացոյց. և խրատեալ զնա սուղ բանիւք՝ ե-
ղև աներևոյթ: Յարուցեալ առնն՝ գոհա-
ցաւ զսրբոյն. և ըստ կերպարանացն՝ որ երևե-
ցաւ նմա, գրեաց զպատկեր կոռնելիոսի.
զոր և բազում պատուով պահէին բնակիչք
տեղւոյն իբրև հրաշալի 'ի պատկերս. իսկ
'ի տապանէ սրբոյն եղեն բազմապատիկ նշանք
'ի բժշկութիւն ախտաժետաց, որոց հաւա-
տովք մերձենային առ նա: Այլ է և տունն
կոռնելիոսի երբեմն 'ի կեսարիա, որ յետոյ
եղև եկեղեցի և ուխտատեղի 'ի պաղեստին,
ըստ հերոնիմոսի: (12)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Բարւոք եգաւ 'ի նախնեաց մերոց՝ յորոց և իցէ. տօն սրբոյն կոռնելիոսի՝ 'ի միջոցի սոսա ապայից. զի կատարումն նր եղև յամսեանն փետրվարի. Թէպէտև ոմանք (որպ վկայագիրք հայոց, և Յ=Հ) 'ի ի̃է փետր. դնեն. և ոմանք (որպ լատինք) 'ի ի̃ փետր: Թող զոր յոյնք յայլ փոխագրեցին օր. Թերևս առ այլառ պահելոյ զփետր. ի̃է. վս տօնի ոն̃ճառաջին: քանզի ըստ ժամագր. փոխագրեալ է 'ի սեպտ. 13. շփոթելով արդեօք ը̃ն այլում կոռնելիոսի ծերոյ. զորմէ լիցի բան 'ի կարգս յիշատակելեաց. սեպտ. 15: և ըստ բասիլ. 'ի հոկտ. 20. ոչ զխնեմ որպիսի շփոթութ: Այլ չէ ինչ ընդհանրա յայսպիսի շփոթութեէց այն, զի և 'ի տօնացոյցս ազգիս՝ 'ի սխմնեան տօնացուցէ և այսր՝ ապագրեալ օրինակք սկսան զկոռնելիոս ը̃ն շմաւոնի և ը̃ն պօղիկարպոսի օտարացուցանել 'ի տեղւոջէ աստի, և դնել մօտ 'ի վախճան տօնացուցի՝ զկնի մինասեանց նախ ք̃ զեւստաթեայանս:

(2) Գեղեցիկ միաբանին ճառընտիրք մեր, և վկայաբանութիւնք այլոց ազգաց յեակման և 'ի պատահական բանս վա-

վարուց սրբոյն կուռնելիոսի . (թէպէտև ոմանք յարձակա-գոյն, և ոմանք համառօտագոյն . յորոց և մեք բաղդա-տութ̃ առաք զմ̃ն, առաւելապէս զհետ երթալով ըն-տիր ձառընտրի . Զ . և ձեռագիր օրինակին՝ զոր բերէ բոլլանդ 'ի մետափր': և եթէ կայցէ ինչ տարբերութիւն արժանի գիտելոյ՝ ծանուսցուք 'ի կարգին : Մեր հա-րևանցի ծանիր, զի անուն սրբոյն՝ ոմ̃ 'ի յն . գրի գոռնի-լիոս . և 'ի լտ . գոռնէլիուս, նոյնպ̃ և սովորաբար հին օրինակք մեր ունին կոռնելիոս . այլ ոմ̃ սովորութիւն նոր քաղցրահնչիւն գոգցես ընտրեաց կաթուղիկոս ա-սել՝ փխկ ասելոյ թ̃ յունաց և ըստ նախնեաց կաթողի-կոս, նոյնպ̃ եւ մեւս անտարբեր սովորուն կուռնելիոս հնչելոյ :

Դարձեալ խորագիրք ընտիր ձառընտրաց են այսպէս . * գործք սրբոյն կոռնելիոսի հարիւրապետի || . որ ասի թ̃ յն . բռաքսիս . և լտ . ակտա . (յորմէ և 'ի մեզ ասի անխտիր, գործք առաքելոց . կմ̃ պրակք առաքելոց) . և 'ի դէպ գայ անխտիր պատմութիւն կատարելոցն մար-տիրոսութ̃, և խոստովանողական ճգնութ̃ . այլ մեք առ-որոշելոյ՝ առաջնոցն դնեմք վկայաբանութի, և յետնոցն վարք . թ̃ տեղւոյն և զերկուսն միանգամայն :

(3) Համառօտագոյն ուղիղ թուի՝ իմանալ ը̃ բարոնիոսի 'ի բանից սրբոյն ղուկայ, թէ կուռնելիոս էր ազգաւ և Ցաւ հռովմայեցի յիտալիոյ . վ̃ս և գունդ զինուորութ̃ նր̃ իտալացի ձայնի . որ և կարծի լինել 'ի կարգէ վե-ցերորդ լեգէոնին կոչեցելոյ երկաթի . զոր թ̃ գրելոյ դիոնի . գ̃էբր . ծէ̃ . կարգեալ էր օգնութեան հայոց 'ի անօսութի հրէաստանի : Այսմ մեկնութե տրրապէս հա-մաձայն գտանի 'ի հայերէն թարգմանութ̃ գործոց ա-ռաքելոց՝ որոշ բառիւս իտալացի . ուր 'ի յն . [illegible], և 'ի լտ . [illegible], որչափ կարեն նշանակել զիտալա-ցին, նոյնչափ և զիտալիկեցին՝ ը̃ զգունդն զայն, որ յիտալիկայ քաղաքէ բետիկայ գաւառին սպանիոյ . ո-րում նպաստեն և Հ = Ց, և ձառընտ . Դ . յասելն՝ * 'ի գնդէ իտալիկեցոց || . ըստ իմիք և հերոնիմոս . այլ առաւել քան զմ̃՝ հին ժամանակագրութիւն ինչ սպա-նիացւոց : Եւ այսպէս երկուստեք հաւանական կար-ծիք լինին առ իմաստունս :

Բայց քանզի բիճարիոս սպանիացի բազմօք պնդէ զա-ւանդութիւն ազգին իւրոյ, և արտաքոյ եղեալ խնդրոյս՝ իշխէ ասել, թէ բովանդակ գունդն եղեալ 'ի պարէս-տին՝ էր յիտալիկայ սպանիացւոց, և թէ այն գունդ

էր

էր՝ որ զաստ յաւուրս Պիղատոսի յեհէմ. Է այս գրեթ_
ուճարեալ բոլլանդայ՝ ասէ հեգնելով. * մինթէ ակյոշատ
,, պատուճակի՛ն ինչ համարի բռճարիոս զանազորոյն ձեռ_
,, ուաց յարձակումն ՚ի վ՟ր քս՟ի, մինչև զայգ և սպառ_
,, ծանս իւրոց ազգայնոց յօժարեացի ընծայել. մինթէ
,, յասել անդ մատթ. իէ. ժողովեցաւ ամ՟ գունդն, ա՟նդր
,, կոչեցեալ իցեն ՚ի կեսարիոյ ամ՟ զինուորք կուսակ_
,, լիոսի, եթէ մի միայն գունդ էր յեհէմ||: Այլ յայտ
է՝ թէ այս կշտամբումն ինչ ոչ սանանէ հիմ աւանդութ
ազանիացւոց. թող և զնոյրակերն՝ զոր յաւելու աս_
մայոս, թէ կայ ՚ի սպանիա արձանատոհմ աւանդավաս_
դեանց, որք ասեն զինքեանս ՚ի սերընդոց կուսակլիոսի
հարիւրապետի: Եւ զայս գիտեմ, զի միով մատամբ նը_
շաւատէ ազանիացւոց սր՟ գիրն, երբ ոչ ասէ՝ յիտա_
լացի գնդէ պարզապէս, և ոչ ՚ի գնդէ իտալացւոց. այլ
թէ ՚ի գնդէն՝ որ կոչէր իտալիկէ (Է՟ ձայնին): Այս_
քան առ այս:

(4) Գրեթէ ամ՟ մեկնաբանք միաբանին Է՟ Հ. ասել վ՟ն
կուսակլիոսի. * յաւուրս առաքելոցն նախ սա հաւա_
,, տաց ՚ի քս՟||: Զի թէպէտ ներքինին եթեովպացի յառ_
աջ էր քան զսա փոքր մի, այլ զարձ նր՟ անձնական,
և առանձնական բան ունելոյն. իսկ սորայս համբաւա_
կան՝ ամ՟ տամբ իւրով ՚ի մայրաքաղաքի. թող զառաջին
հարիւրապետն՝ որ ՚ի կենդանութ քս՟ի հաւատաց. եր_
կոցունց յառաջուն եղև ուռհայ մերս երանելին աբգար
թգ՟ր, որ նախ փրկչին հաւատս ընծայեցոյց, և յետ
համբարձման նր՟ ընկալաւ զկնքումն ՚ի ձեռն սր՟յն Թա_
դէի՝ իւրովքն հանդերձ:

(5) Զոր լաւագոյնք մեկն աւանդեն, թէ ձեռնադրեցաւ
եպս՟, համաձայն յն. բասիլ. մարտիրոսք ՚ի գործոյն
ևեթ առաքելոցն՝ ասելով. * կոչեաց եպիսկոպոս, և
հաստատեաց քահանայս և պաշտօնեայս (՚ի սկեփսիոն)||.
որ է գործ եպս՟ի. որով և երևին ասել՝ թէ իցէ եպս՟
առաջնական սկեփսիոնայ. որոյ փոխան դնի ՚ի յն. բա_
սիլ. * ձեռնադրի եպս՟ սկամանդրու ||: Բայց ժամա_
գիրքն յն. ասէ. ընկալեալ * զվերակացութի սկեփսիո_
նի ||. համաձայն Հ.: ուր լաւագոյնք ենթադրեն՝ թէ կան_
խաւ ձեռնադրեալ իցէ յեպս՟ն կեսարիոյ. թող զոր
ոմանք ասացին, թէ առաջին եպս՟ կեսարիոյ եղև զա_
քէոս մաքսաւոր. և ապա կուսակլիոս հարիւրապետ.
ապա թէոփիլոս: և այլք՝ թէ սր՟ն պետրոս յետ շրջե_
լոյ զամս ինչ ՚ի քաղաքն՝ եկեալ յիշխան քաղաք հել_

լես.

ընտպոնտոսի՝ անդ ձեռնագրեաց զկուռնելիոս. և թէ
դուցէ անուն կոչեցեալ եղև 'ի կեսարիա յետ մահուն զա-
քէոսի : Այլ այսպիսի բանք անհաւաստիք ոչ են չափ-
թելի ՂԸ սոցա բանից : Զայս գիտեմք, զի մեծ էր պա-
տիւ եղանեւ կեսարիոյ պաղեստինացւոց ( ոչինչ ընդ-
հատ 'ի կեսարիոյ կապադովկացւոց ), և 'ի սկզբան անդ
նշանաւոր և քան զեւէ մին՝ մինչև էր պատրիարգական
պատիւ ընծայեալ աթոռոյն նմի :

(6) Համարձակուէ աշակերտաց 'ի կեսարիա յետ դար-
ձին կուռնելիոսի չէք տարակոյս, զի և յառաջ քան
զդարձն իսկ ունէին անդ աշակերտք ոչ սակաւ համար-
ձակութի անկասկած զօրով յերկիւղածուէ կուռնելիո-
սի հարիւրապետի. զի ոչ միայն մի փիլիպպոսի գրեալ
է, * շրջեալ աւետարանէր ամ քաղաքացն մինչև 'ի գալ
,, նր 'ի կեսարիա || . Գործ . Ը . 40 . այլ և մի պօղոսի՝ թէ
յորժամ խոկային սպանանել զնա եհմացիք, * խմացեալ
,, եղբարց՝ իջուցին զնա 'ի կեսարիա ( իբրև յանկասկած
տեղի առ վայր մի, ) և ( անտի ) առաքեցին 'ի տարսոն
( քաղաք իւր ) || . Գործ . Թ . 30 :

(7) Հարիւրաւորեգաց անորոշակի՝ 'ի միաբանել զայլ-
և այլ գրչուէս վկայագրաց . զի ուր 'ի Ճառընտ. Բ. և
Զ. երկիցս և երիցս գրի լոկ բազմուէ, 'ի Ճառընտ.
Դ. ուղ և առ մր իէլի, երկիցս նշանակի թիւ արանցս
ՂԾ. և 'ի Հ. երկիցս . յօրինակս ինչ ՂԾ. և յոմանս ՆԾ:
'ի Յ. բառիլ . միանգամ, ( ցը 'ի ժամ հաւատալոյն )
մՁէ . և առ մետափր . 'ի նմին վայրի, մէ : Դարձեալ
զաւուրս աշխատուէն Ճառընտ. Դ. և յայսմաւուրք
Հ. ( որք համարին երկու օրինակք մի և նոյն մկ" . )
յերկարեն արտաքոյ այլ ամ վկայաբանից՝ յաւելուն . * Ժ
օր յոյժ աշխատեցան, և ոչ կարացին պատնել զնո || :
մեք եդաք ՃԾ Ճ. Զ. ուր յիշի միջոց երկուց ևեթ ա-
ւուրց : Սոյնպ միայն 'ի Հ. գնի յօրինակի՝ որդիք իշ-
խանին, երկիցս և երիցս . ուր և Ճ. Դ. և մր իէլ՝ և-
զակի գնեն՝ համաձայն այլոց Ճառընտրաց և ամ վկա-
յաբանից :

(8) Երկու գծուձարին պարագայք զտանին առ մե-
տափր" . յորմէ պատ են Ճառընտիրք մեր : Մի՝ զի հա-
մանգամայն տնէ լինել զկործանումն բագնաց և զառ-
ձարին՝ յառաջնում անդ նուագի աղօթից սըբյն . զայս
եդեալ՝ հարկաւորի ասել անպատճառ . * յետ աղօթե-
,, լոյն եւ 'ի տաճարէն . ընդ նմին եղին և գեմերքիս և
,, ամ բազմուէ ամբոխին || . պարաթէ ոչ և 'ի վր նը ան-
կեալ

կեալ լինէր տաճարին ։ Ուր եղեալքն մեր ըստ Ծ. ող-
լինչ դժուարութ՟ կրեն ։

Երկրորդ՝ զի գնէ զմկրտութի դեմեարխոսի նախ քան զյառնել կնոջն և որդւոյն ․ ոպ՟ թէ չկցէ յանձն առել սբ՟ն յարուցանել զնա , եթէ ոչ նախ մկրտեսցի իշխանն ։ Եւ ո՞ ոչ ասէ , թէ յայդմ նշմարի անտեղութ՟ ինչ , զոր ոչն տանին Ծ. և Հ. յասելն՝ թէ նախ գործեաց սբ՟ն զսքանչելիսն՝ յարուցանելով զկին և զորդի իշխանին ․ և ապա կատարեալ հաւատով ամեքին ընկալան զմկր-
տութի ։

(9) Բացայայտ գնի օր կատարման սբ՟յն 'ի վախճան պատ-
մութ՟ն՝ լինել 'ի քսան և երկուս փետրվարի ․ 'ի Ծ. և
'ի Հ. այլ մեք ոչ իշխեցաք որոշել այնպ՟ ․ զի կասկա-
ծեմք ( ոպ՟ ասասք 'ի փորձոյ այլևայլ տեղեաց , ) թէ
գուցէ փոխանակ գնելոյ դըչաց 'ի փետրվարի ․ ԻԲ ․ ( ոպ՟
գնի 'ի Լ. ) դրեալ իցեն 'ի փետրվարի ․ ԻԲ ։ Թո՛ղ զի ոչ
գիտեմք ուստի՞ առեալ գնի 'ի քանի մի ճաշոցս ձեռա-
գիրս տօն սբ՟յն կուռնելիոսի 'ի մայիսի ․ Ա ․ և այն 'ի
միջոցի ապայից՝ որ ա՛նկ է փետրվարի ։ ոպ՟ և 'ի բա-
սիլ. Յ. ( գնէ ԺԲ օրինակաց ինչ ) եղեալ է 'ի հոկտ.
20. ուր ժամագիրք . Յ. ( և այլ օրինակք բասիլ. ) դը-
նեն 'ի սեպտ. 13. ոպ՟ յիշեցաք 'ի ծան՟ . (1) ։

(10) Կարի 'ի դէպ գնի ըստ Ծ. բուսանել մորենւոյն
զկնի ժմկաց , իմա՛ յանհոգութ՟ ․ քան թէ ԺԲ մետափր՟ ,
բուսանել նոյն ժամայն ․ որ լինի գործ հրաշից՝ անհա-
մաձայն պատմութ՟ ։ Հ. զկրկին միտս երևի ընծայեցու-
ցանել ։

(11) Տեսիլ կուռնելիոսի առ սեղբ՟իանոս եպս , և չի-
նութ՟ եկեղեցւոյն , յիշի և 'ի Ծ. և 'ի Հ. այլ հարևան-
ցի միայն ․ զոր պէտք եղեն մեզ ճոխագոյն ստորագրել
ԺԲ բոլլանդայ՝ առեալ 'ի ձեռագիր օրինակէ մետափր՟ ․
ուր եթէ ոք կամի մանր կրկտել , գտանէ զանուանս
եպսաց տրովադայ և սկեփսիոսի նաև յայլ եկեղեցա-
կան պատմութ՟իս ։

(12) 'Ի վախճանի ծանիր , զի գրի 'ի վարս սրբուհւոյն
պաւղայի ( այն է թուղթ հերոնիմոսի ․ ԻԷ ․ Գլ․ Է ․ հա-
մար ․ 8 ․ ) թէ 'ի շրջիլ նր՟ յուխտս 'ի պաղեստին , * դէմ
,, եղեալ գնաց և յաշտարակն ստրատոնի , այն է՝ զոր
,, հերովդէս արքայ հրէաստանի 'ի պատիւ օգոստեայ
,, կեսարու կեսարիա անուանեաց ․ և ետես անդ ըզ-
,, տունն կուռնելիոսի՝ լեալ եկեղեցի քրիստոսի || ։ Ուր զար-
մանան ոմանք 'ի լատին քննչաց , թէ զիա՛րդ չիշէ յայսմ

պատմութ և գերեզման կուռնեղիաւ՝ սպասաւորեալ զքանդիչեաւքս սո վկայարանից. բայց 'ի շուր են շարժմունք. զի գերեզման սմին ոչ էր 'ի կեսարիա, (որ գնեն ոմանք 'ի լա.) այլ 'ի սեպփոփոխն քաղաք քարոզութն նրա որ բացայայտ գրեն ամ վկայագիրք Յն. և Հյ. բայց թէ յետ ժմկաց զի՞նչ եղեն նշխարք սմին, ոչ ունիմք ասել:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## սրբյն Շմաւոնի ազգականին քսի, և եպսին եմի : (1)

Հ. սեպտեմբ. 28. Լա և ապր. 20. բստ յնա": Տրեէլ. սեպտ. 28. և ապր. 17: Հ=Յ. սեպտ. 28: Յ. էասէլ. սեպտ. 28: Վասմագր. սեպտ. 18. և ապր. 27: Լ. ֆեպր. 18: Բոլլանդ. ան. ֆեպր. հատ. Գ. երես. 53: Հասունեարդ. երես. 5: Նատալ. պատմ. եկեղ. Գ. 10. և 32: Ճառընտ. Ի. էջ. մյգ. և Օ. ճծէ. և այլն: (2)



ԱՅՍ ԵՐԱՆԵԼԻՍ շմաւոն (որ և սիմէոն կամ սիմոն,) ազգակից մարդացելոյն այ՝ քսի փրկչին մերոյ՝ սր մարմնոյ, մի էր յեօթանասունն և երկու աշակերտացն, որիշ 'ի սիմոնէ կանանացւոյ՝ շմաւոն նախանձայոյզ կոչեցելոյ՝ որ 'ի թուոյ երկոտասանից. բայց կոչի և առաքեալ՝ որպէս և այլ աշակերտք սոն, եւս և աշակերտք առաքելոց

անդամ ։ Որդ սա՝ զորմէ առաջիկայ ճառս
է, կոչի և է ազգական ք՟նի, ը՟ որում էր որ-
դի կղէոփպայ եղբօր յովսեփայ ը՟ ածահայր
անուանելոյ, և եղբայր յակոբայ՝ ը՟ ածեղբայր
կամ եղբայր տ՟ն կոչեցելոյ ։ Սա զի կղէոփ-
պասն այն՝ որ 'ի վիճելն մ՟տ յարութե՟ տ՟ն ը՟
ուղեկցի իւրում 'ի ճանապարհին էմմաուսու-
սայ, յանծանօթս եւտես զտ՟րն և համարձա-
կախօս եղև, մինչև 'ի բեկանել հացին՝ ծա-
նեաւ զնա, էր եղբայր ս՟բյն յովսեփայ հիւ-
սանն՝ որ խօսնայր եղև ամենաս՟բ կուսին
մարիամայ ը՟ ածածնի, և հայր կոչեցաւ որդ-
ւոյն ն՟ր և որդւոյ կուսին ․ որով և նա ինքն
կղէոփպաս՝ համարի հօրեղբայր փրկչին մե-
րոյ ․ և որդիքն ն՟ր՝ հօրեղբօրորդիք նորին տ՟ն ։
Նաև ահա մի էր 'ի ն՟ցէ և երջանիկս շմաւոն
վերաձայնեալ ազգական ք՟նի, այս է հօրեղ-
բօրորդի ․ որ և 'ի նոյն միտս ը՟ հրէից սովո-
րութե՟՝ եղբայր յ՟նի կոչի յաւետարանի՝ հանդ-
դերձ եղբարբք իւրովք ․ որք են յակոբոս,
յովսէս, և յուդա ։

Նորին կրկին ազգակցութե՟ տեսանի ը՟ շմաւոնի
և ը՟ ք՟ն՝ իրական բանիւ իբրև մօրաքեռոր-
դի, եթէ դիցի ը՟ ոմանց՝ եթէ մարիամ կղէո-
փեայ՝ կոչեցեալ քոյր մօր տ՟ն իբրև մեր-
ձաւոր ազգական, իցէ մայր յակոբայ եղ-
բայր տ՟ն կոչեցելոյ ․ զորմէ չէ տեղւոյս ա-
սել ․ այլ այլում ժամու թողլի է ։

Որդ յետ համբառնալոյ փրկչին՝ շմաւոնս
այս հանդոյն այլոց առաքելոց և աշակեր-
տաց շրջեցաւ նախ քարոզութ՟ յայլևայլ տե-
ղիս,

ղիս, և աւետարանեալ զյս քս՝ իբրև վկայ
ականատես և սպասաւոր բանին այ, լուսա-
ւորեաց զբազումս 'ի հաւատս ճշմարտութե,
կրելով ազգի ազգի նեղութիս և չարչարանս
վն անուանն տն . և ապա եղև եպս եդէմի՝
զկնի կատարման յակովբայ արդարոյ եղբօր
տն . Քզի յետ վկայութեն յակոբայ, և աւե-
րածոյն եդէմի՝ որ եղև փոքր մի զկնի, աշա-
կերտք տն մերոյ միացեալք յայնմ ժմկի՝ ժո-
ղովեցան 'ի միասին յեդէմ հանդերձ ազգա-
տոհմաւ տն . և արարին խորհուրդ՝ եթէ
ո՞ւմ արժան է ունել զտեղին յակոբու . և
միաբան հաստատեցին, թէ շմաւոն եղբայր
նր՝ թէպէտ և այր ծեր, արժանի է աթո-
ռոյ եկեղեցւոյն եդէմի : Որ և զառաքելա-
կան քարոզութիւն ևս ք զևս 'ի կիր արկեալ քա-
րոզէր զքսի մծութիւն ը ամ կողմանս պաղես-
տինոյ . չինէր եկեղեցիս ըն տանելոյ ժամա-
նակին, և անպակաս առնէր զքահանայս և
զպաշտօնեայս . և այնպէս եկաց յաթոռն
հովուութե ամս բազումս . մինչև հասանել
նմա ճի արդեամբք յերկար ծերութի :

Իսկ եղև յետ առաջին հալածանաց եկեղեց-
ւոյ առ ներոնիւ (յամի տն իբր . 65), որ նա-
հատակեաց զգլխաւոր առաքեալսն զպետ-
րոս և զպօղոս, յարոյց երկրորդ հալածումն
դոմետիանոս, (յամի իբր . 93 .) այն՝ որ ար-
տասահմանեաց 'ի պատմոս կղզի զյհն յով-
հաննէս աւետարանիչ զմիայն մնացեալն յա-
ռաքելոց : Յետ այնորիկ կրկին ևս գրգռե-
ցաւ դոմետիանոս ուրոյն 'ի վն ազգին եբ-

րայեցւոց , հրաման տուեալ կոտորել զայ-
նոսիկ՝ որք էին ՚ի տանն դաւթի , զի մի՛ ոք
պայազատ մնասցէ թգրութեան հրէից . և այս
է խորումն խորհրդոյ , զի մի՛ գտանիցի ոք
ում զհերովդէս տիրել ՚ի վր ազգին՝ յազգէ
յուդայ , և անուանմբ թգրական ցեղին զօ-
րասցի ՚ի տրութեն քան զհերովդէս . այլ է
գաղտնի տնտեսութեն այ , զի մի՛ մնասցէ
անձնկալութի հրէից խնդրել զմեսիա արտա-
քին շքով իշխանութեն՝ յետ մերժելոյ նոցա
զճշմարիտն զքս զթագաւորն փառաց : Եւ
յայսպիսի պատճառաց նահատակեցան բա-
զումք ՚ի հաւատացելոց հրէից՝ որք համա-
րէին յազգէ դաւթի , յորոց և ոմանք էին ՚ի
մերձաւոր ազգականութեն փրկչին մերոյ ըստ
մարմնոյ :

Իսկ սրբն շմաւոն՝ թէպէտև երևելի էր յայնմ
ցեղի , բայց զի ծերացեալ էր յոյժ , չարա-
րին ինչ փոյթ զնմէ խնդրակք կայսեր . և
այս դրձլ ՚ի խնամոցն այ՝ զի յերկարեսցէ
նա ՚ի կեանս ՚ի պէտս հաւատացելոց : Այլ
կալան զերկուս եղբօրորդիս շմաւոնի , որ էին
որդիք կոդ թոռունք յուդայ , և տարեալ կա-
ցուցին առաջի դոմետիանոսի՝ ասելով , թէ
ահա սոքա են ՚ի ցեղէ դաւթի , և յազգա-
տոհմէ յիսի՝ որ անուանեցաւ քս : Եհարց
զնս թագաւորն , թէ արդարև յազգէ դաւ-
թի՞ էք դուք . և նք խոստովան եղեն , թէ
այո՛ : Ընդ նել սկսաւ կայսրն զինչս և զստա-
ցուածս նց , տեսանել՝ թէ արք երևելի՞ք ի-
ցեն և ձոխք , մինչև կարող լինել թեկն ա-
ծել

ծել Թգ՟րութե՟ . և 'ի վ՟ր եհաս , թէ ոչ ընչից բազմութի՟ էր ն՟ց , այլ միայն ունէին զինս երեսուն վիճակի անդոց , և անտի ևս հասս տային . և ձեռօք իւրեանց գործէին և կերակրէին . մինչև ցուցանել ն՟ց և զձեռս իւրեանց 'ի վկայութի՟ . զի ահա և ձեռք մեր ասեն՝ բրտացեալ են 'ի հանապազորդ գործոյ անտի . և խստութի՟ մարմնոց մերոց յայտ առնէ զվաստակս մեր ։

Իբրև հարցան ն՟ք վ՟ն ք՟սի և վ՟ն արքայութե՟ ն՟ր , եթէ որպէս և ո՟ւր և ե՟րբ յայտնելոց է Թգ՟րութի՟ ն՟ր՝ զոր ասէք . վերացեալ յերկինս , ետուն պ՟խնի և ասեն . ոչ այսր Տի է այն Թգ՟րութի՟ , և ոչ 'ի վ՟ր երկրի լինելոց է . այլ 'ի վերոյ քան զերկինս և 'ի վ՟ր հրեշտակաց . և 'ի կատարած Տի յայտնելոց է նա՝ 'ի ժամանակի իբրև գայ նա փառօք դատել զկենդանիս և զմեռեալս , և հատուցանել իւրաքանչիւր մարդոյ ը՟ս գործս իւր ։ Նա իբրև ոչինչ կարաց գտանել 'ի նն՟ա դամետրանոս տեղի մահապարտութե՟ , անգամնեաց զնն՟ա իբրև զարս տառապեալս , և եթող զնոսա ազատս . միանգամայն և հրամայեաց դադարեցուցանել զհալածանս 'ի քրիստոնէից ։ Նա ն՟ք իբրև արձակեցան , շրջէին տեսանէին զեկեղեցիս . և որք միանգամ հայէին 'ի նն՟ա , մեծարէին իբրև զկենդանի վկայս ք՟սի և իբրև ազգականս փրկչին մերոյ . ոմ՟ք և առաւել ևս զհօրեղբայր ն՟ց զերանելին շմաւոն ծերունին՝ զե՟նմի եպ՟սն ։

Յետ այսորիկ 'ի Թգ՟րել տրայիանոսի (յա-

մի տն. 98.), որ յարոյց զերրորդ հալածումն,
միւսանգամ յարեաւ նոյնպիսի յոյզ և խնդիր
վս մնացելոցն յազգէ դաւթի. մինչ զի յա-
րեան և ըդդէմ սբյն շմաւոնի թշնամիք յեր-
կուց կողմանց՝ ՚ի հրէից և ՚ի հեթանոսաց.
և ըստ երկուց գլխոց ևս ամբաստան եղեն
զնմանէ յատեան տրայիանոսի, թէ ՚ի տա-
նէ դաւթի է, և քրիստոնեայ. և էին գըլ-
խաւոր ոսոխք նորա ոմանք յաղանդաւորաց
ժմկին կմ ՚ի հերովդիանոսաց. յորս կային
և ոչ սակաւք ՚ի տանէ դաւթի. մինչև ՚ի
մատնել զայլս՝ մատնեցան և ինքեանք:
Արդ այսպիսի պատճառանօք չարախօսութե
ըմբռնեցաւ ծերունին շմաւոն, և ածաւ ա-
ռաջի ատտիկոսի (կմ ենտիկոսի) կայսերա-
կան հիւպատոսի՝ որ նստէր յեէմ ՚ի կողմա-
նէ ինքնակալին տրայիանոսի: Եւ բազում
հարցափորձեալ նր զերանելին՝ տանջեաց
զնա սաստկապէս զբազում աւուրս. և ստի-
պէր զնա ՚ի բաց կալ ՚ի հաւատոցն՝ որ ՚ի քս
յս. որպս զի ապրեսցի: Իսկ նա ըստ արժանի
իւրումն առաքինութե և հասակի կատարե-
լութե աներկիւղ քարոզէր զքս ած առաջի
ատենին. և այնպիսի զուարթութբ տանէր
ամ լլկանաց, ոպս զի ամ մարդ զարմանայր՝
թէ որպէս համբերէ նա այնմ ամի յայնպի-
սի հասակի. զի էր ամաց իբրև հարիւր և
քսանից: Եւ եղև յետ արկանելոյ զնա ՚ի
բանտ, ուր եկաց անսուաղ՝ սովու և ծարա-
ւու տանջեալ ոչ սակաւ աւուրս, ակնածեալ
հիւպատոսին ՚ի բազմամեայ և ՚ի սպիտա-

կա-

կացեալ ալեացն , և 'ի մեծաշուք երեսաց
նր պատկառեալ՝ գթացաւ 'ի նա , և կամէր
արձակել ։ Այլ անդրէն սկսան պնդագոյնս
ամբաստան լինել զնմանէ , թէ չէ պարտ
․ումա կեալ , զի խաչելեալ զոմն ած քարոզէ ,
և թգր մեծ զնա ասէ՝ հակառակ ինքնակա-
լաց ։ Վյր հարկ համարեցաւ իշխանն հրա-
ման տալ , զի ըստ օրինակի առաջնորդին իւ-
րոյ 'ի խաչ բեւեռեսցի ։ Ընդ այս մեծապէս
ուրախ եղև երանելին շմաւոն , և լցաւ ան-
պատմելի զուարթութբ՝ ոչ այն թէ արքայա-
կան պատուոյ և ծիրանւոյ հասեալ , զի պար-
ծանս և փառս անձին դիտէր խաչակից լի-
նել և նմանակից տն ազգակցին իւրոյ և
տն յոյ քի ։ և այնպէս յարազուարձ բեր-
կրանօք ոգւոյ՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս
այ 'ի տանջանս խաչի յեմ քաղաքի , ճ և ի
ամաց ըստ ասացելոցս ։ և ժողովեցաւ 'ի շտե-
մարանս երկնից արքայութն՝ իբրև հունձ հա-
սունացեալ , և արդեամբք լիակատար ըստ
հարիւրաւորն պտղաբերութն ։ (3)

Վործեցաւ այս յամի տն . 108 . յորում Ծմկի
յաջորդեաց յաթոռն եմիացւոց՝ յուստոս 'ի
թլփատուէ , երրորդ եպս եմի ։ Իսկ մար-
մին սրբյն շմաւոնի ամփոփեալ պատուով 'ի
հաւատացելոց յեմ՝ յետ ժամանակաց ան-
ցելոց ասի փոխադրեալ յարևմուտս ։ ուր
գտանին և ցարդ մասունք պատուականին նր-
խարաց նր ։ Զկատարումն սորա գեղեցիկ
գովութբ արձանագրէ հեգխիպպոս հաւա-
տարիմ օրինակագիր՝ ուստի հեռի Ծմկաւ ։

ուստի առեալ 'ի մէջ բերէ և Եւսեբի յեկե-
ղեցական պատմութե. Նաև թէ զի՞նչ վիճակ
էր եկեղեցւոյն յետ կատարման սրբոյն Շմա-
ւոնի՝ 'ի զօրանալ հալածանաց աղանդոց,
ստորագրէ նոյն մատենագիր. * Սոյն իսկ
„ այր (ասէ Եւսեբիոս զՀեգեսիպպեայ) 'ի
„ պատմել իւրում յաւելու և ասէ, թէ
„ յայնմ ժամկի իբրև զկոյս սրբոյ առանց ա-
„ պականութեան կայ մնաց եկեղեցի. զի իբ-
„ րու 'ի խաւարի թաքչէին (աղանդաւորք
„ առ լուսաւորօքն Տի որ առաքելովք),
„ թէպէտև էին ոմանք՝ որ կամէին ապա-
„ կանել զառողջ կանոնս զվ̄դպութեան կե-
„ նաց: Բայց իբրև փոխեցաւ յՏէ աստի
„ ամ̄ ժողովքն առաքելոց սրբոց, և եանց այն
„ դարն՝ որ արժանի եղև լսել ականջօք իւ-
„ րովք զիմաստութին Այ, ապա յայնժամ
„ սկսաւ մոլորութին հաստատիլ, այն՝ որ էր
„ նա առանց Այ, 'ի ձեռն մոլեգնութեան այ-
„ նոցիկ՝ որ փոփոխեն զճշմարիտ վ̄դպու-
„ թին: Զի ոչ մնաց ոք յառաքելոց անտի,
„ յայտնի և համարձակ կամէին քարոզել
„ զսուտ գիտութին ընդդէմ ճշմարիտ քարո-
„ զութեն. և այսպէս ձկտեցան ը̄ գաւառս
„ բազումս հալածանքն՝ որ 'ի վ̄ր մեր էին
„ յայնմ ժամկի: Սպ̄ և պիոնիոս սակենդաս
„ դատաւոր երևելի՝ իբրև ետես զաագմու-
„ թի վկայիցն, խռովեցաւ. և եցոյց թա-
„ գաւորին (տրայիանոսի) վ̄ն բազում ժո-
„ ղովրդոց՝ որ կոտորեալ լինէին յաղագս հա-
„ ւատոցս. և հանդերձ այսու՛իկ եցոյց նմ,
թէ

,, Թէ որ ինչ չար է՝ կամ արտաքոյ քան զօ-
,, րէնս է , ( Հաստատեցաւ քն քնի ) ոչ յան-
,, դիմանեցան՝ Թէ գործեն . բայց միայն
,, յայտնեալ՝ զի յորժամ յառնեն ՚ի ատա-
,, ւոտս , որհնեն և փառաւորեն զքս հօրև
,, զմծ . իսկ զշնութիս և զապանութիս և բղ-
,, ջխաս և զայլ չարիս՝ որ նման են սոցա ,
,, և՛ ո՛ք խոտեն և անարգեն . և զնմ՝ զոր
,, ինչ միանգամ գործեն , ըստ օրինաց գոր-
,, ծեն : Օ՞ի ընդդէմ այսոցիկ ( իմա՛ , յայն-
,, ժամ՛ ՚ի պատասխանի այսոցիկ ) տրայիա-
,, նոս եւս պատուէր հրամանի իւրև զայս ,
,, Թէ ազգդ քրիստոնէից ՚ի խնդիր մի հա-
,, մի՛ խնդրեսցին . բայց եԹէ դէպ ինչ լի-
,, նիցի ամեք ( յանցանք ) , պատժեսցի . զի
,, սոյլին իսկ այսուհիկ բազմուԹի սպանուԹե
,, հալածանացն՝ որ յարուցեալ էր մեծա-
,, պէս , շիջաւ : ( Ե՛յլ տակաւին ) ոչ իսկ
,, պակասէին պատճառք և բազմապատիկ այ-
,, նոցիկ՝ որ կամէին խորամանկել և չարչա-
,, րել զմեզ . էր ժմն՝ զի ՚ի ժողովրդեանն ան-
,, տի , և էր ժմն՝ զի ( ՚ի ) դատաւորացն՝ որ
,, էին ՚ի գաւառս , հնարէին նենգուԹի
,, գործել ՚ի մեր վը , որպէս առանց հրաման-
,, նաց Թգւրին ՚ի գաւառս գաւառս բորբո-
,, քէին հալածանօքն , և բազում հաստա-
,, ցեալք վկայեցին ազգի ազգի պատե-
բազմօք ‖ :

՚Ի բանից աստի՝ որ բազմօք օգտեն առ ի
մանաւ զվկայաբանուԹիս առաջին դարուց,
յայտ է՝ Թէ յետ մահուան շմաւոնի՝ որ է իբր

վեր

վերջին նահատակեալն 'ի մէջ առաքելոց և
աշակերտաց Քնի, հալածումն քրիստոնէից
լինէր կրկնակի՝ 'ի հեթանոսաց, և յաղան-
դաւորաց՝ որ 'ի հրէից և 'ի հեթանոսաց,
մինչև ցժամս լուսաւորութեան առ մեծն կոս-
տանդիանոսիւ. վոյ և նախկին դարքն՝ կո-
չին դարք հալածանաց. և 'ի նոյ վր առա-
ւելապէս կատարեցաւ տէրականն բանն. * և
„ թէ զիս հալածեցին, ապա և զձեզ հա-
„ լածեսցեն ||. և առաքելականն, * որք
„ կամիցին 'ի Քս Յս ածպաշտութբ կեալ, 'ի
„ հալածանս կայցեն ||: Որպ և այն՝ ամմն
մեզ սեպհական, * Որք Քսեանքն են, զմար-
„ մինս խաչեցին 'ի խաչ հանին ||, ըս ամ տե-
սութեն հալածանօք հանդերձ՝ կատարեցաւ
յերանելին շմաւոն 'ի խաչելեալն 'ի սէր
խաչելոյն. որ և այն է ճշգրիտ կերպարան
ըս Քնի ազգակցութեն:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Մըրեւր վկայաբանութեան հեղինակս հին վկայ-
վաւերական՝ առ եւսեբի կեսարացւոյ, որ իրաւամբք
հայր կարդացեալ եկեղեցական պատմութե, և գործ
նր թարգմանեալ հրամանաւ սբյն մեսրոպայ 'ի ձեռա-
սուն աշակերտաց նր յառաջին թարգմանչաց: Զնոյն
երկրորդեն քաղելով և կմ պարզաբանելով ճառընտիրք
և յայսմաւուրք մր ազգաց. մինչ զի յորս միաբանին ըս
այլքն՝ են ընդունելի. իսկ յորս տարաձայնին՝ երկ-
բայելի:

Եւ արդարև ոչ ոք արդեօք 'ի գիտնոց ունէր տարա-
ձայնել իմիք յառաջնոց ասաի հաւատարիմ մատենա-
գրաց, բայց երկու ինչ է՝ որ զբաղուած եցոյց անհամա-
ձայն

ձայն է այլոց և է անձանց ․ առաջինն՝ համաձայնութեն յատուկ անուանց սբց ․ և երկրորդն՝ անորոշութն աւուր կատարման նց ։ Զառաջինն թ կարի հարթեցաք ՚ի կարգի բանիցս, կրկին և կրկին յայտնաբանելով՝ թէ մ ոք է սբն շմաւոն՝ ազգական քնի զանազանեալ ՚ի շմաւոնէ նախանձայուզէ ․ և թէ յորում իցէ ազգականութն նր է քնի ․ և եթէ կայցէ ինչ աւելի տեղեկութ արժանի, աստացուք ՚ի վարս յակոբայ եղբօր նորա և տն ։ Իսկ զերկրորդն որոշեսցուք ՚ի յաջորդ ծան" ։

(2) Որ զառաջինն եդ ՚ի տօնացուցի մերում զսբն շմաւոն ՚ի կարգի ապայից է կուռնելիոսի և է պօղիկարպոսի, գեղեցիկ և վայելուչ գործ գործեաց ․ մի՝ զի է ժմկակից և նմանակից սբս կարգեաց իբրև պանծագոյն ՚ի մէջ երկուց պատուական մարգարտաց ։ և միւս ևս՝ զի ՚ի կամիլ որոշել և զժմկ կատարման սբյն շմաւոնի, կմ զօր տօնին, չիք այլ ստուգագոյն (գոնէ հաւանական կշռուք) քան զամիսն փետրվարի ․ որ պինէ միջոցի ապայիցս ․ և այսմ հաստատուն ունիմք ոչ փոքր ․ զի և ՚ի Լ ․ գնի ՚ի փետր ․ 18 ։

Այսպէս ոչ՝ տես ինձ, թէ որքան դժուարութիւն կրեն՝ որք յայլ օր ձգեն զկատարումն սբյն ․ մինչև չփոթել զանձն ընդ անձին, և զտօն է տօնի ։ Դիցուք թէ ոչ վայրապար դնի կես միաբանութբ՝ շմաւոն ազգական քնի ՚ի սեպտ ․ 28 ․ թ Հ ․ և ՚ի սեպտ․ 18 ․ թ Ց ․ (թող զի՝ ուր անուն ամսոյն ՚ի Ց ․ է համաձայնեալ ընդ Հ ․ օր ամսոյն նոյն է է Լ ։) Զի՞ ապա դարձեալ Հ ․ թ ձեռ․ դնէ և ՚ի 20․ ապր․ և դարձեալ ժամագիրքն յունաց երկրորդէ ՚ի 27 ․ ապր ․ յոր հայեցեալ և Հ = Ց դնէ հանդերձ իՃիք խորանօք՝ ՚ի 28 ․ սեպտ ․ և ՚ի 21 ․ ապր․ ոտ և տր իէլ, ՚ի 28․ սեպտ․ և ՚ի 17․ ապր ։ Ու զի՞նչ կարծես պատմել նց աստ և անդ զնոյն սբյ, բայց անպատճառ կրկնել զնոյն վարս, և կմ շփոթումն ՚ի վր ածել պատմութե ։

Զոր օրինակ ․ տր իէլ՝ որ այլուր կարի զգուշաւոր է ՚ի բանս, տես զի՞նչ գրէ ՚ի ժէ ․ ապր ․ * Յայսմ աւուր
,, տօն է առաքելոյն շմաւոնի ։ Շմաւոն որդի էր յով-
,, սեփայ, և եղբայր յակոբայ ․ սա եղև երկրորդ եպս
,, յեմ, և էր Ճի ամաց ․ և դոմետիանոս կռապաշտ ար-
,, քայն արբոյց նմա դեղ մահու խառնեալ ՚ի թիւնից
,, օձից և իժից ․ եկեր սբն, և ամենևին ոչ վնասեցաւ ․
,, և այլ ոչինչ չար արար նմա ։ Ու ապա թզրեաց տը-
,, րայիանոս ․ և վս զի սիմոն զքս ոչ ուրացաւ, բևե-
,, ռեալ

,, ուել եա զնա 'ի խաչ ․ և զերկու կողմն խոցեցին ․ և
,, բղխմ արիւն հեղաւ ․ և աւանդեաց զհոգի իւր առ
,, ա̃ծ ||:

Եւ զՍ̃նչ 'ի սեպտ․ ի̃է․ ( յար և նման․ Հ = Ց․ անդ )
* Յայսմ աւուր տօն է շմաւոնի ազգականին ք̃սի : Սա
,, որդի էր կղէովպայ եղբօր յովսեփայ ա̃ծահօրն ․ եղև
,, ճ̃ի ամաց ․ մատնեցին զնա տրայիանոսի ․ և նա տան_
,, ջեաց յոյժ ․ յետոյ գթացեալ արքայն յալիս ծերոյն՝
,, թոյլ ետ նմա ․ և խաղաղութե̃ փոխեցաւ յանանց
,, կեանսն : Բայց առի զամանէ յայլ պատմուէ̃ , թէ մահ_
,, ուամբ խաչի կատարեցաւ ||: Տեսանես , զի կրկնուե̃
է նոյն բանից յերկուս տեղիս ․ այլ ուր տարբերին բանք,
գտանի և վրիպակ օտար 'ի սոյզ պատմուէ̃ ․ և կամ
կարօտ քննութե̃ :

Եւ մի կարծեր՝ թէ Հ․ լաւ ևս ինչ առնէ ․ զի 'ի միոյ
կողմանէ չինէ , և 'ի միոյ կողմանէ աւերէ ․ ք̃զի ( թող
զթեթև տարբերութիւ առ". և ձեռ". ) նախ ընտրելով
ի̃մն․ 'ի սեպտ․ ի̃է․ բարուք գրի այսպէս ․ * Վկայաբա_
,, նութի սբ̃ առաքելոյն շմաւոնի ազգականին ք̃սի : Սբ̃
,, առաքեալն շմաւոն որդի էր կղէովպայ եղբօրն յով_
,, սեփայ՝ որ ա̃ծահայր անուանեցաւ : Այս առաքեալ
,, շմաւոն էր յեօթանասունն և երկու աշակերտացն ք̃սի :
,, Եւ իբրև կատարեաց զա̃մ առաքելութե̃ ընթացս իւր ,
,, յոյժ ծերացաւ ․ և էր ամաց հարիւր և քսանից: Մատ_
,, նեցին զնա հրէայքն 'ի ձեռն տրայիանոսի արքային , և
,, տանջեցին զնա խստագոյն ․ և յետոյ արքայն գթացաւ
,, յալիս ծերոյն ․ և ազատեաց զնա 'ի տանջանացն ․ և
,, կեցեալ աւուրս ինչ՝ և փոխեցաւ յանանց կեանս :
,, Բայց առի վս̃ սորա 'ի պատմութիս այլ գրոց , թէ խա_
,, չեցաւ յեհմ ||: Եթէ սաս վերջանայր բանն , գովելի
էր ․ բայց լուր զՍ̃նչ 'ի վի̃ բերէ ( յայտ է թէ յետին
նորոգիչ յայսմաւուրաց)․ * Այլ զուգորդ պատմութե̃
,, սորա գացեա՛ 'ի ժ̃է յահկի ամսոյ, և յապրիլի Ի̃․ և այդ
,, կարասցես գիտել՝ թէ ով է , և կա՛ յորոց իցէ սբ̃
,, առաքեալս ||: Ընթացցուք անդր : Եւ ահա շփոթութե̃
յայտնի ․ * Տօն է ( ասէ ) սբ̃ առաքելոյն շմաւոնի նա_
,, խանձայուզի : Ածառեան շմաւոն աշակերտ էր ք̃սի ․
,, Ի̃ ա̃մ արևմուտս շրջեալ քարոզեաց զք̃ս, և զքաղաքս
,, լուսաւորեաց ա̃ծգիտուե̃ : Գնաց յերկիրն մավրիտա_
,, նոյ՝ աւետարանել զք̃ս ․ և անտի յերկիրն վրիտաց_
,, ւոց , և 'ի նմ̃է խաչեցաւ ․ ( Այս բանք առեալ են
'ի մ̃ր ինէլէ բառ առ բառ 'ի ի̃մ ․ օրէ ապրիլի ․ ուր

բար_

բարւոք դնէ նա զսիմոն նախանձայոյզ՝ որէշ 'ի շմա_
ւոնէ ազգականէն ք̃ի · և յետ ամի առէ · * և 'ի նշէ
,, խաչեցաւ, և թաղեցաւ անդ || · իսկ Հ · շփոթ պատ_
ճառաւութ̃ յարէ · խաչեցաւ, ) սակայն ոչ մեռաւ · զի
,, խնայեալ յայլումն՝ արձակեցին · զի ճ̃ի ամաց էր · և ե_
,, կեալ յետ, և անդ ևս խաչեցաւ 'ի հրէից, և ոչ
,, մեռաւ ։ Սա ազգական կոչեցաւ ք̃ի · որ և եղբայր
,, սորա յակոբոս՝ տ̃ն եղբայր ··· որք որդիք էին յով_
,, սեփայ ···· Յայլ պատմութեան ասի՝ թէ 'ի շուշաւթա
,, կատարեցաւ, որ է քաղաք մեծ յորմի 'ի վիճակն յու_
,, դայի եղբօր իւրում ··· քարոզեալ զք̃ս պարսից · և
,, եկեալ եհաս քարոզութ̃ 'ի հայս ···· դարձաւ յետմ,
,, և նստաւ յաթոռն եէմի ··· մի էր յերկոտասանիցն ···
,, և դոմետիանոս արքայց նմա մահադեղ ··· թ̃րեաց
,, տրայիանոս · և մատնեցին նմա հրէայքն զառաքեալն
,, սիմոն · և հանին զնա 'ի խաչ · և խոցեցին գեղար_
,, դեամբ զերկուս կողսն · ուստի հեղաւ բազում ա_
,, րիւն · և այնպէս կատարեցաւ || ։

Տեսե՞ր զշփոթութի̃ 'ի վ̃ր շփոթութե̃ · զի զոր տ̃ր իէլ յերիս տեղիս 'ի վ̃ր երկուց բաժանէ զպատմութիւն՝ թեթև շփոթութ̃բ, սա յայսմ վայրի զմին ը̃ միևեանս խառնակէ · և վ̃ս նոյնացուցանելոյ զշմաւոն ազգականն ք̃ի ը̃ շմաւոնի նախանձայուզի՝ երկիցս և երիցս 'ի խաչ ելեալ զնա ասդնէ ։ Այլ մեք առաւել ևս խառնակեսցուք զբանն · և ապա ինքնին պարզեսցի ։

Տեսանեմք, զի Յ · բաժիլ · սեպտ · 18 · ուղիղ և անշփոթ դրէ զվկայաբանութի շմաւոնի ազգականին ք̃ի՝ համաձայն մեզ և եւսեբեայ · կ̃ր որ նոյն է՝ ը̃ բանից Հ · 'ի սեպտ · 28 ։ որ և 'ի 29 · ապր · զվարս շմաւոնի նախանձայուզի՝ ը̃ սիմոնի կանանացւոյ · ( թէպէտև մականուն տալով նմա յուդա · զորմէ ասացի 'ի վարս ն̃ր ։ ) և սակայն վերստին երկրորդէ փոքր մի տարբերութ̃բ զվարս նախանձայուզին և 'ի 10 · մայիսի ։ Իսկ Յ · ժամագր · յետ պատմելոյ 'ի սեպտ · 18 · որ և իցէ զկատարումն շմաւոնի ազգականին ք̃ի 'ի վ̃ր խաչի, զնոյն կրկնէ և 'ի 27 · ապրիլի · յաւելուածով յայսմի կարծեցեալ բանիս · * Այս երանելիս՝ կրկին կոչմամբ ճա_
,, նաչաւ · քանզի սիմոն և սիմէոն ( որ է շմաւոն ) կո_
,, չի · և եղբայր յակոբայ և որդին ք̃ի անուանի || ։ Իսկ 'ի մայիսի · 10 · գրելով զվարս սիմոնի նախանձայուզի կ̃ր կանանացւոյ, ( զոր նոյն համարի ը̃ նաթանայելի, ) ասէ և զնա խաչեալ 'ի բրիտանիա ։

,, ունել ետ զնա 'ի խաչ. և զերկու կողմն խոցեցին. և
,, բղխ՛մ արիւն հեղաւ. և աւանդեաց զհոգի իւր առ
,, ած ||:

Եւ զի՞նչ 'ի սեպտ. ի՟ը. (յար և նման. Հ = Յ. անդ)
* Յայսմ աւուր տօն է շմաւոնի ազգականին քրի: Սա
,, որդի էր կղէովպայ եղբօր յովսեփայ ածահօրն. եղե
,, ճն ամաց. մատնեցին զնա տրայիանոսի. և նա տան
,, ջեաց յոյժ. յետոյ գթացեալ արքայն յալիս ծերոյն՝
,, թոյլ ետ նմա. և խաղաղութբ փոխեցաւ յանանց
,, կեանսն: Բայց սաի զամանէ յայլ պատմուէ, թէ մահ
,, ուամբ խաչի կատարեցաւ ||: Տեսանե՞ս, զի կրկնուի
է նոյն բանից յերկուս տեղիս. այլ ուր տարբերին բանք,
զատանի և վրիպակ օտար 'ի սոյզ պատմուէ. և կամ
կարօտ քննութե :

Եւ մի՞ կարծեր՝ թէ Հ. լաւ ևս ինչ առնէ. զի 'ի միոյ
կողմանէ չինէ, և 'ի միոյ կողմանէ աւերէ. ջ՟ղի (թո՛ղ
զթեթև տարբերութիւս սպ". և ձեռ". ) նախ ընտրելով
լինն. 'ի սեպտ. ի՟ը. բարւոք գրի այսպէս. * Վկայաբա
,, նուն սբ առաքելոյն շմաւոնի ազգականին քրի: Սբ
,, առաքեալն շմաւոն որդի էր կղէովպայ եղբօրն յով
,, սեփայ՝ որ ածահայր անուանեցաւ: Այս առաքեալս
,, շմաւոն էր յեօթանասուն և երկու աշակերտացն քրի:
,, Եւ իբրև կատարեաց զամ առաքելութն ընթացս իւր,
,, յոյժ ծերացաւ. և էր ամաց հարիւր և քսանից: Մատ
,, նեցին զնա հրէայքն 'ի ձեռն տրայիանոսի արքային, և
,, տանջեցին զնա խստագոյն. և յետոյ արքայն գթացաւ
,, յալիս ծերոյն. և ազատեաց զնա 'ի տանջանացն. և
,, կեցեալ աւուրս ինչ՝ և փոխեցաւ յանանց կեանս:
,, Բայց սաև վն սորա 'ի պատմութիս այլ գրոց, թէ խա
,, չեցաւ յեէմ||: Եթէ սա վերջանայր բանն, գովելի
էր. բայց լուր զի՞նչ 'ի վր բերէ ( յայտ է թէ յետին
նորոգիչ յայսմաւուրաց). * Այլ զուղորդ պատմութն
,, սորա գացես 'ի ժբ. յահկի ամսոյ, և յապրիլի ի. և այդ
,, կարասցես գիտել՝ թէ ո՞վ է, և կմ յորոց ի՞ցէ սբ
,, առաքելոց||: Ընթացցո՛ւք անդր: Եւ ահա շփոթութի
յայտնի. * Տօն է (ասէ) սբ առաքելոյն շմաւոնի Նա
,, խանձայուզի: Ածառեան շմաւոն աշակերտ էր քրի.
,, ժբ ամ արևմուտս շրջեալ քարոզեաց զքն. և զբազումս
,, լուսաւորեաց ածգիտուբ: Գնաց յերկիրն մովրտա
,, նոյ՝ աւետարանել զքն. և անտի յերկիրն վրատաց
,, ւոց, և 'ի նշէ խաչեցաւ. ( Այս բանք առեալ են
'ի մր իմեքէ բառ առ բառ 'ի իմ. օրէ ապրիլի. ուր

բար-

թարւոք դնէ նա զսիմոն նախանձայոյզ՝ որէշ 'ի շմա-
ւոնէ ազգականէն Քի . և յետ սմի ասէ . * և 'ի նմէ
,, խաչեցաւ, և թաղեցաւ անդ ||. իսկ Հ . շփոթ պատ-
ճառասութ̃ յարէ . խաչեցաւ, ) սակայն ոչ մեռաւ . զի
,, խնայեալ յալխան՝ արձակեցին . զի ՃԻ ամաց էր . և ե-
,, կեալ յեՀմ. և անդ ևս խաչեցաւ 'ի Հրէիցն, և ոչ
,, մեռաւ ։ Սա ազգական կոչեցաւ Քի . ոմն և եղբայր
,, սորա յակովբոս՝ տն եղբայր ... ոք որդիք էին յով-
,, սեփայ .... Յայլ պատմուէց սոլ՝ թէ 'ի շռուսթա
,, կատարեցաւ, որ է քաղաք մեծ յորմի 'ի վիճակն յու-
,, դայի եղբոր իւրում ... քարոզեալ զՔս պարսից . և
,, եկեալ եհաս քարոզութ̃ 'ի Հայս .... դարձաւ յեՀմ,
,, և նստաւ յաթոռն եՀմի ... մի էր յերկոտասանիցն ...
,, և դոմետիանոս արբոյց նմա մահադեղ ... թփրեաց
,, տրայիանոս . և մատնեցին նմա Հրէայքն զառաքեալն
,, սիմոն . և հանին զնա 'ի խաչ . և խոցեցին գեղար-
,, դեամբ զերկուս կողսն . ուստի Հեղաւ բազում ա-
,, րիւն . և այնպէս կատարեցաւ || ։

Տեսեր զշփոթութիւն 'ի վր̃ շփոթութե . զի զոր ոք իէլ
յերիս տեղիս 'ի վր̃ երկուց բաժանէ զպատմութիւն՝
թեթև շփոթութե̃, սա յայսմ վայրի զսոսին ը̃ միմեանս
խառնակէ . և վս̃ նոյնացուցանելոյ զշմաւոն ազգականն
Քի ը̃ շմաւոնի նախանձայուզի՝ երկիցս և երիցս 'ի
խաչ ելեալ զնա ասդնէ ։ Այլ մեք առաւել ևս խառ-
նակեսցուք զբանն . և ապա ինքնին պարզեսցի ։

Տեսանեմք, զի Յ . բասիլ . սեպտ . 18 . ուղիղ և անշփոթ
դրէ զվկայաբանութի շմաւոնի ազգականին Քի՝ համա-
ձայն մեզ և եւսեբեայ . կա̃ որ նոյն է՝ ը̃ բանից Հ . 'ի
սեպտ . 28 ։ ոմն և 'ի 29 . ապր . զվարս շմաւոնի նախան-
ձայուզի՝ ը̃ սիմոնի կանանացւոյ . ( թէպէտև մակա-
նուն տալով նմա յուդա . զորմէ ասասցի 'ի վարս նր̃ ։ )
և սակայն վերստին երկրորդէ փոքր մի տարբերութ̃
զվարս նախանձայուզին և 'ի 10 . մայիսի ։ Իսկ Յ . ժա-
մագր . յետ պատմելոյ 'ի սեպտ . 18 . ոմն և իցէ զկատա-
րումն շմաւոնի ազգականին Քի 'ի վր̃ խաչի, զնոյն
կրկնէ և 'ի 27 . ապրիլի . յաւելուածով յայսմիկ կար-
ծեցեալ բանիս . * Այս երանելիս՝ կրկին կոչմամբ ճո-
,, խացաւ . քանզի սիմոն և սիմէոն ( որ է շմաւոն ) կո-
,, չի . և եղբայր յակոբայ և նորին Քի անուանի || ։ Իսկ
'ի մայիսի . 10 . դրելով զվարս սիմոնի նախանձայուզի
կա̃ կանանացւոյ, ( զոր նոյն համարի ը̃ նաթանայէլի . )
ասէ և զնա խաչեալ 'ի բրիտանիա ։

Ո՛չ թողից և զայն, զի շմաւոն պարսից եպս՝ որ դնի ՚ի Յ․ բս․ ապր․ 13․ և Յ․ ժամագր․ ապր․ 17․ Հ․ ապր․ 12․ կմ՛ ԹՎ մր իէլի․ 13․ և Լ․ ապր․ 21․ եդեալ կայ ՚ի հին Ճաշոցս մեր ՚ի կարգի տօնից՝ որ ԹՎ ամսոց հռոմոց, ՚ի 13․ ապրիլի․ և բաց ՚ի նմէ կայ անդ մի միայն առաքեալ շմաւոն անուամբ․ ՚ի նոյեմբ․ 25․ այսպէս․ * Սբց առաքելոցն շմաւոնի և յակոբայ || ․ կամ * սբ ,, առաքելոյն յակովբոսի ալփեայ, և սիմովնի նախան,, ձայուզի || ։ Մ՛իայն ՚ի տօնացոյցս՝ յամսին միօրինակ որոշ դնի տօն շմաւոնի ազգականին քնի ՚ի կարգս ապայից, և որոշ տօն առաքելոցն յակովբայ և շմաւոնի ՚ի կարգի յիսնակաց ։ Իսկ շմաւոն պարսից եպս չէր ՚ի տօնացուցի․ այլ միայն ՚ի կարգի սբց յիշատակելեաց ԹՎ յայսմաւուրաց ։

Յորոց իմանամք՝ նախ, թէ չէ պարտ խառնել ՚ի վըկայաբանութէ շմաւոնի ազգականին քնի․ և չէ պարտ խառնել զնա ընդ այլում ։ Երկրորդ՝ թէ յիրաւի կայր ՚ի վաղուց հետէ պէսպիսութի կարծեաց, թէ ո՞ ոք իցեն եղբարք անուանեալքն քնի․ և թէ շմաւոն կամ սիմոն անուն (բաց ՚ի պետրոսէ) մի՞ իցէ, եթէ երկու ՚ի մէջ աշակերտաց և առաքելոց․ բայց հետ զհետէ համեմատութբ այլ և այլ բանից նախնեաց՝ առուգեալ համարի որ ինչ եդաւ աստանօր ՚ի մէջ ՚ի կարգի վըկայաբանութեանս ։ Երրորդ՝ թէ պատճառ շփոթութեն անուանց ՚ի Հ․ եկեղ ՚ի տարբերութէ յայսմաւուրացն յունաց․ և ՚ի դնելոյ նց զշմաւոն ՚ի զանազան ամիսս անխտիր․ և առաւելապէս ՚ի կրկնելոյ յամսեանն ապրիլի, յորում է ԹՎ մեր վկայաբանից նահատակութի շմաւոնի պարսից եպսի ։ Չրրդ՝ չէ ինչ ըղձեմ կարծել, թէ նախ քան զվերջին կարգաւորութի տօնացուցին մերոյ՝ ոմանք տօնէին ՚ի հայս զշմաւոն պարսից եպս զարդարև արժանին տօնելոյ՝ հանդոյն այլոց վկայելոց ՚ի պարսս, և առաւել իրաւամբք քան զայլսն․ բայց քզի ՚ի պահել զայն՝ արտաքոյ թողուլին ոմանք զշմաւոն ազգականն քնի, և նոյն թերևս առդնէին ընդ շմաւոնի նախանձայուզի, (որ էր առաւել ծանր՝ քան զոչն տօնել զեպսն պարսից), նմին իրի այնպ կարգադրեցաւ տօնացոյցն՝ զի բարձցին այս մեր շփոթութիք և երկբանութիք․ որպ քաջ իմանայ՝ որ միտ դնէ ասացելոցս ցայս վայր ։

(3) Ջոր տեսեք ՚ի վեր անդր ՚ի բանս մր իէլի, և Հ․ զկրկնակի աւանդութի՝ վն եղանակի կատարման սբյն շմաւոնի, առեալ է նց ՚ի ճառընտրաց․ յորս նախ գրի, թէ

Թէ յետ բազում հարցափորձի՝ տանջեաց զնա բռնա-
ւորն սաստկապէս․ այլ զինի * գթացաւ յայլս ծերու-
,, թեան, ոչ ևս արկ զնա ՚ի տանջանօք․ թոյլ ետ նմա
,, երթալ ՚ի տեղի իւր․ և նա երթեալ խաղաղութ̃ փո-
,, խեցաւ յաստեացս ՚ի կեանսն յաւիտենից ||։ Բայց
անդէն ՚ի վ̃ր ածեալ զառաւգագոյն վկայաբանութե̃ հա-
մաձայն եւսեբեայ՝ ունի այսպ̃․ * Բայց սա ի վ̃ս ն̃ր և
,, յայլ լրակատար պատմութե̃ ն̃ր, եթէ մահու խաչի
,, կատարեցաւ, և այնպէս եղև վ̃խճ․ մարտիրոսութե̃ն
,, ն̃ր ||։ Եւ մեք զայս ընտրեցաք և ընտրեմք․ քանզի և
եւսեբիոս քաջ գիտէր՝ թէ ոմանք այլազգ ինչ ասացին․
բայց քննեալ և հաւաստի գտեալ է զխաչելն ն̃ր․ այս
է սակըն եւսեբի․ պատմ․ Է․ Էէղ․ Գ․ 32․ * Շմաւոն կղեմ-
,, պեանց, այն՝ որ ասացաք զնմանէ, եթէ եկաց եպ̃ս
,, երկրորդ յեկեղեցւոջ անդ եՃմ, ընկալաք մեք՝ եթէ
,, վկայութ̃ եւ նա յԾէ․ և վկայէ հեգեսիպոս, և ասէ․
,, թէ ․․․ ը̃ս նմանութե̃ օրինակի չարչարանաց տ̃ն մերոյ
,, ՚ի խաչի եղև կատարած վախճանի ն̃ր ||։
Իսկ զոր յաւելուն ոմանք ՚ի վկայաբանից ընդ Հ․ թէ
՚ի խաչի անդ խոցեցին զերկոսին կողս շմաւոնի, թէ-
պէտև ոչ յիշէ եւսեբի, բայց է ընդունելի․ զի լռու-
թեն այն մարթի լինել նշանակ առաւել հաւանութե̃՝
քան անհաւանութե̃ ։



ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

*սրբյն Պօղիկարպոսի զմիւռնիոյ հայրապետին. և որոց ընդ նմա Արևելեան վկայից ասիացւոց* : (1)

Հ. փետր. 22: Տր ԹԷԼ. և Հ = Յ. փետր. 23: Յ. փետր. 23: Լ. յունվ. 26: Պետնեա: Թուաղի եկեղ. պատմ.: Եւսեբ. պատմ. եկեղ. դ. 14. 15. եւ 13. 14: Ռուփինո. Պ. եղ. ոէ: Բոլլանդ. յունվր. հատ. Է. 691 = 707: Տիլլեմոնեան. 24 = 39. և այլք: (2)

ՊՕՂԻԿԱՐՊՈՍ (ըստ յունաց՝ բօլիւգարբոս) առաքելաշնորհ այր ոմն՝ աշակերտ սրբոց առաքելոց, առաւելապէս սրբյն յովհաննու տն աւետարանչի, զնորին նմանութիւն յանձին բերեալ՝ տիրապէս եղև բանիւք և արդեամբ մշակ առաքինի յայգւոջ տն, մանաւանդ թէ և ծառ բազմապտուղ՝ ըստ անուանն թարգմանութեան՝ քաղցրաճաշակ արդասեօք լի. և ոչ երջանիկ գործակից նր և երիցագոյն աշակերտակից՝ ածազգեացն իգնատիոս ծաղկաւէտանայր յայն աւուրս յաթոռն անտիոքայ, նոյնպէս և երանելիս այս յաթոռն զմիւռնիոյ, այն է իզմիր՝ (որ անխտիր գրի 'ի մեզ զմիւռին, և

զմիւռնիա ) քաղաք ծովեզերեայ յոնիայ գաւառի 'ի փոքրն ասիա ։ Սա եղև սկիզբն յառաջադիմութեան նորա ըստ օրինակիս ըստ այսմիկ ։

Յորժամ դարձ արար սուրբ առաքեալն պօղոս 'ի գաղատիոյ՝ դէմ եդեալ գնալ յեփէս, յանցանել իւրում ընդ առանձնակին ասիա յաւուրս բաղարջակերաց՝ եմուտ 'ի զմիւռնիա՝ այց առնել աշակերտելոց ․ և հանգեաւ 'ի տուն ստրատեայ՝ որ աշակերտեալ էր նմա 'ի պամփիլիա, և էր որդի եւնիկեայ դստերն լաւոդեայ ․ մօր և եղբայր երանելւոյն տիմոթէոսի ։ Իսկ յետ մեկնելոյն պօղոսի՝ ըստ հաստատելոյ նորա՝ նա ինքն ստրատէաս եղև ուսուցիչ ժողովրդեանն՝ աստուածային վարդապետութեամբ փայլէր ։ Սոյն օրինակ և առաւել ևս փայլեաց զկնի նորա երանելւոյն բուկողոս կամ բուկեղոս եպիսկոպոս նորին քաղաքի կարգեալ յառաքելոցն ․ Թող զի ստէպ հանդիպելին անդ և ինքեանք առաքեալքն 'ի շրջիլն քարոզութեան ․ ԵՒս առաւել աւետարանիչն յովհաննէս՝ որ յեփեսոսն էր մերձ 'ի զմիւռնիա ։ (3)

Յայնմ ժամանակի բնակէր 'ի քաղաքի անդ զմիւռնացւոց կին ոմն մեծազգի՝ բարեպաշտ և երկիւղած յԱստուծոյ՝ կալլիստէ անուն ․ որում երևեցաւ հրեշտակ Աստուծոյ 'ի տեսլեան գիշերոյ , և ասէ ․ արի և գնա՛ 'ի դուռն քաղաքիս՝ եփեսեան անուանեալ , ուր ընդ առաջ լիցին քեզ արք երկու՝ ունելով ընդ իւրեանս մանուկ փոքր՝ պօղիկարպոս անուն՝ բերեալ յարևելից առ 'ի վաճառել ․ տուր զգինն, և ընկա՛լ զնա 'ի տուն քո ։ Կատարեաց կալլիստէ զհրա-

մանն․ և բերեալ 'ի տուն իւր զմանուկն՝ սնուցանէր զնա 'ի կարգս ածպաշտուէ․ և տեսեալ զպարկեշտ վարս նր և զընտիր քաղաքավարութի՝ զարմանայր ը նա յոյժ, և սիրէր զնա ոպ իւր որդի։ Իսկ 'ի զարգանալ նր հասակաւ՝ յանձնեաց 'ի ձեռս պատանւոյն և զփականս շտեմարանացն և ամ ընչից իւրոց․ և իբրև դէպ եղև կալլիստեայ գնալ ուրեք 'ի տեղի հեռաւոր, կարգեաց զպօղիկարպոս 'ի վերակացութի բովանդակ տանն, մինչև դարձցի անդրէն։

Իսկ լինէր՝ յորժամ պօղիկարպոս ելանէր 'ի տանէ վն հոգալոյ զպէտս ընտանեաց կալլիստեայ, զհետ ընթանային նր ժողովք աղքատաց քրիստոնէից․ և նա լնոյր զձեռս ամն առատութբ․ գային առ նա 'ի տուն որբք և այրիք՝ խնդրել զողորմութի․ և նա բաշխէր ամենեցուն ցորեան և գինի և իւղ և որ ինչ միանգամ կայր 'ի տան․ մինչև յետ սակաւուց սպառել զհամբարս գլխովին։ Իսկ եղև իբրև դարձաւ կալլիստէ 'ի տուն իւր, պատմեաց նմա մի ոմն յընտանեաց, թէ մանուկն այն եկեալ յարևելից վատնեաց զամ ինչս և զհամբարս քո։ Իսկ նր խռովեալ ընդ գործն՝ զորոյ անգիտանայր զպատճառսն, կարդաց յանուանէ զպօղիկարպոս, և ասէ ցնա զայրագին․ բե՛ր այսր զբանալիս սենեկաց և շտեմարանին, և բա՛ց զդրունսն՝ զի տեսից, թէ զինչ գործեալ է քո։

Իսկ նր ընթացեալ վաղվաղակի 'ի բերել՝ եմուտ նախ 'ի սենեակ մի առանձինն, և յա-

ղօթս

զօթս կացեալ՝ յոգւոց եհան, և ասէ. ո՜վ ած՝ Հայր սիրելի որդւոյ քո, որ 'ի ձեռն ծառայի քո եղիայի լցեր զանօթս թափուրս զսարեփթացւոյն, լո՛ւր ինձ աղաչեմ, և արա՛ զի յանուն յսի քսի ամի՜ լի գտցին տեղիքս այս ունայնացեալ: Օ այս ասացեալ հաւատով՝ եբեր անդէն զփականսն, և մատուցեալ եբաց զդրունս համբարանոցաց: Եւ իբրև եմուտ կալլիատէ, և եգիտ զամ ինչ 'ի տեղի իւր լնուլի առատութե՛, գումարեցաւ յանձն իւր, և յահի եղեւ զարմացաւ: Եւ այն ինչ կամէր զմատնիչն պատուհասել իբրև զչարախօս անմեղին, և իբրև զայպանիչ անձին իւրոյ, աղաչեաց պօղիկարպոս զտիկինն ասելով. մի ինչ դժուարեսցիս ընա վա իմ. յիմ վ՞ր լիցի ցասումն քո. նա զոր պարտն էր առնել՝ արար, զի ծանոյց քեզ զարժանն յաղագս պակասուէ պիտոյից տանն. ես էի՝ որ ցրուեցի զառաջինսն զամ, այլ ոչ յանպէտս ինչ. զի 'ի կարօտեալս բաշխեցի. և արդ. ելից ած զկարօտութիւս մեր. զի և դու ունիցիս առատաձեռնել 'ի չքաւորս ը քումդ. աղքատսիրուէ: Յայնժամ սքանչացեալ կալլիատեայ՝ գոհացաւ զայ, և յաւել յաձախել և ևս 'ի գործս բարիս ողորմածութե. և զպօղիկարպոս արար իւր յորդեգիրս. և իբրև եհաս օր վախճանի իւրոյ, կացոյց զնա ժառանգ ամ ստացուածոց իւրոց:

Իսկ պօղիկարպոս ո՛չ ընչիւք մեծանայր, այլ հաւատովք և բարի գործովք՝ որ է զօր յառաջադէմ 'ի չնորհսն այ. քանզի և բազում

անգամ հանդիպել մեծին յովհաննու աւե-
տարանչի յեփեսոս, և կա՞մ ՚ի գալ նր՟ երբեք
՚ի զմիւռնիա, և ուսեալ առ ոտս նր՟՝ խելա-
մուտ եղև ա՟յ առաքելական քարոզութե՟ց,
լցաւ հոգևոր իմաստութ՟բ, և իմաստնացաւ
՚ի խնդիրս ա՟ծայինս. և միտ եդեալ հանա-
պազ ընթերցուածոց ա՟ծաշունչ տառից՝ ՚ի
նոյն խոկայր ՚ի տուէ և ՚ի գիշերի. և ՚ի
մշտամռունչ աղօթս հանապազորդեալ՝ ող-
ջակէզ ընդունելի մատուցանէր զանձն ա՟յ.
բաշխէր զմեծ մասն ընչից իւրոց աղքատաց.
և ինքն աղքատօրէն կեայր անպաճոյճ ձև-
ով. եղև օրինակ բարի, և պատկառելի յաչս
մեծի և փոքու. և բազում այն էր, զի խոյս
տուեալ յաղմկէ և ՚ի գովութե՟է մ՟րդկան՝ ա-
ռանձնանայր ՚ի խորշս տանն, կա՞մ ՚ի շէնս ու-
րեք արտաքոյ քաղաքի՝ պարապել լռելեայն
ա՟յ և ս՟բ ընթերցուածոց:

Եթէ ոք գայր առ նա հոգւով ուղղութ՟, սի-
րով ընդունէր, և յերկարէր զբանս վ՟ս հո-
գևոր օգտի. իսկ զանխրատս և զունայնա-
սէրս երագ երագ ՚ի բաց դարձուցանէր յիւ-
մէ՝ պատճառեալ զգործս կարևորս. Նա և ե-
թէ դէպ լինէր նմա յիջանել ՚ի քաղաք՝ տե-
սանել զոմանս ՚ի ճանապարհի, որոց բար-
ձեալ էր զփայտս՝ տանել ՚ի վաճառս, մա-
նաւանդ զծերահասակս, մատչէր և կարե-
կից լինէր տառապագին աշխատութե՟ նց՟, և
ընթացակից լինելով հարցանէր՝ եթէ փու-
թա՞ն վաճառել զբեռինս իւրեանց. և ի-
մացեալ զյօժարութի՟ կամաց նց՟՝ իսկ և իսկ

հա

հանեալ տայր զգինս առաւելութ՟, և հրա-
մայէր իջուցանել 'ի տունս տնանկաց և այ-
րեաց բնակելոց առ դուրս քաղաքին :

Իբրև յարբունս հասեալ լինէր պօղիկար-
պոս, իշխեցին ոմանք 'ի ծանօթից յորդոր լի-
նել նմա մտանել 'ի կարգ քհի, և կարծէին
հաւանեցուցանել զնա բանիւք ստուովք՝
բերիլ զհետ մարմնաւոր գեղոյ, անգիտա-
ցեալ զոր 'ի նմա հոգի զգաստութ՟ն և զե-
ռանդն հոգւոյն սրբութ՟ն. որով վառեալ ե-
րանելւոյն՝ ընտրեցաւ ստէպ բարբառիլ
զբանս զայսոսիկ 'ի նշանակ ընտրելոյ իւրոյ
զայլ գեղ գերահրաշ. Որպէս զի գեղեցիկ
են բանքն ա՟ծեղէն, բանք քրի տն իմոյ, և
մարգարէից և առաքելոց ն՟ր. գեղեցիկ ես
տեսանելով ա՟ր իմ քան զա՟մ որդւոց մ՟դկան,
և սփռեալ են շնորհք 'ի շրթունս քո. իբրև
զի գեղեցիկ են և ոտք աւետարանչաց քոց՝
որք քարոզեն զբարութ՟ի և զխաղաղութ՟ի ա՟մ
քհի : Յայսպիսի խորհուրդս էր երանելին.
և երևէր առաջի եկեղեցւոյն զմիւռոնացւոց
իբրև զոճարթուն 'ի մարմնի :

Սորոյ և առաւել քան զամենեսին սիրէր
զնա սերտ ընտանութ՟բ ս՟բ եպ՟սն բուկողոս.
որ և ա՟ծային յայտնութ՟բ գիտացեալ զյաջորդն
լինել պօղիկարպոսի յաթոռ իւր՝ ընկալաւ
զնա առ իւր 'ի կարգ պաշտօնէից եկեղեցւոյ,
և ձեռն եդեալ 'ի վ՟ր ն՟ր 'ի խնդրոյ ժողովրդ-
եանն՝ արար զնա սարկաւագ : Յայնմ հետէ
սկիզբն արար երանելին պօղիկարպոս ս՟ր օրի-
նակի նախասարկաւագին ստեփաննոսի՝ լի

հոգւով սրբ̃վ քարոզել հրապարակաւ զբանն կենաց. որ և հաւանեցուցանէր զհրէայս և զհեթանոսս՝ գերել զմիտս 'ի հնազանդութիւն քի̃. և զոր աւերն՝ բազում անգամ արդեամբք և զօրութ̃ նշանաց հաստատէր, բժշկելով զախտաժէտս և զդիւահարս յանուն ա̃ծն՝ առաքելագործ այր ցուցեալ յա̃նձն (4). և դի̃ձ յորդորէր և ձգէր զլսելիս յանարատ քաղաքավարութի̃, զարդարել զանձինս առաքինի գործովք՝ հանդերձ ուղիղ հաւատով որ 'ի քս̃ յս̃ 'ի տր̃ մեր։ Այլ յասել առ նա հեթանոսաց, եթէ դժուարին է քրիստոնէից գործ, և ծանր յոյժ՝ մաքառել ընդ մարմինն, և առ ոտն հարկանել զհեշտութիս, ծիծաղէր զնոքօք, և ասէր. մոլորեալք ոչ գիտէք զզօրութի̃ ա̃յ, որ տայ ծառայից իւրոց ոչ միայն դիւրութ̃ տանել այդպիսի ձգանց, այլև բազում խնդութ̃ և գոհութ̃ կեալ 'ի նմին՝ ազատացեալս 'ի բռնաւորութե̃ մարմնոյ և ա̃ի, և միացեալս սրբութ̃ ը̃ արարչին իւրեանց։

Յետ այսորիկ բռնադատեաց երանելին եպս̃ բուկողոս զպօղիկարպոս, և ձեռնադրեաց զնա 'ի քահանայութի̃. յոր բազում անգամ հրաւիրեալ և հրաժարեալ էր նորա. այլ յանձն առնոյր 'ի կատարեալ հասակի ամետակախառն ալեօք։ Այլ էր այնուհետև համարեալ ա̃մ հաւատացելոց՝ որ 'ի զմիւռնիա, հայր հասարակաց, ուսուցիչ և թարգմանն ա̃ծայինն բանից 'ի լսելիս ա̃մցն։ Այլ եղև յորժամ մերձեցան աւուրք ելից բուկողոսի եպիս-

պիսկոպոսին ծերունւոյ յաստեացս, կոչեաց զսբ քահանայն զպօղիկարպոս, և ողջագուրեալ զնա 'ի համբոյր սրբութեան՝ կալաւ զաջ նորա, և մերձեցոյց 'ի լանջս իւր և յերեսս, և ասէ. քանի՞ շնորհք հանդերձեալ են բաշխել 'ի սբ ձեռաց քոց այսոր 'ի մատակարարութեան պարգևաց հոգւոյն սրբոյ. գոհանամ զտնէ՝ որ հաճեցաւ ընտրել զքեզ 'ի տեղի իմ 'ի հովուել զժողովուրդ իւր, որ 'ի քաղաքիս. և արդ զօրացիր 'ի տր, և մնա խաղաղութե. և զայս ասացեալ՝ փոխեցաւ 'ի կենաց սբ եպսն: Իսկ երանելին պօղիկարպոս ոչինչ ածեր զմտաւ յայնպիսեաց անտի. այլ միայն 'ի ծառայութե տն ուշ եղեալ ընթանայր: Իսկ իբրև ամփոփեցին զմարմին Բուկողոսի եպսին, հրաւիրեցին ամ ժողովուրդք և քահանայք զպօղիկարպոս՝ մատուցանել զնա պատարագն. և հազիւ հաւանեցուցին զնա: Ապա խորհուրդ 'ի միոյ եղեալ ամնցն զնա կացուցանել իւրեանց հովիւ, առաքեցին աղաչաւորս յեփեսոս առ սիրելի աշակերտն յոհաննէս՝ գալ և ձեռն դնել 'ի վերայ պօղիկարպոսի, և կարգել զնա իւրեանց տեսուչ և առաջնորդ. այլ արարին և մերձակայ եպսաց և երիցանց. և եկն 'ի պաւլ նոյ 'ի զմիւռնիա՝ ընթացան 'ի քաղաք անդր և ամենայն բազում յայլոց քաղաքաց. յորս հասեալ էր համբաւ սրբոյն երանելւոյն: Իսկ յորժամ ժողովեալ էին ամենեքին յեկեղեցի տն, լոյս մեծ ծագեաց յերկնից, և շուրջ պատեաց զամենեքումբք. Էր որ սքանչացեալ զահի

Հարան առ հնրկ . և ահա տեսանէին ոմանք յեղբարց անտի սրբց այլ և այլ տեսիլս զքանչելիս . ոմն նշմարէր զկերպարանս պօղիկարպոսի հրեշտակակերպ փայլէլ . ոմն զհոգին աղաւնակերպ սպիտակափայլ 'ի վր՟ գլխոյ նր՟ իջեալ . այլ ոք տեսանէր զնա լուսեղէն պատմուճան զգեցեալ , և այլ ոք՝ ծիրանեօք զարդարեալ . և լի եղեալ զարմանալեօք՝ շշնջէին և պատմէին իրերաց զոր տեսանէինն : Ընդ միաբանութբ ամենեցուն ձեռնադրեցաւ 'ի սբ՟ առաքելոյն երանելին պօղիկարպոս յեպսուի (5) . և անդէն յաւարտման խորհրդոյ պատարագին՝ ակնարկութբ առաքելոյն ելեալ 'ի բեմ՝ սկսաւ խօսել առ ժողովեալսն զա՟ծային բանս լի հոգւովն սբյ . մինչև զուն՛արթացուցանել զամ՟ լսելիս հոգևոր ուրախութբ , և շնորհօք հաստատել զսիրտս նց՟ 'ի ճանապարհս տն՟ :

Յետ այսորիկ դէպ եղև պօղիկարպոսի եպսի շրջիլ քարոզութբ 'ի կողմանս տէռվսայ և լեբեդայ քաղաքացն յոնիոյ , և իջևանել 'ի տան դափնոսի ուրումն եպսի (6) . ուր իմացեալ զյետին չքաւորութի նր՝ ձգեաց զձեռն 'ի կարաս արմտեաց ունայնացեալս , և ասէ . յանուն յսի քսի՝ 'ի կի՛ր առցես զդոսա . և յայնմ հետէ այնչափ առատացան բերքն , մինչև ոչ միայն բաւական լինել դափնոսի , այլ և յայլս բաշխել : Իսկ 'ի միւսանգամ հանդիպիլ անդ սբյն՝ արար նմա սեղան դափնոս 'ի տան իւրում՝ հանդերձ բազմութբ եղբարց . և էր 'ի սեղանի անդ անօթ մի գինւ-

ւոյ

ւոյ միայն , և այն՝ փոքրիկ . և 'ի հրամայել զամփնոսի ցընտանիսն բերել այլ ևս գինի , ասէ սրբն պօղիկարպոս . շատ է այդ մեզ ամենեցուն . մի՛ ինչ հոգար , զի ոչ պակասեսցի գինի յամանոյ այտի ։ Եւ տեսեալ միոյն 'ի սպասաւորաց , զի որչափ և ըմպէին յանօթոյ անտի բազմականքն՝ ինչ ոչ նուազէր , ծիծաղեցաւ բարձրաձայն , և ասէ ցն կատակս . ո՛վ սքանչելի անօթոյս , որ միշտ մնայ անըսպառ . և ընդ ասելն զայս՝ գտաւ անօթն ունայն ։ Յայնժամ ասէ պօղիկարպոս . ոչինչ են զարմանք՝ եթէ հրեշտակ տ՟ն , որ արար զսքանչելիսն զայն , իսկ և իսկ յետս դարձոյց զձեռն իւր մ՟ ըմբենի բանից զորա . մ՟յ յամի յուշ լիցի մեզ ասացեալս . ծառայեցէք տ՟ն երկիւղիւ , և ցնծացէք առաջի ն՟ր դողու՟թ ։ Պնաց երբեմն երանելին ց՟ն սարկաւագի իւրում կամերիոսի՝ ( որ և յետ ժամկաց նստաւ յաթոռն զմիւռնիոյ , ) 'ի շէնս ուրեք՝ հաստատել զաշակերտեալսն՝ , և դարձուցանել զայլ ևս մնացեալս յանհաւատից . և յետ վաստակելոյ զտիւ՟ն ողջոյն 'ի քարոզու՟թ , իբրև եմուտ 'ի տուն ուրեք հանգչել սակաւ մի քնով , ձայն եղև առ նա 'ի հրեշտակէ տ՟ն . արի պօղիկարպէ , և ել 'ի տանէ այտի . զի արդ ևս կործանեսցին որմունք դորա ։ Յայնժամ ձայնեաց երանելին առ սարկաւագն՝ յառնել և ելանել անտի . իսկ կամերիոս քանզի խոնջեալ էր յոյժ , դանդաղէր յառնել . հաւատամ ասէ յա՟ծ , զի ցորչափ դու աստ ես , անվտանգ մնայ տունն մինչև ցա-

ռա.

ռաւոտ. և այն զի՝ հաստատուն են որմունքն։ Ա՛սէ ցնա պօղիկարպոս. և ես առաւել հաւատամ ինձ՝ քան անձին իմոյ և կիր որմոց. և իբրև ելին արտաքս, նոյնժամայն կործանեցաւ տունն։

Նոյնժամ դարձան 'ի քաղաքն, մատուցին առաջի սրբոյն դիւահար մի՝ որ էր ծառայ իշխանի քաղաքին. և առժամայն բժշկեաց զնա անուամբն քրիստոսի։ Նա եղև 'ի գիշերի միում 'ի ջեռուցանել երևելի հացագործի քաղաքին զփուռն, անկաւ հուր 'ի փայտս դիզեալս, և բորբոքեալ բոցոյն սաստկութեամբ հողմոյ՝ հրդեհել սկսաւ զտուն մերձակայ բնակութեան, և ճարակել ընդ քաղաքն ամենայն։ Յայնժամ յարեան ամենեքին 'ի փոքուէ մինչև ցմեծամեծս, և հրամանաւ քաղաքապետին բազում աշխատ եղեն, և ոչ կարէին շիջուցանել. 'ի վերայ հասին հրէայք, և խոստանային ինքեանք ձեռն 'ի գործ առնել, և դիւրաւ մեղմել զկրակն, ակն եդեալ 'ի կապուտ կողոպուտ տանց։ Ա՛յլ չետ նոցա թոյլ քաղաքապետն, որ գիտակն էր դաւաճանութեան նոցա. և ասէ ցիւրսն. զի՞ կայք և ընդէ՞ր ոչ կոչէք այսր զվարդապետն քրիստոնէից՝ պօղիկարպոս անուն, այն՝ որ փոքր մի յառաջ բժշկեաց զիմ ծառայն. զի որում ոչն կարացին հրէիցն ճարտարք 'ի ձեռն այլևայլ կարգամանց հնարս աղստուն գտանել, մանաւանդ թէ և 'ի նմին իսկ այսոյն չարագան տանջեցան, միով բանիւ պօղիկարպոսի անդէն ընտացաւ զառողջութիւն. համպա երթայք կոչեցէք

ցէք այսր զայրն զայն . զի նա միայն կարէ ապատել զքաղաքս 'ի վտանգէ աստի հրկիզութես ։ Յայնժամ ընթացեալ ծ̃ռյից իշխանին առ Պօղիկարպոս՝ ածին զնա փութանակի 'ի տեղի հրոյն . և եղև իբրև արար երանելի եպ̃ն զնշան ս̃ր խաչին 'ի վ̃ր հրոյն , և կարդաց զանուն տ̃ն յ̃ի , առ ժամայն շիջաւ . և եղեն սքանչելիք 'ի վ̃ր ամենեցուն , և փառաւոր առնէին զա̃ծն քրիստոնէից ։

Զկնի այսորիկ եղև երաշտ 'ի սահմանս բզ-միւռնոյ , և չորացան ա̃մ բոյսք և տունկք . և սկսաւ առ սակաւ սակաւ տիրել սով 'ի քաղաքին և 'ի շրջակայ գաւառսն ։ Իսկ ժողովեալ գլխաւոր արանց առ քաղաքապետն՝ խորհէին , թէ զի՞նչ արասցեն . պինի ես քաղաքապետն , և ասէ . ոչ մնացին ինչ հաց̃ բարք 'ի քաղաքիս , և ո՛չ զօրամ բաւական՝ առաքել և բերել ցորեան յերկրէ հեռաստանէ ։ Իսկ իբրև 'ի վարանս անկեալ ա̃մն զայս, և ա̃մն զայն ասէր , յառն եկաց ծերագոյնն 'ի նց̃է , և ասէ . Ո՛ արք՝ ո՞չ յիշէք որ ինչ եղև 'ի ժամանակի անդ մեծի հրկիզուէ̃ , թէ զիա՞րդ ա̃մ ուստեք յանհնարս մտեալ մեր , և ոչ ուստեք օգնականութ̃ի գտեալ՝ անյոյս էաք 'ի փրկուէ̃ քաղաքիս . և ապա յառաջ եկեալ գլուխ քահանայից նոցա՝ որ քրիստոնեայքն անուանեն , յանդիման մեր ա̃մյն զաչս յերկինս համբարձեալ՝ բարբառեցաւ սուղ ինչ բանս . և անդէն չգիտեմ զիա՞րդ անսասացող լեալ բարբառոյն այնմիկ հուրն գազանացեալ՝ յինքն ամփոփէր , և շիջեալ

շէ

շիջանէր. մինչև ա՟ծ ումն թուի լինել ինձ այրն
այն. ուր և քերթողքն մեր ասեն իջանել եր-
բեմն ա՟ծոց առ մարդիկ մարդկային կերպա-
րանօք՝ առնել իրաւունս զրկելոց, և օգնա-
կան լինել նեղելոց. և զի՞ է՝ զի ոչ յառաջ
կոչեմք և այժմ զա՟ծանման զայրն զայն՝ գը-
տանել հնարս նեղութե՟ մերում:

Ընդ այս խորհուրդ հաւանեալ ա՟մ ատենին՝
բանս եդին երթալ 'ի տեղի մեծի թատրո-
նին, և անդ առաջի բազմութե՟ քաղաքին կա-
չել զպօղիկարպոս, և խնդրել 'ի նմանէ օգ-
նականութի՟: Արդ և լու եղև այս բան յա-
կանջս ամբոխին, խուռն ընթանային ա՟մքն
'ի թատրոն անդր՝ ակնունելով թէ հնարք
ինչ ազատութե՟ լինիցին յերեսաց սովուն. չա-
քան և պատուիրակք 'ի կողմանէ քաղաքա-
պետին, և ածին կացուցին անդր զայրն ա՟յ:
Խօսեցան ընդ նմա իշխանքն, և ասեն. Պօ-
ղիկարպէ՝ տեսանես զտառապանս քաղաքիս,
յորում և դու պանդխտիս, և կցորդ ես
նեղութե՟՝ որ եհաս յերեսաց անջրդի երաշ-
տութե՟. արդ աղաչեմք զքեզ ա՟մ բնակիչք ըզ-
միաբանոյ՝ զի խնդրեսցես անձրև յա՟յ քումմէ,
որով զովասցի երկիրս, և պտղաբեր լինիցի:
Յայնժամ պինի ետ երանելին, և ասէ.
լուարուք ինձ պատուական իշխանք և ա՟մ
բնակիչք քաղաքիս, որ եմ 'ի միջի ձերում
այր մի պանդուխտ և եկ օտարական. զի և
ա՟մ Ա՟Ծ՝ որ է ա՟ծակերտ քաղաք հասարակաց
բնակութե՟, վայր է ինձ պանդխտութե՟. իսկ
իմ քաղաք հայրենի 'ի վեր յերկինս է՝ որ ա-

թոռն

թուոյն է բարձրելոյն. Ո՛չ որպէս դուքդ կար-ծէք՝ ես ինչ անձին իմում գրաւեմ զիշխա-նութի կարող լինելոյ յետս դարձուցանել առ 'ի ձեռն զածայինս ցասումն, որ վս մեղաց 'ի վր հասեալ. են են և այլ իմ ծառայակիցք և պաշտօնակիցք՝ ածահաճոյ երիցունք, զորս առաքեմ միջնորդս առ ածն իմ. եթէ խնդրել ինչ ունիմ յերկնից 'ի վերուստ. զնա՝ թէ կա-միք՝ 'ի մէջ առից, զի աղաչեսցեն վս կատա-րման խնդրոց ձերոց. այլ զձեզ յորդորեմ ան-վրդով կալ և ակնունել այցելութե ածն. միայն թէ՝ և դուք խրատեսջիք զամ զժողովուրդն 'ի բաց կալ 'ի գնացից իւրեանց չարաց, և արժանի ապաշխարութե գործս գործել. զի երկայնամիտ լինի ած, և կամի զամենեցուն զդարձն և զկեալն :

Զայս լռեալ քաղաքապետին՝ ասէ յանդի-մանն ամ բազմութեն. գիտէք դուք ամենե-քեան՝ զի մեք հրապարակաւ զոհս մատուցա-նեմք ածոց մերոց. այլ պօղիկարպոս և պաշ-տօնակիցք նր առանձինն սովոր են յաղօթս կալ առ ածն իւրեանց, և ընդունին 'ի նմա-նէ զամ զոր հայցեն. և արդ թողցուք զնա առնել զամ ըստ իւրումն կրօնի իւրայովքն համդերձ. ոչ զի լիցի մեզ այցելուն յաղօ-թից նր : Զայս ասացեալ՝ արձակեաց ըզ-ժողովն : Իսկ հաւատացեալքն իբրև լուան զառաջինն՝ եթէ առեալ տարան զպօղիկար-պոս 'ի թէատրոնն, յահի լեալ՝ ստէպ աղօթս առնէին վս նր. և ահա դարձ արարեալ մէջն 'ի տուն աղօթից՝ պատմէր եւ սարկաւա-

գաց

գաց խորոց՝ ազդ առնել ամ հաւատացելոց , և փաղփաղակի 'ի մի վայր ժողովել զեկեղեցին 'ի խնդրուածս․ և օրն էր ուրբաթ։ Այս իբրև եկին , սկսաւ ասել սբ հայրապետն ցամ ժողովեալսն․ յուշ լիցի ձեզ եղբարք իմ բան խոստման տն , որ ասացն․ խնդրեցէք և տացի ձեզ․ և՝ եթէ երկու 'ի ձէնջ միաբանիցեն յերկրի վս ամ իրաց , զինչ և խնդրեսցեն , եղիցի նց 'ի հօրէ իմմէ՝ որ յերկինս է ։ Այժմ արդ խնդրեսցուք հաւատովք , և մի հողմակոծեալ միտք․ զի աղերս աղօթականն իբրև յերկթաթ կշիռս գնի , և միտք՝ յոր կոյս և միտք նր ձգեսցին ։ Ոչ ապաքէն պետրոս վէմն ջերմ հաւատով ուղղորդ ձեռնէր 'ի վր ալեաց․ այլ 'ի թերահաւատն լինել՝ գայթ 'ի գայթ ստատանէր ։ Նմին իրի և մովսէս իբրև կամեցաւ 'ի հաստատուն հաւատս յորդորել զաստանանել ժողովուրդն՝ ասէր․ կացէք և տեսջիք զմեծամեծս այ․ քանզի պարտ է մեզ կալ անսասան՝ հաստատեալ 'ի վր վիմի , հաւատովք՝ որ 'ի փրկիչն մեր և 'ի տր յսքս ։ Աւանիկ և երանելի մարգարէն եղիաս 'ի խնդրելն աներկմիտ հաւատով զանձրեւն բռունէր , յորժամ փակեցան երկինք զերիս ամս և զվեց ամիս․ և արդ՝ նոյնակիր հաւատոյ պէտք են և մեզ այսօր ։

Օ այս իբրև ասաց սբ եպսն , եւ ծունր հանդերձ ամ բազմութբ , յաղօթս եկաց և ասէ․ Ով տծ , և հայր տն մերոյ յսի քսի , ած ամենակալ և օրհնեալ յաւիտեանս , սպասա-

աստուածեալդ 'ի զօրութեանց երկնից . Տր և արարիչ երկնի և երկրի, որ առաքեցեր ըզ-բանն քո 'ի փրկութիւն ազգի մարդկան . լո՛ւր Տր, նայեա՛ց սրբդ 'ի բարձանց, մատո՛ զունկն քո, և ընկա՛լ զաղաչանս եկեղեցւոյ սբյ քո, և տո՛ւր անձրև 'ի վերայ երեսաց երկրի, և սերմն սերմանահանի, և հաց 'ի կերակուր. զի յաւուրս տառապանաց ծանիցեն հեթա-

նոսք՝ եթէ ծառայք քո եմք ։

Եւ այն ինչ բանքն 'ի բերանն էին, որոտաց Տր յերկնից, և տեղաց անձրև յորդառատ՝ մինչև ցաւուրս երիս . մինչ զի ասել ոմանց 'ի վկայարանից, և դիճլ աղօթիւք դադարեաց անձրևն ։ Օ որ տեսեալ բնակչաց քաղաքին 'ի միւս աւուրն զսքանչելիսն Այ, որ եղև յա-ղօթից եկեղեցւոյն . և սկսան մեծաձայն փառս վերառաքել Այ, որ առնէ սքանչելիս 'ի ծառայս իւր . և եղև ուրախութի մեծ բո-վանդակ երկրին լիկիացւոց, և մանաւանդ զմիւռնին քաղաքին, ուր և բազումք իսկ

դարձան 'ի Տր ։

Յետ այսորիկ կեցեալ սբյն պօղիկարպոսի յաթոռն զմիւռնոյ այլ ևս ամս բազումս, և ընդերկարեալ յծի մինչև ցխոր ծերութի, փայլեաց հանապազ սքանչելի վարուք, և պայծառացոյց զեկեղեցի բանի՛ վրդպութե իւրոյ . դարձուցանէր զբազումս յանհաւա-տից, և հաստատէր 'ի հաւատս զաշակեր-տեալսն՝ ոչ միայն զմերձաւորս, այլ և զհե-ռաւորս՝ առաքելով թուղթս հոգելիցս առ եղս . յորում կարգի յիշատակին թուղթք

նր

նոր առ աթենացիս, և առ սրբն դիոնեսիոս
արիսպագացի, և առ զանազան եկեղեցիս.
ոմն և ասացուածք մեկնութեց 'ի վր սրբ գրոց.
որք չերևին այժմ 'ի միջի՝ բաց 'ի միոյ թղթոյ
նոր առ փիլիպեցիս, որ կայ մինչև ցայսօր.
զոր և յիշատակեն յոլովք 'ի նախնեաց:
Յաւուրս ծնկացն այնոցիկ յուզեալ լինէր
խնդիր 'ի մէջ եկեղեցւոյ վս տօնի զատկաց.
զոր ասիացիք կատարէին յաւուր հին պասե-
քի, այս 'ի չորեքտասաննն լուսնի ամսեանն
մարտի՝ ըստ հրէայս. իսկ հռովմայեցիք ըստ ա-
ւանդութե գլխաւոր առաքելոցն պետրոսի և
պօղոսի կատարէին 'ի կիւրակէին՝ որ զկնի
չորեքտասաննին լուսնի: Այլ 'ի լինել հակա-
ռակութե 'ի վր այսր և այլևս խնդրոց ինչ՝
յանձն էառ երանելին պօղիկարպոս ալեւո-
րեալ անձամբ յուղի անկանիլ, և գնալ 'ի
հռովմ, խորհուրդ հարցանել 'ի հռովմայ
հայրապետէն՝ որ էր յայնժամ անիկետոս (կամ
անիկետաս, նստեալ յամի տն 151. կամ 154).
և հասեալ անդր՝ բազում մեծարանօք պատ-
ուեցաւ յանիկետոսէ. և հայրապետական
շքով մատոյց զսբ խորհուրդն յանդիման
բազմութե հաւատացելոց. և հաւանութբ
նր քարոզեալ ըստ դէմ աղանդաւորաց եղելոց
'ի քաղաքի անդ՝ զբազումս 'ի վաղենտինեան
և 'ի մարկիոնեան հերետիկոսացն դարձոյց
յուղղափառութի ողջամիտ բանիւն քսի:
Իսկ մարկիոն աղանդապետն անձամբ եկեալ
երբեմն առ պօղիկարպոս՝ առ 'ի շահել ըզ-
սիրտ նր, և աղաչել զի մի մերժեսցէ զինքն

յեկեղեցւոյ , ասէր ցս̃ն · եղիցի՛ս ձանա-
չել զմեզ ։ Իսկ նա ասէ ցնա · ձանաչեմ ըզ-
քեզ՝ զի անդրանիկ ես սատանայի ։ Այս այ-
նուհետև չիշխեաց չարն երևիլ առաջի ս̃բյն,
որ սուսեր սուր էր ը̃դդէմ սուտանուն քրիս-
տոնէից որք յարուցանէին հերձուածս կորս-
տեան 'ի մէջ եկեղեցւոյ ։ Այս զայսպիսի
հրաժեշտ 'ի լիրբ աղանդաւորաց՝ ասէր ե-
րանելին՝ ուսեալ է իմ 'ի յովհաննէ աւետա-
րանչէ · որոյ մտեալ երբեմն 'ի բաղանիս յե-
փեսոս՝ իբրև ետես 'ի ներքս զկերինթոս ,
վաղեաց և ել 'ի բաղանեացն անտի , և ոչ լը-
ւացաւ · այլ ասէր , փախիցո՛ւք՝ զի մի՛ և բա-
ղանիքս փլանիցի 'ի վ̃ր մեր · զի 'ի նմա է
կերինթոս թշնամին ճշմարտութե̃ ։ Որպ̃ և
պօղոս ասէր յաղագս այսպիսեաց , թէ յառ-
նէ հերետիկոսէ յետ միանգամ և երկիցս
խրատելոյ հրաժարեա՛ ։ (7)

Այլ վ̃ն խնդրոյն զատկաց՝ որ վ̃ն եկեալ
էր ս̃ն 'ի հռովմ , չեղև ինչ առ ժամն որո-
շումն կանոնական · զի մի՛ երկպառակութի̃
լինիցի յեկեղեցւոջ , և առիթ զօրանալոյ
նախասացեալ աղանդաւորաց · թո՛ղ զի՝ ո̃պ
անիկտոս զհռովմայեցւոցն աւանդութի̃ ա-
ռաջի դնէր իբրև առաքելական , նոյնպէս
և պօղիկարպոս զասիացւոցն սովորութի̃ ա-
ռաջի առնէր իբրև նոյնօրինակ պահեալ առ
առաքելովք · վ̃յ և անիկտոս թողացոյց
զիրսն առ ժմկ մի · և պօղիկարպոս խաղա-
ղութ̃ դարձաւ 'ի հռովմայ անդրէն յաթոռ
իւր ։

Ըստ աւանդելոյ վկայաբանութեանց ինչ գաղղիացւոց՝ սրբն պօղիկարպոս յերթալն իւրում՝ ՚ի Հռովմ՝ էանց ընդ մասսիլիա գաղղիոյ․ և յղեաց անտի ՚ի լուգդոն զաշակերտ իւր պոթինոս անուն՝ սերմանել անդ զբանն կենաց․ զոր և արար նա, և համարեցաւ առաջին եպս լուգդոնացւոց։ Իսկ ՚ի կատարել նորա վկայութե՝ յղեաց սրբն պօղիկարպոս փոխանակ նորա ՚ի զմիւռնիոյ ՚ի գաղղիա կեղտաց՝ զաշակերտ իւր զիրենէոս, այն է սրբն երանոս հետեւօղ առաքելոց կոչեցեալ, երկրորդ եպս լուգդոնի և նահատակ քաջ։ Նոյնպէս յղեաց և զայլ աշակերտս յայլ եւ այլ կողմանս գաղղիացւոց․ և ՚ի մէջ այնցն յորդորեաց ասեն և զսրբն դիոնեսիոս արիսպագացի՝ լինել առաքեալ նորին գաղղիոյ․ այլ զայս թողեալ աւանդութե ազգին՝ տեսանեմք ՚ի զանազան վարս սրբ եպսաց, քահանայից և սարկաւագաց նահատակելոց ՚ի այն ժմկս ՚ի գաղղիա, ասել՝ թէ նք եկեալ էին անդր յարեւելից առաքելովք ՚ի պօղիկարպոսէ․ մինչև զսա ճանաչել նախկին պատճառ լուսաւորութե այնր երի։

Նա եղև յետ դարձի սրբյն պօղիկարպոսի ՚ի Հռովմայ՝ իբրև ամք ինչ ՚ի մէջ անցին, մեռաւ խաղաղասէր կայսրն հռովմայեցւոց մարկոս անտոնինոս պիոսն կոչեցեալ՝ որ և ըստ յունաց եւսեբէս․ և թգրեաց որդի նր մարկոս աւրելիոս վերոս (յամի տն․ 162․) հանդերձ եղբարբ իւրով ղուկիոսիւ վերոսիւ կոմոդոսիւ․ և յաւուրս սոցա յարեաւ

խռո

խռովումն հալածանաց ըդէմ քրիստոնէից , այլ առաւել զայրացեալ 'ի կողմանս ասիացւոց , այն է 'ի փոքրն ասիա՝ որ առանձինն անուանի կոչի անատոլի , զի արևելք . ուր և 'ի գաղղիս արևմտից . և բազումք առաքինացան 'ի հանդէս նահատակութե մն անուանն քսի . այլ պսակ պարծանաց վկայից Ծմկին եղև սբն պօղիկարպոս զմիւռնոյ հայրապետ (8) . զորոյ զերջանիկ կատարումն առաջի կայ մեզ գրել 'ի նամակէ անտի ականատես վըկայից՝ երիցանց սուրբ եկեղեցւոյն զմիւռնացւոց . թող զի զնոյն երկրորդէ և եւսեբի՝ քաղելով զնամակն զայն ողջոյն . ուր և յիշատակ լինի այլոց յառաջընթաց վկայից ասիացւոց տօնելեաց ը պօղիկարպոսի՝ անուանք արևելեան վկայից : (9)

Որդ՝ իբրև տարածեցաւ հրդեհ հալածանաց 'ի կողմանս ասիացւոց ( յամի տն 167 . կմ 168 ) , ըմբռնեցան հրամանաւ ստրատիօսի կուադրատոսի անթիհիւպատին զմիւռնոյ և ամ ասիոյ ( որ և անթիպատ ասի , զի փոխանակ բդեշխի , ) և այլոց ևս դատաւորացն արևելից՝ բազմութիւք 'ի քրիստոնէից , և անկան յազգի ազգի տանջանս վասն անուանն քսի . զի ոմանք 'ի նշէ մինչև 'ի ջիղս ներքինս քերեալ լինէին , ուր զի աղիք յորովայնի նոցա երևէին . այլք 'ի հուր արկեալ լինէին , և կէսք 'ի ջուր ընկլուզանէին . թող զայլս բազումս՝ զորս սրով փախճանէին . ուր և 'ի ներքոյ ոմանց գաղտկուրս սուրս՝ զի զխեցեմորթս ծովու տարածանէին , և ձգձը-

գեալ՝ նորօք խոցոտէլին և պատառոտէլին զմարմինս ո՞յց. և այլ ևս խոշտանգանս ՚ի վ՟ր ածեալ՝ յետոյ ՚ի կերակուր գազանաց տային:

ՄԱԼ յայսմ ա՟մի այնչափ էր սքանչելի համբերութի և զուարթութի սրտի երանելի վըկայիցն, մինչև ոչ հեծել անգամ նո՟ց ՚ի դառն չարչարանս, և այնո՟ց գլխովին զարմացուցանել և յողբ շարժել զա՟մ տեսօղս: Յորում հանդիսի առաւել առաքինացաւ այրն գերմանիկոս՝ պատանի ծաղկահասակ, որ իւրով օրինակաւ զօրացոյց զսիրտս քաջ նահատակաց. զի զուարթացեալ էր նա շնորհօքն ա՟յ, և անվեհեր ոգւով յաղթեալ երկիւղի մահու՝ որ տնկեալ է ՚ի մարմնի: Զսա կամէր հրապուրել անթիպատոսն, և դնէր առաջի նո՟ր զհասակն նո՟ր՝ ասելով. տղայ ես և մանուկ, խնայեա՛ յանձն քո. և ցուցեալ նմ՟ զգազանսն՝ որ ՚ի թատրոնի, կամէր ահ արկանել ՚ի նա: Իսկ նմա ոչինչ եղև փոյթ, այլ՝ խնդութ՟ բուռն հարկանէր զգազանացն, և ածէր առ ինքն՝ ոչ միայն գրգռելով, այլ և բռնի. որ՟ զի յայտնի արասցէ՝ թէ ո՛չ կեանք և ո՛չ մահ որոշէ զնա ՚ի քն՟է, և զի փաղփաղակի լուծցի յանօրէն և յամպարիշտ ազգէ աստի յայսմանէ: Իսկ նա իբրև այսպիսի սքանչելի մահուամբ նահատակէր, ա՟մ ժողովուրդն զարմացեալ ը՟ զօրութ՟ սր՟յ վկային, և ը՟ անպարտելի արութ՟ այլոց ևս կատարելոցն ՚ի քն՟, ՚ի նախանձ բարկութե՟ շարժեցան, և յանկարծակի սկսան աղաղակել

կել և ասել. բա՛րձ զանաստուածս, բարձցի՛ 'ի մի-
ջոյ այդ ազգ քրիստոնէից. խնդրեսցի՛, 'ի
մէջ եկեսցէ առաջնորդն նոցա Պօղիկարպոս։
Յայնմ պահու խռովութեան յառաջ մատեաւ
ինքնօրէն համարձակութեամբ այր ոմն կուինտոս
( կամ կոյինդոս ) անուն՝ յազգէ փռիւգացի,
որ այն ինչ նորոգ եկեալ էր 'ի կողմանց ան-
տի փռիւգացւոց, որ և զայլս յորդորեալ
իսկ էր 'ի կամաւոր նահատակութիւն. սա քան-
զի յանձնապաստան ցուցաւ 'ի մխիլ յառաջ՝
առանց ուրուք զնա կոչելոյ, իբրև ետես
զգազանսն և զգազանութիւն նոցա՝ զահի հա-
րաւ, և տկարացաւ 'ի միտս իւր. զոր տե-
սեալ անթիպատոսին՝ կոչեաց զնա առ ինքն,
և խոստմամբ պարգևաց հաւանեցոյց զնա
երդնուլ 'ի դիս և զոհել։ Բայց սակայն թէ-
պէտև նա կորեաւ, օրինակ յայտնի եթող
ամենեցուն՝ թէ ոչ արժան է վաղվաղակի
ումեք արկանել զանձն իւր յայսպիսի իրս
յանդուգն համարձակութեամբ առանց երկիւղի
Տեառն. և ոչ յա̃մսին է կատարեալ սէր՝ որ 'ի
բաց մերժէ զերկիւղ մարդկային։
Յայնմ հետէ զհետ էին խնդրակք իշխա-
նին յըմբռնել զպօղիկարպոս. իսկ սքանչե-
լի հայրապետն զայս ամենայն անցս հալածանաց
վաղագոյն լուեալ, հաստատեալ էր 'ի մօտի
կալուածալ 'ի քաղաքի անդ, զի թերևս հաս-
ցէ փափաքանաց սրտի իւրոյ՝ կատարիլ վը-
կայութեամբ 'ի Քրիստոս. այլ իբրև աղաչեցին զնա՝ որ
ընդ նմայն էին՝ ելանել արտաքոյ զմիւռնոյ
յագարակն, որ սակաւ ինչ հեռի էր 'ի քա-

զաքէ անտի, յանձն էառ զխնդիր նոցա, և դադարեաց անդ քանի մի պաշտօնէիւք. Եւ որս համապազորդեալ յաղօթս առ Տր՝ հայցէր լինել խաղաղութի ամ եկեղեցեաց. և ելից Ած զհայցուածս նորա՝ կատարելով և զփափաք նորին առ նահատակուն. քանզի յայտնեաց նմա, թէ կնքեսցի 'ի ձեռն վըկայութեն նր համդէս վկայից Յմկին, և դադարեցին հալածանքն : Որդ՝ երեք (ըստ ոմանց, երկու) աւուրբ յառաջ քան զկատարումն իւր տեսանէր սրբն 'ի տեսլեան, զի 'ի բարձն՝ որ կայր 'ի ներքոյ գլխոյ նր, յանկարծակի վառեցաւ հուր, և մաշեաց զայն. և իբրև զարթեաւ 'ի տեսլենէն (10), նոյնժամայն պարզ և մեկին յայտնեաց զելս իրացն, նախապատմելով որոց ընդ նմա էին՝ որ ինչ լինելոցն էր, եթէ վս քսի հրով վախճանիմ ես յետ աւուր :

Իսկ իբրև ծանեան՝ որք ընդ նմա էին, թէ պաշտօնեայք ատենին մեծաւ պնդութբ 'ի խնդիր են երանելւոյն, աղաչէին զնա միւանգամ խոյս տալ յայլ տեղի. և նա վասն սիրոյ եղբարց բռնադատեցաւ փոխել յայլ միւս ես ագարակ : Այլ յետ սակաւուց հասին ժամանեցին նմա՝ որք զհետ մտեալ էին նր. քանզի կալեալ նց երկուս պատանեակս՝ տանջեցին զմի 'ի նցէ՝ ցուցանել ինքեանց զտեղի եպսին. և նա տարեալ եցոյց նց ըզփանամն պօղիկարպոսի : Եւ էր ժամ երեկոյի ուրբաթուն. յորում պահու բազմեալ էր սրբն 'ի վերնատան միոջ, ուստի կարէր նա

փախ-

փախչել 'ի մլթան 'ի միւս ևս տուն , որք և
ստիպէին եղբարքն . բայց նա ոչ կամեցաւ ,
այլ ասէր՝ թո՛յլ տուք , զի կամք այ լիցին .
որ և այն էր կամք սրբյն : Այ իբրև գիտաց
երանելին , եթէ հասին արքն 'ի տուն անդր ,
էջ փութանակի առ նս , և խօսեցաւ ը նս
զուարթ երեսօք և քաղցրութբ : Որոյ ըղ-
պատկառելի դէմս տեսեալ արանցն , կար-
ծեալ թուէր նց՝ որք ոչն գիտէին զնա , և-
թէ սքանչելիս ինչ տեսանեն . զի հայէին ը
հնուն ծերութ նր և ը ցածութ խոնարհու-
թե և ը անայլայլելի երեսս նր , և կարե-
կից լինելով՝ սոսէին , եթէ զիա՛րդ անագո-
րոյն մօրք առաքեցին զմեզ իշխանքն այնպի-
սի պնդութբ , զի ըմբռնեսցի այսպիսի ծեր :
Իսկ նա նոյնժամայն հրամայեաց դնել ա-
ռաջի նց սեղան , և խորտիկս ազնիւս կազ-
մեաց նց իբրև բարեկամաց և բարերարաց :
Նա ինքն խնդրեաց 'ի նցէ ժամ մի յաղօթս
կալ ցածութբ . և իբրև համարձակեցուցին
նմ , յարեաւ և կայր յաղօթս լի շնորհօք ան
մերոյ . մինչև զարմանալ որոց միանգամ տե-
սանէին և լսէին զաղօթականութի նր . և
սրտացաւութբ սսէին , եթէ ո՛րպիսի այր հան-
դերձեալ է մեռանիլ , ծեր , ցածուն , արժա-
նի այ : Իսկ սրբն յիշեաց յաղօթս իւր զամ
եկեղեցիս՝ որ ը ամ կողմանս և ընդ տիե-
զերս , հայցելով 'ի այնէ զհաստատութ հա-
ւատացելոց , և զի զխաղաղութի :
Նա յետ իբր երկուց ժամուց իբրև կատա-
րեաց զաղօթս իւր , 'ի լուսանալ առաւօտուն

Նստուցին զնա 'ի մ՟ջ գրաստու մ՟ի իշոյ, և ա-
ծեալ ածէին 'ի քաղաքն յաւուր մեծի շա-
բաթու ։ Իսկ հանդիպեցաւ ը՟ առաջ նորա
գլխաւորն սպասաւորաց դատաւորի հերով-
դէս անուն, զոր իրենարքոս կարդային, այս
է՝ իշխան խաղաղութե՟, նստեալ 'ի կառս ը՟
հօր իւրում Նիկետայ․ որոց պատուհասիրել
կամեցեալ զալիս պօղիկարպոսի՝ նստուցին
զնա ը՟ իւրեանս 'ի կառս․ և զճանապար-
հայն հրապուրէին զնա յուրացութի՟․ զի՞նչ
չար է ասեն՝ ասել մարդոյ յայսպիսի վտանգ-
մահու, տ՟ր իմ կայսր, և զոհել և կեալ ։
Իսկ նա զառաջինն ոչ ետ ն՟ց պ՟խնի․ իսկ իբ-
րև ստիպէին զնա, ասէ ցն՟ս․ ոչ գործեմ ես
զայդ՝ զոր դուք ինձ խրատ տայք ։ Իսկ ն՟ք
իբրև տեսին՝ թէ չառնու յանձն, սկսան չա-
րաչար բանիւք թշնամանել զնա․ և հարկա-
նելով և աքցոտելով զսբ՟ ծերունին՝ ձգեցին
իբր յակամայս 'ի կառաց անտի․ և իբրև ան-
կաւ, ջախջախեցան սրունք ն՟ր․ այլ նորա
ոչինչ վշտագնեալ, իբրև այն թէ եղև նմա և
ոչինչ, յարեաւ 'ի գետնոյ անտի, և ուրա-
խութ՟բ եմուտ 'ի քաղաքն ։

Ապա առեալ զնա զօրականաց՝ ածին յաս-
պարէզ անդր, ուր զգազանսն արձակէին․
զեղան 'ի տեղի անդր և բազմութի՟ քաղա-
քին, և եղև խռովութի՟ մեծ, զի լուեան՝ եթէ
ըմբռնեցաւ պօղիկարպոս ։ Իսկ մինչդեռ
մտանէր սբ՟ հայրապետն 'ի թէատրոն անդր,
ձայն եղև առ նա յերկնից, և ասէ․ քաջա-
լերեա՛ց զօրացի՛ր պօղիկարպոս․ բայց զայն՝

որ

որ տեսացն զայս՝ ոչ ոք ետես . այլ զձայնն բազումք 'ի հաւատացելոց անտի առաջիկայ եղելոց լուան :

Իբրեւ եհաս ս՟րն 'ի տեղի ատենին, հարցանէր զնա անթիհիւպատոսն, եթէ դո՞ւ իցես Պօղիկարպոսն : Նա իբրեւ ասաց, այո, հրապուրել սկսաւ զնա յուրացութիւն . պատկառեա՛ ասէ 'ի ծերութե՟ այտի քումմէ, եւ լո՛ւր խրատու իմում . երդուի՛ր 'ի փառս կայսեր, եւ իմաստնացի՛ր . եւ ասա՛ վասն աղանդաւոր քրիստոնէից, բարձցի՛ն անօրէնքն : Նա եւ երանելին Պօղիկարպոս լուրջ երեսօք նայեցաւ ի՟ն ա՟մ ժողովուրդն՝ որ յասպարիզի անդ էին, եւ ձգեալ զձեռն իւր 'ի վ՟ր հեթանոսաց՝ յոգւոց եհան յերկինս 'ի վեր, եւ ասէ . բա՛րձ ա՟ր զանօրէնսն : Նա եւ դատաւորն ոչ 'ի միտ առեալ զոր ասաց ս՟րն, կրկին եւս ստիպէր եւ ասէր . երդուի՛ր, եւ արձակեմ զքեզ . հայհոյեա՛ զք՟ս : Նա ասէ ցնա Պօղիկարպոս . ութսուն եւ վեց ամէ իմ, զի ծառայեմ նմա . եւ ի՛նչ մեղ ինչ ոչ արար ինձ . զիա՞րդ կարեմ ես հայհոյել զթագաւորն իմ, զայն՝ որ փրկեաց զիս : (11)

Բայց դատաւորն անդրէն ստիպելով ասէր . դէթ երդուի՛ր 'ի փառս կայսեր, ն՟ր 'ի բախտ նո՟ր (12) : Պ՟նի ետ երանելին . կատակելով կատակես դու . զի ասես ինձ՝ երդուի՛ր 'ի բախտն կայսեր, որ հեթանոսաց է գործ . իբրեւ այն թէ չգիտիցես՝ թէ ո՞վ ես իցեմ . արդ լո՛ւր դու համարձակ, քրիստոնեա՛յ եմ ես . եթէ կամիս դու ուսանել զբանս քրիս-

տո-

տանջութե՛, ժամ տուր և լո՛ւր ։ Յայնժամ ասէ անթիպատոսն այպանօք ․ ա՛ղէ ասաէն հաւանեցո՛ զայդ ժողովրդեանդ այդմիկ ։ Ասէ ցնա պօղիկարպոս ․ ես զքեզ յայն սակս պատասխանւոյ արժանի արարի՝ խոստանալով և զկարևորսն ասել, զի ուսեալ է մեր՝ առաջնորդաց և իշխանաց որ ա̃յ հրամանաւն կարգեալ են՝ մատուցանել զարժանին պատիւ, որ ոչ վնաս ածնիցէ հոգւոց մերոց ․ այլ զխաժամուժն ամենիս չհամարիմ ընաւ արժանի պճ̃նւոյ՝ արկանել զմարգարիտն հաւատոց առաջի անս̃ոց ։

Ընդ այս սրտմտեալ անթիպատոսն՝ ասէ ․ գազանս ունիմ ես, և նց̃ արկանեմ զքեզ, եթէ ոչ զղջացեալ ապաշխարես ։ Ասէ երանելին ․ ա՛ղէ կոչեա՛ զգազանս քո, և եկեսցե՛ն ․ զի չի՛ք մեր փոփոխումն ապաշխարութե՛ ՚ի բարեաց ՚ի չարիս ․ այլ բարւո՛ք է մարդոյ դառնալ և ապաշխարել ՚ի չարեաց ՚ի բարիս ։ Յաւել ասել իշխանն ․ եթէ զգազանօքն արհամարհես, հրով մաշեմ զքեզ, եթէ ոչ դառնայցես ։ Ասէ ցնա պօղիկարպոս ․ հրով սպառնաս, որ առ ժամանակ մի տոչորի, և յետ սակաւ ժամանակի շիջանի ․ զի ոչ գիտես դու զհուրն դատաստանաց՝ որ լինելոց է, և զտանջանս յաւիտենից՝ որ պահեալ են ամպարշտաց ․ այլ զի՞ եւս յամես դու, բե՛ր զոր ինչ կամիս ։ Զայս և առաւել քան զսոյն համարձակ խօսեցաւ երանելին, զի լի էր սիրտ նր̃ քաջութբ̃ և խնդութբ̃, և երեսք իւր լի ուրախութբ̃ և շնորհօք ․

հօք. մինչև զարմանալ անթիպատոսին յոյժ. որ և անդէն հրաման տայր քարոզ կարդալ 'ի մէջ ասպարիզին երիցս անգամ. պօղիկարպոս խոստովանեաց վ̃ն անձին իւրոյ՝ եթէ քրիստոնեայ եմ։

Եւ իբրև ասացաւ այս 'ի քարոզէ անտի, ա̃մ ժողովուրդն հրէից և հեթանոսաց բնակելոց 'ի զմիւռնիա՝ մեծաւ սրտմտութ̃ և բարկութ̃ աղաղակէին, և ասէին, դա՛ է վ̃րդ՝ ուսուցիչ ասիացւոց, հայր քրիստոնէից, և լուծիչ դից հեթանոսաց. զի ուսուցանէ բազմաց՝ թէ մի՛ զոհեսցեն, և մի՛ երկիր պագանիցեն ա̃ծոց. հա՛պա բա՛րձ զդա 'ի միջոյ։ Եւ միաբանգամ աղաղակ բարձեալ աղաչէին զփիլիպպոս ասիապետն՝ յորոյ 'ի ձեռս էր առնել հանդէս գազանամարտի, զի արձակեսցէ առիւծ 'ի վ̃ պօղիկարպոսի։ Իսկ նա ասէ ցն̃ն. չունիմ ես իշխանութ̃, զի կատարեցան աւուրք խաղուս։ (13)

Ապա հաճոյ թուեցաւ բազմութ̃ աղաղակել 'ի միասին, թէ կենդանւո՛յն այրեսցի պօղիկարպոս. զի պա՛րտ էր կատարիլ տեսլեան սր̃յն և մարգարէութ̃ն, թէ հրով ունիմ ես այրիլ։ Եւ ահա արագ արագ զոյգ ը̃ բանիցն ամբոխին՝ և գործն կատարեցաւ ը̃ ակնարկութ̃ անթիպատոսին. զի ժողովեցին բերին ժողովուրդք 'ի խանութից և 'ի բաղանեաց փայտ և խոտ, մանաւանդ հրէայքն. զի խնդային և պնդէին յասպարէզն անդ վ̃ն կործանելոյ զարդարն՝ առ ատելութ̃ն, որ առ ք̃սեանս։

Եւ

Եւ եղև իբրև պատրաստեցաւ նիւթ խարուկին, ինքնին ելոյծ կենդանի նահատակն զգօտի իւր, և 'ի բաց արար յիւրմէ զհանդերձսն. մինչև և զկօշիկսն իսկ կամէր լուծանել. և զայս չէր նր̅ յառաջագոյն արարեալ [14]. ուր հաւատացեալքն փութային ելևելս առնելով զմիմեամբք, թէ ո՛վ 'ի նոցանէ յառաջ մատիցէ 'ի հանդերձս նր̅. իբրև այն՝ զի ամ̅ բարի վարուք զարդարեալ էր և յառաջ քան զծերուն̅ի իւր։ Ապա այնուհետև եղան գործիքն՝ որ պատրաստեալ էին՝ 'ի նիւթ հրոյն. (այ̅ս է՝ բաց 'ի փայտէն և 'ի խռո՛յն՝ որ 'ի պէտս կրակի, բերին և զգործիսն, զո՛ր օրինակ զցիցն՝ յորում կապէին զայրելի անձն, և զպարանսն՝ որովք պնդէին, և զբևեռսն՝ որովք բևեռէին. ո՛չ և զշապիկն կպրազօծ՝ զոր զգեցուցանէին այրելոյն)։

Եւ դահիճքն պատրաստէին պնդել զպօղիկարպոս բևեռօք, ըս̅ սովորութ̅ե՝ որով զայլսն պրկէին, զի մի՛ 'ի բաց ոստիցին կմ̅ փախչիցին 'ի հրոյն։ Իսկ սր̅ հայրապետն ասէ ցնս̅. թո՛յլ տուք ինձ այսպէս, զի այն՝ որ տայ ինձ զօրութի̅ համբերել հրոյն, նոյն տայ ինձ յերկարել անդէն 'ի հուրն առանց աշխատութ̅ե և առանց բևեռելոյ։ Եւ նք̅ թոյլ ետուն, և ոչ բևեռեցին զնա. այլ միայն կապեցան կապել. որ և ինքն իսկ փութացաւ՝ ետ ըզձեռս իւր յետս, և կապեցաւ իբրև զգառն երևելի՝ որ ելանէ 'ի մեծ հօտէ՝ լինել ողջակէզ և պատարագ ընդունելի ա̅յ կենդանւոյ։

Եւ

Եւ յայնմ վայրի համբարձ երանելին զաչս իւր յերկինս, յաղօթս եկաց և ասէ. Տէր ած ամենակալ՝ հայր յի քսի որդւոյ քո սիրելւոյ և օրհնելոյ, այն՝ որ 'ի ձեռն նր ընկալաք մեք զգիտութիւն քո. ած հրեշտակաց և զօրութեց, և ամ արարածոց, և ամ տոհմին արդարոց՝ որ կենդանի են առ քեզ. օրհնեմ զքեզ, զի արժանի արարեր զիս յաւուրս յայսմիկ առնուլ մասն 'ի թիւ վկայից՝ 'ի ձեռն բաժակի քի՝ 'ի յարութի կենացն յաւիտենից շնչոյ և մարմնոյ և հոգւոյ սբյ առանց ապականութե. ընդ որս և ես մատեայց առաջի երեսաց քոց այսօր պատարագ պարարտ և ընդունելի. ոպ պատրաստեցեր յառաջագոյն և յայտնեցեր անսուտդ ած ճշմարտութե. վս այսորիկ և վս ամ իրիք փառաւորեմ և օրհնեմ զքեզ 'ի ձեռն քահանայապետիդ յաւիտենից յի քսի որդւոյ քո սիրելւոյ. զի 'ի ձեռն նր քեզ և ը նմա հանդերձ հոգւովդ սբվ փառք և օրհնութի յայսմհետէ մինչև յաւիտեանս. ամէն:

Եւ ընդ ասել նր զամէնն (15), սպասաւորք հրոյն բորբոքեցին զհուրն շուրջանակի. և կայր կապեալ սբն 'ի միջի: Իսկ իբրև բոցն արծարծեցաւ և տոչորեցաւ ուժգին, սքանչելիս իմն տեսին՝ որք մերձն կային. զի հուրն բոցատարած՝ կամարաձև կառուցեալ՝ գործեցաւ 'ի նմանութի խորանի (ոպ վրանի), կմ իբրև զհողմալից կտաւ առագաստի նաւու (16). և այնպէս ուռուցեալ պատեալ կայր շուրջ զմարմնով վկային. և էր սբն 'ի ներ-

քոյ

քոյ ո̃պ տաղաւարեալ 'ի վրանի • զի կայր նա 'ի մէջ հրոյն ո́չ ո̃պ զմարմին, զի այրի, այլ իբրև հաց սր̃՝ եփեալ տակաւ 'ի նուէր ա̃յ, և իբրև զոսկի և զարծաթ՝ որ փորձի 'ի բովս • և հոտ անոյշ բուրեր 'ի նմանէ իբրև զհոտ կնդրկի կա̃ իբրև զմիւռոյ յազնիւ́ խնկոց ։

Նուեզև իբրև տեսին անօրէնքն, թէ ոչ կարէ հուրն մերձենալ 'ի սր̃ն, և այրել զմարմին նորա, հրամայեցին դահճի միում՝ մօտ մատչել, և խոցել զ̃նա սրով ։ Իբրև արար զայն, ել 'ի նմանէ արիւն յոյժ, և շիջոյց զհուրն • և տեսին՝ որք մերձն կային՝ զհոգի երանելւոյն, զի իբրև զաղաւնի թռուցեալ վերանայր յերկինս • և զարմացա ա̃մ ժողովուրդն՝ եթէ է այսպիսի ընտրութի̃ 'ի մէջ անհաւատից և ընտրելոց ա̃յ • յորոց մի էր և այս երանելի և սքանչելի այր ա̃յ՝ յաղթօղ վկայն քն̃ի պօղիկարպոս, վ̃դպ ճշմարտութե̃ նմանօղ առաքելոց և մարգարէից • որ անարատ գտաւ վարուք մաքրութե̃ • և 'ի գլուխ տարեալ զկատարեալ յաղթութի̃ մեծի վկայութե̃՝ ընկալաւ զյաղթանակ փառաց 'ի տ̃նէ առանց երկմտութե̃, և պսակեցաւ անեղծ պսակաւ ։ (17)

Ընդ որ մախացեալ բանսարկուին՝ խորամանկ հնարիւք գուն գործէր, զի մի́ և մարմին նո̃ր շնորհեսցի հաւատացելոց, որք յո̃մ սրտէ ցանկային այնմ • վ̃յ և գրգռեաց այնուհետև զնիկետաս զհայրն հերովդի և զեղբայր դեղկեայ, և զբազումս 'ի հրէից՝ զգացուցանել դատաւորին, զի մի́ տացէ

քրիս-

քրիստոնէից զմարմին պօղիկարպոսի. զի այնչափ մոլեալ էին (ասէն) նոքա զհետ առն այնորիկ, մինչև զուցէ թողեալ նոցա զխաչելեալն՝ երկիր պագանիցեն նմա։

Այլոյն իրի եղան պահապան զօրք հանդերձ հարիւրապետիւ, զի մի կարասցեն մերձենալ ՚ի տեղին քրիստոնեայք, որք պատրաստեալ էին առնուլ զմարմին սրբոյն ՚ի հրոյ անտի. և հրէայք ընդդէմ կացեալ հակառակէին։ Իբրև ետես հարիւրապետն ըզմարտ հրէիցն, եդ զմարմինն երանելւոյն ՚ի միջի, և այրեաց զնա (ո՛չ սովորութ էր արտաքնոցն). և ապա հաւատացեալքն ժողովեցին զոսկերս սրբոյն իբրև ցանկալի գանձս հոգևորս, առաւել պատուականս համարելով զնոսա քան զականս պատուականս ծանրագինս, և քան զոսկի ընտիր փորձեալ ՚ի հուր. և եդին յարժանաւոր տեղւոջ։ (18)

Այր ժողովեալ ուրախութբ և ցնծութբ՝ առնէին զօր յիշատակի վկայութե նր՝ զի այնորիկ որ յառաջագոյն նահատակեցան. զի են արևելեան վկայքն սափացւոց. յորոց երկոտասանքն յիշատակին լինել ՚ի փիլադելփեայ. այլ առաւել քան զամենեսին նա՝ սբ միայն յիշատակ էր պայծառացեալ, ո՛չ և յամենց՝ իբրև գլուխ նց՝ երեքտասաներորդ վկայ կոչեցեալ. մինչև և ՚ի մէջ հեթանոսաց պատմեալ լինէր. զի ո՛չ առաքելոցն անուն ընդ նմ երկիր ծանուցաւ, այնպէս և պօղիկարպոսի սքանչելւոյ՝ աշակերտի առաքելոյն։ Օրոյ և զօրինակ կատարմանն (զի ձառե-

լոցս

լոյս , ) համդերձ յառաջընթաց նահատա-
կակցօք նորին՝ գրեցին եղբարք և երիցունք
եկեղեցւոյն զմիւռնացւոց առ եկեղեցին փի-
ղոմեղայ կամ փիղադեղփեայ . և նք̃ եւտուն
առաքել ը̃ ո̃մ եկեղեցիս . զի որք հաւատով
կատարեն զյիշատակ սր̃ց , մասնակից լի-
ցին պսակացն նց̃՝ 'ի քս̃ 'ի տ̃ր մեր :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Վարք սր̃յն պօղիկարպոսի՝ 'ի սկզբանէ մինչև 'ի սքանչելիս անձրևոյն որ յերաշտի , միօրինակ առ ո̃մ մատենագիրս՝ եթէ՛ ճարձակ ըստ եգելոցս , և եթէ քաղուածոյ , առեալ է 'ի հին և 'ի վաւերական բանից պիոնիոսի կմ̃ պիոնի . որ կամ է նա ինքն սր̃ն պիոն քահանայ եկեղեցւոյն զմիւռնիոյ , և կամ այլ ոք ժմկակից նր̃ յերրորդ դարու . և այս գրուածն պիոնի սի առեալ (բաց 'ի վկայուէ ժմկակից անձանց կենդանի բարբառով) 'ի բուն գրուածոց սոկրատայ ուրուշին և կայիոսի գործակցի սր̃յն երանոսի : Իսկ բուն վկայաբանութին է գրուծ ականատեսերիցանց եկեղեցւոյն զմիւռնացւոց . զոր և քաղելով ընդօրինակէ եւսեբիոս : Բայց կան և ցարդ նաև բնագիրք՝ եթէ վարուց և եթէ վկայաբանութն յունարէն , 'ի ձեռագիր և 'ի տպագիր մատենանս ամբողջ . մինչ զի աւելորդ է մեզ երկարել զբանս վս̃ վաւերականութն բովանդակ պատմութես . այլ որ ինչ ծագի խնդիր կարևոր վս̃ տարբեր ընթերցուածոց կմ̃ իմացուածոց , յիշեմք 'ի կարգիս :

(2) Ո՛չ գիտեմ , ո՛րպիսի շփոթութբ̃ 'ի Լ. կատարումն կմ̃ յիշատակ սր̃յն պօղիկարպոսի՝ ը̃ այլում պօղիկարպոսի փոխաբերեալ գտանի . զի պօղիկարպոս զմիւռնոյ հայրապետ (համդերձ համառօտ պատմութբ̃ն ը̃ գրելոյս ) յիշի 'ի 26. յունվարի . իսկ 'ի փետր. 23. դնի յիշատակ * 'ի հռովմ սր̃յն պօղիկարպոսի երիցու , որ
" ը̃ երանելւոյն սեբաստիանոսի կքաղումն դարձոյց 'ի
" հաւատս քս̃ի , և յորդորելով առաջնորդեաց 'ի վը-


" կայա-

,, կայական փառս ||․ ուր պարտ էր այսր փոխաբերել և զմեծն պօղիկարպոս․ զի զոր Հ․ դնէ 'ի փետր․ 22․ (եթէ 'ի յայսմաւուրս, և եթէ 'ի հին ճաշոցս․) 'ի Ց․ անվրէպ պահի․ փետր․ 23․ ուստի և 'ի Հ=Ց․ և առ մր իէլի․ նոյնպէս պարտ է ընթեռնուլ և գրեալն 'ի հին ճաշոցս ինչ․ իդ․ փետր․ և 'ի ճառընտ․ փետր․ իե․ յր

պարտ է վերծանել․ իդ ։

Անվրէպ առեմ՝ ըստ սուղագոյն իմացուածոյ բանից Ժմկակից և ականատես երիցանցն զմիւռնիոյ․ որք 'ի վախճան նամակի իւրեանց այսպէս գրոշմեն․ * Արդ
,, վկայեաց երանելին պօղիկարպոս 'ի մտաս քսանթի_
,, կայ ամսոյն՝ յաւուրն երկրորդի, նախ քան զեօթն
,, կաղանդաց մայիսի ( որ է վրիպակ գրչաց, փոխա_
,, նակ գրելոյ՝ կաղանդաց մարտի), 'ի մեծի շաբաթու,
,, յութերորդ ժամու || ։ Ուր իրաւամբք առէ վալե_սիոս հենրիկոս ընդդէմ պէսպէս իմացողաց բանիս, թէ զմիւռնացիք ոչ այլազգ վարէին զամիսս քան զասիացիս․ և աստ է ասիացւոց սկիզբն քսանթիկոս ամսոյն անկանի 'ի 22․ օր փետր․ ուստի նախին և երկրորդ օր քսանթիկոսի լինի՝ 23․ փետր ։ Որով խնքնին ուղղագրելի լինի մայիսն գրեալ փոխանակ մարտի․ և ասելն՝ 'ի մեծի շաբաթու՝ ոչ լինի վերածելի առ աւագ շաբաթն ( ուստի իմացան այլք ), այլ՝ 'ի շաբաթ օր ըհանրապէս, որ մեծ էր 'ի հնումն, և մեծ եղև ըստ կատարման սրբոյն պօղիկարպոսի, և ըստ այլ բազմ գլխոց ։ Զայս ապացուցանէ և գրեալն ուղղակի 'ի վարս սրբոյն պիոնի քահանայի, թէ * յեօթն կաղանդաց մարտի կատարիւր յիշատակ սրբոյն պօղիկարպոսի ||․ որ է ասել՝ 'ի 23․ փետրվարի․ յորում և ցարդ տօնեն զմիւռնացիք և ամ յոյնք ։

Այսչափս շատ լիցի 'ի լուծումն բերբարապատիկ բանից լատին վկայաբանից, քննչաց, Ժմկագրաց և տումարագիտաց, որք տարաձայնին 'ի վերայ յայսմ բանիցս ։

Աստի ծագեն և անհամաձայն կարծիք վասն աւուրյն՝ յորում կատարեցաւ սրբն պօղիկարպոս․ զի ոմանք դնեն յամի տն 166․ ոմանք 167․ ոմանք 168․ ոմանք 169․ ոմանք 172․ և այլն ։ Եւսեբիոս 'ի քրոնիկոն կանոնի դնէ յեօթներորդ ամի կայսերութեան մարկոսի աւրեղիանոսի և եղբօր նորա վերոսի ղուկիոսի աւրեղիոսի կոմոդոսի, և յաբրահամեան թուականի․ 2183․ յորոց առաջինն պինէ ամի տն․ 168․ և երկրորդն՝ ամի տն․ 167․ յորոց

մինն է ընտրելի երբև սոցա ։

(3) Ոմանք համարին, թէ առաջին եպս զմիւռնոյ եղև

Ապեղէս աղեքսանդրացի՝ գործակիցն պօղոսի, կմ ա-
պեղէս մին յեօթանասնից․ ապա սարապէաս եղբայրն
տիմոթէոսի․ ապա բուկողոս, որում յաջորդեաց պօ-
ղիկարպոս։ Իսկ այլք առաջին դնեն զբուկողոս կար-
գեալ յառաքելոց․ և յետ նր երկրորդ զպօղիկարպոս․
բայց ը այլ և այլ տեսութե կմ ը վ․ճակի այնր Ժմկի՝
չեն սք անհամաձայն։

(4) Զմ սքանչելիս սբյն գեղեցիկ համառօտէ Ց․ բա-
սիլ․ յասել անդ․ * Եւ արար բազում սքանչելիս․ զի
,, և յառաջ քան զձեռնադրելն, զկնողն՝ որ սնուցանէր
,, զնա՝ զցանեմարանս՝ յաղօթս կալով ելից ՟մ բարեօք,
,, զորս յառաջագոյն դատարկեալ էր 'ի պէտս կարօտե-
,, լոց․ և յետ ձեռնադրութեն զմեծ հրդեհն աղօթիւք
,, դադարեցոյց․ և 'ի լինել երաշտութե՝ եւ ածել անձ-
,, րև․ և զայլ բազում նշանս արարեալ շնորհօքն այ՝
,, ննջեաց, հրաշագործելով մինչև ցայժմ ||։

(5) Այլ նախնի մատենագիրք ը սբյն երանոյն աւան-
դեն, թէ յառաքելոց կմ յաշակերտաց քնի ձեռնադրե-
ցաւ պօղիկարպոս յեպս․ ով և ոմանք ը սբյն հե-
քանիմոսի յանուանէ յիշատակեն, թէ սբն յովհաննէս
առաքեալ և աւետարանիչ՝ ձեռնադրեաց զնա։ Այլա
յասել պլինիոսի և այլոց 'ի վկայաբանից ըհանրապէս,
թէ ժողովեցան շրջակայ եպսունք և ձեռնադրեցին
զնա, մի կարծեր անմիաբան ը առաջնոցն․ այլ կարի
միաբան․ զի գլուխ եպսաց Ժմկին յայն կողմանս էր նա
ինքն յովհաննէս աւետարանիչ։

(6) Այս դափնոս երևի լինել այն, զոր յիշատակէ սբն
իգնատիոս ածազգեաց 'ի թղթի իւրում առ զմիւռնա-
ցիս՝ ասելով․ * Ողջոյն տամ ալկեայ՝ սիրելի անուան,
,, և դափնոսի անհամեմատ զովելւոյ, և եւգեկնոսի,
,, և ամէն իւրաքանչիւր յանուանէ ||։ Բայց դժուա-
րին է ստուգել զոր կարծեցին ոմանք, թէ նաև անուն
ալկեայ յիշատակեալն յիգնատիոսէ՝ իցէ նոյն անուն և
նոյն անձն ը այնմ, որ գրի 'ի վկայաբանութե պօղի-
կարպոսի՝ ը օրինակաց ինչ ալկեայ կմ եղկեայ, և ը
եւսեբիոսի դաղկեայ կմ գեղկեայ, իբրև եղբայր կամ
քոյր հերովդի՝ մատնչի և տանջչի սբյն պօղիկարպոսի․
յայս կարծիս եղև երևելին ուսսերիոս՝ համարելով
զնա զոլ երևելի կին բարեպաշտօն առ զմիւռնացիս։

(7) Սբն երանեաս 'ի գրելն զերթ պօղիկարպոսի 'ի հռովմ
վն խնդրոյ զատկաց․ և զյաղթահարել նր զաղանդա-
ւորս Ժմկին, յիշատակէ և ինչ ինչ խօսեալ 'ի նմէ յա-
ռա-

ռաջինկայութեն իւրում՝ մինչդեռ ինքն մանուկ էր յա-
սիա. զոր արժան է և մեզ լսել. քանզի այսպէս գրէ
'ի թուղթն՝ որ առ Փլորինոս ումն միաեալ զհետ աղան-
դոյն վաղենտինոսի. * Զայդպիսի վարդապետութիւնս (ասէ)՝ ե-
,, րիցունք, որ յառաջ քան զմեզ եղեն, որ և աշակերտք
,, էին նոցին իսկ առաքելոց, ոչ երբէք քեզ աւանդե-
,, ցին: Այլաքէն տեսի զքեզ՝ մինչդեռ մանուկն էի՝ 'ի
,, ստորին ասիա առ պօղիկարպոսի, որ փայլէր մեծա-
,, պէս յեկեղեցւոջ. զի մեծապէս գուն գործէիր առ
,, հաճոյանալոյ նմա. զի զորս յայնմ ժամու գործեցան,
,, լաւ ևս յուշի ունիմ՝ քան զոր յայժմուս դիպեցան.
,, մինչ զի զոր միանգամ 'ի տղայութեն ուսանիմք, ընդ ա-
,, ճել հասակին զօրանան և յարևանան յոգիս. մինչև
,, կարող ևս եմ ասել զտեղին՝ յորում երանելին պօղի-
,, կարպոս նստեալ վարդապետէր, ոչ և զշարժմունս նորա և
,, զգնացս և զբովանդակ վարուցն նկարագրութիւն և
,, զմարմնոյ տեսակ, ևս և զխօսսն՝ զոր առ ժողովուրդն
,, առնէր. և զընտանի կենակցութիւն՝ զոր ունէր ընդ
,, յովհաննու, ոչ և ինքն իսկ պատմէր. և ընդ այլս ևս՝
,, որք տեսին զՏէրն, կենաց կցորդ լեալ էր. և թէ որ-
,, պէս զբանս նոցա յիշատակէր, և զոր ինչ միանգամ առ
,, 'ի նոցանէ լուեալ էր վասն Տեառն. և ևս զսքանչելեաց նորա և
,, զվարդապետութենէն. զի այն որում և ընկալեալ էր պօղիկար-
,, պոս 'ի նոցանէ՝ որ ականատես եղեն բանին կենաց, ամենայն
,, նոյնօրինակ զնոյնս ճառէր, յամենայնի միաբան գտեալ ընդ
,, սուրբ գիրս: Զայս ամենայն՝ զոր ես 'ի տուչութէ մարդա-
,, սիրութեն Աստուծոյ յայնժամ մեծաւ պնդութեամբ լսէի, և ըզ-
,, լուեալսն ոչ 'ի քարտի, այլ 'ի սրտի իմում գրէի,
,, զնոյնս շնորհօքն Աստուծոյ հանապազօր երկրորդեմ և յե-
,, ղանակեմ: Եւ առաջի Աստուծոյ կարեմ հաստատել, զի թէ
,, երբէք այսպիսի ինչ (մոլար վարդապետութիւն) լսէր երանե-
,, լին այն և առաքելականն երէցն, գոչէր աղդեօք առ-
,, ժամայն, և խցեալ զունկն իւր՝ ունէր ասել ըստ իւ-
,, րում սովորութեն, Աստուած ամենաբարի՝ յորպիսի ժա-
,, մանակս զիս պահեցեր՝ առ 'ի կարող լինելոյ տանել
,, այսոցիկ. և 'ի տեղւոջէն իսկ 'ի բաց փախչէր, ուր
,, ուրեք՝ եթէ յոտին և եթէ նստեալ՝ զայնպիսի բանս
լսէր ||:

(Տ) Քանզի եւսեբիոս ասասնօր յեկեղ. պատմ. յետ
քաղելոյ զվկայաբանութեն սրբոյն պօղիկարպոսի և որոց
ԺԲ նմա՝ յիշէ 'ի վախճան նոյն գլխոյն և զայլ վկայս, որ
եղեն 'ի զմիւռնիա, մանաւանդ զսուրբն պիոն քահանայ՝


որ

որ անուանի եղև յայժ յետ պօղիկարպոսի, այսու չփո-
խեալ ումանց 'ի վկայաբանից՝ չփոխեցին զժմկ երկո-
ցունց (յորոց միջի կայ դար մի)․ և եդին՝ որպ է տե-
սանել և 'ի Յ․ և 'ի Հ․ թէ սբն պօղիկարպոս նահա-
տակեալ իցէ 'ի հալածանս դեկոսի․ որ է Ժմկ նահա-
տակութե սբյն պիոնի․ և զարմանք է՝ թէ զիա՞րդ ոչ
հայէին, զի եւսեբիոս եթէ 'ի պատմութե, և եթէ 'ի
ժամանակագրական կանոնի որոշ և մեկն դնէ զպօղի-
կարպոս 'ի հալածանս որբեղիոսի և վերոսի․ ևն․ և ոչ
յայն՝ զոր ինքեանք իսկ Յունին, թէ զիա՞րդ կարէր
պօղիկարպոս աշակերտիլ առաքելոց առ դեկոսիւ 'ի
մէջն երրորդ դարու։

(9) Եւլին ոմանք 'ի յետոյն Ժմկս, որպ և առ մեօք 'ի մէջ
ազգիս, որք յօրինակել զտօնացոյցս կամ զՃաշոցս՝ վա-
րանեալ, թէ ո՞յք ոմանք իցեն աւելեալն վկայքս առանց
անուան յիշատակեալք ԺԲ պօղիկարպոսի, իշխեցին մտա-
ցածին յաւելուածս առնել բացատրութե, որպ թէ ընդ-
վկայելոցն յԻլին պարսից իցէ բանն․ և ոչ հայեցան՝
թէ զի՞նչ յարմարութի ունի այդ ԺԲ պօղիկարպոսի, և
ոչ դրձլ նայեցան՝ գուցէ կայցէ յիշատակութի զայլոց
վկայից 'ի վկայաբանութե սբյն պօղիկարպոսի․ յոր թէ
հայէին՝ քաջ գտանէին երկոտասան թուով, և ևս ա-
ւելի․ քանզի 'ի նամակի երիցանց զմիւռնոյ՝ (որ է բուն
վկայաբանութիւնն) գրի այսպէս․ * Այսոքիկ յաղագս
,, երանելւոյն պօղիկարպոսի, որ ԺԲ այլ երկոտասանս
,, եկեալս 'ի փիղադելփեայ, կատարեցաւ վկայութբ
,, 'ի զմիւռնիա․ այլ սա միայն առաւել յիշատակի յա-
,, մենեցունց, մինչ զի առ նոսին իսկ հեթանոսս յամ
,, տեղիս յաճախագոյն բանիւ քարոզի ||: Զնոյն բանս
կրկին և կրկին երկրորդէ նաև եւսեբիոս․ թո՛ղ զի և
'ի վր գլխոյն այսպէս մակագրէ․ * Թէ որպ վկայեաց
,, պօղիկարպոս յամս վերոսեայ հանդերձ այլովք 'ի
,, զմիւռին քաղաքի ||․ և յընթացս բանիցն ասէ․ * յայսմ
,, Ժմկի խռովութե բազում եղև հալածանաց 'ի կողմանս
,, ասիացւոց ||․ և դրձլ՝ թէ * և յետ այսորիկ և յա-
,, ռաջքան զվկայութիւն պօղիկարպոսի և վԾ այլոց վը-
,, կայից պատմէն, և գրոշմեն գրով՝ թէ որպիսի համ-
,, բերութի ցուցին նք 'ի ցաւս անձանց իւրեանց, այն-
,, պէս՝ զի զարմացուցին, որ միանգամ շուրջ կային և
,, հայէին ԺԲ նս ||․ ևն։ Թո՛ղ զի և Ռաւընտուրն՝ որ ընդ-
վկայաբանութիւնն ուղղոյն ԶՕրինակէ (համաձայն եւսե-
բեայ), ունի 'ի վերնագրի այսպ․ * Վկայաբանութի
,, սբյն

,, սբյն պօղիկարպոսի եպսի, որ վկայեաց 'ի զմռնայ
,, քաղաքի հանդերձ այլովք՝ որ ԺԲ նմա||:

Թուղթ ասել, թէ մին 'ի վկայից անտի՝ քաջն գերմանիկոս՝ յանուանէ յիշատակեալ 'ի վկայաբանութեան և առ եւսեբի, ուրոյն եղեալ կայ 'ի Լ. յունվարի. 19: Յոր հայեցեալ բոլլանդայ՝ զարմանայ, թէ զիարդ յոյնք ևս չտօնեն զգերմանիկոս՝ դէթ 'ի տօնելն զպօղիկարպոս 'ի փետր. 23. այլ չունի զարմանալ 'ի վն տօնացուցին հայոց, ուր արևելեան վկայս գնելով նախնեաց մերոց՝ ոչ զայլ ոք յայտ առնեն, բայց զսա ինքն զգերմանիկոս և զընկերս նր նահատակեալս 'ի զմիւռնիա առ պօղիկարպոսիւ, որ և ինքն իսկ է արևելեան, թբ յանատօլու երկրէն:

(10) Առ համաձայնութն արդեօք բառիս՝ տեսիլ, որ մարթի լինել 'ի քուն և կմ յարթնութն, տեսանեմք՝ զի աստանօր զտեսիլ պօղիկարպոսի եւսեբիոս բացատրէ իբրև յանուրջս գիշերոյ. ըստ որոյ դնի և 'ի Հ. ուր այլք յարթնութն 'ի ժամ աղօթից իմացան լինել: Բայց չէ ինչ. չամ է՝ զի ածային էր տեսիլն. և զոր գուշակեցն՝ կատարեցաւ:

(11) Քաջ դիտեմ զասելն սբյն. * Ութսուն և վեց ամ է իմ, զի ծառայեմ նմա (թբ քնի)||. զոր թբ առաջին կմ վեր 'ի վերոյ տեսութն՝ լինի իմանալ 'ի վն բովանդակ կենաց նր. և թբ այսմ եդին ոմանք 'ի վկայաբանից՝ զոյգ ԺԲ աղեքսանդրեան ձմկագրութն, թէ պօղիկարպոս կատարեցաւ 'ի հասակի 86. կմ 87. ամաց: Այլ հայելով 'ի ձմկն՝ յորում սկսաւ ծառայել քնի, յայտնապէս ճանաչելով զնա կամ զարժանաւոր պաշտօն նր՝ 'ի կալլիստեայ մօրագրէ իւրմէ (զի յառաջն է կամ անգիտելի, կմ թբ ոմանց հաւանական՝ անծանօթ լինել 'ի քնէ), պարտ է յերկարել զկեանս պօղիկարպոսի՝ այլ ևս 15, կմ դէթ 12. ամօք. չասացից՝ թէ առաւելեօք, զի թէև մանուկ կոչիցի փոքր, որպէս իմանամք. վն զի յայտ է 'ի բովանդակ ընթացից կենացն, զի ականատեսեալ ոմանց յառաքելոց՝ ևս առաւել յովհաննու, և բազմաց յաշակերտաց. և ինքն 'ի խոր ծերութն նահատակեցաւ, թէպէտև էր ժիր հոգւով և մարմնով. մինչ զի անցեալ էր արդեօք զհարիւրամենիւք. վսյ ուղիղ թուի դնելն զնա բոլլանդեանց իբր 104. ամաց. այլ թէ յորում ամի զայս ինչ և զայն գործ գործեալ իցէ, չէ ինչ հարկ զննել կմ գիտել:

Առ քեզ կանոն վն ամ իրաց գիտելեաց զպօղիկարպո-

եւ զայս ընդհանուր ասացուած Եւսեբի․ Փ․ 35․ *Բայց
,, սքանչելի էր ընդ ժամանակսն ընդ այնոսիկ (յերկրորդ
,, դարու յետ քՙի) 'ի կողմանս Ասիացւոց Պօղիկար_
,, պոս եպս զմիւռնացւոց, այր՝ որ շրջեցաւ ընդ առա_
,, քեալսն, եւ զեպսութիւն՝ յայնցանէ որ տեսին զՏրն եւ
,, պաշտեցին՝ ընկալաւ||:

(12) Ուր 'ի հայերէն թարգմանութեան դնի, երդնուլ 'ի փառս կայսեր, յունականն է՝ 'ի բախտն կայսեր: Արդ չէր օրէն քրիստոնէից երդնուլ 'ի բախտն կմ 'ի փառս եւ կմ 'ի դիւցաւորութի ինչ կռապաշտ կայսեր, զի առ հեթանոսս իմացեալ լինէր 'ի պատիւ չքոց․ մանաւանդ թէ՝ եւ բախտն կայսերաց հռովմայեցւոց՝ (կոչեցեալ 'ինչէ Ճէնիուս), մի 'ի կարգէ դից կարծեալ լինէր․ ('ի դէպ եկեալ ռամկական ձայնիւս Ճին, որ է ոգի դիւական:) Միայն օրէն էր երդնուլ 'ի վր կենաց, կմ արեւու կայսեր․ որպէս եւ բողոքել առ կայսր: Վս ասէ Տերտուղիանոս 'ի գիրսն պաշտպանութեան․ գլ․ 32․ *Երդնումք ոչ 'ի բախտս կայսերաց, այլ՝ 'ի կեանս
,, նց, որ պանծագոյնն է քան զամ բախտ: Ոչ գիտէք,
,, զի բախտք (լտ․ Ճէնիի) ասխն դեւքն: Մեք զայ ըզ_
,, դատաւորութին ընդունիմք յինքնակալսն, այն՝ որ
,, զնս իշխանս 'ի վր ազգաց կացոյց: Զի զայն ինչ գի_
,, տեմք լինել 'ի նս՝ զոր այծ կամեցաւ․ վս եւ զկեալն
,, նց կամիմք՝ զոր այծ կամեցաւ, եւ իբր երդումն մեծ
,, զայն ածդնեմք||: Յետ քրիստոնէութեան կայսերաց՝ սովորութի եղեւ երդնուլ 'ի բարեպաշտութի եւ 'ի յաղթութի ինքնակալաց, եւս եւ 'ի մեծութի կամ 'ի բարձրութի ինքնակալին:

(13) Աշխատաւորք էին քուրմք հանրականք ընդ գաւառականք՝ կարգեալք 'ի վր մրցենական խնդրոց ասիացւոց ընդ զանազան գաւառաց․ քանզի յիւրաքանչիւր քաղաքս ասիոյ ամ ընդ ամէ 'ի սկիզբն տարւոյ ընտրեալ լինէին մի մի ասխապետք․ եւ անուանք նց յղեալ լինէին առ գաւառական ատեանն․ որ որոշէր զտասն արս 'ի կարգէ անտի ընտրելոց, եւ անուանէր ասխապետս․ որք լինէին վերակացու մրցենաց, տօնից, եւ հանդիսից պաշտամանց․ եւ զի գազանամարտութին կարգեալ լինէր յաւուրս մեծահանդէս տօնից 'ի պատիւ դից, վս եւ հանդիսադիր նորին 'ի քրմապետաց ասխ ոք լինէր․ Ասխաբէք ոմանք էին եւ ասխապետք յիշատակեալք 'Ի գործս առաք․ ԺԹ․ 31․ իսկ թէ յոքնակի յիշատակին 'ի միում վայրի, պարտ է իմանալ՝ թէ մին 'ինչէ էր տա_

րե_

րեկան աւխապետն. իսկ այլքն՝ որք երբեմն լեալ էին
'ի նմին վերակացուն:

(14) Ապ տեսանես և 'ի վարս այլոց սրց նահատակե-
լոց հրով, զի գործիսն, և Թէոդորոսի տիւռոնի,
հանգամանք մանունք իբր նոյն գրին 'ի վր ամցն. վզ
զի որպ գլխատումն, և քերանքն և այլ տանջանքն, և
խաչն իսկ գլխովին, լինէին որոշ եղանակաւ իւրք. (որ
հորկ է ամցն նոյնօրինակ կատարելոց,) սոյնպէս և ա-
ռաւել ևս հանդիսանային արարուածք եթէ դահճաց
և եթէ վկայից 'ի հանդիսի կենդանւոյն այրման հրով:
Մինչ զի՝ որ զարմանալին է, հանէին իսկ զկօշիկն՝ միօ-
րինակ և տարօրինակ աւանդեալ՝ յամսին ունի զմթու-
թն ինչ առաջի մեր. վզ և աստ պէսպէս իմացեալ լի-
նի 'ի վր սրյն պօղիկարպոսի. այն՝ թէ * և զկօշիկսն
,, իսկ կամէր լուծանել. և զայս չէր նր յառաջագոյն
,, արարեալ||. կամ թր այլ ընթերցուածոյ. * զոր չէր
,, երբէք արարեալ ||. ուր թր հորկ տեսութն կարծէ.
ամ ոք, ապ թէ սրն սկսաւ հանել ինքնին և զկօշիկսն,
զոր չէր տակաւին հանեալ ընդ այլ զգեստս. բայց զի
այդ դրուածն ոչ է նոր ինչ արժանի գրելոյ, վզ կրկին
իմաստ մարթ է հանել հայելով և 'ի յաջորդ բանս:
Նախ՝ թէ սրն պօղիկարպոս ոչ երբէք ինքնին հանեալ
էր զկօշիկս իւր յաւուրս եպսուն իւրոյ. զի ոչ թոյլ
տային նմա հաւատացեալք, որք մի քան զմի փափա-
քելով մերձենալ առ նա՝ ինքեանք փութային հանել
զկօշիկ նր, մանաւանդ 'ի ծերութն անդ: Երկրորդ՝
թէ մինչև պատրաստեալ էր հուրն՝ մերձ կային հա-
ւատացեալք առ պօղիկարպոսի. վզ և նորա չէր հա-
նեալ զկօշիկսն և զհանդերձսն, զի մի յափշտակեսցեն
իբրև զնշխարս. այլ իբրև հեռացան նոքա, յայնժամ
եհան:

(15) 'Ի յիս բնագրի ասի. * և 'ի վերառաքել նր զա-
,, մէնն ||. յոր հայեցեալ ասեն ոմանք, թէ սովորուե
էր հին վկայից՝ յաղօթելն 'ի վերջին հանդիսի կատա-
րման, զբանս աղօթից դաշն ձայնիւ ասել՝ զոր աւա-
ւել մերձաւորք լսէին. և զամէնն՝ որ զկնի՝ հառաչա-
նօք և լսելի բարբառով վերառաքել, կամեցեալ նշա-
նակել առ դահիճս և առ ամ ամբոխն, թէ ես կատա-
րեցի զիմ բանս. և պատրաստ եմ 'ի մեռանիլ: Թող
զի այս սովորուե բարձրաձայն ասելոյ զամէնն՝ հասա-
րակ սովորութն էր առ քրիստոնեայս. որպ և պահե-
ցարդ 'ի պաշտամունս ինչ եկեղեցեաց. յորս յաւարտել

քահանային զաղօթս՝ ժողովուրդն ասէ բարձրաձայն զամէնն. տես և զբանս առաքելոյն. ա. կոր. ժդ. 16։

(16) Կամարաձևն նաև 'ի յն. գրի. 'ի նմանութե գամարաս. որ է նոյն է ձայնիս կամար. ումբ. փէլոն. որով նշանակի և յարկ աղեղնաձև, և ևս չինուած յարկածածկոյթ. ոպ և սենեակք, կառք, նաւք. ևն: Իսկ զայս եւ սքանչելիս տեսանատես գրիչքն երեցունք զմիաբանից յառաջին դէմս յայտ առնեն 'ի նամակի իւրեանց, փէսաթ ասելով. որպ և 'ի կարգի բանիցն, հոտ անուշ գայր ձեզ. ևն:

(17) Յայտնի է 'ի գրելոցս, զի սբն պօղիկարպոս ոչ այրեցաւ 'ի հրոյ, այլ 'ի մէջ հրոյ աւանդեաց զոգին. և այս կամ յետ խոցելոյ զնա դահճին սրով կմ նիզակաւ, ոպ երևի 'ի կարգէ պատմութեն. և կմ նախ քան զխոցելն, ոպ դնի 'ի Հ. (և յայնժամ բղխումն արեան համարի սքանչելիք) յասելն. * Իսկ տեսեալ դահճացն
„ զսբն այրեալ երեսօք՝ կարծէին, թէ կենդանի է.
„ և կամէին սրով սպանանել զնա. և տեսին զհոգի նր
„ ոպ զաղաւնի ելեալ յերկինս. և 'ի խոցելն զմեռեալ
„ մարմինն՝ հեղաւ բազում արիւն, և շիջոյց զհուրն ||:
Վկայէ և վկայագիրն հռովմայեցւոց, թէ ինչ ոչ վնասեցաւ սբն պօղիկարպոս 'ի հրոյ: Եդաւ և հին արձանագիր 'ի հռովմ յեկեղեցւոջ սբյն սեբաստիանոսի 'ի վր պօղիկարպոսի բանիւք սիբրաքայ ծա. 6. * 'ի մէջ հրոյ ոչ
„ տապացայ ||. հանդերձ վերտառութբս՝ որ է 'ի նմ ոտանաւոր. * Եթէ ընդ փիւնիկ ոք զարմանայ, զի 'ի
„ հուր մեռանի, և խարոյկ կազմեալ՝ զանձն վերանո_
„ րոգէ, սքանչացի՝ պօղիկարպէ ընդ խնայելն ծախիչ հրոյ 'ի քեզ ||:

(18) Նշխարք ոսկերաց սբյն պօղիկարպոսի, որք ամփոփեցան 'ի հաւատացելոց անտի զմիւռնացւոց, կամ ըղ բոլորին և կմ ըղ մասին սփռեցան յետ ժամաց յայլևայլ տեղիս, մանաւանդ յարևմուտս. մասունք ինչ նր տարեալ եղեն 'ի գաղղիա. գլուխ սբյն փոխադրեցաւ 'ի հռոդոս կղզի, և անտի 'ի մելիտէ, կց 'ի մալթա. (զոր Է այլ բզմ նշխարս սբց յիշեմ՝ թէ տեսեալ է իմ անդ). և այլ ևս նշխարք 'ի հռովմ բերեալ եղեն 'ի ձեռն երկուց արևելեան կուսանաց փախուցելոց 'ի հալածանաց լևոնի իսաւրացւոյ. ուր և ցարդ պահին 'ի զանազան եկեղեցիս, առաւելապ 'ի տաճարի սրբուհւոյն մարիամու 'ի մարտեան դաշտի: Իսկ անդի կատարմանն յիշմի է մօտ 'ի լեառն սբյն աննայի:

ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Մարութայի եպիսկոպոսին Նփրկերտոյ։ (1)

Յ. մայիս. 28. և փետր. 25։ Տն ԷՃԼ. յունիսի. 1։ Յետ ձաղուց և ձատուրինտերց. յունվարի. 21. (ա բնակչ ենչ. յուն. ա. և ումանց՝ յունիսի. ե։) Յ. փետր. 16։ Լ. դեկտ. 4։ Ղուկնա. Ա. էջ. շհգ։ և Օ. շէ։ Աւետման. հատ. ա. էջ. 1740. Լե։ (2)

ՍՈՒՐԲ ՆԻ ԷՐԺԱ նիկ հայրապետոն Մարութայ (որ թարգմանի յասորւոց՝ տէր ձի,) էր յաւուրս փոքուն Թէոդոսի կայսեր յունաց, և յազկերտի առաջնոյ արքային պարսից, ժամակից սրբոյն սահակայ պարթևի հայոց հայրապետի, հայրենեօք յասորի տանէ, և մայրենեօք՝ ի հայոց. քանզի ծագումն նր եղև այսպիսի։

Ի ժամանակս թգրութեն խոսրովու որդւոյ տրդատայ, յորում ժմկի փայլէր՝ ի հայս սբն վրթանէս, և՝ ի միջագետս հայոց երանելին յակոբ մծբնայ հայրապետ, տակաւին կայր՝ ի սահմանս միջագետաց մնացորդ կուսապաշտութե. և էր իշխան ձին բնակցոց՝ ի կողմանսն յայնոսիկ՝ օտայ (կամ աւդաս) անուն քրմապետ (3). որ էառ իւր՝ ի կնութի զդուստր ու-

ուրումն 'ի նախարարացն Հայոց՝ Մարիամ կո-
չեցեալ ։ Նա ՚զի էր սա կին բարեպաշտօն և
երկիւղած յա՟յ, հաւանեցոյց զայր իւր, և
ետ բերել յե՟ն յայն քահանայս և պաշտօ-
նեայս եկեղեցւոյ. շինեաց և եկեղեցիս և
վանս ուխտի, կարգեալ ն՟ց հասս առատութ՟.
և ծաղկեցոյց զայն գաւառ քրիստոնէական
կարգօք ։ Նա ինքն կարգաց և կրօնից քրիս-
տոնէից հպատակ զանձն յարդարեալ՝ հա-
ճոյական վարս ունէր առաջի ա՟յ և մարդ-
կան. մինչև և զայրն իւր հաւանեցուցանէր
իւր իմաստուն և համեստ վարուքն, զի թող-
ցէ զունոտի պաշտամանցն զապաստաւորութ՟ի,
և պաշտեսցէ զա՟ծ երկնի և երկրի ։ Նա ե՟ռ
բարւոք խորհրդակցութ՟ն իւրոյ, և համա-
պազորդ աղօթից առ ա՟ծ վ՟ն առնն՝ հաւա-
տաց օտայ յա՟ծ ճշմարիտ, և մկրտեցաւ համ-
դերձ ընտանեօք, և կոչեցաւ Մարութա՝
այն է տ՟ր ի՟ի, ո՟պ և էր իսկ տ՟ր ի՟ին այնորիկ.
և ոչ սակաւ ուրախութ՟ի լինէր 'ի մ՟ջ եղե-
լոցն՝ առնն և կնոջն ։

Եւ յետ սակաւ ժամանակի եհաս վախ-
ճան կենաց Մարութայի բարի հաւատով,
թողեալ երիս որդիս ծնեալս 'ի Մարիամայ.
յորոց անդրանիկն եկաց տ՟ր ի՟ին 'ի տեղի
հօր իւրոյ. և երկուքն կարգեցան զօրավարք
'ի դուռն արքունի՝ երևելիք և փառաւորք
առ ա՟մնին, և ծաղկեալք ք՟սական հաւա-
տով ։ Իսկ երանելին Մարիամ յետ կատարե-
լոյ զթաղումն առն իւրոյ մեծահանդէս պաշ-
տամամբ, ո՟պ վայել է քրիստոնէից, համա-

պազ

պագ դոհանալով օրհնէր զա̃ծ՝ զի ետ նմա
տեսանել զայրն իւր հաւատացեալ յա̃ծ, և
այնպէս երթեալ առ ա̃ծ: Եւ այնուհետև
տուեալ եւս տայր զանձն 'ի գործս բարե-
պաշտութե̃ 'ի դարմանել զաղքատս, և 'ի
թիկունս հասանել եկեղեցեաց և վանօ-
րէից: Խորհեցաւ գնալ և յե̃մ քաղաք, և
պտղաբեր լինել 'ի սբ̃ եկեղեցիսն ա̃յ, և ա-
ռատաձեռս բաշխել ինչս աղքատաց՝ վն̃ փր-
կութե̃ առն իւրոյ, և վն̃ արդար քաղաքա-
վարութե̃ և երկարուե̃ կենաց որդեկացն.
և կատարել անդ զուխտ իւր մեծախորհուրդ.
և բարեպաշտ կինն՝ աղաչէր զա̃ծ հանապազ,
զի արժանի արասցէ 'ի ծննդոց իւրոց քահա-
նայական ա̃յ բարձրելոյ. ո̃պ զի ընդդէմ ա-
ռաջին սպասաւորութե̃ կուսին՝ յորում կայր
երբեմն այր նր̃, զաւակ նորին լիցի պաշտօ-
նեայ Ճշմարտին ա̃յ. և փառաւորեսցի սբ̃
երրորդութի̃ն 'ի զարմէ ծննդոց նորա հանա-
պազ:

Եւ իբրև դարձաւ յե̃մէ յանտիոք ասորւոց,
օթևանս առնէր մօտ 'ի վկայարան սբ̃ց մա-
կաբայեցւոցն՝ եղիազարու, և շամունեայ և
որդւոցն իւրոց եօթանեցունց. և հանէր
զգիշերն 'ի գլուխ յաղօթսն ա̃յ, և արտաս-
ւօք խնդրէր յա̃մ̃ենց տ̃նէն՝ բարեխօսութե̃
սբ̃ցն այնոցիկ կատարել զխնդրուածսն՝ ո-
րում ցանկայր: Եւ տեսանէ 'ի տեսլեան
զհրեշտակ ա̃յ, զի ասէ ցնա. քաջալերեա՛ց
մի՛ կին դու, զի լսելի եղեն աղօթք քո առա-
ջի ա̃յ. և զոր ինչ խնդրեցեր 'ի տ̃նէ՝ եղիցի

քեզ

քեզ բարեխօսութ՟բ սր՟ցդ, յոր ապաւինեցար։ Եւ Մարիամ՝ ի ձեռն տեսլեանս մխիթարեալ գոհանայր զա՟յ ուրախութ՟բ մեծաւ, և աներկբայ յուսով հաւատայր ՚ի կատարումն զալ ասացելոցն ՚ի հրեշտակէն տ՟ն։

Իբրև եհաս յա՟ն իւր և ՚ի տուն իւր, եղև նմա թոռն յորդւոյն իւրմէ՝ որ էր տ՟ր Յ՟ին. ընդ որ զուարճացաւ յոյժ սիրտ նր՟, և տայր օրհնութի՟ն ա՟ն ամենակալի. և ետ մկրտել զմանուկն ՚ի ձեռն ա՟ծասէր քահանային մարմարայի, և անուանեաց զնա յանուն պապուն իւրոյ մարութա. և եդ ՚ի միտ իւրում, եթէ նովաւ առնէ տ՟ր այցելութի՟ն Յ՟իս այսմիկ. զի երևումն շնորհաց տեսանէր ՚ի վ՟ր մանկանն։ Եւ յետ հինգ կմ՟ եօթն ամի(4), ետ զնա յուսումն ը՟ դաստիարակութ՟ նախաստացեալ մարմարայ երիցուն. որ և ուսոյց նմա դպրութի՟, և զճանապարհս գիտութ՟ և իմաստութ՟, հաւատոց և վարուց արդարութ՟։ Եւ իբրև եհաս մարութա ՚ի չափ հասակի՝ փայլեալ շնորհօք և առաքինութ՟բ հաճոյ ա՟յ և մարդկան, կոչեն զնա ՚ի սարկաւագութի՟. և յետ այնորիկ ՚ի քահանայութի՟ եկեղեցւոյն ա՟յ, որ շինեցաւ ՚ի հանւոյ իւրմէ ՚ի մարիամայ. և այնուհետև երթալով երթայր և յա՟ջանայր ՚ի բարեպաշտութ՟ ջանս ճգնաւորական հանդիսիւք ՚ի քն՟. քանզի լցեալ հոգւովն ա՟յ՝ ընտրեաց զճանապարհս սրբութ՟ և արդարութ՟. և արհամարհեաց զվարս Յ՟իս՝ և որ ՚ի սմա զբօսանս Յ՟ւվարութ՟, ՚ի միտ առեալ՝ եթէ սնոտի է կենցաղս այս. և էր

քա-

քարոզ կենդանի՝ բարի օրինակաւ վարուց իւրոց :

Ընդ այս անպատմելի խնդութեան ձոյր մարխամ . Քզի տեսանէր՝ որպէս և հաւատով ակնունէր, այլ բարեկարգութեամբ զարդարեալ երգթոռն իւր . և ցնծայր և օրհնէր զՏր ած . զի որպէս և խնդրեացն հաւատով՝ կատարեաց բարերարն զբարի փափաք նր : Նա ինքն եւ այնուհետև 'ի վանս կուսանաց, զոր յառաջագոյն շինեալ էր . և անդ կրօնաւորեցաւ բազում խստամբերութեամբ 'ի փառս այ զամ ժամանակս կենաց իւրոց . և ընկալաւ զբարի վախճան՝ կատարեալ աւուրբք, և զարդարեալ առաքինութեամբք . զորոյ զթաղումն գեղեցկապէս յարդարեաց մբ քահանայն Մարութա թոռն իւր՝ պատուով աղօթից բարեպաշտ հանւոյն :

Իսկ ինքն Մարութա նև առաւել յառաջադէմ ընթանայր օր քան զօր յառաքինութեան ասպարէզս, կրթեալ զանձն աղօթիւք և պահովք՝ հանդերձ ամ մաքրութեամբ, անդրդուելի մնալով յամ արկածից չարին և 'ի պատրանաց Տի, և թևակոխելով հանապազ 'ի լաւ անդր . այլև ոչինչ ունելով յՏէրս՝ միշտ անհոգ գտանէր . մինչև յամի հուչակաւոր և ականաւոր եղեալ 'ի մրցմունս առաքինութեան վերակոչեն զնա յեպիսկոպոսութեան շնորհս՝ ըստ լրութեան շնորհին որ էր 'ի նմա, զի լուսաւորեալ անձամբ լուսատու լիցի ամենեցուն . որպէս և արդեամբք կատարեաց :

Քանզի իսկ և իսկ ընդ նստիլ իւրում յաթոռ

թոռ եպսն քաղաքին Ծոփաց , ( որ կոչիւր տագրիտ . և յետոյ Նփրկերտ անուանեցաւ . մօտ յամիդ՝ որ և տիգրանակերտ , ) բուռն եհար զգեղեցիկ կարգաց՝ գնալով զճանապարհս քսի՝ առաքելական քարոզութեն դարձուցանել զմոլորեալս 'ի գիտութիւն ճշմարտութեան , և վերածել զբնակիչս Ծփին ( ծննդեան իւրոյ 'ի միջագետս ) առ հաստատուն 'ի կատարելութիւն 'ի ճշմարիտ ածգիտութիւն : Սա զի լուսաւոր վարուք ընդունելի առնէր ամենայն զօք հաւատս , և գործովք բարութեան հաստատէր զհաւատացեալսն 'ի կրօնս ածպաշտութեան :

Շինէր այլ և եկեղեցիս բազումս , և կարգէր յամենայնի քահանայս և պաշտօնեայս փառաբանիչս ամենասբ Երրորդութեան . և զվանորայսն՝ որ 'ի հանուոյ իւրմէ 'ի մարխամայ չինեալ էին , բազմացուցանէր ճգնաւորօք . և զարդարէր ամ կարգօք ածային կրօնից՝ ըստ օրինակի սբ հարցն առաջնոց . և զբնակիչս Ծփին զարս և զկանայս իբրև 'ի նոր կեանս վերստին նորոգէր , և ծաղկեցուցանէր զԾփն իբրև զդրախտ այ . և թէ ուրեք գտանէր զմնացուածս հեթանոսութեան , մեծամեծ սքանչելեօք մաքրէր յանհանճար աղանդից , և փարատէր 'ի նմանէ զխաւար կռապաշտութեան . զի յայտնեցաւ սբյ զղամբար լուսաւոր՝ լուսատու լինել նստելոցն 'ի ստուերս մահու՝ կենարար վարուք ածային բանին . և եղև լուսաւորիչ Ծփին այնորիկ : Քանզի ամէքին՝ որք միանգամ լսէին զբանն այ 'ի սբյ եպսէն , անյապաղ դառնային յած ճշմարիտ 'ի կռոցն

պաշ-

պաշտամանց. զպատկերս կռոցն կործանէին, և կանգնէին եկեղեցիս և վանորայս. մինչև գլխովին խափանէին պաշտամունք մոլորութե քրմացն, և յաճախէին օրհնութիւնք յեկեղեցիսն այ. և լինէր ուրախութի մեծ հաւատացելոցն 'ի քս, և արարչին ամենեցուն հաճութի :

Այլ եղև 'ի միում ժամանակի՝ յորժամ սրբէր երանելին Մարութա զտեղիս ինչ պղծութե հեթանոսաց՝ կանգնել անդէն զնշան խաչին, տեսեալ բանսարկուին յաղթահարել զինքն 'ի սրբյն 'ի հոգևորին պատերազմին՝ ձևեաց մեծաձայն վայիւք յամենեցուն լսելիս, և ասէ. վայ ինձ, և վայ իմոցն, զի հալածեալ եղաք 'ի մերմէ բնակութենէս 'ի ձեռն ծառային քսի. և ոչ գիտեմք՝ յո՞ երթամք. զի փառքն յսի լցին զտիեզերս ամ: Այլ անդէն իբրև զծուխ 'ի հողմոյ պակասեալ՝ 'ի միջոյ 'ի բաց բարձաւ ինքն և արբանեակքն իւր: Այլ այն ինչ ժողովուրդն առհասարակ տեսկացեալ և զարմացեալ կային, յայնժամ երանելի եպսն Մարութա կնքէր սբ խաչիւն քսի զհօտն՝ որ հաւատացաւն նմա, զի մի այլ ևս մերձեսցի 'ի նոսա չարն հրապուրել 'ի մոլորութի: Այլ այսու օրինակաւ սրբ աշխատանէր հոգևոր մշակ խլել զփուշ և զորոմն չար դիւացն՝ սերմանեաց զածպաշտութի և զսրբութի, և ծաղկեցոյց զհաւատս քսի, և արդիւնացոյց պտղալից գործովք բարութե. և նշանօք բազմօք աճեցուցանէր օր քան զօր զհօտ իւր. և տր ձեռնկալու էր նմա. և այս ամ եղև 'ի

վախ-

վախճան չորրորդ դարուն, և 'ի սկիզբն հինգերորդին` (5), առ Ժամանակօք սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի. որոյ կայ և գիր յարգական առ սուրբն Մարութա:

Ի վերայ այսպիսի պարգևատու շնորհացն Աստուծոյ` ազդեցութեամբ հոգւոյն սրբոյ երթայր սուրբն Մարութայ յերկիրն Ասորեստանի. զի և անտի խլեսցէ զարմատ չար աղանդոյ հեթանոսութեան զօրութեամբն Քրիստոսի, և սերմանեսցէ զսուրբ հաւատս. և ուր կային հաւատացեալք վտանգեալք 'ի մոգուցն բռնութենէ` նորոգեսցէ 'ի նոսա զփոյթ Աստուածպաշտութեան. զոր և արար իսկ: Ել և անդ որպէս զճառագայթ ծագեալ յԱստուծոյ` շնորհատու սքանչելեօքն զբազումս դարձոյց 'ի ճշմարտութիւն. և լուսաւորեաց զհաւատացեալսն 'ի Քրիստոս, յամօթ առնելով զմոգուցն մոլորութիւն. որով և յայտնեցաւ յաղթութիւն ճշմարտութեան. և պայծառացան եկեղեցիք Աստուծոյ հանապազորդ պաշտօնէիւք. մինչև եհաս համբաւ սքանչելեաց սրբոյ եպիսկոպոսին առ Յազկերտ Թագաւորն պարսից` որ նստէր 'ի Տիզբոն քաղաքի. (սա է Յազկերտն առաջին, որ և հալածիչն էր քրիստոնէից, բայց ոչ որպէս զերկրորդն, որ զկնի:) (6)

Այս էր որդի մի Թագաւորին գեղեցիկ յոյժ և պայծառ տեսլեամբ, և սիրելի արքայի քան զամենայն որդիս իւր. որ լլկեալ 'ի դիւէ չարաչար տանջանօք` ոչ ուստեք էր գտեալ բժշկութիւն, ոչ 'ի մոգուց և ոչ 'ի դիւթից կամ 'ի քաղդէից: Արդ` իբրև լուաւ Յազկերտ, եթէ բազում նշանս առնէ Մարութա յԱսորեստան, ետ

կոչել զնա. զի թերեւս կարողասցի օգնել ինչ մանկանն, տուեալ խոստումն՝ ամ իրօք ընդարձակութի առնել քրիստոնէից և խաղաղութի. զորս կանխաւ բազմապատիկ հալածանօք և նեղութք հարստահարեալ էր յամի թգրութե իւրում, և առ սակաւ մի թուլացուցեալ ՚ի շնորհս մեծին սահակայ

հայոց հայրապետի, կմ՛ապետի :

Եւ իբրև եկն սբն մարութա ՚ի տիզբոն, ընկալաւ զնա թգւորն բազում մեծարանօք՝ հանդերձ նախարարօքն պարսից. և տեսեալ զպատկառելի դէմս առն այ՝ յորոյ վր յայտնանէր երևելին շնորհք ածային, խոնարհել երկիր եպագ նմ առաջի մեծամեծացն իւրոց՝ իբրև երկնաւոր հրեշտակի. այնպէս և սբն այ երկիր եպագ և ետ ողջոյն արքային ըստ կարգի պատուոյ նր. և խօսեցաւ բանս բարիս լի շնորհօք առաջի թագաւորին. մինչև սիրել արքային զսբն յամ սրտէ. և անկաւ գութ ՚ի սիրտ նր ՚ի վր ազգին քրիստոնէից. վս սորա, սոքա են ծառայք այ բարձրելոյ, զորս ՚ի վեր տեսանեմ ք զհասարակ բնութ մարդկան՝ շնորհազարդ բանիւք և ամ շարժմամբ :

Ապա ասէ արքայ ցմարութա. է որդի մի իմ սիրելի, որ չարաչար տանջի ՚ի դիւաց, և ոչ է ուստեք գտեալ բժշկութի. և տրտմութի է ինձ յոյժ վս նր. արդ խնդրեմք ՚ի քէն ծառայ բարձրելոյն, զի հայցեսցես յայն քումմէ, և ելցէ դևն յորդւոյ իմմէ, և առողջասցի և կեցցէ: Յայնժամ ասէ սբ եպսն մարութա.

Եկեսցէ՛ այսր, և տեսից զորդին քո։ Այլ ե֊ղև իբրև ածաւ մանուկն, առաջի տ՟մյն ճր֊չեաց դևն՝ որ 'ի մանկանն, և ասէ. զի՞ կայ իմ և քո ծառայդ ա՟յ խաչելոյն, եկիր յ՟ջէ հե֊ռաստանէ հալածել զմեզ 'ի բնակութ՟ենէ մեր֊մէ. և զարկոյց զմանուկն յերկիր. և կայր 'ի վտանգի, և քաղէին ոտք ն՟ր. և էր տե֊սիլ ն՟ր ողորմելի և ողբոց արժանի. մինչ ահ կալաւ զա՟մն՝ որ անդն կային.

Այր և այլ ոմն ս՟բ եպկս ը՟ մարութայի, (ը՟ ոմանց՝ ս՟բն աբգաւ եպս շուշայ, և ը՟ այլոց՝ իսահակ կմ աբալլահ կաթողիկոսն սղակայ և տիսբոնի.) և երկոքեանն անկեալ 'ի վ՟ր երեսաց իւրեանց յերկիր՝ կացին յաղօթս առ ա՟ծ, և ասեն. Տ՟ր ա՟ծ ամենազօր՝ որ լուա՛ր քանանուհւոյ կնոջն, որ աղաղակէր առ քեզ, և գթացեալ 'ի նա՝ հաներ զդևն 'ի դստերէ ն՟ր, և բժշկեցեր զնա 'ի վտանգէ դիւ՛ին. որ և զլեգէոնն խոզիւքն 'ի խորս ծո֊վուն ընկղմեցեր. և այլ ես բազում դևս հալածեցեր 'ի մարդկանէ, զոմանս քև՝ և զոմանս 'ի ձեռն աշակերտաց քոց, և ա՟մ ս՟բց՝ որոց ողորմեցար, և արարեր ողորմութի՟ 'ի ձեռն ն՟ց։ Այժմ նոյն տ՟ր զօրութե՟ց՝ սաստեա՛ այսոյն պղծոյ, որ է 'ի պատանեակս յայս յորդի թ՟գրիս, և հալածեա՛ 'ի սմանէ ամենահզօր բանի՛դ և ս՟բ անուա՛մբդ քո. զի ծանիցեն ա՟մ՟քն, թէ դու միայն ես ճշ֊մարիտ ա՟ծ. և լիցի դադարումն գլխովին հալածանաց հօտի քո 'ի ձեռն առողջութե սորա յանուն քո ս՟բ. զի դու կարող ես յա՟մ,

և

և 'ի քո փառս կատարի ա՟մ ինչ այժմ և յա-
ւիտեանս : Եւ յասել զամէնն ամենեցուն՝
որ ի՛ւրքն էին, իսկ և իսկ շարժեցաւ զմա-
նուկն դևն, և ճչեաց մեծաձայն, և ասէ.
վա՜յ ինձ, վա՜յ ինձ, յո՛րքան փառաւորութեէ
զրկեցայ, և 'ի բնակութէ իմմէ հալածեցայ.
և նոյնժամայն սթափեալ և զգաստացեալ
մանկանն՝ յարուցեալ տայր փառս այ :
Օ այն տեսեալ արքայի՝ ուրախ եղև յոյժ,
և ձայն բարձեալ ասէ, արդա՛րև մեծ է ա՟ծն
քրիստոնէից քան զա՟մ ա՟ծս ազգաց. զի որ՟պ
լուա՛ք, սոյնպէս և տեսաք զմեծ սքանչելիս
'ի ձեռն ծառայի նր : Յայնժամ ասէ արքայ
ցսբն. արդ խնդրեա՛ յինէն՝ որ ինչ պիտո՛յ է
քեզ, և տաց զա՟մ : Ասէ երանելին Մարու-
թա. ոչինչ պիտոյ է ինձ 'ի քէն վս անձին
իմոյ, բայց միայն վս ժողովրդեանն այ. զի
արձակեսցես զքրիստոնեայս առհասարակ 'ի
բանտից և 'ի կապանաց և 'ի չարաչար տան-
ջանաց. և համարձա՛կ լիցին պաշտել զա՟ծ իւ-
րեանց. և նորոգեսցին եկեղեցիք այ 'ի քում
իշխանութեդ. և արա՛ սէր և բարեկամութի
հաւատարիմ ընդ Թէոդոսի Թգւրին յունաց,
(այն է՝ փոքր կոչեցեալ, որդի Արկադեայ,)
և լիցի խաղաղութի ը ա՟մ տիեզերս 'ի ձեռն
քո : Եւ արքայ ընկալեալ սիրով զա՟մ ասա-
ցեալսն 'ի սբյն, և կատարեաց զխնդրուածսն
Մարութայի. և ետ աւետիք հրովարտակօք
ը ա՟մ տն 'ի Թագաւորէն՝ տալ դիւրութի և
ազատութի քրիստոնէից առ 'ի կարօղ լինե-
լոյ համարձակ պաշտել զկրօնս իւրեանց. և

որք իշխեցին հալածել և նեղել զնս՝ կրեա-
ցեն պատուհաս յարքունուստ . և արձակե-
ցան 'ի բանտից կալանաւորքն՝ որք վն քսի
կապեալ էին . յորս էին և ոմանք յազգէ հայ-
ոց 'ի կարգէ ազատաց՝ արք նախարարա-
զունք : Եւ եղև մոգուցն և ամ անհաւատից
սուգ մեծ , և հաւատացելոցն ուրախութի
մեծ . և եղև անդորրութի ը ամ իշխանութի
արքային . և համարձակեցան քրիստոնեայք
'ի նորոգել զեկեղեցիս քսի , և 'ի պաշտել
անխափան զած ճշմարիտ :
Յետ այսորիկ խնդրեաց յարքայէ երանելին
մարութա՝ արձակել զինքն . և ետ նմա թա-
գաւորն պարգևս բազումս , և թուղթս խա-
ղաղականս , և արձակեաց առ թգրն յու-
նաց : Եւ եկեալ երանելւոյն մարութայի 'ի
կոստանդինուպօլիս ( ըստ ոմանց՝ այս երկրորդ
անգամ , ) եմուտ առ թէոդոս կայսրն , և
ողջոյն տուեալ՝ մատոյց զհրովարտակ ար-
քային պարսից : Ապա ընթերցաւ կայսրն ,
ուրախ եղև մեծապէս ընդ յաջողել սի-
րոյ և խաղաղութե առ քրիստոնեայս : Եւ
եհարց զսբն վն ամ անցիցն անցելոց . և նա
պատմեաց զամ եղելոցն օգնականութբ բարձ-
րելոյն , և զդադարումն հալածանացն :
Յայնժամ բարեպաշտ կայսրն թէոդոս ետ
փառս այ , որ արար փրկութի 'ի ձեռն մարու-
թայի , և սիրեաց և մեծարեաց յոյժ զսբ
հայրապետն . և խնդրեաց 'ի նմէ ոպ յառնէ
այ՝ զի աղօթս արասցէ վն նր : Եւ յաւել
կայսրն ասել . խնդրեա՛ յինէն՝ զի՛նչ և կա-
մես՝

մին՝ 'ի փոքունէ մինչեւ ցմեծս, եւ արարից ան-
խափան ։ Այլ սբն մարութա խնդրեաց 'ի
նմանէ՝ ամրացուցանել զքաղաքն ծոփաց
( զտագրին՝ զաթոռ եպսութե իւրոյ, ) ամ-
րագոյն պարսպաւ, եւ շինել հոյակապ տա-
ճար անուանն փառացն այ 'ի մէջ քաղաքին,
յորում օրհնութիք այ եւ պատարագք քսի
միշտ կատարեսցին. եւ անդր ժողովեսցին ա-
ռէ յամն սրբց մասն ինչ նշխարաց. եւ անուա-
նեսցի մարտիրոսաց քաղաք. ( քանզի վա-
ռեէր սիրտ դրյն 'ի վարս եւ 'ի վկայաբանու-
թիս դրց վկայից՝ առաւելապէս յետ շրջելոյ
'ի պարսս, ուր բազումք նորոգ նահատակել-
էին ) ։

Ասէ թագաւորն. բարի է բանդ, եւ այ հա-
ճոյ մտածմունքդ. արդ արա որպէս եւ կա-
միս, եւ յինէն եղիցի ծախք շինողացն՝ որ-
քան պիտոյ իցէ. եւ այնպէս արձակեաց ըզ-
մարութա բազում մեծարանօք, տուեալ նմա
եւ սիրոյ թուղթ անդրէն առ յազկերտ ար-
քայ պարսից ։ Այլ եկեալ դրյն նախ 'ի քա-
ղաքն ծոփաց՝ սկիզբն արար շինութե պարս-
պին, եւ կարգեաց զգործաւորսն 'ի գործն,
եւ զգործակալսն 'ի վրն. եւ ինքն դէմ ե-
դեալ չոգաւ 'ի պարսս, եւ այլ եւս եպսունք
ը նմա ։ (7)

Այլ իբրեւ ետես զնա արքայն պարսից, բա-
զում պատուով ընկալաւ զնա, եւ զամենն՝ որ
ընդ նմայն էին. բայց զմարութա առաւել
սիրէր եւ մեծարէր ։ Այլ յորժամ ընթերցաւ
արքայ զհրովարտակն թէոդոսի, ոչ սակաւ

խնդամտեցաւ ը թուղթն , և ը բանս պատ-
գամին՝ զոր լուաւ 'ի բերանոյ մարութայի ․
և եղև խաղաղութի և սէր առ երկոսին թա-
գաւորս ։ Յետ այսորիկ պատմեաց արքայ մա-
րութայի , և ասէ ․ ցաւ սաստիկ ունի զգլ-
լուխ իմ 'ի վաղնջուց հետէ , և ոչինչ օգտե-
ցայ երբէք 'ի բժշկաց ։ Յայնժամ եդ սուրբն
զաջ իւր 'ի վերայ գլխոյ արքային ․ և առ-
ժամայն բժշկեցաւ յանուն քի ․ և այլ ոչ ևս
եղև գլխացաւ արքային ․ և յաւել ևս քան
զևս 'ի սէր և 'ի մեծարանս սրբոյն ․ զի ծանեաւ
Ճշմարտապէս՝ թէ ած է ընդ նմա ։
Ընդ որ անհնարին մախանօք զչարեալ և 'ի
նախանձ մտեալ մոգուցն՝ խորհեցան որո-
գայթ դնել սրբոյ առն այ , որպ զի 'ի սիրոյ ար-
քայի մերժել կարասցեն զնա ․ և խորաման-
կեալ ը նմանութե բարեկամացն՝ որ առ դա-
նիէլիւ , արարին գետնափոր տուն 'ի ներ-
քոյ կրակարանին՝ ուր պաշտէին նք զհուր
մշտավառ յարքունի մեհենին ․ և կացուցե-
անդէն այր մի 'ի ներքս 'ի թաքստի՝ եդին
բանս 'ի բերան՝ ասել նմա 'ի դիմաց դիցն
առ արքայ , թէ ոչ ընդունիմ այլ ևս զքո եր-
կրպագութիդ , զի սիրեցեր զքահանայն քրիս-
տոնէից՝ որ զիս արհամարհել ուսուցանէ և
զպաշտօնեայս իմ ։ Իսկ իբրև եկն թգւորն
ը սովորութե իւրում յերկրպագութի կրակին ,
յայնժամ այրն այն արգելեալն 'ի թաքըս-
տեան մեծաձայն և ահարկու բարբառ ար-
ձակեաց՝ որպ թէ 'ի կրակէ անտի թուէր գալ
բարբառն , և ասէ ցթգւորն սաստիւ անար-

զանաց . եւ սատի ամպարշտեալն , չընդու-
նիմ զքո երկրպագութիւն . զի յարեցայ 'ի
քրիստոնեայն յայն , որ հրապուրէ զքեզ 'ի
պաշտօն խաչելոյն , եւ զիս անարգել ուսու-
ցանէ եւ զպաշտօնեայս իմ : Զայն լուեալ
թագաւորին՝ զարհուրեցաւ յոյժ . եւ ելեալ
արտաքս կորանօք՝ կայր տրտմեալ եւ տարա-
կուսեալ . եւ պղտորեցաւ 'ի խորհուրդս իւր,
այլ ակն ածէր 'ի սբյն՝ առնել ինչ : Եւ գի-
տացեալ երանելւոյն մարութայի ազդեցութ
սբ հոգւոյն՝ զխորամանկութիս մոգուց , մա-
տեաւ առ թգրն , եւ ասէ . մի խռովիր ար-
քայ . դարձիր անդրէն 'ի մեհեան անդր կրա-
կին . եւ ուստի ձայնն լսի , բաց զտեղին , եւ
գտցես զխորամանկ խաբէութի մոգուցն :
Դարձաւ թագաւորն անդրէն , եւ լուաւ ըզ-
նոյն ձայն . եւ նոյնժամայն հրամանն ետ բա-
նալ զտեղին՝ ուստի ձայնն լսէր , եւ ելնեն
գուբին 'ի վեր : Իբրեւ հանին զայրն 'ի տեղ-
ւոջէն , պատմեաց արքային՝ որք զայն գործ
խորամանկեցին : Ընդ այս 'ի ցասումն բար-
կութ բրդեալ թագաւորին՝ ետ սպանանել
զգլխաւորս չարութե . եւ զմոգսն էարկ ընդ
տուգանօք տասանորդաց :

Այլ 'ի վր այսր առաւել եւս չարացան մնա-
ցեալքն . եւ արարին նենգանօք հնարս , զի
վնասակար հոտ զարշուն բուրեսցի ուստեք
յաթոռն արքային : Եւ իբրեւ եհարց թագա-
ւորն զմոգս իւր վս անսովոր հոտոյն ժան-
տութե , նք զմարութա պարտաւոր առնէին,
եւ զեպսն՝ որ ը նմա . բայց քննեալ ար-

քայի՝ ստուգեաց, թէ ո՛չ զայն արարին, և
զնո ևս մահու մատնէր: Եւ այնուհետև
այլ ևս յաւելաւ հանգամանք չարութե̄ մոգու-
պետացն և նախարարացն պարսից. մինչև
խորհեցան սպանանել զարքայ և զմարու-
թայ: (8)

՚Ի նոցա խորհուրդս լինէր և մեծ հազարա-
պետն՝ երկրորդն արքայի, որ էր սիրելի և
երևելի յաչս թագաւորին, և մեծարեալ քան
զա̄մ նախարարսն պարսից. քանզի իբրև ե-
տես սա զմահ մոգուցն, ձեռն ՚ի գործ ա-
րար դաւել զարքայ, ո՛չ եթէ վրէժխնդիր
ա̄ծոցն կամելով լինել, վ̄ն մահու պաշտօնէից
կրակին: Փորեաց ՚ի տան իւրում (իբրև ը̄
նմանութե̄ դիոնիսեայ բռնաւորին) խորխո-
րատ կամ հոր մի խորին, և ցցեաց ՚ի յատակ
նր̄ սուսերս երկուս, արար ՚ի վ̄ր հորոյն դա-
հոյս և բազմական թագաւորին ՚ի պատ-
ուական և յերևելի և ՚ի պայծառ հանդեր-
ձից, և հրաւիրեաց զթագաւորն և զմարու-
թայ յընթրիս ՚ի տուն իւր. զի ՚ի բազմիլ ար-
քայի ՚ի վ̄ր դահոյից՝ անկցի ՚ի հորն ՚ի վ̄ր
սուսերացն, և մեռցի. և այնուհետև ըզ-
մարութայ սպանցեն համարձակ:

Այլ ա̄ծ յայտնեաց սր̄յն մարութայի զչարին
խորհուրդն. մատեաւ երանելին առ արքայ
՚ի ծածուկ, և ասէ. որովհետև գտի շնորհս
առաջի քո, և արարեր ողորմութի̄ քրիստո-
նէից, արա այցելութի̄ անձին քում և տան
քում. և ՚ի միտ առ՝ զոր ասեմք քեզ, զոր
ա̄ծ եցոյց ինձ: Այն՝ որ հրաւիրեաց զքեզ
յընթ-

յընթրիս, որոգայթ մահու պատրաստեալ է քեզ. 'ի ներքոյ բազմականին փորեալ է խորին հոր, և 'ի ներքս ցցեալ սուսերս. զի յորժամ բազմեսցիս անդր, անկցիս 'ի ներքս և մեռցիս: Զայս լուեալ արքային՝ զարհուրեցաւ, և ասէ. անհաւատալի՛ թուին ասացեալքդ. զիա՞րդ խորհի ինձ մահ այնքան սիրեցեալն յինէն առաւել քան զամենեսեան: Ասէ մարութա. մի՛ երթար յընթրիսն յայն արքայ. ապա եթէ երթիցես, զնա ինքն զկոչօղն բազմեցուսցես յարքունի բազմականին՝ զոր քեզն է պատրաստեալ: Ասէ արքայ. այդպէս եղիցի:

Եւ եկն այրն երեկի, և կոչեաց զարքայ և զմարութայ յընթրիս իւր բազում աղաչանօք. և գնացին և մտին 'ի տուն անդր՝ ուր բազմականն էր արքային: Եւ իբրև հրաւիրեր այրն զթագաւորն 'ի բազմական անդր մեծավայելուչ պատրաստեալ, հրամայեաց նմա թագաւորն ելանել բազմիլ յիւրում բազմականին: Եւ ասէ այրն. զիա՞րդ իցէ ծառայի բազմիլ 'ի գահոյս արքունի. և արքայ ստիպէր զնա հնազանդիլ նմա. և նա լայր և աղաչէր 'ի գուձս կալով, և ոչ լինէր լսելի: Եւ իբրև չէառ նա յանձն, հրաման ետ արքայ զինուորացն, զի առեալ ընկեսցեն զնա 'ի բազմոց անդր գահոյիցն. և իբրև արարին, իսկ և իսկ վայրասուզեալ անկաւ 'ի հորն 'ի վ՟ր սուսերացն, և անդէն սատակեցաւ:

Եւ տեսեալ արքային զեղեալսն, և թէ զիա՛րդ

ճշմար-

Ճշմարտեցան ասացեալքն ՚ի սրբոյն Մարու-
թայէ, աղաղակեաց ՚ի ձայն մեծ, և ասէ.
մե՛ծ է Աստուածն քրիստոնէից, որ յայտնէ զծա-
ծուկս՝ սիրողաց իւրոց: Ի վերայ այսոցիկ ա-
ռաւել քան զառաւել սիրեցաւ և մեծարե-
ցաւ յարքայէ երանելին. և հաւատաց արքայ՝
եթէ նա՛ է Աստուած ճշմարիտ, զոր Մարութայն
պաշտէ. Նմին իրի և յօժարութեամբ լսէր նմա.
բայց երկնչէր ցուցանել ինչ նմա երևելի
պատիւ և հպատակութիւն, ակն ածել ՚ի նա-
խարարացն. զի մի՛ ամբոխ յարուցեալ՝ առ-
ցեն զթագաւորութիւնն ՚ի ձեռաց իւրոց, և կամ
սպանցեն: Այլ ՚ի վաղիւ անդր կոչեաց ար-
քայ յատեան զամենայն երևելի նախարարս իւր,
և պատմեաց նոցա զեղեալսն ստուգութեամբ, թէ
որպէս ապրեցաւ ՚ի ձեռն երանելւոյն Մարու-
թայի ՚ի դաւողէն. և արդ տեսէք ասէ, թէ
զի՞նչ պարտ է առնել այսպիսում բարեա-
ցապարտ առն: Եւ նոքա իբրև լուան, սքան-
չացան, և ասեն ամենքին, պատուեսցի և մե-
ծարեսցի այրն, և պարգևօք մեծաց արժա-
նի լիցի յարքայէ և յամենայն նախարարաց: Ա-
սէ արքայ. այդպէս եղիցի որպէս ասացիքդ: Եւ
ել յարքայէ հրաման, զի զամենայն՝ զոր ինչ կա-
միցի առնել Մարութա յիւրում իշխանութեանն,
համարձակ լիցի:

Եւ օրհնեաց երանելին Մարութա զԱստուած, և
ասէ առաջի թագաւորին. օրհնեա՛լ է Աստուած՝ որ
ապրեցոյց զարքայ յորոգայթից մահուա-
նէն. և արդ եղիցի խաղաղութիւն և սէր ընդ
քրիստոնեայս և ընդ տան իմոյ միշտ: Եւ ձգեաց
ար-

արքայ զգաւազանն ոսկի առ սրբն մարութա առաջի մեծամեծաց իւրոց , և ասէ ․ որ ինչ և կամիս՝ եղիցի քեզ ․ և երկիր եպագ մարութայ , և ել յերեսաց արքային՝ գոհանալով և օրհնելով զա՟ծ ։

Եւ այնուհետև դիւրագոյնս յաջողեցան կամք սրբոյն մ՟ծ հաւաքելոյ զնշխարս սրբց վըկայից ․ քանզի նախ զառաջինն արքունի հըրամանաւ շրջեցաւ ժողովեաց զբազումն նշխարս մարտիրոսաց՝ որ 'ի ժամանակին յայնմիկ նահատակեալ էին 'ի պարսս ազգի ազգի տանջանօք 'ի մոգուց անտի և 'ի նմին իսկ արքայէ ․ և ամփոփեաց 'ի հանգստարանս ուրեք ուրեք՝ մեծաւ պատուով ․ և մասն մասն յա՟մ նշխարաց անտի ը՟դ իւր էառ՝ տանել 'ի քաղաքն մարտիրոսաց ։ Եւ հրաժարել յարքայէն պարսից՝ խաղաղական Թըղթով և բազում պարգևօք , դարձ արար 'ի տեղի իւր ․ առեալ էր և բաժակ մի ոսկի 'ի յիշատակ յարքայէ լի ոսկւով՝ առ 'ի նիւթ շինուածոյ տաճարին , որ 'ի քաղաքին ծոփաց շինեցաւ յանուն վկայիցն ։ Եւ եկեալ և տեսեալ զյաջողութի գործոյ քաղաքին և եկեղեցւոյն ն՟յ՝ օրհնէր զա՟ծ ։

Յայնժամ փութացեալ գայ անդրէն 'ի կոստանդինուպօլիս՝ առ թէոդոս կայսր ․ և մատուցեալ առ նա զհրովարտակն արքային պարսից՝ պատմեաց մի ը՟ս միոջէ զա՟մ անցսն՝ որ անցին ը՟դ նա ․ զորս և երկրորդեալ էր յաղկերտ 'ի թղթի անդ ։ Եւ իբրև ընթերցաւ և լուաւ թէոդոս զայն , գոհանալով օրհնէր

զա՟ծ

զ՟որ ա՟ծ ամենակալն՝ 'ի վ՟ր սքանչելեացն , և այցելութե հաւատացելոց՝ որ ցուցաւ 'ի ձեռն ս՟բյն . վ՟յ և մեծարեալ պատուեաց առաւել քան զառաջինն՝ զերանելին մարութա : Յայնժամ խնդրեաց ս՟բն 'ի կայսերէ , զի տացէ հրաման ինքեան ժողովել 'ի նշխարաց ա՟մ ս՟բց՝ որ էին յերկիր իշխանութե՟ն նր՟՝ մասունս , և տանել 'ի քաղաքն մարտիւրոսաց

ը՟ յառաջագոյն խորհրդեանն :

Եւ իբրև ել հրաման յարքայէ հանդերձ վաւերական հրովարտակօք՝ առնել զինչ և կամիցի , յուղի անկաւ ս՟բն հանդերձ օգնականօք , և ել գնաց 'ի հռոմ . և շրջեցաւ յերևելի երևելի գաւառս և 'ի քաղաքս և 'ի գիւղս արևմտից և արևելից և 'ի վանս ճգնաւորաց . և ժողովեաց մասունս բազում յոյժ՝ ը՟ յաջողելոյն ա՟յ և ը՟ բարի տենչանաց իւրոց : Եւ յորժամ դարձաւ անդրէն 'ի թ՟գրական քաղաքն առ կայսրն Թէոդոս , ոչ սակաւ ուրախութի եղև թագաւորին . ( քանզի և նմին եբեր ընծայս 'ի նշխարաց մեծանունս ս՟բց , և եթող յիշատակ յ՟ծին յունաց . ) և կայսրն ետ մարութայի պարգևս բ՟զմս . և յաւել գեօղս և ագարակս և այգիս և ձիթենիս ա՟մ պտղաբերօք եկեղեցեացն ա՟յ և մարտիրոսաց քաղաքին . և յուղարկեաց զնա

լի ուրախութ՟բ :

Եւ եկեալ ս՟բյն մարութայի յ՟ծ իւր 'ի միջագետս , եմուտ հանդիսիւ մեծաւ՝ հանդերձ անգին գանձուք նշխարաց ս՟բց՝ 'ի քաղաք անդր ծոփաց յաթոռ իւր . ուր և 'ի գլուխ

ելեալ

եղեալ էր շինուած քաղաքին և եկեղեցւոյն հրաշալի յօրինուածովք . յորս յաւել և ինքն Մարութա խորանս խորանս յորմն տանն ա՟յ . և ետ տապանակս 'ի նո՟ց գեղեցկայարմար դրիւք զնշխարս ս՟ցն , զորս ժողովեալ էր նո՟ր , 'ի հռովմայեցւոց իշխանութենէն՝ հարիւր և քսան հազար մասունս . և յասորեստանեայց՝ քսան հազար . և յիշխանութենէն պարսից՝ ութսուն հազար . Է՟ ա՟մ ս՟ցն նշխարս՝ 'ի հեռուստ բերեալ , երկերիւր և քսան հազար . և այլ ևս 'ի մերձաւոր Յաց հայոց և ասորւոց վաթսուն հազար . ընդ ա՟մ՝ երկերիւր և ութսուն հազար : (9)

Ա.յսպիսի ցանկութ՟ մարտիրոսասէր և սրբասէր այրն ա՟յ երանելին Մարութա ժողովել զայս ա՟մ նշխարս ս՟ց՝ մեծաւ աշխատութ՟ հանդերձ՝ 'ի քաղաք անդր ծոփաց , կոչեաց զանուն նո՟ր ս՟բց քաղաք , որ և նփրկերտ կամ նեփրկերտ , ռամկօրէն՝ մուֆարղին կամ մուփարկին ասացեալ , որ առաւել հուպ է յասորի կոչումն քաղաքին Մայֆարգին , կամ Մայֆէրգատ . բայց առաւել սովորութ՟ եղև բազմաց կոչել զայն՝ քաղաք Վկայից , կամ Մարտիրոսաց քաղաք . ո՟պ և յոյնք Մարդիրօբօլիս ասացին , և ասորիք՝ մէտինադ շօհտէ , որ զնոյն նշանակէ . թող զառաջին անունն տագրիտ , կամ դակրիդ :

Ա.րար ս՟ն Մարութա և այլ բազում գործս ա՟ծահաճոյս 'ի պայծառութ՟ արևելեան եկեղեցեաց . և գրեաց ճառս իմաստիւք 'ի վ՟ս ս՟ց վկայից , ո՟ք զվկայաբանութիս մարտի-

րո-

բոսաց սրբելոց՝ յաւուրց շապհոյ երկայնա-
կեցի մինչև ցաւուրս յազկերտի առաջնոյ․
ես և ներբողեանս և տաղս պէսպէս 'ի լե-
զու ասորի կմ՟ քաղդէական (10)։ Այլ 'ի կոս-
տանդնուպօլսոյ նախ ինքն եբեր յասորիս
և յասորեստանեայս և 'ի պարսս զվաւերա-
կան օրինակ պատմու՟ և կանոնաց նիկիոյ
սբ՟ ժողովոյն (որ՟ Արիստակէս 'ի ժմկի ժո-
ղովոյն, և սա յետ իբր զարու միոյ,) և հա-
ւատարիմ թարգմանու՟ իւրով եմոյծ զայն
'ի մէջ այդց արևելից․ և վճռ արար ժողով
միանգամ և երկիցս 'ի տիսբոն՝ հանդերձ
կթղկսաւ և եպսօք Ծին պարսից և ասորես-
տանեայց, գրով և բանիւ եղև լուսատու և
պայծառացուցիչ արևելեայց 'ի միջագետաց
մինչև 'ի պարսս․ թող զաշխատու՟ զոր
կրեաց երթևեկելով վս՟ հաշտու՟ արքային
պարսից և կայսեր յունաց և վս՟ խաղաղու-
թե՟ եկեղեցեաց քրիստոնէից․ և այսպէս
մեծարեալ եղև յերկոցունց թգ՟րաց, և յամ՟
իշխանաց Ծացն՝ ը՟ որս շրջեցաւ․ զի ամ՟ բզ-
փառաւորիչս իւր փառաւորէ։

Այլ եղև յետ այսորիկ կեցեալ սբ՟ն այլ ևս
ամս ինչ՝ ամ՟ծաւէր կարգօք և առաքինական
հանդիսիւ, և իբրև զմի 'ի լուսաւոր աստե-
ղաց փայլեալ յԾի՝ անարատ քաղաքավարու-
թբ՟, հանգեաւ 'ի քս՟՝ լի արդեամբք, (յամ՟
սեանն յունվարի․ 21․ կմ՟ 'ի փետրվարի․ 16․)
յաւուրս փոքուն թէոդոսի կայսեր, և սբ՟ց
թարգմանչաց մերոց սահակայ և մեսրոպայ,
յաթոռ անոր եպսութե՟ իւրոյ 'ի մարտիւրո-

սաց

սաց քաղաքին ․ և պատուեալ մեծարեցան
պատուական նշխարքն նր̄ ը̄ ա̄մ նշխարս սր̄ց՝
յա̄մ բնակչաց տեղւոյն, որք ճանաչէին զնա
լուսաւորիչ և այրեցուցիչ ծ̄յն իւրեանց,
զի նովաւ արար ա̄ծ փրկութի այնմ ծ̄ի ․ զոր
և վերապատուեն ա̄մ եկեղեցիք քրիստոնէից
յաւուրց անտի նր̄ մինչև ցայսօր ։

Նաև եղև յետ ժամկաց ինչ՝ (իբրև ութսուն
ամօք զկնի վախճանի սր̄յն մարութայի ,)
կաւատ արքայ պարսից թոռն յազկերտի՝
թոռնին յազկերտի առաջնոյ՝ եւ պատերազ֊
մաւ ը̄դէմ յունաց՝ յաւուրս անաստասայ
կայսեր ․ և էառ զամիդ քաղաք միջագետաց՝
յամի տ̄ն ․ 503 ․ եկն և ՚ի վ̄ր նփրկերտ քա֊
ղաքի զօրօք բազմօք՝ առնուլ զնա ․ և նեղե֊
ցան բնակիչք քաղաքին ․ և խորհելով հա֊
ճել իւրեք զմիտս կաւատայ և շահել զսիրտ
նր̄ , կամեցան տալ անդրէն զբաժակն ոսկի
լի ոսկւով , զոր առեալ էր յազկերտ նախա֊
հաւ նր̄՝ սր̄յն մարութայի ՚ի պարգևս ։ Նաև
իբրև մատուցին զայն առաջի արքայի , ե֊
տես և կարդաց կաւատ զանուն յազկերտի
հաւուն իւրոյ՝ որ կայր քանդակագրեալ ՚ի
վ̄ր բաժակին ․ արտասուեաց և ասէ , քա֊
ւիցի ինձ առնուլ զպիշտակ հարց իմոց , կա̄
առնել չար ինչ քաղաքիս այսմիկ ․ այլ եղե֊
ցի և սէր և խաղաղութի ը̄ իս և ը̄ բնակիչս
տեղւոյս ․ և դարձաւ անտի յետս ։ Նաև զեր֊
ծան քաղաքացիքն ՚ի վտանգէ անտի ․ և ի֊
մացան և ծանեան , թէ ՚ի ձեռն սր̄յն մա֊
րութայի և սր̄ցն անդր ժողովելոց արար ա̄ծ

փրկու֊

փրկութի՟ քաղաքին այնմիկ, և նշխարաց սբ՟ վկայիցն և սբյն Մարութայի ։

Այլ յանցանել բազում դարուց՝ որպ՟ եղև աւերիլ կամ ցրուիլ այն ամ՟ գանձուց նշխարաց վկայից յայլ և այլ կողմանս, նոյնպ՟ և նշխարաց Մարութայի դէպ եղև փոխադրիլ յեգիպտոս. ուր և ցարդ տեսանի 'ի վանս ասորի միայնակեցաց. զոր՝ ականատես լինելով այսպէս յիշատակէ Ասսեմանն սիմոն յովսէփ յարևելեան մատենադարանի. հատոր. Ա. Երես. 179. * Մարմին սբյն Մարու-
,, թայի (ասէ) 'ի Մարտիրոսաքաղաք եր-
,, բեմն թաղեալ, յետ ստէպ ասպատակու-
,, թեց պարսից և արաբացւոց 'ի միջագետս՝
,, փոխադրեցաւ յերկրէն ասորւոց յեգիպ-
,, տոս, և ամփոփեցաւ 'ի սկիտեան վանս՝
,, որ յանուն ածածնի. այսպ՟ վկայէին միայ-
,, նակեացք տեղւոյն այնորիկ, որք ցուցա-
,, նէին ինձ զայն՝ 'ի շրջիլն իմ ՟Է անապատն
,, նիտրիոյ ॥ ։ Եւ յաւելու ասել Ասսեմանն.
* Ովարս սորին (սբյն Մարութայի) յասա-
,, րի բարբառ. Ճոխագոյն գրեալ՝ ընթերցաք
,, 'ի նոյն սկիտեան վանս ասորւոց 'ի գերա-
,, պանծ մատեան ասորի, ՟Է թուահամա-
,, րով. Թ. զոր չեղև հնար մեզ ստանալ
,, որչափ և է գնով ॥ ։ Այլ մեք համարիմք

զմեզ բարեբախտիկ յոյժ քան զԱսսեմանն, զի ահա նախակարգեալս վարք սբյն Մարութայի՝ որ գտանի միօրինակ յերկուս հին Ճառընտիրս մեր, է հարազատ թարգմանութի՟ 'ի բուն օրինակէ անտի գտելոյ յիններորդ-

դարու ՚ի վասպուրական Ծի . զի զայս յայտ
առնէ յիշատակարան գագկայ վանահօր ուխ-
տի սբյն առաքելոյ՝ մօտ ՚ի վախճան պատմու-
թեան , ունելով բանիւն այսպէս .

* Այլ որ ՚ի ձեռն երանելւոյն Մարութայի
„ ժողովեցան (նշխարք սբց) ՚ի Մարտիրոս-
„ աց քաղաքին՝ այսքան , որքան ասացաք .
„ որոց բարեխօսութբ քն ած և մեզ ողոր-
„ մեսցի , որք թարգմանեցաք յասորւոց ՚ի
„ հայ լեզու՝ ես հայր գագիկ , և գրիգոր
„ սարկաւագ իմ՝ որ է իս . որոց լիցի ամե-
„ նեցուն մեր ուխտիս (կից հաւատացելոց ,
„ ոչ եղեալ է այլ օրինակագիր , ) արժա-
„ նաւոր լինել մասին ժառանգութե սբցն ,
„ որք անդր ժողովեցան ‖ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Տեսաք ՚ի վախճան վարուցս՝ զվաւերական հնութե պատմութեանս , որ կայ ՚ի ձեռագիր հնութիս ասորւոց . և ՚ի հին ճառընտիրս մեր . և նոյն վարուց քաղուած է՝ որ ինչ գտանի ՚ի վկայաբանութիս ծմ ազգաց . եւս և ՚ի պատմագրութե սոկրատայ , և այլոց հեղինակաց . մինչ զի աւելորդ է բերել այլ վկայս ՚ի հաստատութի ։ Միայն ծանիր , զի միօրինակ վարք սբյս՝ որ ՚ի կրկին ճառընտիրս Ա. և Զ. ունի զթեթև տարբերութի գրչութե եւ շարադրութե . ոչ թէ մին օրինակեալ իցէ նախ քան զհարթել հայկաբանութե ՚ի թարգմանչէն , և միւսն ՚ի հարթ օրինակէ առեալ . զի Ա. սկսանի այսպ . * Արք
„ եղբարք և հարք լուարուք զպատմութի մարութայի ‖ ։
Իսկ Զ. այսպէս . * Ով եղբարք և հարք լուարուք ըզ-
„ պատմութի երանելւոյն մարութայի ‖ ։ Ծանիր և զԾ Ց. զի եթէ բասիլեան յայսմաւուրք նշ , և եթէ ժամագիրքն՝ միապէս սխալեն ՚ի քանի մի թեթև պարագայս .

գայս. զի թէպէտ մեծ աւէն՝ փոքր փոքր աւելոյ. գուցէ արքայի աւէն բժշկեալ՝ փոքր ուստր աւելոյ. և առ հա-մառօտութ՝ պարզապէս ասէն, * չլինեաց քաղաք յանուն մարտիրոսաց||, առանց բացատրելոյ՝ թէ կայր անդ քա-ղաք, բայց անպարիսպ և անշուք. են: Այլուրեք չեն ինչ յաշս մեր. վ̃ղ զարմանամք ը̃ զայրոյթ ասեմանայ 'ի վ̃ր զփառցյայսմ մասին՝ աւելի ք̃ զչափն և յանիրա-ւի. քանզի 'ի հատ. ա̃. երես. 178. բնաբան եդեալ 'ի լու-սանցս՝ անլուր, * առաստելք զփառաց զմարութեայն||, այսպէս սկսանի խօսել. * Շաղփաղփեն զփառս||. և ա-հա դնէ անմիջապէս զբանս յայսմաւուրացն զփառց. որ 'ի 22. մեքիր ամսոյ. ուր ոչ այլ ինչ կայ, բայց որ ինչ գրի 'ի յայսմաւուրս յունաց՝ հանդերձ վրիպակօք իւրեք ը̃ ասացելոցս, և փոքր մի գուցէ աւելի. զորս հնարիծան-բացուցանել ասեման, և չարաչար ը̃ վայր հարկանել. որ չէր արժան. զի մեկային սխալանք են. և ըստ իմիք հոմանմայն՝ որք ամանին զմեկնուն ուղիղ: Իսկ ահա յայս զբաղեալ՝ ինքն ոչ բերէ 'ի մէջ որոշ ինչ բան. այլ միայն ասէ ընդհանրապէս, (որ և առաւել է հոմանմայն.)
,, * Զնոյնս գոգցես աւանդեն զմարութեայ (զոր զփ-
,, տեք մարունա անուանեն) մասունսք և մելքեսք 'ի
,, յայսմաւ. 'ի 16. որ փետրվարի. ոչ անմահս ունին և
,, յակոբիկք և նաստուրք||: Այլ որ զհետ պնդի ո-խալանաց այլոց ասեման. ինքն առ եալ չարաչար գթէ, գրելով այսպէս. * Զյիշատակ նշ̃ առնեն ասորիք
,, 'ի 16. փետր. իսկ լատինք և յոյնք 'ի 4. դեկտ||. և ո՛ ոչ գիտէ, թէ յոյնք 'ի 16. փետր. առնեն՝ ը̃ ասորիս. և ո՛չ 'ի դեկտ. 4. ը̃ լատինս: Բայց յայտ է՝ թէ չէ ըն-նաւ ակն արկեալ անդամ 'ի Ց:

(2) 'Ի դէպ գայ միջոցի ապացիցս տօն սբ̃յն մարութայի. ը̃ որում երջանիկ փոխումն նորա եղև կամ յամսեանն յունվարի, և կամ 'ի փետրվարի. զերկրորդս զայս հա-ւանեցուցանէն յայսմաւուրք և տօնացոյցք ասորւոց և յունաց և այլոց հետևողաց նց̃ ըստ նախագրելոցս: Իսկ զառաջինն՝ հին Ճաշոցք մեր. յորս ընտիր օրինակք՝ մեկն դնեն (ը̃ կարգաւորութ գրիգորի վկայասիրի).
* Յունուարի. իա̃. Սբ̃ մարութայի. կամ սբ̃ հայրա-
,, պետին մարութայի||. ԵՒս առաւել Ծառընտիրն. Այ. 'ի գրելն զվախճան սբ̃յն լինել * 'ի յունուարի ամսոյ,
,, որ օր իա̃ էր||: Թո՛ղ զի 'ի Ճաշոցի միում համառօ-տագիր վրիպակաւ գրեալ կայ. * յունվ. ա̃||. ոչ̃ և 'ի միւսումն հոմանմայն սխալանօք. * յուն. ա̃||. և այսպի-

սի

որ գրուածք եղեն 'ի վաղ ժամուց՝ պատճառանօք սխալա-
նաց, թէ գնելոյ ամսոց 'ի յունիսի · ա · զվախճան սրբին ·
ոմն եդ որ իէ · կմ̃ այլոց 'ի յունիսի · իա · ոմն գրի 'ի
Ճառընտ · Ջ · * 'ի քսան և մին յունիսի ամսոյ || : Իսկ
որ դնի 'ի Հ · մայիսի · 28 · ոչ գիտեմք՝ ուստի առեալ
իցէ , թէ չիցէ այլազգ համեմատութ̃ անուանց օտար-
ազգի ամսոց · այլ լաւ եւս է կրկնեալն 'ի Հ · փետր ·
25 · զորմէ լիցի ուրոյն բան 'ի վարս սրբին բարթուղիմէո-
սի՝ 'ի խօսելն զգիւտոյ նշխարաց նորա 'ի ձեռն Մարու-
թայի : Սոյնպ̃ և դնելն Ղ · 'ի դեկտ · 4 · քննութ̃ բոլլան-
դեանց կարօտէր · բայց ոչ ելին 'ի լոյս վերջին ամիսք
գործոց նց :

Վն 16 · աւուր փետրվարի խմանոյ Յ · զոր դնէ 'ի վախ-
ճան վարուց սրբին Մարութայի · * աւանդեաց պեռ-
„ գի իւր 'ինմին իսկ աւուր , յորում արարեալ էր
„ զամփոփումն նշխարաց · և մերձ առ նոսին եղան և
„ պատուական նշխարք իւր || : Զնոյն երկրորդէ և մի-
քայէլ եպս մելիձոյ՝ որ ասի լինել հեղինակ յայսմա-
ւուրացն զփաոց · * փոխեցաւ ( ասէ ) առ տր 'ինմին
„ աւուր , յորում զնաւականս արարեալ էր սոր ե-
„ կեղեցւոյ ( Ջղքին մարտիրոսաց ) · վյյ տօն նր միան-
„ գամայն կատարի ը նաւականեաց եկեղեցւոյ || :

(3) Ար այժմ այսպէս եդաք ( մինչև այլուստ ստուգեսա-
ցի անուն անծանօթ գաւառի , ) պահելով զերկին ըն-
թերցուած Ճառընտրաց · յորոց բազագրի անուն երկրի
և մարդոյ · զի 'ի Ա · գրի · * կին ոմն անուն մարիամ ·
„ դուստր նախարարացն հայոց տուեալ եղև կին ասոց-
„ ւոց քրմապետին , որ էր տր այամ Տխս || : Իսկ 'ի Ջ ·
* Կին ոմն անուն մարիամ՝ դուստր նախարարացն հայ-
„ ոց տուեալ եղև կին աւտայի քրմապետի , որ էր տր
„ այամ Տի || : Իւ թէ քրմապետն ունէր այլ անուն այս-
պիսի , յայտ անտի է՝ զի երկոքին Ճառընտիրք միաբան
գրեն՝ թէ 'ի մկրտութ̃ կոչեցաւ մարութա կմ̃ մարու-
թաս :

(4) 'Ի նմանութ̃ ձեռոյ թուականիս տառիցս , Ե · և Է , ե-
րեւի մտեալ այս տարբերութ̃ · զի 'ի Ճ · Ջ · գրի · * և
„ յետ հինգ ամի ետ զնա յուսումն || · Իսկ 'ի Ա · ասի ,
* և եւթն ամի ետուն զնա յուսումն || :

(5) Անորոշ այս գրութ̃ մեր յայսմ վայրի , թէ զառաջին
գործս սրբին մարութայի վերածել 'ի վախճան չորրորդ
դարուն , և 'ի սկիզբն հինգերորդին , միաբանէ զբանս
տմ վկայաբանից , և զանմիաբանութ̃ գրչաց 'ի Ճառընտիրս ·

ւր Ա. ասէ յայսմ վայրի * և եղև այս 'ի ՃԾ թուակա-
,, կանին յունաց՝ 'ի Ժմկս թէոդոսի հռովմայ թգրին ||:
Իսկ Ջ. * և եղև այս յութսուն և երեք տոմարին յու-
,, նաց. 'ի քսան ամի փոքր թէոդոսին բարեպաշտ թա-
,, գաւորին հոռոմոց ||: Որ եթէ ընթերցցուք 'ի ՃԾ թը-
ւականի, և անփոփոխ պահեսցուք զթիւ բառս Ա. Ջա-
ռընտրին, գիւրն և սոուդի թմն. ապա եթէ այլազգ
ինչ իմասցուք, և ոչ մի ինչ ստոյգ գուշակի: Վն զի
թուականն կամ տումար յունաց՝ սուէպ 'ի կիր արկեալ
առ ասորի մատենագիրս 'ի սկզբանէ և այսր, այն է՝
որ կոչի նաև եդեսացւոց կամ սելևկիացւոց, և կամ
աղեքսանդրի. և սկսանի 307. ամօք յառաջ քն զծնունդն
քի, կմ որ նոյն է՝ 312. ամօք նախ քան զհասարակ
թուականն քի. վն եթէ ընթերցցուք 'ի ճառընտիրս՝ 'ի
ՃԾ թուականս յունաց, թ 'ի 703 տումարի եդեսացւոց
կմ սելևկիացւոց, լինի այն ամ թն. 390. այն ամ ա-
ռաջին է կթղկոսութե սբյն սահակայ պարթևի, և եր-
կոտասաներրդ ամ թգրութե մեծին թէոդոսի արքային
հին և նոր հռովմայ, և ութերորդ ամ գահակցութե ար-
կադեայ որդւոյ նր՝ և հօր փոքուն թէոդոսի՝ արքային
յունաց, և տասն ամօք յառաջ քան զթգրել յազկերտի
առաջնոյ 'ի վր պարսից. և ութուտասն ամօք յառաջ
քն զծնանիլ փոքուն թէոդոսի: Իւ թէ զայս թմ պահան-
ջէ սկզբնաւորութե եղլութե և նախկին գործոց մարու-
թայի, ակն յայտնի տեսանէ՝ որ դեգերի յեկեղեցական
պատմութիս յունաց և ասորւոց Ը հայոց: Առ այժմ

երիս ապացոյցս տաց քեզ:

Նախ՝ կայ գիր սբյն յովհաննու ոսկեբերանի (որ նըա-
տաւ պատրիարգ կոստ". յամի. 398.) առ սբն մարու-
թա. ուր մեծապէս յարգանօք գովութե խօսի Ը նմա.
տես առ տիլլեմոնեայ 'ի Հար" ոսկեբ. հատ. Ժ. Եղէն. 284.
զոր և յիշեն ասորի պատմիչք առ ասսեմանեայ 'ի զանա-
զան տեղիս: Թող զի սոկրատ պատմէ, թէ 'ի Ժմկս ար-
կադեայ եկն նախ մարութա 'ի կոստանդինուպօլիս.
այլ տեսեալ զաղմուկ թէոփիլեանց ԸԴէմ ոսկեբերա-
նի, ոչ եմուտ 'ի քաղաքն. այլ յետս դարձաւ առ ժամն.
նն: Երկրորդ՝ զի և գործք ինչ մարութայի պատմին
յեկեղեցական պատմութիս ասորւոց առ մեծն թէոդո-
սիւ. մինչև ասել ոմանց զնմն, թէ առաջինկայ էր 'ի
ժողովն կոստանդնուպօլսի. վն և ոչ վայրապար դնի
'ի Ց. թէ մարութա էր 'ի Ժմկս մեծին թէոդոսի, և
ոչ 'ի զուր երկրորդէ զայն յայսմաւուրքն ղփտոց, ա-

ւանց

ռանց բացատրելոյ՝ թէ եհաս եւ յաւուրս փոքուն թէո-դոսի. եւ այս իսկ է պատճառն՝ զի ճառընտիրն Զ. Հայե-լով 'ի յետագայ գործս մարութայի՝ որք եղեն առ փոքր թէոդոսիւ, վրիպակաւ յաւուրս նր̃ աւգնէ եւ զնախըն-թաց գործոն : Երրորդ՝ զի 'ի վկայաբանութեան արեւելեան մարտիրոսաց, որք առին շարագրել 'ի սր̃ն մարութայէ յասորի բարբառ, գրէ ինքն յայտնապէս՝ թէ ոմանք 'ի վկայից եղեն յաւուրս մեր առ յազկերտաիւ. իսկ զայ-լոցն գրեալքս առեալ յականատես եւ յականջալուր անձանց եղելոց յաւուրս շապհոյ պարսից արքայի. ս-րում անմարթ էր լինել, եթէ չէր ծաղկեալ սր̃ն մա-րութա ոչ միայն 'ի սկիզբն հինգերորդ դարու առ փոքր թէոդոսիւ, այլեւ մօտ 'ի վախճան չորրորդին՝ առ մեծն թէոդոսիւ եւ առ արկադեաւ :

Ընդ հակառակն՝ ոչ լինի պահել զընթերցուածն. լք̃. թուականին յունաց, որ է 275 ամօք յառաջ քան զՔս̃. կմ̃ զոնէ ԺԲ շրջանին հռովմայ դնելով (որ անսովոր է առ ասորիս,) լինէր ամ̃ տն̃. 280. յառաջ քան զաւուրս քրիստոնեայ թգ̃րաց : Ոչ̃ եւ ոչ զընթերցուածն ութ-սուներորդ ամաց տամարի յունաց. որ է 235 ամօք յա-ռաջ ք̃ զՔս̃. կմ̃ ԺԲ շրջանին հռովմայ՝ ամ̃ տն̃. 330. որ է քսան եւ հինգերորդ ամ մեծին կոստանդիանոսի, եւ ոչ եթէ քսաներորդ ամ փոքուն թէոդոսի. մինչեւ հարկ լինէր չփոխել զսր̃ն մարութա Ճ. հաւուն իսկում մա-րութայի առաջնոյ :

Նախեան թէպէտեւ չփոխ բանս բերէ զՏմկէ սր̃ն մա-րութայի, բայց լաւ եւս բովանդակէ զնմն հաս. Է. Է-ջեռ. 73. 'Ի ծանօթ" այսպէս. * փայլեաց առ թէոդոսիւ
,, մեծաւ, արկադեաւ, եւ թէոդոսիւ փոքու ինքնակալօք,
,, առ եպս̃ք սղակայ՝ կայուման, խառհակաւ, եւ սբէիւ.
,, զատաւ առաջիկայ... 'ի ժողովին անտիոքայ առ փլա-
,, բիանոս պատրիարգաւ ԺԳ եմ մեսապետանց. եւ 'ի ժո-
,, ղովս սղակայ ա. բ. եւ գ. առ կայուման, խառհակաւ,
եւ յաբալլահաւ ||:

(6) Հարկ համարեցաք յաւելուլ մեկնաբար զյազկերտ զանազանեալ յառաջին եւ յերկրորդ. զի մի՛ չփոխեսցէ ոք զգործս երկոցունց՝ յընթեռնուլն 'ի ճառընտիրս զա-նորոշ բանդ, թէ յազկերտ էր հալածիչ քրիստոնէից. եւ զկնի, թէ * արձակեցան 'ի բանդից կալանաւորքն՝
,, որ վս̃ք քն̃ի, եւ նախարարքն հայոց ||. զի ոչ է եղեալ առ առաջին յազկերտիւ, այլ որ առ երկրորդիւ յա-ւուրս սրբց̃ վարդանանց եւ ղեւոնդեանց :

(7) Աստեմսն. հատ. Ժ. Էրէս. 176. յառաջ բերէ զբանս գիոնեսիոսի պատրիարգի ասորւոց, որ գրէ՝ թէ * Յամի (յունաց) չիէ. (այն է ամ Տն. 414.) . . . եղև
„ ժողով ՚ի պարս, ուր հաստատեցին զնիկիական հա-
„ ւատս. և առաջնորդ ժողովոյն էին մարութայ եպս
„ մայփերկատայ, և յաբաղահ կթղիս տիզբոնի ‖: Ուր ՚ի վր բերէ ասեմսն. պարտ է ՚ի միտ առնուլ՝ թէ երկիցս եղև ժողով՛՛ի տիզբոն առ մարութայիւ. մի՝ ՚ի մուտ նուաղի զաւառեանն նր ՚ի պարսս՝ յաւուրս սահակայ կաթողիկոսին տիզբոնի. և միւս ևս յերկրորդում նուագի՝ յաւուրս աբաղահայ յաջորդին սահակայ. և Ը այսմ պարտ է իմանալ, թէ * աբգաս (կամ աբգաւ), զոր
„ սոկրատ կոչէ եպս պարսից Տին (կամ բէռսիտիս),
„ ոչ էր առաջնորդ եկեղեցւոյն աղակայ և տիզբոնի, այլ
„ թշրակաւն քաղաքին պարսից (կմ պերսիգայ), որպ
„ գնէ թէոփանէս յամի. 406. ըս է՝ ունէր զեպսութի
„ շուշայ ‖: Յայսմ չէք այնչափ Ըգիմուն. բայց պարտ էր զայն յիշեցուցանել, թէ սոյն այս սբն աբգաւ եպս շուշայ նահատակեալն ՚ի նմին յազկերտէ (Ը Ըունելոյ և պատմելոյ նաև նորին ասեմանայ,) էր աբգեզք կենդանի ՚ի գալ մարութայի այս անգամ ՚ի պարս. ուր մեզ հարկ եղեւ ասել, թէ աբգաւ վաղագոյն նահատակեցաւ. և յետ անուանէ յազկերտի Ը սբյն մարութայի՝ ոչ եղև հալածումն ՚ի յազկերտէ: Թող զի ՚ի զանազան օրինակս սոկրատայ՝ ոչ միօրինակ գրի անունն աբգաւայ:

(8) Առ իմանալ՝ թէ որչափ հանդիսացեալ էին այս Տմ սքանչելի գործք սբյն մարութայի առ կենդանութբ նր՝ մինչև ՚ի լսելիս յունաց Տին, դիցուք աստ զբանս սոկրատայ պատմաբանի այնր դարու. (բաղդատութբ հայերէն թարգմանութե Ը յոյն բնագրի.) քանզի գրէ այսպէս. ՚ի Է. գիրս. գլ. 8. * Ընդ այն ժամանակն և ՚ի
„ պարսս դէպ եղև քրիստոնէութե ընդարձակիլ յայսպի-
„ սի պատճառէ: ՚ի մէջ հռովմայեցւոց և պարսից յա-
„ ճախ միշտ լինի պատգամաւորութի. և պէսպէս են
„ պատճառք սոցա պատգամաւորութե նց Ը միմեանս:
„ Արդ պէտք եղեն և յայնժամ՝ զմարութա զմիջագե-
„ տաց եպս, զորոյ սակաւ մի յառաջ յիշատակ արա-
„ րաք, առաքել թագաւորին հռովմայեցւոց առ ար-
„ քայն պարսից: Եւ արքայն պարսից բազում բարե-
„ պաշտութե յայրն գտեալ՝ պատուով ընդունէր զնա.
„ և որպ արդարև Տծասէրի (կմ սիրեցելոյ յԱյ) պատ-
„ կառ

,, կառ կայր : Այս գլխեցուցանէր զմոգսն, որք առ
,, արքային պարսից իշխեցօղք էին. քանզի խիթային,
,, գուցէ քրիստոնէանալ տացէ արքայի. զի և զգլխա-
,, ցաւութեն նր զհանապազորդեան, զոր մոգքն բժշ-
,, կել ոչ կարացին, զայս՝ Մարութաս աղօթիւք բժշկեաց:
,, Ապա հնարս մոլորութե խորհեցին մոգքն. և զի պարսիկք
,, զհուրն պաշտեն, և սովոր էր արքայն 'ի տան ուրեք
,, մշտավառ հրակի երկիրպագանել. ընդ երկրաւ թա-
,, քուցեալ զայր ոք, 'ի ժամանակին՝ յորում թագաւորն
,, սովոր էր յաղօթս կալ, հանդերձեցին վերաձայնել,
,, թէ պարտ է արտաքս հանել զթագաւորն. վն զի առ
,, պարշտեցաւ, զի զքրիստոնէից քահանայն մեծարէր
,, համարեցաւ : Զայս լուեալ յազկերտի, զի այս անուն
,, էր արքային պարսից. թէպէտև պատկառէր՝ 'ի բաց
,, արձակել խորհեցաւ զՄարութա : Իսկ Մարութաս ար-
,, դարև մեծահանձն այր՝ յաղօթս կայր ապաստան. ո-
,, րով գտանէ զառ 'ի մոգուց եղեալ զնենգն : Եւ առէ
,, ցթգաւորն. մի խաբիր ով արքայ. այլ մնա, և յորժամ
,, զձայնն լսես, բացեալ զտեղին՝ գացես զխորամանկու-
,, թիւն. զի ոչ եթէ հրակն խօսի, այլ մարդկան հնարքն
,, զայդ առնէ : Հաւատայ Մարութայի արքայն պար-
,, սից. և անդրէն մտանէ 'ի տունն անդր՝ ուր էր անշէջ
,, հրակն : Եւ իբրև միւսանգամ լսէ զնոյն ձայն, փորել
,, զտեղին հրամայեաց. և որ հանէր զառ յոյն կարծեալ
,, ձայնն՝ յանդիմանեցաւ : Արդ սրամտեալ արքայն՝
,, զմոգուց ազգն տասանորդեաց : Այսմ եղելոյ՝ ասաց
,, Մարութայի, ուր և կամիցի՝ շինել եկեղեցիս. յորմէ
,, առ պարսիկս քրիստոնէութիւն ընդարձակեցաւ : Յայն-
,, ժամ Մարութաս մեկնեալ 'ի պարսից՝ վերստին գայ
,, 'ի Կոստանդինու քաղաքն. և յետ ոչ բազմաց՝ դար-
,, ձեալ առաքի հրեշտակութբ. և վերստին մոգքն հնարս
,, մեքենայեն, զի մի իւիք իրօք զայրն ընդունիցի թա-
,, գաւորն. և առնեն ժանտահոտութի ինչ հնարաւոր՝
,, ուստի թգաւորն սովոր էր գալ. և բանսարկութբ վա-
,, րին, ոմ թէ զայդ միաբանեալքն քրիստոնէութբ գոր-
,, ծեցին. Իսկ թգրն ոմ յառաջագոյն կասկածելովն ըզ-
,, մոգուց՝ զգուշագոյն խուզեալ զմեքենայօքն, դար-
,, ձեալ եգիտ՝ զի 'ի նոցանէ է չարահոտութին. և վերս-
,, տին զբազումս 'ի նոցանէ պատժէր. և զՄարութա
,, առաւել պատուասիրեաց : Եւ յաւել սիրել զհռով-
,, մայեցիս, և զառ նս զբարեկամութին ողջունէր : Փոքր
,, միւս ևս և քրիստոնեայ լինել ունէր, յորժամ զփորձ

 ,, այլ

,, այլ տայր Մարութա ընդ Աբդաւայ եպիսկոպոսին
,, պարսից. քանզի երկուքեանն զլկօղն ըզև յորդւոյ
,, թագաւորին 'ի բաց վարեցին՝ պահոց և աղօթից պա_
,, րապեալք: Իւ յաղկերտ կանխեաց վախճանել՝ մինչ_
,, չև կատարեալ քրիստոնեայ լեալ. և եհաս թագա_
,, ւորութին յորդի նր 'ի վռամ. առ որով լուծան գա_
,, շինքն՝ որ էր մէջ հռոմոց և պարսից||:

Ուր տեսանես, զի ոչ վկայաբանք նմ՝ նոյնպէս և սոկ_րատ, զբժշկութիւն՝ զոր արար նծ 'ի ձեռն մարութայի, աղօթիւք և սքանչելեօք լինել պատմեն. որ ոչ է երկբա_յելի. սակայն այլազգական ոճով խօսեցան կասկածելի հեղինակք աբդիշոյ և մարոս նասատուրիք՝ 'ի կոչելն ըզ_սբն մարութա բժիշկ, կմ յասելն՝ թէ յազկերտ խըն_դրեաց 'ի թէոդոս կայսերէ զբժիշկ. և նա առաքեաց զմարութա. գուցէ յօտար գրոց առեալ իցեն. քանզի կան և այլազգի հեղինակք՝ որք գովութ յիշեն զմարու_թա ոչ թէ յաւուրս մեծին կոստանդիանոսի:

(9) Թիւ նշխարաց սբց ( զոր ոչ յիշեն այլք, քանզի և շուտով էր մեզ զլիակատար պատմութ 'ի լոյս ածել,) որչափ և գիտի, է հաւաստալի. զի ոչ ամբողջ մարմինք էին, և ոչ ամբողջ ոսկերք. այլ՝ նշխարք, և մասունք նշխարաց, որք անհամար թուով կարէին լինել, մեծա_թիւ և փոքրաթիւ էր քանակի մանր և խոշոր մասանց: Այլ առ իմացուցանել զպէսպիսութի գրչաց յայս թիւ, գիտեմ, զի Ծաւընա. Ա. գրէ այսպս. * Եւ զսբ մար_
,, տիրոսացն զթիւ համարոյ նշխարացն ասացից. 'ի հռ_
,, ոմոց իշխանութէն. ՃԿ և Խա. ( ընթերցիր, ՃԿ և Ծա.,
,, հայելով 'ի վերջին գումարն.) և յասորեստանեաց.
,, ԽՌ. և յիշխանութէն պարսից ՁՌ. և յիշխանութէն մեր_
,, մէ ( գուցէ 'ի միջադետաց հայոց և ասորւոց ) ԿՌ.
,, միահամուռ էր նմ աշխարհն բերեալ սբցն երկերիւր
,, և ութսուն հազար||: Իսկ Ծ. Ջ. այսպս. * 'ի հռով_
,, մայեցւոց իշխանութէն հարիւր և քսան հազար. և յա_
,, սորեստանեաց քսան հազար. և յիշխանութէն պարսից
,, ութսուն հազար. էր նմ սբց նշխարսն՝ երկերիւր և
,, քսան հազար||: Ուր տեսանես, զի յայսմ օրինակի պակասի ԿՌ, այն՝ որ յառաջնումն ասացաւ 'ի մերմէ իշ_խանութէ. այլ զառաջին օրինակն պինդ ունի և Հ. պարզելով զայն այսպէս. * և անդ ժողովեաց բզմ նըշ_
,, խարս մարտիրոսաց յամ երկրէ. 'ի պարսից, 'ի հա_
,, յոց, յասորւոց և 'ի հռոմոց, ( կմ էր այլ ձեռ". յա_
,, սորւոց, 'ի հռոմոց, 'ի Փռանկաց, և յամ երկրէ )
,, թուով

,, թուով մ. և ձռ. ( կամ որ նոյն է, ռձ և ձռ ) . որ
,, կան այժմ 'ի պարսից քաղաքին 'ի հիմն ( կմ, և 'ի
,, հիմունս ) եկեղեցեացն || : Նոյնպէս և որ ինչ . * ժո-
,, ղովեաց սրբն յամ ՅԷ ( նշխարս սրբց ) թուով երկե-
,, րիւր ռ և Ջ ( ընթերցիր, և ձռ ) . և եդ զնշխարսն
,, 'ի պարիսպն . յորում տեղւոջ քաղում սքանչելագոր-
,, ծութք լինի . և 'ի գիշերի լոյս բորբոքի 'ի վր նց || :
Իսկ 'ի տօնացոյցս եդեալ է սովորաբար՝ լոկ թիւ նշխա-
րաց մերկելոց յասորեստանէ և 'ի պարսից . զի այս է ա-
ռեալն հնրկ օրինակաց . * և ժողովեաց բզմ նշխարս մար-
,, տիրոսաց . իռ . և ձռ || . զոր ոմանք վրիպակաւ գրեն .
իռ . մ . և ձռ : Բայց չէ վրիպակ, այլ՝ ընհանուր ասաց-
ուած բոլորական ( փոքր մի աւելի քան զՃառընտիրն
Ա . ) եդեալն 'ի հին օրինակս երկուս . * Երեք Ճռ .
,, նշխարս ||, կմ որ նոյն է * յռ || :

(10) Պարտ է պահել զամբողջ ընթերցուած Ճառընտ.
Ա. * Եւ արարեալ յորմ տանն ( տյ ) խորանս, և դնէ
,, տապանաւ 'ի նն գեղեցիկ յօրինուածովք, և՝ իմաստիւք
,, Ճառս կարգեալ նոցա || . քան թէ Ճառընտ. Զ. ուր
կայ միայն առաջին հատուածն այսպէս, * և արարեալ
յորմս տանն տյ խորանս, և եդ տապանակաւ 'ի նոսա
գեղեցկայարմար եդուածովք || . և պակասի վերջին հատ-
ուածն կարեւոր : Իսկ թէ մի այն իցեն՝ իմաստիւք կար-
գեալ Ճառք 'ի վր վկայից 'ի սրբյն Մարութայէ, այսպէս
իմանամք յաւանդութենց ասորւոց :

Երեգյեսուս Ծոփացի, կմ աբդիշոյ մետրապօլիտ Ծո-
փաց և հայոց անուանեալ ( զի և զմծբին՝ Ծոփս կո-
չէն ասորիք և քաղդէացիք ) 'ի վախճան ժգ դարու՝
ասէ . * Մարութաս եպս մայփերգատայ . . . շարա-
,, գրեաց գիրս յաղագս մարտիրոսաց, և զերգս և զտաղս
,, վկայից . նա ինքն թարգմանեաց և զկանոնս յժր հարց
,, ( Նիկիոյ ), և գրեաց զբովանդակ պատմութի այնր սբ
,, ժողովոյ || :

Մարոս մատթէոսեան պատրիարգ նաստուրեաց՝ յդ ա-
սորւոց նեստորականաց 'ի ժդ դարու, գրէ այսպէս .
* Մարութա եպս մայաֆարգինայ . . . . հաւանեցոյց
,, արեւելեան քրիստոնէից ընդունել զնմ օրէնս և զկա-
,, նոնս սահմանեալս յարեւմտեայց 'ի ժողովս . . . Սովին
,, աւթիւ մարութա ժողովեաց զքաղում նշխարս վը-
,, կայից նահատակելոց յարեւելս, և գրեաց զպատմու-
,, թիս նց՝ զորս մարթ եղև գտանել . իսկ զնշխարսն ն
,, իւր տարեալ՝ մասն ինչ ամփոփեաց յիւր եկեղեցի
,, մա-

,, մայաֆարղինայ. որ և ցարդ քաղաքանուն է. ուր
,, ընծայեալ քրիստոնեայք 'ի յարգուն սրբ նշխարաց. և
,, զայլսն 'ի զանազան եկեղեցիս արևմտից բաշխեաց ||:
Բայց զբաղմեալ ամ գրուածոց՝ որք գտանին կից յի-
շատակին 'ի մէջ պատմութեան սրբյն մարութայի, այսմ
առաջի առնէ ասամանն. հատ. ա. էջս. 179=195: ա.
Պատարագամատոյց, կամ խորհրդատետր՝ մարութայի,
որ սկսանի. * Ած՝ որ ես բնութ. բարի ||. ( համաձայն
համարեալ պտրգամատուցի ոսկեբերանին ): բ. Մեկ-
նութ. աւետարանի: գ. Վկայաբանութի, դ. պատմութիւն
սրբց մարտիրոսաց կատարելոց 'ի պարսս՝ սկսեալ 'ի սրբյն
շմաւոնէ պարսից եպիսկ յաւուրս շապհոյ արքայի, մին-
չև ցժամանակս իւր: դ: Շարականք և երգք մարտի-
րոսաց: ե. կանոնք իէ. կարգեալք 'ի ժողովն սելևկեայ
և տիեզերի 'ի սրբյն մարութայէ ը. իսահակայ արքեպիս-
կոպոսի և կաթողիկոսի աերղւոյն: զ. Պատմութի և կա-
նոնք նիկիոյ սրբ ժողովոյն՝ թարգմանեալ 'ի յունէ յասորի՝
'ի ձեռն սրբյն մարութայի իբրև 'ի խնդրոյ իսահակայ
արքեպիսկոպոսի:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## մեծ խոստովանող քահանայից՝ Եւգինէոսի, և Մակարիոսի ։

Հ. դեկտ. 24. նոյ և հոկտ. 19. ՚ի վարս սրբոցն վկայէն ։ Հ = Յ. և ըստ եէլ. դեկտ. 19. և հոկտ. 20 ։ Յ. և Լ. դեկտ. 20. և նոյն՝ հոկտ. 20 ։ Ճառընտ. Լ. ուղղ. ընդ սրբոցն ։ Մ՚Երոպէր. տոռ սոռ- բէոսէ ։ հոկտ. 20. ՚ի վարս սրբոցն ։ (1)

ԵՒԳԻՆԷՈՍ Ա. Օ- նիէ անուն, և Մակարիոս երա- նելի, խոստովանող մեծ վկայք՝ էին յԱնտիոք քաղաքէ յաւուրս կայսերութեան Յուլիանոսի ուրացողի, բարե- պաշտ և գլխաւոր երիցունք եկեղեցւոյն Անտիոքացւոց, զարդարեալք իմաստութբ և առաքինութբ, և օրինակ բարեաց մեծի և փո- քու, հաստատունք ՚ի հաւատս ճշմարտու- թեան, և հաստատիչք ժողովրդեան կալ ան- սասան յերեսաց հալածանաց քնամարտ կայ- սերն ։

Նա եղև ՚ի շրջիլ ուրացողին ՚ի կողմանս կի- լիկեցւոց՝ իջեալ ՚ի տարսոն քաղաք՝ բազում չարիս եցոյց քրիստոնէից, և զգոյս նշ յա- ւարի առեալ՝ դարձաւ յԱնտիոք. և մինչէր

իբ-

իբրև զարիւնարբու գազան ը̄դէմ հաւա-
տացելոց, զորս թշնամանօք գալլեցացիւ եւ
նազովրեցիս կոչէր. այլ այն իսկ էին պար-
ծանք ճշմարիտ աշակերտացն քրի: Յայն-
ժամ ծանուցին նմա վն սբ̄ քահանայիցն այ
Եւգինէոսի եւ Մակարիոսի՝ որք 'ի նմին քա-
ղաքի, եթէ նք են երևելիք 'ի տեղւոջս՝ ամ̄
գլխաւոր թշնամիք կրօնիցն հեթանոսաց,
եւ խրատատուք ամբոխին ը̄դէմ կալ հրա-
մանաց ինքնակալին, եւ յորդորիչք օտարաց
զալ աշակերտիլ քրի:

Այս եւ նստեալ 'ի վր բեմի անօրէնն՝ հրա-
մայեաց ածել զառաջեաւ զերանելի քահա-
նայսն: Եւ նախ հարցանել սկսաւ եւ ասէ.
ո՞յք էք դուք, եւ զի՞նչ գործ է ձեր: Յառաջ
մատեաւ սբ̄ն Եւգինէոս, եւ ասէ. քրիստո-
նեայք եմք, եւ քն̄ական հօտին հովիւք. այս
է մեր գործ եւ կեանք, եւ սոյն վիճակ: Եւ ասէ
թգ̄րն. եւ ո՞ւր իցէ հօտդ այդ քոյին ձերոյ:
Ամէն եւ Եւգինէոս. ընդ ամ̄ տիեզերս՝ որ
է արեգականն ակամբ անկանի: Յուլիա-
նոս ասէ. ո՞ւմ ապա մեք իշխեմք ինքնակալք
այ թշուառական այր անմարդի, եթէ ամ̄
որ ընդ արեգակամբ բնակեն մարդիկ՝ հօտ
գրին քրի: Եւ ասէ Եւգինէոս. դու տիրես ով
թագաւոր, այլ մեք հովուեմք հօտին. քան-
զի քրի թագաւորք թգ̄րեն, եւ բռնակալք
տիրեն երկրի. այլ որ այսօր քեզ ետ քն̄ զիշ-
խանութիւն զայդ, թէպէտև ապերախտ առ
բարերարն տեսանիս, վաղիւն տացէ այլում.
վն զի միօրեայ ես, եւ միօրէից իշխես. իսկ
թա-

Թագաւորութիւն է յաւիտենական, որում ոչ ե-
ղիցի վախճան։

Նա այս սրտմտեալ հայհոյիչն՝ ասէ. ով ամ-
պարիշտ և օտար 'ի դիցն բարերարուէ, քո
քոյն է երէկեան և միօրեայ, սկսեալ յա-
ւուրց օգոստոս կայսեր. և ուստի կացուցաւ
նա Թագաւոր յաւիտենական։ Մինի եւ վկայն.
զի մարդանալոյն եղանակի անճառ տնօրէ-
նութեան սպաքէն ընդ ժամանակաւ եմուտ տէրն
մեր, ով Թագաւոր. ապա Թէ ոչ՝ զի աստուածու-
Թեն և զի նախայաւիտեան ծննդեանն՝ 'ի
վեր է քան զամ ժամանակս։ Ծիծաղեցաւ
անօրէնն 'ի վերայ սրբոյն՝ իբրև չինականի և ան-
գէտ եղելոյ 'ի դպրուէ հելլենացւոց, և ա-
սէ. ապա ուրեմն քոյդ քո, ով Թշուառական,
երկիցս ծնաւ. և եԹէ զի այդ պարծիս, են
ես և առ յոյնս արք գերահանճարք, ոչ եր-
կիցս միայն, այլև երիցս ծնեալք. աւանիկ
հերմէս՝ որպէս պատմեն սրբազանեւ և աքան-
չելի մատեանք նորա, երիցս եկն և երևեցոյց
զանձն իւր Ծի. վասն և անուն կոչեցաւ նմա
տրիսմեգիստոս, այս է երիցս ամենամեծ։
Նոյնպէս և պիւԹագորաս յետ նորա երիցս ե-
կաւորի 'ի կեանս յայս, այն՝ որ յառաջն էր նա-
ւավար եգիպտացի. յետոյ եփորբոս նոյնն
անուանի 'ի հոմերոսէ. և զկնի պիւԹագո-
րաս նա ճանաչի սամիացի՝ մնեսարքու որդի։
Յայնժամ սուրբն եւգինէոս 'ի ծաղր եկեալ
զանիմաստ բանիւք ծանակելի աւանդից հե-
Թանոսաց, ասէ ցբռնաւորն. չէին իսկ պէտք
ըղինելոյ անգամ առ այդպիսի ունայնաբա-
նու-

նութիս. այլ մն ժողովրդեանս՝ յորում կան
ոչ սակաւք և 'ի հօտէն քոյ, սակաւուք ա-
ռել հարկ համարիմ առ նոյն փրկութի։ Դու
ինքնին գիտես՝ զոր խօսեցան մարգարէքն
յառաջագոյն վն գալստեան փրկչին յի. և
բազումեն վկայք ճշմարտութե նր. ոչ ան-
գէտ գտանիս և վկայութեց՝ որ առ ձեզդ կան
պատգամախօսութեց, և սիբիլլեան մատե-
նից. և գալուստ նորա մարմնով յի՝ յար-
գեանց քարոզեալ է՝ 'ի փրկութի և 'ի կանգ-
նումն գլորեալ մարդկան. ոմ և զնմ ցաւս
'ի մարդկանէ փարատէր, և միով բանիւ ըզ-
դիւահնացեալ մեռեալս յարուցանէր. գիտակ
ես և առաւելագունին, զի անպարտական
գոլով՝ զմահ խաչի յանձն էառ, և երեքօ-
րեայ յարեաւ մծաբար. որում և զօրականք
ձեր վկայք. և զի՞նչ ես յաւելից զնշանս և
զարուեստս՝ զոր յանուն նր գործեցին ըլ ամ
Ծ աշակերտք նր, և զտիեզերս աշակերտե-
ցին զօրութը և իմաստութը ում՝ արք ձկնորսք
և անուսք 'ի ձերմէ սնոտի գիտունէ։
Իսկ արդ՝ թող անդր զառասպելս բազմա-
պատիկ ծննդեան աղանցդ, զորս մեզ 'ի
գէմս ածէր, ո՞ր երբէք հերմէսդ կմ ապո-
թադորեանդ պատմառք կենաց եղեն ումեք
'ի մարդկանէ. և ո՞ ոք արդեօք գրովք նոցա
զգօրոտս սրբեաց, զղեւս հալածեաց, զհի-
ւանդս բժշկեաց, և զմեռեալս յարոյց։
Զայս և առաւել քան զայն խօսեցաւ սբն
Եւգինէոս, և 'ի գրոց անտի հեթենացւոց
յանձն արար զնմ գործս անարժանութե

իմաստ-

իմաստնագունիցն 'ի նմ՟ կարծեցելոց : Յայնժամ ամօթապարտեալ ուրացողին յուլիանոսի՝ գոչեաց յատենի անդ, ասելով . ատենէք սիրք հռովմայեցիք և հելլենացիք զայրս զայս պիղծ և անօրէն , եթէ քանի՞ թշնամանս 'ի վ՟ր եած դենիս մերոյ 'ի հելլենական ուսմանց անտի . երդուեալ յարեան լուսացնցուղ , ոչ ևս թողացուցից ամպարիշտ ազգիդ մարզիլ 'ի դպրութիւ յունաց : Զայս ասացեալ՝ հրաման ետ մատնել զնահատակն ք՟ի 'ի ձեռս դահճաց , զի կապեսցեն զվկայն , և գան հարցեն հինգ հարիւր թուով : Եւ դահիճքն պրկեցին զնա ը՟ սիւն՝ բարակ չուանօք , և հարկանէին ուժգին դալար բրօք : Յայնմ վայրի քարոզ կարդայր , և ասէր . արա՛ զոր ինքնակամն կամի . և դադարեա՛ 'ի խօսելոյ ը՟դէմ ն՟ր , զի ապրեսցիս 'ի ձեռաց տանջողաց : Իսկ ս՟բ վկայն լուռ ևեթ կայր , և արիաբար տանէր անողորմ հարուածոցն : Յետ այսորիկ ակնարկեաց թագաւորն առ Մակարիոս , և ասէ . իսկ դու զի՞նչ ասես վ՟ն քո , ա՛յ չուառական : Ետ պ՟խնի վկայն , և ասէ . դու ես ա՛րքայ՝ հեգ և չուառացեալ քան զա՟մ մարդիկ . ուր ես՝ ո՟չ անուամբ , նոյնպէս և շնորհօք տ՟ն երանելի գտանիմ , զի զք՟ս դաւանեմ և նմին երկիր պագանեմ . բայց դու ուրացար զնա՝ զտ՟րն քո և զա՟ծ ,և թողեալ զարարիչն՝ յարեցար 'ի կուռս անմռունչս , և զհետ եղեր դիւաց պղծոց , և ժառանգ անշէջ հրոյն անձամբ զանձն քո կացուցեր . և իշխե՞ս զայլս ևս 'ի նոյն խոր-

խոր

խորատ ձգել, և յաւիտենից մահուն մատնել զգլխս պատուհականն արեանն քո։

Ասսնեաց ի նա ուրացողն, և ասէ. գիտեմ, զի մահու ցանկանայ անձն քո, և մարտիրոսանալ կամիս. նմին իրի ի ցասումն զիս կրթես առ ի կարձել զքեզ ի կենաց. այլ ոչ այդպէս լինիցի, ոչ յուսաս։ Բայց դու ինձ նախ զայդ տուր պէննի. զի՞ եղև ձեզ, ով պիղծք, զի առանց տալոյ ուրուք ձեզ զիշխանութի, ընդ ﬔր կողմն յածեալ՝ հնարիք եղծանել զզօրս և զպաշտամունս ﬔծոց, ուսուցանելով զմարդիկ՝ թէ չեն նոքա ﬔծք, և ոչ խնամօղք տիեզերաց, և ոչ յանձանձիչք մարդկան ազգի. զորս ի վաղուց անտի դարուց հայրենաւանդ սովորութն ընաւորեցան մարդիկ պաշտել և երկիր պագանել. իսկ զձեր քնն՝ որ ոչ բազմօք յառաջ քան զմեզ եղև, քարոզէք ﬔծ և Թագաւոր յաւիտենից նախայաւիտեան։

Ստակարիոս ասէ. չեղե՞ն քեզ բաւական իմաստուն պէննատուութիք եւգինէոսի, զի զնոյն միշտ հարցանես զնոցին իրաց. բայց արդ և ես ﬕ նմին օրինակի զնոյն տամ պատասխանի. ո՞չ ապաքէն քն ինքնին՝ զոր դուդ թշնամանես և ծաղրես, առաց ցաշակերտս իւր. երթայք յ[illegible] [illegible], աշակերտեցէք զﬔր հեթանոսս. մկրտեցէք զնս յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբյ. ուսուցէք նս պահել զﬔ՝ որ ինչ պատուիրեցի ձեզ։ Որոց և երթեալ ուսուցին զայդ, փախչիլ ի դրօշելոց մնոտեաց, և դառնալ առ ﬔծ կենդանի, որ

արար զերկինս եւ զերկիր . իսկ դիք քո՝ զորս դուք պաշտէք , պատրանք են դիւաց , եւ գիւտք առասպելեաց եւ դիւական ցնորից . զորոց գրեալ իսկ է , ա͞ծք՝ որ զերկինս եւ զերկիր ոչ արարին , կորիցեն ։ Եւ ոչ այսչափ միայն , այլ եւ օրէնք ինքնակալութե՛ ի կռատանդխանոսէ սահմանեալք ՚ի քո արգականէ՝ մերժեցին , ՚ի բաց տարագրեցին զդատս յերկրպագուէ , եւ քակտեցին զտ͞մ պաշտամանս նց . քանզի ինքնին ՚ի քո հաւատացելթեքըն՝ կործանեաց զտ͞մ մեհեանս կռոց , եւ արգել զզոհս նց ։ Եւ արդ զի՞նչ չար առնեմք արքայ , եթէ զոր ա͞ծ պատուիրեաց , եւ մեծ ինքնակալն հաստատեաց , պահեմք , եւ զմարդիկ ՚ի նոյնս յորդորեմք . իսկ զառաջնոցն՝ զորոց ասացեր , զտգիտութի եւ ըղձաստանայադործ մեքենայս խափանեմք , եւ թմ իրօք զուն գործեմք անհետ առնել ։

Ըստ այս ասէ ուրացօղն յուլիանոս . այլ կռատանդիանոս անարժանս գործեաց եւ արքատամբեաց յա͞ծոց՝ պատրեալ ՚ի գալիլեացւոցդ , զի եւ չէր նր մարզեալ ՚ի գիտութիս հրահանգաց , եւ ոչ հաւանեցուց եւ ոչ յունաց օրինացն եւ կարգաց խելամուտ . իսկ ես ով ամպարիշտ , որ ՚ի ծայրն հասի հելլենական եւ հռոմէական ուսման , եւ ՚ի նախնի արանցն կրթեցայ ՚ի գիտութիւն , հերմեսի ասեմ եւ որփէոսի , ը͞ պղատոնական իմաստասիրութե՝ եւ ը͞ հրէական մատեանս անդամ անցեալ , առ ոչինչ գրելով զձեր աստղծաբանութիւ՝ հրաման տամ մարդկան զաա-

նալ՝ի կարգս առաջնոյն աւանդից ։ Ո՛ այս ասաց անօրէնն, և ոչ եթող սրբյն Մակարիոսի խօսել այլ ինչ · այլ ասէ · Հապա և դա մերկացի՛, և զփորձ առցէ հարուածոց գանից · որպ զի զգաստացեալ՝ ակամայ կամօք ներքոյ արկցէ զանձն օրինաց մերոց ։

Յայնժամ կապեցին և զնա յայլ սիւն հանդէպ եւգինէոսի, և սկսան չարաչար հարկանել յերկար ։ Այլ տեսեալ բռնաւորին թէ երկոքին ևս սր վկայք առ ոչինչ համարին զայն տանջանս, հրաման ետ դահճաց, և իջուցին զերանելիսն 'ի սեանց անտի · և կախեցին գլխիվայր, և հրացեալ շանթիւք խանձողեցին զմարմինս նց · և թունաւոր սողունս թողին 'ի վր նց · այլ յամէ անվնաս պահեցան նք շնորհօքն այ, և ոչ մեռան ։ (2)

Մինչդեռ սոքա յայնպիսի անհնարին տանջանս էին, առաջիկայ և տեսօղ լինէր արտեմիս ոմն բարեպաշտ իշխանաւոր, այր երևելի 'ի դրան արքունի յաւուրց անտի մեծին կոստանդիանոսի, և դուքս կայսերական աղեքսանդրիոյ եգիպտացւոց ։ Նա մատուցեալ յայնժամ վայրի առ յուլիանոս՝ սկսաւ կշտամբել զնա իմաստուն բանիւք՝ վն այնպիսի անհնարին վէրս դնելոյ 'ի վր քահանայիցն այ, և այնպիսի տմարդի պատժովք տանջելոյ զնս · զի այդ գործ բռնակալի է ասէ, և ոչ ինքնակալի ։ Յայնժամ անօրէնն զամ ցասումն իւր դարձուցեալ 'ի վր մեծի առն արտեմեայ՝ ետ խստագոյն տանջանօք նա-

նահատակել զերանելին . ոչ ունիս տեսա-
նել յառանձին վկայարանումն նր՝ ըն կարգի
տօնից սրբց զկնի խարիլթեանց ('ի միջոցի վե-
ցերորդ կիրակէի խաչին) :
Իսկ զեւգէնէոս և զմակարիոս հրաման ետ
կապել ոտիւք արտասահմանել յարևմուտս
յերկրին մաւրիտանացւոց՝ 'ի տեղին կոչեցեալ
անդիդոն կմ աւգասիոն (զոր այլք յովասիս
ասեն) . ուր բնաւ քրիստոնէութի ոչ էր անդ .
այլ ամէն արևապաշտք և կռապաշտք էին .
Եւ այս 'ի խնամոցն այ կարգեցաւ յայցե-
լութի բնակչացն . որոց քարոզեալ սրբ քա-
հանայքն զքս՝ դարձուցին զբազումս յած-
պաշտութի : (1)
Եւ էր յերկրին յայնմիկ լեառն մի բարձր յերկ-
րէ իբր ժբ մղոնաւ (ըն վկայարանից) . և
ստորոտ լերինն էր յոյժ ջերմային . մինչ զի
'ի տապոյ արեգականն քարինքն որպ հուր
վառէին : Եւ բունեալ էր անդ յայրի միում
վիշապ մի ահագին , և յոյժ վնասէր զմեր-
ձակայ բնակիչս գաւառին . որք եկեալ ա-
ղաչեցին զսրբսն , զի հնարեսցեն ինչ զազա-
տութի 'ի չարութէ վիշապին : Եւ ելեալ սրբքն
նոքօք 'ի լեառն՝ աղօթեցին առ ած . և յան-
կարծակի եղև դղրդիւն , և ել վիշապն յայ-
րէ անտի . և այնպէս ահագին էր տեսիլ
կերպարանաց նր , մինչ զի թուէր՝ թէ յա-
չացն և յռնգաց նր հուր ցոլացեալ ելանէր :
Եւ 'ի խաչանիշ կնքել սրբց քահանայիցն՝ առ
ժամայն հերձեալ սատակեցաւ վիշապն . և
բնկ յաւելան և այլք 'ի թիւ հաւատացելոց:

Իսկ երանելեացն եկեալ յայր անդր՝ սրբեցին և մաքրեցին զտեղին աղօթիւք. և արարին անդ աւուրս քառասուն իբրև զճգնօղ միայնակեացս։ Եւ յաւուր միում տեսին յարևելս աստղ մի՝ որ անկաւ յերկնից. և գուշակեցին այնու զկորուստն յուլիանոսի, որ սատակեցաւ 'ի պարսս՝ յամի տն. 363։ Իսկ սրբ քահանայքն եւգինէոս և մակարիոս կատարեցան 'ի լերին անդ (4). յորում եղեն և նոր սքանչելիք. զի ջուր ոչ գոյր ամենևին 'ի տեղւոջն յայնմիկ. և բղխեաց ջուր բխմ, որ աղբիւր ցուրտ և բարեհամ աղօթիւք սրբցն։

XXXXXXXXXXXXXXX XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) …ամառօտս այս վկայաբանութի բաղկանայ 'ի ճառընտրաց մերոց և 'ի մետափրաստէ, ըստ որում է մեան վկայաբանութե սրբյն արտեմեայ վկայի. 'ի հոկտ. 20. կամ 19. միանգամայն և 'ի յայսմաւուրաց զանազան ազգաց, որք բաց 'ի յիշելոյ զերկու քահանայքս եւգինէոս և զմակարիոս յայնմ աւուր 'ի վարս սրբյն արտեմեայ, ուրոյն ևս գրեն զվարս սոցա 'ի նշանակեալ աւուրս. դեկտ. 20. կմ 19. և կմ 24։ Տարբերութիք մասնաւորք նշանակեսցին 'ի մէնջ 'ի ստորև. ստ ընդհանրապէս գիտեա, զի ատենախօսութիք են ըստ մետափրաստեան օրինակի. իսկ տանջանք վկայիցն ըստ յայսմաւուրաց առաւել։

Ո՞ր ոք զարմասցի, թէ ընդէր 'ի տօնացուցի ոչ յիշի քահանայութի սրբցս, այլ պարզապէս վկայք կոչին. վս զի տօնեմք ընդ այլ սրբս միասին, և ամցն տամք զհնրկ անուն վկայ. թող զի և յայսմաւուրք հասարակօրէն՝ ոմ և զանազան վկայաբանք ըր ճառընտրաց՝ է զի խոստովանօղս ասեն, է զի վկայս, և է զի քահանայս. որք մեօրինակ ճշմարտեալ գտանին 'ի վր սրբցս։

(2) Մետափրաստէս՝ որ ճոխագոյն քան զգրեալսս ա-

ռա-

ռաջի առնէ զատենախօսութիւն նոցին, համառօտիւ յիշէ զմի միայն տանջանս նոցա ․ ՚ի չհարուածս գանից ․ և անցանէ յանցս արտաքս ․ Նոյնպէս առնէ և Ճառընտիրն, թողեալ և զատենախօսութիւն նոցա ․ զի զարտաքս ունի խօսել ։ Յ ․ բասիլեան յիշէ և զաղօթս ․ այլ ոչ զհրով խանձողիլ մարմնոց նոցին ․ զոր յիշէ Ժամագիրքն յունաց ․
իսկ Հ ․ ոչ զանց առնէ և զմիով ՚ի տանջանացս ։

(3) Հռոմկօրէն այսպէս գրեն վկայագիրք ․ յարևմուտս յԾն մաւրիտանացւոց կամ մովրիտանացւոց ․ այն է երկիր մաւրեաց յափրիկէ ․ զորմէ անս յԾագրութ ․ ուր և իմանամ՝ թէ որ ռամկօրէն մնղըրղ կոչի, արաբերէն արևմուտք թարգմանի ․ թող զի և յունարէն մաւրոս, է թխագոյն ․ և մօռէա, թթենի ․ որպէս և ՚ի մեզ մորենի՝ նմանագոյն, և մօռ այլազգերէն՝ զնոյն գոյն շիկաթուխ յայտ առնէ, ուշինչ է հասա յափրիկեցւոց անուն ․ ևն ։ Իսկ անուանեալքն կամ քաղաքի մաւրիտանացւոց ՚ի Ծ ․ գրի, աբգասխա ․ զոր որ իբէլ ՚ի հոկտ ․ 20 ․ կոչէ առգասխոն ․ և ՚ի դեկտ ․ 19 ․ անգիպտոնայ ։ Հ ․ զանց առնէ զանուամբս ։ Հ = Յ ․ գրէ, * ՚ի քաղաքն անգի ‖ ․ Յ ․ բս ․ * ՚ի քաղաքն անգէգոն ( անախօնա ․ հյց ․ ) ‖ ․ և Ժամագիրք նոցա ․ անտիգոն ․ ( անգիտօնա ) ։ Միայն մետափք ․ ըստ լատ ․ թարգ ․ առ սուրիոսի առէ ․ * յովասիս, որ է մահաւիթ վայր յարաբիա ‖ ․ ևն ։

(4) Կատարեցան՝ ասացաք ․ որ ըստ հանգամանաց պատմութս յայտ առնէ, թէ խաղաղութեամբ կատարեցին անգզկեանս իւրեանց ․ որպէս և զոյն ակնարկէ Ծ ․ յաւելն ․
* արտաքսեալ նոցա անդ աւուրս իմն, կատարեցան ՚ի քս բա֊
,, րի խոստովանութեամբ ‖ ։ և Հ ․ * և յետ բազում ամաց
,, հանգեան խաղաղութեամբ ՚ի քս ‖ ։ որպէս և Ժամագիրք Յ ․ խաղաղութեամբ աւանդել առէ զհոգիս ․ լաւ ևս՝ Յ ․ բասիլ ․
* և ապա յանդորրու անցուցեալ զաւուրս՝ յայլևայլ
,, ժամանակս խաղաղութեամբ աւանդեցին զհոգիս, ընկա֊
,, լեալ զոր վս խոստովանութեան քսի զպսակն ‖ ։ Միայն մետափր՝՝, կամ սուրիոս առէ, թէ յուղարկեալ յետ աքսորելոյ զնոսին ՚ի յովասիս, * անդ հրամայեաց և ըղգլուխս նոցա հատանել ‖ ․ յորմէ առեալ դնի և ՚ի Լ ․
* Յարաբիա ( յիշատակ ) սրբոց վկայիցն եւգինէոսի և
,, մակարիոսի երիցանց ․ որք ՚ի յուղարկմանսն ուրացողէն՝
,, ՚ի յանդիմանել զամպարշտութիւն նորա՝ չարաչար հար֊
,, ուածովք տանջեալ, և յահագին անապատ աքսորեալ
,, սրով սպանան ‖ ։ Որ թէև մարթասցի միաբանիլ ( թէպէտև գժուարաւ ) ընդ այլ հանգամանս պատմութ, կարէ

յառաջ գալ և 'ի շփոթմանէ է կատարման սոյն արտե-մեայ սրով :

Զոր օրինակ՝ եթէ ոք չնայիցի յայլ բանս Ճառընտրին, կարէ շփոթ իմանալ զվերնագիր նորա սաստանօր. * Վկա-
,, յաքանուն սր̅ քահանայիցն մակարայ և եւգինէոսի,
,, որք յանտիոք քաղաքի կատարեցան. և արտեմիս վը-
,, կայ||. իմա, որք յանտիոք չարչարեալ՝ 'ի մաւրիտանիա կատարեցան աքսորանօք. և 'ի պատճառս նոյն սրով կատարեցաւ յանտիոք արտեմիս : Դարձեալ եթէ ոք առանց հայելոյ 'ի պատմութիւն միայն 'ի առնացոյցն ակն դիցէ, կարծէ թէ նաև եւգինէոսս այս և մակարիոս 'ի տրապիզոն կատարեալ իցեն է այլ սոցա որ անդ. թող զի չէ կրկնեալ (զոր զօրութ պարտ է իմանալ) անդանոր անուանս եւգինէոս, որ յաւելաւ լինել նահատակակից կատարելոցն 'ի տրապիզոն. ուր տեսցի 'ի մօտոյ: Ծանիր և զայն, զի 'ի Հ. դեկտ. 24. կմ 19. զկնի պատմութիւն եւգ. և մակար, գրի. տիմոթէոս սարկաւագ սրով կատարեալ * 'ի նոյն երկիրն մավրիտանոյ||, և պօղիքտոս հրով 'ի կեսարիա. զոր ունիս բաղդատել է. Լ. դեկտ. 19. ուր ասի * 'ի մաւրիտանիա սր̅ տիմոթէոս սարկաւագ հրով կատարեալ||. եւն : և դարձեալ 'ի մայիսի. 20. * 'ի մաւրիտանիա կեսարիոյ կատարումն սր̅ վկայից սարկաւագաց, տիմոթէոսի, պօղիոսի, և եւտիքի||. այլ զայսցանէ թերևս այլուր :





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## սրբոց մարտիրոսացն՝ Սաբերիոսի, Կանդիտոսի, Ակիւղասայ, և միւս Նուգինէոսի ։

Հ. յունվարի. 30. հմ ըստ հին յեռ". 29։ Հ=Յ. և որ ենէլ. յունվ. 28. ( որպէս և 'ի հին ճաշոցս. յունվ. ԻԷ. համ ԻԸ. համ ԻԹ )։ Յ. բասել. յունվ. 20. և ծամագր. 20. և 21 ։ Բոլլանդ յունվ. հատ. Բ. յունվ. 21. երես. 349։ (1)



ՓԱՌԱՒՈՐԵԱԼՔՆ 'ի վկայս, և փառք պարծանաց տրապիզոնայ՝ երեքին և չորեքին այս սրբ. մարտիրոսք նահատակակիցք իւրեանց, նոյնպէս և քաղաքակիցք յերկրի և յերկինս, էին յաւուրս կայսերութե անողորմ հալածչաց դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի, և լիկիանոսի՝ որ զկնի նց [2] ։ Այլ եղև յաւուրս մեծի հալածանացն՝ յորում նահատակեցան առ լիկիանոսիւ սրբ. քառասունքն 'ի սեբաստիա յագրիկողայոս դատաւորէ, և այլ բազմութի վկայից 'ի քաղաքս քաղաքս 'ի ձեռն արքունի կուսակալաց, եկն եհաս 'ի տրապիզոն քաղաք՝ անգութ դատաւորն լիւսիաս՝ որ ունէր զպատիւ դքսութե յարևելս, և զբազումս նահատակեցուցանէր նր 'ի կողմանս կիլիկեցոց և փոքուն հայոց ։

Եւ իբրև ձեռն էարկ և սաստ ևս չարչարել զհաւատացեալս, հետապնդելով զօր ամ ըզբռամբ ածել զառաւել զխաւարս ՚ի նմին, պատմեցին նմա՝ թէ ահա երեք արք ՚ի նշանաւորաց, որոց անուանք են փաղերիանոս (կամ փաղերիոս), կանդիտոս, և ակիւղաս, ղօղեալ կան ՚ի թաքստի ՚ի լերինս տրապիզոնայ, կամ ՚ի լերինս խաղտեաց մօտ ՚ի տրապիզոն: Յայնժամ առաքեաց ՚ի վր նց զօրականս. որք կալան զնոսին զերեսին, և ածեալ կացուցին առաջի բռնաւորին:

Խօսեցաւ ընդ նոսա դատաւորն սաստիւք սպառնալեաց, և ահ արկանէր նոցա դառնալ ՚ի պաշտօն դիցն. իսկ նոքա համարձակ խոստովան եղեն զՔս Ած, և արհամարհեցին ըզկուռս հեթանոսաց. պատրաստ եմք ասեն ՚ի տանջանս և ՚ի մահ՝ քան անկանիլ ՚ի հաւատոյ:

Տեսեալ դատաւորին զհամարձակ դաւանութիւն նոցա, և ՚ի միտ առեալ պէսպէս փորձանօք զանյողդողդ հաստատութիւն մտաց նոցա՝ ետ ՚ի ժամուն աքսորել զնոսա յանձաւկ բերդ մի լազկկոյ՝ պիդուս կոչեցեալ (որ թարգմանի սոսի), և պահել ՚ի դիպահոջ տառապանաց սովու և ծարաւոյ. զի թերևս զգաստասցին ասէ, և խոնարհեսցին ՚ի կամս ինքնակալին: Եւ նոքա խնդութեամբ յանձն առին վս անուանն քսի զդժնդակ տարագրութեան և զնեղութիւնս ամ. և կային զուարթութեամբ մեծաւ ՚ի տեղւոջ անդ աքսորանաց:

Յետ աւուրց բազմաց՝ իբրև պատմեցաւ լիւսիայ,

սրայ , թէ՛ նք՟ հանգիստ համարին անձանց զբերդն աքսորանաց , եւ անդրէն ածել զնո՟ ՚ի տրապիզոն ։ եւ կացուցեալ յատենի՝ սկսաւ հրապուրել զնո՟ բանիւք ողոքանաց ։ մինչեւ ցե՞րբ աւէ յամառեալ կայք ՚ի խորհուրդս ձեր , եւ զպիղծս զայս տարապարտ կրէք առ խստամբերութե ։ եկա՛յք երկի՛ր պագէք դիցն անմահից , եւ մեծամեծ պարգեւս ընկալջիք յինէն եւ ՚ի թագաւորէն ։ Իսկ երանելի վկայքն իբրեւ ՚ի միջի բերանոյ այսպն արարեալ անարգեցին զհրապուրանս եւ զխոստմունս նր՟ , եւ թշնամանեալ արհամարհեցին զկռապաշտիցն պաշտամունս ստութե , յանդիմանելով զկուրութի դատաւորին եւ որ իբրեւ զնա անծանօթք իցեն յայ՟ ճշմարտէ ։

Յայնժամ սրտմտեալ լիւսիայ՝ եւ կապել զնո՟ , եւ հարկանել արջառաջլօք ։ մինչեւ կապուտակեալ հերձոտեցան մարմինք սր՟ց ։ Այլ տեսեալ դատաւորին զանմռունչ համբերութի նց՟ , եւ հանել զնո՟ ՚ի կախաղան , եւ երկաթի քերչօք քերել մինչեւ ցոսկերսն , եւ արիւնն ռուզանէր զերկիր ։ այլ նք՟ գոհանային՝ զայ՟ ուրախութբ՟ ։ Յետ այսորիկ եւ օծանել անողորմն զորոբեալ մարմինս նոցա ճարպով , եւ ղամպարօք հրոյ բոցակէզ առնել զնո՟ ։ Յայնմ վայրի երեւեցան սքանչելիք ՚ի տ՟նէ ։ քանզի սպասաւորք ատենին՝ որք գաւազանաւբար ՚ի գլուխ տանէին զհրամանս բռնաւորին , չարաչար պատուհասեալ յայ՟՝ կործան ՚ի վե՟ր երեսաց իւրեանց յերկիր անկանէին , եւ լքեալ զգետնի հարկանէին զան-

ձինս

ձինս իբրև այսահարեալս . մինչև զարհու-
րիլ ամ տեսողաց : Այլ ինքն իսկ դատաւորն
խռովեալ և քստմնեալ էր իրացն պատահումն՝
հրաման ետ իջուցանել զսբն 'ի տանջանա-
րանէ , և տանել արկանել 'ի բանտ :

Այլ եղև յաւուրսն յայնոսիկ կալան խնդ-
րակք դատաւորին և զայլ ոմն երևելի 'ի
քրիստոնէից իբրև գործակից առաջնոցն՝ եւ-
գինէոս անուն . զոր կանխագոյն խնդրեալ
էր նոցա բազմօք , և ոչ գտեալ : Որք իբրև կա-
ցուցին և զսա առաջի լիւսիայ , համարձակ
խոստովան եղև երանելին զսբ հաւատս քնի
ոյ . և անգոսնէր հերքեաց զկուռսն խուլս
և համրս և կոյրս : Ոյ հրամայեաց բռնա-
ւորն գան հարկանել զնա չարաչար . և
ապա առեալ տարաւ զնա ընդ իւր 'ի տաճար
կռոց իւրոց . զի կամաւ ակամայ տացէ նմա
երկիր պագանել չածոցն . իսկ երանելին եւ-
գինէոս յոգւոց հանեալ ընդ կուրուի հեթա-
նոսաց՝ եկաց յաղօթս . առ ած հեծեծանօք՝
ցուցանել զբազուկ իւր բարձր ընդդէմ սուտ
պաշտամանց անածիցն : Այլ առժամայն եղև
դղրդումն ահագին , և անկեալ կործանե-
ցան բագինքն առ հասարակ , և մանր խոր-
տակեալ դարձան 'ի փոշի :

Յայնժամ գոչեաց իբրև զառիւծ մոլեալն
լիւսիաս ընդդէմ սբյն եւգինէոսի . ո՞ւր և ուս-
տի՞ երևեցաւ ասէ կախարդս այս՝ որ կորոյս
զածսն մեր : Ապա միւսանգամ բերել զնա 'ի
տեղի տանջանաց . և հրաման տայր կապել
զնա չուանօք , և հարկանել հաստ բրօք՝
մին-

մինչեւ 'ի խորտակել ոսկերացն. եւ տեսեալ
եթէ ոչ բանիւ սրբոյն զբերանն իւր, ոչ թէ ըզ-
գայր եւ ոչինչ, հրամայեաց քերել զկողսն նր,
եւ ջահիւք այրել զտեղի քերանացն. արկին
եւ աղ ընդ բարկ քացախոյ, եւ շփեցին զվէրս
վկային: Նա յայսմ ամի զուարթ կայր՝
զօրութեամբ շնորհացն այ. ը որ զարմացեալ էր
դատաւորն. եւ մոլորեալ միտք՝ գործ դիւ-
թութեան զկրսն կարծէր, եւ մոգս անուանէր
անօրէնն զպաշտօնեայս քի:

Յետ այսորիկ արկեալ 'ի բանտ եւ զեւգի-
նէոս ընդ առաջին երիս վկայսն, խորհեցաւ
զկնի աւուրց՝ հրոյ ճարակ տալ զչորեսին
սրբոցն միանգամայն. հրամայեաց բորբոքել
հնոց մեծ, եւ ետ ընկենուլ զնս 'ի մէջ բո-
ցոյն բորբոքելոյ: Իսկ նոքա չորեքեանն՝ վաղե-
րիոս, կանդիտոս, ակիւղաս, եւ եւգինէոս
կացին յաղօթս առ ած, եւ անարատ պահե-
ցան 'ի մէջ հրոյն՝ ըս օրինակի երից մանկանցն
որ 'ի բաբելոնի. զոր տեսեալ եւ բազմաց 'ի
հեթանոսաց՝ սկսան աղաղակել. մեծ է ածն
քրիստոնէից. եւ յաւելան 'ի հաւատացեալս:
Իբրեւ ազդ եղեւ լիւսիոյ վն իրացն, ցնորե-
ցաւ 'ի միտս իւր. եւ ոչ գիտէր՝ թէ զինչ ա-
րասցէ ը նս: Հրաման ետ վաղվաղակի հա-
նել զսրբսն 'ի հնոցէ անտի, և արագ արագ
կորուսանել զնս սրով[3]. եւ այնպէս գլխատ-
մամբ կատարեցան 'ի քս, եւ ընկալան զան-
թառամ զպսակն վկայութեան յերկնաւոր
հանդիսադրէն: Որոց լիցի մեզ ամենեցուն
պսակակից լինել բարեխօսութեամբ նց, կա-

մա-

մնուր նահատակութ մրցելով ընդէմ մար-
մնոյ, դիւին, և ծի. և զօրհանապազ մե-
ռանելով ոչ արժանին է, վս ոն և փրկչին
բոլորեցուն. որում վայելէ փառք և պատիւ
յաւիտեանս յաւիտենից. ամէն ։ (4)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Աստանօր չէն պէտք երկար ծանօթաբանութեց, զի համառօտ է և վկայաբանութիւն դլխովին. չափաւոր բանիւք աւանդեալ 'ի Յ. բս. և փոքր մի ճոխագոյն 'ի ժամագր. նշ. իսկ 'ի Հ. քանի մի տողիւք ևեթ ուղիղ համառօտեալ։ Եւ զի պակասի խաղա 'ի Լ. նմին իրի և բոլանդ զլունայն ևեթ ժամագիրս ընդօրինակէ. և սուղ բանիւք զկրան վճարէ։

Անուանք երից 'ի մէջս ունին ստուգաբանութե 'ի բարբառ հռովմայեցի. զի վարերիանոս (ոչ դրի յմ յայսմաւուրս յն. և հյ. և 'ի բզմ օրինակս ճաշոցաց և տօնացուցից), կամ վալերիոս (որ գտանի առաւել 'ի յետին օրինակս), հնչի 'ի լտ. վալէրիանուս, և նշանակէ հզօր, կամ զօրաւոր։ Կանդիտոս, կամ կանտիտոս, ըստ լտ. գանտիտուս, է սպիտակափայլ, կամ փայլուն և պայծառ. իսկ ակիւղաս, ըստ լտ. աքուիլաս, է արծուի, կամ արծուեային։ Այլ վս անուանս եւգինէոս սացաք և 'ի վարս եւգինեայ կուսին, թէ յունական է, և նշանակէ ազնուական կամ բարետոհմիկ. որ և ազնուական կոչի 'ի մեզ։

Միայն կարէ ոք զարմանալ, թէ ընդէր 'ի տօնացոյցս ոչ գտնին երկու անուանք զանազանեալք՝ եւգինէոսի քհնյի, և եւգինէոսի վկայի 'ի նմին տօնի. այլ միանգամ ևեթ եդեալ է այսպէս. * եւգինէոսի, մակարիոսի, վալերիոսի, կանդիտոսի, և ակիւղասայ ||։ Առ այս կրկին է պխնի. նախ՝ զի այս հինգ անուանք ոչ ամբողջ և ոչ միշտ սովին կարգաւ կան յմ օրինակս. այլ 'ի բզմս բազմօրինակ կրճատութ և յետևառաջութ. վս չէն ինչ զարմանք՝ թէ 'ի վաղուց հետէ անկեալ իցէ 'ի բաց և անուանս կրկնելի եւգինէոսի. ոչ պակասի յամանս և վա-

ղե-

նուն մաքսիմիանոսի․ բայց մեզ հարկ 'ի վր կայր՝ 'ի վր բերել և զանուն լիկինիանոսի․ զի որովհետև նոյն իսկ Յ․ բասիլ․ մեկն գրէ՝ թէ այս եղև 'ի ժմկին, յորում * ագրիկողայոս և՛ լիւսիաս սպանանէին 'ի սեբաստիա զսբ „ քառասունս, և 'ի նիկոպօլիս զսբ քառասունն և հինգս||․ հարկաւ պարտ է դնել 'ի կայսերութե լիկինիանոսի․ առ որով գործեցին զայն ծմ ագրիկողայոս և լիւսիաս՝ վասն զեմի արբանեակք հալածանաց նաև յաւուրս դիոկղ․ և մաքս․ ։ Թող զի Է դադարումն կայսերութե դիոկղետիանոսի, և Է թողուլ լիկինիանոսի ( առ մեծն կոստանդիանոսիւ ) են միայն ամք հինգ ։

(3) Զգիտեմ զիարդ յայժմու օրինակս․ Յ․ բասիլ․ եդեալ կայ յետ ծմ տանջանաց, թէ * ապա սբն կանդիտոս և ակիւղա և վաղերիանոս գլխատեցան ։ Իսկ „ սբն եւգինէոս ... 'ի հուր արկեալ, և ողջ պահել՝ գըլ„խատեցաւ և նա||: Որ միաբան աւանդեն Հ․ և ժամագիրք յունաց, թէ չորեքին միանգամայն արկան 'ի հուր, և ապա գլխատեցան․ ահա բանք ժամագրոց յունաց․ 'ի յունվ․ 21․ * յետ ծմ 'ի հնոց բորբոքեալ ար„կին միանգամայն զծմ զսբն․ յորմէ անարատ պահեալք՝ „ սրով կատարին||: 'Ի նոյն միտս նոտարէ և երգաբանն յոյն 'ի յունվ․ 20․ * Զեւգինէոս և զնմանակակիցսն զե„րեսին միանգամայն՝ առ աղնոտակաւ հնոցն սպա„նանէ սուրն||: և Հ․ * Յայսմ աւուր կատարեցան „ զանիւ և հրով սբ վկայքն քի ծյ վաղերիանոս և „ կանդիտոս, ակիւղաս, և գինէոս, 'ի լիւսիայ դա„տաւորէն 'ի տրապիզոն քաղաքի․ և յետոյ հատին սրով „ զգլուխս նց․ և այնպէս կատարեցան 'ի քս||․ Նոյն օրինակ են և բանք ծր իէլի․ և Հ = Յ ։

(4) 'Ի քանի մի նոր օրինակս տօնացուցից յետին դարուց՝ յաւելեալ կայ ստանոր 'ի կատարած ապայից տօն գոհարինեանց․ այլ զսոցանէ լիցի բան 'ի կարգի սբց յիշատակելեաց Ը յայսմաւուրաց արտաքոյ տօնացուցի ։



ՑԱՆԿ

# ՑԱՆԿ

## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ

### որ 'ի Հատորն Առաջին։



ժե.

ՎԵՐՋԵՆ

Հատորիս ։